## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ ՈՒՂՂՎԱԾ ԹՂԹՈՒՄ ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱՆԵՐԻ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ՀԵՂԻՆԱԿԻ A WORD FROM THE AUTHOR: HOW CAN THIS COMMENTARY HELP YOU?

Աստվածաշնչյան մեկնաբանությունը դա մտային և հոգևոր գործընթաց է, որը փորձում է հասկանալ հեղինակի ներշնչվածության չափը բուն հեղինակի մոտ, այնպես որ Աստծո պատգամը հասկանալի և կիրառելի լինի մեր օրերում:

Հոգևոր գործընթացը որոշիչ է, բայց նաև դժվար է այն սահմանել: Դա իր մեջ ներառում է բաց լինել Աստծո առաջ և հեշտությամբ ընդունել Աստծո ասածները: Մարդու մեջ պետք է լինի ծարավ (1)Նրա հանդեպ, (2) Նրան ճանաչելու, և (3) Նրան ծառայելու հանդեպ: Այս գործընթացը ներգրավում է աղոթք, խոստովանություն և կյանքդ փոխելու պատրաստակամությունը: Սուրբ Հոգին մեկնաբանության գործընթացում որոշիչ դեր է խաղում, բայց ինչու՞ անկեղծ, աստվածապաշտ քրիստոնյաները Աստվածաշունչը տարբեր կերպ են հասկանում: Դա մեր համար մնում է գաղտնիք:

Գործընթացի մտային կողմը նկարագրել հեշտ է: Մենք պետք է լինենք հետևողական և նախապատվությունը տանք տեքստին, այլ ոչ թե անձնական կամ եկեղեցական համոզմունքներին: Մենք բոլորս էլ գտնվում ենք որոշակի պատմական պայմանների շրջանակներում: Մեզնից ոչ ոք չի կարող լինել օբյեկտիվ և չեզոք մեկնաբան: Այս մեկնաբանությունը առաջարկում է ուշադիր և տրամաբանական մոտեցում, որը հիմնված է մեկնաբանության երեք սկզբունքների վրա, որոնք կօգնեն մեզ խուսափել մոլորություններից:

### Առաջին Սկզբունք

Առաջին սկզբունքը ամփոփվում է նրանում, որ պետք է հաշվի առնել պատմական իրավիճակը, երբ գրվել է համապատասխան գիրքը, որը առիթ է հանդիսացել հեղինակի համար գրելու տվյալ գիրքը: Բուն հեղինակն ուներ նպատակ և պատգամ՝ փոխանցելու մարդկանց: Տեքստը չի կարող մեզ համար նշանակել մի բան, որը երբեք չի նշանակել բուն, ներշնչված հեղինակին: Դա հասկանալու բանալին ոչ թե մեր պատմական, զգացմունքային, մշակույթային, անձնական կամ եկեղեցական կարիքն է, այլ հեղինակի մտադրությունը:

Կիրառությունը սերտ կապված է մեկնաբանության հետ, բայց ճիշտ մեկնաբանությունը միշտ պետք է նախորդի կիրառությանը: Հարկ է հստակ ընդգծել, որ աստվածաշնչյան

յուրաքանչյուր տեքստ ունի մեկ և միայն մեկ իմաստ: Դա այն իմաստն է, որը հենց բուն աստվածաշնչյան հեղինակը, գտնվելով Սուրբ Հոգու զորության ներքո, մտադրվել է փոխանցել իր ժամանակակիցներին: Իսկ հենց այդ իմաստն էլ կարող է ունենալ լայն կիրառություն տարբեր մշակույթներում և իրավիճակներում: Բայց բոլոր կիրառությունները պետք է կապակցված լինեն գլխավոր ճշմարտության հետ, որը փոխանցում է մեզ հեղինակը: Այդ իսկ պատճառով, այս ուսուցողական սերտողության մեկնաբանությունը կազմված է այնպես, որ կտա անհրաժեշտ պատկերացում աստվածաշնչյան յուրաքանչյուր գիրքի մասին:

**Երկրորդ սկզբունք**

Երկրորդ սկզբունքը գրական բաժինները ճիշտ որոշելու համար է: Յուրաքանչյուր աստվածաշնչյան գիրք իրենից ներկայացնում է մեկ ամբողջական փաստաթուղթ: Մեկնաբաներն իրավունք չունեն առանձնացնել ճշմարտության մեկ ասպեկտ՝ մերժելով մյուսները: Ուստի, մենք պետք է հակված լինենք հասկանալու աստվածաշնչյան ամբողջ գրքի նպատակը, նախքան գրական բաժինների առանձին մեկնաբանելը: Գրքի առանձին մասերը—գլուխներ, պարբերություններ, կամ համարներ —չեն կարող նշանակել այն ինչ չի նշանակում ամբողջ բաժինը: Մեկնաբանությունը պետք է ամբողջի դեդուկտիվ մոտեցումից գնա դեպի մասերի ինդուկտիվ մոտեցմանը: Ուստի այս սերտողության մեկնաբանությունը կօգնի վերլուծել յուրաքանչյուր գրական բաժնի կառուցվածքը ըստ պարբերությունների: Գրքի գլուխների և համարների բաժանումները ներշնչված չեն, բայց օգնում են մեզ որոշել տեքստի կառուցվածքային սահմանները:

Մեկնաբանությունը պարբերության մակարդակի վրա—ոչ թե նախադասության, արտահայտության կամ բառի կարող է հանդիսանալ իբրև բանալի, բացահայտելու աստվածաշնչյան հեղինակի մտադրության իմաստը: Պարբերությունները հիմնված են ընդհանուր թեմայի վրա, հաճախ կոչվում է թեմա կամ թեմատիկ նախադասություն: Պարբերության մեջ յուրաքանչյուր բառ, արտահայտություն, բառակապակցություն և նախադասություն ինչ որ կերպ կապված է այս ընդհանուր թեմային: Դրանք սահմանափակում, ընդարձակում, բացատրում են և/կամ հարցադրում: Ճիշտ մեկնաբանելու միակ ճշմարիտ կերպը՝ հետևել հեղինակի մտքին պարբերությունից պարբերություն, աստվածաշնչյան գրքի մի բաժնից մյուսին: Այս մեկնաբանության սերտողությունը նախատեսված է օգնել մարդկանց՝ ժամանակակից անգլերեն թարգմանությունները համեմատելու համար: Այս թարգմանություններն ընտրվել են, որովհետև նրանք հետևեցին թարգմանության տարբեր մոտեցումներին:

1. Հունարեն Նոր Կտակարանի չորրորդ վերստուգված սրբագրություն, հրատարակված Աստվածաշնչյան Ընկերության Միության կողմից (UBS[4]): Այս թարգմանությունը պարբերությունների է բաժանվել ժամանակակից գիտնականների կողմից:

2. Հակոբ Թագավորի Նոր Թարգմանություն (NKJV) -սա բառացի թարգմանություն է, հիմնված հին հունարեն ձեռագրերի ավանդության վրա, որը կոչվում է *Textus Receptus* (համընդհանուր ընդունված տեքստ): Այս թարգմանության պարբերությունների բաժանումները ավելի երկար են քան մյուս թարգմանություններինը: Այս երկար բաժինները օգնում են ավելի հեշտ տեսնել ընդհանուր թեմաները:

3. Նոր Վերստուգված Ստանդարտ Թարգմանություն (NRSV)- կատարելագործված բառացի թարգմանություն է: Սա կազմում է միջանկյալ կետ հետևյալ երկու ժամանակակից թարգմանությունների միջև: Այս թարգմանության պարբերությունների բաժանումները բավականին օգտակար են թեմաները ճիշտ որոշելու համար:

4. Ժամանակակից Անգլերեն Թարգմանություն (TEV)- դինամիկ հավասարազոր թարգմանություն է հրատարակված Աստվածաշնչյան Ընկերության Միության կողմից: Սա փորձում է Աստվածաշունչը թարգմանել այնպես, որ ժամանակակից անգլիախոս ընթերցողը կամ քարոզիչը կարողանա հասկանալ հունարեն տեքստի իմաստը: Հաճախ, հատկապես Ավետարաններում, պարբերությունների բաժանումը ավելի շատ կապված է խոսացողի հետ քան թեմայի, այնպես ինչպես NIV (Նոր Միջազգային Թարգմանություն) է: Մեկնաբանության այսպիսի մոտեցումը օգտակար չէ: Հետաքրքիր է նշել, որ թե UBS[4] և թե TEV հրատարակված են նույն կազմակերպության կողմից, բայց նրանց պարբերությունների բաժանումները տարբեր են:

5. Երուսաղեմի Աստվածաշունչ (JB)- դինամիկ հավասարազոր թարգմանություն է, հիմնված ֆրանսերեն կաթոլիկ թարգմանության վրա: Սա շատ օգտակար է համեմատած եվրոպական մոտեցման հետ պարբերությունների բաժանումների առումով:

6. 1995-ի Նոր Ամերիկյան Ստանդարտ Աստվածաշնչի վերստուգած թարգմանությունը (NASB), որը բառացի թարգմանություն է: Այս մեկնաբանության մեջ ես օգտվել եմ այս թարգմանությունից:

**Երրորդ սկզբունք**

Երրորդ սկզբունքը կայանում է Աստվածաշնչի տարբեր թարգմանություններ կարդալու մեջ, որպեսզի կարողանալ ընկալել լայնամասշտաբ հնարավոր իմաստը (իմաստային դաշտ/semantic) որ կարող են ունենալ աստվածաշնչյան բառերն ու արտահայտությունները: Հաճախ հունարեն արտահայտությունը կամ բառը կարելի է հասկանալ մի քանի ձև: Այս տարբեր թարգմանությունները օգնում են նկատել այդ առանձնահատկությունները և օգնում հասկանալ ու բացատրել հունարեն ձեռագրերի տարբերությունները: Սրանք չեն ազդում վարդապետական հարցերի վրա, բայց օգնում են մեզ ավելի մոտ լինել բնագրին:

Այս մեկնաբանությունը ուսումնասիրողին առաջարկում է մեթոդ, բավականին արագ ստուգելու իր սեփական հասկացողությունը տեքստի վերաբերյալ: Այն չի նշանակում ինչ որ միանշանակ մեկնաբանություն, այլ ավելի հակված է տալ լրացուցիչ տեղեկություն և մտաքելու կարողություն: Հաճախ, այլ աստվածաշնչյան հնարավոր մեկնաբանություններ օգնում են մեզ ձերբազատվել սեփական տեսակետներից և չլինել այդքան սահմանափակ, դոգմատիկ և աղանդավորական: Մեկնաբանները պետք է պատկերացում ունենան հնարավորինս շատ մեկնաբանությունների մասին, որպեսզի գիտակցեն, թե որքան երկիմաստ կարող են լինել հին տեքստերը:Ապշեցուցիչ է, թե ինչքան քիչ համաձայնություն կա քրիստոնյաների միջև, որոնք իրենց համար Աստվածաշունչը հռչակում են որպես ճշմարտության աղբյուր:

Ժամանակին այս սկզբունքները օգնել են ինձ հաղթահարել շատ համոզմունքներ, բառացիորեն պարտադրելով ինձ ծայրաստիճան ուշադիր վերաբերվելու հին բնագրերին և ձեռագրերին: Հույս ունեմ, որ դրանք օրհնություն կլինեն նաև ձեզ համար:

Բոբ Աթլի

Արևելյան Տեխասի Մկրտական Համալսարան

Հունիս 27, 1996

## ԻՆՉՊԵՍ ՃԻՇՏ ԿԱՐԴԱԼ ԱՍՏՎԱԾԱՇՈՒՆՉԸ
## ՍՏՈՒԳՎԱԾ ՃՇՄԱՐՏՈՒԹՅԱՆ ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ

Կարո՞ղ ենք մենք ճանաչել ճշմարտությունը: Որտե՞ղ է այն գտնվում: Կարո՞ղ ենք այն ստուգել տրամաբանությամբ: Կա՞ արդյոք գերագույն հեղինակություն: Կա՞ արդյոք իրականում ինչ որ անկասկած և կատարյալ մի բան, որը կարող է շարժել մեր կյանքը և ամբողջ աշխարհը: Ո՞րն է կյանքի իմաստը: Ինչու՞ ենք մենք այստեղ: Ու՞ր ենք գնում: Այս հարցերն այն հարցերն են, որոնց շուրջ լրջորեն խորհել են մտավորականները և որոնք հանգիստ չեն տվել մարդկային բանականությանը ժամանակի սկզբից սկսած (Ժող. 1:13-18; 3:9-11): Ես հիշում եմ իմ անձնական որոնումները իմ սեփական կյանքի կենտրոնի համար, ինչի շուրջ ամեն ինչ պետք է պտտվի: Ես Հիսուսին, որպես իմ կյանքի Տեր ու Փրկիչ ընդունել եմ փոքր հասակում, հիմնականում հիմնվելով իմ ընտանիք վկայությունների վրա: Երբ ես չափահաս դարձա, իմ և իմ աշխարհի մասին հարցերը նույնպես մեծացան: Պարզ մշակույթային և կրոնական կլիշեները իմաստ չմտցրեցին այն գործնական կյանքի փորձառության մեջ, որի մասին ես կարդացել կամ առընչվել եմ: Դա շփոթության, փնտրտուքների, կրքոտ ցանկությունների ժամանակն էր, և հաճախ անհույս լինելու զգացողությունը, որը գոյություն ուներ դաժան, իրական աշխարհում, որտեղ ես ապրում էի:

Շատերը պնդում էին, որ իրենք ունեն այս հիմնական հարցերի պատասխանները, բայց ուշադիր և երկար մտածելուց հետո, ես հայտնաբերեցի, որ այդ պատասխանները հիմնված էին (1) անձնական փիլիսոփայությունների, (2) հին առասպելների, (3) անձնական փորձառությունների, կամ (4) հոգեբանական պատկերացումների վրա: Իսկ ինձ հարկավոր էր որոշ պնդումներ, որոշակի ապացույցներ, խելացի փաստարկներ, որի վրա կարող էի կառուցել իմ աշխարհայացքը, իմ ամբողջականության կենտրոնը, իմ կյանքի իմաստը:

Ես այդ ամենը ձեռք բերեցի Աստվածաշնչի ինքնուրույն սերտողության ժամանակ: Ես սկսեցի փնտրել ապացույցներ վստահելի լինելու մասին, որոնք գտա (1) Աստվածաշնչի պատմական վստահելիությունը, ինչը հաստատվում էր հնէաբանների կողմից, (2) Հին Կտակարանի մարգարեությունների ճշգրիտ իրականացումը, (3) 1600 տարիների ընթացքում գրված աստվածաշնչյան պատգամի համաձայնեցվածությունն ու միասնականությունը, և (4) մարդկանց անձնական վկայությունները, որոնց կյանքերը ամբողջությամբ փոխվել էին Աստվածաշնչի հետ շփվելուց հետո: Քրիստոնեությունը, որպես հավատքի միացյալ համակարգ, ունի կարողություն լուծելու մարդկային կյանքի բարդ հարցերն ու խնդիրները: Այդ ամենը միասին ոչ միայն ինձ տվեց հստակ աշխարհայացքի համակարգ, այլ աստվածաշնչյան հավատքի փորձառություն, որն իմ կյանքում բերեց ուրախություն և կայունություն:

Ես հասկացա, որ գտել էի  իմ կյանքի այդ ամբողջականության կենտրոնը `Քրիստոսը, որին ես ճանաչեցի Սուրբ Գրքի միջոցով: Դա հիասքանչ փորձառություն էր, զգացմունքային թեթևացում: Սակայն ես մինչև հիմա հիշում եմ այն  ցնցումն ու ցավը, երբ իմ առջև բացվեցին այն փաստերը, թե ինչքան շատ հիմնավորված, բայց տարբեր մեկնաբանություններ կան, երբեմն նույնիսկ նույն եկեղեցիների և աստվածաբանական դպրոցների միջև: Աստվածաշնչի ներշնչվածությունը կամ վստահելիությունը հաստատելը ընթացքի վերջը չէր, այլ միայն սկիզբը: Ինչպե՞ս կարող եմ վստահել կամ մերժել տարբեր և իարարամերժ մեկնաբանությունները հասկանալու համար  շատ բարդ աստվածաշնչյան տեքստերը, եթե նրանցից ամեն մեկը առանձին ներկայացնում է դրա հեղինակությունը և վստահության արժանի լինելը:

Այս առաջադրանքը դարձավ իմ կյանքի նպատակն ու հավատքի ուխտագնացությունը: Ես գիտեի, որ իմ հավատքն առ Քրիստոս  բերել էր ինձ մեծ խաղաղություն և ուրախություն: Իմ միտքը փափագում էր գտնել ինչ որ բացարձակ ճշմարտություններ (1) իմ մշակույթի արժեքների հետ կապված (փոստ-մոդեռնիստական); (2) իրար բախվող կրոնական համակարգերի դոգմատիզմը (աշխարհի կրոններ); և (3) հարանվանական գոռզամտությու: Իմ որոնումների ընթացքում իրական վստահելի մոտեցումների հին գրականության մեկնաբանության ժամանակ, ես զարմանալի կերպով հայտնաբերեցի իմ սեփական շփոթությունները`  պատմական, մշակույթային, հարանվանական և գործնական փորձառության հետ կապված:  Ես հաճախ կարդացել եմ Աստվածաշունչը, որպեսզի գտնեմ պնդումներ իմ կարծիքների և տեսանկյունների համար: Ես օգտագործեցի այն որպես դոգմայի աղբյուր, որպեսզի գրոհեմ ուրիշների վրա, վերահաստատելով իմ սեփական անհուսալի և անկայուն կարծիքները:  Այնքան ցավալի էր ինձ համար ընդունել այդ փաստը:

Չնայած, ես  երբեք չեմ կարող ամբողջությամբ օբյեկտիվ լինել, ես կարող եմ Աստվածաշնչի ավելի լավ ընթերցող լինել: Ես կարող եմ սահմանափակել իմ  շեղումները ճանաչելով և ընդունելով դրանց առկայությունը: Ես դեռևս ազատագրված չեմ դրանցից, բայց դիմադրել եմ իմ տկարությունները: Մեկնաբանը հաճախ Աստվածաշունչը ճիշտ ընթերցելու ամենավատ թշնամին է:

Թույլ տվեք ինձ, սիրելի ընթերցող, թվարկել կանխակարծիքներից մի քանիսը, որոնց վրա է հիմնված Աստվածաշնչի իմ ուսումնասիրությունը, որպեսզի դուք կարողանաք ինձ հետ միասին ստուգել դրանք:

## I. Կանխակարծիքներ

Ա. Ես հավատում եմ, որ Աստվածաշունչն միակ ճշմարիտ Աստծո միակ ներշնչված հայտնությունն է: Ուստի, այն պետք է մեկնաբանվի բուն աստվածային հեղինակի (Սուրբ Հոգու) մտադրության լույսի ներքո, մարդ-գրողների միջոցով, որոնք ապրել են որոշակի պատմական իրավիճակներում:

Բ. Ես հավատում եմ, որ Աստվածաշունչը գրվել է սովորական մարդու համար և բոլոր մարդկանց համար: Աստված գտավ այնպիսի միջոց, որպեսզի հստակ մեզ ասի այն ամենը, ինչ եղել է տվյալ պատմական և մշակույթային կոնտեքստի մեջ: Աստված չի թաքցնում ճշմարտությունը - Նա ուզում է, որ մենք հասկանանք: Ուստի, այն պետք է մեկնաբանվի այն օրերի լույսի ներքո և ոչ թե մեր օրերի: Աստվածաշունչը չպետք է մեզ համար նշանակի մի բան, որը չի նշանակել առաջին ընթերցողի կամ լսողի համար: Այն հասկանալի է ամենահասարակ մարդու համար, և իր մեջ պարունակում է սովորական մարդկային հաղորդակցության ձևեր և մեթոդներ:

Գ. Ես հավատում եմ, որ Աստվածաշունչն ունի ամբողջական, միավորված պատգամ և նպատակ: Այն չի հակասում ինքն իրեն, չնայած որ իր մեջ պարունակում է դժվար և պարադոքսային հատվածներ: Այսպիսով, Աստվածաշնչի լավագույն մեկնաբանը հենց ինքն՝ Աստվածաշունչն է:

Դ. Ես հավատում եմ, որ յուրաքանչյուր հատված (բացի մարգարեություններից) ունի մեկ և միայն մեկ իմաստ՝ հիմնված բուն, ներշնչված հեղինակի մտադրության վրա: Չնայած մենք երբեք չենք կարող բացարձակ վստահ իմանալ հեղինակի մտադրությունը, շատ ցուցիչներ կօգնեն մեզ որոշել դրանք.

1. գրական ժանրը՝ ընտրված պատգամի փոխանցման համար
2. պատմական կոնտեքստը և/կամ որևէ իրավիճակ, որը առիթ է հանդիսացել տեքստը գրելու համար
3. ամբողջ գրքի գրական կոնտեքստը, ինչպես նաև յուրաքանչյուր գրական բաժին
4. գրական բաժինների կառուցվածքի ուրվագիծը կամ պլանը, կապված ամբողջ պատգամի հետ
5. յուրահատուկ քերականական առանձնահատկություններ պատգամը փոխանցելու համար
6. ընտրված բառեր՝ պատգամը ներկայացնելու համար
7. զուգահեռ հատվածներ

Այս պահերից յուրաքանչյուրի ուսումնասիրությունը միանգամայն անհրաժեշտ է աստվածաշնչյան տեքստի ուսումնասիրության համար: Բայց նախքան Աստվածաշնչի ճիշտ ընթերցանության իմ մեթոդը բացատրելը, թույլ տվեք նկարագրել մի քանի ոչ պիտանի մեթոդներ, որոնք օգտագործվում են մեր օրերում, ստեղծելով մեկնաբանության բազմազանություն, որոնցից պետք է համառորեն խուսափել:

**II. Անհամապատասխան կամ ոչ պիտանի մեթոդներ**

Ա. Անտեսելով աստվածաշնչյան գրքերի գրական կոնտեքստը, և օգտագործելով յուրաքանչյուր նախադասություն, արտահայտություն կամ նույնիսկ առանձին բառեր, իբրև հաստատված ճշմարտություն, որը ոչ մի կապ չունի հեղինակի մտադրության կամ ավելի լայն կոնտեքստի հետ: Սա հաճախ կոչվում է «անհրաժեշտ ապացույցներ տեքստի մեջ»:

Բ. Անտեսելով գրքերի պատմական կոնտեքստը, փոխարինելով ենթադրյալ պատմական կոնտեքստով, որն ունի շատ քիչ կամ ընդհանրապես չունի հիմք բուն տեքստից:

Գ. Անտեսելով գրքերի պատմական կոնտեքստը, այն կարդալ որպես առավոտյան լրագիր, որը հիմնականում գրված է ժամանակակից անհատ քրիստոնյաների համար:

Դ. Անտեսելով գրքերի պատմական կոնտեքստը, փորձել այլաբանորեն մեկնաբանել այն, փոխելով տեքստի իմաստը փիլիսոփայական/աստվածաբանական քննարկման, որը ոչ մի կապ չունի առաջին ունկնդիրների և բուն հեղինակի մտադրությանը:

Ե. Անտեսելով ուղերձի իմաստը, փոխարինելով ինչ որ մեկի սեփական աստվածաբանական համակարգի հետ, սիրած վարկածի կամ կենսական նպատակահարմարությամբ, որը ոչ մի կապ չունի բուն հեղինակի նպատակի և պատգամի իրական իմաստի հետ: Այսպիսի բան հաճախ պատահում է Աստվածաշնչի սկսնակ ընթերցողների հետ, օգտագործելով այս օրինակը սեփական հեղինակությունը պնդելու համար: Սա հաճախ վերաբերվում է որպես «ընթերցողի արձագանքը» (ինչ է այն նշանակում ինձ համար) մեկնաբանությանը:

Բոլոր գրավոր ինֆորմացիայի մարդկային հաղորդակցության մեջ գոյություն ունի ամենաքիչը երեք կապակցված բաղադրիչներ:

| Բուն հեղինակի մտադրությունը | Գրավոր տեքստը | Սկզբնական լսարանը |
|---|---|---|

Անցյալում Աստվածաշնչի ընթերցանության տարբեր մեթոդներ կենտրոնացել են երեք բաղադրիչներից մեկի վրա: Բայց որպեսզի իրապես հաստատվի Աստվածաշնչի եզակի ներշնչվածությունը, այս սխեման ավելի հարմար է:




Իրականում, բոլոր երեք բաղադրիչները պետք է ներգրավված լինեն մեկնաբանության գործընթացի մեջ: Երբ իմ առջև դրված է առաջադրանք, գտնել ինչ որ մի բանի պնդում, իմ ամբողջ մեկնաբանությունը կենտրոնացվում է առաջին երկու բաղադրիչների վրա՝ բուն հեղինակը և տեքստը: Հնարավոր է այս ամենի մեջ կիսով չափ առկա է իմ ոչ ճիշտ գործածումը, որի հետ ես ստիպված եմ եղել բախվել (1) տեքստերին չհիմնավորված այլաբանական կամ հոգևոր իմաստ տալ և (2) «ընթերցողի արձագանքը» մեկնաբանություն (ինչ է այն նշանակում ինձ համար): Չարաշահում կարող է ծագել յուրաքանչյուր փուլում: Մենք միշտ պետք է ստուգենք մեր շարժառիթները, համոզմունքները, ուսումնասիրության մեթոդները և գործնական կիրառությունները: Բայց ինչպե՞ս այս ամենը հսկել, եթե չդրվի մեկնաբանության հստակ սահմաններ, հստակ չափանիշներ: Եվ հենց այս իրավիճակում է հեղինակի մտադրությունը և տեքստի կառուցվածքը ներկայացնում են մի շարք չափանիշներ, որոնք թույլ են տալիս ինձ որոշել հնարավոր մեկնաբանության թույլատրելի սահմանները:

Այսպիսով Աստվածաշնչի ընթերցանության այս ոչ պիտանի մեթոդների լույսի ներքո, որո՞նք են Աստվածաշնչի ճիշտ ընթերցանության և մեկնաբանության այն մի քանի հնարավոր մոտեցումները, որոնք տալիս են որոշակի վստահության աստիճան և տրամաբանորեն չեն հակասում իրար:

### III. Աստվածաշնչի ճիշտ ընթերցանության հնարավոր մեթոդները

Այստեղ ես չեմ քննարկում մեկնաբանության հատուկ ժանրերի յուրահատուկ մեթոդներ, այլ ներկայացնում եմ ընդհանուր հերմենևտիկական սկզբունքներ, որ ընդունելի են ամեն տեսակ

աստվածաշնչյան տեքստերի համար: Լավ գիրք է տարբեր ժանրերի մեկնաբանության առանձնահատկությունների մասին «Ինչպես կարդալ Աստվածաշունչը իր բոլոր արժեքներով» Գորդոն Ֆի և Դուգլաս Ստուարտ, տպագրված Զոնդերվան» (*How To Read The Bible For All Its Worth*, by Gordon Fee and Douglas Stuart, published by Zondervan):

Իմ մեթոդի մեջ, նախևառաջ, կենտրոնանում եմ այն ընթերցողի վրա, ով ինքնուրույն չորս անգամ կարդում է աստվածաշնչյան տեքստը, և ամեն անգամ թույլ տալիս, որ Սուրբ հոգին մեկնաբանի դրա նշանակությունը: Այդ կերպ, Սուրբ Հոգին տեքստը և ընթերցողը հայտնվում են առաջին տեղում և ոչ թե երկրորդական: Այս մոտեցումը նաև պաշտպանում է ընթերցողին մեկնաբանների կողմից հասցվելիք մեծ ներգործությունից: Մի անգամ այսպիսի արտահայտություն եմ լսել «Աստվածաշունչը շատ լույս է սփռում մեկնաբանությունների վրա»: Եվ սա չի նշանակում, որ տեքստի ուսումնասիրության համար բավարար չեն մեկնաբանությունները, բայց դրանք կարելի է օգտագործել զգույշ և համապատասխան ժամանակին:

Մենք պետք է կարողանանք մեր մեկնաբանությունների համար պնդումներ գտնել հենց տեքստից: Վեց բնագավառներ, որոնք տալիս են մեզ, համենայնդեպս, որոշակի վստահություն:

1. հեղինակի
   ա. պատմական կոնտեքստը
   բ. գրական կոնտեքստ
2. հեղինակի կողմից ընտրված
   ա. քերականական կառուցվածքներ (շարահյուսություն)
   բ. այն ժամանակվա բառային կիրառությունը
   գ. ժանր
3. մեր հասկացողությունը
   ա. համապատասխան զուգահեռ հատվածներ

Մեր մեկնաբանությունը պետք է լինի բանական և տրամաբանական: Աստվածաշունչը մեր միակ հավատքի և ճիշտ գործնական ապրելակերպի աղբյուրն է: Ցավալի է, որ քրիստոնյաները հաճախ չեն համաձայնվում այն բանի հետ, ինչ սովորեցնում է Աստվածաշունչը, կամ ինչ որ նա պնդում է: Այդ դեպքում մենք մեզ դատապարտության ենք ենթարկում, եթե մի կողմից մենք համառորեն պնդում ենք նրա ներշնչված լինելը, բայց անմիջապես հայտարարում ենք, որ հավատացյալները չեն կարող համաձայնվել Սուրբ Գրքի հստակ ուսմունքի կամ պահանջների հետ:

Ընթերցանության չորս շրջանները անհրաժեշտ են այն բանի համար, որ կարողանանք տեսնել բոլոր անհրաժեշտ առանձնահատկությունները ճիշտ մեկնաբանելու համար.

Ա. Ընթերցանության առաջին շրջան

1. Մեկ շնչով կարդացեք գիրքն ամբողջությամբ: Կարդացեք այն ևս մեկ անգամ ուրիշ թարգմանությունով, ցանկալի է ուրիշ թարգմանության տեսության տեսանկյունից
   ա. բառացի (NKJV, NASB, NRSV)
   բ. դինամիկ հավասարազոր (TEV, JB)
   գ. վերապատմում (Living Bible, Amplified Bible)
2. Գտեք ամբողջ գրվածքի կենտրոնական նպատակը: Որոշեք նրա թեման:
3. Առանձնացրեք (եթե հնարավոր է) գրական բաժինը, գլուխը, պարբերությունը կամ նախադասությունը, որը հստակ արտահայտում է այս գլխավոր նպատակը կամ թեման:
4. Որոշեք ստեղծագործության գրական ժանրը
   ա. Հին Կտակարան
      (1) Եբրայերեն պատմություն
      (2) Եբրայերեն պոեզիա (իմաստուն գրականություն, սաղմոս)
      (3) Եբրայերեն մարգարեություն (արձակ, բանաստեղծական)
      (4) Օրենսգիրք
   բ. Նոր Կտակարան
      (1) Պատմություններ (Ավետարաններ, Գործք)
      (2) Առակներ (Ավետարաններ)
      (3) Նամակներ/թղթեր
      (4) Վախճանաբանական գրականություն

Բ. Ընթերցանության երկրորդ շրջան

1. Նորից կարդացեք գիրքն ամբողջությամբ, փորձելով գտնել հիմնական թեմաները կամ քննարկվող հարցերը:
2. Ընդգծեք գլխավոր թեմաները, մեկ նախադասությամբ շարադրեք դրանց բովանդակությունները:
3. Համեմատեք ձեր եզրակացությունը այս ամենի մասին սերտողության գրականության հետ:

Գ. Ընթերցանության երրորդ շրջան

1. Նորից կարդացեք գիրքն ամբողջությամբ, փորձելով գտնել պատմական իրավիճակը և հատուկ իրավիճակը, որն առիթ է հանդիսացել այդ գիրքը գրվելու համար:

2. Թվարկեք պատմական առանձնահատկությունները, որոնք նշված են տվյալ Աստվածաշնչի տվյալ գրքում
    ա. հեղինակը
    բ. գրվելու տարեթիվը
    գ. ում համար է գրվել
    դ. ինչի համար է գրվել
    ե. մշակութային կոնտեքստի առանձնահատկությունները, որոնք կապված են գրվելու նպատակի հետ
    զ. ակնարկ պատմական մարդկանց և իրադարձությունների մասին
3. Ընդարձակեք ձեր ուսումնասիրությունը պարբերության մակարդակի վրա և հատկապես գրքի այն հատվածը, որն ուզում եք մեկնաբանել: Միշտ գտեք և ընդգծեք գրական բաժինը: Սա կարող է լինել մի քանի գլուխներ կամ պարբերություններ: Դա կօգնի ձեզ հասկանալ հեղինակի տրամաբանությունն ու տեքստի կառուցվածքը:
4. Ստուգեք պատմական իրավիճակի մասին ձեր եզրակացությունները՝ օգտագործելով տեղեկատու ձեռնարկներ:

Դ. Ընթերցանության չորրորդ շրջան

1. Կարդացեք ուսումնասիրվող հատվածը կրկին մի քանի թարգմանություններով
    ա. բառացի (NKJV, NASB, NRSV)
    բ. դինամիկ համարժեք  (TEV, JB)
    գ. վերապատմում (Living Bible, Amplified Bible)
2. Փնտրեք գրական կամ քերականական կառուցվածքներ
    ա. կրկնվող արտահայտություններ, Եփ. 1:6,12,13
    բ. կրկնվող քերականական կառուցվածքներ, Հռ. 8:31
    գ. հակասող գաղափարներ
3. Պարզեք հետևյալ պահերը
    ա. կարևոր, բանալի տերմիններ
    բ. անսովոր տերմիններ
    գ. կարևոր քերականական կառուցվածքներ
    դ. բարդ բառեր, արտահայտություններ և նախադասություններ
4. Փնտրեք համապատասխան զուգահեռ հատվածները
    ա. փնտրեք ամենահստակ ուսուցանող հատվածը ձեր թեմային համապատասխան, օգտվելով

(1) «սիստեմատիկ աստվածաբանություն» գրքերից

(2) ուսուցողական Աստվածաշնչեր մեկնաբանություններով և տեղեկատվական նյութերով

(3) համաբարբառներից

բ. Փնտրեք հնարավոր պարադոքսային զույգեր նույն թեմային պատկանող: Շատ աստվածաշնչյան ճշմարտություններ կան «դիալեկտիկական զույգերի» մեջ; հարանվանական շատ բախումներ առաջանում են տեքստը կիսով չափ ընդունելու համար: Ամբողջ Աստվածաշունչը ներշնչված է և մենք պետք է փնտրենք ամբողջ պատգամը որպեսզի պահենք մեր մեկնաբանության մեջ սուրբգրային հավասարակշռությունը:

գ. Փնտրեք զուգահեռներ նույն գրքի մեջ, նույն հեղինակի մոտ և նույն ժանրի տեքստերի մեջ; Աստվածաշունչը իր իսկ սեփական լավագույն մեկնաբանն է, որովհետև այն ունի մեկ հեղինակ՝ Սուրբ Հոգին:

5. Օգտվեք լրացուցիչ ուսուցողական նյութերից, ստուգելու համար ձեր դիտարկումները պատմական կոնտեքստի և կոնկրետ դեպքի շուրջ, կապված գիրքը գրելու հետ

ա. ուսուցողական Աստվածաշնչեր

բ. աստվածաշնչյան հանրագիտարաններ, ձեռնարկներ և բառարաններ

գ. աստվածաշնչյան ներածություններ

դ. աստվածաշնչյան մեկնաբանություններ (այս փուլում թույլ տվեք հավատացյալներին անցյալի և ներկայի օգնել ձեզ և ուղղել ձեր անձնական սերտողությունը):

## IV. Աստվածաշնչի մեկնաբանության կիրառությունը

Հիմա մենք կնայենք կիրառության հարցերին: Դուք բավականին ժամանակ ծախսեցիք, որպեսզի հասկանաք տեքստի սկզբնական նշանակությունը; հիմա ձեր առջև դրված է առաջադրանք դա ճիշտ կիրառել ձեր կյանքում, ձեր մշակույթում: Ես որոշում եմ աստվածաշնչյան տեքստ հեղինակությունը որպես «այն բանի հասկացողություն, թե ինչ է ասել հեղինակն իր ժամանակին, և դրա կիրառությունը մեր օրերում»:

Կիրառությունը պետք է հետևի բուն հեղինակի մտադրության մեկնաբանությանը, թե ժամանակի մեջ և թե տրամաբանությամբ: Մենք չենք կարող կիրառել Աստվածաշնչի հատվածը մեր օրերում մինչև որ չհասկանանք թե ինչ նշանակություն ուներ դա այն ժամանակվա մարդկանց համար, ում համար որ գրվել է դա: Չի կարելի աստվածաշնչյան տեքստին իմաստ տալ, որը երբեք չի բովանդակել:

Այստեղ ձեր ուղեցույցը կլինի մանրամասն ուսումնասիրությունը պարբերությունների մակարդակով (ընթերցանության ցիկլ #3): Կիրառությունը պետք է կատարվի պարբերության մակարդակով և ոչ թե բառի: Բառերն ունեն նշանակություն միայն կոնտեքստում, արտահայտություններն ունեն իմաստ միայն կոնտեքստում, նախադասություններն ունեն իմաստ միայն կոնտեքստում: Միակ ներշնչված անձը, որը ներգրավված է մեկնաբանության գործընթացում դա բուն հեղինակն է: Մենք միայն հետևում ենք նրա առաջնորդությանը Սուրբ Հոգու լուսավորությամբ: Բայց լուսավորումը ներշնչանք չէ: «Այսպես է ասում Տերը» ասելու համար մենք պետք է ամբողջությամբ ենթարկվենք բուն հեղինակի մտադրությանը: Կիրառությունը պետք է կապված լինի հիմնականում ամբողջ գրվածքի, հատուկ գրական բաժնի և պարբերության մակարդակի մտքի զարգացումը ընդհանուր մտադրության հետ:

Թույլ մի տվեք մեր օրերի խնդիրներն ու պահանջները մեկնաբանեն Աստվածաշունչը, թող Աստվածաշունչը խոսի: Իհարկե, դա մեզանից շատ ջանք է պահանջում, որ կարողանանք տեքստից սկզբունքներ քաղել: Եվ դրանք կգործեն միայն այն ժամանակ, երբ տեքստը հաստատի դա: Դժբախտաբար, շատ անգամ մեր սկզբունքներից շատերը հենց «մերն են», և ոչ թե այն ինչ տեքստն իրականում պարունակում է:

Աստվածաշունչը կիրառելու ժամանակ, շատ կարևոր է հիշել, որ (բացի մարգարեությունից) ամեն մի աստվածաշնչյան տեքստ ունի միայն մեկ իմաստ: Այդ իմաստը կապված է բուն հեղինակի մտադրությանը, որը ներկայացնում է իր օրերի ճգնաժամերն ու կարիքները: Շատ հնարավոր կիրառություններ կարող են դուրս բերվել այս մեկ իմաստից: Տեքստի կիրառությունը հիմնված կլինի կոնկրետ մարդկանց կարիքներից, բայց պետք է կապված լինի բուն հեղինակի տված իմաստին:

## V. Սուրբ Հոգու դերը մեկնաբանության մեջ

Մինչև այս պահը ես քննարկել եմ տրամաբանական և տեքստային գործընթացը, որպես կարևոր հիմք՝ աստվածաշնչյան տեքստը մեկնաբանելու և կիրառելու համար: Հիմա թույլ տվեք համառոտ շարադրել մեկնաբանության գործընթացի հոգևոր կողմը: Այստեղ ինձ շատ են օգնում հետևյալ քայլերը

Ա. Աղոթք Սուրբ Հոգու օգնության համար (հմմտ. I Կոր. 1:26-2:16).

Բ. Աղոթք անձնական ներման և գիտակցական մեղքից մաքրվելու համար (հմմտ. I Հովհ. 1:9).

Գ. Աղոթք Աստծուն ճանաչելու մեծ ցանկություն ունենալու համար (հմմտ. Սաղ. 19:7-14; 42:1; 119:1).

Դ. Բացահայտված ճշմարտության անհապաղ կիրառում քո սեփական կյանքում

Ե. Մնացեք խոնարհ և պատրաստ սովորելու

Շատ դժվար է պահել հավասարակշռությունը տրամաբանական գործընթացի և Սուրբ Հոգու հոգևոր առաջնորդության միջև: Հետևյալ մեջբերումները օգնել են հավասարակշռության մեջ պահել այդ երկուսը

Ա. Ջեյմս ՈՒ. Սայր «Սուրբ Գրքի Աղավաղում», էջ 17-18 (James W. Sire, *Scripture Twisting*, pp. 17-18):

«Լուսավորումը պայծառացնում է բոլոր Աստծո ժողովրդի միտքը, և ոչ թե միայն ինչ որ հոգևոր բարձր խավի: Աստվածաշնչյան քրիստոնեության մեջ չկա գուրու դասակարգ, ոչ հատուկ լուսավորվածներ, ոչ հատուկ մարդիկ, որոնց միջոցով է միայն ճիշտ մեկնաբանությունը տրվում: Եվ քանի որ Սուրբ Հոգին է տալիս հատուկ պարգևներ իմաստության, գիտության և հոգևոր խորաթափանցության, Նա չի նշանակում այդ պարգևներով օժտված քրիստոնյաներին լինելու Իր Խոսքի միակ հեղինակավոր մեկնաբանողները: Բայց Իր ժողովրդից ամեն մեկը պատասխանատու է սովորելու, խորհելու և մտածելու ամեն ինչ Աստվածաշնչի միջոցով, որը հեղինակություն է բոլորի համար և նաև նրանց համար, ում Աստված տվեց բացառիկ կարողություններ: Ամփոփելով ասեմ, որ ամբողջ այս գրքի ընթացքում ես պնդում եմ, որ Աստվածաշունչը Աստծո ճշմարիտ հայտնությունն է ամբողջ մարդկությանը, այն հանդիսանում է անձեռնմխելի հեղինակություն ամեն ինչում, ինչի մասին որ խոսում է, որ այն չբացահայտված գաղտնիք չէ, բայց կարող է բավականին լավ հասկանալի լինել սովորական մարդու համար՝ ցանկացած մշակույթ ներկայացնող»:

Բ. Կյորկեգորա, Բերնարդ Ռամ «Բողոքական Աստվածաշնչյան մեկնաբանություն», էջ 75 (Kierkegaard, found in Bernard Ramm, *Protestant Biblical Interpretation*, p. 75):

Համաձայն Կյորկեգորայի Աստվածաշնչի քերականական, լեքսիկոնային և պատմական սերտողությունը անհրաժեշտ էր, բայց նախևառաջ կարևոր է Աստվածաշնչի ճիշտ ընթերցանությունը: « Որպեսզի Աստվածաշունչը կարդացվի որպես Աստծո Խոսք, պետք է կարդալ այն սաստիկ վախենալով, ծածուկ, լարված սպասումով, Աստծո հետ հարաբերություն ունենալով: Աստվածաշունչ կարդալ չմտածելով կամ անփութորեն, կամ ակադեմիական և մասնագիտական մոտեցմամբ, նշանակում է Աստվածաշունչը չկարդալ որպես Աստծո Խոսք: Բայց երբ մարդը կարդում է այն, որպես սիրային նամակ, այդժամ նա իրականում կարդում է այն որպես Աստծո Խոսք»:

Գ. Հ.Հ. Ռոլուեյ «Աստվածաշնչի պատշաճությունը», էջ 19 (H. H. Rowley in *The Relevance of the*

*Bible*, p. 19)։

«Աստվածաշնչի ոչ մի մտային հասկացություն, որքան էլ որ այն ամբողջական լինի» չի կարող բացահայտել նրա բոլոր գանձերը: Այսպիսի հասկացողությամբ չի կարելի չարաշահել, քանի որ այն հանդիսանում է անհրաժեշտ բաղկացուցիչ մասը, որը ապահովում է ամբողջական հասկացողությունը: Բայց, որպեսզի ամբողջական լինի, այն պետք է հոգևոր գանձերը առաջնորդի հոգևոր հասկացողության: Իսկ հոգևոր հասկացողության համար անհրաժեշտ է ավելին քան միայն մտային զգոնությունը: Հոգևոր բաները կարելի է տեսնել միայն հոգևոր տեսողությամբ, դրա համար Աստվածաշունչ ուսումնասիրող մարդը պետք է գտնվի հոգևոր զգայունության իրավիճակում, ունենա խիստ փափագ Աստծուն փնտրելու, որպեսզի իրեն հանձնի Աստծուն, եթե նա ուզում է անցնել իր գիտական հետազոտությունը այս ամենահարուստ ժառանգության բացահայտմանը հասնելով»:

## VI. Այս մեկնաբանության մեթոդը

«Մեկնաբանության ուղեցույց»-ը նախատեսված է Աստվածաշնչի ձեր մեկնաբանության գործընթացի մեջ օգնել ձեզ հետևյալ կերպ

Ա. Հակիրճ պատմական ակնարկ, որը ներկայացնում է աստվածաշնչյան յուրաքանչյուր գիրք: «Ընթերցանության #3 շրջանը» անելուց հետո ստուգեք այս տեղեկությունը:

Բ. Յուրաքանչյուր գլխի վերջում ներկայացվում է կոնտեքստի տեսությունը: Սա կօգնի ձեզ տեսնելու, թե ինչ կառուցվածք ունի գրական բաժինը:

Գ. Յուրաքանչյուր գլխի կամ գրական բաժնի սկզբում պարբերության բաժանումները և պատկերավոր վերադիրները ներկայացված են մի քանի ժամանակակից թարգմանություններով

1. Հունարեն Նոր Կտակարանի չորրորդ վերստուգված սրբագրություն, հրատարակված Աստվածաշնչյան Ընկերության Միության կողմից (UBS[4])
2. 1995-ի Նոր Ամերիկյան Ստանդարտ Աստվածաշնչի վերստուգած թարգմանությունը (NASB),
3. Հակոբ Թագավորի Նոր Թարգմանություն (NKJV)
4. Նոր Վերստուգված Ստանդարտ Թարգմանություն (NRSV)
5. Ժամանակակից Անգլերեն Թարգմանություն (TEV)

6. Երուսաղեմի Աստվածաշունչ (JB)

Պարբերությունների բաժանումները ներշնչված չեն: Նրանք պետք է հաստատվեն կոնտեքստի հիման վրա: Համեմատելով մի քանի ժամանակակից թարգմանություններ, որոնք կատարված են տարբեր թարգմանչական տեսությունների և աստվածաբանական տեսանկյուններից, մենք կարող ենք վերլուծել բուն հեղինակի մտքի ենթադրյալ կառուցվածքը: Յուրաքանչյուր պարբերություն ունի մեկ գլխավոր ճշմարտություն: Սա կոչվել է «գլխավոր թեմա» կամ «տեքստի կենտրոնական միտք»: Այս միացնող միտքը բանալին է ճիշտ պատմական և քերականական մեկնաբանության: Երբեք չի կարելի մեկնաբանել, քարոզել կամ սովորեցնել հիմնվելով մեկ պարբերությունից փոքր հատվածի վրա: Նաև հիշեք, որ յուրաքանչյուր պարբերություն կապված է իրեն շրջապատող պարբերությունների հետ: Ահա թե ինչու պարբերության համար կարևոր է ունենալ ամբողջ գրքի պլանը: Մենք պետք է կարողանանք հետևել թեմայի տրամաբանական զարգացմանը ըստ ներշնչված հեղինակի:

Դ. Բոբ Ատլեի մոտեցումն այսպիսին է, որ ճիշտ մեկնաբանություն ստանալու համար պետք է կատարել համար առ համար սերտողություն: Սա ստիպում է մեզ հետևել բուն հեղինակի մտքերին: Նշումները մեզ օգտակար տեղեկություն են տալիս մի քանի բաժիններում, դրանք են՝

1. գրական կոնտեքստ
2. պատմական, մշակույթային առանձնահատկություններ
3. քերականական ինֆորմացիա
4. բառային սերտողություն
5. կարևոր զուգահեռ հատվածներ

Ե. Որոշակի դեպքերում մեկնաբանության մեջ, 1995-ի Նոր Ամերիկյան Ստանդարտ Աստվածաշնչի վերստուգած թարգմանությունը (NASB), լրացված է մի քանի այլ ժամանակակից թարգմանությունների հղումներով:

1. Հակոբ Թագավորի Նոր Թարգմանություն (NKJV), -սա բառացի թարգմանություն է, հիմնված հին հունարեն ձեռագրերի ավանդության վրա, որը կոչվում է *Textus Receptus* (համընդհանուր ընդունված տեքստ):
2. Նոր Վերստուգված Ստանդարտ Թարգմանություն (NRSV), որը բառացի տարբերակն է Եկեղեցիների Ազգային Խորհրդի կողմից, որը Վերստուգված Ստանդարտ Թարգմանությունն է:
3. Ժամանակակից Անգլերեն Թարգմանություն (TEV), դինամիկ հավասարազոր թարգմանություն է հրատարակված ամերիկյան Աստվածաշնչյան Ընկերության

Միության կողմից:

4. Երուսաղեմի Աստվածաշունչ (JB), որը անգլերեն թարգմանություն է հիմնված ֆրանսերեն կաթոլիկ դինամիկ հավասարազոր թարգմանության վրա

Զ. Նրանք, ովքեր հունարեն կարդալ չեն կարող, համեմատելով անգլերեն թարգմանությունները կկարողանան լուծել շատ խնդիրներ, որոնց հետ առընչվում են տեքստն ուսումնասիրելու ժամանակ

1. ձեռագրային տարբերակներ
2. բազմիմաստ բառեր
3. քերականորեն բարդ տեքստեր և կառուցվածք
4. երկիմաստ, անորոշ տեքստեր

Չնայած անգլերեն թարգմանությունները չեն կարող լուծել այս խնդիրները, նրանք նշում են տեքստի այն հատվածները, որոնք պահանջում են ավելի խորը և մանրակրկիտ ուսումնասիրություն:

Է. Յուրաքանչյուր գլխի վերջում կան կարևոր հարցեր քննարկման համար, որոնք կօգնեն կենտրոնացնել ձեր ուշադրությունը այդ գլխի ընդհանուր թեմաների մեկնաբանության արդյունքների վրա:

## ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ ՈՒՂՂՎԱԾ ԹՂԹԻ ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆԸ

### ՆԵՐԱԾԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐ

Ա. Հռոմեացիներին ուղղված թուղթը Պողոս Առաքյալի ամենասիստեմատիկ և տրամաբանական վարդապետական գիրքն է: Հռոմում տիրող հանգամանքները պատճառ հանդիսացան, որ Պողոսը գրեր այս թուղթը, ուստի այն հանդիսանում է «հատուկ առիթով գրված» փաստաթուղթ: Հնարավոր է, ինչ որ բան էր պատահել, որը պատճառ դարձավ, որ Պողոսը գրեր այս նամակը: Ինչևէ, այն Պողոսի գրվածքներից ամենաչեզոքն է, որի մեջ Պողոսը առընչվում է մի խնդրի (հավանական է նախանձություն կար հավատացյալ հրեաների և հեթանոս առաջնորդների միջև), նրա ավետարանի պարզ ներկայացումն էր և դրա նշանակությունները առօրյա կյանքում:

Բ. Թե, ինչպես է Պողոսը ներկայացնում ավետարանը Հռոմեացիներին ուղղված թղթում, իր ներգործությունն է ունեցել եկեղեցու կյանքի վրա բոլոր ժամանակաշրջաններում;

1. Օգոստոսը դարձի եկավ 386 Ք.Հ. կարդալով Հռ. 13:13-14
2. Մարտին Լյութերի հասկացողությունը փրկության վերաբերյալ արմատապես փոխվեց 1513 Ք.Հ., երբ նա համեմատեց Սաղ. 31:1-ը Հռ. 1:17-ի հետ (հմմտ. Ամբ. 2:4):
3. Ջոն Վեսլին դարձի եկավ 1738 Ք.Հ.՝ լսելով Լյութերի քարոզը Հռոմեացիներին ուղղված թղթի ներածության մասին:

Գ. Իմանալ Հռոմեացիներին ուղղված թուղթը նշանակում է իմանալ քրիստոնեությունը: Նամակը ձևավորում է Հիսուսի կյանքի և ուսմունքների հիմնական ճշմարտությունները՝ Եկեղեցու համար բոլոր ժամանակներում:

### ՀԵՂԻՆԱԿ

Անկասկած՝ Պողոսն է հեղինակը: Նրան հատուկ ողջույնի խոսքը գտնվում է 1:1. Ընդհանրապես շատերը համաձայն են այն մտքի հետ, որ Պողոսի «խայթոցը» վատ տեսողությունն էր, ուստի ֆիզիկապես նա չի գրել այս նամակը, այլ օգտագործել է դպիր Տերտիոսին (հմմտ. 16:22):

## ՏԱՐԵԹԻՎ

Ա. Հռոմեացիներին ուղղված թղթի հավանական տարեթիվը Ք.Հ. 56-58: Սա Նոր Կտակարանի այն սակավ գրքերից է, որի տարեթիվը կարող ենք իմանալ ճշգրտորեն: Սա արվում է Գործք 20:2 համեմատելով Հռ. 15:17: Հռոմեացիներին ուղղված թուղթը հավանական է գրվել է Կորնթոսում, Պողոսի երրորդ միսիոներական ճանապարհորդության ժամանակ, մինչև Երուսաղեմ վերադառնալը:

Բ. Պողոսի գրվածքների հնարավոր ժամանակագրությունը համաձայն Բրյուս Ֆ. Ֆ. և Մյուրի Հարիս (F. F. Bruce and Murry Harris) աննշան ուղղումներով:

| | Գիրք | Տարեթիվ | Գրելու վայրը | Կապը Գործք Առաքելոց գրքի հետ |
|---|---|---|---|---|
| 1. | Գաղատացիս | 48 | Սիրիայի Անտիոք | 14:28; 15:2 |
| 2. | I Թեսաղոնիկեցիս | 50 | Կորնթոս | 18:5 |
| 3. | II Թեսաղոնիկեցիս | 50 | Կորնթոս | |
| 4. | I Կորնթացիս | 55 | Եփեսոս | 19:20 |
| 5. | II Կորնթացիս | 56 | Մակեդոնիա | 20:2 |
| 6. | Հռոմեացիս | 57 | Կորնթոս | 20:3 |
| 7.-10. | Նամակներ բանտից | | | |
| | Կողոսացիս | վաղ 60-ականներին | | |
| | Եփեսացիս | վաղ 60-ականներին | Հռոմ | |
| | Փիլիմոն | վաղ 60-ականներին | | |
| | Փիլիպեցիս | 62-ի վերջում-63 | | 28:30-31 |
| 11.-13. | Չորրորդ միսիոներական ճանապարհորդություն | | | |
| | I Տիմոթեոս | 63 (կամ ավելի ուշ, | Մակեդոնի | |
| | Տիտոս | 63 բայց մինչև | Եփեսոս(?) | |
| | II Տիմոթեոս | 64 Ք.Հ. 68) | Հռոմ | |

## ՈՒՄ Է ՈՒՂՂՎԱԾ ԹՈՒՂԹԸ

Նամակում պարզ ասվում է, որ այն հասցեագրված է Հռոմին: Սակայն մենք չգիտենք, թե ո՞վ է հիմնել Հռոմի եկեղեցին;

Ա. Հնարավոր է դրանք այն մարդիկ էին, ովքեր եղել էին Երուսաղեմ Պենտեկոստեի օրը և դարձի եկել ու վերադառնալով տուն՝ հիմնել եկեղեցի (հմմտ. Գործք 2:10):

Բ. Հնարավոր է, որ դրանք աշակերտներն էին, որոնք փախել էին Երուսաղեմի հալածանքներից՝ Ստեփանոսի մահից հետո (հմմտ. Գործք19:21): կամ

Գ. Նրանք կարող է Պողոսի միսիոներական ճանապարհորդության արդյունքում դարձի եկած նորադարձները լինեին, որոնք այնուհետև այցելեցին Հռոմ: Պողոսը երբեք չէր եղել այդ եկեղեցում, բայց նա փափագում էր լինել այնտեղ (հմմտ. Գործք19:21): Այնտեղ նա շատ ընկերներ ուներ (հմմտ. Հռ. 16):

Ըստ երևույթին նրա ծրագրում կար այցելել Հռոմ՝ Իսպանիա գնալու ճանապարհին(հմմտ. Հռ. 15:28) «սիրո ընծաներով» լի Երուսաղեմ ճամփորդելուց հետո: Պողոսը զգում էր, որ իր ծառայությունը արևելյան Միջերկրականում ավարտված էր: Նա միսիոներական նոր դաշտեր էր փնտրում (հմմտ. 15:20-23): Պողոսի նամակը Հունաստանից Հռոմ տանողը, հավանական է եղել է Փիբե սարկավագուհին, որը ճամփորդում էր այդ ուղղությամբ (հմմտ. Հռ.16:1): Ինչու՞ այս նամակը, որը գրվել է առաջին դարում, Կորնթոսի հետին փողոցներից մեկում ապրող մի հրեա վրանագործի կողմից, այդքան արժեքավոր է: Մարտին Լյութերը այն կոչեց «Նոր Կտակարանի գլխավոր գիրքը և անաղարտ Ավետարանը»: Այս գրքի արժեքը գտնվում է այն փաստի մեջ, որ ավետարանի բացատրության խորության մեջ դարձի եկած րաբբիի կողմից, Սողոսը Թարսիսից, կանչված հեթանոսներին առաքյալ լինելու: Պողոսի նամակներից շատերը խիստ գունազարդված են տեղական եկեղեցու իրավիճակով և ոչ թե Հռոմի: Դա առաքյալի մինչև կյանքի վերջը տևող հավատքի սիստեմատիկ ներկայացումն է:

Դու հասկացա՞ր, քրիստոնյա ընկեր, որ շատ տեխնիկական տերմիններ, որ այսօր օգտագործվում են «հավատքը» նկարագրելու համար («արդարացում», «մեղսագրում», «որդեգրում», և «սրբացում») գալիս է հռոմերենից: Աղոթիր Աստծուն, որ բաց անի քեզ համար այս սքանչելի նամակը, մինչ մենք միասին Նրա կամքն ենք փնտրում մեր կյանքերի համար այսօր:

## ՆՊԱՏԱԿԸ

Ա. Օգնության խնդրանք դեպի Իսպանիա իր միսիոներական ճանապարհորդության համար: Պողոսը տեսավ, որ իր առաքելական աշխատանքը արևելյան Միջերկրականում ավարտված է (հմմտ. 16:20-23):

Բ. Ուղղել խնդիրը Հռոմի եկեղեցում հրեա հավատացյալների և հեթանոս հավատացյալների միջև: Հավանական է, որ սա բոլոր հրեաների արտաքսումն էր Հռոմից և նրանց հետագա վերադարձը: Մինչև այն ժամանակը Հրեա քրիստոնյա առաջնորդները փոխարինվել էին հեթանոս քրիստոնյա առաջնորդներով:

Գ. Ծանոթացնել իրեն Հռոմի եկեղեցուն: Պողոսի դեմ շատ հակառակություն կար անկեղծ հրեա նորադարձների կողմից Երուսաղեմում (Երուսաղեմի խորհուրդը Գործք 15), անազնիվ հրեաների կողմից (հուդայականները Գաղատացիս և 2 Կորնթ. 3, 10-13) և հեթանոսների կողմից (Կողոսացիս, Եփեսացիս) ովքեր փորձում էին ավետարանը խառնել իրենց սիրելի թեորիաների կամ փիլիսոփայությունների հետ:

Դ. Պողոսը մեղադրվում էր վտանգավոր նորարար լինելու համար, Հիսուսի ուսմունքին անխոհեմորեն ավելացնելով: Հռոմեացիս թուղթը իրեն սիստեմատիկորեն պաշտպանելու կերպն էր ցույց տալով թե որքան ճշմարիտ էր իր ավետարանը, օգտագործելով Հին Կտակարանը և Հիսուսի ուսմունքները (Ավետարանները):

## ՀԱՄԱՌՈՏ ՈՒՐՎԱԳԻԾ

Ա. Ներածություն (1:1-17)

1. Ողջույն (1:1-7)
   ա. Հեղինակ (1-5)
   բ. Կոչում, նպատակ (6-7ա)
   գ. Ողջույն (7բ)
2. Պատճառ, առիթ (1:8-15)
3. Թեմա (1:16-17)

Բ. Աստվածային Արդարության Կարիքը (1:18-3:20)

1. Հեթանոս աշխարհի անկումը, հրաժարվելը (1:18-32)
2. Հրեաների կամ հեթանոս բարոյականների կեղծավորությունը (2:1-16)
3. Հրեաների դատաստանը (2:17-3:8)
4. Համընդհանուր/Տիեզերական դատապարտություն (3:9-20)

Գ. Ի՞նչ է Աստվածային Արդարությունը (3:21-8:39)

1. Արդարությունը միայն հավատքով է (3:21-31)
2. Արդարության հիմքը: Աստծո խոստումը (4:1-25)
   ա. Աբրահամի ճիշտ դիրքը (4:1-5)
   բ. Դավիթ (4:6-8)

գ.Աբրահամի կապը թլփատության հետ (4:9-12)

դ. Աստծո խոստումը Աբրահամին (4:13-25)

3. Արդարության ձեռք բերումը (5:1-21)

ա. Ուղղական կերպը: անարժան սեր, անհավասար ուրախություն (5:1-5)

բ. Օբյեկտիվ հիմքը: Աստծո զարմանահրաշ սերը (5:6-11)

գ. Ադամ/Քրիստոս նախատիպ: Ադամի օրինազանցությունը, Աստծո նախապատրաստումը (5:12:21)

4. Աստվածային արդարության արդյունքում պետք է լինի անձնական արդարություն (6:1-7:25)

ա. ազատված մեղքից(6:1-14)

(1) կարծեցյալ առարկություն (6:1-2)

(2) մկրտության նշանակությունը (6:3-14)

բ. Սատանայի ծառա կամ Աստծո ծառա: քո ընտրությունը (6:15-23)

գ. Մարդու ամուսնությունը Օրենքին (7:1-6)

դ. Օրենքը բարի է, բայց մեղքը խոչընդոտում է բարուն (7:7-14)

ե. բարու և չարի շարունակական պայքարը հավատացյալի մեջ (7:15-25)

5. Աստվածային արդարության տեսանելի արդյունքները (8:1-39)

ա. Կյանքը Հոգու մեջ (8:1-17)

բ. Արարչագործության ազատագրումը (8:18-25)

գ. Հոգու մշտական օգնությունը (8:26-30)

դ. Հավատքով արդարանալու օրինական հաղթանակը (8:31-39)

Դ. Աստվածային նպատակը ամբողջ մարդկության համար (9:1-11:32)

1. Իսրայելի ընտրությունը (9:1-33)

ա. Հավատքի իրական ժառանգորդները (9:1-13)

բ. Աստծո սուվերենությունը (9:14-26)

գ. Աստծո տիեզերական ծրագիրը ներգրավում է հեթանոսին (9:27-33)

2. Իսրայելի փրկությունը (10:1-21)

ա. Աստծո արդարությունը մարդու արդարության դեմ (10:1-13)

բ. Աստծո ողորմությունը պահանջում է պատգամաբերներ, աշխարհին ավետարանելու կանչը (10:14-18)

գ. Իսրայելը շարունակում է չհավատալ Քրիստոսին (10:19-21)

3. Իսրայելի անհաջողությունը (11:1-36)

ա. Հրեա մնացորդը (11:1-10)

բ. Հրեաների նախանձը (11:11-24)

գ. Իսրայելի ժամանակավոր կուրությունը (11:25-32)

դ. Պողոսի փառաբանության պոռթկումը (11:33-36)

Ե. Աստվածային Արդարության Պարգևի արդյունքը (12:1-15:13)

1. Նվիրման կոչ (12:1-2)
2. Պարգևների գործածում (12:3-8)
3. Հավատացյալների հարաբերություններն ուրիշ հավատացյալների հետ (12:9-21)
4. Հարաբերություններ իշխանությունների հետ (13:1-7)
5. Հարաբերություններ ընկերների հետ (13:8-10)
6. Հարաբերություններ մեր Տիրոջ հետ (13:11-14)
7. Հարաբերություններ եկեղեցու անդամների հետ (14:1-12)
8. Մեր ազդեցությունը ուրիշների վրա (14:13-23)
9. Քրիստոսանման հարաբերություններ (15:1-13)

Զ. Ամփոփում (15:14-33)

1. Պողոսի անձնական ծրագրերը (15:14-29)
2. Աղոթքի խնդրանքներ (15:30-33)

Է. Ետգրություն (16:1-27)

1. Ողջյուններ (16:1-24)
2. Օրհնություն (16:25-27)

**ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԻՆ ՇՐՋԱՆ (տես էջ vi)**

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Մեկ շնչով կարդացեք Աստվածաշնչյան այս գիրքը: Ձեր խոսքերով գրեք ամբողջ գրքի

կենտրոնական թեման:

1. Ամբողջ գրքի թեման
2. Գրականության տեսակը (ժանրը)

**ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐԿՐՈՐԴ ՇՐՋԱՆ (տես էջ vi)**

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Երկրորդ անգամ մեկ շնչով կարդացեք Աստվածաշնչյան այս գիրքը: Ուրվագծեք հիմնական թեմաներն ու թեման արտահայտեք մեկ նախադասությամբ:

1. Առաջին գրական բաժնի թեման
2. Երկրորդ գրական բաժնի թեման
3. Երրորդ գրական բաժնի թեման
4. Չորրորդ գրական բաժնի թեման
5. և այլն

# ԹՈՒՂԹ ՈՒՂՂՎԱԾ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

## ԳԼՈՒԽ 1

| ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ | | | | |
|---|---|---|---|---|
| UBS[4] | NKJV | NRSV | TEV | JB |
| Ողջույն | Բարևներ Ողջույններ | Ողջույն | Ողջույն | Դիմում/ Ողջույն |
| 1:1-7 | 1:1-7 | 1:1-6 | 1:1 | 1:1-2 |
| | | | 1:2-6 | |
| | | | | 1:3-7 |
| | | 1:7ա | 1:7ա | |
| | | 1:7բ | 1:7բ | |
| Պողոսը փափագում է այցելել Հռոմ | Հռոմ այցելելու փափագ | Գոհություն | Գոհության աղոթք | Գոհություն և աղոթք |
| 1:8-15 | 1:8-15 | 1:8-15 | 1:8-12 | 1:8-15 |
| | | | 1:13-15 | |
| Ավետարանի զորությունը | Արդարը հավատքով կապրի | Նամակի թեման | Ավետարանի զորությունը | Թեման հաստատվում է |
| 1:16-17 | 1:16-17 | 1:16-17 | 1:16-17 | 1:16-17 |
| Մարդկության հանցանքը | Աստծո բարկությունը անարդարության վրա | Աստծո դատաստանը մեղքի հանդեպ | Մարդկության հանցանքը | Աստծո բարկությունը հեթանոսների դեմ |
| 1:18-23 | 1:18-32 | 1:18-23 | 1:18-23 | 1:18-25 |
| 1:24-32 | | 1:24-25 | 1:24-25 | |
| | | 1:26-27 | 1:26-27 | 1:26-27 |
| | | 1:28-32 | 1:28-32 | 1:28-32 |

*Չնայած պարբերությունների բաժանումները ներշնչված չեն, բայց դրանք օգնում են հասկանալ և հետևել հեղինակի մտադրությանը: Յուրաքանչյուր ժամանակակից թարգմանություն բաժանել և վերլուծել է առաջին գլուխը: Ամեն մի պարբերություն ունի մեկ կենտրոնական թեմա, ճշմարտություն կամ միտք: Այս թեման յուրաքանչյուր թարգամանված տարբերակում ձևավորվում է իր իսկ ձևով: Կարդալով տեքստը, հարցեր տվեք ինքներդ ձեզ, թե թարգմանություններից, որ մեկն է ավելի համապատասխանում թեմաների և համարների բաժանումների ձեր հասկացողությանը:

Յուրաքանչյուր գլխի ժամանակ դուք նախ պետք է կարդաք Աստվածաշունչը և փորձեք որոշել թեմաները (պարբերությունները): Հետո ձեր հասկացողությունը համեմատեք ժամանակակից թարգմանությունների հետ: Միայն այդ ժամանակ, երբ հասկանաք հեղինակի մտադրությունը, հետևելով նրա տրամաբանությանն ու շարադրանքին, դուք կկարողանաք ճիշտ հասկանալ Աստվածաշունչը: Միայն հեղինակն է ներշնչված – ընթերցողներն իրավունք չունեն փոխել կամ խեղաթյուրել նրա պատգամը/ ուղերձը: Աստվածաշնչի ընթերցողներն պարտավոր են կիրառել ներշնչված ճշմարտությունը ժամանակակից իրավիճակի և իրենց կյանքերի մեջ:

**Բոլոր տեխնիկական տերմինները ու հապավումները ամբողջությամբ ներկայացված են Հավելված 1,2 և 3 –ում:**

ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ (տես էջ vii)

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Մեկ շնչով կարդացեք առաջին գլուխը: Ուրվագծեք հիմնական թեմաները ու թեման արտահայտեք մեկ նախադասությամբ:

1. Առաջին պարբերություն
2. Երկրորդ պարբերություն
3. Երրորդ պարբերություն
4. և այլն

## ԿՈՐՏԵՔՍՏԱՅԻՆ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ

Ա. 1-7 համարները նամակի ներածությունն է: Այն ամենաերկար ներածությունն է Պողոսի գրած նամակների մեջ: Նա փորձում է ներկայացնել ինքն իրեն և իր աստվածաբանությունը տվյալ եկեղեցուն, որը չէր ճանաչում իրեն անձնապես և հնարավոր է, որ բացասական ինֆորմացիա ուներ իր մասին:

Բ. 8-12 համարները գոհության աղոթք է: Սա բնորոշ էր հունարեն նամակներին ընդհանրապես և հատուկ էր Պողոսի գրվածքներին:

Գ. 16-17 համարները հաստատում են գրքի թեման:

Դ. 18 համարից մինչև 3:20 ձևավորում է առաջին գրական բաժինը և Պողոսի ավետարանի գլխավոր միտքը; բոլոր մարդիկ կորսված են և պետք ունեն փրկության (հմմտ. Ծննդոց):

1. անբարոյական հեթանոսներ
2. բարոյական հեթանոսներ

3. իրենցներ

Ե. Հռոմեացիս 1:18 և հաջորդող համարները անդրադարձնում են Ծննդ.3 գլուխը: Մարդկությունը ստեղծվեց Աստծո հետ հաղորդակցություն ունենալու համար, Աստծո պատկերով (հմմտ. Ծննդ. 1:26-27): Ինչևէ, մարդն ընտրեց լուսավորվածությունը և ուժի և առավել լինելու խոստումը: Ըստ էության, մարդիկ Աստծուն փոխեցին իրենցով (աթեիստականմարդկայնություն/հումանիզմ):

Աստված թույլ տվեց , հնարավոր է նույնիսկ նախաձեռնեց, այս ճգնաժամը: Աստծո պատկերին կերպարանակից լինելը նշանակում է լինել պատասխանատու, լինել բարոյապես հաշվետու, ազատ կամք ունենալ, բայց հետևանքներով: Աստված առանձնացնում է մարդկանց թե Իր ընտրությամբ և թե նրանց (ուխտի հարաբերություն): Նա թույլ է տալիս նրանց, որ ընտրեն իրենք ամեն հետևանքներով: Աստված վշտանում է (հմմտ. Ծննդ. 6:5-7) բայց մարդիկ ազատ բարոյական գործոններ են ամեն իրավունքներով և պատասխանատվություններով, որոնք առաջ են գալիս: Կրկնվող արտահայտությունը «Աստված տվեց նրանց իշխանություն» (հմմտ. 1:24,26,28) այդ ազատության ճանաչումն է, ոչ թե Աստծո կամովի մերժումը: Սա Աստծո ընտրությունը չէր: Սա չէ այն աշխարհը, որ Աստված մտադրել էր (հմմտ. Ծննդ. 3:22; 6:5-7,11-13):

Զ. 1:18-3:20 համարների աստվածաբանական վերլուծությունը գտնվում է 3:21-31 համարներում: Սա ավետարանի առաջին նախադրյալը - բոլոր մարդիկ մեղանչել են և Աստծո ներման կարիքն ունեն:

Է. Պողոսի ավետարանի ներկայացման մեջ, այս առաջին գրական բաժնում, հետաքրքիր է նկատել, որ ընկած մարդկությունը պատասխանատու է իր ապստամբության և մեղքի համար, առանց մեղադրելու Սատանային կամ դիվային ուժի (հմմտ. Հռ. 1:18-3:20): Այս բաժինն անշուշտ անդրադարձնում է Ծննդոց 3-ի աստվածաբանությունը, բայց առանց անձնական գայթակղիչի: Աստված թույլ չի տա, որ ընկած մարդկությունը նորից մեղադրի Սատանային (հմմտ. Ծննդ. 3:13) կամ Իրեն՝ Աստծուն (հմմտ. Ծննդ. 3:12): Մարդը ստեղծված է Աստծո պատկերով (հմմտ. Ծննդ.1:26; 5:1,3; 9:6): Նրանք ունեն ընտրելու իրավունք, զորություն և պարտականություն: Նրանք պատասխանատու են իրենց ընտրությունների համար թե ադամական և թե անձնական (հմմտ. 3:23):

## ԲԱՌԻ ԵՒ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՄԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ

NASB (UPDATED) TEXT: 1:1-6
[1]Paul, a bond-servant of Christ Jesus, called *as* an apostle, set apart for the gospel of God, [2]which
He promised beforehand through His prophets in the holy Scriptures, [3]concerning His Son, who was
born of a descendant of David according to the flesh, [4]who was declared the Son of God with power by
the resurrection from the dead, according to the Spirit of holiness, Jesus Christ our Lord, [5]through whom
we have received grace and apostleship to bring about *the* obedience of faith among all the Gentiles for
His name's sake, [6]among whom you also are the called of Jesus Christ;

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 1:1-6**
1 [1]Պօղոս Յիսուս Քրիստոսի ծառայ՝ կանչուած առաքեալ՝ Աստուծոյ աւետարանի համար
որոշուած, [2] Այն որ առաջուց խոստացաւ իր մարգարէների ձեռովը սուրբ գրքերումը, [3] Իր Որդու
համար, ու մարմնի կողմանէ Դաւիթի զաւակիցն եղաւ. Եւ [4] Աստուծոյ Որդի սահմանուեցաւ
զօրութիւնով՝ սրբութեան Հոգու կողմանէ՝ մեռելներից հարութիւն առնելուցը, մեր Տէր Յիսուս
Քրիստոսի համար, [5]Որով ընդունեցինք շնորհք եւ առաքելութիւն՝ հաւատքի հնազանդութեան
համար ամեն ազգերի մէջ նորա անունի համար. [6]Որոնց միջումը դուք էլ Յիսուս Քրիստոսի
կանչուածներն էք.

**1:1 «Պօղոս»** Պողոսի օրերում շատ հրեաներ ունեին երկու սկզբնանուն, մեկը հրեական, իսկ մյուսը՝ հռոմեական (հմմտ. Գործք 13:9): Պողոսի հրեական անունը Սողոս էր: Նա, Իսրայելի թագավորի նման, Բենիամինի ցեղից էր(հմմտ. Հռ.11:1; Փիլ.3:5): Նրա հռոմեական անվան հունարեն ձևը Պողոս (Պաուլոս) նշանակում էր «փոքր»: Սա կամ (1) վերաբերում էր իր ֆիզիկան հասակին, որի մասին ակնարկվում է երկրորդ դարի ոչ-կանոնական գրքում, *Պողոսի Գործքերը,*Թեսաղոնիկեի մասին գլխում, որը կոչվում էր «Պողոսը և Թեկլան»; (2) իր անձնական նշանակությունը՝ սուրբերից ամենավերջինը լինելով, որովհետև նա առաջուց հալածում էր Եկեղեցին (հմմտ. 1 Կորն.15:9; Եփես. 3:8; 1 Տիմ. 1:15); կամ (3) անուն, որը տրված էր իր ծնողների կողմից ծնվելու պահից:

- **«Հիսուս Քրիստոսի ծառա»** Այս հասկացողությունը կամ (1) հակադրում է այն մտքին, Հիսուսին որպես Տեր; կամ (2) ՀԻն Կտակարանի հարգալից տիտղոս (հմմտ. Մովսեսը Թվոց 12:7 և Հեսու 1:1; Հեսուն՝ Յեսու 24:25; և Դավիթը Սաղմոսներում (վերնագրերը) և Եսայի 42:1, 19; 52:13):

- **«կանչված առաքյալ»** Սա Աստծո ընտրությունն էր, ոչ իր (հմմտ. Գործք 9:15; Գաղ. 1:15; Եփես. 3:7): Պողոսը պաշտպանում է իր հոգևոր որակավորումներն ու հեղինակությունը

(ինչպես նա անում է 1 Կոր.1:1; 2 Կոր. 1:1; Գաղ.1:1; Եփես.1:1; Կող.1:1; 1 Տիմ. 1:1 և Տիտոս 1:1) այս եկեղեցու մոտ, որին նա երբեք չէր հանդիպել: Տես Հատուկ/Առանձին Թեմա: Կանչված 1:6-ի տակ

«Առաքյալ» տերմինը Պաղեստինյան հրեաների 1 դարի շրջանում նշանակում էր « մեկն ուղղարկված որպես պաշտոնական ներկայացուցիչ» (հմմտ. 2 Կոր.17:7-9): Նոր Կտակարանում այս տերմինը օգտագործվում էր երկու իմաստներով: (1) 12 հատուկ առաքյալների և Պողոսի: և (2) հոգևոր պարգևի, որ շարունակվում է եկեղեցում (հմմտ.1 Կոր. 12:28-29; Եփես. 4:11):

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՈՒՂԱՐԿՎԱԾ (*APOSTELLŌ*)**

Այստեղ օգտագործված է հասարակ հունարեն բառ «ուղարկել» (այն է, *apostellō*): Այս տերմինն ունի մի քանի աստվածաբանական կիրառություններ:

Ա. Ռաբբիներն օգտագործում էին այն մի մարդու համար, որը կանչված և ուղղարկված էր ինչ որ մեկի կողմից, որպես իր պաշտոնական ներկայացուցիչ, ինչպես օրինակ մեր անգլերեն «դեսպան»ը (հմմտ. II Կոր. 5:20):

Բ. Ավետարանները հաճախ օգտագործում են այս տերմինը, երբ ասվում է, որ Հիսուսն ուղղարկվեց Հոր կողմից: Հովհաննեսի ավետարանում տերմինը ընդունում է մեսիական ինչերանգ (հմմտ. Մաթ. 10:40; 15:24; Մարկ. 9:37; Ղուկ. 9:48 և հատկապես Հովհ. 4:34; 5:24,30,36,37,38; 6:29,38,39,40,57; 7:29; 8:42; 10:36; 11:42; 17:3,8,18,21,23,25; 20:21): Եվ այն նաև օգտագործվում է Հիսուսի կողմից , երբ Նա ուղարկում է հավատացյալներին (հմմտ. Հովհ. 17:18; 20:21)

Գ. Նոր Կտակարանում օգտագործվում է աշակերտների համար

1. 12 աշակերտների նեղ շրջանը (հմմտ. Ղուկ. 6:13; Գործք 1:21-22)
2. առաքյալների օգնականների և գործընկերների հատուկ խումբը
   ա. Բարնաբաս (հմմտ. Գործք 14:4,14)
   բ. Անդրոնիկոս և Յունիա (KJV, Junia, հմմտ. Հռ. 16:7)
   գ. Ապողոս (հմմտ. I Կոր. 4:6-9)
   դ. Հակոբոս՝ Տիրոջ եղբայր (հմմտ. Գաղ. 1:19
   ե. Սիլվանոս և Տիմոթեոս (հմմտ. I Թես. 2:6)
   զ. հավանական է Տիտոս (հմմտ. II Կոր. 8:23)
   է. հավանական է Եպափրոդիտոս (հմմտ. Փիլ. 2:25)
3. պարգև, որը գոյություն ունի եկեղեցում և մեր օրերում (հմմտ. I Կոր. 12:28-29; Եփ.

4:11)

Դ. Պողոսն օգտագործում է այս առաքյալի տիտղոսը իր համար իր նամակներից շատերի մեջ, որպես պնդում/հաստատում Աստծո կողմից տրված իշխանության, որպես Քրիստոսի ներկայացուցիչ (հմմտ. Հռ. 1:1; I Կոր. 1:1; II Կոր. 1:1; Գաղ. 1:1; Եփ. 1:1; Կող. 1:1; I Տիմ. 1:1; II Տիմ. 1:1; Տիտոս 1:1):

- **«որոշված»** Սա վաղակատար կրավորական ժամանակ է, որը նշանակում է, որ նա որոշված էր Աստծու կողմից անցյալում (հմմտ. Երեմ. 1:5 և Գաղ. 1:15) և սա շարունակվում է որպես ներկա վիճակ: Սա հնարավոր բառախաղ էր Արամերեն «Փարիսեցի» բառի համար: Նրանք առանձնացված էին հրեական օրինականության համար (և Պողոսը նույնպես (Փիլ.3:5)), բայց հիմա նա առանձնացված էր ավետարանի համար:

  Սա վերաբերվում է եբրայերեն «սուրբ» բառին, որը նշանակում է «որոշված Աստծո օգտագործման համար» (հմմտ. Ել.19:6; 1Պետ.2:5): «Սուրբ», «սրբացնել», և «առանձնացնել» տերմինները բոլորն էլ ունեն նույն հունարեն արմատը, «սուրբ» (հագիոս/hagios):

- **«Աստուծոյ աւետարանի համար»** Այս կոնտեքստում *eis* նախդիրը (և հ.5) ցույց է տալիս Պողոսի «կանչի»(հ.1բ.)և «որոշված»(հ.1 գ.)լինելու նպատակը:

  Ավետարանը բաղադրյալ բառ է բաղկացած «բարի» (eu) և «լուր»( angellos) : Այն դարձավ տերմին, որը նկարագրում է Նոր Ուխտի մեջ հայտնված վարդապետությունները(հմմտ. հ.2 և Երեմ. 31:31-34: Եզեկ. 36:22-23), որը Աստծո խոստացված Մեսիան է (հմմտ. 3-4 հհ.):

  Սա Աստծո ավետարանն է, և ոչ թե Պողոսի (հմմտ. 15:16; Մարկ.1:14; 2 Կոր.11:7; 1 Թես. 2:2,8,9: 1 Պետ. 4:17): Պողոսը նորարար կամ մշակույթային հարմարեցնող չէր, այլ իր ստացած ճշմարտությունը հռչակող (հմմտ. 1Կոր. 1:18-25):

- **1:2 «Այն որ առաջուց խոստացաւ իր մարգարէների ձեռովը սուրբ գրքերումը»,** Ավետարանը Աստծո ուշացած միտքը չէր այլ Նրա հավիտենական, նպատակասլաց ծրագիրը(հմմտ. Ծննդ.3:15; Եսայ. 53; Սաղ. 118; Մարկ. 10:45; Ղուկ. 22:22; Գործք 2:23; 3:18; 4:28; Տիտոս 1:2): Գործք Առաքելոց գրքում վաղ քարոզները (kerygma) ներկայացնում են Հիսուսին որպես Հին Կտակարանի խոստումների և մարգարեությունների իրականացում:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՎԱՂ ԵԿԵՂԵՑՈՒ KERYGMA-Ն**

1. Հին Կտակարանում Աստծո տված խոստումները կատարվել են Հիսուս Մեսիայի գալուստով (Գործք 2:30; 3:19,24; 10:43; 26:6-7,22; Հռոմ.1:2-4; 1Տիմ.3:16; Եբր.1:1-2; 1Պետ.1:10-12; 2Պետ.1:18-19)
2. Հիսուսը օծվեց որպես Մեսիա Աստծո կողմից Իր մկրտության ժամանակ (Գործք 10:38)
3. Հիսուսը սկսեց Իր ծառայությունը Գալիլեիայում Իր մկրտությունից հետո (Գործք 10:37)
4. Իր ծառայությունը բնութագրվում էր բարիք գործելով և զորավոր գործեր անելով Աստծո զորությամբ (Մարկ. 10:45; Գործք 2:22;10:38)
5. Մեսիան խաչվեց համաձայն Աստծո նպատակի (Մարկ.10:45; Հովհ.3:16; Գործք 2:23; 3:13-15, 18; 4:11; 10:39; 26:23; Հռոմ.8:34; 1Կորն.1:17-18; 15:3; Գաղ.1:4; Եբր. 1:3; 1Պետ.1:2,19; 3:18; 1Հովհ. 4:10)
6. Նա հարություն առավ մեռելներից և հայտնվեց Իր աշակերտներին (Գործք 2:24, 31-32; 3:15, 26; 10:40-41; 17:31; 26:23; Հռոմ.8:34; 10:9; 1Կորն.15:4-7, 12; 1Թեսաղ.1:10: 1Տիմ.3:16; 1Պետ. 1:2; 3:18,21)
7. Հիսուսը մեծարվեց Աստծո կողմից և տրվեցավ «Տեր»անունը (Գործք 2:25-29, 33-36; 3:13; 10:36; Հռոմ. 8:34; 10:9; 1Տիմ. 3:16; Եբր. 1:3; 1Պետ. 3:22)
8. Նա տվեց Սուրբ Հոգին ձևավորելու Աստծո նոր համայնքը (Գործք 1:8; 2:14-18, 38-39; 10:44-47; 1Պետ.1:12)
9. Նա նորից կգա դատելու և վերականգնելու ամեն բան (Գործք 3:20-21; 10:42; 17:31; 1Կորն.15:20-28; 1Թեսաղ. 1:10)
10. Ով որ լսում է պատգամը պետք է ապաշխարի և մկրտվի (Գործք 2:21,38: 3:19; 10:43,47-48; 17:30; 26:20; Հռոմ. 1:17; 10:9; 1Պետ.3:21)

Այս սխեման ծառայում է որպես վաղ եկեղեցու հիմնական հռչակումը, չնայած որ Նոր Կտակարանի տարբեր հեղինակներ բաց են թողել մի մաս կամ ընդգծել են ուրիշ մանրամասնություններ իրենց քարոզչության մեջ: Ամբողջ Մարկոսի Ավետարանը մանրամասն հետևում է Պետրոս առաքյալի քարոզներին: Ըստ ավանդույթի Մարկոսըգրել է իր Ավետարանը, այն կառուցելով Պետրոսի քարոզների վրա, որոնք քարոզվել են Հռոմում: Թե Մատթևոսը և թե Ղուկասը հետևում են Մարկոսի հիմնական կառուցվածքին:

**1:3 « Իր Որդու համար»** Բարի լուրի կենտրոնական պատգամն անձ է, Հիսուս Նազովրեցին, կույս Մարիամից ծնված: Հին Կտակարանում ազգը, թագավորը և Մեսիան կոչվում էին «որդի» (հմմտ. 2 Թագ. 7:14; Ովսիա 11:1; Սաղմ. 2:7; Մաթ.2:15):

Հին Կտակարանում Աստված խոսեց ծառաների և մարգարեների միջոցով: Հիսուսը Աստծո ծառան չէր: Նա ընտանիքի անդամ էր (հմմտ. Եբր.1:1-2; 3:6; 5:8; 7:28): Զարմանալիորեն սա միակ տեղն է գրքում, որտեղ Պողոսը կենտրոնանում է Քրիստոլոգիայի /Քրիստոսաբանության վրա: Հռոմեացիս թուղթը ամբողջական սիստեմատիկ աստվածաբանություն չէ:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԱՍՏԾՈ ՈՐԴԻՆ**

Նոր Կտակարանում սա ամենագլխավոր կոչումներից մեկն է Հիսուսի վերաբերյալ/մասին: Այն անշուշտ ունի աստվածային լրացուցիչ իմաստներ: Այն ներգրավում է Հիսուսին որպես «Որդին» կամ «Իմ Որդին» և Աստված որպես «Հայր»: Նոր Կտակարանում այն հայտնվում է ավելի քան 124 անգամ: Նույնիսկ Հիսուսի ինքնաանվանումը որպես «Մարդու Որդի» ունի Աստվածային լրացուցիչ իմաստ Դանիել 7:13-14:

Հին Կտակարանում «որդի» անվանումը կարող էր վերաբերվել երեք հատուկ խմբերի:

1. հրեշտակներ (սովորաբար ՀՈԳՆԱԿԻ թվով, հմմտ. Ծննդ.6:2; Հոբ 1:6; 2:1)
2. Իսրայելի Թագավորը (հմմտ. 2 Թագ.7:14; Սաղմ. 2:7; 89:26-27)
3. Իսրայել ազգը որպես մեկ ամբողջ(հմմտ. Ելից.4:22-23; 2 Օրին.14:1; Ովս.11:1; Մաղ. 2:10)
4. Իսրայելի դատավորները ( հմմտ. Սաղմ.82:6)

Սա երկրորդ կիրառումն է, որ կապվում է Հիսուսի հետ: Այս ձևով «Դավթի Որդի» և «Աստծո որդի» երկուսն էլ վերաբերվում են 2 Թագ. 7; Սաղմ. 2 և 89: Հին Կտակարանում «Աստծո որդի» երբեք չի օգտագործվում հատուկ Մեսիայի համար, բացի որպես վախճանաբանական թագավոր որպես Իսրայելի «օծյալներից» մեկը: Ինչևէ, Մեռյալ ծովի մագաղաթների մեջ Մեսիական ներիմաստներով տիտղոսը/կոչումը սովորական է: Նաև «Աստծո Որդի» Մեսիական տիտղոսը երկու ներաստվածաշնչյան Հրեական ապոկալիպտիկ գործերում ( հմմտ. 2 Եզրաս 7:28; 13:32, 37,52; 14:9 և 1 Ենովք 105:2):

Նոր Կտակարանում այն վերաբերվում է Հիսուսին ամենալավ ձևով ամփոփվում է մի քանի կատեգորիաներում:

1. Նրա նախա-գոյությունը ( հմմտ. Հովհ. 1:1-18)
2. Նրա եզակի, կուսական ծնունդը ( հմմտ. Մաթ.1:23; Ղուկ. 1:31-35)
3. Նրա մկրտությունը ( հմմտ. Մաթ. 3:17; Մարկ. 1:11; Ղուկ. 3:22: Երկնքից եկողԱստծո ձայնը միավորում է Սաղմ.2-ի թագավորին Եսայի 53-ի տառապող ծառայի հետ) :
4. Սատանայի կողմից Իր փորձվելը ( հմմտ. Մաթ. 4:1-11; Մարկ 1:12,13; Ղուկ. 4:1-13: Նրան փորձում է Սատանան, որ կասկածի Իր որդի լինելու վրա կամ համենայն դեպս ավարտել դրա նպատակը ուրիշ իմաստով քան խաչը):
5. Նրա հաստատումը անընդունելի խոստովանողների կողմից
   ա. դևեր ( հմմտ. Մարկ. 1:23-25; Ղուկ. 4:31-37; Մարկ. 3:11-12)
   բ. անհավատներ ( հմմտ. Մաթ.27:43; Մարկ.14:61; Հովհ.19:7 )
6. Նրա հաստատումը Իր աշակերտների կողմից
   ա. Մաթ. 14:33; 16:16
   բ. Հովհ. 1:34, 49; 6:69; 11:27
7. Նրա ինքնահաստատումը
   ա. Մաթ. 11:25-27
   բ. Հովհ. 10:36

8. Նա օգտագործում է հայտնի փոխաբերություն Աստծո մասին որպես Հայր
   ա. Նա օգտագործում է «աբբա» Աստծո համար
      1) Մարկ. 14:36
      2) Հռոմ. 8:15
      3) Գաղ. 4:6
   բ. Նա պարբերաբար օգտագործում է Հայր (պատեռ)նկարագրելու համար Իր կապը աստվածության հետ

Ամփոփելով «Աստծո Որդի» տիտղոսը ուներ մեծ աստվածաբանական իմաստ նրանց համար , ովքեր գիտեին Հին Կտակարանը և նրա խոստումներն ու կատեգորիաները, բայց Նոր Կտակարանի գրողները նեարդայնացած էին դրանց օգտագործումը հեթանոսների հետ իրենց հեթանոս ակունքների պատճառով, երբ «աստբվածները» կանանց էին վերցնում սերունդ տալու նպատակով լինելով «հսկաներ»:

- **«Դաւիթի զաւակիցն եղաւ.»** Սա վերաբերվում է 2 Թագ. 7 մարգարեությանը: Մեսիան Դավթի թագավորական սերնդից էր ( հմմտ. Եսայ. 9:7; 11:1, 10; Երեմ. 23:5; 30:9; 33:15) Հուդայի ցեղից ( հմմտ. Ծննդ. 49:4-12; Եսայ. 65:9): Մաթևոսի Ավետարանում Հիսուսին ուղղված է այս կոչումով մի քանի անգամ ( հմմտ. 9:27; 12:23; 15:22; 20:30), որը անդրադարձնում էր հրեաների հույսը գալիք փրկչի հետ կապված:

  Զարմացնող է, որ Պողոսը չընդգծեց Հիսուսի այս տեսանկյունը: Նա նշեց այն միայն այստեղ և 2 Տիմ. 2:8; երկու հատվածներն էլ հնարավոր է որ մեջբերումներ են եղել հավատքի ֆորմուլայում վաղ եկեղեցու:

**NASB, NKJV,**
**NRSV** **"according to the flesh"**
**TEV** **"as to his humanity"**
**JB** **"according to human nature"**

- **Արևելահայերեն «մարմնի կողմանէ»**

  **Արևմտահայերեն «մարմնի կողմանէ»**

  Սա մարգարեության իրականացումն էր և Հիսուսի մարդեղության հաստատումը, որը առաջին դարի էկլեկտիկ կրոնական աշխարհն ուրացավ ( հմմտ. 1Հովհ. 1:1-4; 4:1-3): Այս համարը հստակ ցույց է տալիս , որ Պողոսը միշտ չէ օգտագործում «մարմին» (sarx) տերմինը բացասական առումով ( հմմտ. 2:28; 9:3), Սակայն Պողոսը սովորաբար օգտագործեց «մարմին» տերմինը հակասելու «հոգի» տերմինին ( հմմտ. 6:19; 7:5, 18,25; 8:3-9,12,13; 1Կորն. 5:5; 2Կորն. 1:17; 11:18; Գաղ. 3:3; 5:13, 16, 17-19, 24; 6:8; Եփես. 2:3; Կող. 2:11, 13, 18, 23):

Քերականական այս կառուցվածքը *kata* (համաձայն) գումարած հայցական հոլով զուգահեռականություն է համար 4-ում; Հիսուսը թե մարդ է (մարմնի կողմանէ) և թե աստվածային (Հոգու կողմանէ): Մարմնացման այս վարդապետությունը վճռական է/խաչաձև ( հմմտ. 1 Հովհ. 4:1-3): Այն նաև կարող է Հիսուսի ինքնաընտրած անվանման ներիմաստը լինել, «Մարդու Որդի» ( հմմտ. Սաղ. 8:4; Եզեկ. 2:1[ մարդկային] և Դան. 7:13[ աստվածային]):

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՄԱՐՄԻՆ (*SARX*)**

Սա վերաբերում է մարդկային իմաստությանը կամ աշխարհիկ չափանիշներին (հմմտ. 1:20; 2:6,8; 3:18): Պողոսն օգտագործում է «մարմին» տերմինը (*sarx*) մի քանի ձևերով իր գրվածքներում:

1. մարդու մարմինը (հմմտ. 5:5; 7:28; Հռ. 2::28)
2. մարդկային սերունդ (i.e., հայր-որդի, հմմտ. 10:18; Հռ. 1:3; 4:1)
3. մարդկությունը որպես մեկ ամբողջ (հմմտ. 1:26,29)
4. մարդու տկարությունը մեղքի պատճառով Ծննդ. 3 (հմմտ. Հռ. 6:19; 7:18)

**1:4 «սահմանուեցաւ»** Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ է: Աստված հստակորեն նշանակեց Հիսուսին «Աստծո Որդի» : Սա չի նշանակում թե Բեթլեհեմը Հիսուսի սկիզբն էր կամ թե Նա ստորադաս էր Հորը: Տես Հատուկ Թեմա: Երրորդությունը 8:11

- **«Աստուծոյ Որդի»** Նոր Կտակարանի հեղինակները հաճախ չէին վերագրում Հիսուսին «Աստուծոյ Որդի» կոչումը (հմմտ. Մաթ. 4:3) հունական առասպելների կեղծ իմաստների պատճառով (նույնը նաև կապված կուսական ծննդի հետ): Սովորաբար գաղափարը որակավորվում է «եզակի, մի տեսակի» (monogenes) (հմմտ. Հովհ. 1:18; 3:16, 18; 1Հովհ. 4:9): Սա է իմաստը « Հիսուս, Աստծո միակ ճշմարիտ Որդին»:
  Նոր կտակարանը ունի երկու աստվածաբանական բևեռներ կապված Հայր Աստծո և Հիսուս Որդու հետ: (1) նրանք հավասար են (հմմտ. Հովհ. 1:1; 5:18; 10:30; 14:9; 20:28; 2Կորն.4:4; Փիլ. 2:6; Կող. 1:15; Եբր. 1:3), և (2) նրանք առանձին անձեր են (հմմտ. Մարկ. 10:18; 14:36; 15:34):

- **«մեռելներից հարութիւն առնելուցը»** Հայր Աստվածը հաստատեց Հիսուսի կյանքն ու պատգամը Նրան մեռելներից հարություն տալով (հմմտ. 4:24; 6:4, 9: 8:11): Հիսուսի աստվածությունն (հմմտ. Հովհ. 1:1-14; Կող. 1:15-19; Փիլ. 2:6-11) ու հարությունը (4:25; 1 Կորն. 15) Քրիստոնեությանն երկու սյուներն են:

- Այս համարը հաճախ օգտագործվում էր «որդեգրության» հերետիկոսությունը պաշտպանելու համար, որը հաստատում էր, որ Հիսուսը վաճատրված և բարձրացված էր Աստծո կողմից Իր հնազանդության օրինակելի կյանքի համար: Հերետիկոսները հաստատում էին , որ Նա միշտ Աստված չէ եղել (օնթոլոգիականորեն/ գոյաբանականontologically), բայց դարձավ Աստված, երբ Աստված նրան հարություն տվեց: Թեև սա պարզորեն ճշմարտություն է, որը ակնհայտ է շատ տեքստերից ինչպիսին Հովհ. 1 և 17, ինչոր հիասքանչ բան շնորհվեց Հիսուսին Իր հարության ժամանակ: Դժվար է արտահայտել թե ինչպես աստվածությունը վարձատրվի, դա այն է ինչ տեղի ունեցավ: Չնայած Հիսուսը հավիտենական փառքը բաժնեկցեց Հոր հետ, Նրա կարգավիճակը ինչ-որ ձևով հարստացավ` իր նշանակված առաջադրանքը կատարյալ

ձևով իրականացնելով: Հարությունը կյանքի Հոր հաստատումն էր, օրինակ, ուսմունքները, և Հիսուս Նազովրեցու զոհաբերվող մահը; հավիտյան աստվածային, ամբողջությամբ մարդ, կատարյալ փրկիչ, վերականգնված և վարձատրված, եզակի/միակ Որդի: Տես Հավելված երեքը- Ուղղագրություն:

**NASB, NKJV** **"according to the Spirit of holiness"**
**NKJV** **"according to the spirit of holiness"**
**TEV** **"as to his divine holiness"**
**JB** **"in the order of the spirit, the spirit of holiness"**

- **Արևելահայերեն « Հոգու կողմանէ»**
  **Արևմտահայերեն «հոգիին կողմանէ»**

Որոշ թարգմանություններ Հոգի բառը գրում են մեծատառով, կապելով Սուրբ Հոգու հետ, իսկ փոքրատառ «հ» կապում են Հիսուսի հոգու հետ: Քանի որ Հայր Աստվածը Հոգի է, ուրեմն Հիսուսը նույնպես: Հին եբրայերենն ու հունարեն տեքստերը չունեին մեծատառ, կետադրություն, գլուխների կամ համարների բաժանում, այդ պատճառով այս ամենը ավանդություն է կամ թարգմանիչների մեկնաբանություն:
Երեք կերպերով կարող ենք նայել 3 և 4 համարները: (1) կապված Հիսուսի երկու բնությունների հետ, մարդկային և աստվածային; (2) կապված Իր կյանքի վաղ շրջանի երկու փուլերի հետ, մարդ և հարուցյալ Տեր; կամ (3) որպես զուգահեռ «Մեր Տեր Հիսուս Քրիստոս»-ին:

- **«Հիսուս»** Արամերեն Հիսուս անունը նույնն է, ինչ եբրայերեն Հեսու անունը: Այն եբրայերեն «Յեհովա» և «փրկություն» երկու բառերի կապակցումն է: Այն կարող է նշանակել «Յեհովան փրկում է», «Յեհովան ազատում է» կամ «Յեհովան փրկություն է»: Տես Մաթ. 1:21,25:

- **«Քրիստոս»** Սա եբրայերեն *մեսիա* տերմինի հունարեն թարգմանությունն էր, որը նշանակում էր «օծյալ»: Հին Կտակարանում կային առաջնորդների մի քանի խմբեր (մարգարեներ, քահանաներ, և թագավորներ), որոնք օծված էին որպես Աստծո ընտրյալներ: Հիսուսը իրականացրեց այս բոլոր երեք օծյալ պաշտոնները: (հմմտ. Եբր.1:2-3):

  Հին Կտակարանը կանխագուշակեց, որ Աստված կուղարկի հատուկ «օծյալ մեկը» հայտնելու արդարության Նոր Դարը: Հիսուսն Իր հատուկ «ծառան», «որդին» և «Մեսիան» էր:

- **«Տեր»** Հուդայականության մեջ Աստծո Ուխտի անունը՝ Յահվեն, դարձավ այնքան սուրբ, որ րաբբիները այն փոխարինեցին «Տեր» *(Adon)* տիտղոսի/կոչման, երբ կարդում էին Սուրբ Գրքերը, որովհետև նրանք վախենում էին, որ կարող է Աստծո անունը անտեղի բերան առնեն: (հմմտ. Ելից 20:7; 2Օրին. 5:11) և այսպիսով քանդեն Տաս Պատվիրաններից մեկը: Երբ Նոր Կտակարանի հեղինակները Հիսուսին կոչեցին «Տեր» («Kurios») աստվածաբանական կոնտեքստներում, նրանք հաստատում էին Նրա աստվածությունը: (հմմտ. Գործ.2:36; Հռոմ. 10:9-13; Փիլ. 2:6-11):

## ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԱՍՏԾՈ ԱՆՈՒՆՆԵՐԸ

Ա. ԷԼ (*El*)

1. Սկզբնական նշանակությունը ընդհանրական հին տերմինի աստվածության համար անորոշ է, չնայած որ շատ գիտնականներ ենթադրում են, որ այն առաջացել է աքքադական արմատներից, «ուժեղ լինել» կամ «զորեղ, զորավոր լինել» (հմմտ. Ծնն. 17:1; Թվ. 23:19; 2 Օրին. 7:21; Սաղ. 50:1).
2. Քանանական դիցարանում բարձր աստվածը *Էլ* է (Ras Shamra –յի տեքստերը)
3. Աստվածաշնչում *Էլ* բառը սովորաբար չի օգտագործվում որպես բաղադրիչ մաս ուրիշ բառեր կազմելու համար: Այսպիսի բառակապակցությունները դարձան միջոց Աստծուն բնութագրելու համար:

   ա. Էլ-Էլիոն (*El-Elyon*) («Բարձրյալ Աստված»), Ծնն. 14:18-22; 2 Օրին. 32:8; Ես. 14:14
   բ. Էլ- Ռոի (*El-Roi*) («Աստված, որ տեսնում է» կամ «Աստված, որ Իրեն հայտնում է»), Ծնն. 16:13
   գ. Էլ-Շադայ (*El-Shaddai*) («Ամենակարող Աստված» կամ «Աստված Ամենաողորմած» կամ « Լեռան Աստված»), Ծնն. 17:1; 35:11; 43:14; 49:25; Ել. 6:3
   դ. Էլ- Օլամ (*El-Olam*) («Հավիտենական Աստված»), Ծնն. 21:33: Այս անունը աստվածաբանորեն կապված է Դավիթին տված Աստծո խոստման հետ, II Թագ. 7:13,16
   ե. Էլ- Բերիտ(*El-Berit* ) («Ուխտի Աստված»), Դատ. 9:46

4. Էլը օգտագործվում է բառերի և արտահայտությունների հետ՝բնութագրելով Աստծուն
   ա. ՅԱՀՎԵ (YHWH) Սաղ. 85:8; Ես. 42:5
   բ. Էլոհիմ (*Elohim*) Ծնն. 46:3; Հոբ 5:8, «Ես եմ Աստված *El*, Աստվածը *Elohim* քո հոր»
   գ. Շադայ (*Shaddai*) Ծնն. 49:25
   դ. «նախանձոտ» Ել. 34:14; 2 Օրին. 4:24; 5:9; 6:15
   ե. «ողորմած» 2 Օրին. 4:31; Նեե. 9:31; «հավատարիմ» 2 Օրին. 7:9; 32:4
   զ. «զորավոր և ահարկու» 2 Օրին. 7:21; 10:17; Նեե. 1:5; 9:32; Դան. 9:4
   է. «գիտություն» I Թագ. 2:3

ը. «իմ զորավոր բերդը» II Թագ. 22:33
թ. «ինձ համար վրեժխնդիր եղող» II Թագ. 22:48
ժ. «սուրբը» Ես. 5:16

ի. «հզոր» Ես. 10:21
լ. «իմ փրկությունն» Ես. 12:2
խ. «մեծ և հզոր» Եր. 32:18
ծ. «հատուցող» Եր. 51:56
5. Բոլոր հիմնական հին կտակարանային Աստծո անունների կապակցությունները հանդիպում են Հեսու 22:22 (Էլ, Էլոհիմ, ՅԱՀՎԵ» կրկնողաբար)
Բ. Էլիոն (*Elyon*)
1. Սրա հիմնական նշանակությունն է «բարձր», «մեծարված, փառաբանված» կամ «վեր բարձրացված» (հմմտ. Ծննդ. 40:17; 3 Թագ. 9:8; 4 Թագ. 18:17; Նեեմ. 3:25; Եր. 20:2; 36:10; Սաղ. 18:13):
2. Այն օգտագործվում է որպես զուգահեռ Աստծո մի քանի ուրիշ անունների/տիտղոսների համար:
ա. Էլոհիմ (*Elohim*) – Սաղ. 47:1-2; 73:11; 107:11
բ. ՅԱՀՎԵ (*YHWH*) – Ծննդ. 14:22; II Թագ. 22:14
գ. Էլ – Շադայ(*El-Shaddai*) – Սաղ. 91:1,9
դ. Էլ (*El*)- Թվոց 24:16
ե. Էլահ (*Elah*) – հաճախ օգտագործված է Դան. 2-6 և Եզրաս 4-7, իլլիար (*illair*) բառի հետ միասին (արամերեն «Բարձր Աստված») Դան. 3:26; 4:2; 5:18,21
3. Անունը հաճախ օգտագործվել է ոչ իսրայելացիների կողմից
ա. Մելքիսեդեկ, Ծննդ. 14:18-22
բ. Բաղաամ, Թվոց 24:16
գ. Մովսես, խոսելով ազգերի մասին 2 Օրին. 32:8
դ. Նոր Կտակարանում Ղուկասի Ավետարանը, գրելով հեթանոսներին, նաև օգտագործվում է հունարեն համազորը *Hupsistos* (հմմտ. 1:32,35,76; 6:35; 8:28; Գործք 7:48; 16:17)
Գ. Էլոհիմ (հոգնակի թիվ), Էլոահ (եզակի թիվ), հիմնականում օգտագործվել են պոեզիայի մեջ:
1. Այս տերմինը չի հանդիպում Հին Կտակարանից դուրս:
2. Այս բառով կոչում են և Իսրայելի Աստծուն և մյուս ազգերի աստվածներին (հմմտ. Ել. 12:12; 20:3): Աբրահամի ընտանիքը բազմաստվածության հավատքի էր պատկանում (հմմտ. Josh. 24:2):
3. Այն կարող է վերաբերվել Իսրայելի դատավորներին (հմմտ. Ել. 21:6; Սաղ. 82:6):
4. Էլոհիմ տերմինը նաև օգտագործվում է ուրիշ հոգևոր արարածների համար (հրեշտակներ, դևեր) ինչպես 2 Օրին. 32:8 (LXX); Սաղ. 8:5; Հոբ 1:6; 38:7: Այն կարող է վերաբերվի մարդկանց/մարդկային դատավորներին (հմմտ. Ել. 21:6; Սաղ. 82:6):

5. Աստվածաշնչում սա Աստծո առաջին անունն է/տիտղոսը (հմմտ. Ծննդ. 1:1): Այն օգտագործվում է բացառապես մինչև Ծննդ. 2:4, որտեղ միացվում է ՅԵՀՈՎԱ բառի հետ: Այն հիմնականում (աստվածաբանորեն) վերաբերվում է Աստծուն, որպես Արարիչ, Պահպանող և Աղբյուր ամբողջ կյանքի այս մոլորակում գոյություն ունեցող (հմմտ. Սաղ. 104):

Այն հոմանիշ է *Էլ* բառին (հմմտ. 2 Օրին. 32:15-19): Այն կարող է նաև զուգահեռ լինել ՅԵՀՈՎԱ-յին, ինչպես Սաղ. 14 *(էլոհիմ)* ճիշտ Սաղ.53 նման է (ՅԵՀՈՎԱ), բացառությամբ տարբեր գործածությունը Աստծո անունների:

6. Չնայած իր հոգնակի թվի կառուցվածքին, և նաև ուրիշ աստվածների համար օգտագործումով, այս տերմինը հաճախ օգտագործվում է հենց Իսրայելի Աստծո համար, բայց սովորաբար հանդես է գալիս եզակի թվով, ցույց տալով իր մոնոթեիստական կիրառությունը:
7. Այս բառը հնչում է ոչ-իսրայելացիների շուրթերից, բայց որպես Աստծո անուն:
ա. Մելքիսեդեկ, Ծննդ. 14:18-22
բ. Բաղամ, Թվոց 24:2
գ. Մովսես, երբ նա խոսում է ազգերի մասին, 2 Օրին. 32:8
8. Տարօրինակ է, որ այդ տարածված անունը Իսրայելի մոնոթեիստիկ Աստծո հոգնակի թվով է: Չնայած չկա կոնկրետ հասկացողություն, ահա վարկածները.
ա. Եբրայերեն լեզվում շատ գոյականներ ունեն հոգնակի թիվ , հաճախ օգտագործվում են միտքն ընդգծելու համար: Սրան շատ մոտ է ավելի հին եբրայերեն քերականական կանոնը, որը կոչվում է «գերազանցության հոգնակի թիվ», որտեղ հոգնակի թիվը օգտագործվում է կոնկրետ հասկացողությունն ավելի ամրապնդելու համար:
բ. Սա կարող է վերաբերվել հրեշտակների խորհրդին, որոնց հետ Աստված հանդիպում է երկնքում և որն Իր շրջապատող միջավայն է (հմմտ. 3 Թագ. 22:19-23; Հոբ 1:6; Սաղ. 82:1; 89:5,7):
գ. Սա նույնիսկ հնարավոր է, որ սա անդրադարձնում է Նոր Կտակարանի հայտնությունը Մեկ Աստծո երեք անձերում: Ծննդ. 1:1 Աստված ստեղծում է; Ծննդ. 1:2 Սուրբ Հոգին փչում է և Նոր Կտակարանից Հիսուսը Հոր Աստծո կատարողն էր արարչագործության մեջ (հմմտ. Հովհ. 1:3,10; Հռ. 11:36; I Կոր. 8:6; Կող. 1:15; Եբր. 1:2; 2:10):

D. ՅԵՀՈՎԱ

1. Այս անունը արտացոլում է աստվածությունը որպես Ուխտի Աստված, Աստված որպես Փրկիչ, Ազատարար: Մարդիկ խախտում են ուխտը, բայց Աստված հավատարիմ է մնում Իր խոսքին, խոստմանը, ուխտին (հմմտ. Սաղ. 103):

Այս անունն առաջին անգամ հանդիպում է *Էլոհիմ* բառի հետ միասին Ծննդ. 2:4: Ծննդ. 1-2 գլուխներում չկան արարչագործության երկու նկարագրություն, այլ դրա երկու կարևոր կողմերը (1) Աստված որպես տիեզերքի Արարիչ (ֆիզիկական աշխարհի) և (2) Աստված որպես մարդկության զարմանալի Արարիչ: Ծննդ. 2-4 գլուխներում սկսվում է հատուկ հայտնությունը մարդկության արտոնյալ դիրքի և նպատակի մասին արարչագործության մեջ, ինչպես նաև մեղքի խնդիրն ու ըմբոստությունն Աստծո դեմ այս եզակի դիրքից ելնելով:

2. Ծննդ. 4:26 ասվում է «մարդիկ սկսեցին կանչել ՏԻՐՈՋ անունը» (ՅԵՀՈՎԱ): Բայց, Ելից 6:3-ի իմաստը ենթադրում է, որ վաղ ուխտի մարդիկ (նախահայրերն ու նրանց ընտանիքները) ճանաչում էին Աստծուն որպես *Էլ-Շադայ:* ՅԵՀՈՎԱ անունը բացատրվում է միայն մեկ անգամ Ելից 3:13-16, բացի. h. 14-ից: Ինչևէ, Մովսեսի գրվածքներում կոնկրետ բառերը հաճախ բացատրվում են լայնատարած բառախաղերով, և ոչ թե ստուգաբանորեն/ etymologies (հմմտ. Ծննդ. 17:5; 27:36; 29:13-35): Գոյություն են ունեցել մի քանի թեորիաներ այս անվան նշանակության վերաբերյալ (վերցված է IDB, հատ. 2, էջ. 409-11)

ա. արամերեն արմատից, «ցուցաբերել կրքոտ սեր»
բ. արամերեն արմատից, «փչել» (ՅԵՀՈՎԱ ինչպես փոթորիկի Աստված)

գ. Ուգարիթական (քանանական) արմատից «խոսել»
դ. փյունիկյան ձեռագրից, ՊԱՃԱՌԱԿԱՆ ԴԵՐԲԱՅ», որը նշանակում է «Նա, ով պահում է, ուժ է տալիս» կամ «Նա, ով հաստատում է»
ե. եբրայերեն *Qal* (*Քվալ* ) բառի ձևից « մեկը, Ով կա, գոյություն ունի», կամ «մեկը, Ով ներկա է» (ապառնի ժամանակով, «Մեկը, ով կլինի»)
զ. եբրայերեն *Hiphil* (*Հիփհիլ* ) բառի ձևից « մեկը, որը հանդիսանում է գոյության աղբյուրը»
է. եբրայերեն արմատից «ապրել» (օր., Ծննդ. 3:20), որը նշանակում է «հավիտյան կենդանի», մեկը, որ իրապես կենդանի է»
ը. Ելից. 3:13-16 կոնտեքստից ԱՆՑՅԱԼ ԱՆԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ օգտագործվում է ԿԱՏԱՐՅԱԼ ԺԱՄԱՆԱԿՈՎ, «ես կշարունակեմ լինել այն, ինչ եղել եմ ինչ որ մի ժամանակ» կամ «ես կշարունակեմ լինեմ այն, ինչ միշտ եղել եմ» (հմմտ. J. Wash Watts, *A Survey of Syntax in the Old Testament*, էջ. 67-Ջ.Վոշ Վոթս, «Հին Կտակարանի Շարահյուսության Ակնարկը»

ՅԵՀՈՎԱ բառի լրիվ անվանումը հաճախ հանդես է գալիս հապավումով կամ հնարավոր է որպես բնագրի ձև
(1) *Yah* (օր., *Hallelu – yah, Հալելու-յա*)
(2) *Yahu (Յահու)* (անուններում, օր., *Isaiah, Եսայա)*
(3) *Yo (յո)* (անուններում, օր., *Joel, Յովել*)

3. Ուշ հուդայականության ժամանակաշրջանում այս ուխտի անունը դարձավ այնքան սուրբ (the tetragrammaton), որ հրեաները վախենում էին այն նույնիսկ արտասանել, որ հանկարծ պատվերը չդրժեին Ել. 20:7; 2 Օրին. 5:11; 6:13: Ուստի նրանք փոխարինեցին եբրայերեն բառը «սեփականատեր», «տեր», «ամուսին», «տիրակալ»—*adon* (ադոն) կամ *adonai* (ադոնայ) («իմ տեր»): Հին Կտակարանի ընթերցանության ժամանակ, երբ հասնում էին ՅԵՀՈՎԱ բառին, նրանք դրա փոխարեն արտասանում էին «Տեր»: Դրա համար ՅԵՀՈՎԱ բառի փոխարեն անգլերեն թարգմանություններում գրված է ՏԵՐ:

4. Նաև, ինչպես նաև Էլ-ի հետ, ՅԱՀՎԵ անունը հաճախ կապակցվում է ուրիշ բառերի հետ՝ տալով հատուկ նշանակություն Իսրայելի Ուխտի Աստծո որոշակի առանձնահատկությանը: Քանի որ այսպիսի տարբերակները շատ են, ահա դրանցից մի քանիսը;
ա. *YHWH - Yireh* (ՅԱՀՎԵ - Յիրե) (ՅԱՀՎԵ-ն կպահովվի, կհայթայթի), Ծննդ. 22:14
բ. *YHWH - Rophekha* (ՅԱՀՎԵ - Ռոֆեքխա) (ՅԱՀՎԵ-ն քո բժիշկն է), Ել. 15:26
գ. *YHWH - Nissi* (ՅԱՀՎԵ - Նիսսի) (ՅԱՀՎԵ իմ դրոշակն է), Ել. 17:15
դ. *YHWH - Meqaddishkem* (ՅԱՀՎԵ-Մեքադիշկեմ) (ՅԱՀՎԵ- Նա, որ քեզ սրբացնում է), Ել. 31:13
ե. *YHWH - Shalom* (ՅԱՀՎԵ - Շալոմ) (ՅԱՀՎԵ-ն Խաղաղություն է), Դատ. 6:24
զ. *YHWH - Sabbaoth* (ՅԱՀՎԵ - Սաբաովթ) (ՅԱՀՎԵ- Զորաց Աստված), I Թագ. 1:3,11; 4:4; 15:2; հաճախ մարգարեական գրքերում)
է. *YHWH - Ro'I* (ՅԱՀՎԵ - Ռո'ի) (ՅԱՀՎԵ-ն իմ հովիվն է), Սաղ. 23:1
ը. *YHWH - Sidqenu* (ՅԱՀՎԵ - Սիդկենյու) (ՅԱՀՎԵ-ն մեր արդարությունը), Եր. 23:6
թ. *YHWH - Shammah* (ՅԱՀՎԵ - Շամմահ) (ՅԱՀՎԵ-ն այնտեղ է), Եզ. 48:35

- **1:5 «մենք»** Պողոսը ոչ մի անձի անուն չի նշում իր ներածության մեջ ինչպես նա հաճախ

անում է մյուս թղթերում: Այս առաջին արտահայտությունը վերաբերվում է Դամասկոսի ճանապարհին Պողոսի դարձի գալուն և ծառայության նշանակմանը (հմմտ. Գործ.9), որը խստիվ ենթադրում է/ակնարկում է խմբագրական օգտագործումը «մենք»-ի:

- **«ընդունեցինք շնորհք և առաքելություն»** Պողոսը հաստատում է ոչ միայն փրկության պարգևը Քրիստոսի միջոցով, այլ նաև դրա հետ կապված հեթանոսներին առաքյալ լինելու կոչումը: Այս ամենը տեղի ունեցավ վայրկենական Դամասկոսի ճանապարհին (հմմտ. Գործ.9): Դա արժանիք չէր այլ նպատակասլաց շնորհք.

- **«հավատքի հնազանդության համար»** Սա երկրորդ անգամն է օգտագործվում *eis* նպատակային կոնտեքստում (հմմտ. 1հ.): Ավետարանը վերականգնում է Աստծո պատկերը մարդու մեջ Հիսուսի վրա ունեցած հավատքի միջոցով: Սա թույլ է տալիս, որ Աստծո բուն նպատակը երևա, որը …. հաղորդակցությունը այն մարդկանց հետ, ովքեր անդրադարձնում են Նրա կերպարը (հմմտ. 7հ):

| | |
|---|---|
| NASB, JB | “the obedience of faith” |
| NKJV | “for obedience to the faith” |
| NRSV | “to bring about the obedience of faith” |
| TEV | “to believe and obey” |

- **Արևելահայերեն «հավատքի հնազանդության համար»**
  **Արևմտահայերեն «հավատքի հնազանդության համար»**

Սա առաջին օգտագործումն է “հավատք” հիմնական տերմինի հռոմեացիս թղթում: Այս գլխում և գրքում երեք տարբեր կերպերով է օգտագործվում:

1. Համար 5. Այն օգտագործվում է ճշմարտության մարմին կամ վարդապետություններ կապված Հիսուսի և քրիստոնեական կյանքի հետ (հմմտ. Գործք 6:7; 13:8; 14:22; 16:5; Հռ. 14:1; 16:26; Գաղ. 1:23; 6:10; Հուդա 3,20):
2. Համար 8. Այն օգտագործված է անձնական վստահություն Հիսուսի վրա առումով: Անգլերեն «հավատալ», «հավատք» և «վստահություն» տերմինները թարգմանվում են հունարեն մեկ բառով (*pistis/pisteuo*): Ավետարանը թե գաղափարային (վարդապետական) և թե անձնական (հմմտ. 16հ.; Հովհ. 1:12; 3:16):
3. Համար 17. Այն օգտագործվում է իր Հին Կտակարանային իմաստով վստահության

արժանի, հավատարմություն, կամ հուսալիություն: Սա Ամբակ. 2:4 նշանակությունն է: Հին կտակարանում չկար զարգացրած վարդապետություն հավատքի մասին, բայց հավատքի կյանքի վերաբերյալ օրինակ օրինակի հետևից (հմմտ. Աբրահամ Ծննդ. 15:6); ոչ կատարյալ հավատք սակայն պայքարող հավատք (հմմտ. Եբր. 11): Մարդու հույսը ճիշտ հավատալու կամ կատարելու կարողությունը չէ, այլ Աստծո կերպարի մեջ է: Միայն Աստված է հավատարիմ:

Կան մի շարք գործողություններ, որոնք կարող են կոչվել փրկության իրադարձություն: (1) ապաշխարություն (հմմտ. Մարկ.1:15; Ղուկ.13:3,5; Գործք 3:16,19; 20:21); (2) հավատք (հմմտ. Հովհ.1:12; 3:16; Գործք 16:31); (3) հնազանդություն (հմմտ. 2 Կորն.9:13; 10:5; 1 Պետ. 1:2,22); և (4) համբերատարություն (հմմտ. 2 Կորնթ. 4:1,16; Գաղ. 6:9; 2 Թես. 3:13);: Սրանք Նոր Ուխտի պայմաններն են: Մենք պետք է ընդունենք և շարունակենք ընդունել Աստծո առաջարկած զոհը Քրիստոսով (հմմտ. 16ի.; Հովհ. 1:12):

| | |
|---|---|
| **NASB** | **"for His name's sake"** |
| **NKJV** | **"for His name"** |
| **NRSV** | **"for the sake of his name"** |
| **TEV** | **"for the sake of Christ"** |
| **NJB** | **"for the honor of his name"** |

- **Արևելահայերեն « նրա անունի համար »**

  **Արևմտահայերեն «անոր անունին համար»**

  Տես Հատուկ Թեմա 10:9

| | |
|---|---|
| **NASB, NRSV** | **"among all the Gentiles"** |
| **NKJV** | **"among all nations"** |
| **TEV** | **"people of all nations"** |
| **JB** | **"to all pagan nations"** |

- **Արևելահայերեն «ամեն ազգերի մէջ »**

  **Արևմտահայերեն «բոլոր ազգերուն մեջ»**

Սա տիեզերական ավետարան է: Աստծո փրկության խոստումը Ծննդոց 3:15-ում ներգրավում է ամբողջ մարդկությունը: Հիսուսի փոխարինող մահը ներգրավում է Ադամի բոլոր ընկած որդիների (հմմտ. Հովհ. 3:16; 4:42; Եփես. 2:11-3:13; 1 Տիմ. 2:4; 4:10; Տիտոս 2:11; 2 Պետ. 3:9): Պողոսը՝ Աստծո ավետարանը հեթանոսներին քարոզելը, համարում է հատուկ կանչ (հմմտ. Գործք 9:15; 22:21; 26:17; Հռ. 11:13; 15:16; Գաղ. 1:16; 2:29; Եփես. 3:2,8; 1 Տիմ. 2:7; 2 Տիմ.

4:17):

**1:6 «դուք էլ»** Պողոսը արտակարգ օրինակ էր (եկեղեցուն հալածողը) Աստծո շնորհիքի, բայց նրա ընթերցողները նույնպես Աստծո շնորհիքի անարժան օրինակներ էին:

| | |
|---|---|
| **NASB, NKJV** | **"the called of Jesus Christ"** |
| **NRSV** | **"who are called to belong to Jesus Christ"** |
| **TEV** | **"whom God has called to belong to Jesus Christ"** |
| **JB** | **"by his call belong to Jesus Christ"** |

- **Արևելահայերեն « Յիսուս Քրիստոսի կանչուածներն էք »**

  **Արևմտահայերեն « Յիսուս Քրիստոսի կանչուածներն էք »**

Սա հնարավոր է (1) բառախաղ է «եկեղեցի» բառի , որը նշանակում էր «կանչվածներ» կամ «հավաքվածներ»; (2) վերաբերում է աստվածային ընտրությանը (հմմտ. Հռ. 8:29-30; 9:1; Եփես. 1:4, 11; 3:21; 4:1,4):

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԿԱՆՉՎԱԾ**

Հավատացյալների կանչը և ընտրությունը Աստծո ձեռքին է: Աստված է ընտրում, կանչում դեպի Իրեն (հմմտ. Հովh.6:44, 65; 15:16; 1Կորն.1:12; Եփես. 1:4-5,11): «Կանչ» տերմինը օգտագործված է աստվածաբանական մի քանի իմաստով.

Ա. Մեղավորները կանչված են փրկության Աստծո շնորհիքով Քրիստոսի կատարած-ավարտված գործի միջոցով և Հոգու համոզելովը (*kletos*, հմմտ. Հռ. 1:6-7; 9:24, որը աստածաբանորեն նման է 1Կորն.1:1-2 և 2 Տիմ. 1:9; 2 Պետ. 1:10):

Բ. Մեղավորները կանչված են Տիրոջ անունով փրկվելու (epikaleY, հմմտ. Գործք 2:21; 22:16; Հռ.10: 9-13): Այս դրույթը հրեական պաշտամունքի խոսվածքի ոճ է:

Գ. Հավատացյալները կանչված են քրիստոսանման կյանքեր ապրելու (*klesis,* հմմտ. 1Կորն.1:26; 7:20; Եփես. 4:1; Փիլ. 3:14; 2 Թես.1:11; 2 Տիմ. 1: 9):

Դ. Հավատացյալները կանչված են ծառայության (հմմտ. Գործք 13:2; 1Կորն.12:4-7; Եփես. 4:1):

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 1:7**
1 [7] Ձեզ ամենիդ՝ որ Հռովմումն էք՝ Աստուծո սիրելիներիդ՝ կանչուած սուրբերիդ, շնորհք լինի ձեզ եւ խաղաղութիւն Աստուածանից՝ մեր Հօրիցը եւ Տէր Յիսուս Քրիստոսիցը:

**NASB (UPDATED) TEXT: 1:7**
[7]**to all who are beloved of God in Rome, called *as* saints: Grace to you and peace from God our Father and the Lord Jesus Christ.**

**1:7 «Աստուծո սիրելիներիդ»** Այս արտահայտությունը հաճախ օգտագործվում էր Հիսուսի համար (հմմտ. Մաթ. 3:17; 17:5): Հիմա յան օգտագործված էր եկեղեցու համար Հռոմում:

Սա ցույց է տալիս Աստծո սիրո խորությունը նրանց համար, ովքեր վստահում են Իր Որդուն: Այս տեսակ փոխանցումը կարող ենք տեսնել Եփես. 1:20 (Աստծո գործողությունները Հիսուսի անունից) և 2:5-6 Հիսուսի գործողությունները հավատացյալների անունից):

- **«Հռովմում»** Պողոսը չի հիմնել այս եկեղեցին: Ոչ ոք չգիտե թե ով է հիմնադիրը: Հռոմեացիս թուղթը իրեն ներկայացնում է եկեղեցու, որը արդեն հիմնված էր: Հռոմեացիս թուղթը պողոսի ամենազարգացված ներկայացումն է ավետարանի , որը նա քարոզել է: Սա տեղական իրավիճակի կողմից ամենաքիչ ներգործվածն է, չնայած որ այնտեղ գոյություն ուներ լարվածություն Հրեա և հեթանոս հավատացյալների միջև, որոնց նա դիտողություն է անում ամբողջ նամակի մեջ:

| | |
|---|---|
| **NASB** | **"called *as* saints"** |
| **NKJV, NRSV, JB** | **"called to be saints"** |
| **TEV** | **"called to be his own people"** |

- **Արևելահայերեն** « կանչուած սուրբերիդ,»
- **Արևմտահայերեն** «սուրբ ըլլալու կանչուածներուդ»

«Սրբեր» տերմինը վերաբերվում է Քրիստոսի մեջ եղող հավատացյալներին, ոչ թե նրանց անմեղությանը: Այն նաև կարող է նկարագրել նրանց քրիստոսանման լինելու առաջընթացը: Տերմինը միշտ ՀՈԳՆԱԿԻ էր բացի Փիլ. 4:21: Ինչևէ,նույնիսկ այս կոնտեքստում այն ընդհանուր է: Քրիստոնյա լինել նշանակում է լինել համայնքի, ընտանիքի, մարմնի մաս:

Համար 1-ը ցույց է տալիս , որ Պողոսը կանչված էր առաքյալ լինելու: Հավատացյալները «Հիսուս Քրիստոսի կանչվածներ» -ն են համար 6: հավատացյալները նաև կոչվում են «սուրբեր» համար 7: Այս «կանչ»ը Նոր Կտակարանի ձև է հաստատելով Աստծո նախաձեռնող նախապատվության ճշմարտությունը: Ոչ մեկ ընկած մարդ երբևէ իրեն չի կոչել (հմմտ. 3:9-13; Ես. 53:6; 1 Պետ.2:25): Աստված է միշտ նախաձեռնությունը վերցնում (հմմտ. Հովհ. 6;44, 65; 15:16): Նա միշտ ուխտը մեզ է բերում: Սա մեր փրկության ճշմարտությունն է (մեզ վերագրած արդարությունը կամ օրինական դիրքը, բայց նաև մեր շնորհալիությունը արդյունավետ ծառայության համար (հմմտ. 1 Կորն. 12:7,11) և մեր քրիստոնեական կյանքերը:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՍՈՒՐԲԵՐ**

Սա հունարեն համարժեքն է եբրայերեն *kadash* բառի, որն ունի հիմնական իմաստ ինչ-որ մեկին, ինչ որ մի բան կամ ինչ որ մի տեղ մի կողմ դնել, առանձնացնել Եհովայի բացառիկ օգտագործման համար: Այն ցույց է տալիս անգլերեն «սուրբ» (sacred) գաղափարը: Եհովան առանձին է մարդուց Իր բնությամբ (հավիտենական ոչ-ստեղծված Հոգի) և Նրա կերպարը (բարոյական կատարելություն): Նա է չափանիշը, որով չափվում և դատվում են մնացած բոլորը: Նա գերազանցն է, Սուրբը:

Աստված ստեղծեց մարդկանց հաղորդակցվելու համար, բայց անկումը (Ծնն. 3) պատճառ դարձավ բարոյական և հարաբերության խոչընդոտի՝ Սուրբ Աստծո և մեղավոր մարդկության միջև, Աստված ընտրեց վերականգնել Իր գիտակից ստեղծագործությունը; ուստի, Նա կոչ է անում Իր ժողովրդին «սուրբ» լինել (հմմտ. Ղևտ.11:44; 19:2; 20:7,26; 21:8): Եհովայի հետ ունեցած հավատքի հարաբերությունը Իր ժողովուրդը սրբացավ իրենց Նրա վրա ունեցած ուխտի հիման վրա, բայց նաև կանչված են սուրբ կյանքով ապրելու (հմմտ. Մաթ. 5:48).

Այս սուրբ կյանքը հնարավոր է, որովհետև հավատացյալները ամբողջությամբ ընդունված են և ներված՝ Հիսուսի կյանքի և գործի միջոցով և Սուրբ Հոգու ներկայությունը նրանց մտքերում և սրտերում է: Սա հաստատում է պարադոքսալ իրավիճակը

1. սուրբ լինել Քրիստոսի վերագրված արդարությամբ
2. կանչված ապրելու սուրբ կյանքով՝ Հոգու ներկայության պատճառով

Հավատացյալները «սուրբեր» են (*hagioi*) որովհետև մեր կյանքերում ներկա է (1) Սուրբի կամքը (Հայրը); (2) Սուրբ Որդու գործը (Հիսուս); և (3) Սուրբ Հոգու ներկայությունը:

Նոր Կտակարանտ սուրբերը բառը միշտ ներկայացնում է ՀՈԳՆԱԿԻ թվով (բացի մի տեղից Փիլ. 4:12, բայց նույնիսկ հետո կոնտեքստը այն դարձնում է ՀՈԳՆԱԿԻ): Փրկված լինել նշանակում է ընտանիքի, մարմնի, շինության մաս լինել: Աստվածաշնչյան հավատքը սկսվում է անձնական ընդունումով, բայց արդյունքում լինում է համագործակցող հաղորդակցություն: Մենք ամենքս ունենք պարգև (հմմտ. I Կոր. 12:11) առողջություն, աճ և բարեկեցություն Քրիստոսի մարմնի - եկեղեցին (հմմտ. I Կոր. 12:7). Մենք փրկված ենք ծառայելու համար: Սրբությունը ընտանեկան առանձնահատկություն է:

«

խոսքն է: Սա ավանդական հունարեն «ողջույն» (*charein*) տերմինի բառախաղ է և եզակի քրիստոնեական տերմին «շնորհք» (*charis*). հնարավոր է Պողոսը միացնում է այս հունարեն բացման խոսքը եբրայերեն ավանդական ողջունի հետ *Shalom* կամ "խաղաղություն." Ինչևէ, սա միայն ենթադրություն է: Աստվածաբանական շնորհքին միշտ նախորդում է խաղաղությունը:

**«մեր Հօրիցը եւ Տէր Յիսուս Քրիստոսիցը»** Սովորաբար Պողոսն օգտագործում է միայն մեկ ՆԱԽԴԻՐ երկու անունների համար (հմմտ. I Կոր. 1:3; Գաղ. 1:3; Եփ. 1:2; Փիլ. 1:2; II Թես. 1:2; I Տիմ. 1:1; II Տիմ. 1:2; Տիտոս 1:4): Սա քերականորեն կապակցող Երրորդության այս երկու Անձերի իր ձևն էր Սա ընդգծում էր Հիսուսի աստվածությունն ու հավասարությունը:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՀԱՅՐ**

Հին Կտակարանը ներկայացնում է մտերմիկ ընտանեկան փոխաբերություն Աստված որպես Հայր;

1. Իսրայել ազգը հաճախ նկարագրվում է որպես Եհովայի «որդի» (հմմտ. Ովս. 11:1; Մաղ. 3:17)
2. նույնիսկ ավելի շուտ 2 Օրինացում օգտագործվում է Աստված որպես Հայր նմանությունը (1:31)
3. 2 Օրինաց 32 Իսրայելը կոչվում է «իր որդիները» իսկ Աստված կոչվում է «ձեր հայրը»
4. այս նմանությունը հաստատվում է Սաղ. 103:13 և զարգանում Սաղ. 68:5 (որբերի հայրը)
5. այն ընդունված էր մարգարեություններում (հմմտ. Ես. 1:2; 63:8; Իսրայելը որպես որդի, Աստված որպես Հայր, 63:16; 64:8; Եր. 3:4,19; 31:9):

Հիսուսը խոսեց արամերեն, որը նշանակում է, որ շատ տեղերում, որտեղ հայտնվում է «Հայր» բառը, հունարենով, *Pater,* այն կարող է վերաբերել արամերեն *Abba* (հմմտ. 14:36): Այս հայտնի տերմինը «Daddy» կամ «Papa» անդրադարձնում է Հիսուսի մտերմությունը Հոր հետ; Սա հայտնելով Իր հետևորդներին նաև քաջալերում է մեզ մեր մտերմությունը Հոր հետ: «Father» տերմինը օգտագործվում էր միայն Հին Կտակարանում Եհովայի համար, բայց Հիսուսն այն օգտագործում է հաճախ: Սա մեծ հայտնություն է մեր նոր հարաբերությունը Աստծո հետ Քրիստոսի միջոցով:

**NASB (UPDATED) TEXT: 1:8-15**

**[8]First, I thank my God through Jesus Christ for you all, because your faith is being proclaimed throughout the whole world. [9]For God, whom I serve in my spirit in the *preaching of the* gospel of His Son, is my witness *as to* how unceasingly I make mention of you, [10]always in my prayers making request, if perhaps now at last by the will of God I may succeed in coming to you. [11]For I long to see you so that I may impart some spiritual gift to you, that you may be established; [12]that is, that I may be encouraged together with you *while* among you, each of us by the other's faith, both yours and mine. [13]I do not want you to be unaware, brethren, that often I have planned to come to you (and have been prevented so far) so that I may obtain some fruit among you also, even as among the rest of the Gentiles. [14]I am under obligation both to Greeks and to barbarians, both to the wise and to the foolish. [15]So, for my part, I am eager to preach the gospel to you also who are in Rome.**

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ: 1:8-15**
[8]Առաջ գոհանում եմ Աստուածանից Յիսուս Քրիստոսի ձեռովը ձեր ամենի համար.
որ ձեր հաւատքը բոլոր աշխարհքի մէջ պատմվում է: [9] Որովհետեւ Աստուած ինձ վկայ
է, որին ես պաշտում եմ իմ հոգովը նորա Որդու աւետարանումը, թէ ինչպէս անդադար
ձեզ յիշում եմ: [10] Ամեն ժամանակ իմ աղօթքներումն աղաչելով՝ որ լինի թէ մի անգամ
յաջուղի ինձ՝ Աստուծոյ կամքովը ձեզ մօտ գալ: [11] Որովհետեւ շատ ցանկանում եմ ձեզ
տեսնել, որ մի հոգեւոր շնորհք հաղորդեմ ձեզ ձեր հաստատուելու համար. [12] Այսինքն՝
որ ձեզ հետ մխիթարուիմ մեր փոխադարձ՝ իմ եւ ձեր հաւատքի միջոցով: [13] Եղբարք,
չեմ կամենում որ դուք չգիտենաք, թէ շատ անգամ միտքս դրի որ ձեզ մօտ գամ, (թեև
մինչեւ հիմա արգիլուեցայ.) որ ձեր միջումն էլ պտուղ ունենամ՝ ինչպէս եւ ուրիշ
հեթանոսների մէջ:[14] Որովհետեւ ես Յոյներին եւ Բարբարոսներին, իմաստուններին եւ
անմիտներին պարտական եմ: [15] Այնպէս՝ իմովսանն յօժար եմ ձեզ էլ, որ Հռովմումն էք՝
աւետարանը քարոզել:

**1:8 «Առաջ»** Այս կոնտեքստում «առաջ» նշանակում է «սկզբից» կամ «Ես պետք է սկսեմ» (թարգմանությունը Ջ. Բ. Փիլիպսի J. B. Phillips):

▣ **«գոհանում եմ Աստուածանից Յիսուս Քրիստոսի ձեռովը»** Պողոսը, որպես կանոն, իր աղոթքներն ուղղում է Աստծուն Հիսուս Քրիստոսի միջոցով: Հիսուսն է մեր միակ ճանապարհը Աստծուն մոտենալու: Տես Հատուկ Թեմա; Պողոսի փառաբանության և գոհության աղոթքները 7:25.

▣ **«ձեր ամենի համար»** Այս «ամենի» օգտագործումը ինչպես 7հ., հնարավոր է անդրադարձնում է նախանձն ու կոնֆլիկտը հրեա հավատացյալ առաջնորդների, որոնք փախան Հռոմ Ներոնի հրովարտակից և համազոր հավատացյալ հեթանոս առաջնորդների միջև , որոնք փոխարինել էին նրանց մի քանի տարի: Հռոմ. 9-11 հնարավոր է ուղված է այս նույն խնդրին:

Այն նաև հնարավոր է, որ այս արտահայտությունը ուղղված է «տկարին» և «ուժեղին» Հռ. 14:1-15:13. Աստված սիրում է Հռոմի ամբողջ եկեղեցուն և Նա հավասարապես է նրանց սիրում:

▣ **« որ ձեր հաւատքը բոլոր աշխարհքի մէջ պատմվում է»** Հռոմ. 16:19 ակնարկ է անում նույն ճշմարտությունը: Սա պարզ արևելյան չափազանցություն էր (հիպերբոլա) հռոմեական աշխարհին վերաբերող (հմմտ. I Թես. 1:8):

**1:9 «Աստուած ինձ վկայ է»** Պողոսը երդում էր անում Աստծո անունով (հմմտ. 9:1; II Կոր. 1:23; 11:10-11,31; 12:19; Գաղ. 1:20; I Թես. 2:5): Սա իր ճշմարիտ լինելը հաստատելու իր հրեական ձևն էր:

▣ **« իմ հոգովը »** Սա լավ օրինակ է *pneuma*-ի օգտագործման մարդու հոգու հետ կապված (հմմտ. 8:5,10,16; 12:11) օգտագործված մարդու կյանքի իմաստով (այն է, շունչ, եբրայերեն *ruach*, հմմտ. Ծննդ. 2:7):

**1:10 «Ամեն ժամանակ իմ աղօթքներումն աղաչելով»** Պողոսը չի հիմնել այս եկեղեցին, բայց նա շարունակաբար աղոթում էր նրանց համար (հմմտ. II Կոր. 11:28), ինչպես նա անում էր բոլոր իր եկեղեցիների համար: Տես հատուկ Թեմա; Բարեխոսական Աղոթք 8:26. Ինչևէ, Պողոսն ուներ շատ ընկերներ և գործընկերներ հռոմեական եկեղեցում ինչպես հստակ ցույց է տալիս 16-րդ գլուխը:

▣ **« որ լինի թէ»** Սա ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է, որը ընդունվում է որպես ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակների համար: Պողոսը պլանավորեց այցելել հռոմ Իսպանիա գնալու ճանապարհին (հմմտ. 15:22-24): Հավանական է նա երկար մնալու մտադրություն չուներ: Պողոսը միշտ նոր դաշտ էր փնտրում, որտեղ ոչ ոք չէր գործել (հմմտ. 15:20; II Կոր. 10:15,16): Հնարավոր է, որ Հռոմեացիս թղթի նպատակներից մեկ դրամական միջոցներ խնդրելն էր իր Իսպանիա միսիոներական ճանապարհորդության համար (հմմտ. 15:24):

▣ **« մի անգամ յաջողի ինձ՝ Աստուծոյ կամքովը ձեզ մօտ գալ »** Սա զուգահեռվում/ համեմատվում է 13հ. և 15:32: Պողոսը չէր կարծում, որ իր կյանքը և ճամփորդության ծրագրերը պատկանում էին իրեն, այլ՝ Աստծուն (հմմտ. Գործք 18:21; I Կոր. 4:19; 16:7): Տես Հատուկ Թեմա 12:2.

**1:11 « Որովհետեւ շատ ցանկանում եմ ձեզ տեսնել»** Սա զուգահեռ է 15:23: Երկար ժամանակ պողոսն ուզում էր հանդիպել Հռոմի հավատացյալների հետ: (հմմտ. Գործք 19:21)

▣ **« որ մի հոգեւոր շնորհք հաղորդեմ ձեզ»** «հոգևոր շնորհք/պարգև» արտահայտությունը օգտագործվում էր հոգևոր խորաթափանցության կամ օրհնության իմաստով (հմմտ. 11:29; 15:27): Պողոսը իրեն համարում է կանչված առաքյալ հեթանոսների համար (հմմտ. 15հ.):

▣ **«ձեր հաստատուելու համար»** Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ԱՆՈՐՈՇ ԴԵՐԲԱՅ *histēmi*. Տես Հատուկ Թեմա 5:2.

**1:12** Սա քրիստոնյա հաղորդակցության նպատակն է: Պարգևները հավատացյալների համար էին համայնքում ծառայության համար: Հավատացյալները օժտված են պարգևներով ընդհանուրի լավի համար (հմմտ. I Կոր. 12:7): Բոլոր պարգևները պատշաճ են: Բոլոր պարգևները տրվում են Հոգու կողմից փրկության պահին (հմմտ. I Կոր. 12:11): Բոլոր հավատացյալները կանչված են, պարգևներով օժտված, ծառայող (հմմտ. Եփ. 4:11-12): Պողոսը պարզ հաստատում է իր առաքյալ լինելու հեղինակությունը, բայց նաև մեծ կարևորությունը՝ հավատացյալների փոխադարձ կախվածությունը եկեղեցում: Հավատացյալները մեկը մյուսի կարիքն ունեն:

**1:13 « Եղբարք, չեմ կամենում որ դուք չգիտենաք,»** Սա իդիոմ/ոճ է, որը Պողոսը հաճախ օգտագործում է կարևոր մտքերը ներկայացնելու համար (հմմտ. 11:25; I Կոր. 10:1; 12:1; II Կոր. 1:8; I Թես. 4:13): Սա նման է Հիսուսի «Ամեն, ամեն/ճշմարիտ, ճշմարիտ» գրական նպատակին:

▣ **«թեև մինչեւ հիմա արգիլուեցայ.»** Սա ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ -ի բայ է: Այս նույն արտահայտությունը հանդիպում է I Թես. 2:18 որտեղ Սատանան է կատարողը/խափանողը: Պողոսը հավատում էր, որ իր կյանքը առաջնորդվում էր Աստծո կողմից, բայց խզվում էր Սատանայի կողմից: Ինչ-որ ձևով երկուսն էլ ճիշտ են (հմմտ. Հոբ 1-2; Դան. 10): Այս տերմինի առկայությունը 15:22-ում առընչվում էր արգելքին Պողոսի միսիոներական գործում արևելյան Միջերկրականի տարածքում, որը դեռ ամբողջական չէ:

▣ **« որ ձեր միջումն էլ պտուղ ունենամ »** Այս կոնտեքստում «պտուղ» կարող է վերաբերել դարձի եկողներին, բայց Հովհ. 15:1-8 և Գաղ. 5:22 այն վերաբերում է քրիստոնեայի հասունությանը: Մաթ. 7 ասում է «իրենց պտուղներիցը ճանաչեցեք նրանց», բայց այն չի սահմանում պտուղ տերմինը: Լավագույն զուգահեռը/համանմանությունը Փիլ. 1:22, որտեղ Պողոսն օգտագործում է այս նույն գյուղատնտեսական փոխաբերությունը:

**1:14 «պարտական եմ»** Պողոսը մի քանի անգամ օգտագործում է այս տերմինը Հռոմեացիս թղթում:

1. Պողոսը պարտավորված է քարոզել ավետարանը բոլոր հեթանոսներին:
2. Պողոսը պարտական չէ «մարմնին» (8:12)
3. Հեթանոս եկեղեցին պարտավորված է օգնել մայր եկեղեցուն Երուսաղեմում (15:27)

▣ **«Յոյներին»** Սա վերաբերում էր քաղաքակիրթ, մշակութային մարդկանց Միջերկրական ծովի շուրջ եղող: Ալեքսանդր Մեծը և նրա հետևորդները հելլենացրել էին հայտնի աշխարհը: Հռոմեացիները վերցրել և յուրացրել էին հունական մշակույթը:

▣ **«Բարբարոսներին»** Այս (*onomatopoeia*) տերմինը նշանակում էր անուս կամ անմշակույթ մարդկային խմբեր, սովորաբար հյուսիսում: Դա օգտագործվում էր այն մարդկանց համար, ովքեր չէին խոսում հունարեն: Այս խոսքը հնչում էր ինչպես «բար բար բար» հույների և հռոմեացիների համար:

▣ **« իմաստուններին եւ անմիտներին »** Հնարավոր է, որ սա զուգահեռ է հունարենում բարբարոսին, բայց և պարտադիր չէ, որ այդպես լինի: Սա կարող է վերաբերել բոլոր մարդկային խմբերի կամ անհատներին:

**NASB (UPDATED) TEXT: 1:16-17**
**[16]For I am not ashamed of the gospel, for it is the power of God for salvation to everyone who believes, to the Jew first and also to the Greek. [17]For in it *the* righteousness of God is revealed from faith to faith; as it is written, "BUT THE RIGHTEOUS *MAN* SHALL LIVE BY FAITH."**

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ: 1:16-17**
**[16]Որովհետեւ ես Քրիստոսի աւետարանը ամօթ չեմ համարում. որովհետեւ Աստուծո զօրութիւն է փրկելու համար ամեն հաւատացողին, առաջ Հրէային՝ եւ յետոյ Յոյնին: [17] Որովհետեւ Աստուծով արդարութիւնը նորանով յայտնվում է՝ հաւատքից հաւատքի մէջ. ինչպէս գրուած է թէ Արդարը հաւատքից կապրի:**

**1:16-17** 16-17hh. ամբողջ գրքի թեման են: Այս թեման ընդլայնվում և ամփոփվում է 3:21-31.

- **Արևելահայերեն** « ամօթ չեմ համարում»
- **Արևմտահայերեն** «ամօթ չեմ սեպեր»

1:16

| | |
|---|---|
| NASB, NRSV | "I am not ashamed of the gospel" |
| NKJV | "I am not ashamed of the gospel of Christ" |
| TEV | "I have complete confidence in the gospel" |
| JB | "I am not ashamed of the Good News:" |

Պողոսը կարող է ակնարկում էր Հիսուսի խոսքերը Մարկ. 8:38 և Ղուկ. 9:26: Նա չի ամաչում ավետարանի կոնտեքստից կամ դրա հետևանքով առաջացած հալածանքից (հմմտ. II Տիմ. 1:12,16,18).

I Կոր. 1:23 հրեաները ամաչում էին ավետարանից, որովհետև այն հաստատեց տառապող Մեսիա իսկ հույները, որովհետև այն հաստատեց մարմնի հարությունը:

▣ **«փրկելու»** Հին Կտակարանում, եբրայերեն տերմինը (*yasho*) հիմնականում վերաբերում էր ֆիզիկական ազատագրմանը (հմմտ. Հակ. 5:15), բայց Նոր Կտակարանում հունարեն տերմինը **(*sōzō*)** վերաբերում է հիմնականում հոգևոր ազատագրմանը (հմմտ. I Կոր. 1:18, 21). Տես Ռոբերտ Բ. Գյորդլեստոնի «Հին Կտակարանի Հոմանիշները», էջ. 124-126; (Robert B. Girdlestone, *Synonyms of the Old Testament* , pp.124-126):

▣ **Արևելահայերեն** « ամեն հաւատացողին»

**Արևմտահայերեն** «բոլոր հաւատացեալներուն»

| | |
|---|---|
| **NASB** | **“to every one who believes”** |
| **NKJV** | **“for everyone who believes”** |
| **NRSV** | **“to everyone who has faith”** |
| **TEV** | **“all who believe”** |
| **JB** | **“all who have faith”** |

Ավետարանը բոլոր մարդկանց համար է (oh, որքան եմ սիրում “ամեն ոք,” “ով որ,” “բոլոր” բառերը), բայց հավատալը ընդունելու պայմաններից մեկն է (հմմտ. Գործք 16:30-31). Մյուսը ապաշխարությունն է (հմմտ. Մարկ. 1:15; Գործք 3:16,19; 20:21). Աստված մարդկանց հետ վարվում է ուխտի պայմանով: Նա միշտ նախաձեռնում է և մշակում օրակարգ (հմմտ. Հովհ. 6:44,65): Բայց կան մի քանի փոխադարձ պայմաններ, տես ծանուցումը 1:5:

Հունարեն տերմինը, այստեղ թարգմանված “հավատալ,” կարող է նաև թարգմանվել “հավատք” կամ “վստահություն” տերմիններով: Հունարեն բառը ունի ավելի լայն իմաստ, քան որևէ մեկ անգլերեն բառ: Ուշադրություն դարձրեք, որ սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ԴԵՐԲԱՅ է: Փրկարար հավատքը շարունակական հավատք է (հմմտ. I Կոր. 1:18; 15:2; I Կոր. 2:15; I Թես. 4:14)

Բնագրում եբրայերեն տերմինը կապված “հավատք” բառի հետ ավելի վեր իմաստ ունի քան հունարեն տերմինը, որը նշանակում է կայուն վիճակ, մարդ, որը իր ոտքերը լայն բացած ամուր կանգնած է, որ հազիվ կարողանաս նրան տեղաշարժել: Հին Կատակարանի փոխաբերության

հականիշը կնշանակի «իմ ոտքերը տիղմոտ ցեխի մեջ էին» (Սաղ. 40:2), « քիչ էր մնացել ոտներս սահեին» (Սաղ. 73:2). Եբրայերեն համապատասխան արմատները *emun, emunah, aman*, փոխաբերականորեն էր օգտագործվում մեկի համար, որը հուսալի էր, հավատարի կամ վստահելի: Փրկարար հավատքը չի անդրադարձնում ընկած մարդու հավատարիմ լինելու կարողությունը, այլ Աստծո: Հավատացյալների հույսերը իրենց կարողությունների մեջ չեն այլ Աստծո կերպարի և խոստումների: Դա Նրա հուսալիությունն է, Նրա հավատարմությունը, Նրա խոստումները:

▣ **«առաջ Հրէային»** Սրա պատճառը համառոտ քննարկվում է 2:9-10 և 3 և ամբողջությամբ զարգանում 9-11 գլուխներում: Դրան հետևում է Հիսուսի միտոը/դրույթը Մաթ.. 10:6; 15:24; Մարկ. 7:27:

Սա կարող է վերաբերել այն նախանձությանը, որը կար Հռոմի եկեղեցում հրեաների և հեթանոսների միջև:

**1:17 «Աստուծով արդարութիւնը»** Այս արտահայտությունը կոնտեքստում վերաբերում է (1) Աստծո կերպարին, և (2) ինչպես է Նա այդ կերպարը տալիս մեղավոր մարդուն: Երուսաղեմ Աստվածաշնչի թարգմանությունը ունի «սա այն է ինչ հայտնում է Աստծո արդարությունը»: Չնայած սա վերաբերում է հավատացյալի բարոյական ապրելաոճին, այն հիմնականում վերաբերում է նրա օրինական դիրքին Արդար Դատավորի առջև: Աստծո արդարության մեղադրանքը ընկած, մեղավոր մարդուն, Բարեփոխումից սկսած բնութագրվել է որպես, «արդարացում հավատքով» (հմմտ. II Կոր. 5:21; Փիլ. 3:9): Սա այն համարն էր, որը փոխեց Մարտին Լյութերի կյանքն ու աստվածաբանությունը: Ինչևէ, արդարացման նպատակն է սրբացումը, Քրիստոսանմանություն, կամ Աստծո արդար կերպարը (հմմտ. Հռ. 8:28-29; Եփ. 1:4; 2:10; Գաղ. 4:19): Արդարությունը ոչ միայն օրինական վճիռ է այլ նաև սուրբ կյանք ապրելու կոչ, Աստոծ պատկերը մարդու մեջ պետք է վերականգնվի ֆունկցիոնալ առումով (հմմտ. II Կոր. 5:21):

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԱՐԴԱՐՈՒԹՅՈՒՆ**

«Արդարություն»ը այնքան վճռական/կրիտիկական թեմա է, որ Աստվածաշնչի ուսանողը ինքը պետք է իր անձնական ընդարձակ սերտողությունն անի տվյալ գաղափարի շուրջ:

Հին Կտակարանում Աստծո կերպարը բնութագրվում է որպես «ուղիղ» կամ «արդար»: Միջագետքյան տերմինը ինքնին առաջացել է գետի եղեգից, որը օգտագործվում էր որպես շինարարական գործիք պատերի կամ ցանկապատերի հորիզոնական ուժը գնահատելի/ստուգելու համար: Աստված ընտրեց տերմինը փոխաբերական իմաստով Իր բնությունը ցույց տալու համար: Նա է ուղիղ ծայրը (քանոնը) որով բոլոր բաները գնահատվում են: Այս գաղափարը հաստատում է ինչպես Աստծո արդարությունը այնպես էլ Նրա ուղիղ դատելը:

Մարդը ստեղծված էր Աստծո պատկերով (հմմտ. Ծննդ. 1:26-27; 5:1,3; 9:6): Մարդը ստեղծված էր Աստծո հետ հարաբերություն ունենալու համար: Ամբողջ արարչագործությունը բեմ կամ ֆոն/նախադրյալ Աստծո և մարդու փոխադարձ ներգործության համար: Աստված ուզում էր, որ Իր ամենաբարձր արարչագործությունը ճանաչի Իրեն, սիրի Իրեն, ծառայի Իրեն և Իր նման լինի: Մարդու հավատարմությունը/օրինապահությունը ստուգման ենթարկվեց (հմմտ. Ծննդ. 3) և առաջին զույգը ձախողվեց ստուգարքից: Սա բերեց Աստծո և մարդու միջև եղած հարաբերության պառակտմանը/խզում (հմմտ. Ծննդ. 3; Հռ. 5:12-21):

Աստված խոստացավ նորոգել և վերականգնել հաղորդակցությունը (հմմտ. Ծննդ. 3:15). Նա անում է սա Իր կամքի և և Իր Որդու միջոցով: Մարդիկ անընդունակ էին վերականգնելու ճեղքվածքը/ խախտումը (հմմտ. Հռ. 1:18-3:20):

Մարդու անկումից հետո, Աստծո առաջին քայլը վերականգնման համար ուխտի գաղափարն էր՝ հիմնված Իր հրավերքի և մարդու ապաշխարած, հավատարիմ, հնազանդ արձագանքի վրա: Անկման պատճառով մարդիկ համապատասխան գործողության անընդունակ էին (հմմտ. Հռ. 3:21-31; Գաղ. 3): Աստված պետք է նախաձեռնությունը վերցներ վերականգնելու մարդկանց քանդած ուխտը: Նա դա արեց

1. մարդուն ձրի արդարություն տալով Քրիստոսի կատարած գործի միջոցով (վերագրված/մեղադրած արդարություն):
2. ապահովելով Հոգու բնակվելը մարդու մեջ, որը բերում է արդարություն (էթիկական արդարություն)
3. վերականգնելով Եդեմի պարտեզի հաղորդակցությունը Քրիստոսի միջոցով վերականգնելով Աստծո պատկերը հավատացյալների մեջ (հմմտ. Ծննդ. 1:26-27) (հարաբերության արդարություն):

Ինչևէ, Աստված պահանջում է ուխտային պատասխան: Աստված վճռում է (այն է, ձրի տալիս) և մատակարարու/ապահովում, բայց մարդիկ պետք է արձագանքեն և շարունակեն արձագանքել

1. ապաշխարությամբ
2. հավատքով
3. հնազանդ կյանք ապրելով
4. համբերությամբ/հաստատակամությամբ

Արդարությունը, ուստի, ուխտին պատկանող է, փոխադարձ գործողություն Աստծո և Իր ամենավեհ ստեղծագործության միջև: Այն հիմնված է Աստծո կերպարի, Քրիստոսի գործի և Հոգու իրավունքի վրա, որին ամեն մի անհատ պետք է անձնապես և շարունակաբար պատշաճ/յուրահատուկ արձագանքի: Գաղափարը/հասկացողությունը կոչվում է «հավատքով արդարացում»: Գաղափարը հայտնվում է Ավետարաններում, բայց ոչ այս տերմիններով: Այն հիմնականում սահմանվում է Պողոսի կողմից, որը օգտագործում է հունարեն «արդարություն» տերմինը իր զանազան տարբերակներով ավելի քան 100 անգամ:

Պողոսը, լինելով կրթված ռաբբի, օգտագործում է *dikaiosunē* տերմինը իր եբրայերեն *SDQ* իմաստով օգտագործված Սեպտուագինդում: Հունական գրվածքներում տերմինը կապված է մեկին, որը համապատասխանում է աստվածության և հասարակության սպասումներին/ակնկալիքների: Եբրայերեն իմաստով այն միշտ կառուցված է ուխտի տերմիններով: Եհովան արդար, բարոյական Աստված է: Նա ուզում է, որ Իր ժողովուրդը արտացոլի Իր կերպարը: Փրկված մարդը դառնում է նոր արարած: Այս նորությունը բերում է աստվածպաշտության նոր ապրելակերպ (Հռոմեական Կաթոլիկ Եկեղեցին կենտրոնանում է արդարացման վրա): Քանի որ Իսրայելը թեոկրատական էր, չկար պարզ ուրվագիծ աշխարհիկի (հասարակության նորմեր) և հոգևորի (Աստծո կամք) միջև: Այս տարբերությունը արտահայտվում է եբրայերեն և հունարեն տերմիններում թարգմանվելով անգլերեն որպես «արդար/ուղիղ» (կապված հասարակության հետ) և «արդարություն» (կապված կրոնի հետ):

Հիսուսի ավետարանը (բարի լուրը) այն է, որ ընկած մարդկությունը վերականգնվի Աստծո հետ ունեցած հարաբերության մեջ: Պողոսի պարադոքսն այն է, որ Աստված, Քրիստոսի միջոցով, արդարացնում է հանցավորին: Սա իրականացվում է Հոր սիրո, ողորմության և շնորհքի միջոցով; Որդու կյանքի, մահվան և հարության միջոցով; և Հոգու սիրատեծելու և դեպի ավետարանը քաշելու միջոցով: Արդարացումը Աստծո ձրի գործն է, բայց այն պետք է աստվածպաշտությամբ արտահայտվի (Օգոստոսի վերաբերմունքը/դիրքը, որը անդրադարձնում է թե Բարեփոխման շեշտը ավետարանի ձրի լինելու վրա և թե հռոմեական Կաթոլիկի շեշտը սիրո և հավատարմության փոխված կյանքի վրա): Բարեփոխիչների համար "Աստծո արդարություն" տերմինը ՕԲՅԵԿՏԱՅԻՆ ՍԵՌԱԿԱՆ ՀՈԼՈՎ է (այսինքն, գործողություն, որով մեղավոր մարդը ընդունելի է դառնում Աստծո համար [positional սրբացում]), այնինչ կաթոլիկների համար ՍՈՒԲՅԵԿՏԻՎ ՍԵՌԱԿԱՆ ՀՈԼՈՎ, որը Աստծուն ավելի նմանվելու գործընթաց է (գործնական առաջընթացային սրբացում): Իրականության մեջ այն, անշուշտ, և նա է և նա: Իմ կարծիքով ամբողջ Աստվածաշունչը Ծննդ. 4 – Հայտ. 20, արձանագրությունն է Աստված վերականգնում է Եդեմի պարտեզի հարաբերությունը: Աստվածաշունչը սկսում է Աստված-մարդ հարաբերությունով երկրային միջավայրում (հմմտ. Ծննդ. 1-2) և Աստվածաշունչն ավարտվում է նույն միջավայրով (հմմտ. Հայտ. 21-22): Աստծո պատկերն ու նպատակը կվերականգնվի:

Վերը նշած քննարկումները ապացուցելու համար տես հետևյալ Նոր Կտակարանային հատվածները պարզաբանված հունարեն բառախմբով:

1. Աստված արդար է ( հաճախ կապվում է Աստված որպես Դատավոր)
   ա. Հռ. 3:26
   բ. II Թես. 1:5-6
   գ. II Տիմ. 4:8
   դ. Հայտ. 16:5
2. Հիսուսն արդար է
   ա. Գործք 3:14; 7:52; 22:14 (Մեսիայի տիտղոսը)
   բ. Մաթ. 27:19
   գ. I Հովհ. 2:1,29; 3:7

3. Աստծո կամքը Իր արարչագործության համար արդարությունն է
   ա. Ղևտ. 19:2
   բ. Մաք. 5:48 (հմմտ. 5:17-20)
4. Աստծո օժանդակությամբ մատակարարել և արտահայտել արդարություն
   ա. Հռ. 3:21-31
   բ. Հռ. 4
   գ. Հռ. 5:6-11
   դ. Գաղ. 3:6-14
   ե. Տրված Աստծո կողմից
      1) Հռ. 3:24; 6:23
      2) I Կոր. 1:30
      3) Եփ. 2:8-9
   զ. Հավատքով ստացած/ընդունած
      1) Հռ. 1:17; 3:22,26; 4:3,5,13; 9:30; 10:4,6,10
      2) I Կոր.5:21
   է. Որդու կատարած գործողության միջոցով
      1) Հռ. 5:21-31
      2) II Կոր. 5:21
      3) Փիլ. 2:6-11
5. Աստծո կամքն է, որ Իր հետևորդները արդար լինեն
   ա. Մաք. 5:3-48; 7:24-27
   բ. Հռ. 2:13; 5:1-5; 6:1-23
   գ. II Կոր. 6:14
   դ. I Տիմ. 6:11
   ե. II Տիմ. 2:22; 3:16
   զ. I Հովհ. 3:7
   է. I Պետ. 2:24
6. Աստված կդատի աշխարհը արդարությունով
   ա. Գործք 17:31
   բ. II Տիմ. 4:8

Արդարությունը Աստծո առանձնահատկությունն է, ճրի տրված մեղավոր մարդուն Քրիստոսի միջոցով: Դա

1. Աստծո վճիռն է
2. Աստծո պարգևն է
3. Քրիստոսի գործն է

Բայց դա նաև արդար դառնալու գործընթացն է, որը պետք է լինի եռանդուն և հաստատուն հետևողականությամբ; մեկ օր այն կավարտվի Երկրորդ Գալուստով: Աստծո հետ հարաբերությունը վերականգնվում է փրկության ժամանակ, բայց զարգանում է կյանքի ընթացքում, դառնում դեմ առ դեմ անսպասելի հանդիպում/բախում մահվան ժամանակ կամ Քրիստոսի Երկրորդ գալստյան ժամանակ:

Ահա մի լավ մեջբերում վերցված «Պողոսի Բառարանը և նրա թղթերը» գրքից» IVP հրատարակչություն ; *Dictionary of Paul and His Letters* from IVP

«Կալվինը, ավելին քան Լյութերը, ընդգծում է Աստծո արդարության հետ կապված տեսակետը: Լյութերի տեսակետը՝ կապված Աստծո արդարության հետ թվում է թե պարունակում է արդարացման/պարտքից ազատվելու տեսակետը: Կալվինը ընդգծում է հաղորդակցության սքանչելի բնությունը կամ Աստծո արդարությունը մեզ տալը» (էջ. 834):

Ինձ համար հավատացյալի հարաբերությունը Աստծո հետ ունի 3 տեսակետ
1. ավետարանը անձ է (Արևելյան Եկեղեցին և Կալվինի շեշտը/ընդգծումը)
2. ավետարանը ճշմարտություն է (Օգոստոսի և Լյութերի շեշտը/ընդգծումը)
3. ավետարանը փոխված կյանք է (Կաթոլիկ շեշտը/ընդգծումը)

Դրանք բոլորն էլ ճշմարտություն են և պետք է միասին պահվեն առողջ, հուսալի աստվածաշնչյան քրիստոնեության համար: Եթե մեկն ու մեկը ավելի է ընդգծվում կամ թերագնահատվում, խնդիրներ են առաջ գալիս:

Մենք պետք է ողջունենք Հիսուսին
Մենք պետք է հավատանք ավետարանին
Մենք պետք է հետապնդենք քրիստոսանմանությանը:

**Արևելահայերեն « հաւատքից հաւատքի մէջ »**
**Արևմտահայերեն «հաւատքէն, հաւատքի համար»**

**NASB, NKJV** **"from faith to faith"**
**NRSV** **"through faith for faith"**
**TEV** **"it is through faith, from beginning to end"**
**JB** **"it shows how faith leads to faith"**

Այս արտահայտությունը ունի երկու ՆԱԽԴԻՐՆԵՐ *ek* և *eis*, որոնք ցույց են տալիս/նշանակում են անցում/փոփոխություն կամ զարգացում: Նա օգտագործում է նույն կառուցվածքը II Կոր. 2:16 և *apo* իսկ *eis* II Կոր. 3:18. Քրիստոնեությունը պարգև է, որը պետք է լինի հատկանշական և ապրելակերպով արտահայտվի:

Այս արտահայտությունը թարգմանելու մի քանի հնարավոր տարբերակներ կան: Նոր Կտակարանի Ուիլիամսի թարգմանության մեջ այն թարգմանում է այսպես «հավատքի ձև, որը տանում է ավելի մեծ հավատքի»: Հիմնական աստվածաբանական մտքերն են (1) հավատքը Աստծուց է գալիս («հայտնվում»); (2) մարդը պետք է արձագանքի և շարունակի արձագանքել; և (3) հավատքը պետք է տանի աստվածահաճո կյանք ապրելուն:

Մի բան հաստատ է, որ Քրիստոսի վրա ունեցած «հավատքը» վճռական է (հմմտ. 5:1; Փիլ. 3:9): Աստծո առաջարկած փրկությունը պայմանավորված է հավատքի արձագանքի վրա (հմմտ. Մարկ. 1:15; Հովհ. 1:12; 3:16; Գործք 3:16,19; 20:21):

**Արևելահայերեն « Արդարը հաւատքից կապրի »**

Արևմտահայերեն «Արդարը հաւատքէն պիտի ապրի»

▣

| | |
|---|---|
| NASB | **"But the righteous man shall live by faith"** |
| NKJV | **"The just shall live by faith"** |
| NRSV | **"The one who is righteous will live by faith"** |
| TEV | **"He who is put right with God through faith shall live"** |
| JB | **"The upright man finds life through faith"** |

Սա մեջբերում էր Ամբ. 2:4, բայց ոչ թե Մասորետիկ տեքստից կամ Սեպտուագինդումից: Հին Կտակարանում «հավատ» ուներ լայն փոխաբերական իմաստ «վստահելիություն», «հավատարմություն», կամ «անձնվիրություն»: Փրկարար հավատքը հիմնված է Աստծո հավատարմության վրա (հմմտ. 3:5,21,22,25,26): Ինչևէ, մարդկային հավատարմությունը ապացույց է, որ մեկը վստահել է Աստծո պայմանին: Այս նույն Հին Կտակարանային տեքստը մեջբերված է Գաղ. 3:11 և Եբր. 10:38: Հաջորդ գրական բաժինը, Հռ.1:18-3:20, հայտնում է հավատարմության հակադրությունը Աստծուն: Օգտակար կլինի թվարկել, թե ինչպես են մի քանի ժամանակակից մեկնաբաններ հասկանում այս արտահայտությունը;

1. Վաուգհան (Vaughan): «սկսում է հավատքով և ավարտում հավատքով»
2. Հոջ (Hodge): «միայն հավատքով»
3. Բարետ (Barrett): «ոչ մի բանի հիմք այլ հավատք»
4. Նոքս (Knox): «հավատք առաջինը և վերջինը»
5. Սթեգ (Stagg): «ազնիվը հավատքով կապրի»

Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ: 1:18-23

[18]Որովհետեւ Աստուծոյ բարկութիւնն երկինքիցը յայտնվում է մարդկանց
ամեն ամբարշտութեան եւ անիրաւութեան վերայ, որ ճշմարտութիւնն
անիրաւութիւնով բռնում են: [19]Որովհետեւ Աստուծոյ գիտելիքը յայտնի է
նորանցում. որ Աստուած յայտնեց նորանց: [20]Որովհետեւ նորա աներեւոյթ բաները
աշխարհիքի սկզբիցն ստեղծուածներովն իմացուելով տեսնվում են, որ է՝ նորա
մշտնջենաւոր զորութիւնը եւ Աստուածութիւնը, այնպէս որ անպատասխան մնան:
[21]Որովհետեւ Աստուծուն ճանաչելով, նորան Աստուծոյ պես չփառաւորեցին՝ կամ
շնորհակալ չեղան. այլ իրանց մտածմունքներումն ունայնացան եւ նորանց անմիտ
սրտերը խաւարուեցան: [22]Ասելով թէ իմաստուն են՝ յիմարեցան. [23]Եւ անեղծ
Աստուծոյ փառքը փոխեցին եղծանելի մարդի եւ թռչունների եւ չորքոտանիների եւ
սողունների պատկերի նմանութեան հետ :

**NASB (UPDATED) TEXT: 1:18-23**

**[18]For the wrath of God is revealed from heaven against all ungodliness and unrighteousness of men who suppress the truth in unrighteousness, [19]because that which is known about God is evident within them; for God made it evident to them. [20]For since the creation of the world His invisible attributes, His eternal power and divine nature, have been clearly seen, being understood through what has been made, so that they are without excuse. [21]For even though they knew God, they did not honor Him as God or give thanks, but they became futile in their speculations, and their foolish heart was darkened. [22]Professing to be wise, they became fools, [23]and exchanged the glory of the incorruptible God for an image in the form of corruptible man and of birds and four-footed animals and crawling creatures.**

**1:18 «Որովհետեւ»** Տես թե քանի անգամ է օգտագործվում *gar* թեմայի մեջ 16-17hh. - երեք անգամ, իսկ հիմա այն ներկայացնում է/ծանոթացնում է Պողոսի ավետարանի առաջին միտքը (1:18-3:31), որը հակադրվում/տարբերվում է Աստծո զորությունը փրկության մեջ (1:16-17):

▣ **«Աստուծոյ բարկութիւնն»** 18-23hh. պատկերում է հեթանոս աշխարհը Պողոսի օրերում: Պողոսի հեթանոս աշխարհի բնութագրումը նաև գտնվում է հրեական գրականության մեջ (հմմտ. Սողոմոնի Իմաստությունը 13:1 և Արիստեսի նամակը, 134-38) և նույնիսկ հույն և հռոմեական բարոյագիտական գրվածքներում: Նույն Աստվածաշունչը, որը պատմում է Աստծո սիրո մասին նաև հայտնում է Նրա բարկությունը (հմմտ. 23-32; 2:5,8; 3:5; 4:15; 5:9; 9:22; 12:19; 13:4-5 hh.):

Թե բարկությունը և թե սերը մարդկային տերմիններ են, որոնք վերաբերում են Աստծուն: Դրանք արտահայտում են ճշմարտությունը, որը Աստված ունի ձև, որով Նա ուզում է, որ հավատացյալները արձագանքեն և ապրեն: Մեկի ինքնակամ մերժումը Աստծո կամքի (Քրիստոսի ավետարանը) բերում է թե ժամանակավոր հետևանքներ, ինչպես այս համարում, և թե վախճանաբանական (հմմտ. 2:5): Ինչևէ, Աստված չպետք դիտվի որպես պատժիչ: Դատաստանը Նրա «տարօրինակ/օտարոտի գործն է» (հմմտ. Ես. 28:21): Սերը Նրա կերպարն է, 2 Օրին. 5:9 համեմատիր 5:10; 7:9: Նրանում են գերակշռում արդարությունն ու ողորմությունը: Բայց դեռ բոլորը հաշիվ պիտի տան Աստծուն (հմմտ. Ժող. 12:13-14; Գաղ. 6:7), նույնիսկ քրիստոնյաները (հմմտ. 14:10-12; II Կոր. 5:10).

▣ **«յայտնվում է»** Ինչպես ավետարանը հայտնված ճշմարտություն է (17h.), այնպես էլ Աստծո բարկությունը: Ոչ մի մարդկային գործողություն հայտնություն կամ տրամաբանություն չէ:

▣ **«որ ճշմարտութիւնն բռնում են»** Սա վերաբերում է մարդու ինքնակամ մերժմանը, ոչ թե անտեսմանը (հմմտ. 21,32hh.; Հովh. 3:17-21): Այս արտահայտությունը կարող է նշանակել (1) նրանք գիտեն ճշմարտությունը, բայց մերժում են այն; (2) նրանց ապրելակերպը ցույց է տալիս, որ իրենք մերժում են ճշմարտությունը; կամ (3) նրանց կյանքը և/կամ խոսքերը պատճառ են

հանդիսանում ուրիշների համար, որ չիմանան և չընդունեն ճշմարտությունը:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: «ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ» ՊՈՂՈՍԻ ԳՐՎԱԾՔՆԵՐՈՒՄ**

Պողոսի այս տերմինի և դրան առընչվող ձևերի օգտագործումը գալիս է դրա Հին Կտակարանային համազորից, *emet*, որը հուսալի կամ վստահելի բառն է: Միջաստվածաշնչյան իրեական գրվածքներում ճշմարտությունը օգտագործվում էր իհակասություն կեղծիքի: Հնարավոր է ամենամոտ զուգահեռը լինի Մեռյալ Ծովի բնագրերը/մատյանները «Գոհության երգեր/հիմներ», որտեղ օգտագործվում է հայտնված վարդապետություններ: Էսսենական համայնքի անդամները դարձան «ճշմարտության վկաներ»:

Պողոսը օգտագործում է տերմինը՝ որպես Հիսուս Քրիստոսի ավետարանին առընչվող ձև:

1. Հռոմեացիս 1:18,25; 2:8,20; 3:7; 15:8
2. I Կորնթացիս 13:6
3. II Կորնթացիս 4:2; 6:7; 11:10; 13:8
4. Գաղատացիս 2:5,14; 5:7
5. Եփեսացիս 1:13; 6:14
6. Կողոսացիս 1:5,6
7. II Թեսաղոնիկեցիս 2:10,12,13
8. I Տիմոթեոս 2:4; 3:15; 4:3; 6:5
9. II Տիմոթեոս 2:15,18,25; 3:7,8; 4:4
10. Տիտոս 1:1,14

Պողոսը նաև օգտագործում է տերմինը՝ իր խոսքը ճշգրիտ արտահայտելու համար

1. Գործք 26:25
2. Հռոմեացիս 9:1
3. II Կորնթացիս 7:14; 12:6
4. Եփեսացիս 4:25
5. Փիլիպեցիս 1:18
6. I Տիմոթեոս 2:7

Նա նաև օգտագործում է այն նկարագրելու դրա դրդապատճառները I Կոր. 5:8-ում և ապրելաձը (նաև բոլոր քրիստոնյաների համար) Եփ. 4:24; 5:9_ում; Փիլ. 4:8-ում: Նա երբեմ դա օգտագործում է մարդկանց համար:

1. Աստված, Հռ. 3:4 (հմմտ. Հովհ. 3:33; 17:17)
2. Հիսուս, Եփ. 4:21 (նման է Հովհ. 14:6)
3. Apostolic witnesses, Տիտոս 1:13
4. Պողոս, II Կոր. 6:8

Պողոսը միայն օգտագործում է որպես բայ (այն է, *alētheuō*) Գաղ. 4:16 և Եփ. 4:15, որտեղ վերաբերում է Ավետարանին: Ավելի խորը ուսումնասիրության համար; Քոլին Բրաուն (խմբ), «Նոր Կտակարանի Աստվածաբանության նոր միջազգային բառարան», հատոր 3, էջ. 784-902; Colin Brown (ed), *The New International Dictionary of New Testament Theology*, vol. 3, pp. 784-902).

**1:19 «Որովհետեւ Աստուծոյ գիտելիքը յայտնի է նորանցում. որ Աստուած յայտնեց նորանց»** բոլոր մարդիկ ինչ որ բան գիտեն Աստծո մասին արարչագործությունից (հմմտ. 20հ.; Հոբ 12:7-10 և Սաղ. 19:1-6 [բնության միջոցով],12-15 [Սուրբ Գրքի միջոցով]): Աստվածաբանության մեջ սա կոչվում է «բնական հայտնություն»: Այն ամբողջական չէ, բայց այն հիմք է հանդիսանում այն բանի, որ Աստծո առաջ պատասխանատու լինեն նաև այն մարդիկ, որոնց հայտնված չի եղել Աստծո «հատուկ հայտնություն» Սուրբ Գրքում կամ, վերջիվերջո, Հիսուսում (հմմտ. Կող. 1:15; 2:9):

Նոր Կտակարանում «իմանալ» տերմինը օգտագործվում էր երկու իմաստով (1) դրա Հին կտակարանային իմաստը անձնական ինտիմ հարաբերությունն է (հմմտ. Ծննդ. 4:1; Եր.. 1:5), և (2) դրա հունարեն իմաստը իմանալ փաստեր առարկայի/իրի մասին (հմմտ. 21հ.): Ավետարանը թե ինքնին Անձն է և թե պատգամ այդ անձի մասին, Որին պետք է ընդունել և հավատալ: Այս համարում այն միայն օգտագործվում է #2 իմաստով:

**1:20** Այս համարը նշում է Աստծո երեք տեսակետերը/ասպեկտները.

1. Նրա անտեսանելի հատկանիշները (Նրա կերպարը, հմմտ. Կող. 1:15; I Տիմ. 1:17; Եբ. 11:27)
2. Նրա հավիտենական զորությունը (երևում է բնական արարչագործության մեջ)
3. Նրա աստվածային բնությունը (երևում է Նրա գործողությունների և արարչագործության շարժառիթների մեջ)

▣ **«Որովհետեւ աշխարհքի սկզբիցն ստեղծուածներովն»** *apo* ՆԱԽԴԻՐԸ օգտագործվում է ժամանակի իմաստով: Նմանատիպ արտահայտություն ենք հանդիպում Մարկ. 10:6; 13:19; II Պետ. 3:4: Անտեսանելի Աստվածը հիմա երևում է (1) ֆիզիկական արարչագործության մեջ (այս համարում); (2) Սուրբ Գրքում (Սաղ. 19, 119); և (3) Հիսուսի մեջ (հմմտ. Հովհ. 14:9):

▣ **«Աստուածութիւնը»** հունարեն գրականությունից *theiotēs* կարող է թարգմանվել «աստվածային մեծություն, հրաշափառություն»: Սա մեծագույն ձևով երևում է Հիսուսի մեջ: Նա եզակիորեն կրում է աստվածային պատկերը (հմմտ. II Կոր. 4:4; Եբր. 1:3): Նա Աստծո ամբողջ հայտնությունն է մարդու կերպարանքով (Կող. 1:19; 2:9): Ավետարանի հիասքանչ ճշմարտությունն այն է, որ ընկած մարդկությունը, Քրիստոսի վրա ունեցած հավատքի միջոցով, կբաժնեկցի Քրիստոսանմանությունը (հմմտ. Եբր. 12:10; I Հովհ. 3:2): Աստծո պատկերը մարդկության մեջ (հմմտ. Ծննդ. 1:26-27) վերականգնվել է (*theios*, հմմտ. II Պետ. 1:3-4):

- **Արևելահայերեն «Ասելով՝ թե իմաստուն են՝ հիմարացան»**

Արևմտահայերեն «Իրենք իմաստուն ենք ըսին ու հիմարացան»

▣

| | |
|---|---|
| NASB | "have been clearly seen, being understood through what has been made" |
| NKJV | "are clearly seen, being understood by the things that are made" |
| NRSV | "have been understood and seen through the things he has made" |
| TEV | "have been clearly seen; they are perceived in the things that God has made" |
| NJB | "have been clearly seen by the mind's understanding of created things" |

*noeō* (հմմտ. Մաթ. 15:17) և *kathoraō* (երկուսն էլ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ) բառերի կապակցությունը նշանակում է ճշմարիտ ընկալում/իմացություն: Աստված գրել է երկու գիրք (1) բնություն և (2) Սուրբ Գիրք: Նրանք երկուսն էլ հասանելի են մարդկային հասկացողությանը և պահանջում են արձագանք (հմմտ. իմաստություն, 13:1-9):

▣ **«այնպէս որ անպատասխան մնան»** Սա բառացիորեն նշանակում է «օրինական պաշտպանության բացակայություն»: Այս հունարեն տերմինը (*a* գումարած *apologeomai*) Նոր Կտակարանում միայն օգտագործվում է այստեղ և 2:1. Հիշիր 1:18-3:20 աստվածաբանական նպատակն է ցույց տալ ամբողջ մարդկության հոգևոր կորսվածությունը: Մարդիկ պատասխանատու են իրենց ունեցած գիտության համար: Աստված մարդկանց պատասխանատու է պահում միայն այն ինչ իրենք գիտեն կամ կարող էին իմանալ:

**1:21 «Որովհետեւ Աստուծուն ճանաչելով»** Մարդկանց առաջընթացը ոչ թե արդարանալու մեջ է այլ ավելի առաջանում են չարի մեջ: Սկսած Ծննդ. 3 մարդկությունը դեպի անդունդ է սահում: Խավարն ավելանում է/շատանում:

▣ **«նորան Աստուծոյ պէս չփառաւորեցին՝ կամ շնորհակալ չեղան.»** Հեթանոս կռապաշտության ողբերգության աղբյուրը 23, 24հհ. (հմմտ. Եր. 2:9-13):

▣ **«այլ իրանց մտածմունքներումն ունայնացան եւ նորանց անմիտ սրտերը խաւարուեցան»** Օլաֆ Մ. Մորլիի *«Նոր Կտակարան; նոր թարգմանություն» գրքում* (*The New Testament: A New Translation* by Olaf M. Morlie) այս հատվածն այսպես է շարադրված «փոխարենը նրանք գերադասեցին զբաղվել հիմար ենթադրություններով Նրա մասին, և նրանց անմիտ մտքերը խարխափեցին խավարում»: Մարդկային կրոնական համակարգերը հոգևոր ըմբոստության և հպարտության հուշարձաններն են (հմմտ. 22հ; Կող. 2:16-23):

Երկու բայերը ԱՆՈՐՈՇ ԿԱՏԱՐՅԱԼ, ՉԵԶՈՔ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ-ով են

դրված: Արդյոք չեզոք սեռը նշանակում է, որ նրանց հասկացողության սակավությունը և պատշաճ պատասխանը նրա համար էր, որ Աստված քողարկել էր նրանց սրտերը, թե նրանց լույսին մերժելը խստացրել էր նրանց սրտերը (հմմտ. 10:12-16; 4 Թագ. 17:15; Երեմ. 2:5; Եփես. 4:17-19). Այս ամբողջ կոնտեքստը միացնում է ամբողջ մարդկության մեղավորությունը:

- **«սիրտ»** Հին Կտակարանում սա օգտագործվում էր ամբողջ անձի համար: Ինչևէ, դա հաճախ մտածելու կամ զգալու գործընթացին առընչվող ձև է: Տես Հատուկ Թեմա 1:24

**1:22**

| | |
|---|---|
| **NASB, NKJV** | **"Professing to be wise, they became fools"** |
| **NRSV** | **"Claiming to be wise, they became fools"** |
| **TEV** | **"They say they are wise, but they are fools"** |
| **JB** | **"The more they called themselves philosophers, the more stupid they grew"** |

**1:22**

- **Արևելահայերեն «Ասելով՝ թե իմաստուն են՝ հիմարացան»**
  **Արևմտահայերեն «Իրենք իմաստուն ենք ըսին ու հիմարացան»**

Հունարեն «հիմար» բառից մենք ստանում ենք անգլերեն «moron» (հիմար,տհաս,ապուշ) բառը: Խնդիրը մարդու հպարտության և իր գիտելիքներին վստահելու մեջ է (հմմտ. 1 Կորն. 1:18-31; Կող. 2:8-23): Սա մեզ հետ է տանում դեպի Ծննդոց 3 գլուխ: Գիտությունը բերում է բաժանում և դատաստան: Մարդու գիտությունը միշտ չէ, որ սխալ է դա միայն հիմնական, առաջնային չէ:

**1:23**

Դիտավորյալ անտեղյակ, մարդիկ, որոնք ստեղծված էին Աստծո պատկերով (հմմտ. Ծննդ. 1:26-27; 5:1,3; 9:6) Աստծուն փոխեցին երկրային պատկերների ինչպիսիք էին (1) կենդանիների (Եգիպտոս), (2) բնության ուժերի (Պարսկաստան), կամ (3) մարդու կերպարանքների (Հունաստան/ Հռոմ) -- կուռքեր: Նույնիսկ Աստծո սեփական ժողովուրդը այդպես վարվեց (հմմտ. 2 Օրին. 4:15-24 և Ամովս 5:25-26): Այս հին մեղքի մի քանի նոր ձևեր կան, դրանք են (1) ինվայրնմենտալիզմ (մայր հող), (2)Նոր Դար արևելյան մտածելակերպ (միստիցիզմ, սպիրիտուալիզմ և օկուլտ), (3) աթեիստիկ հումանիզմ (Մարքսիզմ, ուտոպիանիզմ, պրոգրեսիվ իդիալիզմ և հիմնական հավատք քաղաքականությանը կամ կրթությանը), (4) հոլիստիկ դեղորայք (առողջություն և երկարակեցություն), և (5) կրթություն:

- **«փառք»** Տես Հատուկ Թեմա 3:23

▣ **«նեխման, այլասերման ենթակա մարդ»** Տես Հատուկ Թեմա ներքևում

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԿՈՐԾԱՆՎԱԾ, ԱՎԻՐՎԱԾ, ՓՉԱՑԱԾ (*PHTHEIRŌ*)**

*phtheirō* այս տերմինի հիմնական իմաստն է կործանել, ավերել, ապականել կամ փչացնել: Այն կարող է օգտագործվել

1. ֆինանսական սննկացում (հավանական է, II Կոր. 7:2)
2. ֆիզիկական կործանում (հմմտ. I Կոր. 3:17ա)
3. բարոյական փչացում (հմմտ. Հռ. 1:23; 8:21; I Կոր. 15:33,42,50; Գաղ. 6:8; Հայտ. 19:2)
4. սեռական գայթակղություն (հմմտ. II Կոր. 11:3)
5. հավիտենական կործանում (հմմտ. II Պետ. 2:12,19)
6. կործանել մարդկանց ավանդույթները (հմմտ. Կող. 2:22; I Կոր. 3:17բ)

Հաճախ այս տերմինն օգտագործվում է նույն կոնտեքստում իրենց հականիշների հետ միասին (հմմտ. Հռ. 1:23; I Կոր. 9:25; 15:50,53): Ուշադրություն դարձրեք զուգահեռ հակադրությունների միջև՝ մեր երկրային մարմինների և մեր երկնային հավիտենական մարմինների միջև:

1. ապականություն - անապականություն, I Կոր. 15: 42,50
2. անպատվություն - փառք, I Կոր. 15: 43
3. տկարություն - զորություն , I Կոր. 15: 43
4. ֆիզիկական մարմին - հոգևոր մարմին, I Կոր. 15: 44
5. առաջին Ադամ - վերջին Ադամ, I Կոր. 15: 45
6. երկրային պատկեր - երկնային պատկեր, I Կոր. 15: 49

NASB (UPDATED) TEXT: 1:24-25

[24]Therefore God gave them over in the lusts of their hearts to impurity, so that their bodies would be dishonored among them. [25]For they exchanged the truth of God for a lie, and worshiped and served the creature rather than the Creator, who is blessed forever. Amen.

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 1: 24-25**
**1 [24] Նորա համար Աստուած էլ նորանց մատնեց իրանց սրտերի ցանկութեան մեջ՝ պղծութեան համար. որ խայտառակեն իրանց մարմիններն իրանց անձերումը: [25] Որոնք Աստուծոյ ճշմարտութիւնը ստութեան հետ փոխեցին. եւ երկրպագեցին եւ պաշտեցին ստեղծուածներին քան թէ Ստեղծողին. որ օրհնեալ է ի յաւիտեանս. ամէն:**

**1:24, 26, 28 «Աստուած էլ նորանց մատնեց»** Սա ամենավատ դատաստանն էր: Սա Աստծո ասածվածքն էր «թող ընկած մարդկությունը իրենց ճանապարհներով գնա» (հմմտ. Սաղմ. 81:12; Ովսիա 4:17; Գործք 7:42): 23-32 համարները ըկարագրում են Աստծո մերժումը (ժամանակավոր բարկություն) հեթանոս աշխարհին և նրանց կրոնասիրությանը (ինչպես նաը մերը): Հեթանոսությունը բնութագրվում էր և է սեռական այլանդակությամբ և շահագործմամբ:

1:24 «սրտեր» Տես Հատուկ Թեմա

ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՍԻՐՏԸ

Հունարեն *kardia* տերմինը օգտագործվում է Սեպտուագինդում և Նոր Կտակարանում, որը անդրադարձնում է եբրայերեն *leb* տերմինը. Այն օգտագործվում է մի քանի ձևերով

1. ֆիզիկական կյանքի կենտրոն, փոխաբերություն մարդու համար (հմմտ. Գործք 14:17; 2 Կորն. 3:2-3; Հակ. 5:5)
2. հոգևոր (բարոյական) կյանքի կենտրոն
   ա. Աստված գիտի սիրտը (հմմտ. Ղուկ. 16:15; Հռ. 8:27; 1 Կորնթ. 14:25; 1 Թես. 2:4; Հայտ. 2:23)
   բ. օգտագործվում է մարդու հոգևոր կյանքի համար (հմմտ. Մաթ.13:18-19; 18:35; Հռ. 6:17; 1 Տիմ. 1:5; 2 Տիմ. 2:22; 1 Պետ. 1:22)
3. մտային կյանքի կենտրոն (ինտելեկտ, բանականություն, հմմտ. Մաթ. 13:15; 24:48; Գործք 7:23; 16:14; 28:27; Հռ. 1:21; 10:6; 16:18; 2 Կորնթ. 4:6; Եփես. 1:18; 4:18; Հակ. 1:26; 2 Պետ. 1:19; Հայտ. 18:7; սիրտը մտքի հոմանիշն է 2 Կորնթ. 3:14-15 և Փիլ. 4:7 համարներում)
4. կամքի, ցանկության կենտրոն (հմմտ. Գործք 5:4; 11:23; 1 Կորնթ. 4:5; **7:37**; 2 Կորնթ. 9:7)
5. զգացմունքների, էմոցիաների կենտրոն (հմմտ. Մաթ. 5:28; Գործք 2:26, 37; 7:54; 21:13; Հռ. 1:24; 2 Կորնթ. 2:4; 7:3; Եփես. 6:22; Փիլ. 1:7)
6. Հոգու գործունեության միակ վայրը (հմմտ. Հռ. 5:5; 2 Կորնթ. 1:22; Գաղ. 4:6, (Քրիստոսը մեր սրտերում, Եփես. 3:17))
7. Սիրտը փոխաբերական ձև է, որը վերաբերում է ամբողջ անձին (հմմտ. Մաթ. 22:37, մեջբերված 2 Օրին. 6:5): Մտքերը, շարժառիթներն ու գործողությունները վերագրվում են սրտին, որոնք ամբողջությամբ հայտնում են թե ինչ տեսակի անհատ է նա: Հին Կտակարանը ունի տերմինների զարմանալի օգտագործում
   ա. Ծննդ. 6:6; 8:21
   բ. 2 Օրին. 4:29; 6:5, "քո ամբողջ սրտով և քո ամբողջ հոգով"
   գ. 2 Օրին. 10:16, "անթլպատ սիրտ" և Հռ. 2:29
   դ. Եզեկ. 18:31-32, "նոր սիրտ"
   ե. Եզեկ. 36:26, "նրո սիրտ" հակառակը " քարե սիրտ"

**1:25 «Որոնք Աստծո ճշմարտությունը ստության հետ փոխեցին»** Սա կարող ենք հասկանալ մի քանի կերպերով (1) մարդու ինքնաաստվածացումը (հմմտ. 2 Թես. 2:4,11); (2) մարդն իր ստեղծածին է պաշտում –կռապաշտություն (հմմտ. Ես. 44:20; Երեմ. 13:25; 16:19) Յեհովայի փոխարեն, որը ստեղծել է ամենքան (հմմտ. 18-23հհ.); կամ (3) երբ մարդը վերջնականորեն մերժում է ավետարանի ճշմարտությունը (հմմտ. Հովհ. 14:17; 1Հովհ. 2:21,27): Տվյալ կոնտեքստում ավելի համապատասխանում է (2) տարբերակը:

- **«երկրպագեցին և պաշտեցին»** Մարդը միշտ կունենա չաստվածներ: Բոլոր մարդիկ էլ ունեն ինչ որ մեկին, ինչ որ մի ճշմարտություն կամ ինչ որ մի բան իրենց կյանքում, որին իրենցից վեր են դասում:

- **«որ օրհնյալ է ի հավիտյանս. ամեն»** Պողոսը ներխուժում է իրեական օրհնություն, որն այնքան բնորոշ է իրեն (հմմտ. Հռ. 9:5; 2Կորն. 11:31): Իր գրվածքներում Պողոսը հաճախ աղոթք է բարձրացնում (հմմտ. 9:5; 11:36; 15:33; 16:27):

- **«հավիտյան»** Սա բառացի հունարեն իդիոմատիկ է/խոսակցական արտահայտություն, «մինչև դարեր» (հմմտ. Ղուկ. 1:33; Հռ. 1:25; 11:36; 16:27; Գաղ. 1:5; 1Տիմ. 1:17), որը կարող է պատկերել եբրայերեն *'olam*: Տես Ռոբերտ Բ. Գիրդլեստոն, *Հին Կտակարանի Հոմանիշները,* էջ 321-319: «Մինչև դարեր» ի հետ կապված ուրիշ արտահայտություններ (հմմտ. Մաթ. 21:19 [Մարկ. 11:14]; Հովհ. 6:5,58; 8:35; 12:34; 13:8; 14:16; 2Կորն. 9:9) և «դարերից դար/հավիտյանս հավիտենից» (հմմտ. Եփես. 3:21): Թվում է թե այս իդիոմաների մեջ «հավիտյան» բառի համար չկա ոչ մի տարբերություն: «Դարեր» տերմինը կարող է հանդես գալ հոգնակի թվով պատկերավոր առումով ռաբբիական քերականական կառուցվածքում, որը կոչվում է «մեծության հոգնակիություն» կամ այն կարող է վերաբերվել «դարերի» մի քանի գաղափարների իրեական առումով «անմեղության շրջան», «չարության շրջան», չափահասության հասակ» կամ «արդարության շրջան»:

- **«Ամեն»** Տես հետևյալ թեման:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԱՄԵՆ**

1. ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆ

Ա. «Ամեն» տերմինը եբրայերեն ճշմարտություն *(emeth)* կամ ճշմարտասիրություն *(emun, emunah)* և հավատք կամ հավատարմություն բառից է:

Բ. Դրա ստուգաբանությունը անձի ֆիզիկական կայուն վիճակից է: Հակառակը կլինի մեկը, որը անկայուն, սայթաքող (հմմտ. 2 Օրին. 28:64-67; 38:16; Սաղ. 40:2; 73:18; Երեմ. 23:12) կամ գլորվող է (հմմտ. Սաղ. 73:2): Այս բառացի կիրառումից զարգացավ փոխաբերական ծավալումը հավատարիմ, վստահելի, օրհնապահ և անկախ բառերի (հմմտ. Ծննդ. 15:16; Ամբակ.2:4):

Գ. Հատուկ կիրառություններ
1. սյուն, 4 Թագ. 18:16 (1 Տիմ. 3:15)
2. հավաստիացում, վստահություն, Ելից 17:12
3. հաստատուն, Ելից 17:12
4. կայունություն, Ես. 33:6; 34:5-7
5. ճշմարիտ, 3 Թագ. 10:6; 17:24; 22:16; Առակ. 12:22
6. անսասան, 2 Մնաց. 20:20; Ես. 7:9
7. հուսալի, ամուր, հաստատուն (Թորա), Սաղ. 119:43; 142, 151, 168

Դ. Հին Կտակարանում երկու ուրիշ եբրայերեն տերմիններ են օգտագործված գործուն հավատքի համար:
1. *bathach,* վստահություն
2. *yra,* վախ, հարգանք, երկրպագություն (հմմտ. Ծննդ. 22:12):

Ե. Վստահություն կամ վստահելի իմաստով զարգացավ եկեղեցական/պատարագային կիրառությունը, որը օգտագործվել է մյուսին հաստատելու համար ճշմարիտ կամ վստահելի դրույթը (հմմտ. 2 Օրին. 27:15-26; Նեեմ. 8:6; Սաղ. 41:13; 70:19; 89:52; 106:48):

Զ. Այս տերմինը հասկանալու աստվածաբանական բանալին մարդու հավատարմությունը չէ, այլ ՅԱՀՎԵ-ի (հմմտ. Ել. 34:6; 2 Օրին. 32:4; Սաղ. 108:4; 115:1; 117:2; 138:2): Ընկած մարդկության միակ հույսը ՅԱՀՎԵ-ի ողորմած և հուսալի հավատարիմ ուխտն ու Նրա խոստումներն են:

Նրանք, ովքեր ճանաչում են ՅԱՀՎԵ-ին պետք է Նրան նմանվեն (հմմտ. Ամբ. 2:4): Աստվածաշունչը պատմություն է և նաև Աստծո Իր պատկերի մարդու մեջ վերականգնման գործընթացի արձանագրությունը (հմմտ. Ծննդ. 1:26-27): Փրկությունը մարդուն նորից տալիս է կարողություն ունենալու մտերիմ հարաբերություն Աստծո հետ: Ահա թե ինչի համար ենք մենք ստեղծվել:

ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

Ա. Նոր Կտակարանի ժամանակաշրջանում «ամեն» բառը օգտագործվել է որպես վերջնական ծիսակարգային հաստատում որոշակի դրույթի վստահելիության վերաբերյալ (հմմտ. I Կոր. 14:16; II Կոր. 1:20; Հայտ. 1:7; 5:14; 7:12):

Բ. Նոր Կտակարանի ժամանակաշրջանում տերմինը օգտագործվել է որպես աղոթքի ավարտ (հմմտ. Հռ. 1:25; 9:5; 11:36; 16:27; Գաղ. 1:5; 6:18; Եփ. 3:21; Փիլ. 4:20; II Թես. 3:18; I Տիմ. 1:17; 6:16; II Տիմ. 4:18):

Գ. Միայն Հիսուսն օգտագործեց այս տերմինը (հաճախ կրկնակի անգամ Հովհաննեսի Ավետարանում) ընդգծելու համար որոշակի կարևոր պնդում, միտք (հմմտ. Ղուկ 4:24; 12:37; 18:17,29; 21:32; 23:43):

Դ. Այն օգտագործվում է որպես տիտղոս Հիսուսի համար Հայտ. 3:14 (հավանական է Եհովայի տիտղոսը Ես. 65:16):

Ե. Հավատարմության կամ հավատքի, վստահելի կամ վստահություն գաղափարը արտահայտվում է հունարեն *pistos* կամ *pistis տերմինով*, որը թարգմանվում է անգլերեն որպես վստահություն, հավատք:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 1: 26-27**

1[26]Նորա համար Աստուած մատնեց նորանց անարգ կիրքերի. եւ նորանց էգերը բնական գործածութիւնը փոխեցին անբնականի հետ: [27] Այնպէս էլ արուները կնոջ բնական գործածութիւնը թողելով, իրանց ցանկութիւններովն իրար հետ բորբոքուեցան. արուներն արուների հետ խայտառակութիւն էին գործում, եւ այն փոխարէնը՝ որ արժան էր իրանց մոլութեանն՝ իրանց անձերումը ընդունում էին:

NASB (UPDATED) TEXT: 1:26-27

**[26]For this reason God gave them over to degrading passions; for their women exchanged the natural function for that which is unnatural, [27]and in the same way also the men abandoned the natural function of the woman and burned in their desire toward one another, men with men committing indecent acts and receiving in their own persons the due penalty of their error.**

**1:26,27** Միասեռականությունը Աստծո ակնհայտ կամքից բաժանված կյանքի օրինակներից մեկն է արարչագործության մեջ: Այն մեղք էր և մշակույթային շատ լուրջ խնդիր (1) Հին Կտակարանում (հմմտ. Ղև. 18:22; 20:13; 2 Օրին. 23:18); (2) հունա - հռոմեական աշխարհում (հմմտ. I Կոր. 6:9; I Տիմ. 1:10); և (3) մեր օրերում:

Միասեռականությունը հավանական է թվարկված է որպես մեղավոր կյանքի մեկ օրինակ, քանի որ ամբողջ կոնտեքստը կողմնորոշվում է Ծնն. 1-3: Մարդը ստեղծվել էր Աստծո պատկերով և նմանությամբ (հմմտ. Ծնն. 1:26-27; 5:1,3; 9:6): Մարդը ստեղծվել էր արու և էգ (հմմտ. Ծնն. 1:27): Աստծո պատվերն էր աճել և բազմանալ (հմմտ. Ծնն. 1:28; 9:1,7): Մարդու անկումը (հմմտ. Ծնն. 3) խախտեց Աստծո ծրագիրն ու կամքը: Միասեռականությունը ակնհայտ պղծությունը է: Ինչևէ, պետք է նշել, որ սա միակ մեղքը չէ այս կոնտեքստում (հմմտ. հh. 29-31): Բոլոր մեղքերը ցույց են տալիս մարդու բաժանումը Աստծուց և իրենց արժանի պատիժը: Ամեն մի մեղք, հատկապես մարդու ապրելակերպին վերաբերող, նողկալի է Աստծուն:

### ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՄԻԱՍԵՌԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ժամանակակից մշակույթում գոյություն ունի ուժեղ ճնշում այն բանի վրա, որ միասեռականությունն ընդունվի որպես բնական երկընտրանքային ապրելակերպ: Աստվածաշունչը դատապարտում է այն որպես կյանքի համար կործանարար բան, որը չի համապատասխանում Աստծո կամքին և Իր ստեղծագործությանը;

1. այն խախտում է Աստծո պատվերը Ծնն. 1 աճել և բազմանալ
2. այն բնորոշ է հեթանոս պաշտամունքին և մշակույթին (հմմտ. Ղև. 18:22; 20:13; Հռ. 1:26-27; և Հուդա 7)
3. այն հայտնում է եսակենտրոն անկախություն Աստծուց (հմմտ. I Կոր. 6:9-10)

Ինչևէ, մինչև ուրիշ թեմայի անցնելը թույլ տվեք նուրից հայտնել ձեզ Աստծո սիրո և ներողամտության մասին բոլոր ապստամբ մարդկանց հանդեպ: Քրիստոնյաներն իրավունք չունեն խիստ և ինքնահավանորեն մոտենան այս մասնավոր մեղքի հանդեպ, հատկապես

իմանալով որ մենք բոլորս էլ մեղավոր ենք: Աղոթք, հոգածություն, վկայություն և գութ ունենալով ավելի մեծ գործեր կանեն այս դեպքում, քան վճռական դատապարտությունը: Աստծո Խոսքը և Սուրբ Հոգին կդատապարտեն մեզ, եթե մենք նրանց թույլ տանք: Բոլոր սեռական մեղքերը, և ոչ թե միայն այս մեկը, Աստծո առաջ պղծություն են և մարդուն տանում են դատաստանի: Ինքնին սեքսը պարգև է Աստծուց տրված մարդկությանը իր բարեկեցության, ուրախության և կայուն և ճիշտ հասարակություն ունենալու համար: Բայց այս շատ ուժեղ, Աստծո կողմից տրված մղումը հաճախ դառնում է ըմբոստ, եսակենտրոն, հաճույք -փնտրող, «ինձ-պետք է-ավելին – ցանկացած - գնով» կյանքի/ապրելակերպի (հմմտ. Հռ. 8:1-8; Գաղ. 6:7-8):

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 1:28-32**
1 [28] Եւ ինչպես որ չընտրեցին՝ Աստուծուն ունենալ իրանց գիտության մեջ, Աստուած մատնեց նորանց անարգ մտքի որ անարժան բաներ գործեն. [29] Որոնք լցուած են ամեն անիրաւութիւնով, պոռնկութիւնով, անզգամութիւնով, ագահութիւնով, չարութիւնով, լիքը նախանձով, մարդասպանութիւնով, կռիւով, նենգութիւնով, չարաբարութիւնով. [30] Քսուներ, բամբասողներ, աստուածատողներ, թշնամանողներ, ամբարտաւաններ, գոռոզներ, չար բաներ հնարողներ, ծնողների անհնազանդներ. [31] Անմիտներ, ուխտադրուժներ, անգութներ, անհաշտներ, անողորմներ. [32] Որ Աստուծո իրաւունքները հասկանալով՝ թէ այսպիսի բաներ գործողները մահի արժանի են, ոչ թէ միայն այս բաներն անում են, այլ գործողներին էլ կամակից են լինում:

**NASB (UPDATED) TEXT: 1:28-32**
**[28]And just as they did not see fit to acknowledge God any longer, God gave them over to a depraved mind, to do those things which are not proper, [29]being filled with all unrighteousness, wickedness, greed, evil; full of envy, murder, strife, deceit, malice; *they are* gossips, [30]slanderers, haters of God, insolent, arrogant, boastful, inventors of evil, disobedient to parents, [31]without understanding, untrustworthy, unloving, unmerciful; [32]and although they know the ordinance of God, that those who practice such things are worthy of death, they not only do the same, but also give hearty approval to those who practice them.**

**1:28-31** Հունարենում սա մեկ նախադասություն է: Այն բնութագրում է ապստամբ, ընկած, անկախ մարդը (հմմտ. Հռ.13:13; 1 Կորն.5:11; 6:9; Գաղ.5:19-21; Եփես. 5:5; 1Տիմ. 1:10; Հայտ. 21:8): Մարդկության մեղքը այն էր, որ նրանք ընտրեցին կյանք առանց Աստծու: Դժողքն այդ կյանքը դարձրեց հարատև: Անկախությունը ողբերգություն է: Մարդը կարիք ունի Աստծո, առանց Աստծո նա կորսված է, անբավարար և անկատար: Հավիտենական դժողքի ամենավատն այն, որ այնտեղ բացակայում է Աստծո հետ հարաբերությունը:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԱՆԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ՈՒ ԱՌԱՔԻՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆՈՒՄ**

Նոր Կտակարանում անբարոյականությունների և առաքինությունների ցանկերը միասին են թվարկված: Հաճախ նրանք անդրադարձնում են թե ռաբբիական և թե մշակույթային (հելլենիստական) ցանկերը: Նոր Կտակարանի հակադրող առանձնահատկությունների ցանկը կարող ենք տեսնել

| | Անբարոյականություններ | Առաքինություններ |
|---|---|---|
| 1. Պողոս | Հռ. 1:28-32 | --- |
| | Հռ. 13:13 | Հռ. 2:9-21 |
| | 1 Կորն. 5:9-11 | --- |
| | 6:10 | 1 Կորն. 6:6-9 |
| | 2 Կորն. 12:20 | 2 Կորն. 6:4-10 |
| | Գաղ. 5:19-21 | Գաղ. 5:22-23 |
| | Եփես. 4:25-32 | --- |
| | 5:3-5 | --- |
| | --- | Փիլ. 4:8-9 |
| | Կող. 3:5,8 | Կող. 3:12-14 |
| | 1 Տիմ. 1:9-10 | --- |
| | 6:4-5 | --- |
| | 2 Տիմ. 2:22ա,23 | 2 Տիմ. 2:22բ,24 |
| | Տիտոս 1:7, 3:3 | Տիտոս 1:8-9; 3:1-2 |
| 2. Հակոբոս | Հակ. 3:15-16 | Հակ. 3:17-18 |
| 3. Պետրոս | 1 Պետ. 4:3 | 1 Պետ. 4:7-11 |
| | 2 Պետ. 1:9 | 2 Պետ. 1:5-8 |
| 4. Հովհաննես | Հայտ. 21:8; 22:15 | --- |

**1:29 «անառակ միտք»** Ընկած մարդը որպես ազատություն տեսնում է իր գործոնը որոշված է որպես Աստված 1:24,26,28 հհ. բայց այս կոնտեքստում կապված Ծննդ. 1-3 մարդու ընտրությունն է , որը խնդրի պատճառ դարձավ: Աստված թույլ տվեց, որ Իր ստեղծագործությունը տառապի իր սեփական ընտրությունների, իրենց անկախության հետևանքի պատճառով:

- **«լցված լինել»** Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ԴԵՐԲԱՅ է: Մարդիկ բավարարվում և բնութագրվում են իրենց ապրած կյանքով: Ռաբբիները կասեին, որ ամեն մի մարդու սրտում կա սև (չար *yetzer*)շուն և սպիտակ (բարի *yetzer*)շուն: Ում որ ամենաշատն ես

կերակրում, նա էլ դառնում է ամենամեծը:

**1:29-31** Սրանք առանց Աստծո կյանքի արդյունքներն ու ախտանիշներն են : Նրանք բնութագրում են անհատներին և հասարակություններին, ովքեր մերժում են Աստվածաշնչի Աստծուն: Սա մեղքերի ցանկերից մեկն է, որը նկարագրեց Պողոսը (հմմտ. 1 Կորն. 5:11; 6:9; 2 Կորն. 12:20; Գաղ. 5:19-21; Եփես. 4:31; 5:3-4; Կող. 3:5-9):

**1:30** «ամբարտավան» Սա Պողոսի "*huper*" բառի բաղադրիչներից մեկն է:

ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՊՈՂՈՍԻ "*HUPER*" ԲԱՂԱԴՐՅԱԼ ԲԱՌԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ

Պողոսն ուներ հատուկ սեր նոր բառեր ստեղծելու համար օգտագործելով հունարեն ՆԱԽԴԻՐԸ *huper*, որը հիմնականում նշանակում է "վեր, գերազանց" կամ "բարձրագույն": Երբ օգտագործվում է ՍԵՌԱԿԱՆ ՀՈԼՈՎՈՎ (ԲԱՑԱՌԱԿԱՆ ՀՈԼՈՎ) դա նշանակում է "օգուտ, ի պաշտպանություն": Դա նաև կարող է նշանակել "մասին" կամ "վերաբերյալ" ինչպես *peri* (հմմտ. 2 Կորն. 8:23; 2 Թեսաղ. 2:1): Երբ այն օգտագործվում է ՀԱՅՑԱԿԱՆ ՀՈԼՈՎՈՎ ԱՅՆ նշանակում է "վեր", "վերին", կամ " վեր" (հմմտ. Ա.Տ. Ռոբերտսոն, *Նոր Կտակարանի հունարեն քերականությունը Պատմական ուսումնասիրության լույսի ներքո,* էջ 625-633): Երբ Պողոսն ուզում էր ընդգծել մի գաղափար, բաղադրյալ բառի մեջ նա օգտագործում էր այս ՆԱԽԴԻՐԸ:

Սրանք են Պողոսի հատուկ օգտագործված նախդիրներով բաղադյալ բառերի ցանկը:

Ա. *Hapax legomenon* (սա նշանակում է "օգտագործված միայն մեկ անգա Նոր Կտակարանում)

1. *Huperakmos,* մեկը, որ ծաղիկ հասակից/չափահասությունից անցել է, 1Կոր. 7:36
2. *HuperauxanY,* չափազանց ավելանալ/խիստ մեծանալ, 2 Թես. 1:3
3. *Huperbainy,*սահմաններից անցնել կամ մեղանչել/չափիցն անցնել 1 Թես. 4:6
4. *Huperkeina,* այն կողմը, 2 Կորն. 10:16
5. *Huperekteina,* չափից շատ երկարացնել, տարածել, 2 Կորն. 10:14
6. *HuperentugchanY,* բարեխոսել, Հռ. 8:26
7. *HupernikaY,* առ ավելի հաղթական լինել, Հռ. 8:37
8. *HuperpleonazY,*չափազանց, էլ ավելի շատ, 1 Տիմ. 1:14
9. *HuperupsoY,* շատ/ գերագույն բարձրացնել, Փիլ. 2:9
10. *HuperphroneY,* ունենալ շատ բարձր մտքեր/բան չմտածել նրանից ավելի, Հռ. 12:3

Բ. Բառեր, որոնք միայն օգտագործված են Պողոսի գրվածքներում:

1. *Huperairomai,*մեկին բարձրացնել/գոռոզանալ, 2 Կորն. 12:7; 2 Թես. 2:4
2. *HuperballontYs,*չափից վեր, չափազանց, 2 Կորն. 11:23; (միայն այստեղ ՄԱԿԲԱՅ է, բայց 2 Կորն. 3:10; 9:14; Եփես. 1:19; 2:7; 3:19 ԲԱՅ է)
3. *Huperbole,*չափազանց, չափից շատ, Հռ. 7:13; 1 Կորն. 12:31; 2 Կորն. 1:8; 4:7,17; 12:7; Գաղ. 1:13
4. *Huperekperissou,* չափից վեր, առավել , Եփես. 3:20; 1 Թես. 3:10; 5:13
5. *Huperlian,* ամենաբարձր աստիճանը կամ աչքի ընկնող/մեծամեծ, 2 Կորն. 11:5; 12:11
6. *Huperoche,* աչքի ընկնող դիրք, գերազանցություն, 1 Կորն. 2:1; 1 Տիմ. 2:2
7. *HupererisseuY,* ավելի, չափից շատ, Հռ. 5:20 (ՉԵԶՈՔ ՍԵՌ, առատորեն լցված լինել, հեղեղված լինել, 2 Կորն. 7:4)

Գ. Բառեր, որոնք օգտագործել է Պողոսը և Նոր Կտակարանի ուրիշ գրողներ էլ:

1. *HuperanY,* շատ ավելի վեր, Եփես. 1:21; 4:10; և Եբր. 9:5 (հրեշտակային իշխանություններ)
2. *HuperechY,* գերազանցություն, ամենաբարձր, Հռ. 13:1; Փիլ. 2:3; 3:8; 4:7; 1 Պետ. 2:13
3. *Huperephanos,* մեծամիտ կամ ամբարտավան, Հռ. 1:30; 2 Տիմ. 3:2 և Ղուկ. 1:51; Հակ. 4:6; 1 Պետ. 5:5:

Պողոսը բուռն զգացմունքների տեր մարդ էր; երբ իրերը կամ մարդիկ լավն էին, նրանք շատ լավն էին և երբ նրանք վատն էին ապա նրանք շատ վատն էին: Այս ՆԱԽԴԻՐԸ թույլ տվեց իրեն արտահայտելու իր գերագույն զգացմունքները կապված մեղքի, եսի, Քրիստոսի և Ավետարանի հետ:

**1:32 « այսպիսի բաներ գործողները մահի արժանի են»** Այս դրույթն անդրադարձնում է Մովսեսի Օրենքը: Այն ամփոփված է Հռ. 6:16,21,23; 8:6,13: Մահը Աստծո կամքի և Աստծո կյանքի հակառակն է (հմմտ. Եզեկ. 18:32; 1 Տիմ. 2:4; 2 Պետ. 3:9):

- **«այլ գործողներին էլ կամակից են լինում»** Թշվառությունն ընկերակցություն է սիրում: Ընկած մարդը ուրիշների մեղքերն օգտագործում է որպես արդարացում, "բոլորն այդ անում են": Մշակույթներն բնութագրվում են իրենց հատուկ մեղքերով:

**Քննարկվող հարցեր**

Սա սերտողության համար ուղեցույց հանդիսացող մեկնաբանություն է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ:

1. Ինչու՞ Պողոսը գրեց Հռոմի եկեղեցուն:
2. Ինչու՞ էր Հռոմեացիսը համարվում Քրիստոնեության կարևոր աստվածաբանական դրույթ:
3. Ուրվագծիր 1:18-3:20 քո բառերով:
4. Արդյոք նրանք ովքեր չեն լսել Ավետարանը մերժվելու են Քրիստոսին չվստահելու համար:
5. Բացատրիր տարբերությունը «բնական հայտնություն» և «հատուկ հայտնություն»:
6. Նկարագրիր մարդկային կյանքն առանց Աստծո:
7. Արդյո՞ք 24-27 համարները վերաբերում են միասեռականությանը:

# ԹՈՒՂԹ ՈՒՂՂՎԱԾ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

## ԳԼՈՒԽ 2

| ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ | | | | |
|---|---|---|---|---|
| UBS[4] | NKJV | NRSV | TEV | JB |
| Արդար դատաստանը Աստծո | Աստծո արդար դատաստանը | Հրեաները դատաստանի տակ | Աստծո դատաստանը | Հրեաներն ազատված են բարկությունից |
| 2:1-16 | 2:1-16 | 2:1-11 | 2:1-16 | 2:1-11 |
| Հրեաներն ու Օրենքը | Հրեաները մեղավոր են ինչպես և հեթանոսները | Հիմք դատաստանի համար | Հրեաներն ու Օրենքը (2:17-3:8) | Օրենքը չի փրկի նրանց |
| | | 2:12-16 | | 2:12-16 |
| 2:17-3:8 | 2:17-24 | 2:17-24 | 2:17-24 | 2:17-24 |
| | Թլպատությունը օգուտ չունի | | | Թլպատությունը չի փրկի նրանց |
| | 2:25-29 | 2:25-29 | 2:25-29 | 2:25-29 |

**ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ** (տես էջ vii)

*Հետևել բուն հեղինակի մտադրությանը պարբերությունների մակարդակով*

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Ճանաչիր թեմաները: Համեմատիր քո թեմայի բաժանումները վերը նշված 5 թարգմանությունների հետ: Բաժանումները ներշնչված չեն, բայց դա բանալի է հետևելու բուն հեղինակի մտադրությանը, որը մեկնաբանության սիրտն է: Յուրաքանչյուր պարագրաф ունի մեկ և միայն մեկ թեմա:

Մեկ շնչով կարդացեք այս գլուխը: Ուրվագծեք հիմնական թեմաներն ու թեման արտահայտեք մեկ նախադասությամբ:

1. Առաջին պարբերություն

2. Երկրորդ պարբերություն

3. Երրորդ պարբերություն

4. և այլն

**ԿՈՆՏԵՔՍՏԻ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄ 2:1-3:20հհ.**

Ա. 2 և 3 գլուխներն ամբողջացնում են գրական բաժինը, որը սկսվում է 1:18. Այս բաժնում շոշափվում են հետևյալ կարևոր թեմաները

1. ամբողջ մարդկության կորսված վիճակը
2. Աստծո դատաստանը մեղքի դեմ
3. մարդու կարիքը Աստծո արդարության Քրիստոսի միջոցով , որը արտահայտվում է անձնական հավատքով և ապաշխարությամբ

Բ. Գլուխ 2 կան յոթ սկզբունքներ կապված Աստծո դատաստանի հետ

1. համար 2, դատաստանը ճշմարտությամբ է
2. համար 5, կիտած հանցանքներ;
3. համար 6 և 7, համաձայն գործերի;
4. համար 11, արդարացի և առանց աչառության;
5. համար 13, ապրելակերպով;
6. համար 16, մարդկան ծածուկ բաները
7. համար 17-29, չկան հատուկ ազգային խմբեր.

Գ. Մինչև հիմա մեկնաբանների միջև շատ քննարկումներ են գնում , այն մասին թե ում են ուղղված նամակի այն խոսքերը, որոնք գտնվում են 2:1-17-ի մեջ: Ակնհայտ է, որ 2:12-29հհ. վերաբերվում են հրեաներին: 1-17հհ. կրկնակի նպատակ է ծառայում՝ խոսելով թե բարոյական հեթանոսների, ինչպես Սենեկան (ընդունված հասարակական նորմեր) և թե հրեա ազգի մասին (Մովսեսական Օրենք):

Դ. 1:18-21հհ, Պողոսը հաստատում է, որ մարդիկ կարող են ճանաչել Աստծուն արարչագործության միջոցով: 2:14-15հհ., Պողոսը նաև հաստատում է, որ բոլոր մարդիկ ունեն ներքին բարոյական խիղճ՝ տրված Աստծո կողմից: Այս երկու վկայությունները՝ արարչագործությունը և խիղճը, ամբողջ մարդկությանը դատապարտելու համար Աստծո հիմքն են, նույնիսկ նրանք ովքեր գտնվել են Հին Կտակարանի կամ ավետարանի պատգամի տակ: Մարդիկ պատասխանատու են, որովհետև նրանք չեն ապրել իրենց ունեցած լավագույն լույսի ներքո:

## ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 2:1-11**
**2** [1]Նորա համար առանց պատասխան տալու ես, ով մարդ՝ ով որ էլ լինես, որ դատում ես.
որովհետեւ ինչով որ ուրիշին դատում ես, քեզ ես դատապարտում. որ դու նոյնն ես գործում որ
ինքդ դատում ես: [2]Բայց մենք գիտենք, որ Աստուծոյ դատաստանը ճշմարտութեամբ է
նորանց վերայ, որ այսպիսի բաներ գործում են: [3]Իսկ, ով մարդ, որ դատում ես այսպիսի
բաներ գործողներին, եւ որ դու նոյնն ես գործում, մի՞թէ կարծում ես՝ թէ դու կպրծնիս
Աստուծոյ դատաստանիցը: [4]Կամ թէ նորա քաղցրութեան առատութիւնը եւ համբերութիւնը եւ
երկայնմտութիւնը արհամարհու՞մ ես. չգիտենալով որ Աստուծոյ քաղցրութիւնը քեզ
ապաշխարութեան է տանում: [5]Բայց դու քո խստութիւնովը եւ անզեղջ սրտովը բարկութիւն
ես կիտում քո անձի համար՝ բարկութեան եւ այն Աստուծոյ արդար դատաստանի
յայտնութեան օրումը, [6]Որ նա ամեն մէկին իր գործերի պես հատուցումը կտայ. [7] Նորանց,
որ բարի գործերի մէջ են յարատեւում, եւ փառք եւ պատիւ եւ անապականութիւն են որոնում,
յաւիտենական կեանք. [8] Բայց նորանց՝ որ հակառակութիւնից են՝ եւ ճշմարտութեան
անհնազանդ եւ անիրաւութեան ետեւից գնացած, բարկութիւն եւ սրտմտութիւն. [9]
Նեղութիւն եւ տառապանք այն ամեն մարդի վերայ՝ որ չարութիւն է գործում. առաջ Հրէայի՝
եւ յետոյ Յոյնի: [10] Իսկ փառք եւ պատիւ եւ խաղաղութիւն ամեն բարի գործողին. առաջ
Հրէայի՝ եւ յետոյ Յոյնի: [11] Որովհետեւ Աստուծոյ մօտ աչառութիւն չկայ:

## WORD AND PHRASE STUDY

NASB (UPDATED) TEXT: 2:1-11
[1]Therefore you have no excuse, everyone of you who passes judgment, for in that which you judge
another, you condemn yourself; for you who judge practice the same things. [2]And we know that the
judgment of God rightly falls upon those who practice such things. [3]But do you suppose this, O man,
when you pass judgment on those who practice such things and do the same *yourself*, that you will
escape the judgment of God? [4]Or do you think lightly of the riches of His kindness and tolerance and
patience, not knowing that the kindness of God leads you to repentance? [5]But because of your
stubbornness and unrepentant heart you are storing up wrath for yourself in the day of wrath and
revelation of the righteous judgment of God, [6]who WILL RENDER TO EACH PERSON ACCORDING TO HIS
DEEDS: [7]to those who by perseverance in doing good seek for glory and honor and immortality, eternal
life; [8]but to those who are selfishly ambitious and do not obey the truth, but obey unrighteousness, wrath
and indignation.[9] *There will be* tribulation and distress for every soul of man who does evil, of the Jew
first and also of the Greek, [10]but glory and honor and peace to everyone who does good, to the Jew first
and also to the Greek. [11]For there is no partiality with God.

2:1

| | |
|---|---|
| NASB | "you have no excuse, everyone of you who passes judgment" |
| NKJV | "you are inexcusable, O man, whoever you are who judge" |
| NRSV | "you have no excuse, whoever you are, when you judge others" |
| TEV | "You have no excuse at all, whoever you are. For then you judge others" |
| JB | "So no matter who you are, if you pass judgment you have no excuse." |

2:1

**Արևելահայերեն «Նորա համար առանց պատասխան տալու ես, ով մարդ՝ ով որ էլ լինես »**

**Արևմտահայերեն «Ո'վ մարդ, ո'վ որ ըլլաս՝ դուն որ կը դատես՝ արդարանալու չքմեղանք չունիս.»**

Սա բառացի նշանակում է « օրինական պաշտպանության բացակայություն» (հմմտ.1:20): Նախկինում այն հունարեն նախադասության մեջ օգտագործվում էր պնդելու/հաստատելու դրա իմաստը: 1-16 հհ. վերբերում են թե հրեա օրինականների ինքնաարդարացմանը և թե հույն բարոյականներին: Ուրիշներին դատելով, նրանք դատապարտում էին իրենք իրենց:

**2:2 «մենք գիտենք»** Այս ԴԵՐԱՆՈՒՆԸ հավանական է վերաբերում է հրեաներին ինչպես նաև հնարավոր է քրիստոնյաներին: 2-4հհ. Պողոսը վերադառնում է իր պարզ հարց-պատասխան ձևին, որը կոչվում է սուր քննադատություն, որը ճշմարտության ներկայացումն էր որպես ենթադրյալ հակառակորդ: Դա նաև օգտագործվում էր Ամբակումի, Մաղաքիայի և ռաբբիների, ինչպես նաև հույն փիլիսոփաների կողմից (ինչպիսիք են Սոկրատը և ստոիկները):

**«Մենք գիտենք, որ»** արտահայտությունը մի քանի անգամ օգտագործվում է Հռոմեացիս թղթում (հմմտ. 2:2; 3:19; 7:14; 8:22,28): Պողոսը ենթադրում է, որ իր ունկնդիրները ինչ որ աստիճանի գիտություն ունեն, ոչ թե ինչպես 1 գլխի անբարոյական հեթանոսները:

▣ **«Աստուծոյ դատաստանը»** Աստվածաշունչը հստակ է այս ճշմարտության շուրջ: Բոլոր մարդիկ հաշիվ պիտի տան Աստծուն կյանքի պարգևի համար (հմմտ. 5-9հհ.; Մաթ. 25:31-46; Հայտ. 20:11-15). Նույնիսկ քրիստոնյաները կկանգնեն Քրիստոսի առաջին (հմմտ. 14:10-12; II Կոր. 5:10):

**2:3** Պողոսի հռետորական հարցի քերականական ձևը ակնկալում է «ոչ» պատասխան:

▣ **«մի՞թէ կարծում ես»** Սա հունարեն *logizomai* ԲԱՅՆ է: Պողոսն այն հաճախ է օգտագործում (Հռ. 2:3,26; 3:28; 4:3,4,5,6,8,9,10,11,22,23,24; 6:11; 8:18,36; 9:8; 14:14; Գաղ. 3:6 և տասն անգամ I և II Կորնթ. և երկու անգամ Փիլ. թղթում): Տես ծանուցումները 4:3 և 8:18հհ:

▣ **«ով մարդ»** Սա համապատասխանում է նույն լեզվին/ոճին 1հ-ում: 9:20 վերաբերում է հրեաներին:

**2:4** Հունարենում սա նույնպես հարց է:

▣ **« նորա քաղցրութեան առատութիւնը եւ համբերութիւնը եւ երկայնմտութիւնը »** Մարդիկ հաճախ սխալ են հասկացել Աստծո շնորհքը, ողորմությունը և համբերությունը և շրջել են այն որպես մեղանչելու հնարավորություն ապաշխարելու փոխարեն (հմմտ. II Պետ. 3:9).

Պողոսը հաճախ նկարագրում է Աստծո հատկանիշները որպես «առատություն/հարստություն/ճոխություն» (հմմտ. 9:23; 11:33; Կող. 1:27; Եփ. 1:7,18; 2:4,7; 3:8,16; Փիլ. 4:19).

▣ **« քաղցրութիւնը քեզ ապաշխարութեան է տանում »** Ապաշխարությունը վճռական է Աստծո հետ ունեցած հավատք-ուխտ հարաբերության համար (հմմտ. Մաթ. 3:2; 4:17; Մարկ. 1:15; 6:12; Ղուկ. 13:3,5; Գործք 2:38; 3:19; 20:21): Եբրայերենում տերմինը նշանակում է գործողությունների փոփոխություն, բայց հունարենում այն նշանակում է մտքի փոփոխություն: Ապաշխարությունը կամավոր է փոխելու եսակենտրոն կյանք ունենալուց դեպի մի կայնք որը տեղեկացված է ուղղված է Աստծո կողմից: Այն կոչ է անում շրջվել ես-ի նախապատվությունից և կապանքից/գերությունից: Հիմնականում դա նոր կեցվածք է, նոր աշխարհայացք, նոր տեր: Ապաշխարությունը Աստծո կամքն է ամեն մեկ ընկած Ադամի զավակի համար, Իր պատկերով ստեղծված (հմմտ. Եզեկ. 18:21,23,32 և II Պետ. 3:9):

Նոր Կտակարանային հատվածը, որը լավագունն է անդրադարձնում հունարեն տարբեր տերմինները ապաշխարության հետ կապված II Կոր. 7:8-12 է: (1) *lupeō* , «վիշտ» կամ «ցավ/տխրություն» 8հ. (2x), 9հ. (3x), 10հ. (2x), 11հ.; (2) *metamelomai*, «ափսոսանք/զղջում» կամ «հոգսերի փոփոխություն» 8հ. (2x), 9; և (3) *metanoia*, «ապաշխարություն» կամ «մտքի փոփոխություն» 9հ., 10հ.: Հակադրությունը կեղծ ապաշխարությունն է (*metamelomai*) (հմմտ. Հուդան, Մաթ. 27:3 և Եսավը, Եբր. 12:16-17) ի հակադրություն ճշմարիտ ապաշխարության (*metanoeō* ):

Ճշմարիտ ապաշխարությունը աստվածաբանորեն կապված է (1) Հիսուսի քարոզչությունը Նոր Ուխտի պայմանների հիման վրա (հմմտ. Մաթ. 4:17; Մարկ. 1:15; Ղուկ. 13:3,5); (2)առաքյալների քարոզները Գործք-ում (*kerygma*, հմմտ. Գործք 3:16,19; 20:21); (3) Աստծո սուվերեն պարգևը (հմմտ. Գործք 5:31; 11:18 և II Տիմ. 2:25); և (4) կործանում (հմմտ. II Պետ. 3:9): Ապաշխարությունը ընտրվածների համար չէ:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԱՊԱՇԽԱՐՈՒԹՅՈՒՆ**

Ապաշխարությունը (հավատքի հետ միասին) ուխտի պահանջ է թե Հին Ուխտի (*Nacham*, III Թագ. 8:47; *Shuv,* III Թագ. 8:48; Եզեկ. 14:6; 18:30; Հովել 2:12-13; Զաք. 1:3-4) և թե Նոր Ուխտի:

1. Հովհաննես Մկրտիչ (Մաթ. 3:2; Մարկ. 1:4; Ղուկ. 3:3,8)

2. Հիսուս (Մաք. 4:17; Մարկ. 1:15; 2:17; Ղուկ. 5:32; 13:3,5; 15:7; 17:3)
3. Պետրոս (Գործք 2:38; 3:19; 8:22; 11:18; II Պետ. 3:9)
4. Պողոս (Գործք 13:24; 17:30; 20:21; 26:20; Հռ. 2:4; II Կորն. 2:9-10)

Բայց ի՞նչ է ապաշխարություն: Դա ցա՞վ է: Դա մեղքի դադարու՞մ է: Լավագույն գլուխը Նոր Կտակարնում այս գաղափարի տարբեր լրացուցիչ իմաստները հասկանալու համար II Կորնք. 7:8-11 է, որտեղ օգտագործված են իրար կապված, բայց տարբեր հունարեն տերմիններ:

1. «ցավ/տխրություն» (*lupē* , հմմտ. 8հ. [2x], 9հ. [3x], 10հ. [2x], 11հ.): Դա նշանակում է վիշտ կամ դառնություն/կսկիծ և ունի աստվածաբանորեն չեզոք լրացուցիչ իմաստ:
2. «ապաշխարություն» (*metanoeō*, հմմտ. 9,10հհ.): Դա «հետո» և «միտք» բառերի միացությունն է, որը նշանակում է նոր միտք, նոր մտածելակերպ, նոր կեցվածք կյանքի և Աստծո հանդեպ: Սա ճշմարիտ ապաշխարություն է:
3. «ափսոսանք/զղջում» (*metamelomai*, հմմտ. 8հ.[2x], 10հ.): Դա «հետո» և «հոգալ» բառերի միացությունն է: Դա օգտագործվում է Հուդայի կողմից Մաք. 27:3 և Եսավի Եբր. 12:16-17: Դա նշանակում է զղջում խղճի, ոչ թե գործերի:

Ապաշխարությունն ու հավատքը պահանջվող ուխտի գործերն են (հմմտ. Մարկ. 1:15; Գործք 2:38,41; 3:16,19; 20:21): Կան մի քանի տեքստեր, որոնք նշանակում են, որ Աստված տալիս է ապաշխարություն (հմմտ. Գործք 5:31; 11:18; II Տիմ. 2:25): Բայց տեքստերից մեծամասնությունը սա դիտում է որպես անհրաժեշտ ուխտի արձագանք Աստծուն ձրի փրկություն առաջարկելու համար: Թե եբրայերեն և թե հունարեն տերմինների սահմանումները պահանջվում են ըմբռնել ապաշխարության ամբողջ իմաստը:

Եբրայերենը պահանջում է «գործողությունների փոփոխություն», բայց հունարենը պահանջում է «մտքի փոփոխություն»: Փրկված անձը ստանում է նոր միտք և սիրտ: Նա մտածում և ապրում է այլ կերպ:

**2:5-9 Այս համարները նկարագրում են** (1) ընկած մարդկության համառությունը/խստապարանոց լինելը և (2) Աստծո բարկությունն ու դատաստանը:

**2:5 «խստութիւնովը/համառություն»** Իսրայելը նույն ձևով նկարագրվում է Ել.32:9; 33:3,5; 34:9; 2 Օրին. 9:6,13,27:

▣ **«սրտովը»** Տես Հատուկ Թեմա 1:24.

▣ **«բարկութեան օրումը»** Հին Կտակարանում սա կոչվում էր «Տիրոջ Օրը» (հմմտ. Հովել, Ամովս): Սա Դատաստանի Օր գաղափարն է, կամ հավատացյալների համար Հարության Օր: Բոլոր մարդիկ հաշիվ պիտի տան Աստծուն կյանքի պարգևի համար (հմմտ. 5-9հհ.; Մաք. 25:31-46;

Հայտ. 20:11-15):

Իմացիր, որ մեղավորներն իրենք են («դու» և «ինքդ»), որ կուտակում են բարկություն: Աստված պարզապես, ինչ որ մի պահ թույլ է տալիս, որ այս կուտակված բարկությունը դառնա ակնհայտ և իրականանա:

Բարկությունը, ինչպես բոլոր մարդկային բառերը Աստծուն նկարագրելու համար, միայն համանմանորեն (մարդակերպորեն) կիրառվում են աստվածությանը: Աստված հավիտենական է, սուրբ և Հոգի: Մարդիկ սահմանափակ են, մեղավոր և նյութական/ֆիզիկական: Աստված էմոցիոնալ/զգացմունքորեն բարկացած չէ, ինչպես մոլեգնություն/կատաղություն: Աստվածաշունչը Նրան ներկայացնում է, որպես մեղավորներին սիրող և ուզում է, որ նրանք ապաշխարեն, բայց նաև որպես հակառակվող մարդկային ըմբոստությանը: Աստված անձնական է: Նա անձամբ վերցնում է մեղքը, իսկ մենք անձամբ պատասխանատու ենք մեր մեղքի համար:

Մեկ լրացուցիչ միտք Աստծո բարկության մասին: Աստվածաշնչում դա թե տվյալ ժամանակի համար է (ժամանակավոր, հմմտ. 1:24,26,28) և թե վերջին ժամանակի համար (վախճանաբանական, հմմտ. 2:5-8): Տիրոջ Օրը (Դատաստանի Օրը) մի ձև էր Հին Կտակարանի մարգարեների համար, զգուշացնելու Իսրայելին ապաշխարելու ներկայում, որ իրենց ապագան լինի օրհնված և ոչ թե դատապարտված (հմմտ. 2 Օրին.. 27-28): Հին Կտակարնի մարգարեները հաճախ վերցնում էին իրենց օրերի ճգնաժամը և այն արձակում/նետում էին վերջի-ժամանակի վրա ապագայում:

**2:6** Սա մեջբերում է Սաղ. 62:12-ից: Սա տիեզերական սկզբունք է, որ մարդիկ պատասխանատու են իրենց գործողությունների համար և հաշիվ կտան Աստծուն (հմմտ. Հոբ 34:11; Առակ. 24:12; Ժող. 12:14; Երեմ. 17:10; 32:19; Մաթ. 16:27; 25:31-46; Հռոմ. 2:6; 14:12; I Կոր. 3:8; Գաղ. 6:7-10; II Տիմ. 4:14; I Պետ. 1:17; Հայտ. 2:23; 20:12; 22:12): Նույնիսկ հավատացյալները հաշիվ կտան Քրիստոսին իրենց կյանքերի և ծառայության համար (հմմտ. II Կոր. 5:10): Բավատացյալները չեն փրկվում գործերով բայց փրկվում են գործելու համար (հմմտ. Եփ. 2:8-10 [հատկ. 2:14-26]; Հակոբոս և I Հովհ.):

**2:7 «Նորանց, որ»** Այստեղ կա հակասություն 7հ. և 8հ. նկարագրված անձանց միջև («Բայց նորանց՝ որ»):

▣

NASB "to those who by perseverance in doing good seek for glory and honor and immortality; eternal life"
NKJV "eternal life to those who by patient continuance in doing good seek for glory, honor, and immortality;"
NRSV "to those who by patiently doing good seek for glory and honor and immortality, he will give eternal life;"
TEV "Some men keep on doing good, and seek glory, honor and immortal life; to them God will give eternal life"

JB "For those who sought renown and honor and immortality by always doing good there will be eternal life;"

Արևելահայերեն «Նրանց, որ բարի գործերի մէջ են յարատեւում, եւ փառք եւ պատիւ եւ անապականութիւն են որոնում, յաւիտենական կեանք.»

Արևմտահայերեն «Յաւիտենական կեանք անոնց, որոնք բարի գործերու մէջ համբերութեամբ յարատեւելով փառք ու պատիւ եւ անմահութիւն կը խնդրեն.»

Սա վերաբերվում է Կոռնելիոսի նման մարդկանց (հմմտ. Գործք 10:34-35): Այս հատվածը կարող է թվալ արդարություն գործերով (ձեռք բերել արդարություն մարդկային ջանքերով), բայց դա հակառակ է Հռոմեացիս թղթի գլխավոր թեմային: Հիշիր, որ թե 1-16hh. և թե 1-11hh. պարբերություն են: Ամբողջի աստվածաբանական միտքն այն է, որ Աստված մարդկանց աչառություն անող/մեծարող չէ (11h.) և որ բոլորը մեղանչել են (12h.): Եվ եթե մարդիկ ապրեին իրենց ունեցած լույսի ներքո/համաձայն (բնական հայտնություն հեթանոսների համար, հատուկ հայտնություն հրեաների համար, հմմտ. 10:5) այն ժամանակ նրանք կլինեն ուղիղ Աստծո հետ: Ինչևէ, 3:9-18,23 ամփոփումը ցույց է տալիս, որ ոչ ապրեցին, ոչ էլ կարողացան:
Հավատացյալի փոխված աստվածահաճո կյանքը դիտվում/ հասկացվում է, որպես հաստատում և վավերացում իր սկզբնական հավատքի արձագանք: Փոխված կյանքը ապացույց է Աստծո Հոգու բնակվելու (հմմտ. 10,13hh.; Մաթ. 7; Եփ. 2:8-10; Հակոբոս 2:14-26 և I Հովh.): Տես Հատուկ Թեմա: Համբերելու Կարիքը 8:25:

▣ **« յաւիտենական կեանք»** Սա Հովհաննեսի գրվածքներին բնորոշ արտահայտություն է և օգտագործվում է քիչ Նույնանման/Սինոպտիկ Ավետարաններում: Թվում է թե Պողոսը արտահայտությունը բխեցնում է Դան. 12:2-ից (հմմտ. Տիտոս 1:2; 3:7), որտեղ այն ցույց է տալիս նոր դարի կյանքը, Աստծո հետ ունեցած մտերմիկ կյանքը, հարուցյալ կյանքը: Նա առաջին անգամ դա օգտագործում է Գաղ.6:8: Դա Հռոմեացիս թղթի վարդապետական բաժնի ընդհանուր թեման է (հմմտ. 2:7; 5:21; 6:22,23). Դա նաև մի քանի անգամ հայտնվում է Հովվական Թղթերում (հմմտ. I Տիմ. 1:16; Տիտոս 1:2; 3:7):

2:8
NASB "those who are selfishly ambitious"
NKJV, NRSV "those who are self-seeking"
TEV "other people are selfish"
NJB "those who out of jealousy"

**Արևելահայերեն «նորանց՝ որ հակառակութիւնից են/փառասէր,եսասէր/նախանձ »**
**Արևմտահայերեն «անոնց՝ որ հակառակ են»**

Տերմինը սկզբում նշանակում էր «աշխատել վարձավճարով»

«Հունարեն-անգլերեն բառարան» Լոուվ և Նիդա, հատ. 2; էջ 104 *(Louw and Nida,Greek-English Lexicon , vol. 2, էջ. 104),* առաջարկում է այս տերմինի կիրառման երկու տարբերակ:

1. «հակառակութիւնից են/փառասէր,եսասէր/նախանձ» օգտագործված Հռ. 2:8 noting "ուզել լինել ավելի լավ քան որևէ մեկը», որը համապատասխանում է այս կոնտեքստին
2. «թշնամություն» օգտագործված Փիլ. 1:17 իմաստով/ծանուցումով «մրցակցություն» որպես թարգմանության տարբերակ (նաև տես II Կոր. 12:20; Գաղ. 5:20; Փիլ. 2:3; Հակոբոս 3:14,16)

▣ **«ճշմարտութեան անհնազանդ»** «ճշմարտություն» (*aletheia*) տերմինը օգտագործվում էր իր եբրայերեն իմաստով (*emeth*) ճշմարտախոսություն և հուսալիություն/վստահության արժանի: Այս կոնտեքստում այն ուներ բարոյական, ոչ թե մտավոր կենտրոնացում: Տես Հատուկ Թեմա: Ճշմարտությունը Պողոսի գրվածքներում 1:18.

**2:9 «ամեն մարդի վերայ»** Պողոսն օգտագործեց *pas* հունարեն տերմինը թարգմանված «բոլոր» կամ «ամեն» այնքան հաճախ Հռոմեացիս թղթի այս սկզբի գլուխներում, ցույց տալու համար տիեզերական առնչությունները թե «վատ լուր»-ի (մարդու կորսվածությունը և Աստծո անաչառ/անկողմնապահ դատաստանը) և թե «բարի լուր»-ը (Աստծո առաջարկած ձրի փրկությունը և լրիվ/ամբողջական թողությունը Քրիստոսում բոլոր նրանց, ովքեր ապաշխարում և հավատում են):

Այս կոնտեքստը խստորեն ակնարկում է տիեզերական դատաստան կամ դրանից բխող հետևանքները: Այս ճշմարտությունը պահանջում է թե արդարի և թե չարի հարությունը (հմմտ. Դան. 12:2; Հովհ. 5:28-29; Գործք 24:15):

Եթե 6-11հհ. խիազմներ են, ուրեմն 8-9հհ. բանալի համարներն են, որոնք նշանակում/ցույց են տալիս դատաստան կամ չարագործներ:

**2:9-10 «առաջ Հրէայի»** Սա կրկնվում է ընդգծելու համար: Հրեաներն առաջինն էին պատեհության/առիթի մեջ, որովհետև նրան ունեին Աստծո հայտնությունը (հմմտ. 1:16; Մաթ. 10:6; 15:24; Հովհ. 4:22; Գործք 3:26; 13:46), բայց նաև առաջինը դատաստանի մեջ (հմմտ. 9-11) որովհետև նրանք ունեին Աստծո հատուկ կանչն ու օրհնությունները (հմմտ. 9:4-5):

**2:11**

NASB, NKJV "for there is no partiality with God"
NRSV "For God shows no partiality"
TEV "For God judges everyone by the same standard"
NJB "There is no favoritism with God"

Արևելահայերեն «Որովհետեւ Աստուծոյ մօտ աչառութիւն չկայ »
Արևմտահայերեն «Վասն զի Աստուծոյ քով աչառութիւն չկայ»

Բառացիորեն սա նշանակում է «բարձրացնել երեսը», որը փոխաբերություն էր վերցված Հին Կտակարանի հուդայականության համակարգից (հմմտ. Ղևտ. 19:15; 2 Օրին. 10:17; II Մնաց. 19:7; Գործք 10:34; Գաղ. 2:6; Եփ. 6:9; Կող. 3:25; I Պետ. 1:17): Եթե դատավորը տեսնում էր թե ում էր արդարադատություն գործում ապա կար շեղելու/համոզելու առիթ: Ուստի նա չէր բարձրացնում այն մեկի երեսը, ով կանգնած էր իր առջև:

## ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՌԱՑԻԶՄ

I. Ներածություն

Ա. Սա համընդհանուր արտահայտություն էր ընկած մարդու կողմից իր հասարակության մեջ/ներսում: Սա մարդու էգոն/ես է, աջակցելով ինքն իրեն ուրիշների հետևում/ի լրումն ուրիշների: Ռասիզմը դա, շատ կերպերով, ժամանակակից երևույթ/ֆենոմեն է, այնինչ ազգասիրությունը (կամ ցեղային/tribalism) ավելի հին արտահայտություն է:

Բ. Ազգասիրությունը/հայրենասիրությունը սկսեց Բաբելոնի աշտարակաշինությունից (Ծնն. 11) և որը սկզբնապես կապված էր Նոյի երեք որդիների հետ, որից այսպես կոչված ռասաները/ցեղերը զարգացան (Ծնն. 10): Ինչևէ, Սուրբ Գրքից ակնհայտ է, որ մարդկությունը մեկ աղբյուրից է առաջացել (այն է, Աստծո հատուկ արարչագործությունը Ադամ և Եվա, հմմտ. Ծնն. 1-3; Գործք 17:24-26):

Գ. Ռասիզմը դա շատ կանխակալ կարծիքներից/չարիքներից մեկն է: Մյուսներն են/դրանցից են (1) կրթական պճնայամոլությունը/սնոբիզմ; (2) սոցիալ-տնտեսական գոռոզությունը/ամբարտավանությունը; (3) ինքնա-արդար կրոնական օրինականությունը; և (4) դոգմատիկ/դավանաբանական քաղաքական ընդունումը/հաստատումը:

II. Աստվածաշնչյան Նյութ

Ա. Հին Կտակարան

1. Ծնն. 1:27- Մարդը, արու և էգ, ստեղծվեց Աստծո պատկերով և նմանությամբ, որը նրանց եզակի/հատուկ է դարձնում: Դա նաև ցույց է տալիս նրանց անհատ արժեքը և արժանապատվությունը/բարձր կոչումը (հմմտ. Հովհ. 3:16):

2. Ծննդ. 1:11-25 -Արձանագրում է «. . .իր տեսակի պես. . .» արտահայտությունը տաս անգամ: Սա օգտագործվել է հիմնավորելու ռասայական խտրականությունը: Ինչևէ, կոնտեքստից հայտնի է, որ սա վերաբերում է կենդանիներին և բույսերին և ոչ թե մարդուն:
3. Ծննդ. 9:18-27 - Սա օգտագործվել է հիմնավորելու ռասայական իշխանությունը/ազդեցությունը: Պետք է հիշենք, որ Աստված չանիծեց Քանանին: Նոյը՝ նրա հայրը, անիծեց իրեն՝ հարբած թմրությունից արթնանալուց հետո: Աստվածաշունչը երբեք չի նշում, որ Աստված համաձանեցրեց այդ անեծքը: Եթե նույնիսկ Նա դա աներ, սա չի ազդում սևամորթ ռասայի վրա: Քանանը նրանց հայրն էր, ովքեր բնակվեցին Պաղեստինում և Եգիպտոսում պատի արվեստը ցույց է տալիս, որ նրանք սևամորթ չեն եղել:
4. Հեսու 9:23 – Սա օգտագործվել է ապացուցելու համար, որ մի ռասան/ցեղը կծառայի մյուսին: Ինչևէ, կոնտեքստում Գաբավոնացիները նույն ռասայական տոհմից են ինչ հրեաները:
5. Եզրաս 9-10 և Նեեմ. 13 – Սրանք հաճախ օգտագործվել են ռասայական իմաստով, բայց կոնտեքստը ցույց է տալիս, որ ամուսնությունները դատապարտելի էին ոչ թե ռասայի պատճառով (նրանք Նոյի նույն որդուց էին, Ծննդ 10), այլ կրոնական պատճառներով:

Բ. Նոր Կտակարան

1. Ավետարաններ

ա. Հիսուսն օգտագործեց հրեաների և սամարացիների միջև եղած ատելությունը մի քանի օրինակներով, որոնք ցույց են տալիս ռասայական ատելությունը անհարմար է:

(1) Բարի Սամարացու առակը (Ղուկ. 10:25-37)
(2) կինը ջրհորի մոտ (Հովհ. 4:4)
(3) երախտապարտ բորոտը (Ղուկ. 17:7-19)

բ. Ավետարանը բոլոր մարդկանց համար է

(1) Հովհ. 3:16
(2) Ղուկ. 24:46-47
(3) Եբր. 2:9

(4) Հայտ. 14:6

գ. Թագավորությունը կներգրավի ամբողջ մարդկությանը

(1) Ղուկ. 13:29

(2) Հայտ. 5

2. Գործք

ա. Գործք 10 հստակ հատված է Աստծո տիեզերական սիրո և ավետարանի տիեզերական պատգամի մասին:

բ. Պետրոսը ենթարկվում է հարձակման իր գործողությունների համար Գործք 11-ում և այս խնդիրը չի լուծվում մինչև Երուսաղեմի Խորհուրդը Գործք 15-ում հետո այն լուծում է ստանում: Առաջին դարի հրեաների և հեթանոսների միջև եղած լարվածությունը շատ լարված էր/ինտենսիվ:

3. Պողոս

ա. Քրիստոսում չկան արգելքներ

(1) Գաղ. 3:26-28

(2) Եփ. 2:11-22

(3) Կող. 3:11

բ. Աստված մարդկանց միջև աչառություն չի անում

(1) Հռ. 2:11

(2) Եփ. 6:9

4. Պետրոս և Հակոբոս

ա. Աստված մարդկանց միջև աչառություն չի անում, I Պետ. 1:17

բ. Քանի որ Աստված աչառություն չի անում, ուրեմն Իր ժողովուրդն էլ չպետք է անի, Հակ. 2:1

5. Հովհաննես

ա. Ամենաուժեղ դրույթներից մեկը հավատացյալների պատասխանատվության վերաբերյալ գտնվում է I Հովh. 4:20

III. Եզրափակում/ամփոփում

Ա. Ռասիզմը, կամ այդ հասկացողության լայն իմաստով, ցանկացած կանխակալ բնավորության ամբողջությամբ անհամապատասխան է Աստծո զավակներին: Ահա մեջբերում Հենլի Բառնետի *(Henlee Barnette)* կողմից, որը խոսեց Գլորիետայի ժողովում/ֆորում, Նյու-Մեքսիկոում, Քրիստոնեական կյանքի հանձնաժողով1964թ.:

«Ռասիզմը հերետիկոսական է որովհետև դա ոչ աստվածաշնչյան և ոչ քրիստոնեական, էլ չասած ոչ գիտական»:

Բ. Այս խնդիրը քրիստոնեաներին հնարավորություն է տալիս ցույց տալ իրենց Քրիստոսանման սերը, ներողամտությունը և հասկացողությունը կորսված աշխարհին: Քրիստոնեա մերժումը այս բնագավառում ցույց է տալիս անհասունություն և դա չարի համար հնարավորություն է դանդաղեցնել/ արգելակել հավատացյալի հավատքը, վստահությունը և աճը: Դա նաև խոչընդոտ է հանդիսանում կորսված մարդկանց համար՝ մոտենալու Քրիստոսին:

Գ. Ի՞նչ կարող եմ ես անել: (Այս բաժինը վերցված է Քրիստոնեա Կյանքի Իրավասություն գրքույկից/բրոշյուր վերնագրված՝«Ռասայական Հարաբերություններ»:

«ԱՆՁՆԱԿԱՆ ՄԱԿԱՐԴԱԿԻ ՎՐԱ»

- Ընդունել քո սեփական պատասխանատվությունը խնդիրները լուծման մեջ կապված ռասայի հետ:
- Աղոթքի, Աստվածաշնչի սերտողության և ուրիշ ռասային պատկանող անձանց հետ շփվելու միջոցով, ջանալ/աշխատել ազատել քո կյանքը ռասայական նախապաշարմունքից:
- Արտահայտիր քո համոզմունքները ռասսայականության մասին, մասնավորապես այնտեղ որտեղ ռասսայական ատելություն հրահրողները ոչ մի պատժի չեն արժանանում:

«ԸՆՏԱՆԵԿԱՆ ԿՅԱՆՔՈՒՄ»

- Ընդունիր ընտանիքի ազդեցության կարևորությունը ուրիշ ազգերի հանդեպ ճիշտ դաստիարակություն և վերաբերմունք ունենալ:
- Փորձիր գտնել հնարավորություններ ընկերական հարաբերություններ ստեղծելու տարբեր ազգեր ներկայացնող ընտանիքների միջև:

«ՔՈ ԵԿԵՂԵՑՈՒՄ»

- Քարոզչության և աստվածաշնչյան ճշմարտության ուսմունքի միջոցով կապված ազգային փոխհարաբերությունների հետ, համայնքը կարող է մղվել օրինակ հանդիսանալու ամբողջ հասարակության համար:
- Վստահ եղիր, որ երկրպագությունը, պաշտամունքը, հաղորդակցությունը և ծառայությունը եկեղեցու միջոցով բաց է բոլորի համար, նույնիսկ ինչպես Նոր Կտակարանի եկեղեցիներում ռասայական, ազգային խոչընդոտներ չկային (Եփ. 2:11-22; Գաղ. 3:26-29):

«ԱՌՕՐՅԱ ԿՅԱՆՔՈՒՄ»

- Օգնիր ամբողջությամբ հաղթահարել ազգային խտրականությունը աշխատանքի ոլորտում:

ι Գործիր բոլոր տեսակի հասարակական կազմակերպությունների միջոցով իրավունքների և հնարավորությունների հավասարությունը պաշտպանելու համար, հիշելով, որ ազգային խնդիրների դեմ պետք է պայքարել, և ոչ թե մարդկանց: Սրա նպատակը պետք է լինի իրար հասկանալու մակարդակի բարձրացումը և ոչ թե դառնության զգացողության:

ι Եթե ճիշտ ես գտնում, կազմակերպիր մտահոգ քաղաքացիներից կազմված հատուկ կոմիտե, հասարակության մեջ հաղորդակցության միջոցներ ստեղծելու նպատակով, ընդհանուր մասսան կրթելու և հատուկ գործունեություն ծավալելու նպատակով՝ ազգային հարաբերություններ հաստատելու համար:

ι Աջակցիր օրենսդրությանն ու օրենսգետներին, օրենքներ ընդունելու ժամանակ, ուղղված ռասսայական արդարության և հակառակ կեցիր նրանց, ովքեր հրահրում են անարդարություն քաղաքական նկատառումներով:

ι Հավանություն տուր իշխանավորներին օրենքը պաշտպանելու դեպքում առանց խտրականության:

ι Խուսափիր բռնությունից, այլ ձգտիր օրենքը հարգելուն, ամեն հնարավոր բան անելով որպես քրիստոնյա-քաղաքացի, որպեսզի վստահ լինես, որ իրավասու մարմինները չդառնան գործիք նրանց ձեռքին, ովքեր հրահրում են խտրականություն:

ι Օրինակ եղիր Քրիստոսի հոգին ու միտքը ցուցաբերելով բոլոր մարդկանց հետ փոխհարաբերությունների մեջ:

## Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 2:12-16

[12]Որովհետեւ նորանք՝ որ առանց օրէնքի մեղք գործեցին, առանց օրէնքի էլ կկորչեն. եւ նորանք՝
որ օրէնքի տակ մեղք գործեցին օրէնքով կդատուին:[13](Որովհետեւ ոչ թէ օրէնքը լսողներն են
Աստուծոյ առաջին արդար, այլ օրէնքը կատարողները կարդարանան: [14]Ուրեմն երբոր
հեթանոսները՝ որ օրէնք չունին՝ բնութեամբ օրէնքի գործերն անեն, սորանք թէեւ օրէնք չունին
իրանք են իրանց համար օրէնք. [15]Որոնք ցոյց են տալիս թէ օրէնքի գործը նորանց սրտերումը
գրուած է՝ նորանց խղճմտանքի վկայութիւնովը, եւ իրանց խորհուրդների իրար յանդիմանելովը,
կամ թէ իրաւունք տալովը.)[16]Այն օրը՝ որ Աստուած մարդկանց ծածուկ բաները կդատէ իմ
աւետարանի համեմատ Յիսուս Քրիստոսի ձեռովը:

NASB (UPDATED) TEXT: 2:12-16

**[12]For all who have sinned without the Law will also perish without the Law, and all who have sinned under the Law will be judged by the Law; [13]for *it is* not the hearers of the Law *who* are just before God, but the doers of the Law will be justified. [14]For when Gentiles who do not have the Law do instinctively the things of the Law, these, not having the Law, are a law to themselves, [15]in that they show the work of the Law written in their hearts, their conscience bearing witness and their thoughts alternately accusing or else defending them, [16]on the day when, according to my gospel, God will judge the secrets of men through Christ Jesus.**

**2:12 «նորանք՝ որ առանց օրէնքի մեղք գործեցին,»** Աստված բոլոր մարդկանց պատասխանատվության կկանչի, անգամ նրանց ովքեր չեն իմացել Հին Կտակարանի հայտնությունը կամ չեն լսել Ավետարանը: Բոլոր մարդիկ ունեն Աստծո մասին որոշակի գիտություն արարչագործությունից (հմմտ. 1:19-20; Սաղ. 19:1-6), և բնածին բարոյական զգացողությամբ, (հմմտ. 2:14-15): Ողբերգությունը նրանում է, որ բոլորը ինքնակամ մերժել են իրենց ունեցած լույսը (հմմտ. 1:21-23; 3:9,19,23; 11:32; Գաղ. 3:22):

▣ **«օրէնքը»** «օրենք» բառը այստեղ չունի հոդը: Այսպիսի քերականական կառուցվածքը սովորաբար օգտագործվում է ընդգծելու համար ԳՈՅԱԿԱՆԻ որակական նշանակությունը: Ինրևէ, Հռոմեացիներին ուղղված թղթում Պողոսն օգտագործում է «օրենք» տերմինը մի քանի տարբեր բաների համար (1) Հռոմեական օրենք; (2) Մովսեսական օրենք; կամ (3) մարդու հասարակական բարոյական գաղափարը ընդհանուր վերցրած: Կոնտեքստը և ոչ թէ ՀՈԴԸ պետք է հայտնի որ մեկը: Այս կոնտեքստը ընդգծում է, որ բոլոր մարդիկ իրենց սրտերում ինչ որ չափի գիտություն ունեն Աստծո բնական հայտնության Իր մասին (հմմտ. հ. 15):

**2:13 «Որովհետեւ ոչ թէ օրէնքը լսողներն են Աստուծոյ առաջին արդար,»** «Լսողներ» տերմինը ռաբիական կիրառության մեջ ուներ յուրահատուկ իմաստ Թորայի ռաբիական ուսանողների համար:

«Ճիշտ, ուղիղ» կամ «արդարացված» տերմինը (*kikē* իր բոլոր ձևերով) վճռական տերմին է Պողոսի աստվածաբանության մեջ (հմմտ. 3:4,20,24,26,28,30; 4:2,5; 5:1,9; 6:7; 8:30,33): «Ճիշտ, ուղիղ», «արդարացված», «արդարացում» բոլորն էլ առաջացել են *dikaios* բառից: Տես հատուկ թեմա: Արդարություն 1:17: Եբրայերենում (*tsadag*) այն իրականում վերաբերվում էր երկար ուղիղ եղեգին (15-ից 20 ոտնաչափ), որն օգտագործվում էր իրերը չափելու համար, ինչպես օրինակ պատերը կամ ցանկապատերը, կապարալարի համար:

Պողոսի գրվածքներում տերմինն ուներ երկու շեշտադրություն: Առաջինը՝ Աստծո արդարությունը տրվում է մեղավոր մարդուն, որպես ձրի պարգև Քրիստոսի հավատքի միջոցով: Սա հաճախ կոչվում է վերագրված արդարություն կամ դատական արդարություն: Սա օրինական հիմք է տալիս մարդուն՝ կանգնելու արդար Աստծո առաջ: Սա Պողոսի հայտնի «արդարացում հավատքով» թեմայի աղբյուրն է: Երկրորդը Աստծո գործն է մեղավոր մարդուն վերականգնել Իր պատկերին նմանեցնելու համար (հմմտ. Ծննդ. 1:26-27), կամ այլ կերպ ասած, քրիստոսանման դարձնելու համար: Այս համարը նման է Մաթ. 7:24; Ղուկ. 8:21 և 11:28; Հովh. 13:17; Հակոբ. 1:22-23,25— թախանձում է հավատացյալներին ոչ միայն լսողներ լինեն այլ կատարողներ:

Վերագրված արդարությունը <u>պետք է</u> երևա արդար կյանք ապրելով: Աստված ներում և փոխում է մեղավորներին: Պողոսն օգտագործում է այս տերմինը երկու իմաստներով էլ: Նոր Ուխտը մարդկանց տալիս է օրինական կարգավիճակ, բայց նաև պահանջում է աստվածահաճո ապրելակերպ: Այն տրվում է ձրի, բայց շատ թանկ արժե:

▣ **«այլ օրէնքը կատարողները»** Աստծո իմացությունը պահանջում է նոր հնազանդ կյանք (հմմտ. Ղևտ. 18:5; Մաթ. 7:24-27; Ղուկ. 8:21; 11:28; Հովհ. 13:17; Հակոբ. 1:22-25; 2:14-28): Շատ ձևերում այս գաղափարը նման է եբրայերեն *shema* տերմինին, որը նշանակում էր, որ մարդը ինչ լսում է այն էլ անում է (հմմտ. 2 Օրին. 5:1; 6:4; 9:1; 20:3; 27:9-10):

**Արևելահայերեն «Ուրեմն երբոր հեթանոսները՝ որ օրէնք չունին՝ բնութեամբ օրէնքի գործերն անեն, սորանք թէեւ օրէնք չունին իրանք են իրանց համար օրէնք»**

**Արևմտահայերեն «Քանզի հեթանոսները, որոնք օրէնք չունին, երբ բնականաբար օրէնքին գործերը կը գործեն, օրէնք չունենալով՝ իրենց անձերուն օրէնքը բուն իրենք կըլլան»**

2:14

NASB “For when Gentiles who do not have the Law do instinctively the things of the Law, these, not having the Law, are a law to themselves”

NKJV “for when Gentiles, who do not have the law, by nature do the things contained in the law, these, although not having the law, are a law to themselves”

NRSV “When Gentiles, who do not possess the law, do instinctively what the law requires, these, though not having the law, are a law to themselves”

TEV “The Gentiles do not have the Law, but whenever of their own free will they do what the Law commands, they are a law to themselves, even though they do not have the Law”

JB “For instance, pagans who never heard of the Law but are led by reason to do what the Law commands, may not actually ‘possess’ the Law, but, they can be said to ‘be’ the Law”

Բոլոր մշակույթներն ունեն ներքին-բարոյական օրենք, սոցիալական նորմ: Նրանք պատասխանատու են իրեն ունեցած ճշմարտության լույսի համար (հմմտ. I Կոր. 9:21): Այս համարը չէր նշանակում, որ իրենք կարող են Աստծո հետ ունենալ ճիշտ հարաբերություն, եթե նրանք ապրեն իրենց մշակույթի լույսի ներքո, այլ այն, որ նրանք պատասխանատու են իրենց բնածին գիտության համար Աստծո մասին:

2:15 **«նորանց խղճմտանքի վկայութիւնովը, եւ իրանց խորհուրդների իրար յանդիմանելովը, կամ թէ իրաւունք տալովը»** Կա ներքին-բարոյական ձայն: Բայց լիովին կարող ես վստահել միայն Սուրբ Գիրքին՝ լուսավորված Սուրբ Հոգով: Մեղքի մեջ ընկնելը ազդել է մեր խղճի վրա: Ինչևէ,

արարչագործությունը (1:18-20) և այս ներքին, բարոյական օրենքը (2:14-15) բոլորը Աստծուն ճանաչելու համար են, որով օժտված են որոշ մարդիկ: Հին եբրայերենում չկար տերմին, որ համասարազոր լիներ հունարեն «խիղճ» (*syneidesis*) բառին: Հունարեն հասկացողությունը ներքին բարոյական զգացմունքի ճիշտ ու սխալի վերաբերյալ հաճախ քննարկվում էր փիլիսոփա-ստոիկների կողմից: Պողոսը լավ ծանոթ էր հույն փիլիսոփաների ուսմունքներին (նա մեջբերում է Կլենտուսին Գործք 17:28-ում; Մենանդերին I Կոր. 15:33; և Եպիմենիդուսին Տիտոս 1:12) իր վաղ կրթության շնորհիվ Տարսոնում: Նրա հայրենիքը հայտնի էր իր հույն հռետորական և փիլիսոփայության գերազանց դպրոցներով:

**2:16 «Այն օրը»** Տես նշումը 2:5-ում.

▣ **«իմ աւետարանի համեմատ»** Կոնտեքստում սա վերաբերում է Հիսուս Քրիստոսի հայտնության Պողոսի քարոզչությանը: «Իմ» ԴԵՐԱՆՈՒՆ-ը արտացոլեց Պողոսի հասկացողությունը ավետարանի տնտեսավարումը, որը վստահվել էր իրեն (հմմտ. 16:25; I Կոր. 15:1; Գաղ. 1:11; I Տիմ. 1:11; II Տիմ. 2:8): Դա միայն իրեն էր պատկանում, բայց որպես Հեթանոսների Առաքյալ նա մեծ պատասխանատվություն էր զգում Հիսուս մասին ճշմարտությունը տարածելու մեջ հունա-հռոմեական աշխարհում:

▣ **«Աստուած մարդկանց ծածուկ բաները կդատէ»** Աստված գիտե բոլոր մարդկանց սրտերը (հմմտ. I Թագ. 2:7; 16:7; 3 Թագ. 8:39; I Մնաց. 28:9; II Մնաց. 6:30; Սաղ. 7:9; 44:21; 139:1-6; Առ. 15:11; 21:2; Եր. 11:20; 17:10; 20:12; Ղուկ. 15:16; Գործք 1:24; 15:8; Հռ. 8:27; Հայտ. 2:23): Հայրը, Իր Որդու միջնորդությամբ, յուրաքանչյուր շարժառիթ, յուրաքանչյուր արաք կբերի դատական վերաքննության (հմմտ. Մաթ. 25:31-46; Հայտ. 20:11-15):

▣ **«Յիսուս Քրիստոսի ձեռովը»** Հիսուս չեկավ որպես դատավոր (հմմտ. Հովհ. 3:17-21): Նա եկավ հայտնելու Հոր Աստծուն, մեռնելու որպես փոխանորդ, և հավատացյալներին օրինակ թողնելու՝ իրեն հետևելու համար: Երբ մարդիկ մերժում են Հիսուսին իրենք իրենց դատում են:

Ինչևէ, Նոր Կտակարանը նաև սովորեցնում է, որ Հիսուսը կդատի, որպես Հոր Աստծո ներկայացուցիչ (հմմտ. Հովհ. 5:22, 27; Գործք 10:42; 17:31; II Տիմ. 4:1): Հովհաննու ավետարանում կարելի է տեսնել և որոշ դժվարություն Հիսուսը որպես Դատավոր և/կամ Փրկիչ (հմմտ. 3:17-21 և 9:39):

## Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 2:17-24

[17] Ահա դու Հրէայ ես անուավում, եւ կռթնվում ես օրէնքի վերայ, եւ պարծենում ես Աստուծով: [18] Եւ

նորա կամքը գիտես, եւ զանազանում ես տարբեր բաները օրէնքից խրատուած լինելով: [19]Եւ քո
անձի վերայ վստահութիւն ունիս՝ որ կոյրերի առաջնորդ ես. եւ խաւարեալների լոյս.
[20]Անմիտների խրատիչ, երեխաների վարդապետ. որ օրէնքի գիտութեան եւ ճշմարտութեան
կերպարանքն ունիս օրէնքումը. [21]Արդ դու՝ որ ուրիշին սովորեցնում ես, քո անձին չե՞ս
սովորեցնում. դու որ քարոզում ես չգողանալ, գողանու՞մ ես: [22]Որ ասում ես շնութիւն չգործել՝
շնութիւ՞ն ես գործում. դու՝ որ կռքերից զարշում ես՝ սրբապղծութիւ՞ն ես անում: [23] Դու՝ որ
օրէնքովը պարծենում ես, օրէնքին դէմ գործելով Աստուծուն անարգու՞մ ես: [24]Որովհետեւ
Աստուծոյ անունը ձեր պատճառովը հայհոյվում է հեթանոսների մեջ, ինչպէս եւ գրուած է:

**NASB (UPDATED) TEXT: 2:17-24**

**[17]But if you bear the name "Jew" and rely upon the Law and boast in God, [18]and know *His* will and
approve the things that are essential, being instructed out of the Law, [19]and are confident that you
yourself are a guide to the blind, a light to those who are in darkness, [20]a corrector of the foolish, a
teacher of the immature, having in the Law the embodiment of knowledge and of the truth, [21]you,
therefore, who teach another, do you not teach yourself? You who preach that one shall not steal, do you
steal? [22]You who say that one should not commit adultery, do you commit adultery? You who abhor
idols, do you rob temples? [23]You who boast in the Law, through your breaking the Law, do you
dishonor God? [24]For "THE NAME OF GOD IS BLASPHEMED AMONG THE GENTILES BECAUSE OF YOU," just
as it is written.**

**2:17 «սիս»** Սա ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է, որը ենթադրվում է որպես ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ նրա գրական նպատակների համար: Այս պայմանը շարունակվում է մինչև h. 20-ը, բայց չունի եզրակացություն, ուստի TEV թարգմանության մեջ այս տեքստը տրվում է, որպես հնարավոր պնդումներ, որը կարող էր անել Հիսուսը: Հրեաներն ամբողջությամբ հենվում էին իրենց ծագումնաբանության, ավանդությունների և դրանց կատարման վրա՝ իրենց փրկության համար (հմմտ. Մաթ. 3:9; Հովh. 8:33,37,39):

▣ **«պարծենալ Աստծով»** Շատ հրեաներ հենվում են (1) իրենց ազգային ծագումնաբանության և (2) Մովսեսական Օրենքի կատարելու վրա, որով ընդունված են Աստծո կողմից: Իրականում, նրանց ինքնա-արդարացնող օրինապաշտությունը իրենց բաժանում էր Աստծուց (հմմտ. Մաթ. 5:20; Գաղ. 3): Ինչպիսի ողբերգական հեգնանք:

Պողոսը զարգացնում է այս փառաբանության գաղափարը I Կորնթացիների նամակում: Պողոսը բախվեց գոռոզ, ինքնահավան խրայելացի և ինքնահավան հույն մտավորականության հետ: Սակայն կարևորը նա է, որ ոչ մի մարմին իր արժանիքներով չի կարող փառավորել Աստծուն (կամ էլ կոպիտ ասած, Աստված ոչ մի բարի բան չստացավ ձեզ ընդունելու համար):

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՊԱՐԾԵՆԱԼ, ՄԵԾԱՐԵԼ**

Պողոսն օգտագործում է հունարեն *kauchaomai, kauchēma,* և *kauchēsis* բառերը 35 անգամ և միայն երկու անգամ հանդիպում է Նոր Կտակարանի մնացած մասերում (երկուսն էլ Հակոբոսի թղթում): Մեծամասնությունը գտնվում է I և II Կորնթացիների նամակում:

Կան երկու հիմնական ճշմարտություններ կապված այս թեմայի շուրջ;

- ոչ մի մարմին չի պարծենա Աստծո առաջ (հմմտ. I Կոր. 1:29; Եփ. 2:9)
- հավատացյալները պետք է պարծենան Տիրոջմով (հմմտ. I Կոր. 1:31; II Կոր. 10:17, որն ակնարկ է Եր. 9:23-24)

Ուստի, կա համապատասխան, հարմար և անթույլատրելի պարծանք/մեծարում (օր., հպարտություն):

1. համապատասխան, առանձնահատուկ

ա. փառքի հույսովը (հմմտ. Հռ. 4:2)

բ. Աստծով Տեր Հիսուս Քրիստոսի միջոցով (հմմտ. Հռ. 5:11)

գ. Տեր Հիսուս Քրիստոսի խաչով (օր., Պողոսի հիմնական թեման, հմմտ. I Կոր. 1:17-18; Գաղ. 6:14)

դ. Պողոսը պարծենում է

(1) նրա ծառայությունը առանց վարձատրության էր (հմմտ. I Կոր. 9:15,16; II Կոր. 10:12)

(2) Քրիստոսից ստացած իր հեղինակության և իշխանության համար (հմմտ. II Կոր. 10:8,12)

(3) նա չէր պարծենում ուրիշների աշխատանքով (ինչպես որոշ մարդիկ էին անում Կորնթոսում, հմմտ. II Կոր. 10:15)

(4) իր ազգային ժառանգությունով (ինչպես և մյուսները Կորնթոսում այդպես էին վարվում, հմմտ. II Կոր. 11:17; 12:1,5,6)

(5) իր եկեղեցիներով

(ա) Կորնթոսի (II Կոր. 7:4,14; 8:24; 9:2; 11:10)

(բ) Թեսաղոնիկեի (հմմտ. II Թես. 1:4)

(6) նրա վստահությունը Աստծո մխիթարության և փրկության վրա էր (հմմտ. II Կոր. 1:12)

2. անթույլատրելի, անհարմար

ա. կապված հրեական ժառանգության հետ (հմմտ. Հռ. 2:17,23; 3:27; Գաղ. 6:13)

բ. Կորնթոսի եկեղեցում ոմանք պարծենում էին

(1) մարդկանցով (հմմտ. I Կոր. 3:21)

(2) իմաստությունով (հմմտ. I Կոր. 4:7)

(3) ազատությամբ (հմմտ. I Կոր. 5:6)

գ. կեղծ վարդապետները փորձում էին պարծենալ Կորնթոսի եկեղեցում (հմմտ. II Կոր. 11:12)

**2:18 «գիտես»** Տես Հատուկ Թեմա ստորև

## ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՀՈՒՆԱՐԵՆ ՏԵՐՄԻՆՆԵՐԸ «ՓՈՐՁՈՒԹՅՈՒՆ, ՓՈՐՁ» և ՆՐԱՆՑ ՆՇԱՆԱԿՈՒԹՅԱՆ ԵՐԱՆԳՆԵՐԸ

Գոյություն ունեն երկու հունարեն տերմիններ, որոնք ունեն ինչ որ մեկին նպատակի համար փորձելու գաղափարը.

1. *Dokimazō, dokimion, dokimasia*

Այս տերմինը մետալուրգիական տերմին է, որն օգտագործվում է ինչ որ բանի կրակով փորձելու համար իրական լինելը ստուգելու պայմանով (փոխաբերական իմաստով նաև մարդուն): Կրակը հայտնում է մետաղի իսկական լինելը այրման, թրծման միջոցով (մաքրելով, զտելով): Ֆիզիկական գործընթացը դարձավ զորեղ իդիոմա Աստծո և/կամ մարդկանց համար ուրիշներին փորձելու համար: Այս տերմինը օգտագործվում է միայն դրական իմաստով՝ պիտանի լինելու փորձով.

Նոր Կտակարանում օգտագործվում է փորձելու համար

ա. եզներ, Ղուկ. 14:19

բ. ինքներս մեզ, I Կոր. 11:28

գ. մեր հավատքը, Հակոբոս 1:3

դ. նույնիսկ Աստծուն, Եբր. 3:9

Ենթադրվում էր, որ այս փորձությունների արդյունքները կլինեն դրական (հմմտ. Հռ. 1:28; 14:22; 16:10; II Կոր. 10:18; 13:3; Փիլ. 2:27; I Պետ. 1:7): Ուստի, տերմինը տալիս է գաղափար, երբ ինչ որ մեկը փորձվում է և ապացուցվում է որպես

ա. արժանի, կարևոր

բ. լավ, բարի

գ. անկեղծ, ազնիվ

դ. թանկագին, կարևոր

ե. պատվավոր

2. *Peirazō, peirasmos*

Այս տերմինն ունի ստուգման լրացուցիչ իմաստ, որը սխալը գտնելու կամ մերժելու համար է: Սա հաճախ օգտագործվում է կապված անապատում Հիսուսի փորձության հետ:

ա. Նկարագրում է Հիսուսին ծուղակը գցելու փորձի մասին (հմմտ. Մաթ. 4:1; 16:1; 19:3; 22:18,35; Մարկ. 1:13; Ղուկ. 4:2; 10:25; Եբր. 2:18):

բ. Այս տերմինը (*peirazō*) օգտագործվում է սատանայի անվան համար Մաթ. 4:3; I Թես. 3:5.

գ. Սա (բարդ կառուցվածքով, *ekpeirazō*) օգտագործվում է Հիսուսը, երբ խոսում է Աստծուն չփորձելու մասին (հմմտ. Մաթ. 4:7; Ղուկ. 4:12; նաև տես I Կոր. 10:9):

դ. Սա օգտագործվում է նաև այն ժամանակ, երբ խոսքը գնում է հավատացյալների փորձանքների և փորձությունների մասին (հմմտ. I Կոր. 7:5; 10:9,13; Գաղ. 6:1; I Թես. 3:5; Եբր. 2:18; Հակոբոս 1:2,13,14; I Պետ. 4:12; II Պետ. 2:9):

▣ **«Օրէնքի»** 17հ-ից սկսած խոսում է հրեա ժողովրդի մասին, ուստի «Օրենք» տերմինը այս կոնտեքստում պետք է վերաբերվի Մովսեսական Օրենքին: Սա հաստատվում է հ.25-ում, որտեղ խոսվում է թլպատության մասին:

**2:18-20** Հրեա առաջնորդներն հավատում էին, որ իրենց ճանապարհը (հուդայականության դավանանքը) ոչ միայն ամենաճիշտն էր, այլ միակը, որը տանում է Աստծո մոտ: Նաև նրանք վստահ էին, որ իրենք են ճշմարտ վարդապետները կրոնական հարցերում: Բայց արտոնությունը պահանջում է պատասխանատվություն (հմմտ. Ղուկ. 12:48):

Ահա նրանց վստահության զուգահեռ արտահայտությունները

1. կույրերի առաջնորդ, հ. 19
2. խավարյալների լույս, հ. 19
3. անմիտներին խրատիչ, հ. 20
4. երեխաների վարդապետ, հ. 20
5. օրենքի գիտության և ճշմարտության կերպարանքն ունես, հ. 20

**2:21-24** Եթե մեկը հավատում է անձնական հնազանդությանը, ապա այդ հնազանդությունը պետք է ամբողջական լինի (հմմտ. Մաթ. 5:20,48; Գաղ. 3:10, որը մեջբերում է 2 Օրին. 27:26 և Հակ. 2:10): Ընկած, մեղավոր մարդկության համար սա անհնարին բան է: 21-33 համարներում կան հինգ հռետորական հարցեր:

**2:22** Բավականին դժվար է հասկանալ, թե հհ. 22-23 Պողոսն ինչ ինկատի ուներ: Քանի որ այս նկարագրումը չի համապատասխանում այդ ժամանակվա հրեա մեծամասնությանը, միանգամայն հնարավոր է, որ այդ մեղքերը օգտագործված են հոգևոր իմաստով, նման այն բանի, թե ինչպես է Հիսուսը մեկնաբանում Օրենքը Մաթ. 5:20-48-ում: Ջորջ Լեդը *«Նոր Կտակարանի աստվածաբանությունը»* գրքում, էջ. 505 (George Ladd in *A Theology of the New Testament*, ) ասում է.«Պողոսը պետք է, որ ինկատի ունենար Աստծո փառքի և մեծարման այն գողությունը, որը միայն Նա ուներ, և նաև հոգևոր շնությունը և ճշմարիտ երկրպագության ոտնահարումը, որը միայն Աստծուն է պատկանում; և այս ամենն նրանք անում էին իրենք իրենց մեծարելով որպես դատավորներ և տեր իրենց հայրենակիցների վրա»:

**2:22 «կուռքերիցը գարշում ես»** Այս բայի հիմնական նշանակությունը սա է «ետ կանգնել ինչ որ մի բանից, որից գարշում ես, զզվում ես»:

▣ **«սրբապղծությի՞ւն ես անում»** Պատմականորեն այդպես էլ մինչև վերջ անորոշ մնաց, թե ստույգ ինչ էր ցույց տալիս այս արտահայտությունը, բայց շատ հավանական է, որ ինչ որ կերպ այն վերաբերվում էր կռապաշտությանը:

**2:24** Սա մեջբերում է Եսայա 52:5-ից ըստ Սեպտուագինդի: Աստծո օրհնություններն Իսրայելին ուխտը պահելու և հետևելու համար էր (հմմտ. 2 Օրին. 27-28), որպեսզի նրանք վկաները լինեին ամբողջ աշխարհում: Ինչևէ, Իսրայելը երբեք չպահեց ուխտը, այդ պատճառով աշխարհը տեսնում էր միայն Աստծո դատաստանները (հմմտ. Եզ. 36:22-32): Իսրայելը պետք է քահանաների թագավորություն լիներ (հմմտ. Ել. 19:5-6), որպեսզի ամբողջ աշխարհին ԵՀՈՎԱ-յին առաջնորդեր (հմմտ. Ծնն. 12:3; Եփ. 2:11-3:13):

## Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 2:25-29

25 Արդ թլփատութիւնը շահաւոր է՝ թէ որ օրէնքը պահող ես. ապա եթէ օրէնքի դէմ յանցաւոր ես, քո թլփատութիւնն անթլփատութիւն եղաւ:
26 Բայց թէ որ անթլփատութիւնն օրէնքի իրաւունքները պահէ, չէ՞ որ նորա անթլփատութիւնը՝ թլփատութիւն կը համարուի:
27 Եւ ի բնէ անթլփատութիւնը՝ օրէնքը կատարելով կդատապարտէ քեզ, որ գրով եւ թլփատութիւնով օրէնքի դէմ յանցաւոր ես.
28 Որովհետեւ նա չէ Հրէայ՝ որ դրսի երեւոյթով է, եւ այն չէ թլփատութիւնը՝ որ մարմնով դրսի երեւոյթով է.
29 Այլ նա՝ որ ծածուկ Հրէայ է, եւ սրտի թլփատութիւնը հոգով՝ եւ ոչ թէ գրով. որի գովասանքը ոչ թէ մարդկանցից է, այլ Աստուածանից:

NASB (UPDATED) TEXT: 2:25-29

25 For indeed circumcision is of value if you practice the Law; but if you are a transgressor of the Law, your circumcision has become uncircumcision.
26 So if the uncircumcised man keeps the

**requirements of the Law, will not his uncircumcision be regarded as circumcision? [27]And he who is physically uncircumcised, if he keeps the Law, will he not judge you who though having the letter *of the Law* and circumcision are a transgressor of the Law? [28]For he is not a Jew who is one outwardly, nor is circumcision that which is outward in the flesh. [29]But he is a Jew who is one inwardly; and circumcision is that which is of the heart, by the Spirit, not by the letter; and his praise is not from men, but from God. [2]Great in every respect. First of all, that they were entrusted with the oracles of God.**

**2:25 «թլփատութիւն»** Պողոսը կրկին օգտվում է սուր քննադատության ոճից: Նա կանխատեսնում է, որ ինչ որ մեկը կպնդի, որ բավական է այն, որ իրենք թլպատված են (հմմտ. Ծննդ. 17:10-11) և որ իրենց սերնդաքանությունը գալիս է Աբրահամից: Պողոսն անկեղծորեն և քաջությամբ քանդում է այս փայփայված հրեական հույսը (հմմտ. Մաթ. 3:7-10; Հովհ. 8:31-59):

Իսրայելի բոլոր հարևան ազգերը, բացի փղշտացիներից, թլպատվում էին: Ինքնին ծեսը չէր կարևոր, այլ սա ընդունողի հավատքի շարունակությունն էր (հմմտ. հհ. 26-27): Սա հավասարաչափ վերաբերվում է բոլոր կրոնական ծեսերին: Աստվածապաշտ մարդիկ հաճախ ուզում են ստանալ Աստծո ուխտի օրհնությունները, բայց առանց պատասխանատվություն կրելու:

**2:25-26 «թէ որ. . .եթէ. . . թէ որ»** Այստեղ կան երեք ԵՐՐՈՐԴ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ, որոնք վերաբերվում են ապագայում հնարավոր գործողություններին: Հնազանդությունը (հմմտ. 2 Օրին. 27-30) բանալի թեման է Պողոսի փաստարկներում 2-րդ գլխում, բայց ոչ 3:21-31-ում (հմմտ. Գաղ. 3):

**2:26-27** Այս համարներում հույսն այն է, որ որոշ հեթանոսներ հետևել են այն լույսին, որն իրենք ունեին: Սրա միակ հնարավոր աստվածաշնչյան օրինակը կարող է լինել Կոռնելիոսը Գործք 10-րդ գլխում: Սակայն նա ամբողջությամբ չի համապատասխանում այս հատվածի մտքին, քանի որ նա աստվածավախ և աստվածապաշտ անձնավորություն էր տեղական ժողովարանում:

Իրականում այս համարները հանդիսանում են պարտադիր պահանջ՝ հաստատելով Պողոսի պնդումներն այն մասին, որ հրեաներն էլ փրկության կարիք ունեն: Հռոմեացիս 3:23-ը ամփոփում է այն, որ բոլոր մարդիկ առանց Քրիստոսի հոգևորապես կորսված են: Եթե կան հեթանոսներ, ովքեր ապրում են համաձայն այդ լույսի, որն ունեն արարչագործությունից սկսած և ներքին բարոյական զգացմունքը, ապա Աստված նրանց հնարավորություն կտա Քրիստոսի դառնալու ինչ որ մի ձև, այս կամ այն կերպ, երբևէ:

**2:28-29 «Որովհետեւ նա չէ Հրէայ. . .նա Հրէայ է»** Այս պնդումները խիստ կարևոր են ժամանակակից աստվածաբանության զարգացման համար դիսպենսացիոնալիզմ/ dispensationalism

և փորձ անել առանձնացնել  կամ կաղապարի մեջ դնել  Հին Կտակարանի մարդկանց Նոր Կտակարանի մարդկանցից: Կա միայն մեկ ուխտ և մեկ ժողովուրդ (համտ. Հռ. 9:6; Գաղ. 3:7-9, 29; 6:16; I Պետ. 3:6): Նոր ուխտը հնի զարգացումն ու իրականացումն է հանդիսանում: Աստծո ժողովուրդ միշտ եղել են հավատքով  և ոչ թե ծագումով:  Նրանք «սրտի մարդիկ» են , և ոչ թե ծեսի կամ ռասայական պատկանելության մարդիկ:  Այստեղ որոշիչ դեր է խաղում հավատքը, և ոչ թե ծնողները:  Եվ սրա հաստատումը հանդիսանում է մտածելը  ըստ օրենքի և ոչ թե նշանի:

▣ **«մարմնով»** Տես հատուկ թեմա 1:3.

**2:29** Թլպատությունը որպես ուխտի նշան  (համտ. Ծննդ. 17:14) Հին Կտակարանում փոխաբերություն էր հանդիսանում, այն մարդու համար, ով բաց էր Աստծո առաջ: Այն փոխաբերականորեն զարգացավ մի քանի ձևերով  (1) սրտի թլպատություն (համտ. 2 Օրին. 10:16; Եր. 4:4); (2) ականջի թլպատություն  (համտ. Եր. 6:10); և (3) լեզվի, բերանի թլպատություն (համտ. Ելից 6:12,30):  Երբեք և ոչ մի տեղ չի համարվել, որ Օրենքը միայն արտաքին էր, ցուցադրելի կողեքսով, այլ կյանք փոխող սկզբունք էր:  Տես հատուկ թեմա: «Պողոսի հայացքները Մովսեսական Օրենքի վրա ուղղված» 7:12:

**Արևելահայերեն  «եւ սրտի թլփատութիւնը հոգով՝ եւ ոչ թէ գրով»**
**Արևմտահայերեն «սրտին թլփատութիւնն է  հոգիով ու ո՛չ թէ գրով»**

▣

**NASB** **"that which is of the heart, by the Spirit, not by the letter;"**
**NKJV** **"that of the heart, in the Spirit, and not in the letter;"**
**NRSV** **"a matter of the heart -- it is spiritual and not literal"**
**TEV** **"which is the work of God's Spirit, not of the written Law."**
**JB** **"in the heart -- something not of the letter but of the spirit."**

Հունարենում այս արտահայտությունը երկիմաստ է: Որոշ թարգմանություններ  սրա ամբողջ իմաստը հոգևորի մասին է, որը հակառակ է բառացի իմաստին (համտ. NRSV, 20-րդ դարի Նոր Կտակարանը [the Twentieth Century New Testament], Նոկսի թարգմանություն [the Knox translation], Լամսի թարգմանություն [the Lamsa translation of the Peshitta], Ուիլյամսի թարգմանություն [the Williams translation] և Բերկլիի Նոր տարբերակը [the New Berkeley Version]): Ուրիշ թարգմանությունները հակասությունը տեսնում են Սուրբ Հոգու  (համտ. 7:6; II Կոր. 3:6, որտեղ գոյություն ունի նույն քերականական կառուցվածքը) և գրված տեքստի  միջև (համտ. NASB, NKJV, NEB, NIV և TEV):

Պողոսը քննարկում է այն փաստը, երբ որոշ հեթանոսներ ունակ են Աստծու հաճելի գտնվել Օրենքից դուրս: Եթե դա այդպես է, ուրեմն Աստծո զավակների թվի մեջ նաև մտնում են ոչ ֆիզիկական թլպատություն ունեցողները (հմմտ. Գաղատացիս թուղթ): Աստծո ընտանիքը ավելի ընդարձակ է քան հրեա ազգը (հմմտ. Ծննդ. 3:15; 12:3; Ելից 19:5); Հոբ, Մելքիսեդեկ, Հոթոր, Քաղեբ, Ռախաբ և Հռութ ծագումով հրեա չէին: Նույնիսկ Եփրայիմի և Մանասեի ցեղերը կիսով չափ եգիպտացիներ էին (հմմտ. Ծննդ. 41:50-52):

## ՔՆՆԱՐԿՎՈՂ ՀԱՐՑԵՐ

Սա սերտողության համար ուղեցույց հանդիսացող մեկնաբանություն է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաչնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ:

1. Ինչպե՞ս ազդեց հրեաների անհավատարմությունը Աստծո խոստման վրա (3:3-4)
2. Կա՞ որևէ առավելություն Աստծո առաջ հրեա լինելը (3:1-8)
3. Ի՞նչ է սուր քննադատություն:
4. Ո՞րն է հիմնական գաղափարը ենթադրված սուր քննադատության հհ. 5-8
5. Արդյոք իրականում նշանակություն ունի այն, թե ինչպես է մարդն ապրում, եթե արդարացումը նա ստանում է շնորհքով հավատքի միջոցով, անկախ գործերից (3:8)
6. Ո՞րն է աստվածաբանական գաղափարը ամբողջական մեղավորության անբարոյականության (3:10-18)
7. Ո՞րն է Մովսեսական Օրենքի նպատակը, կամ օրենքն ընդհանրապես (3:20; Գաղ. 3:24-25)
8. Ի՞նչու սատանան չի հիշատակվում 1-3 գլուխներում, երբ խոսքը գնում է կորսված և մեղավոր մարդու մասին:
9. Հին Կտակարանի խոստումները պայմանական են թե՞ ոչ պայմանական:
10. Ո՞րն է Մովսեսական Օրենքի նպատակը (1) ոչ հրեայի և (2) հրեայի կյանքում:
11. Ձեր բառերով ուրվագծեք Պողոսի բանավեճերը/փաստարկները 1:18-3:20 հատված առ հատված:

# ԹՈՒՂԹ ՈՒՂՂՎԱԾ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

## ԳԼՈՒԽ 3

| ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ | | | | |
|---|---|---|---|---|
| UBS[4] | NKJV | NRSV | TEV | JB |
| Հրեաները և Օրենքը (2:17-3:8) | Աստծո Դատաաստանը պաշտպանված է | Հրեաների Առավելությունը | Հրեաները և Օրենքը (2:17-3:8) | Աստծո Խոստումները չեն փրկի Նրանց |
| 3:1-8 | 3:1-8 | 3:1-8 | 3:1-4 | 3:1-8 |
| | | | 3:5-6 | |
| | | | 3:7-8 | |
| Արդար չկա | Բոլորը մեղանչել են | Բոլորը հանցավոր են | Ոչ մի մարդ արդար չէ | Բոլորը հանցավոր են |
| 3:9-20 | 3:9-20 | 3:9-18 | 3:9-18 | 3:9-18 |
| | | 3:19-20 | 3:19-20 | 3:19-20 |
| Հավատքով Արդարացում | Աստծո Արդարությունը Հավատքի միջոցով | Ճշմարիտ Արդարություն | Ինչպե՞ս է Աստված մարդկանց արդարացնում | Աստծո Արդարության Հայտնությունը |
| 3:21-26 | 3:21-26 | 3:21-26 | 3:21-26 | 3:21-26 |
| | Պարծանքը խափանվեց | Պարծանքը խափանվեց | | Ի՞նչ է Հավատք անում |
| 3:27-31 | 3:27-31 | 3:27-31 | 3:27-31 | 3:27-31 |

**ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ** (տես էջ vii)

*Հետևել բուն հեղինակի մտադրությանը պարբերությունների մակարդակով*

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես

Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Ճանաչիր թեմաները: Համեմատիր քո թեմայի բաժանումները վերը նշված 5 թարգմանությունների հետ: Բաժանումները ներշնչված չեն, բայց դա բանալի է հետևելու բուն հեղինակի մտադրությանը, որը մեկնաբանության սիրտն է: Յուրաքանչյուր պարագրաֆ ունի մեկ և միայն մեկ թեմա:

Մեկ շնչով կարդացեք այս գլուխը: Ուրվագծեք հիմնական թեմաներն ու թեման արտահայտեք մեկ նախադասությամբ:

1. Առաջին պարբերություն
2. Երկրորդ պարբերություն
3. Երրորդ պարբերություն
4. և այլն

### ԿՈՐՏԵՔՍՏԱՅԻՆ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ

Ա. 1-8հհ. կապակցված բովանդակություն են, բայց դժվար է հետևել Պողոսի տրամաբանությանը, որովհետև նա օգտագործում է գրական տեխնիկա որը կոչվում է սուր քննադատություն (ենթադրյալ ընդդիմախոս, հակառակորդ):

Բ. Թվում է, թե Պողոսը կանխազգում է, թե ինչպես որոշ հրեաներ կարձագանքեն 2:17-29հհ. ուստի նա պատասխանում է նրանց հակաճառություններին/բողոքներին (Կոռլեյ, Վուգհան, Հռոմեացիս, էջ 37-39):

1. Առաջին հարց. Իրականում ոչ մի առավելությու չկա՞ հրեաների համար (1-2հհ.)
2. Երկրորդ հարց. Արդյո՞ք Աստծո խոսքը նվազեց/ձախողվեց որոշ հրեաների անհավատարմության պատճառով (3-4հհ.):
3. Երրորդ հարց. Եթե Աստված օգտագործեց հրեաներին Իր էությունը հայտնելու համար, ապա հրեաները դեռ պատասխանատու՞ են դատականորեն (5-8հհ.)

Գ. Եզրափակումը/ամփոփումը հետ է տանում դեպի 2:11: Աստծո մոտ աչառություն չկա: Բոլոր մարդիկ հաշվետու/պատասխանատու են իրենց ունեցած լույսից անջատ ապրելու

համար (բնական հայտնություն և/կամ հատուկ հայտնություն):

Դ. 9-18հհ. Հին Կտակարանի մեջբերումներից են, որոնք նկարագրում են հրեաների մեղքը:

Ե. 19-20հհ. ամփոփում են Իսրայելի հոգևոր վիճակը և Հին Կտակարնի նպատակը (հմմտ. Գաղ. 3):

Զ. 21-31հհ. 1:18-3:20հհ.-ի ամփոփումն են: Սրանք ավետարանի առաջին աստվածաբանական հատկանիշն են (տես համառոտ ուրվագիծը, էջ 2):

**NASB (UPDATED) TEXT: 3:1-8**

**[1]Then what advantage has the Jew? Or what is the benefit of circumcision? [2]Great in every respect. First of all, that they were entrusted with the oracles of God. [3]What then? If some did not believe, their unbelief will not nullify the faithfulness of God, will it? [4]May it never be! Rather, let God be found true, though every man *be found* a liar, as it is written, "THAT YOU MAY BE JUSTIFIED IN YOUR WORDS, AND PREVAIL WHEN YOU ARE JUDGED." [5]But if our unrighteousness demonstrates the righteousness of God, what shall we say? The God who inflicts wrath is not unrighteous, is He? (I am speaking in human terms.) [6]May it never be! For otherwise, how will God judge the world? [7]But if through my lie the truth of God abounded to His glory, why am I also still being judged as a sinner? [8]And why not *say* (as we are slanderously reported and as some claim that we say), "Let us do evil that good may come"? Their condemnation is just.**

## ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 3:1-8**

**3** [1]Արդ ի՞նչ է Հրէայի առաւելութիւնը, կամ ի՞նչ է թլփատութեան օգուտը: [2]Շատ, ամեն կերպով. առաջ հէնց նա որ Աստուծոյ պատգամները նորանց հաւատացուեցան: [3] Բայց ի՞նչ. եթէ ոմանք չհաւատացին, մի՞թէ նորանց անհաւատութիւնն Աստուծոյ հաւատքը կխափանէ. քաւ լիցի: [4]Արդ թող Աստուած ճշմարիտ լինի, իսկ ամեն մարդ սուտ. ինչպէս գրուած է, Որ արդար լինես քո խոսքերումը, եւ յաղթես քո դատուելումը: [5] Բայց եթէ մեր անիրաւութիւնն Աստուծոյ արդարութիւնը յայտնի երեւացնում է, ի՞նչ ասենք. մի՞թէ անիրաւ է Աստուած, որ բարկութիւնը բերում է: [6]Մարդի կերպով եմ ասում, քաւ լիցի. ապա Աստուած ի՞նչպէս կդատէ աշխարհքը: [7] Որովհետեւ եթէ Աստուծոյ ճշմարտութիւնն իմ ստութիւնովն աւելացավ նորա փառքի համար, էլ ի՞նչու եմ ես մեղաւորի պէս դատվում: [8] Եւ ի՞նչու համար այնպէս չանենք ինչպէս չարախօսվում ենք, եւ ինչպէս ոմանք ասում են մեզ համար, թէ ասում լինինք, թէ Չար գործքեն՝ որ բարին գայ. որոնց դատաստանը արդար է:

**3:1 «Ի՞նչ է Հրէայի առաւելութիւնը»** Պողոսը շարունակում է օգտագործել քննադատության բառացի տեխնիկան/հմտությունը, կամ ենթադրյալ ընդդիմություն, իր պատգամը հայտնելու համար: Հրեա ժողովրդի առանձնաշնորհները թվարկելով, տես 3:2 և 9:4-5հհ.

**3:2 «Շատ, …առաջ հէնց»** Պողոսն օգտագործում է «առաջ» բառը 1:8հ., բայց առանց երկրորդ մասը նշելով: Նա նույնն անում է այստեղ: Պողոսի գրվածքն այնքան խիստ էր, ինչպես նաև հրամայող ,որ հաճախ նրա քերականական կառուցվածքները թերի են:

- **«որ Աստուծոյ պատգամները նորանց հաւատացուեցան»** Աստծո հայտնությունն ունենալը դա ահարկու պատասխանատվություն է, ինչպես նաև հսկայական առանձնաշնորհ (հմմտ. Ղուկ.12:48): Նրանք Աստծո պարգևի տնտեսներն էին (Անցյալ կրավորական հմմտ.1 Թես. 2:4):

  *logion* (պատգամներ) բառը օգտագործվում է Սեպտուագինտում որպես Աստծո կողմից ուղարկված խոսք (հմմտ. Թվոց 24:4,16; 2 Օրին. 33:9; Սաղ. 119:67; Ես. 5:24; 28:13): Այն հետևողականորեն օգտագործվում է նույն իմաստով Նոր Կտակարանում (հմմտ.
  Գործք 7:38; Եբր. 5:12; 1Պետ. 4:11):

**3:3 «Եթէ»** առաջին կարգի պայմանական նախադասություն է, որը ենթադրվում է ճիշտ հեղինակի տեսանկյունից կամ նրա գրական նպատակների համար: 5 և 7հհ. նույնպես առաջին կարգի պայմանական նախադասություններ են:

**NASB, NKJV “some did not believe”**
**NRSV, JB “some were unfaithful”**
**TEV “what if some of them were unfaithful”**

3:3 «**ոմանք չհաւատացին**»

Սա կարող է վերաբերի կամ անհատ Իսրայելացու անհավատարությանը կամ էլ Եհովայի վրա ունեցած անձնական հավատքի պակասությանը: Մտավորապես դժվար է կապել Աստծո անպայմանական խոստումները և մարդկային արձագանքի պայմանական հրամանը: Չնայած որ սա աստվածաշնչյան պարադոքս է/հարակարծիք (հմմտ. 3:4-5): Աստված հավատարիմ նույնիսկ երբ Իր ժողովուրդը ոչ (Ովսեա 1,3):

- «փչացնել, ոչնչացնել» Տես Հատուկ Թեմա

ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԱՆՎԱՎԵՐ ***(KATARGEZ)***

Այս *(katargey)* Պողոսի ամենասիրելի խոսքերից մեկն է: Նա օգտագործեց այն ամենաքիչը 25 անգամ, բայց այն ունի շատ լայն իմաստային կարգ:

Ա. Սա հիմնական ստուգաբանական արմատն է *argos* բառի, որը նշանակում է

1. Անգործ
2. Ծույլ
3. Չօգտագործված
4. Անօգուտ
5. Չգործող

Բ. *Kata* բառի հետ օգտագործվում էր արտահայտելու համար

1. Անգործություն
2. Անգործածելիություն
3. Այն, ինչը ջնջվել էր
4. Այն, ինչը վերջ էր դրված
5. Այն, ինչը ամբողջությամբ չգործող էր

Գ. Այն մեկ անգամ օգտագործված է Ղուկասի ավետարանում նկարագրելով անպտղությունը, ուստի անպիտան ծառ (հմմտ. Ղուկ. 13:7)

Դ. Պողոսն օգտագործում է այն պատկերավոր լեզվով երկու հիմնական ձևերով

1. Աստված չգործող/անազդու է անում այն բաները, որոնք թշնամի են մարդուն

ա. Մարդու մեղավոր բնությունը – Հռ.6:6

բ. Մովսեսական օրենքը՝ «ժառանգ»-ի հետ կապված Աստծո խոստման վերաբերմամբ - Հռ. 4:14; Գաղ. 3:17; 5:4,11; Եփ. 2:15

գ. Հոգևոր ուժերը – 1Կոր.15:24

դ. «Անօրենը» - 2Թես. 2:8

ե. Ֆիզիկական մահը –1Կոր.15:26; 2Տիմ. 1:16 (Եբ.2:14)

2. Աստված հինը (ուխտ, ժամանակաշրջան) փոխում է նորի

ա. Բաներ կապված մովսեսական օրենքի հետ –Հռ.3:3,31; 4:14; 2Կոր. 3:7,11,13,14

բ. Ամուսնության նմանությունը ըստ Օրենքի – Հռ. 7:2,6

գ. Այս ժամանակի բաները - 1Կոր. 13:8,10,11

դ. Այս մարմինը – 1Կոր. 6:13

ե. Այս ժամանակի առաջնորդները – 1Կոր. 1:28; 2:6

Այս բառը թարգմանվում է այնքան շատ ձևերը, բայց նրա հիմնական իմաստն է ինչ-որ մի բան անպիտան դարձնել, անվավեր, չգործող, անզոր բայց ոչ իհարկե գոյություն

NASB "May it never be!"
NKJV, TEV "Certainly not!"
NRSV "By no means!"
JB "That would be absurd."

3:3 Արևելահայերեն «քավ լիցի»
Արևմտահայերեն «քավ լիցի»

Հազվագյուտ է օգտագործվում ԲՂՁԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, որն արտահայտում է իղձ, փափագ կամ աղոթք և պետք է թարգմանվի «Թող երբեք այդպես չլինի/ոչ երբեք»: Անհավատության այս զարմացնող արտահայտությունը հաճախ օգտագործվում էր Պողոսի կողմից սուր քննադատական գրական տեխնիկա ունենալու պատճառով (հմմտ.3:4,6,31; 6:2,15; 7:7,13; 9:14; 11:1; 1Կոր. 6:15; Գաղ.2:17; 3:21; 6:14) Սա նրա ընդունված հաստատումը շեշտակիորեն ուրանալու կերպն է:

Տես գրական ձևը, թե ինչպես է Պողոսը հերքում ընդունված հակառակող հարցերն ու դրույթները:

1. «քավ լիցի», հh.4,6
2. «Արդ թող Աստված ճշմարիտ լինի, իսկ ամեն մարդ սուտ», h.4
3. («Մարդի կերպով եմ ասում»), h.6
4. («ինչպես չարախոսվում ենք, և ինչպես ոմանք ասում են մեզ համար»),h.8

- **«Արդ թող Աստված ճշմարիտ լինի, իսկ ամեն մարդ սուտ»,** Սա ՆԵՐԿԱ ՄԻՋԻՆ ՀՐԱՄԱՅՈՂԱԿԱՆ է: Այս կառուցվածքը կենտրոնացվում է ենթակայի շարունակական վիճակի վրա; Աստված հավատարիմ է ու ճշմարիտ, մարդիկ անհավատարիմ ու ստախոսներ են: Սա Սաղ.116:11-ի ակնարկումն է և նման է այն բանին, թե ինչ պետք է սովորեր Հոբը 32:2; 40:8:

Տես մեղավորության ամբողջական/տիեզերական տարրը այս գլխում, ներկայացված Պողոսի կողմից *pas* (բոլորը, ամենքը) 4,9,12,19,20,23,24hh, բայց փառք Աստծո, որ կա նաև տիեզերական փրկության առաջարկը (հմմտ.3:22):

«ինչպես գրված է» Բառացիորեն նշանակում է «այն եղել և շարունակվում է գրվել»: Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ ԿՐԱՎՈՐ Այն դարձավ տեխնիկական ոճ, որը հաստատում է Սուրբ Գրքի աստվածային ներշնչանքը (հմմտ. մաթ. 5:17-19): Սա մեջբերում է Սաղ. 51:4-ից

Սեպտուագինդում(LXX):

**3:5-6** Այն փաստարկը, որ Պողոսն անում է այս համարների մեջ վերաբերում է Աստծո հատուկ ընտրությանը՝ Իսրայելին, որպես աշխարհին հասնելու իմաստով (հմմտ. Ծննդ.12:3; Ելից. 19:5-6): Հին Կտակարանում «ընտրություն» վերաբերվում էր ծառայությանը, և ոչ թե որպես հատուկ արտոնություն: Աստված ուխտ կապեց նրանց հետ: Նա հավատարիմ էր, նրանք անհավատարմ (հմմտ. Նեեմիա 9): Այն փաստը, որ Աստված դատում է անհավատարիմ իսրայելացիներին ապացույցն է Իր արդարության:

Իսրայելը նշանակված էր որպես հեթանոսներին հասնելու միջոց: Նրանք թերացան (հմմտ. 3:24): Աստծո նպատակը տիեզերական փրկության (հմմտ. Ծննդ. 3:15) համար չի վնասվում Իսրայելի թերանալովը: Իրողությունն այն է,որ Աստծո հավատարմությունը Իր սկզբնական ուխտը հաստատվում է Հռոմեացիս 9-11գլուխներում: Անհավատ Իսրայելը մերժվում է,բայց հավատացյալ Իսրայելը Աստծո փրկագործման գագաթնակետին կհասնի:

Պողոսի քննադատությունը 5-6հհ. զուգահեռ է 7-8հհ.

**3:5 «եթե»** Սա ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ, որը ենթադրվում է որպես ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ նրա գրական նպատակների համար: 3 և 7հհ. նույնպես ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ նախադասություններ են:

▣ «եթէ մեր անիրաւութիւնն Աստուծոյ արդարութիւնը յայտնի երեւացնում է», Այս ԴԵՐԱՆՈՒՆԸ, մեր, պետք է վերաբերի հավաքական իմաստով բոլոր հրեաներին: Տես հատուկ թեմա 1:17-ում

▣ «ի՞նչ ասենք.» Պողոսն օգտագործում էր քննադատություն (հմմտ. 3:5; 7:7; 8:31; 9:14,39). Պողոսն պարզաբանում է իր ներկայացումը՝ օգտագործելով սուր քննադատություն ենթադրյալ ընդդիմախոս, հակառակորդ (հմմտ. Մաղ. 1:2,6,7,12,13; 2:14,17 {երկու անգամ}; 3:7,13,14).

**NASB** “(I am speaking in human terms.)”
**NKJV** “(I speak as a man.)”
**NRSV** “(I speak in a human way.)”
**TEV** “(I speak here as men do.)”
**JB** “—to use a human analogy—”

▣ **Արևելահայերեն «Մարդի կերպով եմ ասում »**

**Արևմտահայերեն «Մարդկօրեն կըսեմ»**

Պողոսը հաճախ իր աստվածաբանական փաստարկներում օգտագործում էր մարդկային տրամաբանություն (հմմտ. 6:19; I Կորն. 9:8; Գաղ. 3:15). Այստեղ այն գործում է, որպես սուր քննադատություն ենթադրյալ ընդդիմախոս, հակառակորդ-ի պնդումները/հայտարարությունները մերժելու ձև:

**3:7-8 Ակնհայտ զուգահեռ կա** 5 և 7հh. Պողոսը կամ (1) շարունակում է օգտագործել քննադատության գրական տեխնիկան սուր քննադատություն ենթադրյալ ընդդիմախոս, հակառակորդ (հմմտ. 3:5,7; 7:7; 8:31; 9:14,30) կամ (2) քննադատությամբ վարվելով իր արդարացում միայն հավատքով քարոզչությանը (հմմտ. 8h.):

Պողոսը չբացատրեց կամ չպատասխանեց մեղադրանքին մանրամասնորեն, բայց ուժգնորեն դատապարտում է մեղադրանքը: Հնարավոր է, որ առարկությունը ձրի անարժան արդարացումը հավատքով, որը կարող էր առաջնորդել անօրենության կամ ավելին անհավատարիմ անհնազանդության: Պողոսը հավատաց, որ ձրի շնորհքը կտանի դեպի Քրիստոսանմանության՝ նոր հոգու և երախտագիտության կյանքի միջոցով: Հրեաները, հույն բարոյագետները և Պողոսը բոլորն էլ ուզում էին բարոյական ապրելակերպ իրենց փոխված կյանքերում: Բայց այն գալիս է ոչ թե ենթարկվելով արտաքին օրենքի կողին, այլ նոր սրտին (հմմտ. Եր. 31:31-34; Եզ. 26:22-32):

**3:7 «եթե»** Սա ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ (նաև 3 և5hh.) որը ենթադրվում է որպես ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ նրա գրական նպատակների համար:

- **«աւելացավ »** Տես Հատուկ Թեմա 15:3

- **«նորա փառքի»** տես ծանուցում 3:23-ում

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 3: 9-18**
[9]Եւ հիմա ի՞նչ. աւելի՞ ենք. ամենեւին ոչ. որովհետեւ առաջ մեղադրեցինք Հրէաներին եւ
հեթանոսներին, թէ ամենքը մեղքի տակ են. [10]Ինչպէս որ գրուած է, թէ ամենքը մեղքի
տակ են. Ինչպէս որ գրուած է, թէ Արդար չկայ՝ մէկն էլ չկայ: [11]Չկայ իմացող, չկայ
Աստուծուն խնդրող, [12]Ամենքը խոտորեցան, միասին անպիտան եղան. չկայ բարութիւն
անող, մինչեւ մէկն էլ չկայ: [13]Նորանց կոկորդը բաց գերեզման է, եւ իրանց լեզուներովը
նենգութիւն են անում. իժերի թոյն կայ նորանց շրթունքների տակ: [14]Որոնց բերանը
անէծքով եւ դառնութիւնով լիքն է: [15]Որոնց ոտները շուտագնաց են արիւն թափելու
համար: [16]Կործանում եւ թշուառութիւն է նորանց ճանապարհներումը: [17]Եւ
խաղաղութեան ճանապարհը չճանաչեցին: [18]Աստուծոյ երկիւղը նորանց աչքերի
առաջին չէ:

**NASB (UPDATED) TEXT: 3:9-18**

[9]**What then? Are we better than they? Not at all; for we have already charged that both Jews and Greeks are all under sin; [10]as it is written, "THERE IS NONE RIGHTEOUS, NOT EVEN ONE; [11]THERE IS NONE WHO UNDERSTANDS, THERE IS NONE WHO SEEKS FOR GOD; [12]ALL HAVE TURNED ASIDE, TOGETHER THEY HAVE BECOME USELESS; THERE IS NONE WHO DOES GOOD, THERE IS NOT EVEN ONE." [13]"THEIR THROAT IS AN OPEN GRAVE, WITH THEIR TONGUES THEY KEEP DECEIVING," "THE POISON OF ASPS IS UNDER THEIR LIPS"; [14]"WHOSE MOUTH IS FULL OF CURSING AND BITTERNESS"; [15]"THEIR FEET SHARE SWIFT TO SHED BLOOD, [16]DESTRUCTION AND MISERY ARE IN THEIR PATHS, [17]AND THE PATH OF PEACE THEY HAVE NOT KNOWN." [18]"THERE IS NO FEAR OF GOD BEFORE THEIR EYES."**

**3:9 «**ավելի՞ ենք» Այստեղ քերականությունը երկդիմի է: Ակնհայտ է, որ այս հատվածում հիմնական ճշմարտությունն այն է, որ ամբողջ մարդկությունը Աստծո շնորհքի կարիքն ունի (հմմտ. 3:9,19,23; 11:32; Գաղ. 3:22): Ինչևէ, անորոշ է թե այս յուրահատուկ համարը հրեաների մասին էր (Պողոսը և իր ազգականները,) թե՞ քրիստոնյաների (Պողոսը և իր հավատակից ընկերները Աստծո շնորհքից անջատ): Հրեաներն որոշակի առավելություններ ունեին (հմմտ. 1-2; 9:4-5hh.), բայց այս առավելությունները նրանց ավելի պատասխանատու դարձրեցին: Բոլոր մարդիկ հոգևորապես կորսված են և Աստծո շնորհքի կարիքն ունեն:

«Ավելի լավ» տերմինը աստվածաբան գիտնականների կողմից հասկացվում է, որպես ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ փոխարենը ՉԵԶՈՔԻ («լավանալ»), արդյունքում թարգմանվում է «գերազանցել »:

Հռոմեացիս թուղթի մասին հաճախ ասվում է, որպես ամենաչեզոքը համեմատած Պողոսի մյուս նամակների հետ: Պողոսի թղթերից շատերը ուղղված են տեղական կարիքներին կամ ճգնաժամերին (պատահական փաստաթղթեր): Ինչևէ, նախանձությունը հավատացյալ հրե առաջնորդների և հավատացյալ հեթանոս առաջնորդների միջև հնարավոր է տեքստերի ֆոնի մեջ է ինչպես սա և 9-11գլուխները:

«**մեղքի տակ»** Պողոսը անձնավորում/նմանեցնում է «մեղք», որպես անգութ տեր/տիրակալ ընկած մարդկության վրա (հմմտ. 6:16-23).

**3:10-18 «Ինչպէս որ գրուած է»** Այս համարը նույնպես հանդիպում է 4հ-ում: Հետևյալ դրույթները Հին Կտակարանի մեջբերումներից են՝ օգտագործվելով որպես փոխաբերություններ մարդու մարմնի վերաբերյալ ընդգծելու համար մարդու անկումը : (1) 10-12հհ., Ժող. 7:20 կամ Սաղ. 14:1-3; (2) 13հ., Սաղ. 5:9 կամ 140:3; (3) 14հ., Սաղ. 10:7; (4) 15-17հհ., Ես. 59:7-8 և Առակ. 1:16, և (5).18հ., Սաղ. 36:1: Զարմանալի է, որ Պողոսը չօգտագործեց Ես.53:6:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 3: 19-20**
[19]Բայց գիտենք, թէ ամեն ինչ որ օրէնքն ասում է նորանց է ասում, որ օրէնքի տակ են. որ ամեն բերան խփուի, եւ բոլոր աշխարհք Աստուծոյ առաջին դատապարտ լինի: [20]Որովհետեւ օրէնքի գործերիցը ոչ մի մարմին չի արդարանալ նորա առաջին. որովհետեւ օրէնքովը լինում է մեղքի գիտութիւն:

**NASB (UPDATED) TEXT: 3:19-20**
**[19]Now we know that whatever the Law says, it speaks to those who are under the Law, so that every mouth may be closed and all the world may become accountable to God; [20]because by the works of the Law no flesh will be justified in His sight; for through the Law *comes* the knowledge of sin.**

**3:19 «գիտենք, թէ»** Տես ծանուցումը 2:2

**«օրէնքն»** Այս կոնտեքստում, այն պետք է վերաբերի ամբողջ Հին Կտակարանին՝ 10-18հհ. մեջբերված հատվածների պատճառով: Պողոսը անձնավորում/նմանեցնում է «օրենքը» ինչպես նա արեց «մեղք»-ը 9հ. (հմմտ. 6:16-23):

**«նորանց է ասում, որ օրէնքի տակ են»** Սա եզակիորեն վերաբերում է Հրեա և հեթանոս նորադարձներին: Չնայած պետք է ասվի, որ Հին Կտակարանի մեջբերումներից մի քանիսը վերաբերում են հեթանոսներին:

**Արևելահայերեն «որ ամեն բերան խփուի, եւ բոլոր աշխարհք Աստուծոյ առաջին դատապարտ լինի »**
**Արևմտահայերեն «որպէս զի ամէն բերան գոցուի եւ բոլոր աշխարհ դատապարտուի Աստուծոյ առջեւ»**

NASB “that every mouth may be closed, and all the world may become accountable to God”
NKJV “that every mouth may be stopped, and all the world may become guilty before God”
NRSV “so that every mouth may be silenced, and the whole world may be held accountable to God ”

TEV "in order to stop all human excuses and bring the whole world under God's judgment"
JB "but it is meant to silence everyone and to lay the whole world open to God's judgment"

Սա 1:18-3:20 գլխի գլխավոր թեման է, որն ամփոփվում է 3:23հ-ում:

▣ **«ամեն բերան»** 19-20հհ. կան մի քանի արտահայտություններ, որոնք ցույց են տալիս/ արտահայտել ամբողջ մարդկությունը:

1. «ամեն բերան», 19հ.
2. «ամբողջ աշխարհը», 19հ.
3. «ոչ մի մարմին», 20հ.

**3:20** «**Որովհետեւ օրէնքի գործերիցը ոչ մի մարմին չի արդարանալ նորա առաջին**» Սա ակնարկ է Սաղ. 143:2-ի, բայց ավելացված արտահայտությունով: Սա Պողոսի ավետարանի գլխավոր ասպեկտն էր (հմմտ. Գաղ. 2:16; 3:11): Որպես նվիրված Փարիսեցի Պողոսը եզակիորեն գիտեր կրոնական խանդավառության անկարողությունն ու բծախնդիր արարքը՝ ներքին խաղաղություն տալու/ապահովելու համար:

**Արևելահայերեն «օրէնքովը լինում է մեղքի գիտութիւն»**
**Արևմտահայերեն «օրէնքով մեղքը կը ճանաչցուի»**

NASB, NRSV "through the Law comes the knowledge of sin"
NKJV "for by the law is the knowledge of sin"
TEV "what the Law does is to make man know that he has sinned"
JB "all that law does is to tell us what is sinful"

Սա Հին Կտակարանի արտահայտություններից մեկն էր: Տես Հատուկ Թեմա 13:9-ում: Դա երբեք չէր նշանակել բերել փրկություն ընկած մարդկության համար: Դրա նպատակն էր հայտնել մեղավորությունը և մղել բոլոր մարդկանց դեպի Աստծո ողորմությանը (հմմտ. 4:15; 5:13,20; 7:7; Գաղ. 3:19-22, 23-29):

## ՔՆՆԱՐԿՎՈՂ ՀԱՐՑԵՐ

Սա սերտողության համար ուղեցույց հանդիսացող մեկնաբանություն է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Յուրաքանչյուրս պետք է քայլի մեր ունեցած լույսի ներքո: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ: Դրանք նախատեսված են լինել միտք գրգռող, ոչ թե հստակ/պարզ:

1. Ինչպե՞ս է հրեաների անհավատարմությունն ազդում Աստծո խոստումների վրա: (3:3-4)
2. Արդյոք կա որևէ առավելություն Աստծո առաջ/մոտ հրեա լինելը (3:1-8)
3. Ո՞րն է սուր քննադատության ենթադրյալ հակառակորդ/ընդդիմախոս (դիատրիբ) իմաստը/միտքը 5-8hh.-ում
4. Արդյո՞ք մարդու ապրելաոճը իրականում նշանակություն ունի, որ արդարացումը շնորհքով է հավատքի ձեռքով/միջոցով առանց գործերի (հմմտ. 3:8)?
5. Սահմանիր բացարձակ անբարոյականության աստվածաբանական (Կալվին) գաղափարը (հմմտ. 3:10-18):
6. Ո՞րն է Մովսեսական օրենքի նպատակը, կամ օրենքն ընդահրապես (հմմտ. 3:20; Գաղ. 3:24-25)
7. Ինչու՞ Սատանայի մասին չի նշվում ամբողջ 1-3գլուխներում, որտեղ խոսվում է մարդու կորսվածության մասին:

## ՀՌՈՄԵԱՑԻՍ 3:21-31 ԿՈՐՏԵՔՍՏՈՒԱԼ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐԸ

Ա. Հռոմեացիս 3:21-31
  1. 1:18-3:20-ի աստիճանական ամփոփումը
  2. 1:16-17-ի ընդլայնումը
  3. 4-8 գլուխների (բացի 3:28) ներածությունը

Բ. Հավատքով արդարացման վարդապետության այս աստիճանական ամփոփումը բնութագրվում էր Ռեֆորմատորների/Բարեփոխողների կողմից.
  1. Մարտին Լյութերը որպես «նամակի և ամբողջ Աստվածաշնչի գլխավոր միտքը և ամենակենտրոնական տեղը»
  2. Ջոն Կալվինը որպես «հավանական է ամբողջ Աստվածաշնչում չկա մի հատված , որը ավելի խորիմաստ է բացատրում Աստծո արդարությունը Քրիստոսում/ով»:

Գ. Սա ավետարանական Քրիստոնեության աստվածաբանական էությունն է: Հասկանալ այս կոնտեքստը նշանակում է հասկանալ Քրիստոնեությունը: Սա ավետարան է երկ-պարագրաֆ/բաժին ամփոփումով, ինչպես Հովհ. 3:16-ը ավետարան է մեկ համարով: Սա Պողոսի ավետարանի ներկայացման/մատուցման սիրտն ու հոգին է:

Երեք բանալի բացատրական հարցերն են.
  1. Ի՞նչ է նշանակում «օրենք» տերմինը:
  2. Ի՞նչ է նշանակում «Աստծո արդարություն» արտահայտությունը:
  3. Ի՞նչ է նշանակում «հավատք» տերմինը:

Դ. Ես շնորհակալ եմ Աստծուց 23հ-ում «ամենքը» բառի համար (հմմտ. 29հ.) և 24հ «պարգև» բառի համար (հմմտ. 5:15,17; 6:23):

**ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ**

**NASB (UPDATED) TEXT: 3:21-26**
**21But now apart from the Law *the* righteousness of God has been manifested,**
**being witnessed by the Law and the Prophets, 22even *the* righteousness of God**
**through faith in Jesus Christ for all those who believe; for there is no distinction; 23for**
**all have sinned and fall short of the glory of God, 24being justified as a gift by His**
**grace through the redemption which is in Christ Jesus; 25whom God displayed**
**publicly as a propitiation in His blood through faith. *This was* to demonstrate His**
**righteousness, because in the forbearance of God He passed over the sins previously**
**committed; 26for the demonstration, *I say*, of His righteousness at the present time, so**
**that He would be just and the justifier of the one who has faith in Jesus.**

Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 3: 21-26
21Բայց հիմա առանց օրէնքի Աստուծոյ արդարութիւնը յայտնուած է, օրէնքից եւ
մարգարէներից վկայուած լինելով. 22Այսինքն Աստուծոյ արդարութիւնը որ Յիսուս
Քրիստոսի հաւատքիցն է, այն ամենի համար եւ ամենի վերայ, որ հաւատում են.
որովհետեւ խտրութիւն չկայ: 23Որովհետեւ ամենքը մեղանչեցին, եւ Աստուծոյ
փառքիցը պակասուած են. 24Չրի են արդարանում նորա շնորհքովը՝ այն փրկութեան
ձեռովը՝ որ Յիսուս Քրիստոսումն է: 25Որին Աստուած առաջուց սահմանեց քաւութիւն
լինելու համար հաւատալով նորա արիւնովը, որ իր արդարութիւնը ցոյց տայ այն
առաջուց գործուած մեղքերի թողլտուութեան համար՝ Աստուծոյ ներելու ժամանակին:
26Որ իր արդարութիւնը երեւացնէ այս ժամանակումը. որ ինքն լինի արդար եւ
արդարացնող նորան՝ որ Յիսուսի հաւատքիցն է.

**3:21 «Բայց հիմա»** Պողոսը հակադրում է Հին Ուխտը Նոր Ուխտի հետ, ըմբոստության հին շրջանը արդարության նոր շրջանի հետ: Սա ուրեմն կարող էր զուգահեռվել «ներկա ժամանակում» արտահայտության հետ (հմմտ. 26հ.; 6:22; 7:6հհ. «բայց հիմա» հետ):

**«հիմա առանց օրէնքի»** Հաճախ դժվար է վստահ լինել, արդյո՞ք Պողոսը վերագրում է Մովսեսական Օրենքին (NASB) թե ընդհանրապես օրենքին (NRSV, TEV, NJB, NIV) այս սկզբի գլուխներում: Այս կոնտեքստում Հրեական Օրենքը լավագույնն է համապատասխանում Պողոսի փաստարկին: Բոլոր մարդիկ խախտել/ոտնահարել են ամեն բարոյական նորմա, սոցիալական ուղեցույց/առաջնորդություն թե ներքին և թե արտաքին: Մեր խնդիրները, որպես մեղավոր/ընկած մարդկություն այն է, որ մենք ընդհանրապես առաջնորդությու/ուղեցույց չենք ուզում բացի մեր սեփական եսասեր, եսակենտրոն ցանկություններ/փափագները (հմմտ. Ծննդ. 3):

**Արևելահայերեն «Աստուծոյ արդարութիւնը»**
**Արևմտահայերեն «Աստուծոյ արդարութիւնը»**

NASB «*the* righteousness of God»
NKJV, NRSV «the righteousness of God»
TEV «God's way of putting people right with himself»
NJB «God's saving justice»

«Արդարություն» բառի հետ չկա որոշիչ ՀՈԴ: Սա չի վերաբերում Աստծո էությանը, այլ Աստծո ձևն է թողություն տել և մեղավոր մարդկանց ընդունված լինել: Այս արտահայտությունը օգտագործվում էր Հռ. 1:16-17-ի աստվածաբանական թեմայի մեջ: Սա պարզ հայտնի մեխանիզմը հավատքն է Խաչյալ Հիսուս Քրիստոսի վրա (հմմտ. 22,24-26hh.).

Փաստը, որ այս տերմինը (*dikaiosonē*) և դրա ածանցները (տես ծանուցում 2:13) այսքան հաճախ են օգտագործվում այս կոնտեքստում ցույց է տալիս դրա կարևորությունը (հմմտ. 1:17; 3:5,21,22,25,26; 4:3,5,6,9,11,13,22; 5:17,21; 6:13,16,18,19,20; 8:10; 9:28,30,31; 10:3,4,5,6,10,17): Այս հունարեն տերմինը Հին Կտակարանի փոխաբերության կառուցվածքի ձև է (*tsadak*) «չափանիշ» կամ «չափող եղեգ»: Չափանիշը հենց Ինքն Աստված է: Այս տերմինը անդրադարձնում է Աստծո էությունը, որը ձրի տրվել է ընկած մարդկությանը Քրիստոսի ձեռքով (հմմտ. II Կոր. 5:21): Ընդունելով իրենց կարիքը և ընդունելով Աստծո պարգևը էր և է, հպարտին խոնարհեցնող, եսակենտրոն մարդուն -հատկապես օրինապաշտ, կրոնական մարդուն: Տես հատուկ թեմա 1:17.

«**յայտնուած է**» Այս արտահայտությունը շատ նման է 1:17-ին: Ինչևէ, բայը տարբեր է : Այստեղ բայը կարող է թարգմանվել « եղել է և շարունակում է հստակ հայտնվել»: Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ իսկ 1:17-ի հոմանիշը ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ: Աստված հստակ հայտնել է ավետարանը թե Հին Կտակարնում (հմմտ. գլուխ 4) և թե Հիսուսի մեջ:

«**օրէնքից եւ մարգարէներից վկայուած լինելով**» Սա վերաբերվում էր Եբրայերեն կանոնի երեք բաժանումներից երկուսին (Օրենք, Մարգարեներ և Գրվածքներ): Այս երկուսը օգտագործվում էին վերաբերելով ամբողջին (տես ծանուցում 3:19-ում): Սա պարզ ցույց էր տալիս , որ ավետարանը պարունակում էր նախնական ձև Հին Կտակարանում (հմմտ. Ղուկ. 24:27,44; Գործք 10:43): Սա ուշացած միտք չէր, «Պլան Բ», կամ վերջին րոպեին շտապ իրավիճակի շտկում (հմմտ. 1:2):

**3:22 «Յիսուս Քրիստոսի հաւատքիցն է»** Սա բառացի «Հիսուս Քրիստոսի հավատքի միջոցով» է: Սա ՍԵՌԱԿԱՆ ՀՈԼՈՎ կառուցվածք: Այն կրկնվում է Գաղ. 2:16 և Փիլ. 3:9 ինչպես նաև նմանատիպ ձև կա Հռ. 3:26; Գաղ. 2:16,20; 3:22: Այն կարող էր նշանակել (1) հավատքը կամ Հիսուսի հավատարմությունը (ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ՍԵՌԱԿԱՆ ՀՈԼՈՎ) կամ (2) Հիսուսը որպես մեր հավատքի օբյեկտ (ՕԲԵԿՏԱՅԻՆ ՍԵՌԱԿԱՆ ՀՈԼՈՎ): Նույնպիսի քերականական կառուցվածք կա Գաղ. 2:16 , #2 տարբերակը լավագույնն է:

Սա ցույց է տալիս Աստծո արդարացման հիմնական տեսակետը: Քրիստոսի արդարությունն է, որ դարձնում է ներգործող անձի կյանքում Աստծո ձրի պարգևով Քրիստոսի միջոցով (հմմտ. 4:5; 6:23), որը պետք է ընդունվի հավատքով/հույսով/վստահությամբ (հմմտ. Եփ. 2:8-9) և պետք է ապրել առօրյա կյանքում (հմմտ. Եփ. 2:10):

**«ամենի համար»** Ավետարանը բոլոր մարդկանց համար է (հմմտ. 24հ.; Ես. 53:6; Եզ. 18:23; Հովհ. 3:16-17; 4:42; I Տիմ. 2:4; 4:10; Տիտոս 2:11; II Պետ. 3:9; I Հովհ. 4:14): Դա մեծ ճշմարտություն է: Սա պետք է հավասարակշռի աստվածաշնչյան ճշմարտությունը ընտրության վերաբերյալ: Աստծո ընտրությունը չպետք է հասկացվի սահմանությունը դետերմինիզմ/determinism իսլամական իմաստով և ոչ էլ որոշները ի հակառակ մյուսների ուլտրա-կալվինիստական իմաստով, այլ ուխտի իմաստով: Հին Կտակարանի ընտրությունը ծառայության համար էր, և ոչ թե արտոնություն: Աստված խոստացավ փրկել ընկած մարդուն (հմմտ. Ծննդ. 3:15): Աստված կանչեց և ընտրեց բոլոր մարդկանց Իսրայելի միջոցով (հմմտ. Ծննդ. 12:3; Ելից 19:5-6): Աստված ընտրում է Քրիստոսի վրա ունեցած հավատքի միջոցով: Փրկության մեջ Աստված է միշտ առաջին քայլն անում (հմմտ. Հովհ. 6:44,65): Եփեսացիս 1 և Հռոմեացիս 9-րդ գլուխները ամենաուժեղ աստվածաշնչյան հատվածներն են՝ նախասահմանության վարդապետության վերաբերյալ, որոնք աստվածաբանորեն ընդգծվել են Օգոստինիոսի և Կալվինի կողմից:

Աստված ընտրեց հավատացյալներին ոչ միայն փրկության (արդարացման), այլ նաև սրբացման համար (հմմտ. Եփ. 1:4; Կող. 1:12): Սա կարող էր վերաբերել (1) մեր դիրքը Քրիստոսում (հմմտ. II Կոր. 5:21) կամ (2) Աստծո փափագն է վերարտադրել/վերականգնել Իր էությունը Իր զավակների մեջ (հմմտ. Հռ. 8:28-29; Գաղ. 4:19; Եփ. 2:10): Աստված կամենում է, որ Իր զավակները մեկ օր լինեն երկնքում և լինեն Քրիստոսանման հիմա:

Նախասահմանության նպատակը սրբությունն է, և ոչ թե արտոնություն: Աստծո կանչը Ադամի մի քանի ընտրված զավակների համար չէր, այլ բոլորի: Դա կանչ էր դեպի Աստծո սեփական էությունը (հմմտ. I Թես. 5:23; II Թես. 2:13): Նախասահմանությունը փոխել աստվածաբանական tenant սուրբ կյանքի փոխարեն ողբերգություն է մարդկային աստվածաբանական համակարգերի: Հաճախ մեր աստվածաբանական

չափանիշները/սահմանները խեղաքյուրում են աստվածաշնչյան տեքստը:

Տես Հատուկ Թեմա: Ընտրություն/Նախասահմանություն և Կարիք Աստվածաբանական հավասարակշռությունը պահելու համար 8:33-ում.

«**որ հաւատում են**» Հիսուս մեռավ բոլոր մարդկանց համար: Ըստ հնարավորին բոլորը կարող են փրկվել: Դա մարդու անձնական ընդունումն է (ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ԴԵՐԲԱՅ), որ Հիսուսի արդարությունը է հնարավորություն դարձնում իրենց կյանքերի համար (հմմտ. 1:16; Հովհ. 1:12; 3:16; 20:31; Հռ. 10:9-13; I Հովհ. 5:13): Աստվածաշունչը ներկայացնում է երկու չափանիշ imputed արդարության; հավատք և ապաշխարություն (հմմտ. Մարկ. 1:15; Գործք 3:16,19; 20:31 և տես ծանուցում 1:5): Տեքստը հստակ հայտնում է փրկության տիեզերական իրավասությունը/գործունեության շրջանակը, բայց ոչ բոլորը կփրկվեն:

«**որովհետեւ խտրութիւն չկայ**» Կա միայն մեկ ճանապարհ և մեկ Անձ, որով մարդիկ (հրեաներ և հեթանոսներ) կարող են փրկվել (հմմտ. Հովհ. 10:1-2,7; 11:25; 14:6): Ամեն մարդ կարող է փրկվել՝ Քրիստոսին հավատալով (հմմտ. 1:16; 4:11,16; 10:4,12; Գաղ. 3:28; Կող. 3:11).

**3:23-26** Հունարենում սա մեկ նախադասություն է:

**Արևելահայերեն «Որովհետեւ ամենքը մեղանչեցին, եւ Աստուծոյ փաքիցը պակասուած են.»**
**Արևմտահայերեն « Վասն զի ամէնքը մեղք գործեցին եւ Աստուծո փառքէն պակսեցան.»**

**3:23**
**NASB, NKJV,**
**NRSV “for all have sinned and fall short of”**
**TEV “all men have sinned and are far away from”**
**JB “sinned and forfeited”**

Սա 1:18-3:20հհ. ամփոփումն է: Ամենքը կարիք ունեն Քրիստոսով փրկվելու (հմմտ. 3:9,19; 11:32; Գաղ. 3:22; Եսա. 53:6): «Մեղանչեցին» ԱՈՐԻՍՏ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է, մինչ «փառքից պակասած են» ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՉԵԶՈՔ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է: Հավանական է այս արտահայտությունը վերաբերում է թե մարդու ադամական մեղքին (հմմտ. 5:12-21) և թե իր շարունակական անհատական ըմբոստ գործողություններին: Ժամանակակից անգլերեն թարգմանություններից ոչ մեկը յուրահատուկ չի անդրադարձնում այս տարբերությունը/բաժանումը:

Այս համարը աստվածաբանորեն կապվում է 21հ. և անուղղակիորեն 24հ.

**«Աստծո փառքը»** Տես Հատուկ Թեմա ներքևում

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՓԱՌՔ**

«Փառք»-ի աստվածաշնչյան գաղափարը դժվար է սահմանել: Հավատացյալների փառքը այն է, որ նրանք հասկանում են ավետարանը և փառքը Աստծո մեջ, և ոչ թե իրենց (հմմտ. 1:29-31; Եր. 9:23-24):

Հին Կտակարանում ամենաընդունված եբրայերեն բառը «փառք» բառի համար (*kbd*) իրականում կոմերցիոն/առևտրային տերմին էր կապված կշեռքի հետ («լինել ծանր»): Այն, որը ծանր էր՝ արժեքավոր էր կամ ուներ ներքին/հատուկ արժեք: Հաճախ բառին ավելացվում էր պայծառության գաղափարը արտահայտելու համար Աստծո վեհափառությունն/մեծությունը (հմմտ. Ելից. 19:16-18; 24:17; Ես. 60:1-2): Միայն Նա է արժանի և պատվավոր: Նա չափից շատ պայծառ է նայելու համար ընկած մարդկության համար (հմմտ. Ելից 33:17-23; Ես. 6:5): ԵՀՈՎԱ-ն կարող է միայն ճշմարտապես իմացվել Քրիստոսի միջոցով (հմմտ. Եր. 1:14; Մաթ. 17:2; Եբր. 1:3; Հակ. 2:1):

«Փառք» տերմինը որոշ չափով երկիմաստ/անորոշ է; (1) այն կարող է նման լինել/զուգահեռ «Աստծո արդարությանը»; (2) այն կարող է վերաբերել Աստծո «սրբությանը» կամ «կատարելությանը» կամ (3) այն կարող էր վերաբերել Աստծո կերպարին, ինչպիսին ստեղծվեց մարդկությունը (հմմտ. Ծննդ. 1:26-27; 5:1; 9:6), բայց որը հետո աղավաղվեց ապստամբության/ըմբոստության միջոցով/պատճառով (հմմտ. Ծննդ. 3:1-22): Այն առաջին անգամ օգտագործվում է ԵՀՈՎԱ-ի ներկայությունը Իր ժողովրդի հետ անապատում թափառելու ժամանակ/ընթացքում Ել. 16:7,10; Ղև. 9:23; և Թվ. 14:10.

**3:24 «Զրի են արդարանում նորա շնորհքովը»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ-ԱԾԱԿԱՆ ԴԵՐԲԱՅ; Այստեղից է սկսվում ավետարանը -Աստծո շնորհքը, որը տալիս է արդարություն (հմմտ. 5:15,17; 6:23): Հունարեն «արդարացնել/ներել» (*dikaioō*) տերմինը նույն արմատից էր, ինչ «արդարություն» (*dikaiosunē*): Աստված է միշտ առաջին քայլն անում (հմմտ. Հովհ. 6:44,65):

24-25հհ. կան երեք փոխաբերություններ, որոնք օգտագործվում են փրկությունը նկարագրելու համար: (1) «արդարացվել/ներվել», որը օրինական տերմինն էր, որ նշանակում էր «պատիժ չի տրված» կամ մեկին անմեղ ճանաչել/հռչակել; (2) «փրկագին վճարել», որը գերիների շուկայից էր, որը նշանակում էր «ետ գնել» կամ ազատ արձակել» և (3) «հաշտեցում», որը զոհաբերության համակարգից էր և նշանակում է ծածկելու/ծածկոց տեղ կամ քավություն: Այն վերաբերում էր Ուխտի Տապանակի կափարիչին, որտեղ տեղադրվում էր զոհաբերված արյունը Քավության Օրը (հմմտ. Ղև. 16; Եբ. 9:5).

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԻ ՎԿԱՅՈՒԹՅՈՒՆ/ապացույց ՄԵԿԻ ՓՐԿՈՒԹՅԱՆ**

**ՀԱՄԱՐ**
Այն հիմնված է

1. Հոր կերպարը/բնույթը (հմմտ. Հովհ. 3:16), Որդու գործը (հմմտ. II Կորն. 5:21),և Հոգու ծառայությունը (հմմտ. Հռ. 8:14-16) ոչ թե մարդու արարքով, ոչ վարձք հնազանդության համար, ոչ միայն հավատք
2. Դա պարգև է (հմմտ. Հռ. 3:24; 6:23; Եփ. 2:5,8-9)
3. Դա նոր կյանք է , նոր աշխարհայացք (հմմտ. Հակոբոս և I Հովհ.)
4. Դա գիտելիք է (ավետարան), հաղորդակցություն (հավատք ներսում և Հիսուսի հետ), և նոր ապրելաոճ (հոգու- առաջնորդությունը Քրիստոսանմանության) բոլոր երեքը և ոչ թե միայն մեկը ինքն իրեն:

**«պարգև»** Պողոսը մի քանի անգամ օգտագործում է այս գաղափարը՝ օգտագործելով տարբեր տերմիններ

1. *dōrean*, ՄԱԿԲԱՅ, «ձրի»
2. *dōrea*, ԳՈՅԱԿԱՆ, «ձրի պարգև,անվճար»
3. *dōron*, ԳՈՅԱԿԱՆ, «պարգև» (հմմտ. Եփ. 2:8)
4. *charisma*, ԳՈՅԱԿԱՆ, «ձրի պարգև» կամ «ձրի շնորհ» (հմմտ. 1:11; 5:15,16; 6:23; 11:29; 12:6)
5. *charisomai*, ԲԱՅ, «պարգև որպես ձրի շնորհ» (հմմտ. 8:32)
6. *charis*, ԳՈՅԱԿԱՆ, «ձրի շնորհ» կամ «ձրի պարգև» (հմմտ. 4:4,16; 11:5,6; Եփ. 2:5,8)

«**այն փրկութեան ձեռովը՝ որ Յիսուս Քրիստոսումն է**» Մեր փրկության մեխանիզմը Հիսուս փոխանորդի մահն ու հարությունն է: Աստվածաշունչը չի կենտրոնանում այն փաստի վրա, թե որքա՞ն վճարվեց կամ թե ու՞մ կողմից վճարվեց (Օգոստոս), այլ այն փաստի, որ մարդկությունը ազատագրվել է մեղքի հանցանքից և պատժից անմեղ փոխանորդի միջոցով: (հմմտ. Հովհ. 1:29,36; II Կոր. 5:21; I Պետ. 1:19).

Համարը նաև ցույց է տալիս Ծննդ. 3:15 արժեքավոր լինելը: Հիսուսը կրեց անեծքը (հմմտ. Գաղ. 3:13) և մեռավ (հմմտ. II Կոր. 5:21) որպես փոխանորդ ընկած մարդկության համար: Փրկությունը հնարավոր է ձրի է, բայց այն անշուշտ էժան չէ:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՓՐԿԱՆՔ ՎՃԱՐԵԼ/ԱԶԱՏԵԼ**

I. ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆ

Ա. Հիմնականում կան երկու եբրայերեն օրինական տերմիններ, որոնք հաղորդում են այս գաղափարը:

1. *Gaal*, որը հիմնականում նշանակում է «ազատել» գին վճարելու միջոցով: Տերմինի

*go'el* ձևը ավելանում է գաղափարին, անձնական միջնորդ, սովորաբար ընտանիքի անդամ (այսինքն ազգականի փրկիչ/ազատարար): Այս մշակույթային իրավունքի տեսակետը  ետ գնել առարկաներ, կենդանիներ, հող (հմմտ. Ղևտ. 25,27), կամ ազգականների (հմմտ. Հռութ 4:15; Ես. 29:22) տեղափոխվում է աստվածաբանորեն ԵՀՈՎԱՅԻ ազատագրումը Իսրայելին՝ Եգիպտոսից (հմմտ. Ելից 6:6; 15:13; Սաղ. 74:2; 77;15; Երեմ. 31:11).  Նա դառնում է «փրկիչը/ազատարարը» (հմմտ. Հոբ 19:25; Սաղ. 19:14; 78:35; Առակ. 23:1; Ես. 41:14; 43:14; 44:6,24; 47:4; 48:17; 49:7,26; 54:5,8;  59:20; 60:16; 63:16; Երեմ. 50:34).

2. *Padah*, որը հիմնականում նշանակում է  «ազատել» կամ «փրկել»
   ա. անդրանիկի ետ գնումը, Ելից 13:13,14 և  Թվոց 18:15-17
   բ. Ֆիզիկական փրկագնումը հակադրվում է հոգևոր փրկագնման հետ, Սաղ. 49:7,8,15
   գ. ԵՀՈՎԱՆ կփրկի Իսրայելին իրենց մեղքերից և ըմբոստությունից, Սաղ. 130:7-8

Բ. Աստվածաբանական գաղափարը ներգրավում է երեք կապակցված  կետեր

1. Կա կարիք, գերություն, բռնագրավում, բանտարկություն:
   ա. ֆիզիկական
   բ. սոցիալական
   գ. հոգևոր (հմմտ. Սաղ. 130:8)
2. Գին պետք է վճարվի ազատության, ազատ արձակման և վերականգնման համար:
   ա. ազգի, Իսրայել (հմմտ. 2 Օրին. 7:8)
   բ. անհատի (հմմտ. Հոբ 19:25-27; 33:28)
3. Մեկը պետք է գործի որպես միջնորդ և բարերար:  *gaal* այս մեկը սովորաբար օգտագործվում է ընտանիքի անդամի կամ ազգականի համար (այսինքն *go'el*):
4. ԵՀՈՎԱՆ հաճախ ինքն իրեն նկարագրում է ընտանեկան տերմիններով:
   ա. Հայր
   բ. Ամուսին
   գ. Մոտ ազգական

   Փրկագնումը հաստատված էր/ապահովված էր ԵՀՈՎԱ-յի անմիջական օգնությամբ; գինը վճարված էր, և փրկությունը կատարված:

II. ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

Ա. Կան մի քանի տերմիններ, որոնք օգտագործվում են փոխանցելու/հայտնելու համար աստվածաբանական գաղափար/միտք:

1. *Agorazō* (հմմտ. I Կոր. 6:20; 7:23; II Պետ. 2:1; Հայտ. 5:9; 14:34): Սա առևտրական տերմին է, որը պատկերում է գին վճարված ինչ որ մի բանի համար: Մենք արյունով

գնված մարդիկ ենք, որոնք չեն կառավարում մեր կյանքերը: Մենք պատկանում ենք Քրիստոսին:

2. *Exagorazō* (հմմտ. Գաղ. 3:13; 4:5; Եփ. 5:16; Կող. 4:5): Սա նույնպես առևտրական տերմին է: Այն պատկերում է Հիսուսի փոխանորդ մահը մեր փոխարեն: Հիսուսը կրեց «անեծքը» հիմնված կատարման օրենքի վրա (այսինքն Մովսեսական Օրենք), որը մեղավոր մարդիկ չէին կարող կատարել: Նա կրեց անեծքը (հմմտ. 2 Օրին. 21:23) մեր բոլորի համար: Հիսուսում Աստծո արդարությունն ու սերը միաձուլում են ամբողջական ներում, ընդունում և մոտենալու հնարավորություն:
3. *Luō*, «ազատ արձակել»
   ա. *Lutron*, «վճարված գին/փրկանք» (հմմտ. Մաթ. 20:28; Մարկ. 10:45): Սրանք զորավոր խոսքեր են հենց Հիսուսի բերանով ասված, կապված Իր գալստյան նպատակի հետ, աշխարհի Փրկիչ լինելու՝ վճարելով մեղքի վարձքը, Ինքը լինելով անմեղ (հմմտ. Հովh. 1:29):
   բ. *Lutroō*, «ազատել/թողնել»
      (1) փրկել Իսրայելին, Ղուկ. 24:21
      (2) Իր անձը տալ՝ փրկելու և սրբելու ժողովրդին, Տիտոս 2:14
      (3) լինել անմեղ փոխանորդ, I Պետ. 1:18-19
   գ. *Lutrōsis*, «փրկագին տալ, ազատում, փրկում կամ ազատագրում»
      (1) Զաքարիայի մարգարեությունը Հիսուսի մասին, Ղուկ. 1:68
      (2) Աննայի փառաբանումը Աստծուն՝ Հիսուսի համար, Ղուկ. 2:38
      (3) Հիսուսի կատարած զոհաբերությունը մեկ անգամ և ընդմիշտ բոլորի համար, Եբ. 9:12

4. *Apolytrōsis*

ա. փրկություն Երկրորդ Գալստյան ժամանակ (հմմտ. Գործք 3:19-21)

(1) Ղուկ. 21:28

(2) Հռ. 8:23

(3) Եփ. 1:14; 4:30

(4) Եբր. 9:15

բ. փրկություն Քրիստոսի մահով

(1) Հռ. 3:24

(2) I Կորն. 1:30

(3) Եփ. 1:7

(4) Կող. 1:14

5. *Antilytron* (հմմտ. I Տիմ. 2:6): Սա վճռական/կրիտիկական տեքստ է (ինչպես Տիտոս 2:14), որը փրկումը կապում է Հիսուս փոխանորդի խաչի մահի հետ: Նա է միայն և միակ ընդունելի զոհը, մեկը, որ մեռնում է «բոլորի» համար (հմմտ. Հովh. 1:29; 3:16-17; 4:42; I Տիմ. 2:4; 4:10; Տիտոս 2:11; II Պետ. 3:9; I Հովh. 2:2; 4:14):

Բ. Նոր Կտակարանում աստվածաբանական գաղափարը նշանակում է

1. Մարդը գերի է մեղքին (հմմտ. Հովh. 8:34; Հռ. 3:10-18; 6:23):
2. Մարդու մեղքին գերի լինելը բացահայտվել է Մովսեսական Օրենքով Հին Կտակարանում (հմմտ. Գաղ. 3) և Հիսուսի Լեռան Քարոզով (հմմտ. Մաթ. 5-7): Մարդու արարքը դարձել է մահապատիժ (հմմտ. Կող. 2:14):
3. Հիսուսը, Աստծո անմեղ գառը, եկել և մեռել է մեր փոխարեն (հմմտ. Հովh. 1:29; II Կորն. 5:21): Մենք գնվել ենք մեղքից, որ կարող լինենք ծառայել Աստծուն (հմմտ. Հռ. 6):
4. Ըստ իմաստի թե ԵՀՈՎԱՆ և թե Հիսուսը «ազգականներ» են, որոնք գործում են մեր օգտին: Սա շարունակում է ընտանեկան փոխաբերությունները (այսինքն հայր, ամուսին, որդի, եղբայր, ազգական):
5. Փրկագինը վճարված չէր սատանային (այսինքն, Միջնադարյան աստվածաբանություն), բայց Աստծո խոսքի և Աստծո արդարության հաշտեցումը Աստծո սիրո և ամբողջական ապահովումն է/ նախապատրաստում Քրիստոսում: Խաչի մոտ խաղաղությունը վերականգնվեց/վել է, մարդու ըմբոստությունը ներվել է, Աստծո պատկերը մարդու մեջ այժմ ամբողջությամբ ֆունկցիոնալ է նորից մտերմիկ հարաբերության մեջ:
6. Սա դեռ ապագա տեսակետ է փրկության վերաբերյալ (հմմտ. Հռ. 8:23; Եփ. 1:14; 4:30), որը ներգրավում է մեր հարուցյալ մարմինները ու ֆիզիկական մտերմություն Երրորդության հետ:

**3:25**
**Արևելահայերեն «Որին Աստուած առաջուց սահմանեց»**
**Արևմտահայերեն «Որը Աստուած նախապէս սահմանած էր»**

**NASB "whom God displayed publicly"**
**NKJV "whom God set forth"**
**NRSV "whom God put forward"**
**TEV "God offered"**
**JB "who was appointed by God"**

Սա ԱՈՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ՉԵԶՈՔ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, որը նշանակում է, որ Աստված Ինքը հայտնեց Իր սեփական կամքն ու նպատակը՝ Հիսուսի մահով (հմմտ. Եփ. 1:9): Աստծո հավիտենական փրկության ծրագիրը ներգրավում է Հիսուսի զոհաբերությունը (հմմտ. Ես.

53:10; Հայտ. 13:8): Տես ծանուցում 9:11.

*endeiknumai* այս հունարեն տերմինը (*endeixis*, հմմտ. 3:25,26) մի քանի անգամ օգտագործվում է Հռոմեացիս գրքում (հմմտ. 2:15; 9:17,23; LXX Ելից. 9:16): Դրա հիմնական նշանակությունն է դրսևորել/ցույց տալ կամ ցուցաբերել: Աստված ուզում էր, որ մարդիկ պարզ հասկանան Իր փրկարար նպատակը, ծրագիրը և արդարությունը: Այս կոնտեքստը ցույց է տալիս աստվածաշնչյան աշխարհայացք

1. Աստծո էության մասին
2. Քրիստոսի գործի մասին
3. մարդկության կարիքի մասին
4. փրկության նպատակի մասին

Աստված ուզում է, որ մենք հասկանանք: Այս կոնտեքստը վճռական է Քրիստոնեությունը ճիշտ հասկանալու համար: Բառերից և արտահայտություններից մի քանիսը երկիմաստ/անորոշ են կամ կարող են հասկացվել մի քանի ձևերով, բայց ամբողջի հարձակումը/թափանցումը պարզ է և հասկանալի: Այս կոնտեքստը աստվածաբանական բևեռային աստղ է Նոր Կտակարանի համար:

**NASB "as a propitiation in His blood"**
**NKJV "to be a propitiation by His blood"**
**NRSV "as a sacrifice of atonement by his blood"**
**TEV "so that by his blood he should become the means by which people's sins are forgiven"**
**JB "to sacrifice his life so as to win reconciliation"**

**Արևելահայերեն «քաւութիւն լինելու համար հաւատալով նորա արիւնովը»**
**Արևմտահայերեն «քաւութիւն ըլլալու, եթէ անոր արեան հաւատան»**

Հունա-հռոմեական աշխարհում այս բառը կրում էր հարաբերության վերականգնման գաղափար օտարացած աստվածության հետ՝ գինը վճարված լինելու իմաստով, բայց ոչ այս իմաստով Սեպտուագինտում: Դա օգտագործվում էր Սեպտուագինտում և Եբրայեցիս 9:5 «քավություն տապանակի» թարգմանությամբ, որը Ուխտի Տապանակի կափարիչն էր, որը տեղակայված էր Սրբության Սրբոցում, տեղ, որտեղ քավություն էր ձեռք բերվում ազգերի անունից Քավության Օրը (հմմտ. Ղև. 16):

Այս տերմինը պետք է բաշխվի/գործածվի այնպես, որ չփոքրացնի Աստծո զգվանքը/թշնամանքը մեղքի հանդեպ, այլ հաստատում է Նրա դրական փրկարար

կեցվածքը/դիրքը մեղավորների հանդեպ: Լավ քննարկում է գտնվում/կա Ջեյմս Ստուարթսի *Մարդ Քրիստոսում/Քրիստոս Մարդը* գրքում, էջ 214-224, (James Stewart's *A Man in Christ*, pp. 214-224): Սա կատարելու ձևերից մեկն է տերմինը թարգմանել այնպես, որ այն արտացոլի Աստծո գործը Քրիստոսի մեջ; «հաշտեցնող զոհ» կամ «հաշտեցնող զորության հետ»:

«Իր արյունով» եբրայական ձև է փոխանորդ զոհին՝ Աստծո անմեղ գառանը վերաբերող (հմմտ. Հովh. 1:29). Ամբողջությամբ հասկանալու համար այս գաղափարը Ղևտ. 1-7գլուխներում վճռական է, ինչպես նաև, Քավության Օրը 16-րդ գլխում: Արյունը վերաբերում է անմեղ կյանքին՝ տրված մեղավորի անունից(հմմտ. Ես. 52:13-53:12):

«**հավատալով**» Այստեղ կրկին (հմմտ. 1:17; 3:22,25,26,27,28,30) մեխանիզմ է ի օգուտ և հասանելի բոլորին Հիսուսի փոխանորդ մահով:

Այս արտահայտությունը անուշադրության էր մատնված հին երկաթագիր Ա ձեռագրում (հունարեն տեքստը օգտագործված է նաև Քրիսոստոմի կողմից): Դա ներգրավված է բոլոր մյուս հին հունական ձեռագրերում: Որոշներն ունեն որոշիչ ՀՈԴ «հավատք» բառի հետ իսկ որոշները ոչ, ինչևէ, սա չի ազդում նշանակության /իմաստի վրա:

«**որ իր արդարութիւնը ցոյց տայ**» Աստված պետք է արդար և անփոփոխ լինի Իր էությանն ու Իր խոսքին (հմմտ. Մաղ. 3:6): Հին Կտակարանում մեղավոր հոգին պետք է մեռներ (հմմտ. Եզ. 18:4,20): Աստված ասաց, որ Ինքը չի արդարացնի հանցանքը/մեղավորին (հմմտ. Ելից 23:7).Աստծո սերը ընկած մարդկության հանդեպ այնքան մեծ է, որ Նա կամեցավ մարդանալ/մարդեղանալ, կատարել Օրենքն ու մեռնել ընկած մարդկության փոխարեն: Սերն ու արդարությունը ամփոփվում են Հիսուսի մեջ (հմմտ. 26հ.):

**Արևելահայերեն «այն առաջուց գործուած մեղքերի թոյլտուութեան համար՝ Աստուծոյ ներելու ժամանակին»**

**Արևմտահայերեն «քանզի Աստուած իր երկայնամտութեամբ ջնջած էր նախապէս գործուած մեղքերը»**

**NASB, NKJV,**
**NRSV "He passed over the sins previously committed"**
**TEV "in the past he was patient and overlooked people's sins"**
**NJB "for the past, when sins went unpunished"**

«չնկատել/ուշադրություն չդարձնել» տերմինը *paresis* է, որն օգտագործվում է միայն այստեղ Նոր Կտակարանում և ոչ երբեք Սեպտուագինդում: Հույն հայրերը և Ջերոմը ընդունում էին դրա

հունարեն բառացի իմաստով «պարտքի ներում/թողություն» (հմմտ. Մյուլտոն և Միլիգան, էջ 493): Ինչևէ, *pariēmi*, ԲԱՑ-ը որից առաջ է գալիս դրա նշանակությունը «թույլ տալ անցնել կողքով» կամ «մեղմացնել/թուլացնել» (հմմտ. Ղուկ. 11:42).

Ուրեմն հարցն այսպիսինն է. Աստված ներե՞ց մեղքերը անցյալում՝ նայելով Քրիստոսի ապագա գործին կամ արդյո՞ք Նա պարզապես նայում է նրանց իմանալով, որ Քրիստոսի մահը կլուծի մեղքի խնդիրը: Արդյունքը նույնն է: Մարդու մեղքը, անցյալ, ներկա և ապագա, գործ ունի Քրիստոսի զոհաբերության հետ:

Սա Աստծո շնորհքի անցյալի գործողություններից էր ակնկալելով/կանխավայելելով Քրիստոսի գործը (հմմտ. Գործք 17:30; Հռ. 4:15; 5:13) ինչպես նաև նեկա և ապագա գործողությունը (հմմտ. 26հ.): Աստված չէր և չի ընդունում մեղքը թեթև, բայց Նա ընդունում է Հիսուսի զոհաբերությունը, որպես ամբողջական և վերջնական միջոց/դեղ մարդկային ըմբոստության, որը որպես արգելք Իր հետ ունեցած հաղորդակցության:

**3:26** «Արդարություն» տերմինը հ.25 ստուգաբանորեն վերաբերում է 26հ. «արդար» և «արդարացնող» տերմիններին: Աստված փափագում է, որ Իր կերպարը դրսևորվի հավատացյալների կյանքերում Քրիստոսի վրա ունեցած հավատքի միջոցով: Հիսուսը դառնում է մեր արդարությունը (հմմտ. II Կորն. 5:21) բայց հավատացյալները պետք է նաև համապատասխանեն Նրա արդարությանը, Նրա նմանությանը (հմմտ. Հռ. 8:29). տես Հատուկ Թեմա 1:17:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 3:27-30**
[27]Հիմա ու՞ր է պարծանքը. խափանուեցաւ. ը՞ր օրէնքով, գործերի՞ օրէնքովը. ըչ, այլ հաւատքի օրէնքովը: [28]Ուրեմն համարում ենք, որ մարդը հաւատքով է արդարանում առանց օրէնքի գործերի: [29]Մի՞թէ Աստուած միայն Հրէաներինն է, եւ հեթանոսներինն էլ չէ. այո, հեթանոսներինն էլ է: [30]Որովհետեւ մէկ Աստուած է՝ որ արդարացնում է թլփատութիւնը հաւատքից, եւ անթլփատութիւնը նոյն հաւատքովը:

**NASB (UPDATED) TEXT: 3:27-30**
[27]Where then is boasting? It is excluded. By what kind of law? Of works? No, but by a law of faith. [28]For we maintain that a man is justified by faith apart from works of the Law. [29]Or is God *the God* of Jews only? Is He not *the God* of Gentiles also? Yes, of Gentiles also, [30]since indeed God who will justify the circumcised by faith and the uncircumcised through faith is one.

**3:27** « ու՞ր է պարծանքը » ՀՈԴԻ առկայությունը «պարծանք»ի հետ կարող է

վերաբերել/արտացոլել հրեաների հպարտությունը (հմմտ. 2:17,23): Ավետարանը խոնարհեցնող է: Ընկած մարդկությունը (Հրեաներ և Հեթանոսներ) չի կարող օգնել իրեն (հմմտ.Եփ. 2:8-9). տես Հատուկ Թեմա; Պարծենկոտություն 2:17:

«**խափանուեցաւ**» Այս տերմինը (*ek* [դուրս] գումարած *kleiō* [փակել]) օգտագործվում է միայն այստեղ և Գաղ. 4:17: Սա բառացիորեն նշանակում է «փակել,մեկուսացնել»:

**«հաւատքի օրէնքովը»** Աստծո Նոր Ուխտը Երեմիա 31:31-34 հիմնված չէ գործի վրա, այլ վստահության/հավատքի վրա (*pistis*) Նրա ողորմած կերպարի և խոստումների: Թե Հին և թե Նոր Ուխտերը ընկած մարդկությանը Աստծո կերպարին (արդար) բերելու/փոխելու համար էին: Հինը՝ արտաքին օրենքով; Նորը՝ նոր սրտով (հմմտ. Եզեկ. 36:26-27): Նպատակը նույնն է:

**3:28 «Ուրեմն համարում ենք, որ մարդը հաւատքով է արդարանում առանց օրէնքի գործերի»: Սա** 3:21-26 ամփոփումն է և 4-8 գլուխների նախապատկերը (հմմտ. II Տիմ. 1:9; Տիտոս 3:5): Փրկությունը ձրի պարգև է Քրիստոսի ավարտած գործի հավատքի միջոցով (հմմտ. 3:24; 5:15,17; 6:23; Եփ. 2:8-9): Ինչևէ, հասունությունն արժե ամեն ինչ՝ հնազանդության կյանք, ծառայություն և պաշտամունք, (հմմտ. Գաղ. 5:6; Եփ. 2:10; Փիլ. 2:12; և տես ծանուցումը 1:5):

**3:29** Աստծո նպատակը միշտ եղել է ազատել ամբողջ մարդկությանը , որոնք ստեղծված են Իր պատկերով (Ծննդ. 1:26; 5:1; 9:6): Ծննդ. 3:15-ի ազատագրման խոստումը բոլորի համար է: Նա ընտրեց Աբրահամին որպեսզի ընտրի աշխարհը (հմմտ. Ծննդ. 12:31; Ելից 19:4-6; Հովհ. 3:16):

Այս համարը, ինչպես 3:9, հնարավոր է պատկերում/արտացոլում են լարվածությունը Հռոմի եկեղեցում հավատացյալ հրեա առաջնորդների միջև, որոնք հնարավոր է հեռացել էին Հռոմից՝ հետևելով Ներոնի/Կլավդիուս հրովարտակին և արդյունքում հեթանոս հավատացյալ առաջնորդները փոխարինեցին նրանց: 9-11 գլուխները հնարավոր է նույնպես ուղղում են այս նույն լարվածությունը:

**3:30**
**Արևելահայերեն «Որովհետեւ մէկ Աստուած է՝»**
**Արևմտահայերեն « Որովհետև Աստուած մէկ է»**

**3:30**
**NASB "if indeed God is one"**
**NKJV "since there is one God"**
**NRSV "since God is one"**

TEV "God is one"
JB "since there is only one God"

Սա ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ, որը ենթադրվում է որպես ճիշտ հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակների համար: Եթե Միաստվածությունը ճիշտ է, ուրեմն (հմմտ. Ելից 8:10; 9:14; 2 Օրին. 4:35,39; 6:4; I Թագ. 2:2; II Թագ. 7:22; 22:32; III Թագ. 8:23; Սաղ. 86:8,10; Ես. 43:11; 44:6,8; 45:6-7,14,18,21-22; 46:5,9; Եր. 2:11; 5:7; 10:6; 16:20), Նա պետք է բոլոր մարդկանց Աստվածը լինի:

**«որ արդարացնում է թլփատութիւնը»** Հունարեն «արդարացնել/անպարտ ճանաչել» բառը նույն արմատից է, ինչ «արդարություն,իրավունք»բառը: Տես Հատուկ Թեմա 1:17. Աստծո հետ ճիշտ հարաբերություն ունենալու համար կա միայն մեկ կերպ (հմմտ. Հռ. 9:30-32): Փրկության համար կա երկու չափանիշ՝ հավատք և ապաշխարություն (հմմտ. Մանկ. 1:15; Գործք 3:16,19; 20:21; տես նյութը 1:5): Սա ճշմարտություն է թե' Հրեաների և թե Հույների համար:

**«հաւատքից. . .հաւատքով»** Կա բացահայտ զուգահեռականություն այս երկու նախադասությունների միջև: *ek* և *dia* ՆԱԽԴԻՐՆԵՐՆ այստեղ օգտագործված են որպես հոմանիշ: Ոչ մի տարբերություն առաջադրված չէ:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 3:31**
31Արդ մի՞թէ օրէնքը խափանում ենք հաւատքովը. քաւ լիցի. այլ օրէնքը հաստատում ենք:

**NASB (UPDATED) TEXT: 3:31**
**31Do we then nullify the Law through faith? May it never be! On the contrary, we establish the Law.**

**Արևելահայերեն «Արդ մի՞թէ օրէնքը խափանում ենք հաւատքովը»**
**Արևմտահայերեն «Ուստի մենք հաւատքով օրէնքը կը խափանե՞նք:»**

3:31
NASB "Do we then nullify the Law through faith"
NKJV "Do we then make void the law through faith"
NRSV "Do we then overthrow the law by this faith"
TEV "Does this mean that by this faith we do away with the Law"

JB "Do we mean that faith makes the Law pointless"

Նոր Կտակարանը ներկայացնում է Հին Կտակարանը երկու տարբեր կերպերով

1. այն ներշնչված է, Աստծո տված հայտնությունը, որը երբեք չի անցնի (հմմտ. Մաթ. 5:17-19; Հռ. 7:12,14,16)
2. այն հնացած է և անցած (հմմտ. Եբր. 8:13)

Պողոսն օգտագործեց «ոչնչացնել» տերմինը ամենաքիչը 25 անգամ: Այն թարգմանվում է «անօգուտ/անվավեր», «գտնվել անզոր», և «ապարդյուն, անօգուտ անել»: Տես Հատուկ Թեմա 3:3. Պողոսի համար օրենքը թե' խնամակալ էր (հմմտ. Գաղ. 3:23) և թե' դայակ (հմմտ. Գաղ. 3:24), բայց հավիտենական կյանք տալ չէր կարող (հմմտ. Գաղ. 2:16,19; 3:19): Այն մարդու դատապարտության հիմնքն է (հմմտ. Գաղ. 3:13; Կող. 2:14): Մովսեսական օրենքը գործեց թե որպես հայտնություն և թե բարոյական փորձ, ինչպես արեց «Չարի և Բարու Գիտության Ծառը»:

Անորոշություն կա, թե ինչ ինկատի ունի Պողոսն «Օրենք» ասելով

1. արդարության համակարգ Հուդայականության գործեր
2. փուլ հեթանոս հավատացյալների համար՝ անցնելու Քրիստոսի փրկությանը (հուդայակնները/հրեություն Գաղատացիս թղթում)
3. չափանիշ, որով բոլոր մարդիկ փառքից ընկան/պակասեցին (հմմտ.Հռ. 1:18-3:20; 7:7-25; Գաղ. 3:1-29).

**«այլ օրէնքը հաստատում ենք»**Նախկին արտահայության լույսի ներքո, ի՞նչ է նշանակում այս արտահայտությունը: Այն կարող է նշանակել, որ

1. Օրենքը փրկության միջոց չէր, բայց այն մնայուն բարոյական ուղեցույց է
2. այն հաստատում է «արդարացում հավատքով» վարդապետությունը 3:21; 4:3 (Ծննդ. 15:6; Սաղ. 32:1-2,10-11)
3. Օրենքի տկարությունը (մարդկային ապստամբություն, հմմտ. Հռ. 7; Գաղ. 3) ամբողջությամբ բավարարվեցՔրիստոսի մահով, 8:3-4
4. հայտնության նպատակն է վերականգնել Աստծո պատկերը մարդու մեջ

Օրենքը, ատենական արդարությունից հետո, դառնում է ուղեցույց ճշմարիտ արդարության կամ Քրիստոսանմանության: Տես Հատուկ Թեմա; Պողոսի տեսակետերը Մովսեսական Օրենքի վերաբերյալ 13:9.

Ցնցող հարակարծիքն/պարադոքսն այն է, որ Օրենքը թերացավ հաստատել Աստծո արդարությունը, բայց նրա ոչնչացման միջոցով, Աստծո շնորհքի պարգևի միջոցով հավատքի ձեռովը, քրիստոնյան ապրում է արդար, բարեպաշտ կյանքով: Օրենքի նպատակը ընդունվել է ոչ

թե մարդու արարքով, այլ Աստծո ճրի պարգևի՝ շնորհքի միջոցով Քրիստոսում: «Հաստատել» բառի համար, տես Հատուկ Թեմա: Որը գտնվում է 5:2.

## ՔՆՆԱՐԿՎՈՂ ՀԱՐՑԵՐ

Սա սերտողության համար ուղեցույց հանդիսացող մեկնաբանություն է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ:

1. Քո խոսքերով գրիր Հռոմեացիս 3:21-31 ուրվագիծը
2. Ինչու՞ Աստված անցավ մարդու մեղքերի վրայով անցյալում (հ. 25)
3. Ինչպե՞ս էր Հին Կտակարանի հավատացյալը փրկվում մեղքից (3:25)
4. Ինչպե՞ս է Հիսուսի վրա ունեցած հավատքը հաստատում Օրենքը (3:31)

# ԹՈՒՂԹ ՈՒՂՂՎԱԾ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

## ԳԼՈՒԽ 4

| ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ | | | | |
|---|---|---|---|---|
| **UBS[4]** | **NKJV** | **NRSV** | **TEV** | **JB** |
| Աբրահամի Օրինակը | Աբրահամը Արդարացավ Հավատքով | Աբրահամը Արդարացավ Հավատքով | Աբրահամի Օրինակը | Աբրահամը Արդարացավ Հավատքով |
| 4:1-12 | 4:1-4 | 4:1-8 | 4:1-8 | 4:1-8 |
| | Դավիթը Հռչակում է Նույն Ճշմարտությունը | | | Արդարացավ Մինչև Թլպատությունը |
| | 4:5-8 | | | |
| | Աբրահամը Արդարացավ Մինչև Թլպատությունը | | | |
| | 4:9-12 | 4:9-12 | 4:9-12 | 4:9-12 |
| Խոստումը Իրականացավ Հավատքի միջոցով | Խոստումը տրված Հավատքի միջոցով | Աբրահամի Ճշմարիտ Սերունդները | Աստծո Խոստումը Ընդունվեց | Չարդարացավ Օրենքին Հնազանդվելով |
| 4:13-25 | 4:13-25 | 4:13-15 | 4:13-15 | 4:13-17 |
| | | 4:16-25 | 4:16-25 | Աբրահամի Հավատքը Քրիստոնեա հավատքի մոդել |
| | | | | 4:18-25 |

**ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ** (տես էջ vii)

*Հետևել բուն հեղինակի մտադրությանը պարբերությունների մակարդակով*

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը

պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Մեկ շնչով կարդացեք այս գլուխը: Ճանաչիր թեմաները: Համեմատիր քո թեմայի բաժանումները վերը նշված 5 թարգմանությունների հետ: Բաժանումները ներշնչված չեն, բայց դա բանալի է հետևելու բուն հեղինակի մտադրությանը, որը մեկնաբանության սիրտն է: Յուրաքանչյուր պարագրաֆ ունի մեկ և միայն մեկ թեմա:

1. Առաջին պարբերություն
2. Երկրորդ պարբերություն
3. Երրորդ պարբերություն
4. և այլն

**ԿՈՐՏԵՔՍՏԱՅԻՆ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ**

Ա. Պողոսի ցնցող աստվածաբանությունը, որը գտնվում է 3:21-31-ում, հաստատեց, որ մեղավոր/ընկած մարդկությունը Աստծո առաջ հռչակված էր արդար որպես ձրի պարգև, ամբողջությամբ Մովսեսական Օրենքից անջատ: Հիմա Պողոսը փորձում է ապացուցել , որ դա նորամուծություն չէր (հմմտ. 3:21բ) բերելով Հին Կտակարանային օրինակներ Աբրահամին և Դավիթին (հմմտ. 6-8հհ.):

Բ. Հռոմեացիս 4-ը ներկայացնում է ապացույց բերված Մովսեսի Օրենքից, Ծնն. – 2 Օրին., հավատքով արդարացման վարդապետության համար: Սա ամփոփվում է 3:21-31: Հրեայի համար, Մովսեսի գրվածքներից մի մեջբերում ուներ մեծ աստվածաբանական կշիռ, հատկապես կապված Աբրահամի հետ, որը համարվում էր Հրեա ազգի հայրը: Դավիթը դիտվում էր ոչպես եկող Մեսիայի տիպար (հմմտ. II Թագ. 7): Լարվածությունը Հռոմում հավատացյալ հրեաների և հավատացյալ հեթանոսների միջև հնարավոր է պատճառ է հանդիսացել այս քննարկման համար: Հնարավոր է, որ հրեա քրիստոնեա առաջնորդները բռնության էին մատնվել Ներոնի/Կլավդիոսի կողմից (որը վերացրեց հրեական բոլոր ծեսերը) թողնելու Հռոմը: Այդ ժամանակամիջոցում նրանք փոխարինվեցին հեթանոս քրիստոնեա առաջնորդներով: Առաջին խմբի վերադարձը վիճաբանություն առաջացրեց, թե ով պետք է լինի առաջնորդության պաշտոններում:

Գ. Հռոմեացիս 4-ը ցույց է տալիս, որ ընկած/մեղավոր մարդկությունը միշտ փրկվել է հավատքով և ապաշխարությամբ առ Աստված՝ համապատասխան իրենց ունեցած հոգևոր լույսի (Ծննդ. 15:6; Հռ. 4:3): Շատ ձևերով Նոր Ուխտը (ավետարան) արմատականորեն տարբեր չէ Հին Ուխտից (հմմտ. Եր. 31:31-34; Եզ. 36:22-38):

Դ. Հավատքով արդարանալու ձևը բաց է բոլորի համար, ոչ միայն Նախահայրերի, կամ էլ Իսրայել ազգի համար է: Այստեղ Պողոսը զարգացնում և ընդարձակում է իր աստվածաբանական փաստարկը՝ օգտագործելով Աբրահամին, որը նա սկսեց, իր առաջին թղթում/գրքում, Գաղ. 3-ում:

## ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 4:1-8**
[1]Արդ ի՞նչ ասենք, թէ մեր Աբրահամ հայրը գտաւ մարմնի կողմանէ: [2]Որովհետեւ եթէ Աբրահամը գործերով արդարացած լինէր՝ պարծանք կունենար. բայց ոչ թէ Աստուծոյ առաջին: [3]Որովհետեւ գիրքն ի՞նչ է ասում. Աբրահամը հաւատաց Աստուծուն, եւ արդարութիւն համարուեցաւ նորան: [4]Բայց նորան՝ որ գործք է անում, վարձքը չէ համարվում շնորհքի պէս, այլ պարտքի պես: [5]Բայց նորան՝ որ գործք չէ անում այլ հաւատում է նորան, որ ամբարիշտին արդարացնում է, նորա հաւատքը համարվում է արդարութիւն: [6] Ինչպէս որ Դաւիթն էլ այն մարդի երանութիւնն է ասում, որին Աստուած արդարութիւն է համարում առանց գործերի: [7] Երանի նորանց՝ որոնց անօրէնութիւնները թողուեցան, եւ որոնց մեղքերը ծածկուեցան: [8] Երանի է այն մարդին, որին Տէրը մեղք չի համարիլ:

NASB (UPDATED) TEXT: 4:1-8
[1]**What then shall we say that Abraham, our forefather according to the flesh, has found? [2]For if Abraham was justified by works, he has something to boast about, but not before God. [3]For what does the Scripture say? "ABRAHAM BELIEVED GOD, AND IT WAS CREDITED TO HIM AS RIGHTEOUSNESS." [4]Now to the one who works, his wage is not credited as a favor, but as what is due. [5]But to the one who does not work, but believes in Him who justifies the ungodly, his faith is credited as righteousness, [6]just as David also speaks of the blessing on the man to whom God credits righteousness apart from works: [7]"BLESSED ARE THOSE WHOSE LAWLESS DEEDS HAVE BEEN FORGIVEN, AND WHOSE SINS HAVE BEEN COVERED." [8]"BLESSED IS THE MAN WHOSE SIN THE LORD WILL NOT TAKE INTO ACCOUNT."**

**4:1 «Արդ ի՞նչ ասենք, թէ մեր Աբրահամ հայրը »** Աբրահամի անունը նշանակում էր «բազմության հայր» (հմմտ. 16-18հհ.): Նրա սկզբնական անունը Աբրամ էր, որը նշանակում էր «մեծարված հայր»:

Այստեղ օգտագործված գրական տեխնիկան կոչվում է սուր քննադատություն (հմմտ. 4:1; 6:1;

7:7; 8:31; 9:14,30): Աբրահամին (Ծննդ. 11:27-25:11) որպես օրինակ օգտագործելու պատճառը կամ (1) որովհետև հրեաները մեծ տեղ էին տալիս իրենց ռասայական ակունքներին (հմմտ. Մաթ. 3:9; Հովհ. 8:33,37,39); (2) որովհետև նրա անձնական հավատքը ուխտի մոդելի օրինակ է ծառայում (Ծննդ. 15:6); (3) նրա հավատքը նախորդեց Մովսեսին Օրենք տալը (հմմտ. Ելից. 19-20):

**4:2 «եթէ»** Սա ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ (հմմտ. Ա. Թ. Ռոբերթսոն, *Word Pictures*, Հատ. 4, 350 էջ), որը ճշմարտություն է ձևացնում հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակի համար: Սա շատ լավ օրինակ է ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ, որը կեղծ է իրականության մեջ, բայց ծառայում է աստվածաբանական միտք ասելու համար (հմմտ. 14հ.):

Ջոզեֆ Ա. Ֆիտսմայեռ, *The Anchor Bible*, Հատ. 33, 372 էջ, ասում է, որ սա հնարավոր է լինի խառը պայմանական նախադասություն/եղանակ, որի առաջին մասը ԵՐԿՐՈՐԴ ԿԱՐԳ (ճշմարտությանը/իրողությանը հակառակ) իսկ երկրորդը ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳ:

**«գործերով արդարացած»** Սա հակառակն է Քրիստոսի հավատքով արդարացման ճշմարտության: Այս տեսակ մարդկային ջանքերով փրկությունը (4:4), եթե հնարավոր է Քրիստոսի ծառայությունը ավելորդ կդարձներ: Ինչևէ, Հին Կտակարանը հստակ ցույց է տալիս ընկած մարդկության Աստծո ուխտի գործերի կատարման անկարողությունը Ուստի Հին Կտակարանը/ Օրենքը անեծք՝ մահվան դատավճիռ դարձավ (հմմտ. Գաղ. 3:13; Կող. 2:14):

Հրեա գիտնականները գիտեին, որ Աբրահամը գոյություն ուներ մինչև Մովսեսի Օրենքը, բայց նրանք հավատում էին, որ նա նախատեսեց/կանխազգաց Օրենքը և պահեց այն (հմմտ. Սիր. 44:20 և Յուբ. 6:19; 15:1-2):

**«պարծանք կունենար»** Այս թեման հաճախ հայտնվում է Պողոսի գրվածքներում: Նրա նախադրյալը որպես փարիսեցի զգայուն էր դարձրել այս խնդրի հանդեպ (հմմտ. 3:27; I Կոր. 1:29; Եփ. 2:8-9): Տես Հատուկ Թեմա: Պարծանք 2:17-ում:

**4:3**
**Արևելահայերեն «Աբրահամը հաւատաց Աստուծուն »**
**Արևմտահայերեն «Աբրահամ Աստուծոյ հաւատաց »**

**NASB, NKJV,**

**NRSV, TEV "Abraham believed God"**
**JB "Abraham put his faith in God"**

Սա մեջբերում է Ծննդ.15:6-ից: Այս գլխում Պողոսը երեք անգամ օգտագործում է այն (հմմտ. 4:3,9,22), որը ցույց է տալիս դրա կարևորությունը Պողոսի աստվածաբանական հասկացողությունը փրկության մասին: «հավատք» տերմինը Հին Կտակարանում նշանակում էր հավատարմություն, նվիրվածություն կամ հուսալիություն և Աստծո բնության նկարագիրն էր, և ոչ թե մեր: Այն առաջացել է եբրայերեն (*emun, emunah*) տերմինից, որը նշանակում էր «հավատացած կամ կայուն լինել»: Փրկարար հավատքը մտային համաձայնեցում (ճշմարտությունների հավաքածու/շարք), կամքի/ցանկության կատարում (որոշում), բարոյական կյանք (ապրելաոճ), և հիմնականում բարեկամական (անձի ողջունում):

Պետք է ընդգծվի, որ Աբրահամի հավատքը գալիք Մեսիայի վրա չէր այլ Աստծո խոստման վրա, որ նա զավակ և սերունդներ կունենա (հմմտ. Ծննդ. 12:2; 15:2-5; 17:4-8; 18:14): Աբրահամն այս խոստմանը արձագանքեց՝ Աստծուն վստահելով: Նա ուներ կասկածներ և խնդիրներ այս խոստման հետ կապված, բայց իրականում այն ևս 13 տարի պահանջեց իրականանալու համար: Ինչևէ նրա թերի հավատքն ընդունվեց Աստծո կողմից: Աստված կամենում է գործել թերի, պակասավոր մարդկանց հետ, ովքեր արձագանքում են Իրեն և Իր խոստումներին՝ հավատքով, եթե նույնիսկ դա մանանեխի հատիկի չափ է (հմմտ. Մաթ. 17:20):

**4:3,4,5,6,8,9,10,22,23,24**
**Արևելահայերեն « արդարութիւն համարուեցաւ նորան»**
**Արևմտահայերեն «իրեն արդարութիւն սեպուեցաւ»**

**NASB, NRSV "it was reckoned to him"**
**NKJV "it was accounted to him"**
**TEV "for God accepted him"**
**JB "this faith was considered"**

«Դա» վերաբերում է Աբրահամի հավատքը Աստծո խոստումներին:

«Համարվեց» (*logizomia*) հաշվապահական տերմին է, որը նշանակում էր «հանցանքը կամ պայմանական մեկի վրա դնել» (հմմտ. LXX Ծննդ. 15:6; Ղև. 7:18; 17:4): Այս նույն ճշմարտությունը գեղեցիկ կերպով արտահայտվում է II Կոր. 5:21 և Գաղ. 3:6: Հնարավոր է, որ Պողոսը միացրեց Ծննդ. 15:6 և Սաղ. 32:2, որովհետև այդ երկուսն էլ օգտագործում են «համարվեց» հաշվապահական տերմինը: Տեքստերի այս միացությունը հերմենևտիկ/մեկնաբանական սկզբունք էր օգտագործված ռաբբիների կողմից:

Հին Կտակարանի այս տերմինը Սեպտուագինդում այնքան էլ բանկային տերմին չէ ինչպես

հաշվապահական տերմին, հնարավոր է վերաբերում է «գրքեր»-ին Դան. 7:10; 12:1: Այս երկու փոխաբերական գրքերն (Աստծո հիշողություն) են

1. գործերի կամ հիշատակների գիրքը (հմմտ. Սաղ. 56:8; 139:16; Ես. 65:6; Մաղ. 3:16; Հայտ. 20:12-13)
2. կյանքի գիրքը (հմմտ. Ելից 32:32; Սաղ. 69:28; Ես. 4:3; Դան. 12:1; Ղուկ 10:20; Փիլ. 4:3; Եբ. 12:23; Հայտ. 3:5; 13:8; 17:8; 20:15; 21:27):

Գիրքը, որտեղ Աբրահամի հավատքը Աստծո կողմից որակավորվում էր որպես արդարություն դա «կյանքի գիրքն» է:

**4:3,5,6,9,10,11,13,22,25 «եւ արդարությիւն»** Սա անդրադարձնում է Հին Կտակարանի «չափող եղեգ» (*tsadak*) տերմինը: Դա շինարարական փոխաբերություն էր օգտագործված Աստծո էության համար: Աստված ուղիղ է իսկ բոլոր մարդիկ կեռ/ծռված: Նոր Կտակարանում այն օգտագործվում էր պաշտոնական/դիրքային, իրավական (դատական) իմաստով, որը հույսով շարժվում է դեպի աստվածահաճո ապրելաոճի առանձնահատկությունները: Աստծո նպատակը յուրաքանչյուր քրիստոնյայի համար Իր սեփական էությունն է, կամ այլ կերպ ասած՝ քրիստոսանմանությունը (հմմտ. 8:28-29; Գաղ. 4:19): Տես հատուկ թեմա 1:17:

**4:5** Հավատքի էությունը դա պետքական արձագանք է Աստծո կանչին, որը Ինքն Իրեն հայտնում է մարդկանց, այնինչ հենց սկզբից այս արձագանքում առանց մարդկային ջանքերի կամ արժանիքների վրա հենվելով: Սա չի նշանակում, որ մի ժամանակ փրկվել ենք և Հոգին բնակվում է մեր մեջ, ուրեմն մեր ապրելաոճը կարևոր չէ: Քրիստոնեության նպատակը միայն մահանալուց հետո երկինք գնալը չէ, այլ հիմա Քրիստոսանման լինելն է: Մենք <u>չենք</u> փրկվում, արդարանում կամ ճիշտ ճափանիշ ստանում մեր գործերով, այլ մենք փրկվում ենք <u>դեպի</u> բարի գործեր կատարելու (հմմտ. Եփ. 2:8-9 և 10; Հակոբոս և I Հովհաննես): Փոխված և փոխվող կյանքը ապացույց է, որ ևս մեկը փրկվեց:

- **«հավատում է»** Ստորև տես հատուկ թեմա

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՀԱՎԱՍՔ (*PISTIS* [գոյական], *PISTEUŌ,* [բայ], *PISTOS* [ածական])**

Ա. Սա շատ կարևոր տերմին է Աստվածաշնչում (հմմտ. Եբր. 11:1,6): Սա Հիսուսի վաղ քարոզների նյութն էր (հմմտ. Մարկ. 1:15): Գոյություն ունի ամենաքիչը երկու նոր ուխտի պահանջներ: ապաշխարություն և հավատք (հմմտ. 1:15; Գործք 3:16,19; 20:21):

Բ. Տերմինի ստուգաբանությունը

1. Հին Կտակարանում «հավատք» տերմինը նշանակում էր անձնվիրություն, նվիրվածություն կամ հուսալիություն և Աստծո բնության նկարագիրն էր և ոչ թե մեր:
2. Այն առաջացել է եբրայերեն (*emun, emunah*) տերմինից, որը նշանակում էր «վստահ լինել կամ կայուն, հաստատ մնալ»: Մարդու փրկարար հավատքը դա մտային համաձայնություն է (որոշակի ճշմարտությունների ընդունմամդ), բարոյական կյանք (ապրելակերպ), և ամենակարևորը դա մարդկային փոխհարաբերություն է (բարիացակամություն ուրիշի հանդեպ) և ինքնակամ նվիրում (որոշում) այդ անձի նկատմամբ:

Գ. Տերմինի կիրառությունը Հին Կտակարանում

Պետք է նշել այն, որ Աբրահամի հավատքը գալիք Մեսիային հավատալը չէր, այլ Աստծո խոստմանը, որ նա զավակ և սերունդներ կունենա (հմմտ. Ծննդ. 12:2; 15:2-5; 17:4-8; 18:14): Աբրահամը արձագանքեց այս խոստմանը՝ Աստծուն վստահելով: Նա դեռ ուներ կասկածներ և խնդիրներ այս խոստման մասին, որը տևեց 13 տարի իրականանալու համար: Նրա անկատար հավատքը, ինչևէ ընդունվեց Աստծո կողմից: Աստված կամենում է գործել փչացած մարդ արարածների հետ, ովքեր հավատքով արձագանքում են Իրեն և Իր խոստումներին, եթե այն նույնիսկ անգամ մանանեխի հատիկի չափ է (հմմտ. Մաթ. 17:20):

Դ. Տերմինի կիրառությունը Նոր Կտակարանում

«Հավատաց» տերմինը առաջացել է հունարեն (*pisteuō*) տերմինից, որը նաև կարող է թարգմանվել «հավատալ», «հավատք», կամ «վստահություն»: Օրինակ, որպես գոյական Հովհաննու Ավետարանում չի հանդիպում, բայց որպես բայ հաճախ է օգտագործվում: Հովհ. 2:23-25 գոյություն ունի որոշակի անորոշություն ժողովրդի անկեղծության մեջ Հիսուս Նազովրեցուն որպես Մեսիա ընդունելու առումով: Ուրիշ օրինակներ, երբ «հավատալ» տերմինը օգտագործվում է մակերեսորեն Հովհ. 8:31-59 և Գործք 8:13, 18-24: Ճշմարիտ աստվածաշնչյան հավատքն ավելին է քան սկզբնական արձագանքը: Դրան անպայման պետք է հետևի աշակերտության գործընթացը (հմմտ. Մաթ. 13:20-22,31-32):

Ե. Օգտագործվում է ՆԱԽԴԻՐՆԵՐՈՎ

1. *eis* նշանակում է «մեջ»: Այս հատուկ քերականական կառուցվածքը ընդգծում է հետևյալ միտքը, երբ հավատացյալներն իրենց վստահություն/հավատքը դնում են Հիսուսի վրա
   ա. Նրա անվանը (Հովհ. 1:12; 2:23; 3:18; I Հովհ. 5:13)
   բ. Նրան (Հովհ. 2:11; 3:15,18; 4:39; 6:40; 7:5,31,39,48; 8:30; 9:36; 10:42; 11:45,48;

17:37,42; Մաք. 18:6; Գործք 10:43; Փիլ. 1:29; I Պետ. 1:8)

գ. Ինձ (Հովհ. 6:35; 7:38; 11:25,26; 12:44,46; 14:1,12; 16:9; 17:20)

դ. Որդուն (Հովհ. 3:36; 9:35; I Հովհ. 5:10)

ե. Հիսուսին (Հովհ. 12:11; Գործք 19:4; Գաղ. 2:16)

զ. Լույսին (Հովհ. 12:36)

է. Աստծուն (Հովհ. 14:1)

2. *en* նշանակում է «մեջ» ինչպես Հովհ. 3:15; Մարկ. 1:15; Գործք 5:14
3. *epi* նշանակում է «մեջ» ինչպես, Մաք. 27:42; Գործք 9:42; 11:17; 16:31; 22:19; Հռ. 4:5,24; 9:33; 10:11; I Տիմ. 1:16; I Պետ. 2:6
4. ՏՐԱԿԱՆ ՀՈԼՈՎԸ առանց ՆԱԽԴԻՐԻ ինչպես Գաղ. 3:6; Գործք 18:8; 27:25; I Հովհ. 3:23; 5:10
5. *hoti,* որը նշանակում է «հավատալ, որ» ցույց է տալիս էությունը այն բանի, թէ ինչին հավատալ

ա. Հիսուսն Աստծո Սուրբն է (Հովհ. 6:69)

բ. Հիսուսը - ԵՍ ԵՄ (Հովհ. 8:24)

գ. Հիսուսը Հոր մեջ է և Նա Հոր մեջ (Հովհ. 10:38)

դ. Հիսուսը Մեսիան է (Հովհ. 11:27; 20:31)

ե. Հիսուսն Աստծո Որդին է (Հովհ. 11:27; 20:31)

զ. Հիսուս ուղղարկված էր Հոր կողմից (Հովհ. 11:42; 17:8,21)

է. Հիսուսը մեկ է Հոր հետ (Հովհ. 14:10-11)

ը. Հիսուսը եկավ Հորից (Հովհ. 16:27,30)

թ. Հիսուսն իրեն ճանաչեցնում է Հոր ուխտի անվան հետ, «ԵՍ ԵՄ» (Հովհ. 8:24; 13:19)

ժ. Մենք կապրենք Նրա հետ (Հռ. 6:8)

ի. Հիսուս մեռավ և հարություն առավ (I Թես. 4:14)

**Արևելահայերեն «նորա հաւատքը»**

**Արևմտահայերեն «անոր հաւատքը»**

**NASB, NKJV “his faith”**
**NRSV “such faith”**
**TEV, NJB “it is this faith”**

Աբրահամի հավատքը իր համար արդարություն համարվեցավ: Դա չէր հիմնված Աբրահամի գործողությունների վրա, այլ կեցվածքի/վերաբերմունքի:

«Համարվեց» բառը նաև օգտագործվում է Փինեսում LXX Սաղ. 106:31, որը վերաբեվրում է

Թվոց 25:11-13: Այս դեպքում համարվելը հիմնված էր Փինեսի գործողությունների վրա, բայց Աբրահամի հետ այդպես չէ Ծննդ. 15:6:

**«այլ հաւատում է նորան, որ ամբարիշտին արդարացնում է, նորա հաւատքը համարվում է արդարութիւն»** Սա ակնհայտ զուգահեռ է Աբրահամին 3h-ում (Ծննդ. 15:6): Արդարությունը Աստծո պարգևն է, և ոչ թե մարդու արարքը: Տես հատուկ թեմա 1:17.

**«Դավիթ»** Ինչպես Աբրահամը կատարյալ անհատ չէր, սակայն հավատքով Աստծո առաջ ուղիղ էր, նույնպես էլ մեղավոր Դավիթը (հմմտ. Սաղ. 32 և 51): Աստված սիրում և գործում է ընկած/մեղավոր մարդկության հետ (Ծննդ. 3) ով հավատք է ցուցաբերում առ Աստված (ՀԿ) և Իր որդուն (ՆԿ):

**4:6 «առանց գործերի»** Պողոսն ընդգծում է այս արտահայտությունը զետեղելով այն մինչև Հին Կտակարանի իր մեջբերումը (հմմտ. Սաղ. 32:1-2): Մարդը ուղիղ է Աստծո հետ Իր շնորհքով միջնորդելով Քրիստոսի միջոցով անհատի հավատքի դրսևորմամբ և ոչ թե նրանց կրոնական արարքներով:

**4:7-8** Սա մեջբերում է Սաղ. 32:1-2-ից: 7h-ի բայերը «ներվեցին/թողվեցան» և «ծածկվեցան» ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ: Այստեղ Աստված ենթադրվում է որպես գործող անձ: 8-րդ h. պարունակում է ուժեղ ԿՐԿՆԱԿԻ ԺԽՏՈՒՄ, որը նշանակում է, որ «ոչ մի հանգամանքներում» մեղքերը չէին մեղսագրվում, հաշվվում, ուշադրության արժանանում: Տես այս մեջբերման մեջ երեք ԲԱՅ-երը, բոլորն էլ մատնանշում են մեղքի վճարումը:

**4:7 «**որոնց մեղքերը ծածկուեցան» Սա մեջբերում է Սաղ. 32:1-ից: «Ծածկվելու» գաղափարը Իսրայելի զոհաբերության տեսակետի կենտրոնական մասն էր: Աստված մեղքը ծածկելով, Նա դուրս է հանում այն Իր տեսադաշտից (Բրաուն, Դրայվր, Բրիգս, էջ 491): Այս նույն գաղափարը, չնայած «ծածկված» (*caphar*) եբրայերեն ուրիշ բառ է, օգտագործվում էր Քավության Օր ծեսի ժամանակ (ծածկել), որտեղ արյունը դրվում էր «ողորմության նստարանի» վրա ծածկելու Իսրայելի մեղքերը: Աստվածաշնչյան փոխաբերությունը կլիներ մաքրել/ջնջել կամ ոչնչացնել/ծածկել ինչ որ մեկի մեղքը:

**4:8 « Երանի է այն մարդին, որին Տէրը մեղք չի համարիլ»** Սա մեջբերում է Սաղ. 32:2: Սա «համարել», «վերագրել» կամ «ինչ որ մեկի հաշվին դնել/ավանդ ներդնել» տերմինն է

օգտագործված բացասական իմաստով: Աստված չի վերագրում մեղքը (ԿՐԿՆԱԿԻ ԺԽՏԱԿԱՆ) հավատացյալի հոգևոր բանկի հաշվի վրա; Նա վերագրում է արդարությունը: Սա հիմնված է Աստծո ողորմած էության/կերպարի, պարգևի և որոշման, ոչ թե մարդու կարևորության, նվաճման կամ արժանիքի:

**NASB (UPDATED) TEXT: 4:9-12**
**[9]Is this blessing then on the circumcised, or on the uncircumcised also? For we say, "FAITH WAS CREDITED TO ABRAHAM AS RIGHTEOUSNESS." [10]How then was it credited? While he was circumcised, or uncircumcised? Not while circumcised, but while uncircumcised; [11]and he received the sign of circumcision, a seal of the righteousness of the faith which he had while uncircumcised, so that he might be the father of all who believe without being circumcised, that righteousness might be credited to them, [12]and the father of circumcision to those who not only are of the circumcision, but who also follow in the steps of the faith of our father Abraham which he had while uncircumcised.**

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 4:9-12**
[9]Արդ այս երանութիւնը՝ թլփատութեան վերայ է կամ թէ անթլփատութեան վերայ էլ է. որովհետեւ ասում ենք՝ թէ Աբրահամի հաւատքն արդարութիւն համարուեցաւ: [10]Արդ ի՞նչպէս համարուեցաւ. երբոր թլփատութիւնու՞մ էր՝ թէ անթլփատութիւնումը. ոչ թէ թլփատութիւնում այլ անթլփատութիւնումը: [11]Եւ թլփատութեան նշանն առաւ իբրեւ արդարութեան կնիք այն հաւատքի որ անթլփատութիւնումն էր, որ նա հայր լինի այն ամեն հաւատացեալների՝ որ անթլփատութիւնից են՝ որ նորանց էլ համարուի արդարութիւնը: [12] Եւ թլփատութեան հայր համարուի ոչ միայն նորանց՝ որ թլփատութիւնից են, այլ նորանց էլ՝ ար այն հաւատքի հետքովն են գնում, որ մեր հայր Աբրահամն անթլփատութիւնումն ունէր:

**4:9-12** Հնարավոր է Պողոսը ներգրավեց այս թլփատության հետ կապված քննարկումը նրա համար, որ հուդայականները ընդգծում էին փրկության համար թլպատվելու անհրաժեշտությունը (հմմտ. Գաղատացիս գիրքը և Գործք 15 Երուսաղեմի Խորհուրդը):

Պողոսը, վարժված/պատրաստված ռաբբիական մեկնաբանությամբ exegesis, գիտեր, որ Ծննդ.15:5 և Սաղ. 32:2 նույն ԲԱՅՆ է հայտնվում (թե եբրայերենում և թե հունարենում): Այս հատվածները միացվել են աստվածաբանական նպատակներով:

**4:9** 9-րդ հ-ի հարցը ակնկալում է «ոչ» պատասխան: Աստված ընդունում է բոլոր մարդկանց, նույնիսկ հեթանոսներին, հավատքով: Ծննդ. 15:6 մեջբերված է կրկին: Աբրահամը, հրեա ազգի հայրը, արդար համարվեցավ մինչև թլպատվելը:

**4:10-11 «Եւ թլփատութեան նշանն առաւ իբրեւ արդարութեան կնիք այն հաւատքի»** Աբրահամի կանչվելուց և արդար սեպվելուց հետո, Աստված տվեց նրան թլպատություն, որպես ուխտի նշան (Ծննդ. 17:9-14): Հին Մերձավոր Արևելքի բոլոր մարդիկ թլպատվում էին, բացի փղշտացիներից, ովքեր հունական ծագում ունեին էին Էգեյան կղզիներից: Նրանց համար թլպատությունը ծեսի հաստատում է տղայից տղամարդու փոխվելու: Հրեայի կյանքում դա ուխտին անդամակցելու կրոնական խորհրդանիշ/սիմվոլ էր՝ տղա երեխաների համար ծնվելուց 8 օր հետո:

Այս համարում «նշան» և «կնիք» բառերը զուգահեռներ են և երկուսն էլ վերաբերում են Աբրահամի հավատքին: Թլպատությունը տեսանելի նշան էր, որ անձը ունի հավատք առ Աստված: «Հավատքի արդարություն» ՍԵՌԱԿԱՆ ՀՈԼՈՎ արտահայտությունը կրկնվում է 13հ.: Սուրբ Աստծո հետ արդար հռչակվելու բանալին ոչ թե թլպատությունն է այլ հավատքը:

**4:11 «որ նա հայր լինի այն ամեն հաւատացեալների՝ որ անթլփատութիւնիցն են»** Հռոմեացիս գիրքը գրվել է Գաղատացիս գրքից հետո: Պողոսը շատ զգայուն էր հրեական հակում վստահելու (1) իրենց ռասայական ծագմանը (հմմտ. Մաթ. 3:9; Հովհ. 8:33,37,39) և (2) Մովսեսական ուխտի լայն տարածում ունեցող հրեական մեկնաբանությունների կատարմանը (Բանավոր Ավանդույթը, կամ ծերերի ավանդույթը, որը ավելի ուշ գրի առնվեց և կոչվեց Թալմուդ): Ուստի նա օգտագործում էր Աբրահամին, որպես օրինակ բոլոր նրանց համար, ովքեր հավատքով (որ նա հայր լինի այն ամեն հաւատացեալների՝ որ անթլփատութիւնիցն են, հմմտ. Գաղ. 3:79):

- **«կնիք»** ստորև տես հատուկ թեմա

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԿՆԻՔ**

Աստծո կնիք հասկացողությունը մեզ նորից ուղղում է դեպի Հայտնության գրքի 9:4 և 14:1 և հավանական է 22:4: Սատանայի կնիքի մասին խոսվում է 13:16; 14:9; և 20:4: Կնիքը հնում եղել է վավերացման կերպ

1. ճշմարտության (հմմտ. Հովհ. 3:33)
2. սեփականության (հմմտ. Հովհ. 6:27; II Տիմ. 2:19; Հայտ. 7:2-3)
3. անվտանգության կամ պաշտպանության (հմմտ. Հովհ. 4:15; Մաթ. 27:66; Հռ. 15:28; II Կոր. 1:22; Եփ. 1:13; 4:30)
4. սա նաև կարող է Աստծո խոստման կապված Նրա պարգևի հետ նշան լինել (հմմտ. Հռ. 4:11 և I Կոր. 9:2).

Այս նշանի նպատակն է ինքնությունը ճանաչել որպես Աստծո ժողովուրդ, որպեսզի Աստծո բարկությունը չհասնի նրանց: Սատանայի կնիքը ցույց է տալիս իր ժողովրդի

պատկանելիությունն է, ովքեր ենթակա են Աստծո բարկությանը: Հայտնության գրքում «նեղություն» (այն է, *thlipsis*) երբ միշտ անհավատները հալածում են հավատացյալներին, այն ինչ ցասում/բարկությունը (այն է, *orgē* կամ *thumos*) միշտ Աստծո դատաստանն է անհավատների դեմ, որ նրանք ապաշխարեն և դառնան հավատք առ Քրիստոս: Դատաստանի այս դրական նպատակը շատ լավ երևում է 2Օրին. 27-28-ի անեծքների/օրհնությունների ուխտի մեջ:

«Կենդանի Աստված» արտահայտությունը բառախաղ է հիմնված ՅԱՀՎԵ-ի անվան վրա (հմմտ. Ել. 3:14; Սաղ. 42:4; 84:2; Մաթ. 16:16): Նմանատիպ բառախաղ հաճախ հանդիպում է աստվածաշնչյան երդումների մեջ «կենդանի է Տերը»:

**4:12 «որ այն հաւատքի հետքովն են գնում»** Սա ռազմական տերմին էր (*stoicheō)* զինվորների համար՝ մեկ շարքով քայլելիս (հմմտ. Գործք 21:24; Գաղ. 5:25; 6:16; Փիլ. 3:16): Այս համարում Պողոսը խոսում է հրեաների մասին («թլփատութեան հայր») ովքեր հավատում են: Աբրահամը բոլոր նրանց հայրն է, ովքեր հավատում են Աստծուն և Նրա խոստումներին:

Կրկնակի ՀՈԴԻ (*tois*) պատճառով հնարավոր է, որ այս երկրորդ տեսակետը («հետևելով ….քայլերին») ավելացնում է ապրելաոճի/կյանքի հավատքի գաղափարը (ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՉԵԶՈՔ ՍԵՌ [deponent] ԴԵՐԲԱՅ) և ոչ միայն միայն-մեկ անգամ հավատք: Փրկությունը շարունակական հարաբերություն է , և ոչ թե միայն որոշում կամ ցանկության պահ:

**NASB (UPDATED) TEXT: 4:13-15**

**[13]For the promise to Abraham or to his descendants that he would be heir of the world was not through the Law, but through the righteousness of faith. [14]For if those who are of the Law are heirs, faith is made void and the promise is nullified; [15]for the Law brings about wrath, but where there is no law, there also is no violation.**

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 4:13-15**

[13]Որովհետեւ ոչ թէ օրէնքովը եղավ Աբրահամին կամ նորա զաւակին այն խոստմունքը թէ նա աշխարհիքի ժառանգն է, այլ հաւատքի արդարութիւնիցը: [14] Որովհետեւ եթէ օրէնքից լինողներն են ժառանգ, ապա հաւատքն ունայն էր՝ եւ խոստմունքը կխափանուէր: [15] Որովհետեւ օրէնքը բարկութիւն է գործում. որովհետեւ ուր օրէնք չկայ օրինազանցութիւն էլ չկայ:

**4:13 «Աբրահամին կամ նորա զաւակին այն խոստմունքը»** Աստված խոստացավ «երկիր և սերունդ» Աբրահամին (հմմտ. Ծննդ. 12:1-3; 15:1-6; 17:1-8; 22:17-18): Հին Կտակարանը կենտրոնացավ երկրի վրա (Պաղեստին), բայց Նոր Կտակարանը կենտրոնացավ «սերնդի» վրա

(Հիսուս Մեսիան, հմմտ. Գաղ. 3:16,19), սակայն այստեղ «սերունդ» վերաբերում է հավատացյալ ժողովրդին (հմմտ. Գաղ. 3:29): Աստծո խոստումները բոլոր հավատացյալների հավատքի հիմքն է (հմմտ. Գաղ. 3:14,17,18,19, 21, 22,29; 4:28; Եբր. 5:13-18):

**«թէ նա աշխարհքի ժառանգն է»** Այս տիեզերական դրույթը/միտքը շատ նշանակալից է Ծննդ. 12:3; 18:18; 22:18 և Ելից. 19:5-6 լույսի մեջ: Աստված կանչեց Աբրահամին կանչելու բոլոր մարդկանց (հմմտ. Ծննդ. 1:26-27; 3:15): Աբրահամն ու իր սերունդները ամբողջ աշխարհի համար պետք է հայտնություն լինեին: Սա Աստծո Թագավորությունը երկրի վրա հասկացողության մեկ ուրիշ ձև է (հմմտ. Մաթ. 6:10):

**« ոչ թէ օրէնքովը»** Մովսեսական Օրենքը դեռ չէր հայտնվել: Այս արտահայտությունը առաջին անգամ դրվեց հունարեն նախադասության մեջ արտահայտելու համար դրա կարևորությունը: Սա շատ կարևոր միտք էր, որը ընդգծում է տարբերությունը մարդկային ջանքի և աստվածային շնորհքի միջև (հմմտ. 3:21-31): Շնորհքը հնացած օրենքը դարձրել էր փրկության ճանապարհ (հմմտ. Եբր. 8:7, 13): Տես Հատուկ Թեմա: Պողոսի կարծիքները Մովսեսական Օրենքի վերաբերյալ 13:9-ում:

**4:14 «եթէ»** Սա ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ, որը ենթադրվում է որպես ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակների համար: պողոսն օգտագործում էր այս սարսափելի/զարմանալի դրույթը իր տրամաբանական փաստարկը անելու համար: Սա ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ լավ օրինակ է օգտագործված հռետորությունն ընդգծելու համար: Նա չէր հավատում, որ այս դրույթը ճիշտ է, սակայն հաստատեց այն ցույց տալու համար դրա ակնհայտ մոլորությունը/սխալը (հմմտ. 2h.):

Ռասայական հրեաները թլպատության տեսանելի նշանով չեն ժառանգի աշխարհը սակայն նրանք ովքեր հավատում են Աստծո կամքին և խոսքին նրանք են ժառանգները Ֆիզիկական թլպատությունը ճշմարիտ նշանը չէ, այլ հավատքը (հմմտ. 2:28-29):

**Արևելահայերեն «հաւատքն ունայն էր»**
**Արևմտահայերեն « հաւատքը փուճ պիտի ըլլար»**

| | |
|---|---|
| **NASB, NKJV** | **“faith is made void”** |
| **NRSV** | **“faith is null”** |
| **TEV** | **“man’s faith means nothing”** |
| **JB** | **“faith becomes pointless”** |

Սա *kenoō* ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, որն ընդգծում է որոշված պայման/վիճակ ուժեղ հունարեն ԲԱՅ-ի, որը նշանակում է «դատարկել,թափվել, դատարկվել», «ցույց տալ, առանց հիմք լինելը », նույնիսկ «կեղծավորություն, նենգություն» (հմմտ. I Կոր. 1:17): Այս տերմինը նաև օգտագործվում է Պողոսի կողմից I Կոր. 1:17; 9:15; II Կոր. 9:3 և Փիլ. 2:7:

**Արևելահայերեն «խոստումունքը կխափանուէր»**

**Արևմտահայերեն « խոստումը պիտի խափանուէր»**

**NASB "the promise is nullified"**
**NKJV "the promise is made of no effect"**
**NRSV "the promise is void"**
**TEV "God's promise is worthless"**
**JB "the promise is worth nothing"**

Սա նույնպես ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, որն ընդգծում է որոշված պայման/վիճակ հունարեն ուժեղ բայի, որը նշանակում է «դատարկել», «վերացնել/չեղյալ հայտարարել», «վերջանալ», և նույնիսկ « կործանել կամ բնաջնջել, ոչնչացնել»: Այս տերմինը նաև օգտագործվում է Պողոսի կողմից Հռ. 3:3,31; 6:6; 7:2,6; I Կոր. 2:6; 13:8; 15:24,26; II Կոր. 3:7; Գաղ. 5:4; II Թես. 2:8. Այս համարում կա բացահայտ զուգահեռականություն: Չկան փրկության երկու ճանապարհ: Շնորհքի նոր ուխտը գործերի հին ուխտը դարձրել է անվավեր: Տես Հատուկ Թեմա; Անվավեր 3:3.

**4:15 «օրենքը. . .օրենք»** Այս տերմինի առաջին օգտագործումը ունի հունարեն ՀՈԴ իսկ երկրորդը չունի: Չնայած, որ վտանգավոր է չափից շատ ուշադրություն գրավել հունարեն ՀՈԴ-ի ներկայությունը կամ բացակայությունը, թվում է թե այս դեպքում օգնել ցույց տալ, որ Պողոսը օգտագործում էր այս տերմինը երկու իմաստով (1) Մովսեսական Օրենքը իր Բանավոր Ավանդույթներով, որտեղ որոշ հրեաներ վստահում էին իրենց փրկությանը և (2) ընդհանուր առմամբ օրենքի գաղափարը: Այս լայնածավալ իմաստը կներգրավի ինքնա-արդար հեթանոսներին, ովքեր համապատասխանում են այս կամ այն մշակույթի էթիկային կամ կրոնական ծեսերին և զգում էին ընդունված աստվածության կողմից հիմնված իրենց գործերի:

**«օրենքը բարկություն է գործում»** Սա ցնցող միտք/դրույթ է (հմմտ. 3:20; Գաղ. 3:10-13; Կող. 2:14): Մովսեսական Օրենքը երբեք չէր նշանակում որպես փրկության ճանապարհ (հմմտ. Գաղ. 3:23-29): Սա շատ ծանր ճշմարտություն էր հասկանալու կամ ընդունելու համար ցանկացած հրեայի

(կամ օրինականի) համար, սակայն սա Պողոսի ապացույցն/փաստարկն է: Տես Հատուկ Թեմա 13:9.

**«որովհետեւ ուր մրէնքը չկայ՝ օրինազանցութիւն էլ չկայ»** Աստված հաշվետու է պահում մարդուն իր ունեցած լույսի համար: Հեթանոսները չեն դատվելու Մովսեսական Օրենքով, որը նրանք երբեք չեն լսել: Նրանք հաշվետու էին բնական/բնության հայտնությանը (հմմտ. 1:19-20; 2:14-15):

Այս ճշմարտությունը մեկ քայլ առաջ է տարվում Պողոսի ապացույցի/փաստարկի մեջ այստեղ: Մինչև Աստված հստակ հայտնեց Մովսեսական Օրենքը, Նա չարձանագրեց մարդու օրինազանցությունները (հմմտ. 3:20,25; 4:15; 5:13,20; 7:5,7-8; Գործք 17:30; I Կոր. 15:56):

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 4:16-25**
[16]Սորա համար հաւատքիցն է, որ շնորհքով լինի. որ խոստմունքը հաստատ լինի
ամեն զաւակի համար, ոչ միայն օրէնքիցը լինողի համար, այլ նորա համար էլ որ
Աբրահամի հաւատքիցն է, որ մեր ամենի հայրն է: [17]Ինչպէս որ էլ գրուած է, թէ Շատ
ազգերի հայր արի քեզ Աստուծոյ առաջին, որին հաւատաց, որ մեռելներին կենդանի
է անում՝ եւ չլինող բաները լինողի պէս է կանչում:[18]Որ առանց յոյսի՝ յոյսով
հաւատացէ թէ շատ ազգերի հայր կլինի. ինչպէս ասուեցաւ՝ թէ Այնպէս պիտի լինի քո
զաւակը: [19]Եւ չտկարացաւ հաւատքով, այսինքն մտիկ չարաւ իր մարմնին որ արդէն
մեռած էր, ինքը իբրեւ հարիւրամեայ լինելով, եւ ոչ էլ Սառայի արգանդի մեռած
լինելուն: [20]Եւ Աստուծոյ խոստմունքի համար չերկմտեց անհաւատութիւնով, այլ
զօրացաւ հաւատքով, եւ Աստուծուն փառք տուաւ: [21] Եւ իր մտքումը համոզուած էր, թէ
նա որ խոստացաւ, կարող է եւ անել: [22]Նորա համար էլ արդարութիւն համարուեցաւ
նորան: [23]Բայց ոչ միայն նորա համար գրուեցաւ թէ նորան համարուեցաւ
արդարութիւն. [24]Այլ մեզ համար էլ, որ մեզ պիտի համարուի, որ հաւատում ենք
նորանէ որ մեր Տէր Յիսուս Քրիստոսին յարութիւն տուաւ մեռելներից. [25] Որ
մատնուեցաւ մեր յանցանքների համար. եւ յարութիւն առաւ մեզ արդարացնելու
համար:

NASB (UPDATED) TEXT: 4:16-25
[16]For this reason it is by faith, in order that it *may be* in accordance with grace, so that
the promise will be guaranteed to all the descendants, not only to those who are of the Law,
but also to those who are of the faith of Abraham, who is the father of us all, [17](as it is
written, "A FATHER OF MANY NATIONS HAVE I MADE YOU") in the presence of Him whom
he believed, *even* God, who gives life to the dead and calls into being that which does not
exist. [18]In hope against hope he believed, so that he might become a father of many
nations according to that which had been spoken, "SO SHALL YOUR DESCENDANTS BE."
[19]Without becoming weak in faith he contemplated his own body, now as good as dead
since he was about a hundred years old, and the deadness of Sarah's womb; [20]yet, with
respect to the promise of God, he did not waver in unbelief but grew strong in faith, giving
glory to God, [21]and being fully assured that what God had promised, He was able also to
perform. [22]Therefore also IT WAS CREDITED TO HIM AS RIGHTEOUSNESS. [23]Now not for his
sake only was it written that it was credited to him, [24]but for our sake also, to whom it will
be credited, as those who believe in Him who raised Jesus our Lord from the dead, *[25]He*
who was delivered over because of our transgressions, and was raised because of our
justification.

ազանքեն

հավատքով; (2) Աստծո շնորհքի խոստում; (3) խոստումը որոշակի էր Աբրահամի բոլոր սերունդների համար (հրեա և հեթանոս), որ ցուցաբերում են հավատք; և (4) Աբրահամը օրինակ էր բոլոի համար ովքեր հավատքից են:

▣ **«խոստացված»** ստորև տես հատուկ թեման

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԵՐԱՇԽԻՔ/ ԽՈՍՏՈՒՄՆԵՐ**

Սա հունարեն *bebaios* տերմինն է, որը ունի երեք լրացուցիչ իմաստներ:

1. որը համոզված, հաստատուն, որոշակի կամ ի վիճակի լինել հավատալու,վստահելու (հմմտ. Հռ. 4:16; II Կոր. 1:7; Եբ. 2:20; 3:6,14; 6:19; II Պետ. 1:10,19):
2. գործընթացը, որով ցույց է տրվում կամ հաստատվում ինչ որ բանի վստահության արժանի լինելը (հմմտ. Հռ. 15:8; Եբր. 2:2, հմմտ. *Լոու և Նիդա, Նոր Կտակարանի հույն- անգլերեն լեքսիկոն,* Հատոր. 1, էջ. 340,377,670):
3. պապիրուսների մեջ այն դարձավ տեխնիկական տերմին իրավական երաշխիքի համար (հմմտ. Մյուլտոն և Միլիգան, *Նոր Կտակարանի հունարեն բառարան The Vocabulary of the Greek New Testament*, էջ. 107-8):

Սա 14հ-ի հակադրույթն է/հակաթեզիս: Աստծո խոստումները հաստատ են:

▣ «ամեն. . .ամենի» Սա վերաբերվում է բոլոր հավատացյալներին (թե հրեաներից և թե հեթանոսներից):

**4:17-23** Պողոսը նորից օգտագործում է Աբրահամին ցույց տալու համար (1) Աստծո նախաձեռնած շնորհքի խոստումներ (ուխտ); և (2) մարդուց պահանջվող սկզբնական հավատք և շարունակական հավատքի պատասխան (ուխտ) նախապատվությունը: (Տես ծանուցում 1:5.) Ուխտը միշտ ներգավում է երկու կողմերի գործողությունը:

**4:17 «Ինչպէս որ էլ գրուած է, թէ Շատ ազգերի հայր»** Սա մեջբերում է Ծնն. 17:5. Սեպտուագինը ( LXX) ունի «Հեթանոսներ»: Աստված միշտ ցանկացել է Ադամի բոլոր զավակների փրկությունը (հմմտ. Ծնն. 3:15), և ոչ միայն Աբրահամի զավակների: Աբրամի նոր անունը՝ Աբրահամ նշանակում է «բազմության հայր»: Այժմ մենք գիտենք, որ այն ներգրավում է ոչ միայն ֆիզիկական սերունդներին այլ նաև հավատքի սերունդներին:

**«որ մեռելներին կենդանի է անում»** Կոնտեքստում սա վերաբերում է Աբրահամի և Սառայի վերածնված/վերականգնված սեռական ուժերին (հմմտ. 19հ.):

«եւ չլինող բաները լինողի պէս է կանչում» Կոնտեքստում սա վերաբերում է Սառայի հղիությանը Իսահակով, բայց այն նաև ցույց է տալիս հավատքի վճռական տեսակետը (հմմտ. Եբր. 11:1):

**4:18**

**Արևելահայերեն «Որ առանց հույսի՝ հույսով հավատաց»**

**Արևմտահայերեն «Որ չյուսացուած բանին՝ յուսով հաւատաց»**

**4:18**

| | |
|---|---|
| **NASB** | **"in hope against hope he believed"** |
| **NKJV** | **"who, contrary to hope, in hope believed"** |
| **NRSV** | **"hoping against hope, he believed"** |
| **TEV** | **"Abraham believed and hoped, even when there was no reason for hoping"** |
| **NJB** | **"Though there seemed no hope, he hoped and believed"** |

Հատուկ թեմա «հույս»-ը գտնվում է 12:12: Տերմինն ունի լայն իմաստային դաշտ: Հարոլդ Կ. Մյուլթոն, *«Վերլուծական հունարեն բառարան, վերահրատարակված» The analytical Greek Lexicon Revised*, էջ 133, թվարկված մի քանի կիրառումներ

1. հիմնական իմաստը, հույս (հմմտ. Հռ. 5:4; Գործք 24:15)
2. հույսի նպատակը (հմմտ. Հռ. 8:24; Գաղ. 5:5)
3. սկզբնաղբյուրի հեղինակը (հմմտ. Կող. 1:27; I Տիմ. 1:1)
4. վստահություն, համարձակություն (հմմտ. I Պետ. 1:21)
5. ապահովություն երաշխիքի հետ (հմմտ. Գործք 2:26; Հռ. 8:20)

Այս կոնտեքստում հույսը օգտագործվում է երկու տարբեր իմաստներով: Հույս մարդու ընդունակության և զորության վրա (հմմտ. 19-21հհ.) ի հակադրություն Աստծո խոստման հույսի (հմմտ. 17հ.):

**4:18**

**Արևելահայերեն «Այնպէս պիտի լինի քո զաւակը»**

**Արևմտահայերեն «Քու սերունդդ այսպէս պիտի ըլլայ»**

| | |
|---|---|
| **NASB, NKJV** | **"So shall your descendants be"** |
| **NRSV** | **"So numerous shall your descendants be"** |
| **TEV** | **"your descendants will be many"** |
| **JB** | **"your descendants will be as many as the stars"** |

Սա մեջբերում է Ծննդ.15:5, որը ընդգծում էր որդու մասին Աբրահամին տված Աստծո

խոստման զրավը (հմմտ.  19-22հհ.):  Հիշեք, որ Իսահակը ծնվեց

1. խոստումից 13 տարի անց
2. այն բանից հետո, երբ Աբրահամը փորձեց Սառային կնության տալ  (2 անգամ, հմմտ. Ծննդ. 12:10-19; 20:1-7)
3. այն բանից հետո, երբ Աբրահամը Հագարից՝Սառայի ծառայից որդի ուներ (հմմտ. Ծննդ. 16:1-16)
4. (4) այն բանից հետո, երբ Սառան (հմմտ. Ծննդ. 18:12) և Աբրահամը (հմմտ. Ծննդ. 17:17) ծիծաղեցին խոստման վրա:

Նրանք չունեին կատարյալ հավատք: Փառք Աստծուն, որ փրկությունը չի պահանջում կատարյալ հավատք, սակայն հատուկ նպատակ (Աստված ՀԿ և Նրա Որդին ՆԿ):

**4:20** Սկզբում Աբրահամը ամբողջությամբ չհասկացավ խոստումը, որ երեխան Սառայից կլինի: Նույնիսկ Աբրահամի հավատքը կատարյալ չէր:  Աստված ընդունում  և գործ է ունենում անկատար հավատքի հետ, որովհետև Նա սիրում է անկատար մարդկանց:

**«չերկմտեց անհաւատութիւնով»** Նույն ԲԱՅ-ը, *diakrinō*, օգտագործում է Հիսուսը Մաք. 21:21; Մարկ. 11:23:  Բոլոր ֆիզիկական պատճառներից ելնելով (հմմտ. 19հ.) Աստծո խոսքը կասկածի ենթարկելու փոխարենը Աբրահամը զորացավ:

Երկու ԲԱՅ-երն էլ 20հ-ում  ԱՕՐԻՍՏ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ պարունակում Աստծո աջակցությունը, բայց Աբրահամը պետք է թույլ տար, որ Աստծո զորությունը ուժ տար իրեն:

**« Աստուծուն փառք տուաւ »** Տես Հատուկ Թեմա 3:23.

**4:21**

**Արևելահայերեն  «Եւ իր մտքումը համոզուած էր»**

**Արևմտահայերեն «Եւ իր մտքին մէջ հաստատ պահեց»**

**4:21**
**NASB** **"being fully assured"**
**NKJV, NRSV "being fully convinced"**
**TEV** **"was absolutely sure"**
**NJB** **"fully convinced"**

Սա  ԱՕՐԻՍՏ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ, որը ցույց է տալիս ամբողջական վստահություն ինչ որ մի բանի  (հմմտ. Ղուկ. 1:1; Կող. 4:12) կամ ինչ որ մեկի հանդեպ (հմմտ.

4:21; 14:5): ԳՈՅԱԿԱՆ-ը օգտագործվում է ամբողջական վստահությամբ Կող. 2:2 և I Թես. 1:5: Այս վստահությունը Աստծո կամքին, խոսքին և զորությանը ունակ է դարձնում մարդկանց՝ գործել հավատքով:

**«թէ նա որ խոստացաւ, կարող է եւ անել»** Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ՉԵԶՈՔ ՍԵՌ (հետաձգել/deponent) ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, որը նշանակում էր մի գործողություն անցյալում հասել է իր վախճանին և արդյուքում ներկա վիճակի մեջ է: Հավատքի էությունն այն է, որ մեկը վստահում է Աստծո էությանն ու խոստումներին (հմմտ. 16:25; Եփ. 3:20; Հուդա 24) և ոչ թե մարդու արաքներին (հմմտ. Ես. 55:11): Հավատքը վստահում է խոստումների Աստծուն (հմմտ. Ես. 55:11), որոնք Նա իրականացնում է (Ծննդ. 12:1-3 և 15:6, 12-21; Եզ. 36:22-36):

**4:22** Սա ակնարկ է Ծննդ.15:6 (հմմտ. 3հ.), որը Պողոսի փաստարկների բանալի աստվածաբանական միտքն է՝ թե ինչպես է Աստված տալիս Իր արդարությունը մեղավոր մարդկանց:

**4:23-25** Հունարենում այս համարները մեկ նախադասություն են: Տեսեք առաջընթացը

1. Աբրահամի համար, 23հ.
2. բոլոր հավատացյալների համար, 24հ.
3. Աստված Հիսուսին հարություն տալով, 24հ.
4. Հիսուս տրվեցավ մեր մեղքերի համար (հմմտ. Հովհ .3:16), Հիսուս հարություն առավ, որ մեր մեղքերը ներվեն (արդարացում), 25հ.:

**4:24** Աբրահամի հավատքը դարձավ օրինակ բոլոր ճշմարիտ սերունդների համար, որին պետք է հետևել: Աբրահամը հավատաց Աստծուն՝ խոստացյալ որդու և սերունդների հետ կապված:Նոր Ուխտի հավատացյալները հավատացին, որ Հիսուս Մեսիան Աստծո բոլոր խոստումների՝տրված ընկած մարդկությանը, իրականացումն է: «զավակ» տերմինը թե եզակի է և թե հոգնակի (որդի, ժողովուրդ):

«հարություն տվեց» նայիր ծանուցում 8:11

**4:25 «Որ մատնուեցաւ մեր յանցանքների համար»** Սա իրավական տերմին էր, որը նշանակում էր « մեկին հանձնել/տալ պատժի համար»: 25հ-ը հոյակապ Քրիստոլոգիական միտք/դրույթ է Սեպտուագինտումի (LXX) Ես. 53:11-12-ի վերցված:

**«յարութիւն առաւ մեզ արդարացնելու համար»** 25հ-ի երկու նախադասությունները զուգահեռներ են (նույն ՆԱԽԴԻՐԸ և երկուսն էլ ԱՕՐԻՍՏ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ են)։ Ֆրենկ Ստեջի թարգմանությունը (*Նոր Կտակարանի Աստվածաբանություն*, էջ 97) «որ մատնուեցաւ մեր յանցանքների համար և յարութիւն առաւ մեզ արդարացնելու համար» որ էլ ավելի լավ է արտացոլում նրա իմաստը։ Այս մեկնաբանությունը/թարգմանությունը ներգրավում է Պողոսի կիրառած «արդարացնել» տերմինի երկու տեսակետերը (1) դատական (իրավական) դիրք/պաշտոն և (2) աստվածահաճո/բարեպաշտ, Քրիստոսանման կյանք։

**ՔՆՆԱՐԿՎՈՂ ՀԱՐՑԵՐ**

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար։ Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո։ Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում։ Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա։

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ։ Սրանք մտածելու տեղիք տվող հարցեր են, և ոչ թե հստակ։

1. Ինչու՞ է Հռոմեացիս գրքի այս բաժինն այսքան կարևոր։
2. Ինչու՞ Պողոսը որպես օրինակ օգտագործեց Աբրահամին և Դավիթին։
3. Սահմանեք հետևյալ բանալի բառերը համաձայն Պողոսի կիրառման (ոչ ձեր սահմանումը)։
   ա. «արդարություն»
   բ. «համարվել»
   գ. «հավատք»
   դ. «խոստում»
4. Ինչու՞ էր թլպատությունն այնքան կարևոր հրեաների համար (9-12 հհ.)
5. Ու՞մ է վերաբերում 13 և 16հհ. «զավակ/ժառանգ» բառը։

# ԹՈՒՂԹ ՈՒՂՂՎԱԾ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

## ԳԼՈՒԽ 5

| ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ | | | | |
|---|---|---|---|---|
| **UBS[4]** | **NKJV** | **NRSV** | **TEV** | **JB** |
| Արդարացման արդյունքները | Հավատքի հաղթանակները նեղության մեջ | Արդարացման հետևանքները | Ուղիղ Աստծո հետ | Հավատքը երաշխավորում է փրկություն |
| 5:1-11 | 5:1-5 | 5:1-5 | 5:1-5 | 5:1-11 |
| | Քրիստոսը մեր փոխարեն | | | |
| | 5:6-11 | 5:6-11 | 5:6-11 | |
| Ադամ և Քրիստոս | Մահ Ադամով Կյանք Քրիստոսով | Ադամ և Քրիստոս; Նմանություն և հակասություն | Ադամ և Քրիստոս | Ադամ և Հիսուս Քրիստոս |
| 5:12-14 | 5:12-21 | 5:12-14 | 5:12-14 | 5:12-14 |
| | | | 5:14-17 | |
| 5:15-21 | | 5:15-17 | | 5:15-21 |
| | | 5:18-21 | 5:18-19 | |
| | | | 5:20-21 | |

**ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ** (տես էջ **vii**)

*Հետևել բուն հեղինակի մտադրությանը պարբերությունների մակարդակով*

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Մեկ շնչով կարդացեք այս գլուխը: Ճանաչիր թեմաները: Համեմատիր քո թեմայի բաժանումները վերը նշված 5 թարգմանությունների հետ: Բաժանումները ներշնչված չեն, բայց դա բանալի է հետևելու բուն հեղինակի մտադրությանը, որը մեկնաբանության սիրտն է:

Յուրաքանչյուր պարբերություն ունի մեկ և միայն մեկ թեմա:

1. Առաջին պարբերություն
2. Երկրորդ պարբերություն
3. Երրորդ պարբերություն
4. և այլն

## ԿՈՐՏԵՔՍՏԱՅԻՆ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ

Ա. 1-11հհ. հունարենում մեկ նախադասությունը: Դրանք զարգացնում են Պողոսի «Հավատքով Արդարացում» հիմնական գաղափարը (հմմտ. 3:21-4:25):

Բ. 1-11հհ. հնարավոր ուրվագծերը:

| 1-5 համարներ | 6-8 համարներ | 9-11 համարներ |
|---|---|---|
| Փրկության օգուտները /շահերը | Հիմքեր փրկության համար | Փրկության վստահություն |
| Արդարացման սուբյեկտիվ դեպքերը | Արդարացման օբյեկտիվ փաստերը | Փրկության վստահություն |
| Արդարացում | Առաջընթաց սրբացում | Փառավորում |
| Մարդաբանություն | Աստվածաբանություն | Վախճանաբանություն |

Գ. 12-21հհ. քննարկում են Հիսուսի որպես երկրորդ Ադամ լինելը (հմմտ. I Կոր. 15:21-22, 45-49; Փիլ. 2:6-8): Այն տալիս է շեշտադրություն թե անձնական մեղքի և թե ընդհանուր հանցանքի աստվածաբանական գաղափարին: Պողոսի զարգացումը/հանդես բերելը մարդկության (և արարչագործության) մեղանչելը Ադամով այնքան եզակի ու տարբեր էր ռաբբիներից, այնինչ նրա մամնավորության տեսակետը շատ էր կապվում ռաբբիական ուսմունքի հետ: Այն ցույց է տալիս Պողոսի կարողությունը ներշնչանքի ներքո կիրառել կամ ավելացնել այն ճշմարտությունները, որը նա սովորել է Երուսաղեմում Գամաղիելի մոտ ուսանելու ժամանակ (հմմտ. Գործք 22:3):

Բարեփոխված Ավետարանական վարդապետությունը բուն մեղքի մասին Ծնեդ. 3 զարգացվել/երևան էր հանվել Օգոստինոսի և Կալվինի կողմից: Սա հիմնականում

հաստատում է, որ մարդիկ մեղավոր են ծնվում (ամբողջական կորուստ): Հաճախ Սաղ. 51:5; 58:3; և Հոբ 15:14; 25:4 օգտագործվում են որպես Հին Կտակարանի ապացուցող-տեքստեր: Ընդմիջվող/փոխադարձ աստվածաբանական դիրքն այն է, որ մարդիկ աստիճանաբար սաստկացող բարոյապես և հոգևորապես պատասխանատու են իրենց սեփական ընտրության համար և վիճակը զարգացվեց Պելագուսի և Արմինյուսի կողմից: Կա մի քանի ապացույց նրանց տեսակետի համար 2 Օրին. 1:39; Ես. 7:15; և Հովնան 4:11; Հովh. 9:41; 15:22,24; Գործք 17:30; Հռ. 4:15: Այս աստվածաբանական դիրքի հարձակումը հետևյալն է, որ երեխաները անմեղ են մինչև իրենց բարոյական պատասխանատվության տարիքը (ռաբբիների համար սա 13տ. տղաների կամ 12տ աղջիկների համար էր):

Կա միջանկյալ դիրք, որտեղ թե բնածին չար հակումը և թե բարոյական պատասխանատվության տարիքը երկուսն էլ ճիշտ են: Չարը ոչ միայն ընդհանուր է, այլ նաև, անհատի եսի զարգացող չար հակում դեպի մեղքը (կյանքը առաջ ընթանալով ավելի ու ավելի է հեռանում Աստծուց): Մարդկության չարությունը չէ հարցը (հմմտ. Ծննդ. 6:5,11-12,13; Հռ. 3:9-18,23), այլ երբը, ծննդով թե ավելի ուշ կյանքում:

Դ. Եղել են մի քանի թեորիաներ 12h-ի ենթադրությունների մասին;

1. բոլոր մարդիկ մահանում են, որովհետև բոլոր մարդիկ մեղք են գործում (Պելագուս),
2. Ադամի մեղքը ազդեց ամբողջ արարչագործության վրա և ուստի բոլորը մահանում են ( 18-19hh., Օգոստինոս),
3. իրականում հավանական է, որ դա սկզբնական/բուն մեղքի և սեփական մեղքի միացությունն է:

Ե. Պողոսի համեմատությունը «ինչպես» սկսեց 12h. և չի ավարտվում մինչև 18h.: 13-17hh. միջանկյալ բառ/միջախաղի ձև է, որն այնքան բնորոշ է Պողոսի գրվածքներին:

Զ. Հիշիր թե ինչպես է Պողոսը ներկայացնում ավետարանը, 1:18-8:39 մեկ երկարատև փաստարկ է: Ամբողջը պետք է երևա, որպեսզի պատշաճ կերպով մեկնաբանվի և գնահատվի բաժինները/մասերը:

Է. Մարտին Լյութերն ասել է 5-րդ գլխի մասին, «Ամբողջ Աստվածաշնչում դժվար թե կա մի գլուխ, որը կարող է հավասարվել այս հաղթական տեքստին»:

**ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ**

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 5:1-5**
[1]Արդ մենք՝ հաւատքով արդարացած լինելով Աստուծոյ հետ խաղաղութիւն ունինք՝ մեր Տէր
Յիսուս Քրիստոսի ձեռովը: [2]Որով ընդունեցինք հաւատքով այս շնորհքի մէջ մտնելն էլ, որ
նորանում կանգնած ենք, եւ պարծենում ենք Աստուծոյ փառքի յոյսովը: [3]Եւ ոչ միայն
այսքան, այլ նեղութիւնների մէջ էլ պարծենում ենք. գիտենալով որ նեղութիւնը համբերութիւն
է գործում, [4]Համբերութիւնը՝ փորձառութիւն, փորձառութիւնը՝ յոյս. [5] Յոյսն էլ չէ ամաչեցնում.
որովհետեւ Աստուծոյ սէրը փռուած է մեր սրտերի մէջ Սուրբ Հոգու ձեռովը՝ որ տրուեցաւ
մեզ:

**NASB (UPDATED) TEXT: 5:1-5**
**[1]Therefore, having been justified by faith, we have peace with God through our Lord Jesus Christ,**
**[2]through whom also we have obtained our introduction by faith into this grace in which we stand;**
**and we exult in hope of the glory of God. [3]And not only this, but we also exult in our tribulations,**
**knowing that tribulation brings about perseverance; [4]and perseverance, proven character; and**
**proven character, hope; [5]and hope does not disappoint, because the love of God has been poured**
**out within our hearts through the Holy Spirit who was given to us.**

**5:1** «Արդ» Այս բառը հաճախ ազդանշան էր տալիս (1) աստվածաբանական փաստարկի ամփոփումը մինչև այս պահը; (2) եզրակացություններ հիմնված այս աստվածաբանական ներկայացման վրա; և (3) նոր ճշմարտության ներկայացում (հմմտ. 5:1; 8:1; 12:1):

▣ «արդարացած լինելով» Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ է; Աստված արդարացրել է հավատացյալներին: Հունարեն նախադասության մեջ (հh. 1-2) այս արտահայտությունը տեղադրված է սկզբում միտքն ավելի ընդգծելու համար: 1-11hh-ում թվում է թե կա ժամանակի համաձայնեցում; (1) hh. 1-5, մեր ընթացիկ շնորհքի փորձառությունը մեր կյանքում; (2) hh. 6-8, Քրիստոսի կատարած և ավարտած գործը ի օգուտ մեզ; և (3) hh. 9-11, մեր ապագա հույսը և փրկության վստահությունը:

«արդարացված» (*dikaioō*) բառի հինկտակարանային արմատը «ուղիղ եզր, սահման» կամ «չափող եղեգ» էր նշանակում: Այն դարձավ փոխաբերություն և օգտագործվեց Աստծո համար: Աստծո կերպարը, սրբությունը ահա սա է դատաստանի միակ չափանիշը (հմմտ. LXX of Ղև. 24:22; և աստվածաբանորեն Մաթ. 5:48): Հիսուսի զոհաբերական, փոխանող մահվան շնորհիվ հավատացյալներն ունեն օրինական (դատական) դիրք Աստծո առաջ (տես ծանուցում 5:2): Բայց սա չի նշանակում, որ հավատացյալի հանցանքը քիչ է, այլ սա ավելի նման է

ներման/ամնիստիայի: Ինչ որ մեկը վճարել է պատժի գինը (հմմտ. II Կոր. 5:21): Հավատացյալները ներված են հռչակվել:

▣ **«հաւատքով»** Հավատքն այն ձեռքն է, որն ընդունում է Աստծո պարգևը (հմմտ. 2հ.; Հռ. 4:1): Հավատքը չի կենտրոնանում հավատացյալի աստիճանի կամ նվիրվածության կամ վճռականության (հմմտ. Մաթ. 17:20), այլ Աստծո կերպարի և խոստումների վրա (հմմտ. Եփ. 2:8-9): Հին Կտակարանի «հավատք» բառը բնագրում վերաբերում էր հաստատ կանգնած մնալուն: Այն կարող է օգտագործվել փոխաբերականորեն մեկի համար, որը հավատարիմ էր, հուսալի և վստահելի: Հավատքը չի կենտրոնանում մեր հավատարմության կամ արժանի լինելու վրա, այլ Աստծո:

▣ **«խաղաղութիւն ունինք»** Այստեղ հունարեն ձեռագրի տարբերակն է: Այս ԲԱՅ-ը կամ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է (*echōmen*) կամ էլ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ (*echomen*): Այս նույն քերականական անորոշությունը գտնվում է հհ. 1, 2 և 3: Հին հունարեն ձեռագրերը հակված են ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ-ի տարբերակին (հմմտ. MSS א*, A, B*, C, D): Եթե այն ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ-ով է ապա արտահայտությունը պետք է թարգմանվի այսպես «եկեք շարունակենք վայելել խաղաղությունը» կամ «շարունակենք վայելել խաղաղությունը»: Իսկ եթե սա ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ-ով է, ապա պետք է թարգմանվի «մենք ունենք խաղաղություն»: 1-11 հհ. կոնտեքստը ցույց է տալիս, որ սա քարոզ չէ կամ կոչ, այլ հռչակում այն բանի, ինչ արդեն ունեն հավատացյալներ Քրիստոսով: Ուստի ԲԱՅ-ը հավանական է ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է «մենք ունենք խաղաղություն»: USB[4] թարգմանությունը այս տարբերակը հաշվում է որպես “A” (հավանական):

Մեր ունեցած հին հունարեն ձեռագրերից շատերն այսպես են ստեղծվել, մեկը կարդացել է տեքստը, իսկ մի քանի հոգի լսելով գրել են: Այդ իսկ պատճառով բառերը, որոնք նույն ձևով են հնչել, շատ անգամ շփոթել են: Այսպիսի դեպքերում կոնտեքստը, և երբեմն հեղինակի գրելաոճը և օգտագործված բառապաշարն օգնում է թարգմանչին ճիշտ որոշում կայացնել:

▣ «խաղաղութիւն » Տես Հատուկ Թեմա ներքևում

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ**

Բնագրում հունարեն այս տերմինը նշանակում էր «միասին կապել այն, ինչը կտրված էր» (հմմտ. Հովհ. 14:27; 16:33; Փիլ. 4:7): Նոր Կտակարանում խոսվում է խաղաղության երեք իմաստների մասին

1. որպես օբյեկտիվ կողմ, մեր խաղաղությունը Աստծո հետ Քրիստոսի միջոցով (հմմտ. Կող. 1:20)
2. որպես սուբյեկտիվ կողմը մեր ուղիղ լինելը Աստծո առաջ (հմմտ. Հովհ. 14:27; 16:33; Փիլ. 4:7)
3. որ Աստված միավորել է մեկ նոր մարմնում, Հիսուս Քրիստոսի միջոցով, թե հավատացյալ հրեաներին և թե հույներին (հմմտ. Եփ. 2:14-17; Կող. 3:15):

«Խաղաղություն» բառի հետ կապված կա լավ մեկնաբանություն Նյումանի և Նիդայի գրքում «Թարգմանիչի տեղեկատու/ձեռնարկ Newman and Nida, *A Translator's Handbook on Paul's Letter to the Romans*, p. 92:

«Թե Հին և թե Նոր Կտակարանում «խաղաղություն» բառը ունի շատ լայն իմաստային նշանակություն: Հիմնականում այն նկարագրում է մարդկային կյանքի բարեկեցությունը; սա նաև ընդեգրվեց հրեաների կողմից որպես ողջույնի ձև: Այս բառն ուներ այնքան խորը իմաստ, որ կարող էր օգտագործվել նաև հրեաների կողմից՝ Մեսիական փրկությունը նկարագրելու համար: Այդ իսկ պատճառով եղել են ժամանակներ, երբ այն նաև օգտագործվել է որպես հոմանիշ «Աստծո հետ ճիշտ հարաբերություն ունենալ» տերմինի: Այստեղ տերմինը հանդես է գալիս որպես ներդաշնակ հարաբերության նկարագրություն՝ հաստատված մարդու և Աստծո միջև ընկած այն հիմքի վրա, որ Աստված մարդուն Իր առջև արդար կանգնեցրեց»:

▣ **«Աստուծոյ հետ մեր Տէր Յիսուս Քրիստոսի ձեռովը»** Հիսուսն է, որ խաղաղություն է բերում Աստծո հետ: Նա է միակ խաղաղության ճանապարհն Աստծո հետ (հմմտ. Հովհ. 10:7-8; 14:6; Գործք 4:12; I Տիմ. 2:5): Ինչ վերաբերվում է «Հիսուս Քրիստոս» անվան իմաստի հետ նայիր ծանուցում 1:4:

**5:2 «Որով ընդունենցինք …. մտնելն էլ»** Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ-ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ; սա խոսում է այն մասին, որ գործողությունը կատարվել է անցյալում, իսկ արդյունքը շարունակում է տեղ գտնել նաև ներկայում: «Մտնել» տերմինը բառացի նշանակում էր «մուտքի իրավունք» կամ «թույլատրել, մուտք» (*prosagōge*, հմմտ. Եփ. 2:18; 3:12):

Փոխաբերականորեն այն օգտագործվում էր որպես (1) անձնապես ներկայացվել թագավորական իշխանությանը կամ (2) ապահով նավահանգիստ բերվել/հասցվել:

Այս արտահայտությունը պարունակում է հունարեն ձեռագրի թարգմանության տարբերակ: Որոշ վաղ ձեռագրեր ավելացրել են «հավատքով» բառը (հմմտ. ℵ[*,2], C ինչպես նաև որոշ հին լատիներեն, Վուլգատը, սիրիական և Ղպտի տարբերակները): Ուրիշ ձեռագրերում «հավատքով» բառին նաև ավելացված է ՆԱԽԴԻՐ (հմմտ. ℵ[1], A, և մի քանի Վուլգատի տարբերակներ): Ինչևէ, երկաթագիր ձեռագրերում B, D, F, և G բացակայում է թե նա և թե սա: Թվում է, թե դպիրները պարզապես այս արտահայտությունը դրել են որպես զուգահեռ 5:1 և 4:16 (երկու անգամ), 19, և 20: «Հավատքով» սա մի թեմա է որին մշտապես անդրադառնում է Պողոս առաքյալը:

▣ **«այս շնորհքի մեջ»** Այս տերմինը (*charis*) նշանակում է Աստծո անարժան, առանց ինչ որ պայմանի սեր մարդու հանդեպ, որը երբեք արժանի չի եղել դրան (հմմտ. Եփ. 2:4-9): Սա հստակ երևում է Քրիստոսի մահվան մեջ ի օգուտ մեղավոր մարդկության (հմմտ. 8հ.):

▣ **«որ նորանում կանգնած ենք»** Սա մեկ ուրիշ ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ; բառացի «մենք կանգնած ենք և շարունակում ենք կանգնել»: Սա անդրադարձնում է հավատացյալների աստվածաբանական դիրքը Քրիստոսում և իրենց կատարումը մնալ հավատքի մեջ, որը միացնում է Աստծո սուվերենության աստվածաբանական պարադոքսը (հմմտ. I Կոր. 15:1) և մարդու ազատ կամքը (հմմտ. Եփ. 6:11, 13,14):

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԿԱՆԳՆԵԼ** (*HIST·MI*)

Այս հասարակ տերմինը օգտագործվում է մի քանի աստվածաբանական իմաստներով Նոր Կտակարանում

1. հաստատել
   ա. Հին Կտակարանի Օրենքը, Հռ. 3:31
   բ. որևէ մեկի արդարությունը, Հռ. 10:3
   գ. նոր ուխտը, Եբր. 10:9
   դ. ղեկավարություն/խնամք, II Կոր. 13:1
   ե. Աստծո ճշմարտությունը, II Տիմ. 2:19
2. հոգևորապես դեմ կենալ/դիմադրել
   ա. չարը, Եփ. 6:11
   բ. դատաստանի օրը, Հայտ. 6:17
3. դիմադրել՝ կանգնելով ինչ որ մեկի տեսակետի վրա

ա. ռազմական փոխաբերություն, Եփ. 6:14

բ. քաղաքացիական փոխաբերություն, Հռ. 14:4

4. դիրք ճշմարտության մեջ, Հովh. 8:44
5. դիրք շնորհքի մեջ

ա. Հռ. 5:2

բ. I Կոր. 15:1

գ. I Պետ. 5:12

6. դիրք հավատքի մեջ

ա. Հռ. 11:20

բ. I Կոր. 7:37

գ. I Կոր. 15:1

դ. II Կոր. 1:24

7. ամբարտավանության դիրք, I Կոր. 10:12

Այս տերմինը արտահայտում է թե շնորհքի ուխտը և թե սուվերեն Աստծո ողորմածությունը և այն փաստը, որ հավատացյալները պետք է արձագանքեն դրան և կառչել դրանից հավատքով: Երկուսն էլ աստվածաշնչյան ճշմարտություններ են: Դրանք պետք է միասին վերցնել:

▣ **«պարծենում ենք/հրճվել»** Այս քերականական ձևը կարող է հասկացվել որպես (1) ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՉԵԶՈՔ ՍԵՌ (deponent) ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, «մենք հրճվում ենք/պարծենում» կամ (2) ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՉԵԶՈՔ ՍԵՌ (deponent) ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, «եկեք հրճվենք/պարծենանք»: Գիտնականները բաժանվում են այս տարբերակների միջև: Եթե մեկը վերցնում է «մենք ունենք» 1h-ում որպես ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, ուրեմն թարգմանությունը պետք է համատեղվի/հաստատվի 3h. միջոցով:

Բառի արմատը «հրճվել» «պարծենալն» է (NRSV, JB): Տես Հատուկ Թեմա 2:17: Հավատացյալները չեն հրճվում/պարծենում իրենք իրենցով (հմմտ. 3:27), այլ այն բանով, ինչ Տերն արել է նրանց համար (հմմտ. Եր. 9:23-24): Այս նույն հունարեն արմատը կրկնվում է 3 և 11hh..

▣ **«հույսով»** Պողոսը հաճախ օգտագործում էր այս տերմինը մի քանի տարբեր բայց իրար հետ կապված իմաստներով: Տես ծանուցում 4:18: Հաճախ այն զուգորդվում էր/միավորվում էր հավատացյալի հավատքի իրագործման/վախճանի հետ: Սա կարող է արտահայտվել որպես

փառք, հավիտենական կյանք, վերջնական փրկություն, Երկրորդ Գալուստ և այլն: Վախճանը/իրականացումը անտարակուսելի է, բայց ժամանակի տարրը գալիքում է և անհայտ: Այն հաճախ զուգորդվում էր/միավորվում էր «հավատք» և «սիրո» հետ (հմմտ. I Կոր. 13:13; Գաղ. 5:5-6; Եփ. 4:2-5; I Թես. 1:3; 5:8); Պողոսի մի քանի կիրառման մասնակի ցանկը .

1. Երկրորդ Գալուստը, Գաղ. 5:5; Եփ. 1:18; Տիտոս 2:13
2. Հիսուս մեր հույսն է, I Տիմ.1:1
3. Հավատացյալը ներկայացվում է Աստծո առաջ, Կող. 1:22-23; I Թես. 2:19
4. Հույսը պահվում է/դիզվում է երկնքում, Կող. 1:5
5. Վերջնական փրկություն, I Թես. 4:13
6. Աստծո փառքը, Հռ. 5:2; II Կոր. 3:12; Կող. 1:27
7. Քրիստոսով հեթանոսների փրկությունը, Կող. 1:27
8. Փրկության վստահություն, I Թես. 5:8-9
9. Հավիտենական կյանք, Տիտոս 1:2; 3:7
10. Քրիստոնեական հասունության արդյունքները, Հռ. 5:2-5
11. Ամբողջ արարչագործության ազատագրումը, Հռ. 8:20-22
12. Անուն/տիտղոս Աստծո համար, Հռ. 15:13
13. Որդեգրության ավարտում, Հռ. 8:23-25
14. Հին Կտակարանը որպես ուղեցույց Նոր Կտակարանի հավատացյալների համար, Հռ. 15:4
15. Պողոսի փափագը բոլոր հավատացյալների համար, I Կոր. 1:7

▣ **«Աստուծոյ փառքը»** Սա վերաբերում էր հավատացյալներին որոնք կանգնած են Աստծո առաջ հավատքով արդարացած Հիսուսի կողմից Հարության Օրը (հմմտ. II Կոր. 5:21): Սա հաճախ կոչվում է աստվածաբանական «փառավորում» տերմինով (հմմտ. vv. 9-10; 8:30): Հավատացյալները կբաժնեկցեն Հիսուսի նմանությանը (հմմտ. I Հովh. 3:2; II Պետ. 1:4): Տես Հատուկ Թեմա: Փառք 3:23:

**Արևելահայերեն «Եւ ոչ միայն այսքան, այլ»**
**Արևմտահայերեն «Ոչ միայն այսքան, հապա»**

**5:3**
**NASB "and not only this, but"**
**NKJV "and not only *that*, but"**
**NRSV "and not only that, but"**

TEV –omit–
NJB "not only that"

Պողոսն օգտագործում է տերմինների այս միացությունը մի քանի անգամ (հմմտ. 5:3,11; 8:23; 9:10, և II Կոր. 8:19):

**Արևելահայերեն «նեղութիւնների մէջ էլ պարծենում ենք.»**

**Արևմտահայերեն « նաեւ նեղութիւններու մէջ կը պարծինք»**

▣

**NASB "we also exult in our tribulations"**
**NKJV "we also glory in tribulations"**
**NRSV "we also boast in our sufferings"**
**TEV "we also boast in our troubles"**
**NJB "let us exult, too, in our hardships"**

Եթե աշխարհն ատեց Հիսուսին, այն կատի նաև Իր հետևորդներին (հմմտ. Մաթ. 10:22; 24:9; Հովհ. 15:18-21): Հիսուսը հասունացավ/կատարելության հասավ,մարդկայնորեն ասած, այն բաներով որով Նա տառապեց (հմմտ. Եբ. 5:8): Տառապանքը բերում է արդարություն, որը Աստծո ծրագիրն է ամեն մեկ հավատացյալի համար (հմմտ. 8:17-19; Գործք 14:22; Հակ. 1:2-4; I Պետ. 4:12-19):

▣ **«գիտենալով»** Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ ԴԵՐԲԱՅ է "*oida.*" Սա ժամանակով ՎԱՂԱԿԱՏԱՐ է, սակայն գործում է որպես ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ: Հավատացյալների հասկացողությունը ավետարանի ճշմարտությունների վերաբերյալ՝ կապված տառապանքի հետ, թույլ է տալիս նրանց նայել կյանքին ուրախությամբ և վստահությամբ, որը կախված չէ հանգամանքներից, նույնիսկ հալածանքի ժամանակ (հմմտ. Փիլ. 4:4; I Թես. 5:16,18):

**5:3,4 «համբերութիւն»** Այս տերմինը նշանակում է «հոժարակամ/հիտումնավոր», «ակտիվ/եռանդուն», «կայուն/անսասան», «համբերատարություն/դիմացկունություն»: Սա այն տերմինն էր, որը վերաբերում էր թե համբերություն մարդկանց հետ և թե նաև հանգամանքների հետ:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՆԵՂՈՒԹՅՈՒՆ**

Պետք է որ աստվածաբանական տարբերություն լինի այս տերմինի (*thlipsis*) Պողոսի օգտագործման և Հովհաննեսի միջև:

1. Պողոսի կիրառումը (որը արտացոլում է Հիսուսի կիրառումը)

ա. խնդիրներ, տառապանքներ, չարը ներգրավված է մեղավոր/ընկած աշխարհում

(1) Մաք. 13:21

(2) Հռ. 5:3

(3) I Կոր. 7:28

(4) II Կոր. 7:4

(5) Եփ. 3:13

բ. խնդիրներ, տառապանքներ, չարիք պատճառվածանհավատների կողմից

(1) Հռ. 5:3; 8:35; 12:12

(2) II Կոր. 1:4,8; 6:4; 7:4; 8:2,13

(3) Եփ. 3:13

(4) Փիլ. 4:14

(5) I Թես. 1:6

(6) II Թես. 1:4

գ. խնդիրներ, տառապանքներ, վերջին ժամանակի չարը

(1) Մաք. 24:21,29

(2) Մարկ. 13:19,24

(3) II Թես. 1:6

2. Հովհաննեսի կիրառումը

Ա. Հովհաննեսը դնում է ուրույն տարբերություն *thlipsis* և *orgē* կամ *thumos* (բարկություն) միջև Հայտնության գրքում: *Thlipsis* այն է, ինչ անհավատներն անում են հավատացյալներին իսկ *orgē* այն է ինչ Աստված է անում անհավատներին:

(1) *thlipsis* – Հայտ. 1:9; 2:9-10,22; 7:14

(2) *orgē* – Հայտ. 6:16-17; 11:18; 16:19; 19:15

(3) *thumos* – Հայտ. 12:12; 14:8,10,19; 15:2,7; 16:1; 18:3

Բ. Հովհաննեսը նաև օգտագործում է տերմինը իր Ավետարանում արտացոլելով այն խնդիրները, որ հավատացյալներն հանդիպում էին ամեն ժամանակ– Հովհ. 16:33

**5:4**

**Արևելահայերեն «փորձառութիւն»**

**Արևմտահայերեն «փորձառութիւն»**

**5:4**

**NASB "proven character"**

**NKJV, NRSV "character"**

**TEV** **"God's approval"**
**NJB** **"tested character"**

LXX-ի մեջ Ծննդ. 23:16; 3 Թագ. 10:18; I Մնաց. 28:18 այս տերմինը օգտագործվում էր մետաղների մաքրությունը և իսկականը փորձելու համար (հմմտ. II Կոր. 2:9; 8:2; 9:13; 13:3; Փիլ. 2:22; II Տիմ. 2:15; Հակոբոս 1:12): Աստծո փորձարկումները ուժեղանալու համար (հմմտ. Եբր. 12:10-11): Տես Հատուկ Թեմա: Փորձել 2:18.

**5:5 «որովհետեւ Աստուծոյ սէրը փռուած է մեր սրտերի մէջ»** Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, բառացիորեն, «Աստծո սերը եղել և շարունակվում է թափվել»: Այս ԲԱՅ-ը հաճախ օգտագործվել է Սուրբ Հոգու համար (հմմտ. Գործք 2:17,18,33; 10:45 և Տիտոս 3:6), որը կարող է արտացոլել Հովել 2:28-29:

ՍԵՌԱԿԱՆ ՀՈԼՈՎՈՎ «Աստծո սերը» արտահայտությունը, քերականորեն կարող է վերաբերել (1) մեր սերը Աստծո հանդեպ; կամ (2) Աստծո սերը մեր հանդեպ (հմմտ. II Կոր. 5:14): Երկրորդը միակ կոնտեքստուալ տարբերակն է:

**«Սուրբ Հոգու ձեռովը՝ որ տրուեցաւ մեզ»** Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ: Հաճախ օգտագործվում է ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ արտահայտելու համար Աստծո աջակցությունը/միջնորդությունը: Սա նշանակում է, որ հավատացյալները կարիք չունեն ավելին Հոգուց: Կամ նրանք ունեն Հոգին կամ էլ նրանք քրիստոնեաներ չեն (հմմտ. 8:9): Սուրբ Հոգու տրվելը Նոր Դարի նշանն էր (հմմտ. Հովել 2:28-29), Նոր Ուխտը (հմմտ. Եր. 31:31-34; Եզ. 36:22-32):

Այս բաժնում տես Երրորդության երեք անձերի ներկայությունը

1. Աստված, 1,2,5,8,10հհ.
2. Հիսուս, 1,6,8,9,10հհ.
3. Հոգին, 5հ.

Տես Հատուկ Թեմա: Երրորդությունը 8:11.

## Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 5:6-11

[6]Որովհետեւ երբոր մենք դեռ տկար էինք՝ Քրիստոսը մեզ համար իր ժամանակումն ամբարիշտների տեղ մեռաւ: [7]Վասնզի հազիւ թէ մի արդարի համար մէկը մեռնի. (բայց մի բարի մարդի համար իցէ թէ մէկը համարձակի մեռնիլ.) [8]Բայց Աստուած յայտնեց իր սէրը դէպի մեզ, որ՝ երբոր մենք դեռ մեղաւոր էինք, Քրիստոսը մեզ համար մեռաւ.[9] Ապա ո՞րքան աւելի հիմա, որ արդարացանք նորա արիւնովը կփրկուինք նորանով բարկութիւնիցը: [10]Որովհետեւ թէ որ դեռ թշնամի էինք, Աստուծոյ հետ հաշտուեցանք նորա Որդու մահովը, ո՞րքան աւելի որ հաշտուած

ենք, կապրինք նորա կեանքովը: [11]Եւ ոչ միայն այսքան. այլ Աստուծով էլ պարծենում ենք՝ մեր Տէր Յիսուս Քրիստոսի ձեռովը, որով հիմա հաշտութիւնն ընդունեցինք:

NASB (UPDATED) TEXT: 5:6-11

[6]For while we were still helpless, at the right time Christ died for the ungodly. [7]For one will hardly die for a righteous man; though perhaps for the good man someone would dare even to die. [8]But God demonstrates His own love toward us, in that while we were yet sinners, Christ died for us. [9]Much more then, having now been justified by His blood, we shall be saved from the wrath *of God* through Him. [10]For if while we were enemies we were reconciled to God through the death of His Son, much more, having been reconciled, we shall be saved by His life. [11]And not only this, but we also exult in God through our Lord Jesus Christ, through whom we have now received the reconciliation.

5:6

**Արևելահայերեն «Որովհետեւ երբոր մենք դեռ տկար էինք»**

**Արևմտահայերեն « Վասնզի երբ մենք դեռ տկար էինք »**

5:6

| | |
|---|---|
| NASB | "for while we were still helpless" |
| NKJV | "for when we were still without strength" |
| NRSV | "for while we were still weak" |
| TEV | "for when we were still helpless" |
| NJB | "when we were still helpless" |

Այս արտահայտության մեջ ԲԱՅ-ը ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ԴԵՐԲԱՅ է: Այսբառերի իմաստը վերաբերում էր ընկած/մեղավոր մարդկության Ադամական բնությանը: Մարդիկ անզոր են մեղքի դեմ: «Մենք» դերանունը բացատրում և զուգահեռ է տանում համեմատական ԳՈՅԱԿԱՆ-ների հետ հ. 6 «ամբարիշտ», հ. 8 «մեղավորներ» և հ. 10 «թշնամիներ»: 6 և 8հհ. աստվածաբանորեն և կառուցվածքով զուգահեռ են:

**Արևելահայերեն «իր ժամանակումն»**

**Արևմտահայերեն «յարմար ժամանակին»**

▣

| | |
|---|---|
| NASB, NRSV | "at the right time" |
| NKJV | "in due time" |
| TEV | "at the time that God chose" |
| JB | "at his appointed moment" |

Պատմական առումով սա կարող էր վերաբերել (1) Հռոմեական կայսրության մեջ տիրող խաղաղ իրավիրճակին, որը թույլ էր տալիս ազատ ճամփորդել; (2) Հունարեն լեզվին, որը հաղորդակցության միջոցն էր միջմշակույթների միջև; և (3) Հունա-հռոմեական աստվածների նախկին ազդեցիկ դիրքի վախճանին, որը մարդկանց մեջ հոգևոր կարիք սոված էր բերել

աշխարհում (հմմտ. Մարկ. 1:15; Գաղ. 4:4; Եփ. 1:10; Տիտ. 1:3): Աստվածաբանորեն մարմնացումը պլանավորված, աստվածային իրադարձություն էր (հմմտ. Ղուկ. 22:22; Գործք 2:23; 3:18; 4:28; Եփ. 1:11):

**5:6,8,10 «ամբարիշտների տեղ մեռաւ»** Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է: Սա ստիպում է նայել Հիսուս Քրիստոսի կյանքին ու մահվանը որպես միավորված/մեկ իրադարձություն: «Հիսուս վճարեց պարտքը, որը Իրենը չէր և մենք էինք պարտք, որը չէինք կարող վճարել» (հմմտ. Գաղ. 3:13; I Հովհ. 4:10):

Քրիստոսի մահը հաճախակի հանդիպող թեման է Պողոսի գրվածքներում: Նա օգտագործում էր մի քանի տարբեր տերմիններ և արտահայտություններ, երբ խոսում էր Հիսուսի փոխանորդ մահվան մասին:

1. «արյուն» (հմմտ. 3:25; 5:9; I Կոր. 11:25,27; Եփ. 1:7; 2:13; Կող. 1:20)
2. «Իր անձը տվեց» (հմմտ. Եփ. 5:2,25)
3. "մատնվեցավ» (հմմտ. Հռ. 4:25; 8:32)
4. «զոհ, զոհաբերել» (հմմտ. I Կորն. 5:7)
5. «մեռավ» (հմմտ. Հռ. 5:6; 8:34; 14:9,15; I Կորն. 8:11; 15:3; II Կորն. 5:15; Գաղ. 5:21; I Թես. 4:14; 5:10)
6. «խաչ» (հմմտ. I Կորն. 1:17-18; Գաղ. 5:11; 6:12-14; Եփ. 2:16; Փիլ. 2:8; Կող. 1:20; 2:14)
7. «խաչելություն» (հմմտ. I Կորն. 1:23; 2:2; II Կորն. 13:4; Գաղ. 3:1)

Գոյություն ունեցող *huper* ՆԱԽԴԻՐԸ այս կոնտեքստում նշանակում է

1. ներկայացուցչություն «ի օգուտ մեզ»
2. փոխանորդ/փոխարինում «մեր փոխարեն»

Որպես կանոն *huper* հիմնական իմաստը դրված ՍԵՌԱԿԱՆ ՀՈԼՈՎ-ով ստանում է հետևյալ իմաստը «մեր անունից, հանուն, ի սեր» (Լոուվ և Նիդա): Այն արտահայտում է որոշ առավելություն, որը բաժին է հասնում մարդկանց (Նոր Կտակարանի աստվածաբանության Նոր միջազգային բառարան, հատ. 3, էջ 1196; *The New International dictionary of New Testament Theology*, vol. 3, p. 1196): Ինչևէ, իրականում *huper* ունի *anti* իմաստ, որը նշանակում է «փոխարեն» և այդ կերպ աստվածաբանորեն սա վերաբերվում է քավչարար և փոխարինող զոհաբերությանը (հմմտ. Մարկ. 10:45; Հովհ. 11:50; 18:14; II Կոր. 5:14; I Տիմ. 2:6). Մ. Ջ. Հարիս «ՆԿԱՆՄԲ», հատ.3, էջ 1197; M. J. Harris (*NIDNTT*, vol. 3, p. 1197) գրում է, « …բայց ինչու Պողոսն երբեք չի ասում, որ Հիսուսը մեռավ *anti hēmōn* (I Տիմ. 2:6 նա օգտագործում է

ամենամոտ տարբերակը–*antilytron hyper pantōn*)։ Հնարավոր է որովհետև *hyper* նախդիրը ի տարբերություն *anti*-ին կարող էր միաժամանակ արտահայտել ներկայացուցչություն և փոխարինում»։

Մ. Ռ. Վինսենտը «Բառային սերտողություններ» գրքում, հատ. 2; M. R. Vincent, *Word Studies*, vol. 2, ասում է

> «Սա բավականին վիճելի հարց է, լինում են երբևէ դեպքեր, երբ *huper* «անունից, ի օգնուտ, ի սեր» հավասարազոր է/համարժեք *anti*-ին «փոխարեն»։ Դասական գրողները ներկայացնում են բավականին օրինակներ այնպիսի բառերով, որոնք իրենց իմաստով փոխարինվող են։ Այս հատվածի իմաստն, ինչևէ, այնքան անորոշ է, որ այն չի կարող ծառայել որպես օրինակ/փաստ։ Նախդիրը կարող է ունենալ և տեղային իմաստ «վրա, վրայով» մեռածի։ Այս մոտեցումներից ոչ մեկն էլ չի կարող բավարար վստահելի լինել։ Ամենաշատը, որ կարող ենք ասել հետևյալն է, որ *huper* սահմանափակում է *anti-ի* իմաստը։ «Փոխարեն» իմաստն ավելի շատ ունի դոգմատիկ հիմքեր։ Հատվածների մեծամասնության մեջ իմաստը բավականին պարզ է *«անունից, անունով, ի օգնուտ, ի սեր»:* Թվում է, թե ճիշտ բացատրությունը կլինի այն, որ այսպիսի հատվածներում, որտեղ, հիմնականում խոսքը գնում է Քրիստոսի մահվան մասին, ինչպես օրինակ, Գաղ. 3:13; Հռ. 14:15; I Պետ. 3:18, *huper* արտահայտում է էլ ավելի հստակ և ընդհանուր հիմնավորում – Քրիստոս մեռավ հանուն – թողնելով ուրույն իմաստ «հանուն, ի սեր» անորոշ և որ պետք է հաստատվի ուրիշ հատվածների միջոցով։ Դրան կարելի է ներառել «փոխարեն» իմաստը, բայց միայն տրամաբանական հետևությամբ» (էջ 692)։

**5:7** Այս համարը ցույց է տալիս մարդկային սերը, իսկ համար 8 ցույց է տալիս Աստծո սերը։

**Արևելահայերեն «մի արդարի համար»**

**Արևմտահայերեն «արդարի մը համար»**

▣

**NASB, NKJV,**

**TEV "for a righteous man, արդար մարդու համար"**

**NRSV "for a righteous person, արդար անձի համար"**

**JB "for a good man, բարի, լավ մարդու համար"**

Այս տերմինը նույն իմաստով օգտագործվում է Նոյին և Հոբին նկարագրելիս, որպես արդար և անմեղ մարդիկ։ Նրանք հետևեցին իրենց օրերի կրոնական պահանջներին։ Բայց սա չի նշանակում, որ նրանք մեղավորներ չէին։ Տես հատուկ թեմա 1:17.

**5:8 «Աստուած յայտնեց իր սէրը»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է (հմմտ. 3:5): Հայրն ուղարկեց Որդուն (հմմտ. 8:3,32; II Կոր. 5:19): Աստծո սերը դյուրազգայուն/սենտիմենտալ չէ, այլ կենտրոնացված է գործողության վրա (հմմտ. Հովh. 3:16; I Հովh. 4:10) և <u>հաստատ է ու անփոփոխ:</u>

**5:9 «ո՞րքան աւելի»** Սա Պողոսի ամենասիրելի արտահայտություններից մեկն էր (հմմտ. hh. 10,15,17): Եթե Աստված այդքան շատ սիրեց հավատացյալներին մինչ նրանք մեղավոր էին, ապա որքան ավելի է Նա սիրում նրանց հիմա, երբ Իր զավակներն են (հմմտ. 5:10; 8:22):

▣ **«հիմա, որ արդարացանք»** Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ է, որն ընդգծում է արդարացումը որպես ավարտված գործողություն իրականացված Աստծո կողմից: Պողոսը կրկնում է h. 1-ի ճշմարտությունը: Նաև ուշադրություն դարձրեք «արդարացած» (h. 9) և «հաշտված» (hh. 10-11) բառերի միջև գոյություն ունեցող զուգահեռներին:

▣ **«նորա արիւնովը»** Սա վերաբերում էր Քրիստոսի զոհաբերվող մահվանը (հմմտ. 3:5; Մարկ. 10:45; II Կոր. 5:21): Զոհաբերություն և անմեղ կյանք, տրված մեղավոր կյանքի փոխարեն գաղափարը, մեզ հետ է տանում Ղև. 1-7 և հնարավոր է Ել. 12 (զատկի գառը), և աստվածաբանորեն այն վերաբերում էր Հիսուս Քրիստոսին Ես. 53:4-6: Քրիստոսագիտության իմաստով այս գաղափարը իր զարգացումն ունեցավ Եբրայեցիներին ուղղված գրքում: Փաստորեն այս գրքում համեմատություն է գնում Հին և Նոր Կտակարանների միջև մի շարք կարևոր մտքերի շուրջ:

▣ **«կապրինք»** Սա ԱՊԱՌՆԻ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է (հմմտ. h. 10): Սա վերաբերվում է մեր վերջնական փրկությանը, որը կոչվում է «փառավորում» (հմմտ. h. 2; 8:30, I Հովh. 3:2):

Նոր Կտակարանը փրկությունը նկարագրում է ԲԱՅ-ական բոլոր ժամանակաձևերով:

1. ավարտված գործողություն (ԱՕՐԻՍՏ), Գործք 15:11; Հռ. 8:24; II Տիմ. 1:9; Տիտոս 3:5
2. անցյալի գործողություն, որի արդյունքը ներկա ժամանակում է (ՎԱՂԱԿԱՏԱՐ), Եփ. 2:5,8
3. շարունակական գործընթաց (ՆԵՐԿԱ), I Կոր. 1:18; 15:2; II Կոր. 2:15; I Թես. 4:14; I Պետ. 3:21

4. ապագայում ավարտին հասցվող (ԱՊԱՌՆԻ), Հռ. 5:9,10; 10:9.

Տես հատուկ թեմա 10:13. Փրկությունը սկսում է սկզբնական որոշումից, բայց այն շարունակվում է նոր հարաբերությունների մեջ, որի վախճանը կիրականանա մեկ օր: Այս գաղափարը հաճախ բնութագրվում է երեք աստվածաբանական տերմիններով արդարացում, որը նշանակում է «մեղքի պատժից ազատվել», սրբացում, որը նշանակում է «մեղքի զորությունից ազատվել»; և փառավորում, որը նշանակում է «մեղքի ներկայությունից ազատվել»:

Արժե մեկ անգամ ևս նշել, որ արդարացումն ու սրբացումը Աստծո շնորհքի գործերն են, տրված հավատացյալին Քրիստոսի հավատքի միջոցով: Ինչևէ Նոր Կտակարանը նաև սրբացման մասին ասում է, որ շարունակական գործընթաց է, որը հավատացյալներին քրիստոսանման է դարձնում: Այդ իսկ պատճառով աստվածաբանները օգտագործում են հետևյալ հասկացողությունը «դիրքային սրբացում, տեղում» և «շարունակական սրբացում»: Սա փրկության պարգևի խորհուրդն է, որը կապված է աստվածահաճո կյանքի հետ:

▣ **«Աստծո բարկութիւնիցը»** Սա վախճանաբանական կոնտեքստ է: Աստվածաշունչը խոսում է Աստծո մեծ, անարժան մարդու հանդեպ եղած սիրո մասին, բայց նաև հստակ խոսում է այն մասին, որ Աստծո հակառակ է/ չի ընդունում մեղքին և ամբարտավանությանը: Աստված սահմանեց փրկության և ներման ճանապարհ Քրիստոսի միջոցով, բայց նրանք, ովքեր մերժում են Իրեն բարկության տակ են մնում (հմմտ. 1:18-3:20): Սա մարդակերպային արտահայտություն է, բայց այն արտահայտում է իրականություն: Սարսափելի բան է բարկացած/կենդանի Աստծո ձեռքն ընկնելը (Եբր. 10:31):

**5:10 «եթէ»** Սա ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ Է, որը ճիշտ է երևում գրողի տեսանկյունից կամ իր գրական նպատակների համար: Մարդկությունը՝ Աստծո գերագույն ստեղծագործությունը, դարձավ թշնամի: Մարդն (հմմտ. Ծննդ. 3:5) ու սատանան (հմմտ. Ես. 14:14; Եզ. 28:2,12-17) ունեին նույն խնդիրը, փափագ անկախանալու, փափագ ղեկավարելու և աստվածներ լինելու ձգտում:

▣ **«Աստուծոյ հետ հաշտուեցանք . . . հաշտուած ենք»** Սա թե ԱՈՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է և թե ԱՈՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ: «հաշտվել» ԲԱՅ-ը բնագրում նշանակում էր «փոխել»: Աստված մեր մեղքը փոխել է Հիսուսի արդարությամբ (հմմտ. Ես. 53:4-6): Խաղաղությունը վերականգնվել է (հմմտ. հ. 1):

▣ **«նորա Որդու մահովը»** Ներման ավետարանը հիմնավորված է (1) Աստծո սիրո; (2) Քրիստոսի ծառայության; (3) Հոգու պատրաստողական աշխատանքի, և (4) անհատի հավատքի/ապաշխարության արձագանքի վրա: Աստծո հետ ուղիղ լինելու ուրիշ տարբերակ չկա (հմմտ. Հովհ. 14:6): Փրկության վստահությունը հիմնված է Եռյակ Աստծո կերպարի վրա, և ոչ թե մարդու կարողության: Պարադոքսն այն է, որ փրկությունից հետո մարդու գործերն են, որ փաստում են փրկության պարգևի ձեռքբերումը (հմմտ. Հակոբոս և I Հովհ.):

▣ **«կապրինք»** Նոր Կտակարանը փրկության մասին խոսում է, որպես անցյալ, ներկա և ապառնի գործողություն: Այստեղ ապառնին վերաբերում է մեր վերջնական, գերագույն փրկությանը Քրիստոսի Երկրորդ Գալստյան ժամանակ: Տես ծանուցում հ. 9 և հատուկ թեմա 10:13:

▣ **«նորա կեանքովը»** Այս հունարեն տերմինը կյանք բառի համար *zoa* է: Այս տերմինը Հովհաննեսի գրվածքներում միշտ վերաբերում է հարուցյալ կյանքին, հավիտենական կյանքին կամ թագավորության կյանքին: Պողոսը միշտ օգտագործում էր այն այս աստվածաբանական իմաստով: Այս կոնտեքստի վստահությունն այն է, որ քանի որ Աստված վճարեց այնպիսի բարձր գին հավատացյալների ներման համար, որ Նա անշուշտ կշարունակի դրա ներգործությունը :

«Կյանք»ը կարող է վերաբերել կամ (1) Հիսուսի հարությանը (հմմտ. 8:34; I Կոր. 15); (2) Հիսուսի բարեխոսությունը (հմմտ. 8:34; Եբր. 7:25; I Հովհ. 2:1); կամ էլ (3) Հոգու ձևավորելը Քրիստոսին մեր մեջ (հմմտ. Հռ. 8:29; Գաղ. 4:19): Պողոսը հաստատում էր, որ Հիսուսի երկրային կյանքը և մահը ինչպես նաև Նրա մեծարված/փառաբանված կյանքը մեր հաշտեցման հիմքն են:

**5:11 «Եւ ոչ միայն այսքան. այլ»** Տես ծանուցում 3հ.

▣ **«այլ պարծենում ենք»** Տես ծանուցում 5:2. Սա երրորդ կիրառումն է «հրճվել» (պարծենալ) այս կոնտեքստում:

1. պարծենում/հրճվում ենք փառքի հույսովը, 2հ.
2. պարծենում/հրճվում ենք նեղությունների մեջ, 3հ.
3. պարծենում/հրճվում ենք հաշտություն ընդունելով, 11հ.

Բացասական պարծենալը երևում է 2:17 և 23հ.

▣ **«որով հիմա հաշտութիւնն ընդունենցինք»** Սա ԱՈՐԻՍՏ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ-ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, կատարված ավարտված գործողություն: Հավատացյալների հաշտեցման մասին նաև խոսվում է 10հ-ում և II Կոր. 5:18-21; Եփ. 2:16-22; Կող. 1:19-23: Այս

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 5:12-14**
12Սորա համար՝ ինչպէս մէկ մարդի ձեռովը մեղքը մտաւ աշխարհքը, եւ այն մեղքովն էլ մահը. եւ այսպէս մահն ամեն մարդկանց վերայ տարածուեցաւ, ըստ որում ամենքը մեղանչեցին: 13Որովհետեւ մինչեւ օրէնքը՝ մեղք կար աշխարհքումը, բայց մեղքը չէ համարվում քանի որ օրէնքը չկայ: 14Բայց մահը թագաւորեց Ադամից մինչեւ Մովսէսը Ադամի մեղքի նման չմեղանչողների վերայ էլ. որ օրինակ է նորան որ գալու էր:

**NASB (UPDATED) TEXT: 5:12-14**
**12Therefore, just as through one man sin entered into the world, and death through sin, and so death spread to all men, because all sinned— 13for until the Law sin was in the world, but sin is not imputed when there is no law. 14Nevertheless death reigned from Adam until Moses, even over those who had not sinned in the likeness of the offense of Adam, who is a type of Him who was to come.**

**5:12 «Սորա համար»** Հռոմեացիս թուղթն ունի մի քանի ռազմավարականորեն տեղադրված «արդ, ուրեմն» եր (հմմտ. 5:1; 8:1; 12:1): Մեկնաբանական հարցն է թե ինչին են նրանք կապվում: Դրանք կարող են վերաբերել Պողոսի ամբողջ փաստարկին: հմզված լինելու համար այս մեկը կապված է Ծննդոցին և ուստի հավանական է տանում է դեպի Հռ. 1:18-32.

▣ **«ինչպէս մէկ մարդի ձեռովը մեղքը մտաւ աշխարհքը»** 12հ-ի բոլոր երեք բայերն էլ ԱՈՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԵՆ: Ադամի անկումը/մեղանչելը բերեց մահ (հմմտ. I Կոր. 15:22): Աստվածաշունչը հանգամանորեն չի խոսում մեղքի ծագման մասին: Մեղքը նաև տեղի ունեցավ հրեշտակների թագավորությունում (հմմտ. Ծնն. 3 և Հայտ. 12:7-9): Ինչպես և երբ, անորոշ է (հմմտ. Ես. 14:12-27; Եզ. 28:12-19; Հոբ 4:18; Մաթ. 25:41; Ղուկ. 10:18; Հովh. 12:31; Հայտ. 12:7-9):

Ադամական մեղքը ներգրավեց երկու տեսակետ (1) անհնազանդություն հատուկ պատվիրանին (հմմտ. Ծնն. 2:16-17), և (2) ինքնորոշ հպարտություն (հմմտ. Ծնն. 3:5-6): Սա շարունակում է ակնարկը Հռ. 1:18-32 սկսած Ծնն. 3-ից:

Սա մեղքի աստվածաբանությունն է, որն այնքան պարզ բաժանում է Պողոսին րաբբիական մտածելակերպից: Րաբբիները չէին կենտրոնանում Ծնն. 3-ի վրա; փոխարենը նրանք պնդում էին, որ յուրաքանչյուր մարդու մեջ կար երկու «մտադրություն/հակվածություն» (*yetzers*): Նրանց

հայտնի ռաբբիական ասացվածքը «Ամեն մարդու սրտում կա սև և սպիտակ շուն: Ում ամենաշատն ես կերակրում նա էլ դառնում է ամենամեծը»: Պողոսը տեսավ մեղքը որպես արգելք սուրբ Աստծո և Իր արարչագործության միջև: Պողոսը սիստեմատիկ աստվածաբան չէր (հմմտ. Ջեյմս Ստուարդի Մարդ Քրիստոսում/James Steward's *A Man in Christ*): Նա տվեց մեղքի մի քանի ծագումներ (1) Ադամի մեղանչելը, (2) սատանայի փորձելը, և (3) մարդու շարունակական ըմբոստությունը:

Աստվածաբանական հակասություններում և զուգահեռներում Ադամի և Հիսուսի միջև կան երկու հնարավոր առընչություններ:

1. Ադամը իրական պատմական անձ էր:
2. Հիսուսը իրական մարդ արարած էր:

Այս երկու ճշմարտություններն էլ հաստատում են Աստվածաշունչը կեղծ վարդապետերի առջև: Ուշադրություն դարձրեք կրկնվող բառին «մեկ մարդ» կամ «մեկը»: Այս կոնտեքստում Ադամին և Հիսուսին վերաբերող այս երկու կերպերը օգտագործված են 11 անգամ:

▣ **« մեղքովն էլ մահը.»** Աստվածաշունչը հայտնում է մահվան երեք փուլեր (1) հոգևոր մահ (հմմտ. Ծննդ. 2:17; 3:1-7; Եփ. 2:1); (2) ֆիզիկական մահ (հմմտ. Ծննդ. 5); և (3) հավիտենական մահ (հմմտ. Հայտ. 2:11; 20:6,14; 21:8): Այս հատվածում խոսվում է Ադամի հոգևոր մահվան մասին (հմմտ. Ծննդ. 3:14-19), որը մարդկության ֆիզիկական մահվան պատճառը հանդիսացավ (հմմտ. Ծննդ. 5):

▣ **«մահն ամեն մարդկանց վերայ տարածուեցաւ»** Այս բաժնի ամենագլխավոր հարվածը մեղքի (հմմտ. 16-19հh.; I Կոր. 15:22; Գաղ. 1:10) և մահվան համընդհանրությունն է կամ տիեզերականությունը:

▣ **« ըստ որում ամենքը մեղանչեցին»** Բոլոր մարդիկ մեղանչեցին Ադամով ընդհանուր (այն է, ժառանգեցին մեղավոր վիճակ և մեղավոր հակում): Այդ պատճառով յուրաքանչյուր մարդ ընտրում է մեղանչել անձնապես և հաճախ: Աստվածաշունչը շեշտված է, որ բոլոր մարդիկ մեղավորներ են թե ընդհանուր և թե անհատական (հմմտ. 3 Թագ. 8:46; II Մնաց. 6:36; Սաղ. 14:1-2; 130:3; 143:2; Առ. 20:9; Ժող. 7:20; Ես. 9:17; 53:6; Հռ. 3:9-18,23; 5:18; 11:32; Գաղ. 3:22; I Հովh. 1:8-10).

Բայց և այնպես պետք է ասվի, որ կոնտեքստուալ շեշտավորումը (հմմտ. 15-19հհ.) այն է, որ մի գործողությունը պատճառեց մահ (Ադամ) իսկ մյուսը բերեց կյանք (Հիսուս): Ինչևէ, Աստված այնպես է կառուցել Իր հարաբերությունը մարդկության հետ, որ մարդկային արձագանքը կարևոր տեսակետ է «կորսվածության » և «արդարացման»: Մարդիկ կամավոր կերպով ներգրավվում են իրենց ապագայի մեջ: Նրանք շարունակում են ընտրել մեղքը կամ նրանք ընտրում են Քրիստոսին: Նրանք չեն կարող ազդել այս երկու ընտրությունների վրա, սակայն նրանք ինքնակամ ցույց են տալիս թե որին են իրենք պատկանում «Բայց/որովհետև» թարգմանությունը հասարակ է, բայց նրա նշանակությունը հաճախ կասկածի է ենթարկվում: Պողոսն օգտագործեց *eph' hō* II Կոր. 5:4; Փիլ. 3:12; և 4:10 «բայց» իմաստով: Ուստի յուրաքանչյուր և ամեն մարդ անձնապես մասնակցում է մեղքի և Աստծո դեմ ապստամբելու մեջ: Ոմանք մերժելով հատուկ հայտնությունը, սակայն բոլորը մերժելով բնական հայտնությունը (հմմտ. 1:18-3:20):

**5:13-14** Այս նույն ճշմարտությունը ուսուցանվում է Հռ. 4:15 և Գործք 17:30: Աստված արդար է/ազնիվ է: Մարդիկ միայն պատասխանատու են միայն նրա համար ինչ մատչելի նրանց: Այս համարը խոսում է բացառապես հատուկ հայտնության մասին (Հին Կտակարան, Հիսուս, Նոր Կտակարան), ոչ թե բնական հայտնության մասին (Սաղ. 19; Հռ. 1:18-23; 2:11-16):

Ուշադրություն դարձրեք, որ NKJV թարգմանության մեջ հ. 12 գտնվող համեմատությունը հանդես է գալիս որպես առանձին մեծ միջանկյալ նախադասություն (հմմտ. հհ. 13-17) իր եզրափակիչ մասից հհ. 18-10:

**5:14**

**Արևելահայերեն «մահը թագաւորեց»**

**Արևմտահայերեն «մահը թագաւորեց»**

**NASB, NKJV,**

**JB "death reigned"**

**NRSV "death exercised dominion"**

**TEV "death ruled"**

Մահը թագավորեց որպես Թագավոր (հմմտ. 17 և 21հհ): Մահվան և մեղքի մարմնավորումը որպես բռնակալներ շարունակվում է այս գլուխում և 6-րդ գլխում: Մահվան տիեզերական փորձառությունը հաստատում է մարդկության տիեզերական մեղքը: 17 և 21հհ., շնորհքը մարմնավորված է: Շնորհքն է թագավորում: Մարդիկ ունեն ընտրություն (Հին Կտակարանի երկու կերպերը/ճանապարհները); մահ կամ կյանք: Ո՞վ է թագավորում քո կյանքում:

▣ **«Ադամի մեղքի նման չմեղանչողների վերայ էլ»** Ադամը խախտեց Աստծո հաստատ հրամանը, սակայն Եվան չմեղանչեց այս նույն կերպով: Նա Ադամից էր լսել ծառի մասին և ոչ թե անմիջապես Աստծոց: Մարդիկ Ադամից մինչև Մովսես վնասվեցին Ադամի ապստամբության պատճառով: Նրանք չխախտեցին/չոտնահարեցին հատուկ հրամանը/պատվերը անմիջապես Աստծուց ստացած, այլ 1:18-32, որը իհարկե այս աստվածաբանական կոնտեքստի մասն է, արտահայտում է այն ճշմարտությունը, որը նրանք ոտնահարեցին/խախտեցին/պղծեցին այն լույսը, որն ունեին արարչագործությունից սկսած և ուստի պատասխանատու են Աստծուն ըմբոստության/մեղքի համար: Ադամի մեղավոր հակումը տարածվեց իր բոլոր զավակների վրա:

**Արևելահայերեն «Ադամի մեղքի նման չմեղանչողների վերայ էլ. որ օրինակ է նորան որ գալու էր»**
**Արևմտահայերեն «Ադամին յանցանքին նման չմեղանչողներուն վերայ ալ. որ օրինակ էր անոր որ ետքը պիտի գար»**

▣

**NASB, NKJV,**
**NRSV "who is a type of Him who was to come"**
**TEV "Adam was a figure of the one who was to come"**
**JB "Adam prefigured the One to come"**

Սա շատ ռեալ կերպով արտահայտում է Ադամ-Քրիստոս տիպաբանությունը (հմմտ. I Կոր. 15:21-22,45-49; Փիլ. 2:6-8): Նրանցից երկուսն էլ դիտվում են որպես առաջինը շարքում , մարդկության սկիզբ (հմմտ. I Կոր. 15:45-49): Ադամն է միակ անձը Հին Կտակարանում, որ հատուկ կոչվում է «տեսակ/տիպ» Նոր Կտակարանով: Տես Հատուկ Թեմա: Տեսակ/ձև (*Tupos*) 6:17.

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 5:15-17**
[15]Բայց շնորհքն այնպէս չէ՝ ինչպէս յանցանքը. որովհետեւ եթէ մէկի յանցանքովը շատերը մեռան, էլ ո՞րքան աւելի Աստուծոյ շնորհքն ու պարգեւը մէկ մարդի՝ Յիսուս Քրիստոսի շնորհքովն աւելացաւ շատերի վերայ: [16]Եւ պարգեւն այնպէս չէ՝ ինչպէս այն մէկ մեղանչողից եղածը, որովհետեւ դատաստանն այն մէկ մեղքիցը դէպի դատապարտութիւն տարաւ. բայց շնորհքը շատ մեղքերից արդարութեան մէջ է տանում: [17]Որովհետեւ եթէ մէկի մեղքովը մահը թագաւորեց այն մէկի ձեռովն, էլ ո՞րքան աւելի նորանք, որ ընդունում են շնորհքի լիութիւնն ու արդարութեան պարգեւները կեանքով կթագաւորեն՝ այն մէկ Յիսուս Քրիստոսի ձեռովը:

**NASB (UPDATED) TEXT: 5:15-17**

[15]But the free gift is not like the transgression. For if by the transgression of the one the many died, much more did the grace of God and the gift by the grace of the one Man, Jesus Christ, abound to the many. [16]The gift is not like *that which came* through the one who sinned; for on the one hand the judgment *arose* from one *transgression* resulting in condemnation, but on the other hand the free gift *arose* from many transgressions resulting in justification. [17]For if by the transgression of the one, death reigned through the one, much more those who receive the abundance of grace and of the gift of righteousness will reign in life through the One, Jesus Christ.

հանդիսանում է յուրաքանչյուր պարբերության հիմնական ճշմարտության որոշումն է: Ուշադրություն դարձրեք, որ «շատ» տերմինը հh. 15 և 19, հոմանիշ է հh. 12 և 18 «բոլոր» տերմինի: Սա նույնպես ճշմարտություն է Ես. 53:11-12 և h. 6. Ոչ մի աստվածաբանական տարբերություն (Կալվին ընտրության վարկածը ի տարբերություն ընտրության բացակայության գաղափարի) չարժե փնտրել և հիմնվել այս տերմինների վրա:

**5:15 «ձրի պարգև»** Կան երկու տարբեր հունարեն բառեր «պարգև» բառի համար օգտագործված այս կոնտեքստում *charisma*, 15,16hh. (6:23) և *dorea/dorama*, 15, 16, 17hh. (տես ծանուցում 3:24)— բայց նրանք հոմանիշներ են: Իրոք սա փրկության Բարի Լուրն է: Այն ձրի պարգև է Աստծուց Հիսուս Քրիստոսի միջոցով (հմմտ. 3:24; 6:23; Եփ. 2:8,9) բոլոր նրանց համար, ովքեր հավատում են Քրիստոսին:

- **«եթե»** Սա ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է, որը հաստատվում է որպես ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ նրա գրական նպատակների համար: Ադամի մեղքը մահ բերեց ամբողջ մարդկությանը: Սա զուգորդվում է 17h.

- **«որքան ավելի/առատ» Տես Հատուկ Թեմա** 15:13.

**5:16 «դատապարտություն. . .արդարություն»** Այս երկուսն էլ դատական, իրավական տերմիններ են: Հաճախ Հին Կտակարանը ներկայացնում է մարգարեի պատգամը որպես դատարանի տեսարան: Պողոսն օգտագործում է այս ձևը (հմմտ. Հռ. 8:1, 31-34):

**5:17 «եթե»** Սա ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է, որը հաստատվում է որպես ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ նրա գրական նպատակների համար: Ադամի մեղքը մահ բերեց ամբողջ մարդկությանը: Ադամի մեղքը/հանցանքը բոլոր մարդկանց մահվան պատճառը դարձավ:

▣ **«էլ որքա՞ն աւելի նորանք, որ ընդունում են»** 18-19հհ. ստույգ/ճշգրիտ աստվածաբանորեն հավասարակշռված չեն: Այս արտահայտությունը չի կարող տեղահանվել Հռ. 1-8-ի կոնտեքստից և օգտագործվի որպես հաստատող տեքստ համընդհանուրի/ ունիվերսալիզմի համար (որ վերջիվերջո բոլորն էլ կփրկվեն): Մարդիկ պետք է ընդունեն (17հ.) Աստծո առաջարկածը Քրիստոսում: Փրկությունը հասանելի է բոլորին, բայց պետք է ընդունվի անհատականորեն (հմմտ. Հովհ. 1:12; 3:16; Հռ. 10:9-13):

Աղամի մեկ ապստամբ գործողությամբ սկիզբ դրվեց ամբողջ մարդկության ամբողջական ըմբոստացմանը: Մեկ մեղավոր գործողությունը նշանավորվում է/չափազանցվում է: Բայց Քրիստոսում մեկ արդար զոհաբերություն նշանավորվում է ծածկելու համար ինչպես շատ անհատական մեղքեր այնպես էլ մեղքի ընդհանուր ներգործությունը: Քրիստոսի գործողության «էլ որքան ավելի»ն ընդգծվում է (հմմտ. 9,10,15,17հհ.): Շնորհքն ավելանում է:

**5:17,18 «արդարութեան պարգեւները կեանքով կթագաւորեն. . .կեանքի արդարութիւնը»** Հիսուսն Աստծո պարգևն է և պայմանը բոլոր մեղավոր մարդկության հոգևոր կարիքների համար (հմմտ. I Կոր. 1:30): Այս զուգահեռ արտահայտությունները կարող են նշանակել (1) մեղավոր մարդկությանը տրված է իրավունք կանգնել Աստծո հետ Քրիստոսի ավարտած գործի միջոցով, որը տալիս է «աստվածահաճո/բարեպաշտ կյանք»; կամ (2) այս արտահայտությունը հոմանիշ է «հավիտենական կյանք»ին: Կոնտեքստը աջակցում է առաջին տարբերակը: Արդարություն բառը սերտելու համար տես հատուկ թեմա 1:17.

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԹԱԳԱՎՈՐԵԼ ԱՍՏԾՈ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ**

Քրիստոսի հետ թագավորելու գաղափարը ավելի ծավալուն/ընդարձակ աստվածաբանական կատեգորիայի մասն է կոչված «Աստծո Թագավորություն»: Սա Աստծո գաղափարն է Հին Կտակարանից բերված՝ որպես Իսրայելի ճշմարիտ թագավոր (հմմտ. I Թագ. 8:7): Նա խորհրդանշական կերպով/սիմվոլիկ թագավորեց (I Թագ. 8:7; 10:17-19) Հուդայի ցեղի սերնդի միջոցով (հմմտ. Ծննդ. 49:10) և Յեսսէի ընտանիքի (հմմտ. II Թագ. 7):

Հիսուսը Հին Կտակարանի մարգարեության խոստացված իրականացումն էր կապված Մեսիայի հետ: Նա Աստծո Թագավորության սկիզբը դրեց Իր մարմնացումով Բեթլեհեմում: Աստծո Թագավորությունը դարձավ Հիսուսի քարոզչության կենտրոնական սյունը: Թագավորությունը ամբողջությամբ եկել էր Նրանով (հմմտ. Մաթ: 10:7; 11:12; 12:28; Մարկ. 1:15; Ղուկ. 10:9,11; 11:20; 16:16; 17:20-21):

Ինչևէ, Թագավորությունը նաև ապագայում էր (վախճանաբանական): Այն ներկայում էր բայց ոչ ավարտված (հմմտ. Մաթ. 6:10; 8:11; 16:28; 22:1-14; 26:29; Ղուկ. 9:27; 11:2; 13:29; 14:10-24; 22:16,18): Հիսուսն առաջին անգամ եկավ որպես տառապող ծառա (հմմտ. Ես. 52:13-53:12); որպես հեզ (հմմտ. Զաք. 9:9) բայց Նա կվերադառնա որպես Թագավորների Թագավոր (հմմտ. Մաթ. 2:2; 21:5; 27:11-14): «Թագավորելու» գաղափարը անշուշտ այս «թագավորության» աստվածաբանության մասն է կազմում: Աստված Հիսուսի հետևորդներին տվել է թագավորություն (տես Ղուկ. 12:32):

Քրիստոսի հետ թագավորելու գաղափարը ունի մի քանի տեսակետեր և հարցեր;

1. Արդյո՞ք հատվածը, որը հաստատում է, որ Աստված տվել է հավատացյալներին «թագավորությունը» Քրիստոսի միջոցով վերաբերում է «թագավորելուն» (հմմտ. Մաթ. 5:3,10; Ղուկ. 12:32):

2. Արդյո՞ք Հիսուսի խոսքերը ուղղված իր աշակերտներին, առաջին դարի հրեական կոնտեքստում, վերաբերվում է բոլոր հավատացյալներին (հմմտ. Մաթ. 19:28; Ղուկ. 22:28-30):
3. Արդյո՞ք Պողոսի շեշտադրությունը այս կյանքում թագավորելու վրա հակասում կամ լրացնում է վերևի տեքստերը (հմմտ. Հռ. 5:17; I Կոր. 4:8):
4. Ինչպե՞ս են տառապանքն ու թագավորելը կապվում իրար (հմմտ. Հռ. 8:17; II Տիմ. 2:11-12; I Պետ. 4:13; Հայտ. 1:9)
5. Հայտնության կրկնվող/հակադարձ թեման բաժնեկցում է փառավորված Քրիստոսի թագավորելը
   ա. երկրային, 5:10
   բ. հազարամյա, 20:5,6
   գ. հավիտենական, 2:26; 3:21; 22:5 և Դան. 7:14,18,27

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 5:18-21**
[18]Արդ ուրեմն` ինչպէս որ մէկի յանցանքովն ամեն մարդկանց դատապարտութիւն
եկավ, նոյնպէս էլ մէկի արդարութիւնովն ամեն մարդկանց վերայ կեանքի
արդարութիւն է գալիս: [19] Որովհետեւ ինչպէս որ մէկ մարդի անհնազանդութիւնովը
շատերը մեղաւորներ եղան, այնպէս էլ մէկի հնազանդութիւնովը շատերը
արդարներ կլինին: [20]Բայց օրէնքը մէջ ընկաւ` որ յանցանքը շատանայ. բայց ուր
որ աւելի եղաւ մեղքը, այնտեղ աւելի եւս շատացաւ շնորհքը: [21]Որոպէսզի ինչպէս
մեղքը թագաւորեց մահի ձեռովը, այնպէս էլ շնորհքը թագաւորէ արդարութիւնով
յաւիտենական կեանքի մէջ` մեր Տէր Յիսուս Քրիստոսի ձեռովը:

NASB (UPDATED) TEXT: 5:18-21
[18]So then as through one transgression there resulted condemnation to all men, even so
through one act of righteousness there resulted justification of life to all men. [19]For as
through the one man's disobedience the many were made sinners, even so through the
obedience of the One the many will be made righteous. [20]The Law came in so that the
transgression would increase; but where sin increased, grace abounded all the more, [21]so
that, as sin reigned in death, even so grace would reign through righteousness to eternal life
through Jesus Christ our Lord.

5:18

**Արևելահայերեն** **«նոյնպէս էլ մէկի արդարութիւնովն ամեն մարդկանց վերայ կեանքի արդարութիւն է գալիս »**

**Արևմտահայերեն** **«այնպէս` մէկուն արդարութիւնովը բոլոր մարդոց կեանքի արդարութեան շնորհք եղաւ»**

5:18
NASB "even so through one act of righteousness there resulted justification of life to all men"
NKJV "even so through one Man's righteous act the free gift came to all men"
NRSV "so one man's act of righteousness leads to justification and life for all"
TEV "in the same way the one righteous act set all men free and gives them life"
JB "so the good act of one man brings everyone life and makes them justified"

Այստեղ չի խոսվում այն մասին, որ ամեն մարդ պիտի փրկվի (ունիվերսալիզմ): Այս համարը նաև չի կարելի մեկնաբանել ամբողջ Հռոմեացիս թղթից և անմիջական կոնտեքստից անկախ: Սա վերաբերում է ամբողջ մարդկության պոտենցիալ փրկությանը Հիսուսի կյանքի/մահվան/հարության միջոցով: Մարդը պետք է արձագանքի Ավետարանին ապաշխարությամբ և հավատքով (հմմտ. Մարկ. 1:15; Գործք 3:16,19; 20:21): Աստված է միշտ նախաձեռնողը, առաջին քայլը Նա է անում (հմմտ. Հովh. 6:44,65), բայց Նա ընտրել է, որ

յուրաքանչյուր անհատ պետք է արձագանքի անձնապես (հմմտ. Մարկ. 1:15; Հովհ. 1:12; և Հռ. 10:9-13): Նրա առաջարկը բոլորի համար է (հմմտ. I Տիմ. 2:4,6; II Պետ. 3:9; I Հովհ. 2:2), սակայն անօրենության գաղտնիքը նրանում է, որ շատերը Նրան «ոչ» են ասում:

«Արդարության գործողություն»-ը նշանակում է կամ (1) Հիսուսի ամբողջ հնազանդության կյանքը և Հոր հայտնությունը կամ (2) հատկապես Նրա մահը մեղավոր մարդկության օգտին: Ինչպես մեկ մարդու կյանքը ազդեց բոլորի վրա (հրեաների ընդհանուր պատասխանատվությունը, հմմտ. Հեսու 7), այդպես էլ մեկ անմեղ կյանք ազդեց բոլորի կյանքի վրա: Այս երկու գործողությունները զուգահեռ են իրենց իմաստով, բայց հավասար չեն: Ադամի մեղքը տարածվեց բոլորի վրա առանց բացառության, և հնարավորություն Քրիստոսի կյանքի ազդեցության տակ լինելով նորից բոլոր մարդկանց համար է, սական միայն պոտենցիալ առումով; միայն հավատացյալներն են ընդունում արդարության պարգևը: Հիսուսի գործողությունը նաև աղդեց ամբողջ մարդկության մեղքի վրա, նրանց համար ովքեր հավատում և ընդունում են Նրան անցյալում, ներկայում և ապագայում:

**5:18-19 «ամեն մարդկանց դատապարտութիւն … ամեն մարդկանց կեանքի արդարութիւն… շատերը մեղաւորներ եղան…շատերը արդարներ կլինին»** Սրանք զուգահեռ արտահայտություններ են, որոնք ցույց են տալիս, որ «շատ» տերմինը սահմանափակող չէ այլ ներփակող/պարունակող: Այս նույն զուգահեռությունը գտնվում է Ես. 53:6 «ամենքս» և 53:11,12 «շատերին»: «Շատ/երին» տերմինը չի կարող օգտագործվել սահմանափակող իմաստով սահմանափակելու համար Աստծո առաջարկած փրկությունը ամբողջ մարդկությանը (Կալվին ընտրության վարկածը ի տարբերություն ընտրության բացակայության գաղափարի):

Ուշադրություն դարձրեք երկու ԲԱՅԵՐԻ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌԻՆ: Դրանք վերաբերվում են Աստծո գործողությանը: Մարդիկ մեղանչում են Աստծո էության դեմ և նրանք արդարացվում են Նրա էության համաձայն:

**5:19 «մէկ մարդի անհնազանդութիւնովը . . . մէկի հնազանդութիւնովը»** Պողոսն օգտագործում էր Հին Կտակարանի համընդհանուր աստվածաբանական գաղափարը: Մեկ մարդու արարքը ազդեց ամբողջ հասարակության վրա (հմմտ. Աքարը Հեսու 7): Ադամի և Եվայի անհնազանդությունը ամբողջ արարչագործության վրա Աստծո դատաստանը բերեց (հմմտ. Ծննդ. 3): Ամբողջ արարչագործությունը կրում է Ադամի ըմբոստության հետևանքները (հմմտ. 8:18-25): Աշխարհը նույնը չէ: Մարդիկ նույնը չեն: Մահը դարձավ ամբողջ երկրային կյանքի վերջը (հմմտ. Ծննդ. 5): Աշխարհը այն չէ ինչպիսին Աստված ուզում էր տեսնել:

Այս նույն համընդհանուր իմաստով, Հիսուսի հնազանդության մեկ գործողությամբ Գողգոթայի վրա, արդյունքում եղավ (1) նոր դարաշրջան, (2) նոր մարդիկ, և (3) Նոր Ուխտ: Այս հատկանշական աստվածաբանությունը կոչվում է «Ադամ-Քրիստոս նախատիպ» (հմմտ. Փիլ. 2:6): Հիսուսը երկրորդ Ադամն է: Նա նոր սկիզբն է ընկած մարդկության համար:

▣ **«արդարներ կլինին»** Տես հատուկ թեմա 1:17.

**5:20**

**NASB "And the Law came in that the transgression might increase"**
**NKJV "Moreover the law entered that the offense might abound"**
**NRSV "But law came in, with the result and the trespass multiplied"**
**TEV "Law was introduced in order to increase wrongdoing"**
**JB "When law came, it was to multiply the opportunities of falling"**

Օրենքի նպատակը երբեք չի եղել մարդուն փրկելը այլ ցույց տալ ընկած/մեղավոր մարդու կարիքը և անօգնական լինելը (հմմտ. Եփ. 2:1-3) և ուստի նրանց բերել Քրիստոսին (հմմտ. 3:20; 4:15; 7:5; Գաղ. 3:19, 23-26): Օրենքը բարի/լավ է, բայց մարդը մեղավոր:

▣ **«աւելի եւս շատացաւ շնորհքը»** Սա Պողոսի հիմնական իմաստն էր այս ամբողջ բաժնում: Մեղքը սարսափելի է և այն ընդարձակվում է, բայց շնորհքը կրկնապատկվում է և առաջ բերում իր մահացու ներգործությունը: Սա կերպ էր առաջին դարի նոր ոտքի կանգնող եկեղեցուն քաջալերելու համար: Նրանք Քրիստոսով հաղթողներ էին (հմմտ. 5:9-11; 8:31-39; I Հովh. 5:4): Բայց սա ոչ մի դեպքում չի տալիս իրավունք նորից մեղանչելու: Տես Հատուկ Թեմա: *Huper* նախդիրի գործածումը Պողոսի կողմից բարդ բառեր կազմելու համար 1:30:

**5:21** Թե «մեղքը» և թե «շնորհքը» մարմնավորրվում են որպես թագավորներ: Մեղքը թագավորեց տիեզերական մահվան զորությամբ (14, 17hh.): Շնորհքը թագավորում է վերագրած արդարության զորության միջոցով Հիսուս Քրիստոսի կատարած գործի միջոցով և հավատացյալների անձնական հավատքի և ապաշխարությամբ ավետարանին արձագանքելով:

Որպես Աստծո նոր ժողովուրդ, որպես Քրիստոսի մարմին, քրիստոնեաները նույնպես թագավորում են Քրիստոսի հետ (հմմտ. 5:17; II Տիմ. 2:12; Հայտ. 22:5): Սա կարող է դիտվել թե երկրային և թե հազարամյա թագավորություն (հմմտ. Հայտ. 5:9-10; 20): Աստվածաշունչը նաև խոսում է նույն ճշմարտության մասին հաստատելով, որ Թագավորությունը տրվել է սուրբերին (հմմտ. Մաթ. 5:3,10; Ղուկ. 12:32; Եփ. 2:5-6): Տես Հատուկ Թեմա 5:17.

**ՔՆՆԱՐԿՎՈՂ ՀԱՐՑԵՐ**

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ: Սրանք մտածելու տեղիք տվող հարցեր են, և ոչ թե հստակ:

1. Սահմանիր Աստծո «արդարությունը»
2. Ո՞րն է աստվածաբանական տարբերությունը «դիրքային սրբացում» և «առաջընթացային սրբացում» հասկացողությունների միջև:
3. Մենք փրկվում ենք շնորհքով թե՞ հավատքով (հմմտ. Եփ. 2:8-9)
4. Ինչու՞ են քրիստոնեաները տառապում:
5. Մենք <u>փրկված ենք</u>, <u>փրկվում ենք</u> թե՞ <u>կփրկվենք</u>:
6. Մենք մեղավորներ ենք որովհետև մեղք ենք գործում թե՞ մենք մեղք ենք գործում որովհետև մեղավորներ ենք
7. Ինչպե՞ս են «արդարացած», «փրկված» և «հաշտված» տերմինները կապված այս գլխում:
8. Ինչու՞ է Աստված ինձ պատասխանատու համարում ուրիշ մարդու մեղքի համար, որը ապրել է հազարավոր տարիներ առաջ (12-21հհ.)
9. Ինչու՞ էին բոլոր մեռնու Ադամից մինչև Մովսես ընկած ժամանակահատվածում եթե մեղքը չէր հաշվվում այդ ժամանակ (13-14հհ.)
10. Արդյո՞ք «ամեն,բոլոր» և «շատ» տերմինները հոմանիշներ են (18-19հհ., Ես. 53:6, 11-12):

## ԹՈՒՂԹ ՈՒՂՂՎԱԾ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

### ԳԼՈՒԽ 6

| ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ | | | | |
|---|---|---|---|---|
| UBS[4] | NKJV | NRSV | TEV | JB |
| Մեռած մեղքին բայց կենդանի Քրիստոսով | Մեռած մեղքին, կենդանի Աստծո համար | Մեռնելով և հարություն առնելով Քրիստոսի հետ | Մեռած մեղքին բայց կենդանի Քրիստոսով | Մկրտություն |
| 6:1-11 | 6:1-14 | 6:1-4 | 6:1-4 | 6:1-7 |
| | | 6:5-11 | 6:5-11 | |
| | | | | 6:8-11 |
| | | | | Պետք է տիրի սրբությունը և ոչ թե մեղքը |
| 6:12-14 | | 6:12-14 | 6:12-14 | 6:12-14 |
| Արդարության ծառաներ | Մեղքի ծառայից Աստծո ծառա | Երկու տեսակի ծառայությունը | Արդարության ծառաներ | Մրիստոնյան ազատ է մեղքի ծառա լինելուց |
| 6:15-23 | 6:15-23 | 6:15-19 | 6:15-19 | 6:15-19 |
| | | | | Մեղքի վարձքը և սրբության վարձքը |
| | | 6:20-23 | 6:20-23 | 6:20-23 |

**ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ** (տես էջ **vii**)

*Հետևել բուն հեղինակի մտադրությանը պարբերությունների մակարդակով*

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած

լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Ճանաչիր թեմաները: Համեմատիր քո թեմայի բաժանումները վերը նշված 5 թարգմանությունների հետ: Բաժանումները ներշնչված չեն, բայց դա բանալի է հետևելու բուն հեղինակի մտադրությանը, որը մեկնաբանության սիրտն է: Յուրաքանչյուր պարագրաֆ ունի մեկ և միայն մեկ թեմա:

Մեկ շնչով կարդացեք այս գլուխը: Ուրվագծեք հիմնական թեմաներն ու թեման արտահայտեք մեկ նախադասությամբ:

1. Առաջին պարագրաֆ
2. Երկրորդ պարագրաֆ
3. Երրորդ պարագրաֆ
4. և այլն

**ԿՈՐՏԵՔՍՏՈՒԱԼ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ**

Ա. 6:1-8:39գլուխները կազմում են մտքի մի բաժին (գրական բաժին/մաս), որը կապված է/ գործ է ունենում քրիստոնեական հարաբերությունը մեղքի հետ: Սա շատ կարևոր հարց է, որովհետև ավետարանը հիմնված է ձրի անարժան Աստծո շնորհքի վրա Քրիստոսի միջոցով (3:21-5:21) ուստի, ինչպե՞ս է մեղքը ազդում/ներգործում հավատացյալի վրա: 6-րդ գլուխ հիմնված է երկու ենթադրյալ/կարծեցյալ հարցերի վրա, հհ. 1 և 15: Համար 1 կապված է/վերաբերում է 5:20, իսկ հ. 15 կապված է/վերաբերում է 6:14: Առաջինը վերաբերում է մեղքին որպես ապրելաոճ (ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ), երկրորդը մեղքի առանձին/մասնավոր գործողություններին (ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ); Ակնհայտ է նաև, որ հհ. 1-14 վերաբերում է հավատացյալի ազատությունը մեղքի իշխանությունից/տիրապետությունից, իսկ հհ. 15-23 վերաբերում է հավատացյալների ազատությանը Աստծուն ծառայելու համար, ինչպես սկզբում նրանք ծառայեցին մեղքին—ամբողջությամբ և ամբողջ սրտով:

Բ. Սրբացումը թե:

1. դիրք է/վիճակ (ինչպես արդարացումը փրկության ժամանակ, 3:21-5:21)

2. և թե Քիրստոսին նմանվելու գործընթաց

   ա. 6:1-8:39 արտահայտում է այս ճշմարտությունը աստվածաբանորեն

   բ. 12:1-15:13 արտահայտում է այն գործնականորեն (Տես հատուկ Թեմա 6:4)

Գ. Հաճախ մեկնաբանները պետք է աստվածաբանորեն բաժանեն արդարացման և սրբագործման թեման, որպեսզի օգնեն ընկալելու/ըմբռնելու նրանց աստվածաշնչյան իմաստները: Իրականում դրանք շնորհքի միաժամանակյա գործողություններ են (I Կոր. 1:30; 6:11): Մեխանիզմը երկուսի համար էլ նույնն է— Աստծո շնորհքը երևեցավ Հիսուսի կյանքի և մահվան մեջ, որը ընդունվում է հավատքով (հմմտ. Եփ. 2:8-9):

Դ. Այս գլուխը սովորեցնում է Քրիստոսում Աստծո զավակների պոտենցիալ/հնարավոր ամբողջական հասունությունը (անմեղություն, հմմտ. I Հովh. 3:6,9; 5:18): Գլուխ 7 և I Հովh. 1:8-2:1 ցույց են տալիս հավատացյալների շարունակական մեղանչելու իրականությունը:

Ընդհարումներից շատերը՝ ներման մասին Պողոսի տեսակետը շուրջ կապված էր բարոյականության հարցի հետ: Հրեաները ցանկանում էին հավաստիացնել աստվածահաճո կյանքը՝ պահանջելով, որ նորադարձները ենթարկվեն մովսեսական օրենքին: Պետք է համաձայնվել, որ ոմանք օգտագործեցին և օգտագործում են Պողոսի տեսկետները/կարծիքները, որպես մեղքի արտոնություն/թույլտվություն (հմմտ. հh. 1,15; II Պետ. 3:15-16): Պողոսը հավատում է, որ բնակվող Հոգին, ոչ որպես արտաքին օրենսգիրք/ծածկագիր, կստեղծի աստվածահաճո Քրիստոսանման հետևորդներ: Իրականում սա է տարբերությունը Հին ուխտի (հմմտ. 2 Օրին. 27-28) և Նոր ուխտի միջև (հմմտ. Եր. 31:31-34; Եզ. 36:26-27):

Ե. Մկրտությունը պարզապես ֆիզիկական պատկերում է արդարացման/սրբացման հոգևոր իրականություն: Հռոմեացիս գրքում երկու վարդապետություններն էլ թե վիճակ/դրություն սրբացում, (այսինքն այն պահին, երբ անձը ապաշխարում է սրբվում է) (արդարացում) և թե փորձառու սրբացումը, (այսինքն անձը իր կյանքի ընթացքում շարունակում է սրբվել) (Քրիստոսանման) երկուսն էլ ընդգծված են: Թաղվել Նրա հետ(հ. 4) զուգահեռ է «խաչվել Նրա հետ» (հ. 6):

Զ. Քրիստոնեայի կյանքում փորձությունն ու մեղքը հաղթահարելու բանալիներն են:

1. Իմացիր, թե ով ես դու Քրիստոսում: Իմացիր, թե ինչ է Նա արել քեզ համար: Դու ազատ ես մեղքից: դու մեռած ես մեղքին:
2. Հաշվիր քո դիրքը/վիճակը Քրիստոսում առօրյա կյանքի իրավիճակներում ինչպիսին է:

3. Մենք մեր սեփականությունը չենք: Մենք պետք է ծառայենք/հնազանդվենք մեր Տիրոջը: Մենք ծառայում/հնազանդվում ենք երախտագիտությունից ելնելով և սիրում Մեկին, ով սիրում է մեզ:
4. Քրիստոնեայի կյանքը գերբնական կյանք է: Այն, ինչպես փրկությունը, պարգև է Աստծուց Քրիստոսում: Նա նախաձեռնում է այն և մատակարարում/տալիս դրա զորությունը: Մենք պետք է արձագանքենք ապաշխարությամբ և հավատքով, թե սկզբում և թե շարունակաբար:
5. Մեղքի հետ խաղ մի արա: Անվանիր ինչպես, որ կա: Շրջվիր դրանից, փախիր դրանից: Մի զցիր քեզ փորձության մեջ:
6. Մեղքը կապվածություն է, որը կարող է կոտրվել/քանդվել, բայց այն ժամանակ է պահանջում, ջանք և ցանկություն/կամք:

## ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 6:1-7**
[1]Արդ ի՞նչ ասենք. մնա՞նք մեղքի մէջ, որ շնորհքը շատանայ:[2] Քաւ լիցի. մենք որ մեռանք
մեղքին, էլ ի՞նչպէս դեռ կապրենք նորանում:[3] Կամ չգիտէ՞ք թէ քանիներս որ Յիսուս
Քրիստոսով մկրտուեցանք՝ նորա մահուանը մկրտուեցանք:[4]Մկրտութիւնովը նորա հետ
թաղուեցանք մահի մէջ. որ ինչպէս Քրիստոսը Հօր փառքովը մեռելների միջից յարութիւն
առաւ, այնպէս մենք էլ կեանքի նորոգութեան մէջ ման գանք:[5]Որովհետեւ եթէ նորա մահի
նմանութիւնովը նորա հետ տնկուեցանք, ապա նորա յարութեանն էլ նման կլինինք:[6]Այս
գիտենալով, որ մեր հին մարդը նորա հետ խաչուեցաւ, որ մեղքի մարմինը խափանուի, որ այլ
եւս չծառայենք մեղքին:[7]Որովհետեւ նա որ մեռնում է՝ արդարացած է մեղքիցը:

**NASB (UPDATED) TEXT: 6:1-7**
[1]What shall we say then? Are we to continue in sin so that grace may increase? [2]May it never be!
How shall we who died to sin still live in it? [3]Or do you not know that all of us who have been baptized
into Christ Jesus have been baptized into His death? [4]Therefore we have been buried with Him through
baptism into death, so that as Christ was raised from the dead through the glory of the Father, so we too
might walk in newness of life. [5]For if we have become united with *Him* in the likeness of His death,
certainly we shall also be *in the likeness* of His resurrection, [6]knowing this, that our old self was
crucified with *Him*, in order that our body of sin might be done away with, so that we would no longer
be slaves to sin; [7]for he who has died is freed from sin.

**Արևելահայերեն «մնա՞նք մեղքի մէջ, որ շնորհքը շատանայ»**

**Արևմտահայերեն «մեղքի մէջ մնա՞նք արդեօք, որպէս զի շնորհքը շատնայ»**

**6:1**
**NASB “Are we to continue to sin that grace might increase”**

NKJV "Shall we continue in sin that grace may abound"
NRSV "Should we continue in sin in order that grace may abound"
TEV "That we should continue to live in sin so that God's grace will increase"
JB "Does it follow that we should remain in sin so as to let grace have greater scope"

Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է: Այն ուղղակի հարցնում է, քրիստոնեաները «ապրում ե՞ն» կամ «հարում ե՞ն» մեղքը: Այս հարցը ետ է նայում դեպի 5:20. Պողոսը նորից օգտագործում է ենթադրյալ ընդդիմություն (սուր քննադատություն) որպեսզի պաշտպանի ընթերցողներին սխալ հասկացողությունից և շնորհի կիրառությունից (հմմտ. I Հովհ. 3:6,9; 5:18): Աստծո շնորհքն ու ողորմությունը ոչ մի դեպքում չեն հանդիսանում Աստծուն անհնազանդ կյանքի թույլտվություն:

Չրի փրկության Պողոսի ավետարանը, որպես Աստծո շնորհքի պարգև Քրիստոսի միջոցով (հմմտ. 3:24; 5:15,17; 6:23) շատ հարցեր է բարձրացնում արդար կյանք ապրելու մասին: Ինչպե՞ս է ձրի պարգևը մարդու մեջ արտադրում բարոյական մաքրություն: Արդարությունն ու սրբացումը չպետք է բաժանվեն իրարից (հմմտ. Մաթ. 7:24-27; Ղուկ. 8:21; 11:28; Հովհ. 13:17; Հռ. 2:13; Հակ.1:22-25; 2:14-26):

Այս առումով թույլ տվեք մեջբերել Ֆ. Ֆ. Բրյուսի գրքից «Պողոս՝ սրտեր ազատագրող առաքյալ» (F. F. Bruce in *Paul: Apostle of the Heart Set Free*, ) «…քրիստոնյաների մկրտությունը սահման դրեց իրենց հին անապաշխար գոյության և Քրիստոսով իրենց նոր կյանքի միջև; սա նշանակում էր նրանց մեռած վիճակը՝ նախկին կյանքի նկատմամբ, այնպես որ մկրտված քրիստոնյան շարունակել մեղք գործել անհասկանալի էր, աբսուրդ էր , ինչպես ազատված ծառան մնալ իր նախկին տիրոջ մոտ ծառայության (հմմտ. Հռ. 6:1-4, 15-23) կամ ինչպես որբևայրին մնալ «իր ամուսնու օրենքի, ենթակայության տակ», էջ 281-82 (հմմտ. Հռ. 7:1-6):

Ջեյմս Ս. Ստյուարտի «Մարդը Քրիստոսի մեջ» գրքում նա գրում է (James S. Stewart's book, *A Man in Christ*, ): «Դասական տեքստը առաքյալների բոլոր մտքերի մասին գտնվում է Հռոմեացիս 6-րդ գլխում: Այնտեղ Պողոսը տարօրինակ ուժով և ջանքերով, հիասքանչ դաս է տալիս և սրտին և խղճին, բացատրելով, որ որպեսզի միվորված լինես Քրիստոսի հետ Իր մահվան մեջ հավատացյալի համար նշանակում է լիարժեք և վճռական բաժանում մեղքից» էջ 187-88:

**6:2 «Քաւ լիցի»** Սա հազվագյուտ օգտագործվող քերականական ձև է, ԲՂՁԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, որը արտահայտում էր ցանկություն կամ աղոթք: Դա Պողոսի ոճն էր՝ պատասխանելու ենթադրական ընդդիմությանը: Պողոսն արտահայտում էր իր ցնցումը և սարսափը այն գիտակցության, թե ինչպես են սխալ շնորհքը անհավատ մարդիկ (հմմտ. 3:4,6):

▣ **«որ մեռանք մեղքին»** Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է, նշանակում է «մենք մեռել ենք»: ԵԶԱԿԻ թվով «մեղք»-ը շատ հաճախ է օգտագործվում ամբող այս գլխում: Թվում է, թե դա վերաբերվում է Ադամից ժառանգած մեր

«մեղավոր բնությանը» (հմմտ. Հռ. 5:12-21; I Կոր. 15:21-22): Պողոսը հաճախ օգտագործում է մահվան գաղափարը որպես փոխաբերություն ցույց տալու համար հավատացյալի նոր հարաբերությունը Հիսուսի հետ: Նրանք այլևս ենթակա չեն մեղքի իշխանությանը:

▣ **«էլ ի՞նչպէս դեռ կապրենք նորանում»** Սա բառացիորեն «քայլել» է: Այս փոխաբերությունը օգտագործվում էր շեշտելու կամ մեր հավատքի կյանքը (հմմտ. Եփ. 4:1; 5:2,15) կամ էլ մեղքի կյանքը (հմմտ. 4): Հավատացյալները չեն կարող ուրախ ապրել մեղքի մեջ:

**6:3-4 «մկրտուեցանք. . . թաղուեցանք»** Սրանք երկուսն էլ ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ են: Այս քերականական ձևը ընդգծում է ավարտված գործողություն կատարված, դրսից ինչ որ մեկի կողմից, այստեղ Հոգին է: Այս կոնտեքստում նրանք զուգահեռներ են:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՄԿՐՏՈՒԹՅՈՒՆ**

Կուրտիս Վաուգհանի «Գործք Առաքելոց» գրքում (Curtis Vaughan, *Acts*, ) էջ 28, կա հետաքրքիր մի ծանոթագրություն.

«Հունարեն բառը «մկրտված, մկրտել» բառը արտահայտված է երրորդ դեմքով և հրամայական եղանակով; «ապաշխարել» բառը երկրորդ դեմք հրամայական եղանակով: Այս փոփոխությունը երկրորդ դեմքի ավելի ուղղակի պատվերից դեպի ավելի քիչ ուղիղ երրորդ դեմքի «մկրտվել» պատվերին, ենթադրում է, որ Պետրոսի հիմնական պահանջը ապաշխարությունն էր, որը իր համար առաջնակարգ էր:

Սա համապատասխանում է քարոզչության հիմնական թեմային թե Հովհաննես Մկրտիչի (հմմտ. Մաթ. 3:2) և թե Հիսուսի (հմմտ. Մաթ. 4:17): Ապաշխարությունը հոգևորության բանալին է իսկ մկրտությունը այս հոգևոր փոփոխության արտաքին արտահայտման ձևն է: Նոր Կտակարանում չկան չմկրտված հավատացյալներ: Վաղ եկեղեցու մկրտությունը հրապարակավ հավատքի խոստովանությունն է: Այն առիթ է հրապարակավ հավատքի խոստովանության Քրիստոսին, ոչ թե մեխանիզմ փրկության համար: Պետք է հիշել, որ Պետրոսի 2-րդ քարոզի մեջ չի նշվում մկրտությունը, բայց ապաշխարության մասին այո (հմմտ. 3:19; Ղուկ. 24:17): Քրիստոսը օրինակ եղավ նաև մկրտության մեջ (հմմտ. Մաթ. 3:13-18): Մկրտությունը պատվիրված էր Հիսուսի կողմից (հմմտ. Մաթ. 28:19): Նոր Կտակարանում ոչ մի տեղ հարց չի առաջանում մկրտության մասին, ենթադրվում է, որ բոլոր հավատացյալները կմկրտվեն: Ինչևէ, պետք է զգուշանալ մկրտությանը խորհրդաոր իմաստ տալուց կամ ձևական, ֆորմալ բնույթ

տալուց: Փրկությունը դա հավատքի արդյունք է, և ոչ թե, որ մարդը ճիշտ տեղում հայտնվեց, ճիշտ խոսքեր ասաց կամ էլ ճիշտ ծեսը կատարեց:

▣ **«Յիսուս Քրիստոսով»** Այստեղ *eis* (մեջ) նախդիրի կիրառությունը Մաթ.28:19-ի Մեծ Պատվիրանի հետ, որտեղ նորադարձները մկրտվում են *eis* (մեջ) Հոր, Որդու և Սուրբ Հոգու անունով: I Կոր. 12:13-ում այս ՆԱԽԴԻՐԸ նաև օգտագործվում է նկարագրելու համար հավատացյալների մկրտությունը Սուրբ Հոգով Քրիստոսի մարմնի մեջ: *Eis* –ը այս կոնտեքստում հոմանիշ է *en*-ին (Քրիստոսում) հ. 11, որը Պողոսի սիրած ձևն էր հավատացյալների մասին խոսելիս: Սա ներգոյական հոլովի LOCATIVE OF SPHERE: Հավատացյալները ապրում և շարժվում են և գոյություն ունեն Քրիստոսում: Այս ՆԱԽԴԻՐՆԵՐԸ արտահայտում են այս մտերմիկ միությունը, այս հաղորդակցության ոլորտը, այս որթատունկի և ճյուղերի կապը: Հավատացյալները նույնացվում և մանում են Քրիստոսին Իր մահով, Իր հարությամբ, Իր հնազանդությունով Աստծուն ծառայելով և Իր Թագավորությամբ:

▣ **«նորա մահուանը… նորա հետ թաղուեցանք»** Մկրտությունը ամբողջությամբ թաղվելով ջրի մեջ պատկերում է մահն ու թաղումը (հմմտ. հ. 5 և Կող. 2:12): Հիսուսն օգտագործեց մկրտությունը որպես փոխաբերություն Իր մահվան համար (հմմտ. Մարկ. 10:38-39; Ղուկ. 12:50): Այստեղ շեշտը մկրտության վարդապետության վրա չէ, այլ քրիստոնյայի նոր, Քրիստոսի մահվան և թաղման մտերմիկ հարաբերության վրա: Հավատացյալները նույնացնում են իրենց Քրիստոսի մկրտությունով, Նրա բնավորությամբ, Նրա զոհով և Նրա առաքելությունով: Մեղքն այլևս իշխանություն չունի հավատացյալների վրա:

**6:4 «Մկրտութիւնովը նորա հետ թաղուեցանք մահի մէջ»** Այս գլխում Պողոսը, ինչը բնորոշ է իր բոլոր գրվածքներին, շատ է օգտագործում *sun* (հետ, միասին) նախդիրները.

1. *sun* + *thaptō* = թաղվել համարտեղ, հ. 4; Կող. 2:12; նաև տես հ. 8
2. *sun* + *stauroō* = տնկվել համատեղ, հ. 5
3. *sun* + *azō* = համատեղ կյանք, հ. 8; II Տիմ. 2:11 (նաև և մահ և թագավորություն միասին)

▣ **«այնպէս մենք էլ կեանքի նորոգութեան մէջ ման գանք»** Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է: Սրբացումը փրկության սպասված արդյունքն է: Քանի որ հավատացյալները ճանաչում են Աստծո շնորհքը Քրիստոսի միջոցով, ապա նրանց կյանքը պետք է տարբեր լինի: Մեր նոր կյանքը մեզ փրկություն չի բերում, այլ այն

փրկության արդյունքն է (հմմտ. հհ. 16, 19; և Եփ. 2:8-9,10; Հակ. 2:14-26): Սա կամ- կամ-ի հարց չէ, հավատք թե գործեր, այլ կա մարդու փոխված կյանքի տրամաբանական շարունակությունը:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՍՐԲԱՑՈՒՄ**

Նոր Կտակարանը պնդում է, որ երբ մեղավորը դարձի է գալիս դեպի Հիսուսը՝ ապաշխարելով և հավատալով, նա մեկ ակնթարթում, անմիջապես արդարացվում և սրբվում է: Սա նրա նոր դիրքն է Քրիստոսում: Նրա արդարությունը դրվում է նորադարձի վրա (Հռ. 4): Նա հռչակվում է արդար և սուրբ (Աստծո կողմից ընդունված դատական որոշումը):

Բայց Նոր Կտակարանը նաև ստիպում է հավատացյալներին սրբացման ընթացքը պահել: Սա թե աստվածաբանական դիրք է Հիսուս Քրիստոսի կատարած գործի միջոցով և թե կոչ է քրիստոսանման լինելու վարքով և գործերով առօրյա կյանքում: Եթե փրկությունը ձրի պարգև է և նոր, հիանալի և անգին ապրելակերպ, ապա նաև սա նույնն է սրբության համար:

| **Առաջին արձագանքը, ապաշխարության պահը** | <u>**Աստիճանաբար քրիստոսանման դառնալը**</u> |
|---|---|
| Գործք 20:23; 26:18 | Հռոմեացիս 6:19 |
| Հռոմեացիս 15:16 | II Կորնթացիս 7:1 |
| I Կորնթացիս1:2-3; 6:11 | I Թեսաղոնիկեցիս 3:13; 4:3-4,7; 5:23 |
| II Թեսաղոնիկեցիս 2:13 | I Տիմոթեոս 2:15 |
| Եբրայեցիս 2:11; 10:10,14; 13:12 | II Տիմոթեոս 2:21 |
| I Պետրոս 1:1 | Եբրայեցիս 12:14 |
| | I Պետրոս 1:15-16 |

▣ **«Քրիստոսը մեռելների միջից յարութիւն առաւ»** Այս կոնտեքստում Հոր ընդունելությունը և հաստատումը, հավանությունը Իր Որդու խոսքերի և գործերի՝ արտահայտված է երկու մեծ իրադարձություններում

1. Հիսուսի հարությունը մեռելներից
2. Հիսուսի համաբարձումը և Հոր աջ կողմում լինելը

▣ **«Հօր փառքովը»** «փառք»-ի համար տես Հատուկ Թեմա 3:23: «Հայր» տես Հատուկ Թեմա 1:7:

**6:5 «եթէ»** Այստեղ ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է, որը ենթադրվում է ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակների համար: Պողոսը ենթադրում էր, որ իր ընթերցողները հավատացյալներ էին:

▣ **«նորա հետ տնկուեցանք»** Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ ԿԱՏԱՐՅԱԼ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ-ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է, որը կարող էր թարգմանվել «եղել և շարունակում են իրար միացած մնալ» կամ «եղել և շարունակում են տնկված լինել իրար հետ»: Այս ճշմարտությունը աստվածաբանորեն նման է «մնալ, ապրել» Հովհ.15: Եթե հավատացյալները ճանաչվել կամ նույնացվել են Հիսուսի մահվան հետ (հմմտ. Գաղ. 2:19-20; Կող. 2:20; 3:3-5), ապա աստվածաբանորեն նրանք պետք է մեկ լինեն Նրա հարուցյալ կյանքի հետ (հմմտ. հ. 10):

Մկրտության վերաբերյալ այս փոխաբերությունը, որպես մահ նշանակում էր և ցույց էր տալիս (1) մենք մեռել ենք հին կյանքի համար, հին ուխտին, (2) մենք կենդանի ենք Հոգու համար , նոր ուխտին: Քրիստոնեական մկրտությունը նույնը չէ ինչ Հովհաննես Մկրտիչի մկրտությունը, որը Հին Կտակարանի վերջին մարգարեն էր: Մկրտությունը վաղ եկեղեցու հնարավորությունն էր նորադարձի համար հրապարակավ իր հավատքը դավանելու համար: Մկրտության ամենավաղ ֆորմուլան, որը պիտի կրկնվեր թեկնածուի կողմից մկրտության պահին, այս էր «Ես հավատում եմ, որ Հիսուսը Տեր է» (հմմտ. Հռ. 10:9-13): Այս հրապարակային հռչակումը արտաքին երևույթ էր, ծիսական գործողություն այն բանի, ինչ որ նախկինում տեղի էր ունեցել մարդու կյանքում: Մկրտությունը <u>միջոց</u> չէ ներում, փրկություն կամ Սուրբ Հոգի ստանալու միջոց, այլ <u>հնարավորություն</u> հրապարակավ իրենց հավատքը խոստովանելու և դավանելու (հմմտ. Գործք 2:38): Բայց և այնպես, սա անպարտադիր չէր: Հիսուսը պատվիրեց այն (հմմտ. Մաթ. 28:19-20), և Ինքն էլ օրինակ ծառայեց (հմմտ. Մաթ. 3; Մարկ. 1; Ղուկ. 3):

**Արևելահայերեն «գիտենալով, որ մեր հին մարդը նորա հետ խաչուեցաւ»**
**Արևմտահայերեն «Այս գիտնանք թէ մեր հին մարդը անոր հետ խաչուեցաւ »**

**6:6**
**NASB** “knowing this, that our old self was crucified with Him”
**NKJV** “knowing this, that our old man was crucified with him”
**NRSV** “We know that our old self was crucified with him”
**TEV** “And we know this: our old being has been put to death with Christ on his cross”
**JB** “We must realize that our former selves have been crucified with him”

Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, որը նշանակում է «մեր հին ես-ը խաչվել է մեկընդմիշտ Սուրբ Հոգով»: Այս ճշմարտությունը հանդիսանում է գլխավոր բան հաղթական քրիստոնեական կյանքի համար: Հավատացյալները

պետք է գիտակցեն իրենց նոր հարաբերությունը մեղքի հանդեպ (հմմտ. Գաղ. 2:20; 6:14): Մարդու հին, ընկած, մեղավոր էությունը (Ադամական բնություն) մեռել է Քրիստոսի հետ (հմմտ. հ. 7; Եփ. 4:22 և Կող. 3:9): Որպես հավատացյալ մենք հիմա ունենք ընտրություն մեղքն ընտրելու մեջ, ինչպես Ադամն ուներ սկզբում:

**Արևելահայերեն «որ մեղքի մարմինը խափանուի»**

**Արևմտահայերեն « որ մեղաւոր մարմինը փճանայ »**

▣

**NASB, NKJV "that our body of sin might be done away with"**
**NRSV "so that the body of sin might be destroyed"**
**TEV "in order that the power of the sinful self might be destroyed"**
**JB "to destroy the sinful body"**

Պողոսն օգտագործում է «մարմին» (*soma*) բառը մի քանի արտահայտություններում ՍԵՌԱԿԱՆ ՀՈԼՈՎ-ով

1. մեղքի մարմինը, Հռ. 6:6
2. այս մահի մարմինը, Հռ. 7:24
3. մարմնական մարմինը, Կող. 2:11

Պողոսը խոսում է այս մեղքի և ապստամբ ժամանակաշրջանի ֆիզիկական կյանքի մասին: Հիսուսի նոր հարուցյալ մարմինը արդարության նոր դարի մարմինն է (հմմտ. II Կոր. 5:17): Ֆիզիկական լինելը չէ խնդիրը (ինչպես հունարեն փիլիսոփայության մեջ),այլ մեղքն ու ըմբոստությունը: Մարմինը չար չէ: Քրիստոնեությունը պնդում է հավատք մարդկանց գոյությունը ֆիզիկական մարմնով նաև հավիտենականության մեջ (հմմտ. I Կոր. 15): Ինչևէ, ֆիզիկական մարմինը ռազմի դաշտ է փորձության, մեղքի և ես-ի համար:

Այս արտահայտության մեջ օգտագործված է ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ: Արտահայտությունը, անգլերենում այսպես հնչող «done away with» (ոչնչացնել, բնաջնջել) նշանակում էր «չգործող դարձնել», «անզոր անել» կամ «անարդյունավետ դարձնել, բայց ոչ կործանված հիմնահատակ: Այս բառը Պողոսի ամենասիրելի խոսքերից մեկն էր, որն օգտագործված է ավելի քան 25 անգամ: Տես հատուկ թեմա 3:3: Մեր ֆիզիկական մարմինը բարոյապես չեզոք է, բայց այն նաև ռազմադաշտ է հոգևոր շարունակական կոնֆլիկտի համար (հմմտ. հհ. 12-13; 5:12-21; 12:1-2):

**6:7 «նա որ մեռնում է՝ արդարացած է մեղքից»** Այստեղ ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ԴԵԲԱՅ Է կամ ԿԱՏԱՐՅԱԼ/ՎԱՂԱԿԱՏԱՐ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, որը նշանակում է «նա ով մեռել է եղել և շարունակում է ազատ լինել մեղքից»: Քանի որ հավատացյալները նոր արարածներ են Քրիստոսով, նրանք եղել և

շարունակում են  ազատված լինել մեղքի և ես-ի գերությունից, որը ժառանգել էին Ադամի անկումից (հմմտ. 7:1-6):

Հունարեն տերմինը այստեղ թարգմանված որպես «ազատված» սկզբի գլուխներում մի քանի ուրիշ տարբերակներում թարգմանված է որպես «արդարացած» (ASV): Այս կոնտեքստում «ազատված» թարգմանությունն է  էլ ավելի իմաստ տալիս (նման, թե ինչպես է օգտագործված Գործք 13:38): Հիշեք, որ բառի իմաստը կոնտեքստն է որոշում, և ոչ թե բառարանը կամ ներկա տեխնիկական սահմանումը:  Բառերը ստանում են իրենց վերջնական իմաստը միայն նախադասության մեջ իսկ նախադասությունն էլ միայն ունի իմաստ բաժնի, հատվածի մեջ:

**Արևելահայերեն  Աստվածաշունչ Գլուխ 6:8-11**
[8] Եւ եթէ Քրիստոսի հետ մեռանք, հաւատում ենք՝ որ նորա հետ էլ կապրենք:[9] Գիտենալով որ՝ Քրիստոսը մեռելների միջից յարութիւն առած լինելով, այլ եւս չէ մեռնում, եւ մահը նորա վերայ այլ եւս չէ տիրում: [10] Որովհետեւ այն որ մեռաւ՝ մեղքին մեռաւ մէկ անգամ, եւ այն որ կենդանի է՝ Աստուծուն է կենդանի:[11] Նոյնպէս էլ դուք ձեր անձերը մեղքին մեռած համարեցէք, եւ Աստուծուն  կենդանի՝ մեր Տէր Քրիստոս Յիսուսի ձեռովը:

NASB (UPDATED) TEXT: 6:8-11
[8]Now if we have died with Christ, we believe that we shall also live with Him, [9]knowing that Christ, having been raised from the dead, is never to die again; death no longer is master over Him. [10]For the death that He died, He died to sin once for all; but the life that He lives, He lives to God. [11]Even so consider yourselves to be dead to sin, but alive to God in Christ Jesus.

**6:8 «եթէ»** Այստեղ ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է, որը ենթադրվում է ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակների համար: Հավատացյալի մկրտությունը դա տեսանելի պնդում է այն, որ այդ մարդը մեռել է Քրիստոսի հետ:

▣ **«նորա հետ էլ կապրենք»** Այս կոնտեքստը պահանջում է, որ այս արտահայտության իմաստը տարածվեր և «այստեղ և հիմա» (հմմտ. I Հովh. 1:7), և ոչ միայն բացառապես  ապառնի ժամանակի:  Համար 5-ը խոսում է այն մասին, որ մենք կիսում ենք Քրիստոսի մահը Իր հետ, այն ինչ համար 8-ը պնդում է նույն բանը կապված մեր կյանքի հետ Նրա հետ:  Նույն կապը կա նաև Աստծո Թագավորության աստվածաշնչյան գաղափարի մեջ:  Անշուշտ այն վերբերում է հավատացյալի կյանքին այստեղ և հիմա, և միևնույն ժամանակ մեր ապագային: Մարդուն տրված ձրի շնորհի պարգևը  պետք է արտադրի ինքնակառավարում, և ոչ թե արտոնություն հանդիսանա:

**6:9 «մեռելների միջից յարութիւն առած լինելով»** Սա ԱՈՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿԻ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է (տես 6:4, ԱՈՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ):

Նոր Կտակարանը պնդում է, որ Երրորդության բոլոր երեք անձերն էլ գործել են Հիսուսի հարության ժամանակ (1) Հոգին (հմմտ. Հռ. 8:11); (2) Որդին (հմմտ. Հովh. 2:19-22; 10:17-18); և ավելի հաճախակի (3) Հայրը (հմմտ. Գործք 2:24,32; 3:15,26; 4:10; 5:30; 10:40; 13:30,33,34,37; 17:31; Հռ. 6:4,9): Հոր գործողությունը հաստատում էին, որ Նա ընդունում է Հիսուսի կյանքը, մահն ու ուսմունքները: Այս ամենը շատ կարևոր էր վաղ եկեղեցու առաքյալների քարոզների մեջ: Տես Հատուկ Թեմա: «*Kerygma»* 2:14.

**Արևելահայերեն «մահը նրա վերայ այլ եւս չէ տիրում»**
**Արևմտահայերեն « ալ մահը անոր վրայ իշխանութիւն չունի »**

▣

**NASB "death no longer is master over Him"**
**NKJV, NRSV "Death no longer has dominion over Him"**
**TEV "death will no longer rule over him"**
**NJB "Death has no power over him anymore"**

*kurieuō* ԲԱՅ-ը ձևավորվել է *kurios* բառից, որը նշանակում է «սեփականատեր», «տեր», «ամուսին» կամ «պարոն»: Հիսուսն հիմա տեր է մահվան վրա (հմմտ. Հայտ. 1:18): Հիսուսն առաջինննէ, Ով կոտրեց մահվան զորությունը (հմմտ. I Կոր. 15):

**6:10 «Որովհետեւ այն որ մեռաւ՝ մեղքին մեռաւ»** Հիսուսն ապրեց մեղավոր աշխարհում, և չնայած Նա չմեղանչեց, մեղավոր աշխարհը խաչեց Նրան (հմմտ. Եբ. 10:10): Հիսուսի փոխարփոխանորդ մահը մարդու օգտի համար չեղյալ համարեց Օրենքի պահանջներն ու հետևանքները նրանց վրա (հմմտ. Գաղ. 3:13; Կող. 2:13-14):

▣ **«մէկ անգամ»** Այս կոնտեքստում Պողոսն ընդգծում է Հիսուսի խաչելությունը: Նա մեկ անգամ մեռավ <u>մեղքի համար</u> բայց Իր մահը թողեց այնպիսի ազդեցություն, որ բոլոր Իր հետևորդները մեռան <u>մեղքի համար/մեղքին</u>:

Եբրայեցիս թուղթը նաև ընդգծում է Հիսուսի մեկ անգամ կատարած զոհաբերական մահվան ultimacy: Այս մեկ անգամ կատարած փրկությունն ու ներումը հավիտյան իրականացավ և ամբողջացավ (հմմտ. «մեկ անգամ» [*ephapax*], 7:27; 9:12; 10:10 և «մեկ անգամ և ընդմիշտ»

[*hapax*], 6:4; 9:7,26,27,28; 10:2; 12:26,27): Սա պարբերաբար կրկնվոր նորկտակարանյան պնդում է Քրիստոսի զոհի ամբողջության մասին:

▣ **«այն որ կենդանի է՝ Աստուծուն է կենդանի»** Երկու ԱՕՐԻՍՏ ժամանակաձևի բայերը հ. 10ա հակասում են ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿԻ երկու բայերին հ. 10բ: Հավատացյալները մեռան Քրիստոսի հետ և հավատացյալներն ապրում են Աստծո համար Քրիստոսի միջոցով: Ավետարանի նպատակը միայն ներումը չէ (արդարացում) այլ Աստծուն ծառայելը (սրբացում): Հավատացյալները փրկված են ծառայելու համար:

**6:11 «Նոյնպէս էլ դուք ձեր անձերը մեղքին մեռած համարեցէք»** Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՉԵԶՈՔ ՍԵՌ (deponent) ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է: Սա շարունակական ր հավատացյալների համար սովորական դարձած պատվեր է: Քրիստոնյաներն իմանալով, թե ինչ արեց Քրիստոսն իրենց համար որոշիչ դեր ունի նրանց առօրյա կյանքում: «Համարեցեք» տերմինը (հմմտ. 4:4,9), օգտագործվում էր հաշվապահական տերմինաբանության մեջ, որը նշանակում էր «ուշադիր/զգուշորեն գումարել, հանրագումարի բերել» իսկ այնուհետև վարվել ելնելով դրանից: Համարներ 1-11-ը ցույց են տալիս հավատացյալի դիրքը Քրիստոսում (դիրքային սրբացում) իսկ 12-13 հատուկ ուշադրություն է տալիս Նրա մեջ քայլելու, ապրելուն, թե ինչպես է քրիստոնյան ապրում՝ լինելով Քրիստոսի մեջ (պրոգրեսիվ,առաջընթացող սրբացում): Տես Հատուկ Թեմա հ. 4:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 6:12-14**
12 Սորա համար թող մեղքը չթագաւորէ ձեր մահկանացու մարմնի մեջ, որ հնազանդիք նորա ցանկութիւններին: 13 Եւ ձեր անդամները անիրաւութեան գործիք մի ներկայացնէք մեղքին. այլ ձեր անձերը ներկայացրէք Աստուծուն՝ ինչպէս մեռելներից կենդանացածներ, եւ ձեր անդամներն արդարութեան գործիք՝ Աստուծուն. 14 Որովհետեւ մեղքը չի տիրիլ ձեզ վերայ. որովհետեւ օրէնքի տակ չէք, այլ շնորհքի տակ:

**NASB (UPDATED) TEXT: 6:12-14**
12Therefore do not let sin reign in your mortal body so that you obey its lusts, 13and do not go on presenting the members of your body to sin as instruments of unrighteousness; but present yourselves to

**God as those alive from the dead, and your members *as* instruments of righteousness to God. [14]For sin shall not be master over you, for you are not under law but under grace.**

**6:12 «Սորա համար թող մեղքը չթագաւորէ ձեր մահկանացու մարմնի մեջ»** Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿ-ով, որը սովորաբար նշանակում է արդեն իսկ գործընթացի մեջ եղող գործողության դադար: «Թագավորել» տերմինը կապված է 5:17-21 և 6:23-ի հետ: Պողոսը անձնավորում է/մարմնացնում է մի քանի աստվածաբանական գաղափարներ (1) մահը թագավորեց որպես թագավոր (հմմտ. 5:14,17; 6:23); (2) շնորհքը թագավորեց որպես թագավոր (հմմտ. 5:21); և (3) մեղքը թագավորեց որպես թագավոր (հմմտ. 6:12,14): Իրականում հարցը սա է, ո՞վ է թագավորում քո կյանքում: Հավատացյալն ունի Քրիստոսով զորություն ճիշտ ընտրություն կատարելու: Անհատի, տեղական եկեղեցու և Աստծո Թագավորության ողբերգությունն այն է, երբ հավատացյալներն ընտրում են ես-ն ու մեղքը, նույնիսկ իր իրավունքները շնորհքին հանձնալ լինելով:

**6:13 «ձեր անդամները անիրաւութեան գործիք մի ներկայացնէք մեղքին»** Այստեղ նույնպես ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿ-ով, որը սովորաբար նշանակում է արդեն իսկ գործընթացի մեջ եղող գործողության դադար: Սա ցույց է տալիս, որ հավատացյալները մեղք գործելու ներուժ, պոտենցյալ ունեն (հմմտ. 7:1; I Հովh. 1:8-2:1): Բայց մեղանչելու անհրաժեշտությունը վերանում է երբ հավատացյալը ճիշ հարաբերության մեջ է Քրիստոսի հետ, hh. 1-11:

▣ **«գործիքներ»** Այս տերմինը վերաբերում է «զինվորական զենքերին»: Մեր ֆիզիկական մարմինը ռազմադաշտ է փորձությունների համար (հմմտ. hh. 12-13; 12:1-2; I Կոր. 6:20; Փիլ. 1:20): Բայց մեր կյանքը բաց Ավետարան է բոլորի համար:

▣ **«այլ ձեր անձերը ներկայացրէք Աստուծուն»** Այստեղ ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է, որը կոչ էր մարդու կյանքում կարևոր որոշում կայացնելու համար: Հավատացյալները սա անում են հավատքով ապաշխարության/փրկության ժամանակ, բայց նրանք պետք է շարունակեն դա անել իրենց կյանքի ընթացքում:

Ուշադրություն դարձրեք այս համարի զուգահեռականությանը

1. նույն ԲԱՅԸ և երկու դեպքում էլ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿՈՎ
2. պատերազմական փոխաբերություն

ա. անիրավության գործիք/զենք

բ. արդարության գործիք/զենք

3. հավատացյալները կարող են իրենց մարմինները ներկայացնել մեղքին կամ ամբողջությամբ տրվել Աստծուն:

Հիշեք, որ այս համարը վերաբերվում է հավատացյալներին՝ անհրաժեշտ ընտրությունը պահպանվում է, պատերազմը շարունակվում է:

**6:14 «Որովհետեւ մեղքը չի տիրիլ ձեզ վերայ.»** Այստեղ ԱՊԱՌՆԻ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է (հմմտ. Սաղ. 19:13) բայց կատարում է ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿԻ ԴԵՐ, «մեղքը չպետք է տիրի ձեր վրա»: Մեղքը չի տիրում հավատացյալների վրա, որովհետև նա չի տիրում Քրիստոսի վրա (հմմտ. հ. 9; Հովh. 16:33):

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 6:15-19**
15Արդ ի՞նչ. մե՞ղք գործենք, որովհետեւ օրէնքի տակ չենք՝ այլ շնորհքի տակ. քավ լիցի:16 Դուք չգիտէ՞ք, թէ ում որ ձեր անձերը ծառայ էք ներկայացնում՝ նորան հնազանդելու, ծառաներ էք նորան որին հնազանդում էք. թէ մեղքին՝ դէպի մահ, եւ թէ հնազանդութեան՝ դէպի արդարութիւն: 17Բայց շնորհակալութիւն Աստուծոյ. որ մեղքի ծառայ էիք, բայց սրտով հնազանդեցիք այն վարդապետութեան օրինակին՝ որին յանձնուեցաք:18Ուրեմն դուք մեղքից ազատուած՝ ծառայեցիք արդարութեանը:19Մարդկօրէն եմ ասում ձեր մարմնի տկարութեան համար. որ ինչպէս ձեր անդամները ծառայ ներկայացրիք պղծութեանն ու անօրէնութեանը՝ անօրէնութեան համար, նոյնպէս էլ հիմա ձեր անդամները ծառայ ներկայացրէք արդարութեանը սրբանալու համար:

**NASB (UPDATED) TEXT: 6:15-19**
**15What then? Shall we sin because we are not under law but under grace? May it never be! 16Do you not know that when you present yourselves to someone *as* slaves for obedience, you are slaves of the one whom you obey, either of sin resulting in death, or of obedience resulting in righteousness? 17But thanks be to God that though you were slaves of sin, you became obedient from the heart to that form of teaching to which you were committed, 18and having been freed from sin, you became slaves of righteousness. 19I am speaking in human terms because of the weakness of your flesh. For just as you presented your members as slaves to impurity and to lawlessness, resulting in *further* lawlessness, so now present your members as slaves to righteousness, resulting in sanctification.**

**6:15** Այս երկրորդ ենթադրյալ հարցը (սուր քննադատություն) շատ նման է 6:1-ին: Երկուսն էլ պատասխանում են տարբեր հարցերի՝ քրիստոնյայի կապը մեղքի հետ: Համար 1-ը խոսում է այն մասին, որ շնորհքը չի կարելի ընդունել որպես մեղանչելու թույլտվություն, երբ հ. 15-ում խոսքը գնում է քրիստոնյայի համար մեղքի դեմ պայքարելու, դրան հակառակ կենալու

անհրաժեշտության մասին: Այն ինչ, հիմա քրիստոնյան պետք է ծառայի Աստծուն նույն եռանդով և խանդավառությամբ, ինչպես նախկինում ծառայում էր մեղքին (հմմտ. 6:14):

**Արևելահայերեն «մե՞ղք գործենք»**

**Արևմտահայերեն «մե՞ղք գործենք»**

▣

**NASB, NKJV,**
**TEV "Shall we sin"**
**NRSV "Should we sin"**
**JB "that we are free to sin"**

Վիլիամսի և Ֆիլիպսի թարգմանությունները, երկուսն էլ այս ԱՕՐԻՍՏ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ. ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿԸ թարգմանում են որպես ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ. ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿԸ, ինչպես հ. 1-ում: Բայց սա չի կարելի հավաստի համարել: Ուշադրություն դարձրեք թարգմանության այլընտրանքային տարբերակներին (1) KJV, ASV, NIV - «մեղք գործե՞նք»; (2) «Centenary» թարգմանության հրատարակչություն [The Centenary Translation] - «Մեղավոր գործեր կգործե՞նք»; (3) RSV - «պարտավոր ե՞նք մեղք գործելու»: Հունարեն տարբերակում այս հարցը ունի բավականին ուժեղ շեշտադրություն և ակնկալում է դրական պատասխան: Սա Պողոսի ճշմարտությունը հաղորդելու սուր քննադատական մեթոդն էր: Այս համարը արտահայտում է կեղծ աստվածաբանություն: Պողոսը պատասխանում է իրեն հատուկ ձևով «Քավ լիցի»: Շատ կեղծ վարդապետներ չէին հասկանում և աղավաղում էին Պողոսի ավետարանը կապված բացարձակապես ձրի Աստծո շնորհքի պարգևի հետ:

**6:16** Հարցն ակնկալում է դրական պատասխան «այո»: Մարդիկ ծառայում են ինչ որ բանի կամ ինչ որ մեկին: Ո՞վ է թագավորում քո կյանում, մեղքը թե՞ Աստված: Ում մարդիկ հնազանդվում են նրան էլ ծառայում են (հմմտ. Գաղ. 6:7-8):

**6:17 «Բայց շնորհակալութիւն Աստուծոյ»** Պողոսը հաճախ ընդհատում է իր քննարկումը՝ Աստծուն փառաբանելու համար: Նրա գրվածքները սկիզբ են առնում իր աղոթքներից, իսկ իր աղոթքներն էլ իր ավետարանի իմացությունից: Տես Հատուկ Թեմա: Պողոսի աղոթքը, փառաբանությունը և գոհությունը 7:25.

▣ **«էիք. . .հնազանդեցիք»** Այստեղ «լինել» ԲԱՅ-ի ԱՆԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿԻՆ, որը նկարագրում է նրանց իրավիճակը և դիրքը անցյալում (մեղքի ծառա), հետևում է «դառնալ» ԲԱՅ-ի ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿԸ, որը պնդում է, որ իրենց ամպստամբ վիճակը ավելացել է:

▣ **«Բայց սրտով հնազանդեցիք այն վարդապետութեան օրինակին»** Կոնտեքստում, սա վերաբերում է նրանց հավատքով արդարացմանը, որը պետք է տանի դեպի ամենօրյա քրիստոսանմանություն: «Վարդապետություն» տերմինը վերաբերվում էր Առաքյալների ուսմունքին կամ ավետարանին:

▣ **«սիրտ»** Տես Հատուկ Թեմա: Սիրտ 1:24

**Արևելահայերեն «հնազանդեցիք այն վարդապետութեան օրինակին»**
**Արևմտահայերեն «հնազանդեցաք այն վարդապետութեան գաղափարին»**

▣

| | |
|---|---|
| NASB | "that form of teaching to which you were committed" |
| NKJV | "that form of doctrine to which you were delivered" |
| NRSV, NIV | "to the form of teaching to which you were entrusted" |
| TEV | "the truth found in the teaching you received" |
| NJB | "to the pattern of teaching to which you were introduced" |

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՁԵՎ, ԿԵՐՊԱՐԱՆՔ, ՏԵՍԱԿ (*TUPOS*)**

Խնդիրը *tupos* բառն է, որն ունի զանազան գործածություններ.

1. Մոուլտոն և Միլլիգան, «Հունարեն Նոր Կտակարանի բառարան», էջ 645 [Moulton and Milligan, *The Vocabulary of the Greek New Testament*, p. 645]

ա. օրինակ

բ. պլան

գ. ձև կամ միջոց, ոճ նամակի

դ. որոշում, վճիռ կամ հրաման, հրովարտակ

ե. վճիռ կամ որոշում

զ. մարդու մարմնի կառուցվածք, որպես զոհաբերության ծես բժշկող աստծուն

է. բայ, իմաստն ավելի ամրապնդելու համար օրենքի որոշակի դիրքում

1. Լաուվ և Նիդա, «Հունարեն-Անգլերեն բառարան», հատ.2, էջ 249 [Louw and Nida, *Greek-English Lexicon*, vol. 2, p. 249]

ա. սպի, (հմմտ. Հովh. 20:25)

բ. պատկեր (հմմտ. Գործք 7:43)

գ. մոդել (հմմտ. Եբր. 8:5)

դ. օրինակ (հմմտ. I Կոր. 10:6; Փիլ. 3:17)

ե. նախատիպ (հմմտ. Հռ. 5:14)

զ. կեսակ (հմմտ. Գործք 23:25)

է. բովանդակություն, պարունակություն (հմմտ. Գործք 23:25)

2. Հարոլդ Կ. Մոուլտոն «Վերլուծական հունարեն բառարան, (վերահրատարակած), էջ 411 [Harold K. Moulton, *The Analytical Greek Lexicon Revised*, p. 411]:

ա. փչում,տպավորություն, նշան (հմմտ. Հովh. 20:25)

բ. ուրվագծում, շրջագծում

գ. պատկեր (հմմտ. Գործք 7:43)

դ. ֆորմուլա, պլան գծագիր (հմմտ. Հռ. 6:17)

ե. ձև, բովանդակություն, իմաստ (հմմտ. Գործք 23:25)

զ. կերպար, պատճեն, նմանություն (հմմտ. I Կոր. 10:6)

է. սպասված կերպար, տեսակ (հմմտ. Հռ. 5:14; I Կոր. 10:11)

ը. օրինակ (հմմտ. Գործք 7:44; Եբր. 8:5)

թ. բարոյական կերպար, օրինակ (հմմտ. Փիլ. 3:17; I Թես. 1:7; II Թես. 3:9; I Տիմ. 4:12; I Պետ. 5:3)

Այս կոնտեքստից կարելի է եզրակացություն անել, որ # I տարբերակը ավելի լավ է համապատասխանում: Չէ որ Ավետարանը ունի իր մեջ թե վարդապետություն և թե գործնական ազդեցություն մարդու ապրելակերպի վրա: Քրիստոսի ծրի պարգևը նաև պահանջում է քրիստոսանման կյանք:

**6:18 «մեղքիցն ազատուած»** Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ԴԵԲԱՅ է: Ավետարանը ազատագրել է հավատացյալներին Սուրբ Հոգու միջոցով Քրիստոսի կատարած գործի միջոցով: Հավատացյալները ազատագրվել են մեղքի պատժից (արդարացում) մեղքի բռնապետությունից (սրբացում, հմմտ. հհ. 7 և 22):

▣ **«ծառայեցիք արդարութեանը»** Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է, «դուք դարձաք ծառա արդարութեանը»: Տես հատուկ թեմա 1:17: Հավատացյալները ազատ են մեղքից՝ Աստծուն ծառայելու համար (հմմտ. հհ. 14,19,22; 7:4; 8:2): Չրի շնորհքի նպատակը բարեպաշտ կյանքն է: Արդարացումը թե օրինական հռաչակում է և թե խթան անձնական արդարության: Աստված ուզում է փրկել և փոխել մեզ՝ ուրիշներին հասնելու համար: Շնորհքը մեզանով չի ավարտվում:

**6:19 «Մարդկօրէն եմ ասում ձեր մարմնի տկարութեան համար.»** Պողոսն իր խոսքը ուղղում է Հռոմի հավատացյալներին: Նա հասցեագրում է տեղական խնդիրը, որի մասին լսել էր (նախանձություն հրեա հավատացյալների և հեթանոս հավատացյալների միջև) թե նա պնդում է մի ճշմարտություն բոլոր հավատացյալների մասին: Ավելի վաղ Պողոսն օգտագործեց այս արտահայտությունը Հռ. 3:5, և նաև Գաղ. 3:15:

Համար 19-ը զուգահեռ է հ. 16-ին: Պողոսը կրկնում է իր աստվածաբանական պնդումներ էլ ավելի ընդգծելու դրանց իմաստը:

Ոմանք կասեն, որ այս արտահայտությունը նշանակում է, որ Պողոսը ներեղություն էր խնդրում ծառա, գերի փոխաբերությունը օգտագործելու համար: Ինչևէ, «ձեր մարմնի տկարության պատճառով» չի համապատասխանում այս մեկնաբանությանը: Ծառաները չէի դիտվում որպես չար բան առաջին դարի հասարակության մեջ, հատկապես Հռոմում: Դա պարզապես մշակույթ էր այդ օրերում:

▣ **«մարմին»** Տես Հատուկ Թեմա 1:3.

▣ **«սրբանալու համար»** Սա արդարացման նպատակն է (հմմտ. հ. 22): Նոր Կտակարանը օդտագործում է այս տերմինը երկու աստվածաբանական իմաստներով կապված փրկության (1) դիրքային սրբացում, որը Աստծո պարգևն է (օբյեկտիվ ասպեկտ) տրվում է փրկության ժամանակ արդարացման հետ միասին Քրիստոսի վրա ունեցած հավատքի միջոցով (հմմտ. Գործք 26:18; I Կոր. 1:2; 6:11; Եփ. 5:26-27; I Թեսս. 5:23; II Թես. 2:13; Եբ. 10:10; 13:12; I Պետ. 1:2) և (2)

առաջադիմական/պրոգրեսիվ սրբացում, որը նույնպես Աստծո գործն է Սուրբ Հոգու միջոցով, որի միջոցով հավատացյալի կյանքը ձևափոխվում է Քրիստոսի պատկերին և հասունությանը նմանվելով (սուբյեկտիվ ասպեկտ, հմմտ. II Կոր. 7:1; I Թես. 4:3,7; I Տիմ. 2:15; II Տիմ. 2:21; Եբ. 12:10,14). Նայիր Հատուկ Թեմա 6:4.

Դա թե պարգև է և թե պատվեր: Այն դիրք/վիճակ է (օբյեկտիվ) և ակտիվ գործունեություն (սուբյեկտիվ): Դա թե ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է (դրույթ) և թե ՀՐԱՄԱՅԱԿԱՆ (հրաման, պատվեր): Սրբացումն ունի սկիզբ, բայց իր կատարելությանը չի հասնում նույնիսկ մինչև վերջը (հմմտ. Փիլ. 1:6; 2:12-13):

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 6:20-23**

[20]Որովհետև երբոր մեղքի ծառայ էիք՝ ազատ էիք արդարութիւնիցը: [21]Արդ ի՞նչ պտուղ ունէիք այն ժամանակ, որոնց համար հիմա ամոթ էք քաշում. որովհետև նորանց վերջը մահ է: [22]Բայց հիմա որ մեղքիցնազատուած եւ Աստուծոյ ծառայ եղած էք՝ ձեր պտուղն ունիք սրբանալու համար, եւ նորա վերջը յաւիտենական կեանքն է: [22] Որովհետև մեղքի վարձքը մահն է, բայց Աստուծոյ շնորհքը՝ յաւիտենական կեանք՝ մեր Տէր Յիսուս Քրիստոսի ձեռովը:

**from sin and enslaved to God, you derive your benefit, resulting in sanctification, and the outcome, eternal life. [23]For the wages of sin is death, but the free gift of God is eternal life in Christ Jesus our Lord.**

**6:20-21** Սա պարզապես հաստատում/բացատրում է հհ. 18 և 19 հակառակը: Հավատացյալները կարող են միայն ծառայել մեկ տիրոջ (հմմտ. Թես. 16:13):

**6:22-23** Այս համարների իմաստը իրենից ներկայացնում է տրամաբանական շարունակական խորհրդածություն այն թեմայի շուրջ, թե ինչպես է վճարվում այն մարդը, ում նա ծառայում է: Փառք Աստծուն, մեղքի և հավատացյալի միջև եղած վեճն ավարտվում է Աստծո շնորհքով: Առաջինը փրկության պարգևն է մեր համագործակցության միջոցով, և ապա քրիստոնեական կյանքի պարգևը, նույնպես մեր համագործակցության միջոցով: Երկուսն էլ ստացած պարգևներ/ընծա են հավատքի և ապաշխարության միջոցով:

**6:22 «ձեր պտուղն** (անգլ. օգուտ/շահ) **ունիք սրբանալու համար, եւ նորա վերջը յաւիտենական կեանքն է»** (անգլ. օգուտ/շահ) տերմինը, որը բառացիորեն նշանակում է «պտուղ», օգտագործվում է h. 21 խոսելով մեղքի հետևանքների մասին, սակայն h. 22 այն խոսում է Աստծուն ծառայելու հետևանքների մասին: Շտապ/անմիջական (անգլ. օգուտ/շահ) պտուղը դա հավատացյալի Քրիստոսանմանությունն է: Վերջնական/գերագույն (անգլ. օգուտ/շահ) պտուղը

դա՝ լինել Նրա հետ և Նրա նման հավիտենական լինել (հմմտ. I Հովh. 3:2): Եթե չկա շտապ/անմիջական արդյունք (փոխված կյանք, հմմտ. Հակոբ. 2) վերջնական արդյունքը կարող է լինել օրինական հիմքի վրա կարող է կասկածանքի տակ վերցվել (հավիտենական կյանք, հմմտ. Մաթ. 7): «Չկա պտուղ, չկա արմատ»:

**6:23** Սա ամբողջ գլխի ամփոփումն է: Պողոսը պատկերեց ընտրությունը սև ու սպիտակով: Ընտրությունը մերն է —մեղք և մահ կամ ձրի պարգև կամ ձրի շնորհք Քրիստոսի միջոցով և հավիտենական կյանք: Այն շատ նման է Հին Կտակարանի իմաստուն գրականության «երկու ճանապարհներին» (Սաղ. 1; Առ. 4; 10-19; Մաթ. 7:13-14):

▣ **«մեղքի վարձքը»** Մեղքը անձնավորվում/մարմնավորվում է որպես (1) ստրկատեր, (2) ռազմական գեներալ/զորավար, կամ (3) թագավոր, որը վճարում է հատուցում/վարձք (հմմտ. 3:9; 5:21; 6:9,14,17):

▣ **«Աստուծո շնորհքը՝** (անգլ. ձրի պարգև) **յաւիտենական կեանք»** Այս բառը, թարգմանված « ձրի պարգև» (*charisma*) շնորհք բառի արմատից էր (*charis*, հմմտ. 3:24; 5:15, 16, 17; Եփ. 2:8-9): Տես հատուկ թեմա 3:24-ում:

**ՔՆՆԱՐԿՎՈՂ ՀԱՐՑԵՐ**

Սա սերտողության համար ուղեցույց հանդիսացող մեկնաբանություն է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ:

1. Ինչպե՞ս են բարի գործերը կապվում փրկության հետ (հմմտ. Եփ. 2:8-9,10)
2. Ինչպե՞ս է շարունակական մեղքը հավատացյալի կյանքում կապվում փրկության հետ (հմմտ. I Հովh. 3:6,9)
3. Արդյո՞ք գլուխը սովորեցնում է «անմեղ կատարելություն»:
4. Ինչպե՞ս է 6-րդ գլուխը կապվում 5 և 7 գլուխների հետ:
5. Ի՞նչու է մկրտությունը քննարկվում այստեղ:
6. Քրիստոնեաները պահպանու՞մ են իրենց հին բնությունը: Ի՞նչու

7. Ի՞նչ լրացուցիչ իմաստ է բերում այն փաստը, որ հ. 1-14-ը ունեն բայեր և դրանցով կազմված բառեր ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ-ով, այն դեպքում, երբ հ. 15-23-ում հիմնականում օգտագործված է ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ-ով:

# ԹՈՒՂԹ ՈՒՂՂՎԱԾ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

## ԳԼՈՒԽ 7

| ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ | | | | |
|---|---|---|---|---|
| UBS[4] | NKJV | NRSV | TEV | JB |
| Նմանություն ամուսնությունից | Ազատություն Օրենքից | Նմանություն ամուսնությունից | Օրինակ ամուսնությունից | Քրիստոնյան կապված չէ Օրենքով |
| 7:1-6 | 7:1-6 | 7:1-3 | 7:1-6 | 7:1-6 |
| | | 7:4-6 | | |
| Մարդու մեջ բնակվող մեղքի խնդիրը | Մեղքի նպաստելը Օրենքում | Օրենքը և մեղքը | Օրենք և մեղք | Օրենքի նշանակությունը |
| 7:7-12 | 7:7-12 | 7:7-12 | 7:7-11 | 7:7-8 |
| | | | | 7:9-11 |
| | Օրենքը չի կարող փրկել մեղքից | | 7:12-13 | 7:12-13 |
| 7:13-25 | 7:13-25 | 7:13 | | |
| | | Ներքին բախում/ընդհարում | Բախումը մարդու մեջ | Վարձքի պայքար |
| | | 7:14-20 | 7:14-20 | 7:14-20 |
| | | 7:21-25 | 7:21-25 | 7:21-23 |
| | | | | 7:24-25 |
| | | 7:25 | 7:25 | 7:25 |

**ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ** (տես էջ vii)

*Հետևել բուն հեղինակի մտադրությանը պարբերությունների մակարդակով*

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Ճանաչիր թեմաները: Համեմատիր քո թեմայի բաժանումները վերը նշված 5 թարգմանությունների հետ: Բաժանումները ներշնչված չեն, բայց դա բանալի է հետևելու բուն հեղինակի մտադրությանը, որը մեկնաբանության սիրտն է: Յուրաքանչյուր պարագրաֆ ունի մեկ և միայն մեկ թեմա:

Մեկ շնչով կարդացեք այս գլուխը: Ուրվագծեք հիմնական թեմաներն ու թեման արտահայտեք մեկ նախադասությամբ:

1. Առաջին պարբերություն
2. Երկրորդ պարբերություն
3. Երրորդ պարբերություն
4. և այլն

## ԿՈՐՏԵՔՍՏԱՅԻՆ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ 1-6

Ա. Գլուխ 7 պետք է մեկնաբանվի (1) գլուխ 6 լույսի ներքո, հատկապես 12-14հհ. (նաև 3:20,21-31; 4:13-16; 5:20), ինչևէ, (2) այն նաև պետք է կապվի/նայվի Հռոմի եկեղեցում տիրող լարվածության հետ, որը գոյություն ուներ հավատացյալ հրեաների և հավատացյալ հեթանոսների միջև, որը երևում է 9-11 գլուխներում: Խնդրի ստույգ բնույթը հստակ չէ; այն կարող էր լինել

1. օրինականությունը հիմնված Մովսեսական Օրենքի վրա,
2. Հուդայականության կենտրոնացումը նախ և առաջ Մովսեսի վրա, հետո Քրիստոսի
3. անհասկացողություն, թե ինչպես է ավետարանը կիրառելի հրեաների համար
4. անհասկացողություն, Հին և Նոր Կտակարանների միջև գոյություն ունեցող կապի վերաբերյալ
5. Հավատացյալ հրեա առաջնորդների նախանձությունը, որոնց փոխարինեցին հավատացյալ հեթանոս առաջնորդները կայսրի հրովարտակի ժամանակ, որը

դադարեցրեց բոլոր հրեական ծեսերը Հռոմում: Շատ հավատացյալ հրեաներ նույնպես լքեցին քաղաքը:

Բ. Հռոմեացիս 7:1-6 շարունակում է գլուխ 6 պատկերավոր լեզուն, որտեղ նկարագրված է քրիստոնյայի կապը իր հին կյանքի հետ: Օգտագործված փոխաբերությունները
1. մահ և ազատագրում գերությունից ուրիշ տիրոջ ծառայելու համար (գլուխ 6)
2. մահ և ազատագրում ամուսնական պարտավորություններից (գլուխ 7)

Գ. Գլուխներ 6 և 7 գրական զուգահեռներ են; գլուխ 6 խոսում է հավատացյալի կապը «մեղքի» հետ, իսկ գլուխ 7 հավատացյալի կապը «օրենքի» հետ: Մահվան նմանությունը գերությունից ազատագրվելու հետ (6:12-23) զուգահեռ է մահ ազատագրում է ամուսնական կապղանքը (7:1-6):

| Գլուխ 6 | Գլուխ 7 |
|---|---|
| 6:1 «մեղք» | 7:1 «օրենք» |
| 6:2 «մեռած մեղքին» | 7:4 «մեռած օրենքին» |
| 6:4 «այնպես մենք էլ կյանքի նորոգության մեջ ման գանք» | 7:6 «որպեսզի հոգու նորոգությունովը ծառայենք» |
| 6:7 «նա որ մեռել է ազատված է մեղքից» | 7:6 «հիմա արձակվեցանք օրենքիցը մեռնելով նրան՝ որով որ բռնված էինք» |
| 6:18 «մեղքից ազատված» | 7:3 «օրենքից ազատված» |

(վերցված է Անդերս Նիգրենի «Հռոմեացիներին ուղված թղթի մեկնաբանությունը» գրքից, թարգմանված Կառլ Կ. Լասմուսենի կողմից (taken from Anders Nygren’s *Commentary on Romans*, translated by Carl C. Rassmussen, p. 268)

Դ. Օրենքի վճիռը մահապատիժն էր: Օրենքի համաձայն բոլոր մարդիկ հանդես են գալիս որպես մեղադրյալ (հմմտ. Հռ. 6:14; 7:4; Գաղ. 3:13; Եփ. 2:15; Կող. 2:14): Օրենքը անեծք էր:

Ե. Գոյություն ուներ 4 գլխավոր թեորիաներ այն մասին թե ինչպես մեկնաբանել գլուխ 7-ը
1. Պողոսը խոսում է իր մասին (ինքնակենսագրական)
2. Պողոսը խոսում է որպես ամբողջ մարդկության ներկայացուցիչ (Քրիզոստոմ)
3. Պողոսը խոսում է Ադամի փորձառության մասին (Թեոդոր Մոպսուեստացին)

4. Պողոսը խոսում է Իսրայելի փորձառության մասին

Զ. Շատ ձևերով Հռոմեցիս 7-ը նման է Ծննդոց 3-ին: Այն ցույց է տալիս կործանարար ուժը մարդկանց մղելով ամստամբության նույնիսկ նրանց ովքեր ճանաչել են Աստծուն: Գիտությունը չի կարող ազատել ընկած մարդկությանը; միայն Աստծո շնորհքը, միայն նոր սիրտը կարող է դա անել (Նոր Ուխտը, հմմտ. Եր. 31:31-34; Եզ. 36:26-27): Եվ նույնիսկ այդ դեպքում էլ պայքարը շարունակվում է:

**ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ**

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 7:1-3**
[1]Կամ չգիտէ՞ք, եղբարք, (որովհետեւ օրէնք գիտացողների հետ եմ խօսում) որ օրէնքը մարդի վերայ տիրում է՝ քանի որ նա կենդանի է: [2]Որովհետեւ մարդ ունեցող կնիկը՝ իր կենդանի մարդի հետ կապուած է օրէնքով. բայց եթէ մարդը մեռնի՝ մարդի օրէնքիցն արձակուած է: [3]Ուրեմն քանի որ մարդը կենդանի է՝ նա շնացող է կոչվում, եթէ ուրիշ մարդի գնայ. բայց եթէ մարդը մեռնի, օրէնքիցն ազատ է՝ որ շնացող չլինի եթէ ուրիշ մարդի գնայ:

NASB (UPDATED) TEXT: 7:1-3

**[1]Or do you not know, brethren (for I am speaking to those who know the law), that the law has jurisdiction over a person as long as he lives? [2]For the married woman is bound by law to her husband while he is living; but if her husband dies, she is released from the law concerning the husband. [3]So then, if while her husband is living she is joined to another man, she shall be called an adulteress; but if her husband dies, she is free from the law, so that she is not an adulteress though she is joined to another man.**

**7:1 «(որովհետեւ օրէնք գիտացողների հետ եմ խօսում)»** Այս բառերը կարող էին վերաբերվել (1) միայն հավատացյալ հրեաներին; (2) Հռոմի եկեղեցում տիրող հավատացյալ հրեաների և հեթանոսների միջև գոյություն ունեցող կոնֆլիկտին; (3) ընդհանուր իմաստով օրենքին կապված ամբողջ մարդկության հետ (հմմտ. 2:14-15); կամ (4) նոր հեթանոս հավատացյալներին ներգրավված իրենց նոր հավատքի ուսումնասիրման մեջ (կրոնագիրտություն) Հին Կտակարանի հիմքի վրա

▣ **«օրէնք»** Այս բառի վրա է կենտրոնացած ամբողջ գլխի հիմնական ուշադրությունը (հմմտ. հհ. 1,2,4,5,6, և այլն): Ինչևէ, Պողոսը օգտագործում է այս տերմինը մի քանի տարբեր իմաստներով: Թվում է, թե Պողոսի այս թեմայի քննարկումը սկսվում է 6:14: Նրա ներկայացվող նյութ զուգահեռ է գլուխ 6: Տես Կոնտեքստի ներըմբռնում, Գ: Օրենքի թեման և Քրիստոսով նրա կապը Նոր Ուխտի հետ նաև քննարկվում է 3:21-31 և 4:13-16:

**Արևելահայերեն « որ օրէնքը մարդի վերայ տիրում է՝ քանի որ նա կենդանի է»**
**Արևմտահայերեն « որ օրէնքը մարդուս վերա կիշխէ՝ որչափ ժամանակ որ ողջ է»**

▣

**NASB “that the law has jurisdiction over a person as long as he lives”**
**NKJV “that the law has dominion over a man as long as he lives”**
**NRSV “that the law is binding on a person only during that person’s lifetime”**
**TEV “The law rules over a man only as long as he lives”**
**JB “that laws affect a person only during his lifetime”**

Այս բայի բառացի նշանակությունն է «տիրել, ունենալ գերագույն իշխանություն» (*kurieuō*, հմմտ. 6:9,14): Մովսեսական Օրենքը միաժամանակ թե մեծ օրհնություն էր (հմմտ. Սաղ. 19; 119), և թե սարսափելի անեծք (հմմտ. Գաղ. 3:13; Եփ. 2:15; Կող. 2:14): Ֆիզիկական մահից հետո, մարդն այլևս օրենքի պարտավորության տակ չէր: Այս նույն փոխաբերությունը օգտագործված է գլուխ 6 երբ ասվում է, որ հավատացյալը մեռած է մեղքի համար:

**7:2 «մարդ ունեցող կնիկը»** հհ. 1-6 բովանդակում են Պողոսի գլխավոր պատերավոր նկարագությունը: Գլուխ 6 Պողոսն ընդգծում էր այն միտքը, որ մարդու մահով դադարում է որպես գերի իր պատականությունը: Այստեղ կենտրոնում ամուսնական հարաբերություններն են: Բայց այս պատկերավորումը շրջած է, որովհետև մահացողը ամուսինն է, և այդ իսկ պատճառով կինը կարող էր ամուսնանալ; հետևելով Պողոսի համանմանությանը, հավատացյալը մահանում է, և ուստի կենդանի է Աստծո համար:

▣ **«արձակուած է»** Այստեղ օգտագործված է նույն ԲԱՅ-ը ինչ 6:6; այն նշանակում է «դարձնել չգործող», «հասցնել անպիտան վիճակի» կամ «ոչնչացված լինել»: 6:6-ում, այն ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ-ով է դրված, իսկ այստեղ ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿԻ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ, որը նշանակում է «եղել է արձակված և շարունակում է արձակված նմալ»: Տես հատուկ թեմա 3:3.

**7:3 «նա շնացող է կոչվում»** Այս մեկնաբանությունը վերաբերվում է հրեական ռաբիական դպրոցների՝ Շամայի և Հիլելի (Shammai and Hillel) միջև 2 Օրին. 24:1-4-ի շուրջ եղած վիճաբանությանը, մասնավորապես «որոշ անպարկեշտություն»: Հիլելի դպրոցը լիբերալ/ազատամիտ հայացքներ ուներ, որը թույլ էր տալիս բաժանություն ցանկացած առիթով: Շամայի դպրոցը պահպանողական էր, որը թույլ էր տալիս բաժանություն միայն շնության կամ որևէ ուրիշ բարոյական չափանիշի խախտման դեպքում ( հմմտ. Մաթ. 5:32; 19:9):

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 7:4-6**
[4]Այսպէս էլ, եղբարք, դուք Քրիստոսի մարմնովը մեռաք օրէնքին՝ որ ուրիշի լինիք՝ նորան որ մեռելների միջից յարութիւն է առել, որ պտուղ բերենք Աստուծուն: [5]Որովհետեւ քանի որ մարմնով էինք, մեղքերի կիրքերը՝ որ օրէնքովն էին՝ զօրանում էին մեր անդամներումը, որ մենք պտուղ բերենք մահին: [6] Բայց հիմա արձակուեցանք օրէնքիցը մեռնելով նորան՝ որով որ բռնուած էինք, որպէս զի հոգու նորոգութիւնովը ծառայենք՝ եւ ոչ թէ գրի հնութիւնովը:

**NASB (UPDATED) TEXT: 7:4-6**
**[4]Therefore, my brethren, you also were made to die to the Law through the body of Christ, so that you might be joined to another, to Him who was raised from the dead, in order that we might bear fruit for God. [5]For while we were in the flesh, the sinful passions, which were *aroused* by the Law, were at work in the members of our body to bear fruit for death. [6]But now we have been released from the Law, having died to that by which we were bound, so that we serve in newness of the Spirit and not in oldness of the letter.**

**7:4 «դուք մեռաք օրէնքին»** Սա այս բաժնի հիմնական իմաստն է: Այն կապված է գլուխ 6-ի համանմանությանը, անալոգին, որտեղ խոսվում է այն մասին, որ քրիստոնյաները մեռած են մեղքին, ինչպես Քրիստոսն արեց: Հավատացյալները նոր արարածներ են Քրիստոսով, Հոգու այս նոր ժամանակաշրջանում (հմմտ. II Կոր. 5:17):

▣ **«Քրիստոսի մարմնովը»** Սա չի վերաբերում եկեղեցու աստվածաբանական գաղափարին, որպես Քրիստոսի մարմին (հմմտ. I Կոր. 12:12,27), այլ Քրիստոսի ֆիզիկական մարմնին, ինչպես 6:3-11 որտեղ, երբ Քրիստոսը մեռավ, հավատացյալները մկրտության միջոցով, մեռան Նրա հետ: Նրա մահը իրենց մահն է (հմմտ. II Կոր. 5:14-15; Գաղ. 2:20): Նրա հարուցյալ կյանքը ազատեց նրանց՝ Աստծուն և ուրիշներին ծառայելու համար:

▣ **«որ պտուղ բերենք Աստուծուն»** Սա նաև զուգահեռ էր գլուխ 6-ին, հատկապես 6:22: Հավատացյալները հիմա ազատ են Քրիստոսով, իրենք իրենց կապելով Քրիստոսին: Սա ամուսնության նմանության շարունակությունն է: Ինչպես Քրիստոս մեռավ հավատացյալների

համար, հիմա նրանք պետք է մեռնեն մեղքի համար (II Կոր. 5:13-14; Գաղ. 2:2): Ինչպես Քրիստոսը հարություն առավ, նրանք նրան նույնպես հարություն են առնում դեպի նոր հոգևոր կյանք Աստծուն ծառայելու համար (հմմտ. Հռ. 6:22):

**Արևելահայերեն «Որովհետեւ քանի որ մարմնով էինք»**
**Արևմտահայերեն «Քանզի երբ մենք մարմնով էինք»**

**7:5**
**NASB "For while we were in the flesh"**
**NKJV "For when we were in the flesh"**
**NRSV "While we were living in the flesh"**
**TEV "For when we lived according to our human nature"**
**JB "Before our conversion"**

Այս համարը հակադրում է համար 4-ին: Համար 4-ը հավատացյալի փորձառության մասին է, ինչպես համար 6-ը: Համար 5-ը նկարագրում է կյանքի «պտուղը» առանց Աստծո զորության (Գաղ. 5:18-24.): Օրենքը հավատացյալներին ցույց է տալիս իրենց մեղքը (hh. 7-9; Գաղ. 3:23-25), բայց չի կարող տալ նրանց զորություն այն հաղթահարելու համար:

Կոնտեքստում սա վերաբերվում է հավատացյալների ընկած, մեղավոր բնությանը՝ ժառանգած Ադամից (հմմտ. 6:19): Պողոսն օգտագործում է այս տերմինը *sarx* երկու տարբեր ձևերով (1) մեղավոր բնություն (հին մարդը), և (2) ֆիզիկական մարմին (հմմտ. 1:3; 4:1; 9:3,5): Այստեղ այն բացասական է, ուշադրություն դարձրեք Հռ. 1:3; 4:1; 9:3,5; Գաղ. 2:20: Մարմինը (*sarx/soma*) ինքնին չար չէ, բայց ինչպես միտքը (*nous*), մարտի դաշտ է համարվում, այս դարի չար ուժերի և Սուրբ Հոգու առերեսման վայր: Պողոսն օգտագործում է այս տերմինները, որը համատեղելի է Սեպտուագինդի հետ, ոչ թե հունարեն գրականության հետ:

▣ **«որ օրէնքովն էին»** Մարդկային բնության այս ըմբոստության ասպեկտը, որը ագրեսիվ կերպով ներգործում է ցանկացած սահմանափակումների վրա, հստակ երևում է Ծննդ. 3 և բոլոր մարդկանց մեջ: Օրենքը դնում է սահմաններ (հմմտ. hh. 7-8): Այս սահմանները մարդու պաշտպանության համար էին, բայց մարդիկ դա դիտում էին որպես շխթաներ և սահմանափակումներ: Մեղավոր, անկախ հոգին գրգռվում էր Աստծո Օրենքով: Խնդիրը սահմանափակումները չէին (Օրենքում, հմմտ. hh. 12-13), այլ մարդու անկախությունը և իր կամքը:

**7:6 «Բայց հիմա»** Հետաքրքիր մեկնաբանություն կա այս հարցի շուրջ Նյումանի և Նիդայի «Պողոս առաքյալի Հռոմեացիս թղթի մեկնության ուղեցույցը» գրքում (Newman and Nida, *A Translator's Handbook on Paul's Letter to the Romans*, ):

«Կարևոր է տեսնել 5 և 6 համարների միջև եղած զուգահեռները, և միաժամանակ նրանց կապը հաջորդին: Համար 5-ը նկարագրում է նախա-քրիստոնեական փորձառությունը, և դրա զուգահեռը գտնվում է 7.7-25-ում; համար 6-ը նկարագրում է հավատքի ներկա կյանքը Աստծո Հոգու առաջնորդության ներքո, և սա զուգահեռ է 8.1-11-ին» (էջ 130):

▣ **«արձակուեցանք»** Այստեղ ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ Է: Սա հակասում է ԱՆԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ՉԵԶՈՔ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿԻՆ հ. 5-ում: Հավատացյալները շարունակաբար բռնված են եղել մեղքով, ինչպես երևում էր օրենքում, բայց հիմա ազատված են Սուրբ հոգու միջոցով՝ ավետարանի բարի լուրի միջոցով: Այս նույն բառը օգտագործվում է կնոջ համար, ում ամուսինը մահանում հ. 2-ում:

▣ **«օրէնքիցը մեռնելով նորան՝ որով որ բռնուած էինք»** Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ Է, որին հետևում է ԱՆԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿԻՆ: Աստված հավատացյալներին ազատագրում է Քրիստոսի մահվան միջոցով (1) Հին Կտակարանի անեծքից և (2) իրենց ներքին մեղավոր ես-ից: Նրանք շարունակաբար կապված են եղել իրենց ըմբոստությամբ Աստծո դեմ՝ իրենց կամքով, մեղավոր բնությամբ, անձնական մեղքով և գերբնական փորձությունով (հմմտ. Եփ. 2:2-3):

▣ **«նորոգութիւնովը . . . հնութիւնովը»** Այս նոր հոգևոր ձևը կարծես վերաբերվում է Նոր Ուխտին (հմմտ. Եր. 31:31-34; Եզ. 36:22-32): Հունարեն «նոր» տերմինը (*kainos - kainotēs*) օգտագործվում է Պողոսի կողմից որպես

1. կյանքի նորոգություն, Հռ. 6:4
2. Հոգու նորոգություն, Հռ. 7:6
3. նոր ուխտ, I Կոր. 11:2; II Կոր. 3:6
4. նոր արարչագործություն, II Կոր. 5:17; Գաղ. 6:15
5. նոր մարդ, Եփ. 2:15; 4:24

«Հին» տերմինը կիրառվում է Մովսեսական Օրենքի համար, որը նշանակում է «ամբողջությամբ մաշված»: Պողոսը հակադրում է Հին Ուխտը Նորի հետ, ինչպես անում է Եբրայեցիս թղթի հեղինակը (հմմտ. 8:7 և 13):

**Արևելահայերեն « որպէս զի հոգու նորոգութիւնովը ծառայենք »**

Արևմտահայերեն «որպէս զի մենք ծառայենք հոգիին նորոգութիւնովը»

▣

NASB, NKJV "so that we serve in newness of the Spirit"
NRSV "so that we are slaves not under the old written code but in the new life of the Spirit"
TEV "but in the new way of the Spirit"
JB "free to serve in the new spiritual way"

Բառացիորեն սա «հոգու նորոգություն» է: Անորոշ է, սա վերաբերում է վերստին ծնունդ ունեցած մարդու հոգուն թե՞ Սուրբ Հոգուն: Շատ անգլերեն թարգմանություններ այն մեծատառով են ներկայացնում, որը նշանակում է Սուրբ Հոգի, որը երկիմաստորեն նշված է առաջին անգամ Հռ. 8-ում (15 անգամ): «Հոգի» տերմինը կարող էր վերաբերվել և ավետարանի միջոցով վերածնված և զորացած մարդու հոգուն և Սուրբ Հոգուն Հռ. 1:4,9; 2:29; 7:6; 8:15; 11:8; 12:11; I Կոր. 2:11; 4:21; 5:3,4,5; 7:34; 14:15,16,32; 16:18:

Պողոսի գրվածքներում «մարմին» կամ «հոգի» տերմինները հաճախ հակադրվում են որպես երկու տարբեր ձևեր՝ մտածելու և ապրելու (հմմտ. 7:14; 8:4; Գաղ. 3:3; 5:16,17,25; 6:8). Ֆիզիկական կյանքն առանց Աստծո պարզապես «մարմին» է, իսկ Աստծով կյանքը «հոգի» կամ «Հոգի»: Հավատացյալի մեջ բնակվող Սուրբ Հոգին (հմմտ. 8:9,11) փոխում է նրան դարձնելով նոր արարած Քրիստոսով (նոր դիրք և վիճակ և նոր կյանքի փորձառություն):

## ԿՈՐՏԵՔՍՏԱՅԻՆ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ 7:7-25

Ա. Հռոմեացիս 7:7-25-ը արտահայտում է մարդու իրականությունը: Բոլոր մարդ արարածները, թե փրկված և թե ոչ, փորձառել են չարի և բարիու պայքարը իրենց աշխարհում և իրենց իսկ սրտերում և մտքերում: Հերմենևտիակակն տեսանկյունից այստեղ հարց կա « Պողոսի կարծիքով, ինչպե՞ս պետք է հասկացվեր այս հատվածը»: կոնտեքստային առումով այն պետք է կապված լինի 1:18-6:23 և 8:1-39 գլուխների հետ: Ոմանք սա դիտում են որպես կենտրոնացում բոլոր մարդկանց վրա և ուստի Պողոսի անձնական փորձառությունը դիտում են որպես օրինակ: Այս մեկնաբանությունը կոչվում է «ինքնակենսագրական վարկած»: I Կոր. 13:1-3-ում Պողոսը օգտագործեց «ես» դերանունը ոչ իր անձի համար: Այսպիսի կիրառությունը ոչ անձնական «ես»-ի փաստացի կարող է հաստատվել հրեական րաբբիների կողմից: Եթե դա այդպես է, ապա այս հատվածը կարող էր վերաբերվել «ներկայացուցչական վարկած»-ին մարդկության անցումը անմեղությունից, փրկության համոզմունքով (գլուխ 8):

Ինչևէ, ուրիշները այս համարներում տեսել են հավատացյալի սարսափելի պայքարը ընկած մեղավոր բնության հետ: Սրտաճմլիկ աղաղակը հ. 24-ում արտահայտում է այս ներքին լարվածությունը: 7-13 համարներում գերիշխում են ԱՕՐԻՍՏ և ԱՆԿԱՏԱՐ ԲԱՅԻ ԺԱՄԱՆԱԿԱՁԵՎԵՐԸ, մինչ 14-25 համարներում ՆԵՐԿԱ և ԿԱՏԱՐՅԱԼ ԲԱՅԻ ԺԱՄԱՆԱԿԱՁԵՎԵՐԸ: Այս ամենը ամենաշատը խոսում է ի օգուտ «ինքնակենսագրական վարկած»-ի, որը Պողոսը նկարագրում է իր սեփական փորձառությունը անմեղությունից դեպի դատապարտում, արդարացում և պրոգրեսիվ սրբացման պայքարով լեցուն ճանապարհի (հմմտ. *autos egō*, «ես ինքս», հմմտ. հ. 25):

Միանգամայն հնարավոր է, որ երկու տեսակետերն էլ ճիշտ լինեն: 7-13 և 25 համարներում Պողոսը խոսում է ինքնակենսագրականորեն, իսկ 14-25 համարներում նա խոսում է իր մեղքի դեմ ունեցած ներքին պայքար փորձառության մասին, որպես ամբողջ փրկված մարդկության ներկայացուցիչ: Ինչևէ, արժե հիշեցնել, որ այս ամբողջ հատվածը նաև պետք է դիտել և որպես ուղղված Պողոսի անցյալի դեմ, որպես նվիրյալ և կրոնասեր հրեա, մինչև նրա դարձի գալը: Պողոսի փորձառությունը իր տեսակի մեջ միակն էր:

Բ. Օրենքը բարի է: Այն Աստծուց է: Այն ծառայում էր, և շարունակում է ծառայել աստվածային նպատակին (հմմտ. 7:7, 12, 14, 22, 25): Այն չի կարող խաղաղություն կամ փրկություն բերել: Ջեյմս Ստյուարտը իր «Մարդը Քրիստոսի մեջ» գրքում (James Stewart, *A Man in Christ*, ) ցույց է տալիս Պողոսի պարադոքսալ մտածելակերպը և գրվածքը.

«Բնականում, դուք կակնկալեիք, որ մարդը, որը իր համար դնում է մտքի և վարդապետության համակարգի կառուցվածք, հաստատելու այնքան անդրդվելությամբ ինչքան հնարավոր է իր կողմից օգտագործվող տերմինների նշանակությունները: Դուք կուզենայիք, որ նա ունենար լուրջ մտադրություն ինչքան հնարավոր է ստույգ ձևավորելով իր հիմնական գաղափարները: Դուք կպահանջեիք, որպեսզի կոնկրետ բառը, օգտագործված այս ձեր գրողի կողմից որոշակի տեղում և որոշակի իմաստով, պահպաներ այն նույն իմաստը ամբողջ ընթացքում: Բայց եթե այդպես նայենք Պողոսի գործին, նշանակում է հիասթափություն ունենալ: Շատ դեպքերում նրա դարձվածաբանությունը հոսուն է և ոչ թե անսասան. . .«Օրենքը սուրբ է,» գրում է նա, «ներսի մարդով ես հավանում եմ Աստծո օրենքը» (հմմտ. Հռ. 7:12-13), բայց *nomos* բառի միանգամայն ուրիշ տեսանկյունը ստիպում է նրան ինչ որ մեկ ուրիշ տեղ ասել, «Քրիստոսը գնեց մեզ օրենքի անեծքից(հմմտ. Գաղ. 3:13)» (էջ 26):

Գ. Ի՞նչ վերաբերում է այս հարցի պատասխանին « 14-25 համարներում Պողոսը որ մարդկանց մասին է խոսում, փրկված թե՞ չփրկված», տեքսի փաստերը հետևյալն են,

1. Չփրկված անձ
   ա. Սա վաղ հույն եկեղեցու Հայրերի մեկնաբանությունն էր
   բ. Հետևյալ արտահայտությունները հաստատում են այս տեսանկյանը
      (1) «Ես մարմնավոր եմ», հ. 14
      (2) «մեղքի կապանքի տակ ծախված», հ. 14
      (3) «ինձանում ոչ մի բարի բան չի բնակվում», հ. 18
      (4) «և ինձ գերի է բռնում այն մեղքի օրենքով՝ որ իմ անդամներում է», հ. 23
      (5) «Ես ինչ խեղճ մարդ եմ. Ո՞վ կազատի ինձ այս մահի մարմնիցը», հ. 24
   գ. Գլուխ 6-ի անմիջական, մոտ կոնտեքստն այն է, որ մենք ազատ ենք մեղքի իշխանությունից: Գլուխ 8-ի կոնտեքստը սկսվում է «Ուրեմն» բառով:
   դ. Մինչև այս կոնտեքստի վերջը բացակայում է Հոգու կամ Քրիստոսի մասին ակնարկը (հ. 25):
2. Փրկված մարդ
   ա. Սա Օգոստինոսի, Կալվինի և Ռեֆորմատորական ավանդության մեկնաբանությունն էր
   բ. Հետևյալ արտահայտությունները հաստատում են այս տեսանկյանը
      (1) «մենք գիտենք, որ Օրենքը հոգևոր է,» հ. 14
      (2) «Ես համաձայն եմ Օրենքի հետ, վկայելով, որ այն բարի է» հ. 16
      (3) «բարին, որ կամենում եմ, ես չեմ անում...,» հ. 19
      (4) «Ես ուրախությամբ հավանում եմ Աստծո օրենքը ներսի մարդովը» հ. 22
   գ. Հռոմեացիս թղթի ավելի լայն կոնտեքստը գլուխ 7-ը դնում է սրբացման բաժնի մեջ:
   դ. Ակնհայտ փոփոխությունը բայական ժամանակաձևերի ԱՆԿԱՏԱՐ և ԱՕՐԻՍՏ-ից հհ. 7-13 շարունակական կիրառումը ՆԵՐԿԱ ժամանակի, հհ. 14-24-ում ցույց է տալիս ուրիշ և նոր բաժին Պողոսի կյանքում (այն է, դարձի գալը):

Դ. Ինչքան շատ է հավատացյալը ձգտում քրիստոսանմանությանը, այնքան շատ է զգում իր մեղավոր վիճակը: Այս պարադոքսը լավ է համապատասխանում այս կոնտեքստին և Պողոսի անձեղությանը (և, այդ իսկ պատճառով, շատ հավատացյալներ):

Տողեր մեթոդիստական հիմնից:

«Եվ ոչ ոք, ով Տեր, չունի կատարյալ հանգիստ,
Քանզի ոչ ոք ազատված չէ մեղքից ամբողջությամբ,

Եվ նրանք, ովքեր թույլ են Քեզ կծառայեն ամենալավը

Խիղճն է ամենասխալը նրանց մեջ»:

(Հեղինակի անունն ու հիմնի վերնագիրն անհայտ է)

**Արեւելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 7:7-12**
[7]Արդ ի՞նչ ասենք. օրէնքը մե՞ղք է. քաւ լիցի. բայց ես մեղքը չէի գիտենալ՝ եթէ ոչ օրէնքով. եւ ցանկութիւնը չէի ճանաչել՝ եթէ օրէնքը չէր ասել՝ Մի ցանկանար: [8]Մեղքը առիթ առնելով պատուիրանքովը, ինձանում ամեն ցանկութիւն գործեց. որովհետեւ առանց օրէնքի մեղքը մեռած է: [9] Եւ ես առանց օրէնքի մի ժամանակ կենդանի էի. բայց երբոր պատուիրանքը եկաւ, մեղքը կենդանացաւ: [10] Իսկ ես մեռայ եւ այն պատուիրանքն՝ որ կեանքի համար էր, ինձ մահի պատճառ եղաւ: [11] Որովհետեւ մեղքը առիթ առած պատվիրանքովը՝ խաբեց ինձ եւ նորանով սպանեց: [12] Ուրեմն՝ օրէնքը սուրբ է՝ եւ պատուիրանքն էլ սուրբ եւ արդար եւ բարի:

NASB (UPDATED) TEXT: 7:7-12
**[7]What shall we say then? Is the Law sin? May it never be! On the contrary, I would not have come to know sin except through the Law; for I would not have known about coveting if the Law had not said, "YOU SHALL NOT COVET." [8]But sin, taking opportunity through the commandment, produced in me coveting of every kind; for apart from the Law sin is dead. [9]I was once alive apart from the Law; but when the commandment came, sin became alive and I died; [10]and this commandment, which was to result in life, proved to result in death for me; [11]for sin, taking an opportunity through the commandment, deceived me and through it killed me. [12]So then, the Law is holy, and the commandment is holy and righteous and good.**

**7:7 «Արդ ի՞նչ ասենք»** Պողոսը կրկին դառնում է սուր քննադատության կիրառմանը (հմմտ. 6:1,15; 7:1,13):

▣ **«օրէնքը մե՞ղք է»** Աստծո հայտնության պարադոքսներից մեկն այն է, որ Նա օգտագործում է Օրենքի սրբությունն ու բարությունը որպես հայելի՝ մեղքը երևան բերելու համար, որպեսզի մեղավոր մարդկությանը բերի ապաշխարության և հավատքի (հմմտ. հհ. 12-13; Գաղ. 3): Նաև զարմանալին այն է, որ Օրենքը շարունակում է գործել մարդու սրբացման գործընթացում, բայց ոչ արդարացման մեջ:

▣ **«քաւ լիցի»** Պողոսին հատուկ արտահայտություն՝ կեղծ պնդումները հերքելու համար (հմմտ. հ. 13; 3:4,6,31; 6:2,15; 9:14; 11:1,11; Գաղ. 2:17; 3:21):

▣ **«բայց»** Հռոմեացիս թղթում Պողոսի գրական ոճը օգտագործում է խիստ հակադրություններ, որպեսզի հաստատի իր միտքը (հմմտ. 3:4,6,31; 6:2,15; 7:13; 9:14; 11:1,11):

◾ **«ես»** Ձեր Աստվածաշնչում նշեք թե քանի անգամ է հանդիմում «ես», «իմ», կամ «ինձ» անձնական դերանուններն այս կոնտեքստում հհ. 7-25: Դուք կզարմանաք: Ավելի քան քառասուն անգամ:

◾ **«ես մեղքը չէի գիտենալ՝ եթէ ոչ օրէնքով»** Սա բանալի հատվածներից մեկն է, որը հայտնում է Մովսեսական Օրենքի գաղափարը, որը հայելի է անձնական մեղքերը հայտնելու համար (հմմտ. 3:20; 4:65; 5:20; Գաղ. 3:14-29, հատկապես հ. 24): Մեկ անգամ քանդել օրենքը նշանակում էր քանդել Ուխտը, և ուստի, կրել դրա հետևանքները (հմմտ. հ. 10 և Հակ. 2:10):

◾ **«եթէ ոչ օրէնքով»** Այստեղ ԵՐԿՐՈՐԴ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է, որը կոչվում է « ի հակադրություն փաստի», չէ որ Պողոսը մեղքի հանդիմանություն ուներ: Սա այսպիսի քերականական կառուցվածքի միակ օրինակն է Հռոմեացիս թղթում: Պողոսը սա օգտագործում է Գաղ. 1:10; 3:21, ինչպես նաև I Կոր. 2:8; 5:10; 11:31; և II Կոր. 12:11:

◾ **«Մի ցանկանար»** Սա Տասը Պատվիրանների վերջին պատվերի մեջբերումն է (հմմտ. Ելից 20:17; 2 Օրին. 5:21): Այս վերջին պատվիրանը կենտրոնանում է ճիշտ կեցվածքի վրա, որն իրականում ամենքի էությունն է, իմաստն է (հմմտ. Մաթ. 5-7): Օրենքինշը հաճախ վերաբերվում են որպես «պատվիրան» (հմմտ. հհ. 8,9,11,12,13): «Ցանկանալ» տերմինը նշանակում է «ձգտել ինչ որ բանի» կամ «խիստ ցանկանալ ինչ որ բան»: Աստված տվել է մարդկանց (կորսված և փրկված) շատ լավ բաներ արարչագործության միջոցով, բայց մարդիկ հակված են վերցնելու Աստծո պարգևները Աստծո-տված սահմաններից այն կողմ: «Ինձ պետք է ավելի ու ավելի շատ և այն էլ ցանկացած գնով» մարդու համար դառնում է կյանքի նշանաբան: Մարդկային եսասեր էությունը սարսափելի բռնակալ է: Տես հատուկ թեմա: Նշումներ Ելից գրքից 13:8-9-ում:

**Արևելահայերեն «առիթ առած»**

**Արևմտահայերեն «առիթ սեպելով»**

**7:8**

| | |
|---|---|
| **NASB, NKJV** | **"taking opportunity"** |
| **NRSV** | **"seizing an opportunity"** |
| **TEV** | **"found its chance"** |
| **JB** | **"took advantage of"** |

Սա ռազմական տերմին էր, որն օգտագործվում էր ափամերձ հատվածը գրավելու գործողությունների ժամանակ (հմմտ. hh. 8 և 11): Այս կոնտեքստում այն անձնավորված է (հմմտ. hh. 9,11): Մեղքը բնութագրված էր որպես ռազմական գործողություն (հմմտ. h.11) ռազմական առաջնորդի գլխավորությամբ (հմմտ. hh. 11 and 17; 6:12, 14, 16):

▣ **«որովհետեւ առանց օրէնքի մեղքը մեռած է»** Մեղքը ըմբոստություն է Աստծո կամքի դեմ (հմմտ. Հռ. 4:15; 5:13; I Կոր. 15:56): Այս արտահայտության մեջ բայ չկա; բայց մեկը պետք է լինի: Եթե այն լինի ՆԵՐԿԱ _ԺԱՄԱՆԱԿՈՎ, դա կդիտվի որպես տիեզերական, համընդհանուր սկզբունք: Եթե լինի ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿՈՎ» այն կվերաբերվեր մասնավորապես Պողոսի կյանքին:

**7:9 «Եւ ես մի ժամանակ կենդանի էի»** Այս բառերն կարող էին վերաբերվել Պողոսին երբ (1) նա երեխա էր՝ մաքուր և անմեղ; կամ (2) նա նվիրված փարիսեցի էր մինչև այն պահը, երբ ավետարանի ճշմարտությունը կոտրեց իր սիրտը (հմմտ. Գործք 23:1; Փիլ. 3:6; II Տիմ. 1:3): Առաջինը ներկայացնում է գլուխ 7-ի մեկնաբանության «ինքնակենսագրական վարկածը» իսկ երկրորդը գլուխ 7-ի մեկնաբանության «ներկայացուցչական վարկածը»:

▣ **«երբոր պատուիրանքը եկաւ, մեղքը կենդանացաւ: իսկ ես մեռայ»** Մարդու ըմբոստ հոգին ուժեղանում է արգելքներով/չի կարելիներով: Աստծո Օրենքի պատվերները «մի արա» ընկած մարդկությանը տանում են ինքնաուղղող հպարտության (հմմտ. Ծննդ. 2:16-17; 3:1-6): Ուշադրություն դարձրեք թե ինչպես է մեղքը դառնում մարմնավորմամբ, անձնավորված, ինչպես 5:21 և 7:8,11,17,20:

**7:10 «եւ այն պատուիրանքն՝ որ կեանքի համար էր, ինձ մահի պատճառ եղաւ»** Հավանական է սա մեջբերում է Ղև. 18:5-ի խոստումը կամ էլ Հռ. 2:13: Օրենքը խոստացավ այն ինչը չկարողացավ կատարվել, և ոչ թե մեղքի պատճառով այլ որովհետև մարդն անկարող և ըմբոստ է: Օրենքը դարձավ մահվան վճիռ (հմմտ. Գաղ. 3:13; Եփ. 2:15; Կող. 2:14):

**7:11 «խաբեց ինձ եւ նորանով սպանեց»** Այս երկու ԲԱՅԵՐ-ն էլ ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ ԵՆ: Այս տերմինը՝ խաբեց, օգտագործում է Եվան Սեպտուագինդի մեջ (LXX) Ծննդ. 3:13: Պողոսն այս տերմինն օգտագործում է մի քանի անգամ (հմմտ. Հռ. 16:18; I Կոր. 3:18; II Կոր. 11:3; II Թես. 2:3; I Տիմ. 2:14): Ադամի ու Եվայի

խնդիրը նույնպես   իրենց կրքոտ ցանկությունն էր (հմմտ. II Կոր. 11:3; I Տիմ. 2:14): Աստծո պատվերին չհնազանդվելով, Ադամն ու Եվան հոգևորապես մեռան, և այդպես էլ Պողոսն ու բոլոր մարդիկ (1:18-3:20):

**7:12** Պողոսը պնդում է, որ Օրենքը բարի է : Եվ խնդիրը նրա մեջ չէ: Ինչևէ, Պողոսի զուգահեռ իմաստային կառուցվածքը գլուխ 6-ում «մեղքը» իսկ գլուխ 7-ում «օրենքը», պետք է, որ տխրեցներ օրինապաշտ հրեա հավատացյալներին (տկարները 14:1-15:13) Հռոմի եկեղեցում:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 7: 13**
[13] Ապա բարի՞ն ինձ մահ եղաւ. մաւ լիցի. այլ մեղքը. որ մեղքն երեւի որ բարիովն ինձ մահ գործեց. որ մեղքն աւելի եւս մեղաւոր լինի պատուիրանքի ձեռովը:

NASB (UPDATED) TEXT: 7:13
[13]Therefore did that which is good become *a cause of* death for me? May it never be! Rather it was sin, in order that it might be shown to be sin by effecting my death through that which is good, so that through the commandment sin would become utterly sinful.

**Արևելահայերեն «որ մեղքն երեւի որ… մեղքն աւելի եւս մեղաւոր լինի պատուիրանքի ձեռովը»**

**Արևմտահայերեն «որպէս զի մեղքին իսկական բնոյթը յայտնուի,… պատուիրանքով մեղքին շիտակ մեղք ըլլալը հաստատուի»**

**7:13**
**NASB** **"sin, in order that it might be shown to be sin...sin might become utterly sinful"**
**NKJV** **"sin, that it might appear sin...might become exceedingly sinful"**
**NRSV** **"that sin might be shown to be sin...sinful beyond measure"**
**TEV** **"in order that its true nature as sin might be revealed"**
**JB** **"sin, to show itself in its true colors...was able to exercise all its sinful power"**

Մեղքի չար բնությունը հստակ երևում է այն փաստում, որ նա վերցրեց բարի, օգտակար և աստվածահաճո մի բան , ինչպիսին Մովսեսական Օրենքն է  (հմմտ. Սաղ. 19, 119) և այնպես շրջեց, փոխեց դա, որ այն դարձավ դատապարտության և մահվան գործիք (հմմտ. Եփ. 2:15; Կող. 2:14): Մեղավոր մարդկությունը վերցրել է Աստծո տված ամեն բարի պարգև  և անցնել տրված սահմանները:

Ուշադրություն դարձրեք երկու *hina* (նպատակ ) նախադասություններին:

▣ **«աւելի եւս մեղաւոր»** Տես Հատուկ Թեմա: Պողոսն օգտագործում է «*Huper»* նախդիրը բարդ բառեր կազմելու համար 1:30:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 7: 14-20**
[14]Որովհետեւ գիտենք՝ որ օրէնքը հոգեւոր է. բայց ես եմ մարմնաւոր՝ մեղքի տակ ծախուած:
[15]Որովհետեւ ինչ որ գործում եմ չգիտեմ. որովհետեւ ոչ թէ ինչ որ կամենում եմ՝ այն եմ գործում. այլ
ինչ որ ատում եմ, այն եմ գործում: [16]Եւ եթէ ինչ որ չեմ կամենում՝ այն եմ գործում, օրէնքի համար
վկայում եմ՝ թէ բարի է: [17]Արդ ուրեմն ոչ թէ ես եմ գործում այն, այլ ինձանում բնակուած մեղքը:
[18]Որովհետեւ գիտեմ որ ինձանում (այսինքն իմ մարմնումը) մի բարի բան չէ բնակվում. քանզի
կամենալն կայ իմ մօտը. բայց բարին անելը չեմ գտնում: [19] Քանզի ոչ թէ բարին՝ որ կամենում եմ,
անում եմ. այլ չարը՝ որ չեմ կամենում, այն եմ գործում: [20]Ուրեմն եթէ այն որ չեմ կամենում ես, այն
եմ անում. էլ ես չեմ անում այն, բայց ինձանում բնակուած մեղքը:

NASB (UPDATED) TEXT: 7:14-20

**[14]For we know that the Law is spiritual, but I am of flesh, sold into bondage to sin. [15]For what I am doing, I do not understand; for I am not practicing what I *would* like to *do*, but I am doing the very thing I hate. [16]But if I do the very thing I do not want *to do*, I agree with the Law, *confessing* that the Law is good. [17]So now, no longer am I the one doing it, but sin which dwells in me. [18]For I know that nothing good dwells in me, that is, in my flesh; for the willing is present in me, but the doing of the good is not.**
**[19]For the good that I want, I do not do, but I practice the very evil that I do not want. [20]But if I am doing the very thing I do not want, I am no longer the one doing it, but sin which dwells in me.**

**7:14 «օրէնքը հոգեւոր է»** Աստծո Օրենքը բարի է: Այն չէ խնդիրը (հմմտ. հհ. 12 և 16բ):

▣ **«ես եմ մարմնաւոր»** Այս տերմինը օգտագործվում է Պողոսի կողմից (1) չեզոք իմաստով նկատի ունենալով ֆիզիկակամ մարմինը (հմմտ. 1:3; 2:28; 4:1; 9:3,5); և (2) բացասական իմաստով նկատի ունենալով մարդու մեղավոր բնությունը Ադամում (հմմտ. հ. 5): Անորոշ է, թե որ մեկին է վերաբերվում այս արտահայտությունը:

▣ **«մեղքի տակ ծախուած»** Այստեղ ՎԱՂԱԿԱՏԱՐ/ ԿԱՏԱՐՅԱԼ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է, որը նշանակում է «ես ծախված եմ եղել և շարունակում եմ ծախվել մեղքի կապանքին»: Նորից մեղքը անձնավորվում է, այստեղ որպես ստրկատեր: Ում կողմից է իրականանում ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌԸ հստակ չէ: Այն կարող էր վերաբերվել սատանային, մեղքին, Պողոսին կամ Աստծուն:

Հին Կտակարանում հիմնական տերմինը, որով բնութագրվում էր Աստված մարդուն կրկին Իրեն վերադարձնելու գործողությամբ «փրկագին» կամ «փրկանք» (և նրանց հոմանիշները): Այն իրականում նշանակում էր « ետ գնել» (և նրանց հոմանիշները. Տես Հատուկ Թեմա 3:24): Հակառակ գաղափարը այն արտահայտությունն, որն օգտագործված է այստեղ, «վաճառված, տրված ուրիշի ձեռքը…» (հմմտ. Դատավ. 4:2; 10:7; I Թագ. 12:9):

**7:15-24** Յուրաքանչյուր Աստծո զավակ ունի «աստվածային բնություն» (հմմտ. II Պետ. 1:4), բայց նաև մեղավոր բնություն (հմմտ. Գաղ. 5:17): Ըստ հնարավորին, մեղքը զրկված է ուժից և գործելու ընդունակությունից (հմմտ. Հռ. 6:6), բայց հավատացյալի կյանքի փորձառությունը համապատասխանում է գլուխ 7-ի նկարագրությանը; Հրեաներն ասում են, որ յուրաքանչյուր մարդու սրտում ապրում են սև և սպիտակ շներ: Ում ամենաշատն է կերակրում, նա էլ դառնում է ամենամեծը:

Երբ ես կարդում եմ այս հատվածը ես բառացիորեն ֆիզիկապես զգում եմ այն ցավը, որն ուներ Պողոսը, որը նա նկարագրում է մեր երկու բնությունների առօրյա կոնֆլիկտը: Հավատացյալները ազատագրվել են իրենց մեղավոր բնությունից, բայց Աստված օգնում է մեզ, մենք շարունակում ենք տրվել նրա գայթակղություններին: Հաճախ զարմացնող ճշմարտություն է այն, որ իսկական հոգևոր պատերազմը սկսում է փրկությունից հետո: Դրա համար էլ հոգևոր հասունությունը լարվածությամբ լեցուն է Եռյակ Աստծո հետ առօրյա հարաբերությունների ընթացքում և ամենօրյա կոնֆլիկտ չարի հետ:

**7:16,20** «**եթէ**» Այս երկուսն էլ ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ են, որոնք ենթադրվում են որպես ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակների համար:

**7:18** «**Որովհետեւ գիտեմ որ ինձանում (այսինքն իմ մարմնումը) մի բարի բան չէ բնակվում**» Պողոսը չի պնդում, որ ֆիզիկական մարմինը չար է, այլ որ նա ռազմի դաշտ է մեղավոր բնության և Աստծո Հոգու միջև: Հույները համարում էին, որ մարմինը ամբողջ նյութականի հետ միասին, չար էր: Այստեղից զարգացավ Գնոստիցիզմի դուալիստիկ հերետիկոսությունը (հմմտ. Եփ., Կող. և I Հովհ.): Հույները հակված էին մեղադրելու ֆիզիկականը հոգևոր խնդիրների համար: Պողոսը հոգևոր խնդիրները այս կերպ չի տեսնում: Նա անձնավորում է մեղքը և օգտագործում մարդու ըմբոստությունը Աստծո Օրենքի դեմ, որպես չարի հնարավորություն մարդու բնությունը նվաճելու համար: «Մարմին» տերմինը Պողոսի գրվածքներում կարող է նշանակել (1) ֆիզիկական մարմինը, որը բարոյապես չեզոք է (հմմտ. 1:3; 2:28; 4:1; 9:3,5); և (2) ընկած մեղավոր բնությունը՝ ժառանգած Ադամից (հմմտ. հ. 5):

**7:20** «**այլ ինձանում բնակուած մեղքը**» Հետաքրքիր է, որ Հռոմեացիս գիրքն այնքան հստակ է ցույց տալիս մարդու մեղքը, բայց սատանայի մասին չի նշվում մինչև 16:20-ը: Մարդիկ չեն կարող մեղադրել սատանային իրենց մեղքի խնդրի համար: Մենք ունենք ընտրություն: Մեղքը

ներկայացված է որպես թագավոր, բռնակալ և ստրկատեր: Այն , զրավում և գայթակղում է մեզ և մեր մեջ ձգտում առաջացնում լինել անկախ Աստծուց, և ինքնահաստատում ցանկացած գնով: Պողոսի անձնավորումը մեղքի կապվում է մարդու ընտրության հետ Ծննդ. 4:7:

Այս գլխում Պողոսն օգտագործում է « բնակվում է» տերմինը մի քանի անգամ (հմմտ. հհ. 17,18,20): Մեղքի բնությունը չի կործանվում կամ վերացվում փրկության ժամանակ, այլ այն դառնում է հնարավորինս անկարող: Այն շարունակում է ավելի ու ավելի անզոր լինել այն դեպքում, երբ մենք շատ ենք համագործակցում մեր մեջ բնակվող Սուրբ Հոգու հետ (հմմտ. 8:9,11): Աստված ապահովել է հավատացյալների համար ամեն ինչ, ինչն անհրաժեշտ է պայքարելու մարմնավորված (գրական) և անձնական (սատանան և դևերը) չարի դեմ: Սա Սուրբ Հոգու ներկայությունն ու զորությունն է: Երբ մենք ընդունում ենք Աստծո փրկության ձրի պարգևը, մենք նաև պետք է ընդունենք Սուրբ Հոգու արդյունավետ պաշտպանության ուժը: Փրկությունը և քրիստոնեական կյանքը ամենօրյա գործընթաց է, որը սկսվում և վերջանում է հավատացյալների ամեն օր կատարված որոշումների հետ: Աստված տվել է մեզ այն ամենը, ինչի կարիքը որ ունենք; Սուրբ Հոգին (Հռ. 8), հոգևոր զրահները (Եփ. 6:11), հայտնություն (Եփ. 6:17), և աղոթք (Եփ. 6:18):

Պատերազմը կատաղի է (Հռ. 7), բայց պատերազմը հաղթական է (Հռ. 8):

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 7: 21-25**
21 Ուրեմն գտնում եմ այդ օրէնքը՝ որ երբ ես կամենում եմ բարին անել, չարն իմ մօտը կայ: 22
Որովհետեւ ես հաւանում եմ Աստուծոյ օրէնքին՝ ներսի մարդովը: 23 Բայց տեսնում եմ ուրիշ օրէնք
իմ անդամներումը՝ որ իմ մտքի օրէնքի դէմ պատերազմում է, եւ ինձ գերի է բռնում այն մեղքի
օրէնքովը՝ որ իմ անդամներումն է: 24 Ես ինչ խեղճ մարդ եմ. ո՞վ կազատէ ինձ այս մահի
մարմնիցը: 25 Շնորհակալ եմ Աստուածանից մեր Տէր Յիսուս Քրիստոսի ձեռովը: Արդ ուրեմն ես
ինքս մտքով ծառայում եմ Աստուծոյ օրէնքին, իսկ մարմնով մեղքի օրէնքին:

**NASB (UPDATED) TEXT: 7:21-25**
**21 I find then the principle that evil is present in me, the one who wants to do good. 22 For I joyfully concur with the law of God in the inner man, 23 but I see a different law in the members of my body, waging war against the law of my mind and making me a prisoner of the law of sin which is in my members. 24 Wretched man that I am! Who will set me free from the body of this death? 25 Thanks be to God through Jesus Christ our Lord! So then, on the one hand I myself with my mind am serving the law of God, but on the other, with my flesh the law of sin.**

**7:22 «Աստուծոյ օրէնքին»** Հրեաների համար դա Մովսեսի Օրենքն էր: Ոչ հրեայի համար սա վերաբերվում էր (1) բնության վկան (հմմտ. Հռ. 1:19-20; Սաղ. 19:1-6); (2) ներքին - բարոյական խիղճ (հմմտ. Հռ. 2:14-15); և (3) սոցիալական նորմերին և ավանդույթների:

**Արևելահայերեն «ներսի մարդովը»**

**Արևմտահայերեն « ներսի մարդուն»**



**NASB** **“in the inner man”**
**NKJV** **“according to the inward man”**
**NRSV, NJB** **“in my inmost self”**
**TEV** **“my inner being”**

Պողոսը հակադրում է դրսի մարդուն (ֆիզիկական) նեսի մարդու հետ (հոգևոր) II Կոր. 4:16: Այս կոնտեքստում այս արտահայտությունը վերաբերվում է Պողոսի այն մասին կամ ցանկացած փրկված մարդուն, որը հաստատում և համաձայնվում է Աստծո կամքի և օրենքի հետ:

1. «Օրենքը հոգևոր է» 7:14
2. “ինչ որ կամենում եմ» 7:15
3. «օրենքի համար վկայում եմ՝ թե բարի է» 7:16
4. «կամենալն կայ իմ մոտը» 7:18
5. «բարին՝ որ կամենում եմ» 7:19
6. «չարը՝ որ չեմ կամենում» 7:19
7. «չեմ կամենում ես, այն եմ անում» 7:20
8. «ես կամենում եմ բարին անել» 7:21
9. « ես հաւանում եմ Աստուծոյ օրէնքին » 7:22
10. «իմ մտքի օրէնքի» 7:23
11. «ես ինքս մտքով ծառայում եմ Աստուծոյ օրէնքին» 7:25

Գլուխ 7 ցույց է տալիս, որ Աստծո և Իր խոսքի իմացությունը բավարար չէ: Հավատացյալները Հոգու կարիքն ունեն (գլուխ 8):

**7:23** 6:2; 8:2 և 7:23-ի միջև կա իրական հակադրություն: Այս համարը հստակ ցույց է տալիս թե Պողոսն ինչպես է օգտագործում օրենք տերմինը (*nomos*) որպես (1) մեղքի օրենք (հմմտ. հհ. 21,25) և (2) Աստծո օրենք (հմմտ. հհ. 22, 25): Ավելի շուտ 4,5,6,7,9 և 12 համարներում Պողոսը օգտագործեց տերմինը Հին Կտակարանի համար: Պողոսը սիստեմատիկ աստվածաբան չէր: Նա պայքարեց «օրենք»-ի գաղափարի հետ: Ինչ որ իմաստով այն Աստծո հայտնությունն էր, հիանալի պարգևը տրված մարդուն, իսկ մյուս կողմից այն որոշում էր մեղքը և պարզ սահմաններ դնում մեղավոր մարդու համար, որը անկարող էր պահել: Այս սահմանները միայն Հին Կտակարանի հայտնությունը չէր, այլ բոլոր բարոյական չափանիշները: բնական հայտնություն (հմմտ. Սաղ. 19; Հռ. 1:18-3:31) կամ սոցիալական նորմեր և բարքեր: Մարդիկ ամստամբներ են, որոնք ուզում են ամբողջությամբ իրենք կառավարել իրենց կյանքերը:

**7:24** Կարող է՞ սա հիմնավորված դրույթ լինել՝ փրկված մարդու կողմից ասված: Ոմանք ասում են ոչ, և ուստի, այս գլուխը վերաբերվում է բարոյական, կրոնական բայց չփրկված մարդկանց: Մյուսներն ասում են այո, դա վերաբերվում է ավետարանի «արդեն բայց դեռ ոչ» լարված տարրին հավատացյալների կյանքում: Վախճանաբանական իրականացումը դեռ ամբողջությամբ չի հայտնվել: Հասուն հավատացյալը զգում է այս անդունդը ավելի խիստ ձևով:

**Արևելահայերեն «այս մահի մարմնիցը»**

**Արևմտահայերեն « այս մահկանացու մարմնէն»**

▣

| | |
|---|---|
| NASB | "the body of this death" |
| NKJV, NRSV | "this body of death" |
| TEV | "this body that is taking me to death" |
| NJB | "this body doomed to die" |

Ֆիզիկական մարմինն ու միտքը ինքնին չար չեն: Նրանք ստեղծված էին Աստծո կողմից երկրի վրա կյանք լինելու համար և Իր հետ հաղորդակություն ունենալու համար: Նրանք ստեղծված էին «շատ բարի, լավ» (հմմտ. Ծննդ. 1:31): Բայց Ծննդ. 3 փոխեց մարդկությանը և Աստծո նպատակը: Այսպես չէր մտադրվել Աստված տեսնել այս աշխարհը, և այսպես չպիտի լիներ մարդը: Մեղքը ունի վճռորոշ ազդեցություն արարչագործության վրա: Մեղքը վերցրել է այն ինչ բարի է և փոխել եսակենտրոն չարի: Մարմինն ու միտքը դարձել են փորձության և մեղքի պատերազմի դաշտ: Պողոսը զգում է այս պայքարը սուր ձևով: Նա փափագում է նոր դարաշրջանին, նոր մարմնին, Աստծո հետ նոր հաղորդակցությանը (հմմտ. 8:23):

**7:25** Այս համարում բովանդակվում է նախորդ մտորումների ամփոփումը և միաժամանակ, նա բավարարում է անցումը հաջորդին էլ ավելի բարձր մակարդակով: Ինչևէ, նույնիսկ գլուխ 8-ում այս նույն լարվածությունը երևում է hh. 5-11:

Մեկնաբանների համար շարունակում է մնալ անլուծելի հարց, թե ու՞մ մասին է խոսում Պողոսը:

1. իր և հուդայականության մեջ իր ունեցած փորձառության մասին
2. բոլոր քրիստոնյաների
3. Ադամի, որպես օրինակ ամբողջ մարդկության
4. Իսրայելի, որն ունի Օրենքի գիտություն, բայց չկարողացավ հնազանդվել դրան

Անձնապես, ես #1 (հհ. 7-13,25բ) և #2 (հհ. 14-25ա) միասին են տեսնում: Տես Հռ. 7:7-25 Կոնտեքստի ներըմբռնումը

Գլուխ 7-ի ցավն ու տառապանքը համեմատվում և գերազանցվում է գլուխ 8-ի մեծությամբ:

- **«Շնորհակալ եմ Աստուածանից»** Ստորև տես հատուկ թեմա.

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՊՈՂՈՍԻ ՓԱՌԱԲԱՆՈՒԹՅՈՒՆԸ, ԱՂՈԹՔԸ ԵՎ ԳՈՀՈՒԹՅՈՒՆԸ ԱՌ ԱՍՏՎԱԾ**

Պողոսը Աստծուն փառաբանող մարդ էր: Նա գիտեր Հին Կտակարանը: Սաղմոսաց գրքի յուրաքանչյուր առաջին չորս բաժանումները (այն է, գրքեր) ավարտվում է օրհներգությամբ, փառաբանությամբ (հմմտ. Սաղ. 41:13; 72:19; 89:52; 106:48): Նա փառաբանում և գովաբանում է Աստծուն մի քանի տարբեր կերպերով:

1. իր նամակների բացման բաժնում, խոսքի մեջ
   ա. բացման փառաբանություն կամ ողջույն (հմմտ. Հռ. 1:7; I Կոր. 1:3; II Կոր. 1:2)
   բ. բացման օրհնություններ (*eulogētos*, հմմտ. II Կոր. 1:3-4; Եփ. 1:3-14)
2. փառաբանություն արտահայտող կարճ պոռթկումներով
   ա. Հռ. 1:25; 9:5
   բ. II Կոր. 11:31
3. օրհներգություն,փառաբանություն (բնութագրված որպես (1) *doxa* (այն է, փառք) և (2) «հավիտյանս», «հավիտյանս հավիտենից»
   ա. Հռ. 11:36; 16:25
   բ. Եփ. 3:20-21
   գ. Փիլ. 4:20
   դ. I Տիմ. 1:17
   ե. II Տիմ. 4:18
4. գոհություն հայտնելով (այն է, *eucharisteō*)
   ա. նամակի բացման խոսքեր (հմմտ. Հռ. 1:8; I Կոր. 1:4; II Կոր. 1:11; Եփ. 1:16; Փիլ. 1:3; Կող. 1:3,12; I Թես. 1:2; II Թես. 1:3; Փիլեմոն հ. 4; I Տիմ. 1:12; II Տիմ. 1:3)
   բ. Աստծուն գոհություն հայտնելու կոչ (հմմտ. Եփ. 5:4,20; Փիլ. 4:6; Կող. 3:15,17; 4:2; I Թես. 5:18)
5. գոհություն արտահայտող կարճ պոռթկումներով

ա. Հռ. 6:17; 7:25

բ. I Կոր. 15:57

գ. II Կոր. 2:14; 8:16; 9:15

դ. I Թես. 2:13

ե. II Թես. 2:13

6. ամփոփիչ օրհներգությամբ, փառաբանությամբ

ա. Հռ. 16:20,24

բ. I Կոր. 16:23-24

գ. II Կոր. 13:13

դ. Գաղ. 6:18

ե. Եփ. 6:24

Պողոսը գիտեր ճշմարիտ Երրորդությունը ոչ միայն աստվածաբանական տեսանկյունից, այլ իր իսկ սեփական փորձից ելնելով: Իր գրվածքներում նա սկսում է աղոթքով և փառաբանությամբ: Իր մտքերի շարադրանքի մեջտեղում նա ընդհատում է՝ Աստծուն կրկին փառք տալու և գոհություն հայտնելու համար: Իր նամակների ամփոփիչ մասում, նա երբեք չի մոռանում աղոթել, փառաբանել և գոհանալ Աստծուց: Պողոսի գրվածքը բառացիորեն շնչում է աղոթքով, փառաբանությամբ և գուհությամբ: Նա ճանաչում էր Աստծուն, նա գիտեր իրեն և նա գիտեր ավետարանը:

**ՔՆՆԱՐԿՎՈՂ ՀԱՐՑԵՐ**

Սա սերտողության համար ուղեցույց հանդիսացող մեկնաբանություն է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ:

1. Ինչպե՞ս է գլուխ 6-ը կապվում գլուխ 7-ին
2. Ի՞նչ կապ ունի Հին Կտակարանի օրենքը Նոր Կտակարանի հավատացյալների հետ (հմմտ. II Կոր. 3:1-11; Եբր. 8:7, 13)

3. Ի՞նչ երկու պատկերավոր օրինակներ է Պողոսը բերում 6 և 7 գլուխներում նկարագրելու համար մեր կապը հին կյանքի հետ:
4. Ի՞նչ կապ ունի Մովսեսական Օրենքը քրիստոնյայի հետ:
5. Քո բառերով բացատրիր տարբերությունը ինքնակենսագրական և ներկայացուցչական վարկածների միջև, Հռոմեացիս 7:7-25 մեկնաբանելու համար:
6. Ո՞վ է նկարագրված 7-րդ գլխում, չփրկված մեղավորը, հոգևորապես տկար հավատացյալը, թե՞ բոլոր հավատացյալները:

# ԹՈՒՂԹ ՈՒՂՂՎԱԾ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

## ԳԼՈՒԽ 8

| ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ | | | | |
|---|---|---|---|---|
| **UBS[4]** | **NKJV** | **NRSV** | **TEV** | **JB** |
| Կյանք Հոգու մեջ | Ազատություն ներսում բնակվող մեղքից | Աստծո փրկարար գործը | Կյանք Հոգու մեջ | Հոգու կյանքը |
| 8:1-11 | 8:1-11 | 8:1-4 | 8:1-8 | 8:1-4 |
| | | Կյանք մարմինի և Հոգու մեջ | | |
| | | 8:5-8 | | 8:5-11 |
| | | 8:9-11 | 8:9-11 | |
| | | Հոգին և որդեգրությունը | | |
| 8:12-17 | 8:12-17 | 8:12-17 | 8:12-17 | 8:12-13 |
| | | | | Աստծո որդիները |
| | | | | 8:14-17 |
| Փառքը որը կլինի | Տառապանքից դեպի փառք | Իրականացման հույսը | Գալիք փառքը | Փառքը որպես մեր վերջնական նպատակ |
| 8:18-25 | 8:18-30 | 8:18-25 | 8:18-25 | 8:18-25 |
| | | Մարդկային տկարությունը հաստատվում է | | |
| 8:26-30 | | 8:26-27 | 8:26-27 | 8:26-27 |

| | | | | |
|---|---|---|---|---|
| | | | | Աստված կանչել է մեզ կիսելու Իր փառքը |
| | | 8:28-30 | 8:28-30 | 8:28-30 |
| Աստծո սերը | Աստծո հավիտենական սերը | Մեր վստահությունը Աստծո սիրո մեջ | Աստծո սերը Հիսուս Քրիստոսում | Աստծո սիրո հիմնը |
| 8:31-39 | 8:31-39 | 8:31-39 | 8:31-39 | 8:31-34 |
| | | | | 8:35-37 |
| | | | | 8:38-39 |

ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ (տես էջ **vii**)

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Երկրորդ անգամ մեկ շնչով կարդացեք Աստվածաշնչյան այս գիրքը: Ուրվագծեք հիմնական թեմաներն ու թեման արտահայտեք մեկ նախադասությամբ:

6. Առաջին գրական բաժնի թեման
7. Երկրորդ գրական բաժնի թեման
8. Երրորդ գրական բաժնի թեման
9. և այլն

ԿՈՐՏԵՔՍՏԱՅԻՆ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ

Ա. Այս գլուխը համարվում է Պողոսի փաստարկների գագաթնակետը, որը սկսվել էր 1:18-ում: Այն սկսվում է «չկա դատապարտություն» (օրինական կարգավիճակ) և ավարտվում «չկա բաժանում»-ով (անձնական հարաբերություն): Աստվածաբանորեն, այն արդարացումից գնում է սրբացման միջոցով դեպի փառավորում (հմմտ. հհ. 29-30):

Բ. Սա Պողոսի աստվածաբանական զարգացումն է, երբ Աստված Իր Հոգին է տալիս հավատացյալներին (հմմտ. Հովհաննեսի շարադրանքը Հովհ. 14:12-31; 16:7-16): Հոգին

իրականացնում է այն ինչն արտահայտված է ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌԻ ԲԱՅՈՎ հ. 14, և որ ավետարանի գործը իրականանում է ընկած, մեղավոր մարդկանց կյանքում: Հոգին կլինի նրանց հետ և կբնակվի նրանց մեջ և կսկսի ձևավորել Քրիստոսին նրան մեջ: Գլուխ 8-ը օգտագործում է հոգի բառը, *pneuma,* ավելի քան 21 անգամ, այն ինչ գլուխ 7-ում ամբողջապես բացակայում է այդ բառը (ինչպես նաև 3-6 գլուխներում և միայն հանդիպում է 1-2 գլուխներում այն էլ ընդամենը 3 անգամ):

Գ. Կյանքում կան երկու հեռանկար (անձնական աշխարհայացքներ), երկու ապրելաոճ, երկու առաջնություն, երկու ճանապարհ (լայն ճանապարհը և նեղ ճանապարհը) որ մարդիկ հետևում են, այստեղ մարմին կամ Հոգի: Մեկը տանում է մահվան մյուսը՝կյանքի: Այս հասկացողությունները ավանդորեն կոչվել են Հին Կտակարանի իմաստուն գրականության «երկու ճանապարհները» (հմմտ. Սաղ. 1 և Առ. 4:10-19): Հավիտենական կյանքը, հոգևոր կյանքը ունի նկատելի առանձնահատկություններ (այն է, Հոգով կյանքը հակառակ է մարմնավոր կյանքին):

Ուշադրություն դարձրեք, որ այս ամբողջ աստվածաբանական կոնտեքստում կա սատանայի ակնհայտ բացակայությունը (հմմտ. Հռ. 1-8): Նրա մասին չի խոսվում մինչև Հռ. 16:20-ը: Մարդու ընկած ադամական բնությունն է գտնվում ուշադրության կենտրոնում: Սա Պողոսի ձևն էր, որով նա մասամբ արդարացնում էր ընկած մարդկության արդարացումները գերբնական բնության վերաբերյալ, Աստծո դեմ ունեցած իր ըմբոստ վիճակի համար: <u>Մարդն է</u> պատասխանատու դրա համար:

Դ. Այս գլուխը շատ դժվար է ուրվագծել, քանի որ միտքը զարգանում է հյուսվելով մի քանի ճշմարտություններ միաժամանակ իրար կապելով և կրկնվող ձևով, բայց առանց կոնտեքստային բաժինների:

Ե. 12-17 համարները հավատացյալին տեղեկացնում են հետևյալ վստահելի երաշխիքների մասին, որն իրեն տալիս է հավատքը.

1. Առաջինը դա փոխված աշխարհայացքն ու ապրելակերպն է, որը տեղի է ունենում Սուրբ Հոգու միջոցով:
2. Երկրորդը, որ մեր մեջ եղած Աստծո վախը փոխարինվել է Սուրբ Հոգով ընտանեկան սիրո փոխհարաբերության:
3. Երրորդը ներքին համոզմունքն է մեր որդիության, մեր մեջ բնակվող Սուրբ Հոգու կողմից:

4. Չորրորդն այն է, որ այս համոզմունքը իրական է և հաստատ նույնիսկ խնդիրների և պայքարների մեջ այս ընկած աշխարհում:

Զ. 31-39համարները դատական ատյանի տեսարան են ներկայացնում, որը տիպիկ Հին Կտակարնի մարգարեների կողմից օգտագործվող գրական տեխնիկական ձև է: Աստված դատավոր; սատանան մեղադրող կողմ; Հիսուսը դատապաշտպան (paraclete), հրեշտակները ականատեսներ իսկ սատանան մեղադրում է հավատացյալ մարդկանց:

1. իրավաբանական տերմիններ
   ա. մեր դեմ (հ. 31)
   բ. մեղադրանք ներկայացնել (հ. 33)
   գ. արդարացնել (հ. 33)
   դ. դատապարտել (հ. 34)
   ե. բարեխոսել (հ. 34)
2. դատական հետապնդում, «ով» (հհ. 31,33,34[մի քանի անգամ],35)
3. Աստծո երաշխիքի ապահովումը Քրիստոսում (հհ. 32, 34)
4. չկա բաժանում Աստծուց
   ա. երկրային հանգամանքներ (հ. 35)
   բ. Հին Կտակարանի մեջբերում Սաղ. 44:22 (հ. 36)
   գ. հաղթանակ (հհ. 37,39)
   դ. գերբնական հանգամանքներ կամ գործոններ (հհ. 37-39)

ԲԱՌԻ ԵՒ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 8-1-8**
[1]Ուրեմն հիմա դատապարտութիւն չկայ Յիսուս Քրիստոսումը լինողների համար, որ մարմնաւորապէս չեն վարվում, այլ հոգեւորապէս: [2]Որովհետեւ կեանքի հոգու օրէնքը Յիսուս Քրիստոսումն ազատեց ինձ մեղքի եւ մահի օրէնքիցը: [3]Որովհետեւ այն որ անկարելի էր օրէնքին, որ տկար էր մարմնի պատճառովը, Աստուած իր Որդին ուղարկելով մեղքի մարմնի նմանութիւնովը եւ մեղքի համար՝ մեղքին դատապարտեց այն մարմնումը. [4] Որ օրէնքի արդարութիւնը կատարուի մեզանում, որ մարմնաւորապէս չենք վարվում՝ այլ հոգեւորապէս: [5]Որովհետեւ մարմնաւոր լինողները մարմնի բաներն են մտածում. իսկ հոգեւոր լինողները՝ հոգու բաները: [6] Որովհետեւ մարմնի խորհուրդը մահ է. եւ հոգու խորհուրդը՝ կեանք եւ խաղաղութիւն: [7] Որովհետեւ մարմնի խորհուրդը Աստուծոյ դէմ թշնամութիւն է. որովհետեւ Աստուծոյ օրէնքին չէ հնազանդում, եւ կարող էլ չէ: [8] Եւ նորանք՝ որ մարմնով են, չեն կարող Աստուծուն հաճոյ լինիլ:

NASB (UPDATED) TEXT: 8:1-8

1Therefore there is now no condemnation for those who are in Christ Jesus. 2For the law of the Spirit of life in Christ Jesus has set you free from the law of sin and of death. 3For what the Law could not do, weak as it was through the flesh, God *did*: sending His own Son in the likeness of sinful flesh and *as an offering* for sin, He condemned sin in the flesh, 4so that the requirement of the Law might be fulfilled in us, who do not walk according to the flesh but according to the Spirit. 5For those who are according to the flesh set their minds on the things of the flesh, but those who are according to the Spirit, the things of the Spirit. 6For the mind set on the flesh is death, but the mind set on the Spirit is life and peace, 7because the mind set on the flesh is hostile toward God; for it does not subject itself to the law of God, for it is not even able *to do so*, 8and those who are in the flesh cannot please God.

8:1

**Արևելահայերեն «Ուրեմն հիմա»**

**Արևմտահայերեն «Իսկ արդ»**

| | |
|---|---|
| NASB | "Therefore there is now" |
| NKJV, NRSV | "there is therefore now" |
| TEV | "There is" |
| JB | "the reason, therefore" |

Այս բառերը կապված են նախորդ կոնտեքստի հետ: Ոմանք համարում են, որ դրանք 7:24-25 համարներն են, բայց կարծում եմ ավելի լավ է էլ ավելի առաջ գնալ մինչև 3:21-7:25 համարները:

▣ **«չկայ»** Հունարենում նախադասությունը սկսվում է այս բառով: Այն ունի ընդգծված նշանակություն «չկա ոչ մի դատապարտություն» նրանց համար, ովքեր Քրիստոսի մեջ են (հմմտ. հհ. 1-3), և նրանց համար, ովքեր քայլում են Հոգով (հմմտ. հհ. 4-11): Այստեղ գտնվում են նոր ուխտի երկու կողմերը (1) այն ձրի պարգև է Քրիստոսում; և (2) նոր կյանք, ապրելաոճ, որպես պարտադիր արձագանք ուխտին որպես քրիստոնյա: Արդարացումը թե օբյեկտիվ է (ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ) և թե սուբյեկտիվ (ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ): Սա թե վիճակ է և թե կյանքի ապրելակերպ:

▣ **«դատապարտություն»** Այս տերմինը *katakrima* հաճախ չէ օգտագործված Սեպտուագինտի մեջ, բայց այն արտացոլում է անեծքը՝ Աստծուն անհնազանդ լինելու համար 2 Օրին. 27:26: Սա նշանակում է «ըստ դատավճռի կատարվող պատիժ»: Այն իրավական է, դատական տերմին է, որի իմաստը հակառակ է արդարացմանը: Պողոսի գրվածքներում այն հազվագյուտ տերմին է (հմմտ. 5:16,18) և ուրիշ ոչ մի տեղ Նոր Կտակարանում չի հանդիպում:

KJV թարգմանության մեջ համար 1-ը ունի լրացում, «ով չի ապրում մարմնով, այլ Հոգով»: Այս արտահայտությունը շատ հին հունարեն ձեռագրերում չկա: UBS[4] թարգմանությունը այս

բացակայությունը դասակարգում է որպես «A» կատեգորիա (հուսալի, վստահելի տարբերակ): Այն հանդիպում է 4-րդ համարում: Աստվածաբանական տեսանկյունից ավելացրած արտահայտությունը ոչ մի կերպ չի համապատասխանում համար 1-ին, բայց բացարձակորեն համաձայնեցվում է h. 4-ի հետ: 1-3 համարները խոսում են դիրքային, վիճակի սրբացման մասին (ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ), մինչ 4-11 համարները խոսում են գործնական, փորձառական սրբացման մասին կամ քրիստոսանմանության (ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ): Հետաքրքիր տողատակի ծանոթագրություն կա Վիլիամ Ռ. Նյուելլայի «Հռոմեացիս թուղթը համար առ համար» գրքի 289 էջում (William R. Newell's *Romans Verse by Verse* ) (Moody, 1938):

«Վերանայված տարբերակը (The Revised Version) շատ ճիշտ չի ընդգրկում «ով չի քայլում մարմնով, այլ Հոգով» արտահայտությունը: KJV թարգմանության սկզբից անցել է ավելի քան 300 տարի, և այդ ժամանակաշրջանում շատ և ավելի լավ, ամենաճշգրիտ հին հունարեն ձեռագրերն են հայտնաբերվել, որոնք մենք ունենք և լուրջ, աստվածապաշտ մարդիկ հաստատուն քայլերով առաջ են ընթացել այս ճանճրալի , բայց և պտղաբեր գործում՝ սխալներ գտնելով և ուղղելով, որոնք տարածվել են արտագրության ժամանակ: Քանի որ մեզ բոլորիս հայտնի է, որ մենք չունենք Սուրբ Գրքի կեղծված ձեռագրերը: Աստված հաճեց գաղտնի պահել դա Իր ստեղծագործությունից, մարդու որդիներից, որոնք հակված են կռապաշտության:

Համար 1-ը պետք է ավարտվի «Հիսուս Քրիստոսում» բառերով, այս 4 պատճառով;

(1) Հունարեն ձեռագրերը իրենց շատությամբ վկայում են, որ «ով մարմնավորապես չի վարվում, այլ Հոգով» արտահայտությունը h. 1-ում չպետք է լինի,—բայց փաստում է h. 4-ում այս խոսքերը ներգրավելու անհրաժեշտությունը:

(2) Հոգևոր խորաթափանցությունը նաև համաձայնեցվում է h.1-ում այս բառերի ներածության հետ, որ մեր փրկությունը կախված է մեր ապրելակերպից, և ոչ թե Աստծո Սուրբ Հոգուց: Բայց, ինչպես Նոր Կտակարանի թղթերն են սովորեցնում, Հիսուս Քրիստոսում եղողների համար չկա դատապարտություն: Ապա թե ոչ, մեր հուսալիությունը կախված կլինի մեր ապրելակերպից, և ոչ թե Քրիստոսում ունեցած մեր դիրքից:

(3) Միանգամայն ակնհայտ է, որ այս արտահայտության տեղը h. 4-ի վերջում է, հենց այնտեղ, որտեղ խոսքը գնում է հավատացյալի ապրելակերպի մասին, և ոչ թե դատապարտությունից պաշտպանված լինելու մասին:

(4) Այն, որ այս արտահայտությունը Հակոբոս Թագավորի թարգմանության մեջ h. 1-ի վերջում է հանդիսանում է գլոսա՝ բացատրություն (անհասկանալի բառի կամ արտահայտության մեկնություններ լուսանցքում կամ բնագրում) հանդիպում է ոչ միայն

ամենալավ երկաթագիր ձեռագրերում Aleph, A, B, C, D, F, G; A, D (ճշտ.); կամ մի քանի լավ արագագիր, ձեռագիր և ամենահինհին տարբերակներում (տես Օլշաուսեն, Մեյեռ, Ալֆորդ Ջ. Ֆ. և Բ., (Olshausen, Meyer, Alford, J. F. and B.), և նաև Դարբիի հիանալի քննարկումը այս հարցի շուրջ իր «Սինոպսիս» գրքում (Darby, *Synopsis, in loc*); այլ նաև այն, որ այս գլուսան շատ նման է այն լրացումներին, որոնք հայտնաբերվել են ուրիշ տեքստերում, որ չլինի թե մի բան բաց թողնեն:

Այն, որ Աստված նախընտրեց, որ Իր Խոսքը թարգմանվի՝ առանց հեղինակությունը կորցնելու, ակնհայտ է այն բանից, որ Նոր Կտակարանում շատ է օգտագործվում եբրայերեն Հին Կտակարանի հունարեն թարգմանությունը՝ Սեպտուագինը:

Մենք պետք է շնորհակալ լինենք Աստծուն այն նվիրյալ մարդկանց համար, ովքեր իրենց կյանք անցկացրել են ձեռագրերի խորը ուսումնասիրությամբ, և որոնք մեզ նվիրել են հիանալի անթերի թարգմանություն: Մենք պետք է հստակ սահման գծենք, անշուշտ ընդմիշտ, այնպիսի գիտնականների և ինքնահավան «մոդեռնիստների» միջև (կամ, անցյալում «բարձր քննադատներ»), ովքեր իրենց վրա են վերցնում պատասխանատվություն՝ մեզ պատմելու այն, ինչ Աստված պետք է ասի Աստվածաշնչում, փոխարենը խորը խոնարհությամբ փնտրելու այն ինչ Աստված արդեն ասել է» (էջ 289):

▣ **«Յիսուս Քրիստոսումը լինողների համար»** Պողոսին բնորոշ այս արտահայտությունը (ՆԵՐԳՈՅԱԿԱՆ ՀՈԼՈՎ) հավասարազոր է «անձնական հարաբերություն» ժամանակակից արտահայտությանը: Պողոսը ճանաչում էր Հիսուսին, սիրում էր Նրան, ծառայեց Նրան և ցնծում էր Նրանում: Ավետարանը թե պատգամ է, որին պետք է հավատալ, և թե Անձ, որին պետք է ընդունել: Ապրելու զորությունը Պողոսը վերցնում է Հարուցյալ Քրիստոսի հետ ունեցած անձնական հարաբերությունից, որին նա հանդիպեց Դամասկոսի ճանապարհին: Նրա անձնական փորձառությունը Հիսուսի հետ ձևավորում է նրա աստվածաբանությունը Հիսուսի մասին: Եվ այս փորձառությունը չի առաջանում վանական միստիցիզմից, այլ եռանդուն միսիոներական ծառայությունից: Քրիստոսին ճանաչել նշանակում է Նրան ծառայել: Հասուն քրիստոնեությունը դա թե պատգամ է, թե Անձ և թե ապրելակերպ: (Տես ծանուցում 1:5)

**8:2 «կեանքի հոգու օրէնքը. . . մեղքի եւ մահի օրէնք»** Այս բառերի իմաստը կարող է նշանակել: (1) հակասություն մեղքի օրենքի (հմմտ. Հռ. 7:10,23,25) և Աստծո նոր օրենքի միջև (հմմտ. Հռ. 7:6,22,25); (2) «սիրո օրենքը» (հմմտ. Հակ. 1:25; 2:8,12) ի տարբերություն «Մովսեսի Օրենքի» (հմմտ. 7:6-12); (3) հին դարը ի տարբերություն նոր դարի; կամ (4) հին ուխտը նոր ուխտի հետ (հմմտ. Եր. 31:31-34; Եբրայեցիս Թուղթը Նոր Կտակարանում):

Հակադրության այսպիսի ոճը պահպանվում է բավականին երկար.

1. մեղքի և մահվան օրենքը, հ. 2
2. մարմնավորապես և հոգևորապես, հհ. 4 և 5
3. մարմնի բաները և Հոգու բաները, հ. 5
4. մարմնաւոր լինողները մարմնի բաները և հոգեւոր լինողները՝ հոգու բաները, հ. 5
5. մարմնի խորհուրդ և հոգու խորհուրդ, հ. 6
6. մարմնով այլ Հոգով, հ. 9
7. մարմինը մեռած է իսկ Հոգին կենդանի, հ. 10
8. դուք պետք է մեռնեք և դուք կապրեք, հ. 13
9. ոչ թե ծառայության հոգին այլ որդեգրության հոգին, հ. 15

**Արևելահայերեն «ազատեց ինձ»**
**Արևմտահայերեն «զիս ազատեց»**

▣
**NASB, NRSV, JB "has set you free"**
**NKJV, TEV "had made me free"**

2-3 համարներ 6-րդ գլխի աստվածաբանական պատգամն են: Հին հունարեն տեքստերում այստեղ օգտագործված են տարբեր դերանուններ; «ինձ» A, D, K և P ձեռագրերում, իսկ «քեզ» ℵ, B, F և G: «Մեզ» դերանունը հանդիպում է ավելի ուշ երկաթագիր ձեռագրերում, Ψ: UBS[4] կազմողները «քեզ» տարբերակը գնահատում են ըստ «B» կատեգորիայի (գրեթե հավանական): UBS[3] տալիս են դրան «D» կատեգորիա (մեծ դժվարությամբ):

Նյումեն և Նիդա «Թարգմանչի օրագիրը ըստ Պողոսի Հռոմեացիներին ուղղված թղթի» մեջ գրում են (Newman and Nida, *A Translator's Handbook on Paul's Letter to the Romans*),
«… UBS թարգմանության հունարեն տեքստը առաջարկում է «ինձ» դերանունը, չնայած այս տարբերակը պատկանում է «C» կատեգորիային, ցույց է տալիս կասկածանք այն բանի հանդեպ, որ դա համապատասխանում է կեղծ տարբերակին (էջ 145-146):

ԴԵՐԱՆՈՒՆ-ների հետ կապված այս խնդիրը «մեզ/ձեզ», կամ «ես/մենք», ժամանակ առ ժամանակ հանդիպում է Պողոսի գրվածքների հունարեն տեքստերում:

**8:3 «այն որ անկարելի էր օրէնքին»** Մովսեսի Օրենքը բարի է և սուրբ, իսկ մարդկությունը՝ տկար և մեղավոր (հմմտ. 7:12, 16): ԲԱՑ-ի փոխարեն այստեղ իրականում ԱԾԱԿԱՆ է *adunaton*, որը սովորաբար նշանակում է «անհնարին, անիրականանալի» (հմմտ. Եբր. 6:4,18; 10:4; 11:6), բայց

այն կարող է նաև նշանակել «առանց ուժի» (hմմտ. Գործք 14:8; Հռ. 15:1): Օրենքն անկարող էր տալ ազատագրում: Այլ ընդհակառակը, այն միայն կարող էր բերել դատապարտություն, մահ և անեծք:

▣ **«որ տկար էր մարմնի պատճառովը»** Սա է Պողոսի հիմնական փաստարկը գլուխ 7-ում: Աստծո Օրենքը բարի է և սուրբ, բայց մեղավոր, ընկած, ապստամբ մարդը չի կարող կատարել դրա պահանջները: Պողոսը, ի տարբերություն ռաբբիների, շեշտը դնում էր մեղքի հետևանքների վրա Ծննդ. 3:

▣ **«Աստուած իր Որդին ուղարկելով»** Այն, ինչ ընկած մարդը չկարողացավ անել Հին Ուխտի ներքո, Աստված արեց Նոր Ուխտի մեջ (hմմտ. Եր. 31:31-34; Եզ. 36:22-36) Հիսուսի միջոցով (hմմտ. Ես. 53; Հովh. 3:16): Արտաքին պահանջների փոխարեն Աստված մարդու մեջ Հոգի և նոր սիրտ դրեց: Այս Նոր Ուխտը հիմնված է ապաշխարության և Հիսուսի ավարտած գործի հավատքի վրա, և ոչ թե մարդու գործերի: Ինչևէ, երկու ուխտերն էլ պահանջում են նոր, աստվածահաճո ապրելակերպ:

▣ **“մեղքի մարմնի նմանութիւնովը»** Այս նույն ճշմարտությունը հաստատվում է Փիլ. 2:7-8: Հիսուսն ուներ իրական մարդկային մարմին (բայց ոչ մեղավոր բնություն, hմմտ. Փիլ. 2:7-8; Եբ. 7:26): Նա իրապես մեզանից մեկն է: Նա փորձվեց բոլոր կերպերով ինչպես մենք, բայց առանց մեղքի (hմմտ. Եբ. 4:15): Նա լավ է հասկանում մեզ:

▣ **«մեղքի համար»** Այս նույն գաղափարը հաստատված է II Կոր. 5:21 և I Պետ. 2:24: Հիսուս եկավ մեռնելու (hմմտ. Ես. 53:4-6,10-12; Մարկ. 10:45): Հիսուսի անմեղ (անարատ) կյանքը դարձավ մեղքի պատարագ, զոհ (hմմտ. Հովh. 1:29):

▣ **«մեղքին դատապարտեց այն մարմնումը»** Հիսուսի մահը ընդգծեց և լուծեց մարդկային մեղավոր բնության խնդիրը, և ոչ թե մեղքի առանձին գործողությունները (ինչպես արվում էր Մովսեսական Օրենքում): Նրա կյանքը, մահն ու հարությունն էր, որ իրականացրեց Աստծո հավիտենական փրկության նպատակը (hմմտ. Գործք 2:23; 3:18; 4:28; 13:29): Նա նաև ցույց տվեց մեզ, որ մարդիկ կարող են լինել և պետք է լինեն (hմմտ. Հովh. 13:15; I Պետ. 2:21):

**8:4** Հավանական է, այս համարը վերաբերվում է Նոր Ուխտին (hմմտ. Եր. 31:33 և Եզ. 36:26-27): Այն առընչվում է մեր փրկության երկու ասպեկտների հետ:Նախ, Հիսուսն իրականացրեց Հին

Կտակարանի պահանջները, իսկ Նրա արդարության վրա ունեցած հավատքի միջոցով, որպես ձրի պարգև, դա փոխանցվում է հավատացյալներին՝ անկախ իրենց արժանիքների և կարողությունների: Սա մենք կոչում ենք արդարացում կամ դիրքային սրբացում: Աստված տալիս է հավատացյալներին նոր սիրտ և նոր հոգի: Հիմա մենք քայլում ենք Հոգով և ոչ թե մարմնով: Սա կոչվում է «պրոգրեսիվ կամ աստիճանաբար կատարվող սրբացում»: Քրիստոնեությունը նոր ուխտ է, որն ունի թե իրավունքներ (փրկության պարգև) և թե պատասխանատվություններ (քրիստոսանմանություն, հմմտ. 6:13): Դժբախտաբար, որոշ հավատացյալներ ապրում են մարմնավոր, անհամապատասխան կյանքով (հմմտ. I Կոր. 3:1-3):

▣ **«որ մարմնաւորապէս չենք վարվում՝ այլ հոգեւորապէս»** Այս նույն հակադրությունը գտնվում է Գաղ. 5:16-25: Իրավական արդարությունը պետք է ուղեկցվի ապրելակերպի արդարությունով: Նոր Ուխտի նոր սիրտն ու միտքը մեր փրկության հիմքը չէ, այլ հետևանքը: Հավիտենական կյանքն ունի տեսանելի առանձնահատկություններ:

**8:5** Պողոսը հակադրում է կյանքը «մարմնով» և կյանք «Հոգով» հհ. 5-8 («մարմնի գործերը» հմմտ. Գաղ. 5:19-21 «Հոգու պտուղ», հմմտ. 5:22-25):

**8:6 «հոգու խորհուրդը»** Հրեաները գիտակցեցին, որ աչքերն ու ականջները հոգու պատուհաններն են: Մեղքը սկսվում է կյանքի մտային բաժնում: Մենք դառնում ենք այն, ինչի մասին երկար և հանգամանորեն ենք մտածում (հմմտ. Հռ. 12:1-2; Փիլ. 4:8):

Պողոսը հստակորեն չի հետևում ավանդական ռաբբիական կարծիքին մարդկանց մեջ գոյություն ունեցող երկու «մտադրություններին» (*yetzers*) վերաբերյալ: Պողոսի համար պարզ է, որ բարի մտադրությունները գոյություն չեն ունեցել ընկած արարչագործության մեջ, դրանք սկսվում են ապաշխարությունից հետո: Պողոսը համոզված է, որ հենց Սուրբ Հոգին է սկսում ներքին հոգևոր կոնֆլիկտը մարդու մեջ (հմմտ. Հովհ. 16:7-14):

▣ **«կյանք»** Սա վերաբերվում է հավիտենական կյանքին, նոր դարաշրժանի կյանքին:

▣ **«խաղաղութիւն»** Այս տերմինը բնագրում նշանակում էր «իրար կապել մի բան, որը կոտրվել էր» (հմմտ. Հովհ. 14:27; 16:33; Փիլ. 4:7): Տես Հատուկ Թեմա: Խաղաղություն 5:1: Նոր Կտակարանը խոսում է խաղաղության երեք կերպերի մասին.

1. Մեր խաղաղությունը Աստծո հետ Քրիստոսի միջոցով (հմմտ. Կող. 1:20)

2. մեր սուբյեկտիվ զգացողությունը Աստծո հետ ուղիղ լինելու մասին (հմմտ. Հովh. 14:27; 16:33; Փիլ. 4:7)
3. Աստված, Քրիստոսի միջոցով միավորելով մեկ նոր մարմնում, թե հրեային և թե հեթանոսին (հմմտ. Եփ. 2:14-17; Կող. 3:15):

**8:7-11** Պողոսը մի քանի կերպերով նկարագրում է մարդու վիճակն առանց Աստծո (1) թշնամություն Աստծո դեմ, h. 7; (2) չի ենթարկվում Աստծուն, h. 7; (3) չի կարող Աստծուն հաճելի լինել, h. 8; և (4) հոգևորապես մեռած, որի արդյունքում հավիտենական մահն է, hh.10-11:

8:7

**Արևելահայերեն «մարմնի խորհուրդը Աստուծոյ դէմ թշնամութիւն է»**

**Արևմտահայերեն «Քանզի մարմնաւոր խորհուրդը Աստուծոյ դէմ թշնամութիւն է»**

| | |
|---|---|
| NASB, NRSV | **"the mind set on the flesh is hostile toward God"** |
| NKJV | **"the carnal mind *is* enmity against God"** |
| TEV | **"people become enemies of God"** |
| NJB | **"the outlook of disordered human nature is opposed to God"** |

Նկատեք, որ այս արտահայտությունը զուգահեռ է «մարմնի խորհուրդը մահ է» h. 6 և «որ մարմնավորապես չենք քայլում» h. 4: Նաև ուշադրություն դարձրեք այն փաստի վրա, որ ընկած մարդկային բնությունը թե մտածելու վրա է անդրադարձել (աշխարհայացք) և թե կյանքի ապրելակերպի (հմմտ. 7:5):

▣ **«եւ կարող էլ չէ»** Ընկած, մեղավոր մարդկությունը ոչ միայն ընտրություն չի անում՝ Աստծուն հետևելու համար, այլ նաև ունակ չէ Նրան հետևելու: Ընկած, մեղավոր մարդկությունը, առանց Սուրբ Հոգու օգնության, չի կարող արձագանքել հոգևոր բաներին (հմմտ. Ես. 53:6; I Պետ. 2:24-25): Աստված նախաձեռնությունը միշտ Իր ձեռքն է վերցնում (հմմտ. Հովh. 6:44,65):

**8:8 «նորանք՝ որ մարմնով են»** Պողոսն օգտագործում է այս արտահայտությունը երկու իմաստով (1) ֆիզիկական մարմին (հմմտ. Հռ.1:3; 2:28; 4:1; 9:3,5); և (2) Աստըծուց հեռու ապրելու մարդու ջանքերը (հմմտ. Հռ. 7:5; 8:4-5): Այստեղ 2-րդ տարբերակն է: Սա վերաբերվում է ըմբոստ, անհավատ մարդկությանը:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 8:9-11**
[9] Բայց դուք մարմնով չէք՝ այլ հոգով, եթէ Աստուծոյ Հոգին ձեզանում բնակուած է. իսկ եթէ մէկը Քրիստոսի Հոգին չունի՝ նա նորանը չէ:[10]Եւ եթէ Քրիստոսը ձեզանում է՝ ապա մարմինը մեռած է մեղքի համար, եւ հոգին կենդանի է արդարութեան համար:
[11]Եւ եթէ Յիսուսին մեռելներից յարուցանողը ձեր մահկանացու մարմիններն էլ կը կենդանացնէ իր Հոգովը, որ ձեզանում բնակուած է:

NASB (UPDATED) TEXT: 8:9-11

[9]However, you are not in the flesh but in the Spirit, if indeed the Spirit of God dwells in you. But if anyone does not have the Spirit of Christ, he does not belong to Him. [10]If Christ is in you, though the body is dead because of sin, yet the spirit is alive because of righteousness. [11]But if the Spirit of Him who raised Jesus from the dead dwells in you, He who raised Christ Jesus from the dead will also give life to your mortal bodies through His Spirit who dwells in you.

**8:9 «եթէ»** 9,10,11,13(2անգամ), 17(2անգամ) համարներում մենք տեսնում ենք մի շարք ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ: Նրանք բոլորն էլ հանդիսանում են ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ, որը ենթադրվում է ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակների համար: Պողոսը ենթադրում էր այն, որ իր ընթերցողները Հռոմի եկեղեցում քրիստոնյաներ էին (հմմտ. հ. 9):

- **«Քրիստոսի Հոգին»** Մարդիկ կամ ունեն Հոգին և ուստի հավատացյալներ են, կամ էլ նրանք չունեն Հոգին և հոգևորապես մեռած են: Փրկության պահին մենք ամբողջությամբ ստանում ենք Սուրբ Հոգին: Մենք Նրա ավելիի կարիքը չունենք, այլ Նա ունի մեր կարիքը, որ մնանք Նրա մեջ:

«Հոգին» հ.9, «Աստծո Հոգին» հ.9 և «Քրիստոսի Հոգին» հ.9 արտահայտությունները հոմանիշներ են:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՀԻՍՈՒՍԸ և ՀՈԳԻՆ**

Գոյություն ունի սահուն անցում Սուրբ Հոգու և Աստծո Որդու գործունեության միջև: Ջ. Քեմբել Մորգանն (G. Campbell Morgan) ասում է, որ լավագույն անունը Սուրբ Հոգու համար «ուրիշ Հիսուս» անունն է: Ստորև բերված է զուգահեռ Որդու և Հոգու գործի և անունների միջև:

1. Սուրբ Հոգին կոչվում է «Հիսուսի Հոգին» կամ նմանատիպ անուններով (հմմտ. Հռ. 8:9; II Կոր. 3:17; Գաղ. 4:6; I Պետ. 1:11):

2. Երկուսի համար էլ օգտագործված են նույն տերմինները

ա. «ճշմարտություն»

1) Հիսուս (Հովհ. 14:6)

2) Հոգի(Հովհ. 14:17; 16:13)

բ. «բարեխոս»

1) Հիսուս (I Հովհ. 2:1)

2) Հոգի (Հովհ. 14:16,26; 15:26; 16:7)
գ. «Սուրբ»
1) Հիսուս (Ղուկ. 1:35; 14:26)
2) Հոգի (Ղուկ. 1:35)
3. Երկուսն էլ ապրում են հավատացյալի մեջ
ա. Հիսուս (Մաթ. 28:20; Հովհ. 14:20,23; 15:4-5; Հռ. 8:10; II Կոր. 13:5; Գաղ. 2:20; Եփ. 3:17: Կող. 1:27)
բ. Հոգի (Հովհ. 14:16-17; Հռ. 8:9,11; I Կոր. 3:16; 6:19; II Տիմ. 1:14)
գ. և նույնիսկ Հայրը (Հովհ. 14:23; II Կոր. 6:16)

**8:10 «Քրիստոսը ձեզանում է»** «Ձեզ» դերանունը ՀՈԳՆԱԿԻ ԹՎՈՎ է: «Քրիստոս» տերմինը վերաբերում է հավատացյալի մեջ բնակվող Որդուն/Հոգուն (հմմտ. Հովհ. 14:16-17; Կող. 1:27): Մարդիկ կամ ունեն Որդուն/Հոգին, կամ էլ չունեն և քրիստոնյա չեն (հմմտ. I Հովհ. 5:12): Պողոսի համար, աստվածաբանական տեսանկյունից, «Քրիստոսի մեջ» նույն նշանակությունը ունի ինչ «Հոգու մեջ»:

▣ **«ապա մարմինը մեռած է մեղքի համար»** Նույնիսկ քրիստոնյաները ենթակա են ֆիզիկական մահվան ադամական մեղքի, ընկած աշխարհի և անձնական ըմբոստության պատճառով (հմմտ. 5:12-21): Մեղքը միշտ հասնում է իր ուզածին: Հոգևոր մահը (հմմտ. Ծննդ. 3; Եփ. 2:1) տանում է ֆիզիկական մահվան (հմմտ. Ծննդ. 5; Եբր. 9:27): Հավատացյալները միաժամանակ ապրում են թե Հոգու նոր դարաշրջանում (հմմտ. Հովել 2:28-29; Գործք 2:16), և թե մեղքի ու ապստամբության հին դարաշրջանում (հմմտ. հh. 21, 35):

▣ **«եւ հոգին կենդանի է արդարութեան համար»** Գոյություն ունի որոշակի տարաձայնություն թարգմանիչների և մեկնաբանների միջև, այն առիթով, թե ինչ հասկանալ «հոգի» բառի տակ, մարդու հոգի (հմմտ. թարգմանություններ NASB, ASV, NIV, Williams, Jerusalem Bible), թե Սուրբ Հոգի (հմմտ. KJV, TEV, REB, Karl Barth, C. K. Barrett, John Murray, and Everett Harrison):

Ավելի ընդարձակ կոնտեքստը օգնում է մեզ ավելի լավ հասկանալ այս կարճ արտահայտությունը: Նույնիսկ նրանք, ովքեր հավատում են Հիսուսին շարունակում են մահանալ, քանի որ նրանք ապրում են ընկած աշխարհում: Ինչևէ, արդարության շնորհիվ, որը տրվում է Հիսուսին հավատալու միջոցով, նրանք արդեն ունեն հավիտենական կյանք (հմմտ. Եփ. 2:4-6): Այս հակասող իրավիճակը «արդեն, բայց ոչ դեռ» բնորոշ է Աստծո Թագավորությանը: Հին դարաշրջանն ու նոր դարաշրջանը մասամբ համընկնում են ժամանակի մեջ:

▣ **«արդարություն»** Տես հատուկ թեմա 1:17

**8:11 «եթէ»** Տես ծանուցում հ. 9

▣ **«Յիսուսին մեռելներից յարուցանողի Հոգին ձեզանում բնակուած է»** Երրորդության ո՞ր Անձն է բնակվում հավատացյալի մեջ: Շատ քրիստոնյաներ կպատասխանեն Հոգին: Անշուշտ դա ճիշտ է, բայց իրականում, Երրորդության բոլոր Անձերն էլ բնակվում են:

1. Հոգին, Հովհ. 14:16-17; Հռ. 8:11; I Կոր. 3:16; 6:19; II Տիմ. 1:14
2. Որդին, Մաթ. 28:20; Հովհ. 14:20,23; 15:4-5; Հռ. 8:10; II Կոր. 13:5; Գաղ. 2:20; Եփ. 3:17; Կող. 1:27
3. Հայրը, Հովհ. 14:23; II Կոր. 6:16

Այս արտահայտությունը գերազանց հնարավորություն է ցույց տալու համար, որ Նոր Կտակարանը հաճախ մարդկության փրկության գործը վերագրում է Երրորդության բոլոր Անձերին:

1. Հայր Աստվածը հարություն տվեց Հիսուսին (հմմտ. Գործք 2:24; 3:15; 4:10; 5:30; 10:40; 13:30,33,34,37; 17:31; Հռ. 6:4,9; 8:11; 10:9; I Կոր. 6:14; II Կոր. 4:14; Գաղ. 1:1; Եփ. 1:20; Կող. 2:12; I Թես. 1:10)
2. Որդի Աստվածը հարություն տվեց Ինքն իրեն (հմմտ. Հովհ. 2:19-22; 10:17-18)
3. Հոգի Աստվածը հարություն տվեց Հիսուսին (հմմտ. Հռ. 8:11)

Այս նույն շեշտադրումը Երրորդության հետ կապված կարելի է տեսնել նաև hh. 9-10.

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԵՐՐՈՐԴՈՒԹՅՈՒՆ**

Ուշադրություն դարձրեք Երրորդության բոլոր երեք Անձերի գործունեությանը: «Եչչոչդություն» տերմինը առաջինը օգտագործվել է Տերտուլիանի կողմից, այն աստվածաշնչյան չէ, բայց գաղափարը առկա է Սուրբ Գրքում:

1. Ավետարաններ
   ա. Մաթ. 3:16-17; 28:19 (և զուգահեռ տեքստերը)
   բ. Հովհ. 14:26
2. Գործք Առաքելոց - Գործք 2:32-33, 38-39
3. Պողոս
   ա. Հռ. 1:4-5; 5:1,5; 8:1-4,8-10
   բ. I Կոր. 2:8-10; 12:4-6
   գ. II Կոր. 1:21; 13:14
   դ. Գաղ. 4:4-6
   ե. Եփ. 1:3-14,17; 2:18; 3:14-17; 4:4-6
   զ. I Թես. 1:2-5
   է. II Թես. 2:13
   ը. Տիտոս 3:4-6
4. Պետրոս - I Պետ. 1:2

| |
|---|
| 5. Հուդա - hh. 20-21 |

Հին Կտակարանը նույնպես ակնարկում է Երրորդության մասին

1. Աստծո համար օգտագործված է հոգնակի թիվ

   ա. *Elohim* անունը հոգնակի է, բայց երբ Աստծո համար է օգտագործվում միշտ եզակի թվի բայով է հանդես գալիս

   բ. «Մեր» Ծննդ. 1:26-27; 3:22; 11:7

   գ. «Մեկ» *Shema*-ում 2 Օրին. 6:4 հոգնակի է (ինչպես Ծննդ. 2:24; Եզ. 37:17)

2. Տիրոջ հրեշտակը, որպես աստվածության տեսանելի ներկայացուցիչ

   ա. Ծննդ. 16:7-13; 22:11-15; 31:11,13; 48:15-16

   բ. Ելից 3:2,4; 13:21; 14:19

   գ. Դատ. 2:1; 6:22-23; 13:3-22

   դ. Զաք. 3:1-2

3. Աստված և Հոգին առանձին են , Ծննդ. 1:1-2; Սաղ. 104:30; Ես. 63:9-11; Եզ. 37:13-14

4. Աստված (YHWH) և Մեսիան (*Adon*) առանձին են, Սաղ. 45:6-7; 110:1; Զաք. 2:8-11; 10:9-12

5. Մեսիան և Հոգին առանձին են, Զաք. 12:10

6. Բոլոր երեքն էլ նշված են Ես. 48:16; 61:1

Հիսուսի և Հոգու աստվածությունն ու Անձ լինելը լուրջ խնդիր էր ներկայացնում իրենից վաղ հավատացյալների համար, որոնք ուժեղ հարում էին միաստվածության/մոնոթեիստիկ գաղափարին:

1. Տերտուլիան – Որդուն ստորադասեց Հորից
2. Օրիգեն – ստորադասեց Որդու և Հոգու աստվածային էությունը
3. Արիացի – մերժեց Որդու և Հոգու աստվածությունը
4. Միապետություն – հավատում էին նույն Աստծո հաջորդական արտահայտմանը

Երրորդությունը դա պատմականորեն զարգացված ձևակերպում է, բայց աստվածաշնչյան նյութի հիմքի վրա:

1. Հիսուսի ամբողջական աստվածությունը և Նրա հավասարությունը Հորը հաստատվեց 325 Ք.Հ. Նիկիայի ժողովի ժամանակ
2. Սուրբ Հոգու ամբողջական աստվածությունը և անձեղությունը,Նրա հավասարությունը Հոր և Որդու հետ հաստատվեց (381 Ք.Հ.) Կոնստանդնուպոլիսի ժողովի ժամանակ
3. Երրորդության վարդապետությունը ամբողջությամբ արտահայտվում է Օգոստինոսի կողմից իր աշխատության մեջ «*De Trinitate*»:

Իրականում այստեղ խորհուրդ կա: Բայց Նոր Կտակարանը լրիվ պնդում է մեկ աստվածային էությունը երեք հավիտենական անձերի արտահայտմամբ:

▣ **«ձեր մահկանացու մարմիններն էլ կը կենդանացնէ»** Հիսուսի և Նրա հետևորդների հարությունը կարևոր վարդապետություն է հանդիսանում (հմմտ. I Կոր. 15:1; II Կոր. 4:14): Քրիստոնեությունը պնդում է, որ հավիտենականության մեջ հավատացյալները կլինեն մարմնով (հմմտ. I Հովհ. 3:2): Եթե Հոգին հարություն է տվել Քրիստոսին, ապա նաև Նրա հետևորդներին էլ կտա (հմմտ. հ. 23):

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 8:12-17**
12 Ապա ուրեմն, եղբարք, պարտական ենք ոչ թէ մարմնին՝ մարմնի պէս ապրելու:
13Որովհետեւ եթէ մարմնաւորապէս ապրէք՝ կմեռնէք. բայց եթէ հոգով մարմնի գործերն
սպանէք՝ կապրէք: 14Որովհետեւ որոնք որ Աստուծոյ Հոգովն են վարվում, նորանք
Աստուծոյ որդիք են: 15Որովհետեւ դուք ծառայութեան հոգին չառաք որ դարձեալ
վախենաք. այլ որդեգրութեան հոգին առաք, որով աղաղակում ենք՝ Աբբա, Հայր: 16 Նոյն
ինքն Հոգին վկայութիւն է տալիս մեր հոգուն հետ, որ մենք Աստուծոյ որդիք ենք: 17 Եւ եթէ
որդիք՝ ապա ժառանգներ էլ, Աստուծոյ ժառանգներ եւ Քրիստոսի ժառանգակիցներ. որ
եթէ նորա չարչարանքներին կցորդ ենք՝ փառքին էլ մասնակից լինինք:

NASB (UPDATED) TEXT: 8:12-17
**12So then, brethren, we are under obligation, not to the flesh, to live according to the flesh— 13for if**
**you are living according to the flesh, you must die; but if by the Spirit you are putting to death the deeds**
**of the body, you will live. 14For all who are being led by the Spirit of God, these are sons of God. 15For**
**you have not received a spirit of slavery leading to fear again, but you have received a spirit of adoption**
**as sons by which we cry out, "Abba! Father!" 16The Spirit Himself testifies with our spirit that we are**
**children of God, 17and if children, heirs also, heirs of God and fellow heirs with Christ, if indeed we**
**suffer with *Him* so that we may also be glorified with *Him*.**

**8:12 «Ապա ուրեմն»** Պողոսը հաջորդաբար շարունակում է կառուցել իր եզրակացությունները, ներկայացված հհ. 1-11:

▣ **«պարտական ենք»** Սա քրիստոնեական ազատության մյուս կողմն է (հմմտ. 14:1-15:13): Սա ամփոփումն է, որը վրցված է սրբացման մասին քննարկումից հհ. 1-11, որը թե տեղային է (ՍԱՀՄԱՆԱԿԱՆ) և թե պրոգրեսային (ՀՐԱՄԱՅԱԿԱՆ): Այն նաև հստակ ցույց է տալիս, որ հավատացյալները դեռևս պետք է պայքարեն հին մեղավոր բնության հետ (հմմտ. Հռ. 7): Մարդը պետք է մեկ անգամ ընտրություն կատարի (նախասկզբնական հավատք) իսկ դրանից հետո կա շարունակական ընտրություն (հավատքով կյանք):

**8:13 «եթէ»** 9,10,11,13(2անգամ), 17(2անգամ) համարներում մենք տեսնում ենք մի շարք ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ: Նրանք բոլորն էլ հանդիսանում են ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ, որը ենթադրվում է ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակների համար: Պողոսը ենթադրում էր այն, որ իր ընթերցողները Հռոմի եկեղեցում քրիստոնյաներ էին ապրելով Հոգով:

▣ **«մարմնաւորապէս ապրէք՝ կմեռնէք»** Երկու ԲԱՅԵՐ-ն էլ հ. 13 ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ են, որը խոսում է շարունակական գործողության մասին: Աստվածաշունչը հայտնում է մահվան երեք փուլ (1) հոգևոր մահ (հմմտ. Ծննդ. 2:17; 3:1-7; Եփ. 2:1); (2) ֆիզիկական մահ (հմմտ. Ծննդ. 5); և (3) հավիտենական մահ (հմմտ. Հայտ. 2:11; 20:6,14; 21:8): Տվյալ տեքստում խոսքը Ադամի հոգևոր մահվան մասին է (հմմտ. Ծննդ. 3:14-19), որի արդյունքում մարդկությունը ունեցավ ֆիզիկական մահ (հմմտ. Ծննդ. 5):

Ադամի մեղքը բերեց մահ մարդու փորձառության մեջ (հմմտ. 5:12-21): Մեզանից ամեն մեկը ընտրել է մասնակցել մեղքին կամավոր կերպով: Եթե մենք ընտրում ենք մնալ դրա մեջ, այն կսպանի մեզ «հավիտեան» (հմմտ. Հայտ. 20:6, 14, «երկրորդ մահ»): Որպես քրիստոնյա մենք պետք է մեռնենք մեղքին և ես-ին և կենդանի Աստծո համար (հմմտ. Հռ. 6):

▣ **«բայց եթէ հոգով մարմնի գործերն սպանէք՝ կապրէք»** Հավատացյալների փրկության վստահությունը երևում և հաստատվում է իրենց քրիստոնեական ապրելակերպով (հմմտ. Հակոբոս և I Հովհ. գրքերը): Հավատացյալները չեն ապրում այս նոր կյանքը իրենց սեփական ջանքերով, այլ իրենց մեջ բնակվող Սուրբ Հոգու զորությամբ (հմմտ. հ.14): Ուստի, նրանք պետք է ամեն օր իրենց դնեն Նրա ենթակայության տակ (հմմտ. Եփ. 5:17-18):

Այս կոնտեքստում «մարմնի գործերը» հասկացվում է կյանք հին մեղավոր դարաշրջանի մեջ: Սա մերժում չէ մարմնի փորձառության հավիտենականության (հմմտ. 8:23) այլ հակադրությունը բնակվող Սուրբ Հոգու (նոր դարաշրջան) և մեղքի դեմ պայքարի միջև (հին դարաշրջան):

**8:14 «որոնք որ Աստուծոյ Հոգովն են վարվում»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ-ԴԵՐԲԱՅ է, որը ցույց է տալիս Սուրբ Հոգու կողմից շարունակաբար առաջնորդվելը: Հոգին մեզ մոտեցնում է Քրիստոսին և հետո ձևավորում Նրան մեր մեջ (հմմտ. հ. 29): Եվ սա ավելի մեծ նշանակություն ունի քան մեղավորի դարձի գալու որոշումը: Իրականում հավատացյալը գտնվում է անվերջանալի աշակերտության մեջ, որը սկսվում է դարձի գալու որոշումից: Սա չի վերաբերվում միայն հատուկ իրադարձություններին, ժամանակներին կամ ծառայություններին, այլ առօրյա գործողություններին:

▣ **«Աստուծոյ որդիք»** Հին Կտակարանում այս արտահայտությունը ՀՈԳՆԱԿԻ ԹՎՈՎ օգտագործվում էր հրեշտակների համար և հազվագյուտ դեպքերում մարդկանց համար: ԵԶԱԿԻ ԹՎՈՎ օգտագործվում էր Ադամի, Իսրայելի, նրա Թագավորի և Մեսսիայի համար: Այստեղ այն վերաբերվում է բոլոր հավատացյալներին: 14 հ-ում օգտագործված է հունարեն *huioi* (որդիներ) տերմինը, իսկ 16-ում, *tekna* (երեխաներ): Տվյալ կոնտեքստում դրանք օգտագործված են որպես հոմանիշ:

**8:15 «հոգին»** Այս համարը, ինչպես հ. 10, երկիմաստ է: Այն կարող է վերաբերվել ինչպես մարդու նոր փրկված հոգուն, այնպես էլ Սուրբ Հոգուն: Երկուսն էլ գտնվում են հ. 16-ում:

Պողոսի գրվածքներում կան մի քանի տեղեր, որտեղ այս քերականական կառուցվածքը օգտագործվում է նկարագրելու այն, ինչ Սուրբ Հոգին արտադրում է անհատ հավատացյալի մեջ;

1. այստեղ «ոչ թե ծառայության հոգի», «այլ որդեգրության հոգի», հ. 15
2. «հեզության հոգի» I Կոր. 4:21
3. «հավատքի հոգի (հավատարմություն), II Կոր. 4:13
4. «իմաստության և հայտնության հոգի» Եփ. 1:17

Կան մի քանի տեղեր, հատկապես I Կորնթացիս, որտեղ Պողոսն օգտագործում է *pneuma* ինքն իր համար (հմմտ. I Կոր. 2:11; 5:3,14; 7:34; 16:8; և Կող. 2:5): Այս կոնտեքստում, անշուշտ, հհ. 10 և 15 ամենաճիշտ համապատասխան ձևն է այս հասկացողության:

▣ **«ծառայութեան հոգին… որ դարձեալ վախենաք»** Հին բնության առանձնահատկությունը վախն է: Նոր բնության առանձնահատկությունը նկարագրված է հհ. 14-17:

▣ **«որդեգրութեան»** Համաձայն հռոմեական օրենսդրության որդեգրությունը շատ բարդ գործ էր, բայց եթե դա տեղի էր ունենում, ապա դա արդեն համարվում էր անփոփոխ (հմմտ. Գաղ. 4:4-6): Այս փոխաբերությունը ամրացնում է հավատացյալի ապահովության մասին աստվածաբանական ճշմարտությունը: Հարազատ որդին կարող էր զրկվել ժառանգությունից, բայց ոչ որդեգրածը: Սա Պողոսի ամենասիրած ընտանեկան փոխաբերություններից մեկն էր՝ փրկությունը նկարագրելու համար (հմմտ. հհ. 15, 23): Հովհաննեսն ու Պետրոսը նույնպես օգտագործել են ընտանեկան փոխաբերություն «վերստին ծնված» (հմմտ. Հովհ. 3:30; I Պետ. 1:3,23):

▣ **«Աբբա»** Արամերեն այս տերմինը օգտագործում են երեխաները իրենց հայրիկներին դիմելու ժամանակ ընտանեկան միջավայրում («հայրիկ» կամ «պապա»): Հիսուսն ու առաքյալները խոսել

են արամերեն: Հիմա բոլոր հավատացյալները կարող են մոտենալ Սուրբ Աստծո մոտ Հիսուսի թափած արյան շնորհիվ, իրենց մեջ բնակվող Սուրբ Հոգու միջոցով հաստատ հավատքով և Նրան վստահելով (հմմտ. Մարկ. 14:36; Գաղ. 4:6): Արդյո՞ք զարմանալի չէ, որ ընկած մարդկությունը Աստծուն կարող է Հայր կոչել, և որ Նա՝ Հինավուրցը փափագում է դա: Տես Հատուկ Թեմա: Հայր 1:7.

**8:16 «Նույն ինքն Հոգին»** Հունարենում «Հոգի» գոյականը ՉԵԶՈՔ ՍԵՌ է, ուստի, KJV այս բառակապակցությունը թարգմանվում է որպես « Հոգին ինքը», որտեղ ,itselfն դերանունը անշունչ առարկայի իմաստ է տալիս: Բայց Սուրբ Հոգին Անձ է, Որին կարող ես տրտմեցնել, վիրավորել (հմմտ. Եփ. 4:30; I Թես. 5:19), ուստի "Himself" ավելի լավ թարգմանություն է:

▣ **«վկայութիւն է տալիս մեր հոգուն հետ, որ մենք Աստուծոյ որդիք ենք»** Ինչպես արդեն ասվեց հ. 13-ում, փրկության վստահության փաստարկներից մեկը հավատացյալների փոխված և փոփոխվող կյանքն է (հմմտ. Հակոբոս և I Հովհ. թղթերը): Փրկության վստահության մեկ ուրիշ փաստարկն այն է, որ հավատացյալի մեջ բնակվող Սուրբ Հոգին Աստծու վախը փոխարինել է ընտանեկան ջերմ սիրով: Ուշադրություն դարձրեք RSV և NRSV թարգմանություններին և կետադրությանը, «երբ մենք աղաղակում ենք Աբբա, Հայր- Սուրբ Հոգին է, որ վկայում է մեր հոգու հետ, որ մենք Աստծո զավակներ ենք» (հմմտ. Գաղ. 4:6): Սա նշանակում է, որ վստահությունը գալիս է այն ժամանակ, երբ հավատացյալները Սուրբ Հոգով կարող են կանչել Աստծուն որպես Հայր:

Հոգու ներքին վկայությունը ոչ թե պարզորոշ մի բան է, այլ գործնական, երևացող.

1. մեղքի վարձք
2. Քրիստոսին նմանվելու փափագ
3. Աստծո ընտանիքի հետ լինելու փափագ
4. սով Աստծո խոսքի հանդեպ
5. Ավետարանչություն անելու կարիքի զգացում
6. Քրիստոնյայի զոհաբերությամբ տալու կարիքի զգացում

Սրանք մարդու ներքին ձգտումներն են, որոնք ապացուցում են ճշմարիտ դարձի գալու հավատքի գոյությունը:

Փրկության վստահությունը դարձել է վիճելի խնդիր հարանվանություններում

1. Հռոմեական կաթոլիկ աստվածաբանությունը մերժում է այն փաստը, որ հավատացյալն այս կյանքում, կարող է վստահ լինել իր փրկությանը, այլ վստահությունը հիմնվում է «ճշմարիտ» եկեղեցու անդամ լինելով

2. Ջոն Կալվինը (ռեֆորմատորական ավանդույթ) փրկության վստահությունը հիմնավորեց ընտրության վրա (նախասահմանություն), բայց ոչ ոք հաստատ չի կարող իմանալ մինչև երկրային կյանքի ավարտը, երբ Դատաստանի Օրը կանգնի Աստծո առաջ
3. Ջոն Վեսլին (մեթոդիստական ավանդույթ) փրկության վստահությունը հիմնավորեց կատարյալ սիրո վրա (իշխելով մեղքի վրա)
4. շատ Մկրտականներ հակված են հիմնվելու ծրի շնորհքի աստվածաշնչյան խոստումների վրա (բայց անտեսելով բոլոր զգուշացումներն ու հանդիմանությունները):

Գոյություն ունի երկու լուրջ վտանգ, Նոր Կտակարանում բավականի պարադոքսալ ներկայացնում է քրիստոնյայի փրկության վստահությունը.

1. չափից ավելի ընդգծվածություն «մեկ անգամ փրկված, ընդմիշտ փրկված»
2. չափից ավելի ընդգծվածություն- մարդկային կարողությունները, որ ապահովում և երաշխավորում են փրկությունը

Եբրայեցիս 6-րդ գլուխը հստակ ցույց է տալիս «ընկավ մեկ անգամ, ընկավ ընդմիշտ»: Մարդկային ջանքը (բարի գործեր) հավատացյալներին փրկված չի պահում (հմմտ. Գաղ. 3:1-14): Բայց բարի գործերը քրիստոնեական կյանքի նպատակն է (հմմտ. Եփ. 2:10): Նրանք իրենցից ներկայացնում են բնական արդյունքն այն բանի, որ մարդը հանդիպեց Աստծուն և հիմա նրա մեջ ապրում է Սուրբ Հոգին: Նրանք հաստատում են նրա դարձի գալու ճշմարտությունը:

Փրկության վստահությունը չի նշանակում մեղմացնել Աստվածաշնչի կանչը դեպի սրբություն: Աստվածաբանորեն ասած, փրկության վստահությունը հիմնված է Եռյակ Աստծո կերպարի և գործունեության վրա.

1. Հոր սերն ու ողորմությունը
2. Որդու ավարտին հասցրած զոհաբերությունը
3. Սուրբ Հոգին մեղավորին քաշում է դեպի Քրիստոսին և հետո կերպարանափոխում այդ ապաշխարած անձին՝ Քրիստոսին նմանեցնելով:

Այս փրկության ապացույցը հանդիսանում է փոխված աշխարհայացքը, փոխված սիրտը, փոխված ապրելակերպը և փոխված հույսը: Այն չի կարող հիմնվել միայն անցյալում կայացրած զգացմունքային որոշման վրա, որը չունի ապրելակերպի փոփոխության ապացույց (այն է, պտուղ, հմմտ. Մաթ. 7:15-23; 13:20-22): Վստահությունը, ինչպես նաև փրկությունը, և ինչպես նաև քրիստոնեական կյանքը սկսվում է Աստծո ողորմությանը առաջին իսկ արձագանքից և այդ

արձագանքը շարունակվում է ամբողջ կյանքի ընթացքում: Սա հավատքի փոխված և փոխվող կյանք է:

▣ **«վկայութիւն է տալիս»** Սա ևս մեկ բարդ բառ է *syn* –ով կազմված: Սուրբ Հոգին վկայում է հավատացյալի հոգու հետ համատեղ: Պողոսն օգտագործում է այս բարդ տերմինը 2:15; 8:16 և 9:1:

**8:17 «եթէ»** 9,10,11,13(2անգամ), 17(2անգամ) համարներում մենք տեսնում ենք մի շարք ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ: Նրանք բոլորն էլ հանդիսանում են ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ, որը ենթադրվում է ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակների համար: Պողոսը ենթադրում էր այն, որ իր ընթերցողները Հռոմի եկեղեցում քրիստոնյաներ էին:

▣ Այս համարում կան երեք ԲԱՐԴ բառեր, կազմված *syn* բառից, որը նշանակում է «միասնական մասնակցություն … հետ»: Հավատացյալները ժառանգությունը բաժնեկցում են Քրիստոսի հետ; հավատացյալները տառապանքները բաժնեկցում են Քրիստոսի հետ; և հավատացյալները կբաժնեկցեն փառքը Քրիստոսի հետ: Բարդ բառեր *syn* –ով հանդիպում են նաև հհ. 22 (2 անգամ), 26 և 28: Եփ. 2:5-6 նույնպես ունի երեք բարդ բառեր *syn*-ով կազմված, որոնք նկարագրում են հավատացյալի կյանքի Քրիստոսի մեջ:

▣ **«ժառանգներ»** Սա ևս մեկ ընտանեկան փոխաբերություն է, որը վերաբերվում է հավատացյալների (հմմտ. 4:13-14; 4:1,7; Գաղ. 3:29): Ստորև տես հատուկ թեմա.

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՀԱՎԱՏԱՑՅԱԼՆԵՐԻ ԺԱՌԱՆԳՈՒԹՅՈՒՆԸ**

Սուրբ Գիրքը խոսում է այն մասին, որ հավատացյալները ժառանգելու են շատ բաներ, քանի որ նրանք կապ ունեն Հիսուսի հետ, որը և ժառանգն է ամեն բաների (հմմտ. Եբր. 1:2), և նրանք ժառանգակիցներ են (հմմտ. Հռ. 8:17; Գաղ. 4:7)

1. Թագավորության (հմմտ. Մաթ. 25:34, I Կոր. 6:9-10; 15:50)
2. հավիտենական կյանքի (հմմտ. Մաթ. 19:29)
3. Աստծո խոստումների (հմմտ. Եբր. 6:12)
4. Աստծո երաշխավորության Իր խոստումները պահելու մեջ (հմմտ. I Պետ. 1:4; 5:9).

**Արևելահայերեն «եթէ նորա չարչարանքներին կցորդ ենք»**

**Արևմտահայերեն «որպէս զի եթէ իր չարչարանքներուն կցորդ ըլլանք»**

▣

| | |
|---|---|
| **NASB, NKJV** | **"if indeed we suffer with Him"** |
| **NRSV** | **"if, in fact, we suffer with him"** |
| **TEV** | **"for if we share Christ's sufferings"** |
| **JB** | **"sharing his sufferings"** |

Տառապանքը բնական բան է հավատացյալների համար այս մեղավոր աշխարհում (հմմտ. Մաթ. 5:10-12; Հովհ. 15:18-21; 16:1-2; 17:14; Գործք 14:22; Հռ.5:3-4; 8:17; II Կոր. 4:16-18; Փիլ. 1:29; I Թես. 3:3; II Տիմ. 3:12; Հակ. 1:2-4; I Պետ. 4:12-19): Հիսուսն օրինակ թողեց (հմմտ. Եբր. 5:8): Այս գլխի մնացած մասը զարգացնում է այս թեման:

▣ **«փառքին էլ մասնակից լինինք»** Հովհաննեսի գրվածքներում, երբ որ Հիսուսը խոսում էր Իր մահվան մասին, Նա կոչում էր դա «փառավորվել»: Հիսուսը փառավորվեց Իր տառապանքով: Հավատացյալները, իրենց դիրքով և հաճախ փորձով, գործնականում, բաժնեկցում են Հիսուսի կյանքի իրադարձություններ (հմմտ. Հռ. 6): Տես հատուկ թեմա: Թագավորել Աստծո Թագավորության մեջ 5:17-18:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 8:18-25**
[18]Որովհետեւ այնպէս եմ դատում որ այս ժամանակի չարչարանքները արժանի չեն
բաղդատելու այն գալու փառքին հետ, որ մեզանում պիտի յայտնուի: [19]Որովհետեւ
ստեղծուածների եռանդալից ակնկալութիւնը Աստուծոյ որդկանց յայտնութեանն է
սպասում: [20] Նորա համար որ ստեղծուածները հնազանդեցին ունայնութեան, ոչ թէ
կամքով այլ նորա համար՝ որ հնազանդեցրեց այն յոյսով: [21]Որ՝ ստեղծուածներն իրանք
էլ ապականութեան ծառայութիւնիցը կազատուին՝ Աստուծոյ որդկանց փառաւոր
ազատութեան մէջ մտնելով: [22]Որովհետեւ գիտենք որ բոլոր ստեղծուածները մինչեւ հիմա
միասին հառաչում են եւ ցաւի մէջ են: [23] Եւ ոչ միայն նորանք, այլ ինքներս էլ որ Հոգու
առաջին պտուղն ունինք, մենք էլ մեր անձերումը հառաչում ենք՝ որդեգրութեանն
սպասելով այսինքն մեր մարմնի ազատութեանը: [24]Որովհետեւ յոյսով փրկուեցանք. բայց
յոյսը որ տեսնվում է, յոյս չէ. վասնզի այն բանը, որ մէկը տեսնում է՝ էլ ի՞նչպէս կյուսայ: [25]
Բայց եթէ այն որ չենք տեսնում, նորան յոյս ունինք, ապա համբերութեամբ սպասում ենք:

**NASB (UPDATED) TEXT: 8:18-25**
**[18]For I consider that the sufferings of this present time are not worthy to be compared with the glory that is to be revealed to us. [19]For the anxious longing of the creation waits eagerly for the revealing of the sons of God. [20]For the creation was subjected to futility, not willingly, but because of Him who**

**subjected it, in hope [21]that the creation itself also will be set free from its slavery to corruption into the freedom of the glory of the children of God. [22]For we know that the whole creation groans and suffers the pains of childbirth together until now. [23]And not only this, but also we ourselves, having the first fruits of the Spirit, even we ourselves groan within ourselves, waiting eagerly for *our* adoption as sons, the redemption of our body. [24]For in hope we have been saved, but hope that is seen is not hope; for who hopes for what he *already* sees? [25]But if we hope for what we do not see, with perseverance we wait eagerly for it.**

**8:18 «դատում եմ, համարաում եմ»** Այստեղ բառացի իմաստը սա է «գումարել, հանրագումարի բերել»: Այս ձևը ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՉԵԶՈՔ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է: Պողոսը շարունակում է քննարկել քրիստոնյայի չարչարանքի հետևանքի մասին: Այս բառը հաշվապահական տեմին է, որն օգտագործվում է վերջնական արդյունքների հասնելու ամփոփման համար: Հռոմեացիս թղթում սա շարունակաբար կրկնվող թեմա է (տես ծանուցում 2:3): Հավատացյալները պետք է ապրեն իրենց հասկացած հոգևոր ճշմարտությունների լույսի ներքո:

▣ **«չարչարանքները»** Քրիստոսին ծառայելու մեջ ներգրավված է տառապանք, որի բացատրությունը տեսնում ենք I Կոր. 4:9-12; II Կոր. 4:7-12; 6:4-10; 11:24-27; Եբր. 11:35-38:

▣ **«այս ժամանակի»** Հրեաները հավատում էին, որ աշխարհի պատմությունը բաժանվում էր երկու ժամանակաշրջանի, ներկա չար դարաշրջանը և գալիք արդարության դարաշրջանը (հմմտ. Մաթ. 12:32; Մարկ. 10:30): Հին Կտակարանը լեցուն էր Մեսսիայի գալստյան ակնկալիքով, Որը սկիզբ կդներ այս նոր արդարության դարաշրջանի: Ինչևէ, Քրիստոսի երկու գալուստները, մեկը որպես Փրկիչ (մարմնացում), իսկ երկրորդը որպես Տեր (Երկրորդ Գալուստը), պատճառ են դառնում այս երկու ժամանակաշրջանների միաձուլման: Հավատացյալներն ապրում են որոշակի լարվածության պայմաններում, որը գոյություն ունի «արդեն» և «դեռ ոչ հիմա»-ի միջև կապված Աստծո Թագավորության հետ: Տես Հատուկ Թեմա: Ներկա դարաշրջան և գալիք դարաշրջան 12:2:

▣ **«արժանի. . .փառքի»** Այս երկու տերմիններն էլ կապված են հինկտակարանյան քաշի գաղափարի հետ, արժեքավոր էր այն, ինչը ծանր էր կշռում: «Արժենալ, արժանի» տերմինը կոմերցիան/առևտրական տերմին էր համարվում, որը նշանակում էր «ինչ որ չափի քաշ ունենալ»: Եբրայերեն «փառք» տերմինը առաջացել է «ծանր լինել» բառի արմատից, արժեքավոր լինելու իմաստով, ինչպես ոսկին: Տես ամբողջ նյութը 3:23

«Փառք» տերմինը Պողոսի գրվածքներում ուներ վախճանաբանական կողմնորոշում: Այն վերաբերվում էր բարձրյալ Քրիստոսի փառավոր վերադարձի մեծությանն ու զորությանը (հմմտ. Կող. 3:4): Տես Հատուկ Թեմա: Փառք 3:23.

▣ **«որ մեզանում պիտի յայտնուի»** Այս ԿՐԱՎՈՐԱԿԱՆ (deponent) ՍԵՌԸ վերաբերվում էր Աստծո կամ Սուրբ Հոգու գործունեությանը (հմմտ. v. 20): Այս կյանքում հավատացյալներն ապրում են հավատքով, և ոչ թե տեսանելի բաներով (հմմտ. h. 24 և I Կոր. 2:9; 13:12; II Կոր. 5:7 և Եբր. 11:1):

**8:19 «ստեղծուածների եռանդալից ակնկալութիւնը… յայտնութեանն է սպասում»** Ֆիզիկական արարչագործությունը անձնավորում է նմանվելով անձի, որը լարված ձգում է իր վիզըուշադիր նայելով հորիզոնին: Արարչագործությունը ենթարկվեց բացասական ազդեցության, երբ Ադամն ու Եվան ըմբոստացան (հմմտ. Ծննդ. 3:17-19): Վերջիվերջո ամբողջ արարչագործությունը կազատագրվի (բացի ապստամբ հրեշտակներից, անհավատ մարդկանցից և նրանց համար պատրաստված մեկուսարանից, հմմտ. Բրյուս Կորլի և Կյորտիս Վոգհեն, «Հռոմեացիս թուղթը», էջ 95, (Bruce Corley and Curtis Vaughan, *Romans*, p. 95, footnote 46):

## ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԲՆԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ/ՇՐՋԱՊԱՏՈՂ ՄԻՋԱՎԱՅՐ

I. Ներածություն

Ա. Ամբողջ արարչագործությունը հանդիսանում է ֆոն կամ բեմ Աստծո սիրո և մարդկության փոխհարաբերության համար:

Բ. Այն բաժանում է մեղքի անկման հետևանքը (հմմտ. Ծննդ. 3:17; 6:1; Հռ. 8:18-20): Նաև, կբաժնեկցի վախճանաբանական փրկության մեջ (հմմտ. Ես. 11:6-9; Հռ. 8:20-22; Հայտ. 21-22):

Գ. Մեղավոր, ընկած մարդկությունը բռնության ենթարկեց շրջապատող միջավայրը և եսասիրաբար ու անխղճորեն շպրտել մի կողմ: Մեջբերում Էդվարդ Կապենտերի «Ուեստմինստրի Կանոնը» գրքից.

> «. . .մարդու անխիղճ բռնությունը, գլոբալ մասշտաբով, իրեն շրջապատող աշխարհի վրա - այն է Աստծո արարչագործության վրա - հարձակում օդի վրա, որը ինքն է կեղտոտում; բնության ջրային ուղիները, որը ինքն է կեղտոտում; հողը, որը թունավորում է; անտառները, որը կտրում վերացնում է, ընդհանրապես չմտածելով երկարատև հետևանքների մասին՝ այս առանց պատճառի և բարբարոս ավերվածության: Այս հարձակումը իրականանում է տարբեր տեղերում և քաոսային

ձևով: Քիչ ուշադրություն է դարձվում բնության հավասարակշռությունը պահելու համար, և որպես հետևանք, պատասխանատվության քիչ զգացողություն մի սերունը մյուս սերնդի վրա»:

Դ. Մենք ոչ միայն քաղում ենք աղտոտվածության պտուղները, այլ մեր սերունդները էլ ավելի շատ խիստ և դաժան հետևանքները կտեսնեն:

II. Աստվածաշնչյան նյութ

Ա. Հին Կտակարան

1. Ծննդոց 1-3

ա. Արարչագործությունը դա մի հատուկ վայր է, ստեղծված Աստծո կողմից, մարդու հետ հաղորդակցվելու համար (հմմտ. Ծնն. 1:1-25):

բ. Արարչագործությունը բարի է (հմմտ. Ծնն. 1:4,10,12,18,21,25), նույնիսկ շատ բարի (հմմտ. Ծնն. 1:31): Սա պետք է վկայի Աստծո մասին (հմմտ. Սաղ. 19:1-16):

գ. Մարդկությունը Աստծո ստեղծագործության գլխավոր նպատակն ու թագն է (հմմտ. Ծնն. 1:26-27):

դ. Մարդկությունը պետք է իշխեր արարչագործության վրա (հին եբրայերեն, «ճնշել, իշխել») որպես Աստծո տնտես (հմմտ. Ծնն. 1:28-30; Սաղ. 8:3-8; Եբ. 2:6-8): Աստված կա և մնում է որպես ստեղծագործության Արարիչ/Կրող, Պահող/Ազատարար, Փրկիչ/Տեր (հմմտ. Ել. 19:5; Հոբ 37-41; Սաղ. 24:1-2; 95:3-5; 102:25; 115:15; 121:2; 124:8; 134:3; 146:6; Ես. 37:16):

ե. Մարդը որպես ստեղծագործության տնտես կարելի է տեսնել Ծնն. 2:15, «մշակել, պահել և պաշտպանել այն» (հմմտ. Ղև. 25:23; I Մնաց. 29:14):

2. Աստված սիրում է Իր ստեղծագործությանը, հատկապես կենդանիներին:

ա. Մովսեսական օրենք հատուկ վարվեցողություն կենդանիների հետ

բ. ԵՀՈՎԱՆ խաղում է լևիաթանի հետ (հմմտ. Սաղ. 104:26)

գ. Աստված հոգ է տանում կենդանիների մասին (հմմտ. Հովնան 4:11)

դ. Բնության վախճանաբանական գոյությունը, ներկայությունը (հմմտ. Ես. 11:6-9; Հայտ. 21-22):

3. Բնությունը, ինչ որ աստիճանի, փառավորում է Աստծու,

ա. Սաղ. 19:1-6

բ. Սաղ. 29:1-9

գ. Հոբ 37-41

4. Բնությունը մի միջոց է, որի միջոցով Աստված ցույց է տալիս Իր սերն ու հավատարմությունը ուխտի հանդեպ,

   ա. 2 Օրին. 27-28; 3 Թագ.17

   բ. Մարգարեների գրքերում

Բ. Նոր Կտակարան

1. Աստված դիտվում է որպես արարիչ: Կա միայն մեկ Արարիչ, Երրորդություն Աստված (Elohim, Ծնն. 1:1; Սուրբ Հոգին, Ծնն. 1:2; և Հիսուսը, Նոր Կտակարան): Մնացած ամեն բան ստեղծված է.

   ա. Գործք 17:24

   բ. Եբր. 11:3

   գ. Հայտ. 4:11

2. Հիսուսը Աստծո կատարողն է, Որում և Որի միջոցով ամեն բան ստեղծվեց

   ա. Հովհ. 1:3,10

   բ. I Կորն. 8:6

   գ. Կող. 1:16

   դ. Եբր. 1:2

3. Հիսուսն Իր քարոզներում անուղղակիորեն խոսում է բնության հանդեպ ունեցած Աստծո հոգատարության մասին

   ա. Մաթ. 6:26,28-30, երկնքի թռչունները և դաշտի շուշանները

   բ. Մաթ. 10:29, ճնճղուկները

4. Պողոսը պնդում է, որ բոլոր մարդիկ պատասխանատու են Աստծո մասին ունեցած իրենց գիտության համար Նրա ատեղծագործության միջոցով (օր. բնական հայտնություն, հմմտ. Հռ. 1:19-20; Հայտ. 21-22):

III. Ամփոփում

Ա. Մենք ամուր կապված ենք այս բնական հերթականությանը կամ այսպես ասած կարգ ու կանոնին:

Բ. Մեղավոր մարդկությունը աղավաղել է Աստծո պարգևը՝ բնությունը, ինչպես նաև Աստծո մնացած բոլոր պարգևները:

Գ. Գոյություն ունեցող բնության համակարգը ժամանակավոր է: Շուտով այն անցնելու է և վերանա (II Պետ. 3:7): Աստված մեր աշխարհը մոտեցնում է պատմական մի պահի, երբ ամեն բան պիտի միավորվի: Մեղքը պիտի հետապնդի իր նպատակները, բայց Աստված

սահմաններ է դրել նրա համար : Արարչագործությունը պիտի ազատագրվի (հմմտ. Հռ. 8:18-25):

▣ **«յայտնութեանն է սպասում»** Այս տերմինը նշանակում էր «վարագույրը քաշել, բացել քողը» այնպես, որ ինչ որ բան բացահայտվի կամ հայտնի դառնա: Սա նաև Նոր Կտակարանի վերջին գրքի վերնագիրն է «Ապոկալիպսիս»: Երկրորդ գալստյան մասին հաճախ խոսվում է որպես հայտնություն կամ գալուստ (հմմտ. I Կոր. 1:7-8; I Պետ. 17,13):

▣ **«Աստուծոյ որդկանց»** Այս արտահայտությունը ընդունված ընտանեկան փոխաբերություն էր, որով նկարագրում էին քրիստոնյաներին (հմմտ. 8:14,16): Այն խոսում է Աստծո մասին որպես Հայր և Հիսուսը որպես Իր միածին որդին (հմմտ. Հովհ. 1:18; 3:16,18; Եբր. 1:2; 3:6; 5:8; 7:28; I Հովհ. 4:9):

Հին Կտակարանում Իսրայելը Աստծո որդին էր (հմմտ. Ովսիա 11:1), բայց նաև թագավորն էր կոչվում Աստծո որդի (հմմտ. II Թագ. 7): Այս գաղափարն առաջին անգամ նշվում է Մաթ. 5:9 (նաև հմմտ. Հովհ. 1:12; II Կոր. 6:18; Գաղ. 3:26; I Հովհ. 3:1,10; Հայտ. 21:7):

**Արևելահայերեն «Նորա համար որ ստեղծուածները հնազանդեցին ունայնութեան»**
**Արևմտահայերեն «Վասն զի ունայնութեան հնազանդեցան ստեղծուածները»**

**8:20**
**NASB, NKJV,**
**NRSV “for the creation was subjected to futility”**
**TEV “For creation was condemned to become worthless”**
**JB “It was not for any fault on the part of creation that it was made unable to attain its purpose”**

Սա կարող էր թարգմանվել որպես «ունայնություն»: Այս հասկացողությունը օգտագործված է Սեպտուագինդի մեջ մի քանի իմաստով ՝ անիմաստ, անարժան, անպիտան, անօգուտ, կեղծ աստվածներ (կուռքեր) և դատարկություն: Ամբողջ արարչագործությունը դարձավ անպիտան Աստծո մտադրված նպատակի համար (հմմտ. Ծննդ. 3:17-19), բայց մեկ օր Աստված պիտի վերցնի մեղքի անեծքը (հմմտ. Հայտ. 22:3): Այսպիսին չէ Աստծո մտադրված աշխարհը:

▣ **«այլ նորա համար՝ որ հնազանդեցրեց այն յոյսով»** ԲԱՅԸ ԱՕՐԻՍՏ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ է և անշուշտ վերաբերվում է Աստծուն (հմմտ. NASB, NKJV, TEV): Նա այնպես արեց, որ ֆիզիկական արարչագործությունը դառնար ունայն և անօգուտ

1. մարդու ըմբոստության պատճառով
2. որպես փորձ՝ մարդուն Իրեն դարձնելու համար (հմմտ. 2 Օրին. 27-29)

Այս նպատակասլաց ունայնությունը կլինի միայն մի որոշ ժամանակ: Ազատագրված մարդկությունը ունի խոստացված ֆիզիկական ապագա (մարմին և աշխարհ):

Աստված նախապես գիտեր Ադամի ըմբոստության մասին: Նա թույլ տվեց, որ դա տեղի ունենա և ընտրեց գործելու մեղավոր մարդկության հետ մեղավոր աշխարհում: Այսպիսին չէ Աստծո մտադրված աշխարհը: Մի օր այսպիսին չի լինելու աշխարհը (հմմտ. II Պետ. 3:10; Հայտ. 21:1-3): Տես ծանուցում « հույս» 5:2:

**8:21 «ստեղծուածներն իրանք էլ ապականութեան ծառայութիւնիցը կազատուին»** Բնությունը հավիտենականության մաս է կազմելու (հմմտ. Ես. 11:6-10): Երկինքը վերադառնում է երկրին (հմմտ. Մաթ. 5:18; 24:35; II Պետ. 3:10; Հայտ. 21:1): Ապագան հնարավոր է վերադառնա եդեմական վիճակին; հրաշալի հաղորդակցությունը Աստծո և մարդու միջև, մարդը մարդու հետ, մարդը կենդանու հետ և մարդը երկրի հետ: Աստվածաշունչը սկսվում է Աստծո, մարդկանց և կենդանիների հետաքրքիր և ներդաշնակ հարաբերություններով Եդեմի պարտեզում (հմմտ. Ծնն. 1-2) և Աստվածաշունչն ավարտվում է նույն կերպ (հմմտ. Հայտ. 21-22):

▣ **«ապականութեան»** Տես հատուկ թեմա 1:23.

▣ **«Աստուծոյ որդկանց փառաւոր ազատութեան մէջ մտնելով»** 14հ-ում հավատացյալները կոչվում են «Աստծո որդիներ»; 16հ-ում «Աստծո զավակներ» իսկ 17-ում «Աստծո ժառանգներ»: 18հ-ում Աստծո վախճանաբանական փառքը հայտնվում է հավատացյալներին: 19հ-ում խոսվում է այն մասին, որ արարչագործությունը սպասում է Աստծո որդիների հայտնությանը, քանի որ այն բաժնեկցում է վախճանաբանական փառքը նրանց հետ (հմմտ. հ. 21): Արարչագործության վերականգնումը, և հատկապես մարդկանց, թույլ կտա իրականանալու արարչագործության բուն նպատակը՝ Աստված և մարդը, որը ստեղծված է Իր պատկերով, մտերմիկ հարաբերության մեջ լինեն:

**8:22 «բոլոր ստեղծուածները հառաչում են»** Սա ևս մեկ Պողոսի օգտագործած բարդ բառի կազմություն է *syn*, «հառաչել ինչ որ բանի հետ»: Նա բավականին շատ է օգտագործել այսպիսի բառեր: Հավանական է, այստեղ Պողոսը ակնարկում է Եր. 12:4,11 (հմմտ. 2 Օրին. 27-29), որտեղ Իսրայելի երկիրը ողբում էր մարդու մեղքի պատճառով առաջացած ավերածության համար:

▣ **«ցավի մեջ են»** Հրեական շրջանակներում այս գաղափարը հաճախ կոչվում էր «նոր դարի ծննդաբերության ցավեր» (հմմտ. Մարկ. 13:8): Նոր արդարության օրվա լուսաբացը չի լինելու առանց խնդիրների: Այս մեղավոր, ընկած երկիր մոլորակի բարոյական և հոգևոր պայմանները ավելի ու ավելի են վատանալու (հմմտ. II Թես. 2:1-12; և նաև յոթ կնիքները, փողերը և սկավառակները Հայտ. 5-18):

Այս կոնտեքստում կան երեք «հառաչանքներ»: (1) արարչագործություն (հ. 22); (2) հավատացյալներ (հ. 23); և (3) Հոգին որպես բարեխոս (հ. 26), բոլոր երեքն էլ Ծննդ. 3-ի պատճառով (փոխաբերությունը գալիս է հ. 16-ից):

**8:23 «իրենք... իրենք... իրենք»** ԴԵՐԱՆՈՒՆ-ներն ընդգծված և կրկնվող են:

▣ **«Հոգու առաջին պտուղն»** Ժամանակակից հունարեն լեզվի մեջ այս տերմինը նշանակում է «ամուսնական կամ նշանադրության մատանի»: Այս արտահայտությունը նման է հետևյալ բառակապակցություններին «Հոգու կնիքը» II Կոր. 1:22; և «Հոգու գրավը» II Կոր. 5:5; և Եփ. 1:14:

Առաջին պտուղները, կամ երախայրին, սպասվող հունձքի խոստումն էր: Դրանք խորհրդապատկերում էին, որ ամբողջ բերքը, հունձքը Աստծո սեփականությունն է: Ինչպես Հիսուսը հարության անդրանիկն էր, այնպես էլ Սուրբ Հոգին նոր դարի երախայրին (հմմտ. I Կոր. 15:20): Հավատացյալները, որպես Աստծո զավակներ, նույնիսկ հիմա փորձառում են որոշակի երկնային ուրախություն Սուրբ Հոգու միջոցով, որը բնակվում է նրանց հետ և մեջ: Սա «արդեն» բայց «ոչ դեռ» լարվածություն ստեղծող վիճակն է, որը գոյություն ունի հրեական երկու դարաշրջանների միջև: Հավատացյալները երկնքի քաղաքացիներ են, բայց բնակվում են երկրի վրա:

▣ **«մենք էլ մեր անձերումը հառաչում ենք»** Թվում է, սա նույնպես վերաբերվում է դիալեկտիկական հակասությանը «արդեն» բայց «ոչ դեռ»-ի միջև, որը լրացնում է հրեական երկու դարաշրջանները: Աստծո Թագավորությունը ներկա է, բայց ոչ ավարտված տեսքով: Հավատացյալներն ունեն հարուցյալ կյանք, բայց նրանք շարունակում են մահանալ ֆիզիկապես (հմմտ. II Կոր. 5:2-4): Մենք փրկված ենք, բայց դեռ հակված ենք մեղանչելու (Հռ. 7):

▣ **«որդեգրութեան սպասելով»** Որդեգրությունը Պողոսի սիրելի ընտանեկան փոխաբերություններից մեկն է փրկության համար (հմմտ. հ. 15): Հավատացյալների փրկությունը մի գործընթաց է, որը սկսվում է ապաշխարության և հավատքի որոշում կայացնելով և զարգանում

քրիստոսանմանության մեջ աճելով: Հավատացյալներն ամբողջությամբ չեն փրկվի մինչև Հարության Օրը (հմմտ. հ. 30 և I Հովh. 3:2):

«Որդեգրություն» բառը բացակայում է որոշ հունարեն ձեռագրերում (հմմտ. MSS P[46], D, F, G, և մի քանի լատիներեն տարբերակներում: Ինչևէ, այն հանդիպում է ℵ, A, B, C, մի քանի հին լատիներեն ձեռագրերում, Վուլգաթի, սիրիական, ղպտի և հայերեն թարգմանություններում: UBS[4] դասակարգում է «A» կատեգորիայի մեջ (հուսալի):

▣ **«մեր մարմնի ազատութեանը»** Այս տերմինը նշանակում է «ետ գնել»: Այս գաղափարը օգտագործված է Հին Կտակարանում նկարագրելու համար մի իրավիճակ, երբ ինչ որ մեկը ազատվում է գերությունից ազգականի կողմից (*go'el*): Փոխաբերական իմաստով սկսվեց օգտագործվել, երբ Աստված ազատագրում է ընկած մարդկությանը մեղքի գերությունից: Վճարված գինը Աստծո Որդու անմեղ կյանքն էր: Տես հատուկ թեմա 3:24.

Քրիստոնեությունը, ինչպես և հուդայականությունը (հմմտ. Հոբ 14:14-15; 19:25-26; Դան. 12:2), պնդում են, որ հավատացյալներ կունենան ֆիզիկական (չնայած պարտադիր չէ, որ մարդկային մարմին լինի, հմմտ. I Կոր. 15:35-49) մարմին հավիտենականության մեջ: Հավատացյալների հոգևոր մարմինները կատարելապես պատրաստված կլինեն նոր դարաշրջանի կյանքի համար, կյանք որը Աստծո հետ սերտ հարաբերության մեջ կլինի:

**8:24 «յոյսով փրկուեցանք»** Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է: Ինչպես հ. 23 վերաբերվում է մեր գալիք փրկությանը, այնպես էլ հ. 24 վերաբերվում է մեր անցյալում Սուրբ Հոգու միջոցով կատարված փրկությանը: Նոր Կտակարանում փրկությունը նկարագրելու համար օգտագործված են մի քանի ԲԱՅԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՁԵՎԵՐ.

1. ԱՕՐԻՍՏ, Գործք 15:11 (Հռ. 8:24; II Տիմ. 1:9; Տիտոս 3:5; և Հռ. 13:11 ԱՕՐԻՍՏԸ ԱՊԱՌՆԻ –ի հետ)
2. ՎԱՂԱԿԱՏԱՐ, Եփ. 2:5,8
3. ՆԵՐԿԱ, I Կոր. 1:18; 15:2; II Կոր. 2:15; I Պետ. 3:21; 4:18
4. ԱՊԱՌՆԻ (ԲԱՅԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՁԵՎՈՒՄ կամ կոնտեքստային ենթադրություն), Հռ. 5:9,10; 10:9; I Կոր. 3:15; Փիլ. 1:28; I Թես. 5:8-9; Եբր. 1:14; 9:28:

Ուստի, փրկությունը սկսվում է հավատքով որոշում կայացնելուց և շարունակվում հավատքով ամբողջ կյանքի ընթացքում, որ մի օր կգա դրա վերջնական իրականացումը (հմմտ. I Հովh. 3:2):

**8:25 «յոյս»** Ստորև տես հատուկ թեմա.

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՀՈՒՅՍ**

Պողոսն օգտագործեց այս տերմինը մի քանի տարբեր, բայց բացարձակ հստակ իմաստներով: Հաճախ հաղորդակցվում էր այն բանի իրականացմամբ, ինչին հավատում էին քրիստոնյաները (հմմտ. I Տիմ. 1:1): Սա կարող է լինել փառքը, հավիտենական կյանքը, վերջնական փրկությունը, Երկրորդ Գալուստը և այլն: Այս հույսի իրականացումը հստակ է, բայց վերաբերվում է ապագային և պահը անհայտ է: Հույսը հաճախ կապվում էր «հավատքի» և «սիրո» հետ (հմմտ. I Կոր. 13:13; I Թես. 1:3; II Թես. 2:16): Պողոսի կիրառած տերմինների ցանկի մի մասը

1. Երկրորդ Գալուստը, Գաղ. 5:5; Եփ. 1:18; 4:4; Տիտոս 2:13
2. Հիսուսը մեր հույսն է, I Տիմ. 1:1
3. Հավատացյալը կանգնելու է Աստծո առաջ, Կող. 1:22-23; I Թես. 2:19
4. Հույս երկնքի համար, Կող. 1:5
5. Վստահել Ավետարանին, Կող. 1:23; I Թես. 2:19
6. Վերջնական փրկությունը, Կող. 1:5; I Թես. 4:13; 5:8
7. Աստծո փառքը, Հռ. 5:2, II Կորն. 3:12; Կող. 1:27
8. Քրիստոսով հեթանոսների փրկությունը, Կող. 1:27
9. Փրկության վստահություն, I Թես. 5:8
10. Հավիտենական կյանք, Տիտոս1:2; 3:7
11. Քրիստոնեական հասունության արդյունքները, Հռ. 5:2-5
12. Ամբողջ արարչագործության ազատագրումը, Հռ. 8:20-22
13. Որդեգրության վախճանը, Հռ. 8:23-25
14. Աստծո անունը, Հռ. 15:13
15. Պողոսի փափագը հավատացյալների համար, II Կորն. 1:7
16. Հին Կտակարանը որպես ուղեցույց Նոր Կտակարանի հավատացյալների համար, Հռ. 15:4

▣ **«համբերութեամբ»** *hupomonē* տերմինը նաև հանդիպում է 5:3 և 15:4-5հ-ում: Հավատացյալների փրկությունը հասունության գործընթացի մեջ է և մեկ օր կավարտվի: Համբերությունը (հմմտ. Հայտ. 2:8,11,17,26; 3:5,12,21; 21:7) անհրաժեշտ աստվածաշնչյան հավասարակշռություն է, որը հստակ ընդգծում է մկրտականների սկզբունք «մեկ անգամ փրկված՝ ընդմիշտ փրկված»: Շատ աստվածաշնչյան ճշմարտություններ հանդես են գալիս դիալեկտիկական, լարվածությամբ լեցուն զույգերով:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՀԱՄԲԵՐԵԼՈՒ ԿԱՐԻՔ**

Աստվածաշնչյան վարդապետությունները, կապված քրիստոնեական կյանքի հետ, դժվար է բացատրել, որովհետև դրանք ներկայացվում են տիպիկ արևելյան դիալեկտիկական զույգերով: Այս զույգերը թվում են իրար հակասող, բայց երկուսն էլ աստվածաշնչյան են: Արևմուտքի քրիստոնյաները հակված են ընտրելու մեկ ճշմարտությունը և մերժելու և արժեզրկելու մյուս ճշմարտությունը, իրեն հակասող: Թույլ տվեք բացատրեմ օրինակներով.

1. Փրկությունը դա միայն Քրիստոսին վստահելու նախասկզբնական որոշումն է, թե՞ սրբացման գործընթաց ամբողջ կյանքի ընթացքում, որպես Քրիստոսի աշակերտ:
2. Փրկությունը դա գերիշխան Աստոծ շնորհքի ընտրությունն է, թե՞ մարդու հավատքի արդյունքն ու ապաշխարության արձագանքն Աստծո կանչին:
3. Փրկությունը դա մեկ անգամ ստացած, անհնարին կորցնել, թե՞ հավատացյալը պետք է շարունակաբար ջանք թափի դրան հասնելու և պահելու համար:

Համբերության թեման քննարկման առիթ է հանդիսացել հավատացյալների համար ամբողջ եկեղեցու պատմության ընթացքում: Խնդիրը սկսվում է Նոր Կտակարանում հանդիպող ակնհայտ իրարամերժ տեքստերից.

1. վստահություն տվող և երաշխավորող համարներ հավատայալի համար
   ա. Հիսուսի պնդումները (Հովh. 6:37; 10:28-29)
   բ. Պողոսի պնդումները (Հռ. 8:35-39; Եփ. 1:13; 2:5,8-9; Փիլ. 1:6; 2:13; II Թես. 3:3; II Տիմ. 1:12; 4:18)
   գ. Պետրոսի պնդումները ( I Պետ. 1:4-5)
2. տեքստեր, այն մասին, որ հավատացյալը պետք է ջանք թափի համբերելու համար
   ա. Հիսուսի պնդումները (Մաթ. 10:22; 13:1-9,24-30; 24:13; Մարկ. 13:13; Հովh. 8:31; 15:4-10; Հայտ. 2:7,17,20; 3:5,12,21)
   բ. Պողոսի պնդումները (Հռ. 11:22; I Կոր. 15:2; II Կոր. 13:5; Գաղ. 1:6; 3:4; 5:4; 6:9; Փիլ. 2:12; 3:18-20; Կող. 1:23)
   գ. Եբրայեցիս թղթի հեղինակի պնդումները (2:1; 3:6,14; 4:14; 6:11)
   դ. Հովհաննեսի պնդումները (I Հովh. 2:6; II Հովh 9)
   ե. Երկնային Հոր պնդումները (Հայտ. 21:7)

Աստվածաշնչյան փրկության աղբյուրը գերիշխան Եռյակ Աստծո սիրո, ողորմության և շնորհքի արտահայտությունն է: Ոչ մեկ մարդ չի կարող փրկվել առանց Սուրբ Հոգու նախաձեռնության (հմմտ. Հովh. 6:44,65): Աստված անում է առաջին քայլը և հաստատում բոլոր կանոնները, բայց և պահանջում, որ մարդիկ արձագանքեն Իր կանչին՝ հավատքով և ապաշխարությամբ, թե մեկ անգամ սկզբում և թե շարունակաբար ամբողջ կյանքի ընթացքում:

Աստված հարաբերություններ է հաստատում մարդու հետ ուխտի հիման վրա: Փրկված լինել- դա թե արտոնություն է, և թե պատասխանատվություն:

Փրկությունը առաջարկվում է բոլոր մարդկանց: Հիսուսի մահը լուծեց ընկած արարչագործության մեղքի խնդիրը: Աստված հոգացել է փրկության ճանապարհը և ուզում է, որ նրանք, որ ստեղծված են Իր պատկերով և նմանությամբ, արձագանքեն Իր սիրուն և ինչ որ առաջակվում է Հիսուսի միջոցով:

Եթե ցանկանում եք ավելի շատ բան իմանալ այս հարցի մասին, ոչ կալվինիստական տեսանկյունից, կարող եք կարդալ հետևյալ գրքերը

1. Դեյլ Մուդի «Ճշմարտության Խոսքը» (Dale Moody, *The Word of Truth*, Eerdmans, 1981 (pp. 348-365)
2. Հովարդ Մարշալ «Պահված Աստծո Զորությամբ» (Howard Marshall, *Kept by the Power of God*, Bethany Fellowship, 1969)
3. Ռոբերտ Շենք «Կյանք Որդու մեջ» (Robert Shank, *Life in the Son*, Westcott, 1961)

Աստվածաշունչը խոսում է երկու տարբեր խնդիրների մասին այս բնագավառում (1) ապահովագրության երաշխիք ապրելու անպտուղ և եսասեր կյանքով (2) քաջալերելով նրանց, ովքեր ծառայության մեջ են և պայքարում են անձնական մեղքի դեմ: Խնդիրն այն է, որ սխալ խմբերը վերցնում են սխալ պատգամը և սահմանափակ աստվածաշնչյան հատվածների հիման վրա աստվածաբանական համակարգեր շինում: Որոշ քրիստոնյաներ պետք ունեն միայն փրկության վստահությանը վերաբերող հատվածներ, մյուսներին նախազգուշացումներ և զգոնություն: Ո՞ր խմբին ես պատկանում դու:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 8:26-27**

[26] Այսպէս էլ հոգին օգնում է մեր տկարութիւններին, որովհետեւ թէ ինչ բանի համար աղօթք անենք՝ ինչպէս արժան է, չգիտենք. բայց ինքը Հոգին անբարբառ հառաչանքով բարեխօս է լինում: [27] Եւ սրտերը քննողը գիտէ թէ ինչ է հոգու խորհուրդը. որովհետեւ Աստուծուն վայելած կերպով սուրբերի համար բարեխօսում է:

**NASB (UPDATED) TEXT: 8:26-27**

**[26]In the same way the Spirit also helps our weakness; for we do not know how to pray as we should, but the Spirit Himself intercedes for *us* with groanings too deep for words; [27]and He who searches the hearts knows what the mind of the Spirit is, because He intercedes for the saints according to *the will of* God.**

**8:26 «Այսպէս էլ»** Այս արտահայտությունը Հոգու բարեխոսական ծառայությունը կապում է «հառաչել և հուսալ» հետ, որի մասին խոսվում է հ. 23-25:

▣ **«հոգին օգնում է»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՉԵԶՈՔ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է: Բառը բարդ է, կազմված միաժամանակ *syn* (հմմտ. հ. 28) և *anti*. Լավագույն թարգմանությունը կլինի « բռնել, կառչել մի բանից», այս տերմինը գտնվում է միայն այստեղ և Ղուկ. 10:40: Եռյակ Աստվածն իր ամբողջ լիությամբ գործում է հավատացյալների օգտին: Հայրն ուղարկեց Որդուն մեռնելու մարդկանց համար, և Նա հիմա նաև բարեխոսում է մեզ համար (հմմտ. հ. 34; I Հովհ. 2:1): Սուրբ Հոգին մեղավոր մարդկությանը բերում է Քրիստոսի մոտ և Քրիստոսին ձևավորում նրանց մեջ (հմմտ. Հովհ. 16:8-15): Ինչևէ, «օգնել» տերմինը, որը նշանակում է « ինչ որ բան ձեռնարկել ինչ որ մեկի հետ», նշանակում էր, որ հավատացյալները նույնպես մաս ունեն Սուրբ հոգու օգնության մեջ (բարեխոսություն):

▣ **«ինքը Հոգին անբարբառ հառաչանքով բարեխոս է լինում»** Հավատացյալները հառաչում են իրենց մեղավոր վիճակի մեջ իսկ Հոգին հառաչանքով բարեխոսում է նրանց համար: Սուրբ Հոգին, գտնվելով քավության մեջ, աղոթում է նրանց համար, և Հիսուսը, Աստծո աջ կողմում, նույնպես աղոթում է նրանց համար (հմմտ. հհ. 27,34; Եբ. 9:24; I Հովհ. 2:1): Այս բարեխոսությունը զորացնում է հավատացյալներին աղոթքի կյանք ապրելու (հմմտ. հ. 15; Գաղ. 4:6): Տվյալ կոնտեքստում այս հատվածը չի վերաբերվում լեզուներով խոսելու հոգևոր պարգևին, այլ Սուրբ Հոգու բարեխոսությունը Հոր Աստծուն հավատացյալների համար:

▣ **«բարեխօսում է»** Տես Հատուկ Թեմա: Պողոսն օգտագործում է *Huper* նախդիրը բարդ բառեր կազմելու համար 1:30.

**8:27 «Եւ սրտերը քննողը գիտէ»** Այս թեման շարունակաբար կրկնվում էր Հին Կտակարանում (հմմտ. I Թագ. 2:7; 16:7; III Թագ. 8:39; I Մնաց. 28:9; II Մնաց. 6:30; Սաղ. 7:9; 44:21; Առ. 15:11; 20:27; 21:2; Եր. 11:20; 17:9-10; 20:12; Ղուկ. 16:15; Գործք 1:24; 15:8): Աստված շատ լավ ճանաչում է մեզ, բայց միևնույն ժամանակ շարունակում է սիրել (հմմտ. Սաղ. 139):

▣ **«սուրբերի համար բարեխօսում է»** Սուրբ Հոգու առաջադրանքը հստակ շարադրված է Հովհ. 16:2-15: Դրանցից մեկը բարեխոսությունն է:

«Սուրբեր» տերմինը միշտ հանդես է եկել ՀՈԳՆԱԿԻ թվով, բացի Փիլ. 4:21, որտեղ այն նաև վերաբերում է բոլոր հավատացյալներին: Քրիստոնյաները Աստծո ընտանիքի, Քրիստոսի մարմնի, նոր տաճարի անդամներն են, կառուցված անհատ հավատացյալներից: Այս հասկացողությունը խիստ անհրաժեշտ է աստվածաբանական հավասարակշռությունը պահելու

համար ի տարբերություն արևմտյան (ամերիկյան) անհատականության: Տես հատուկ թեմա: Սուրբեր 1:7.

## ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՍՈՒՐԲ ՀՈԳԻՆ ՈՐՊԵՍ ԱՆՁ

Այստեղ, առաջին անգամ Հռոմեացիս Թղթում, Սուրբ Հոգին հանդիսանում է որպես Անձ: Հին Կտակարանում «Աստծո Հոգին» (այն է *ruach*) հանդիսանում էր այն ուժը, որը կատարում էր ԵՀՈՎԱ-յի նպատակը, բայց ոչ մի ակնարկ չկա, որ Նա Անձ էր (այն է, հինկտակարանյան մոնոթեիզմ/միաստվածություն): Ինչևէ, Նոր Կտակարանում Սուրբ հոգու անձեղությունն ու Նրա բնավորության առանձնահատկություններն արձանագրված են:

1. Նրան կարող են հայհոյել ուղղել (հմմտ. Մաթ. 12:31; Մարկ. 3:29)
2. Նա սովորեցնում է (հմմտ. Ղուկ. 12:12; Հովh. 14:26)
3. Նա վկայում է (հմմտ. Հովh. 15:26)
4. Նա հանդիմանում և խրատում է (հմմտ. Հովh. 16:7-15)
5. Նա հաղես է գալիս «ով» դերանունով (այն է, *hos*) (հմմտ. Եփ. 1:14)
6. Նրան կարող են տրտմեցնել (հմմտ. Եփ. 4:30)
7. Նրան կարող են հանգցնել (հմմտ. I Թես. 5:19)

Մի շարք աստվածաշնչյան տեքստեր, որոնց վրա է հիմնված Երրորդության գաղափարը, նաև խոսում է երեք Անձերի մասին

1. Մաթ. 28:19
2. II Կոր. 13:14
3. I Պետ. 1:2

Սուրբ Հոգին կապված է մարդկային գործողությունների հետ

1. Գործք 15:28
2. Հռ. 8:26
3. I Կոր. 12:11
4. Եփ. 4:30
5. I Թես. 5:15

Գործք Առաքելոց գրքի հենց սկզբում ընդգծված է Սուրբ Հոգու դերը: Պենտեկոստեր օրը Սուրբ Հոգու գործունեության սկիզբը չէր, այլ մի նոր փուլ: Հիսուսը միշտ ուներ Հոգին: Նրա մկրտությունը Սուրբ Հոգու գործունեության սկիզբը չէր, այլ մի նոր գլուխ: Ղուկասը պատրաստում է եկեղեցուն մի նոր արդյունավետ ծառայության: Հիսուսը ուշադրության կենտրոնում է, Սուրբ Հոգին առաջվա

պես հանդիսանում է գործող միջոց, իսկ նպատակը մնում է Աստծո սերը, ներողամտությունը և բոլոր մարդկանց վերականգնումը Իր պատկերին և նմանությանը:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 8:28-30**
28 Բայց գիտենք, որ Աստուծուն սիրողներին ամեն բաները գործակից են լինում դէպի բարին նորանց՝ որ նախասահմանելովը կանչուած են: 29Որովհետեւ նորանց որ առաջուց ճանաչեց, առաջուց էլ սահմանեց իր Որդու պատկերին կերպարանակից լինելու. որ նա անդրանիկ լինի շատ եղբայրների մէջ: 30 Եւ որոնց առաջուց սահմանեց, նորանց կանչեց էլ. եւ որոնց կանչեց, նորանց արդարացրեց էլ. եւ որոնց արդարացրեց, նորանց փառաւոր էլ արաւ:

**NASB (UPDATED) TEXT: 8:28-30**
**28And we know that God causes all things to work together for good to those who love God, to those who are called according to *His* purpose. 29For those whom He foreknew, He also predestined *to become* conformed to the image of His Son, so that He would be the firstborn among many brethren; 30and these whom He predestined, He also called; and these whom He called, He also justified; and these whom He justified, He also glorified.**

**8:28 «ամեն բաները»** A և B հին հունարեն երկաթագիր ձեռագրերում գրված է այսպես «Աստված հոգում է ամեն բան»: Պապիրուս ձեռագրում $P^{46}$ «Աստված» բառի հետ որպես ենթակա գրված է « համատեղ գործող»: Նույնիսկ քերականորեն հնարավոր է, որ  հ. 28-ում ենթական «Հոգին» է (հմմտ. հ. 27 և NEB և REB): Այս համարը նաև վերաբերվում է «տառապանքներ»  հհ. 17-18; և «հառաչանքներ» բառերին հ. 23: Հավատացյալների համար արդեն գոյություն չունեն այնպիսի բաներ ինչպիսիք են բախտ, հաջողություն կամ պատահականություն:

▣ **«դէպի բարին»** Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է: Այստեղ նաև բարդ բառ է «*syn»* հիմքով (հմմտ. հ. 26): Ուստի, արտահայտության բառացի իմաստն այս է « բոլոր հանգամանքները համատեղ շարունակում են գործել դեպի բարին»: Չարի և տառապանքի աշխարհում սա բարդ միտք է հասկանալու համար  (երկու գիրք կօգնեն հասկանալու այս թեման; Վենհեմ «Աստծո Բարությունը» (*The Goodness of God* by Wenham) և Հաննա Ուայթհոլ Սմիթ «Երջանիկ կյանքի քրիստոնեական գաղտնիքը» (Hannah Whithall Smith, *The Christian's Secret of a Happy Life*): «Բարի» բառը այստեղ հ. 29-ում սահմանված է որպես «Իր Որդու պատկերին կերպարանակից լինել»: Աստծո անփոփոխ ծրագրում յուրաքանչյուր հավատացյալի համար հանդիսանում է քրիստոսանման լինելը, և ոչ թե բարգավաճելը, հեղինակավոր լինելը կամ առողջությունը:

▣ **«Աստուծուն սիրողներին, նորանց՝ որ նախասահմանելովը կանչուած են»** Երկու դեպքում էլ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ Է: Սրանք այն երկու պայմաններն են,

որոնք թույլ են տալիս հավատացյալին նայել կյանքին դրական կողմից, անկախ հանգամանքներից (հմմտ. հ. 15): Եվ նորից ուշադրություն դարձրեք Ուխտի երկու կողմերին՝ մարդու ազատությունը («ով սիրում է») և Աստծո գերիշխանությունը («ով կանչված է»):

**8:29-30** Այս համարների բոլոր բայերը ԱՈՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ են: Նրանք կազմում են գործողության շղթա սկզբից մինչև ժամանակի վախճանը: Աստված ճանաչում է մեզ և Նա մեր կողմից է և ուզում է, որ Իր հետ լինենք: Կոնտեքստը ցույց է տալիս ոչ թե մեկ անհատ հավատացյալի այլ նրանց համախմբվածությունը: Փառավորման վերջնական գործողությունը ապագայում է սպասվում, բայց այս կոնտեքստում հանդես է գալիս որպես իրականացված գործողություն:

**8:29 «առաջուց ճանաչեց»** Պողոսն այս տերմինը օգտագործել է երկու անգամ, այստեղ և 11:2-ում: 11:2-ում այն վերաբերում է Իսրայելի հանդեպ ունեցած Աստծո սիրուն, որն Աստված ուներ ժամանակներից առաջ: Հիշեք, որ «ճանաչել, իմանալ» տերմինը եբրայերենում կապված էր ինտիմ, մտերմիկ, անձնական հարաբերությանը, և ոչ թե ինչ որ մեկի մասին փաստեր ունենալուն (հմմտ. Ծննդ. 4:1; Եր. 1:5): Այստեղ պատկերված են իրար կապակցված մի շարք իրադարձություններ (հմմտ. հհ. 29-30): Այս տերմինը կապված է նախասահմանության հետ: Ինչևէ, պետք է հստակ սահմանել, որ Աստծո կանխագիտությունը ընտրության հիմքը չէ, եթե դա այդպես լիներ, ապա ընտրությունը կհիմնվեր ապագայում մեղավոր մարդկության արձագանքի վրա, որը կնշանակեր, որ ընտրությունը կախված է մարդու գործերից ու վարքից: Այս տերմինը նաև հանդիպում է Գործք 26:5; I Պետ. 1:2,20 և II Պետ. 3:17:

▣ **«առաջուց սահմանեց»** Երկու տերմիններն էլ «կանխագիտություն» (*proginōskō*) կամ «նախասահմանություն» (*proorizō*) բարդ բառեր են, կազմված «առաջուց, մինչև, նախօրոք» (*pro*) նախդիրից և ուստի պետք է թարգմանվի «իմանալ նախապես», «նախապես սահման դնել» կամ «նախապես չափել»:

Նոր Կտակարանում նախասահմանության մասին որոշ չափով հստակ հատվածներն են Հռ. 8:28-30; Եփ. 1:3-14 և Հռ. 9: Այս տեքստերը միանշանակ ընդգծում են Աստծո գերիշխանությունը: Նա է ամեն բանի լիիրավ հսկողը, ներառյալ մարդու պատմությունը: Գոյություն ունի աստվածային փրկության ծրագիր, որը իրականանում է ժամանակի մեջ: Ինչևէ, այս ծրագիրը պատահական կամ ընտրողական չէ: Այն հիմնված է ոչ միայն Աստծո գերիշխանության և կանխագիտության վրա, այլ Նրա անփոփոխ կերպարի, որի մեջ մտնում է սերը, ողորմությունը և անարժան շնորհքը:

Մենք պետք է զգույշ լինենք մեր արևմտյան (ամերիկյան) ինդիվիդուալիզմ/անհատապաշտություն կամ մեր ավետարանչական նախաձավորության համար, չգունավորելու համար այս ճշմարտությունը: Մենք նաև պետք է հսկենք այն, որ չհայտնվենք պատմական աստվածաբանական կոնֆլիկտի մեջ Օգոստինոսի և Պելագիուսի կամ կալվինիզմի և արմինիականության միջև:

Նախասահմանությունը մի վարդապետություն չէ, որը նշանակում է սահմանափակել Աստծո սերը, շնորհքն ու ողորմությունը , և ոչ էլ դուրս մղել որոշ բաներ ավետարանից: Նրա նշանակությունը ամրապնդում է հավատացյալներին՝ շարունակելով ձևավորել նրանց աշխարհայացքը: Աստված բոլոր մարդկանց <u>համար է</u> (հմմտ. Հովh. 3:16; I Տիմ. 2:4; II Պետ. 3:9): Աստված է հսկում ամեն բան: Ո՞վ կամ ի՞նչը կարող է մեզ բաժանել Նրանից (հմմտ. Հռ. 8:31-39): Նախասահմանությունը ձևավորում է երկու կերպերից մեկ կյանքին նայելու համար: Աստված նայում է ամբողջ պատմությանը որպես ներկայում կատարվող գործողություն: Մարդիկ սահմանափակ են ժամանակի մեջ: Մեր հեռանկարային և մտային կարողությունները սահմանափակ են: Աստծո գերիշխանության և մարդու ազատ կամքի միջև չկա հակասություն: Սա ուխտի յուրահատկությունն է, այսպես է կառուցված այն: Եվ սա մեկ ուրիշ օրինակ է այն բանի, որ աստվածաշնչյան ճշմարտությունը տրվում է ներքին դիալեկտիկական հակասությունով: Աստվածաշնչյան վարդապետությունները սովորաբար ներկայացվում են տարբեր տեսանկյուններից: Նրանք հաճախ թվում են պարադոքսային: Ճշմարտությունը հավասարակշռություն է թվացյալ հակառակ զույգերի միջև: Մենք չպետք է դիտավորյալ հեռացնենք այդ լարվածությունը, ընտրելով երկուսից միայն մեկը: Մենք նաև չպետք է մեկուսացնենք որևէ աստվածաշնչյան ճշմարտություն միայն իր սեփական սահմաններով և մտքերով:

Կարևոր է նաև ավելացնել, որ ընտրության նպատակը ոչ միայն երկինքն է մեր մահից հետո, այլ քրիստոսանմանությունը հիմա ներկայում (հմմտ. Եփ. 1:4; 2:10): Մենք ընտրվել ենք «սուրբ և անարատ» լինելու համար: Աստված գերադասում է մեզ փոխել այնպես, որ ուրիշները կարողանան տեսնել այդ փոփոխությունները և Քրիստոսի հավատքով արձագանքեն Աստծո կանչին: Նախասահմանությունը անձնական առանձնաշնորհում չէ, այլ պատասխանատվություն ուխտի համաձայն:

▣ **«իր Որդու պատկերին կերպարանակից լինելու»** Սա այս հատվածի գլխավոր ճշմարտությունն է: Սա է քրիստոնեության նպատակը (հմմտ. Գաղ. 4:19; Եփ. 4:13): Սրբությունը Աստծո կամքն է յուրաքանչյուր հավատացյալի համար: Աստծո ընտրությունը դա քրիստոսանման լինելն է (հմմտ.

Եփ. 1:4), և ոչ թե հատուկ դիրք: Աստծո պատկերը, որը տրվել է մարդուն արարչագործության ժամանակ, (հմմտ. Ծննդ. 1:26; 5:1,3; 9:6) պետք է վերականգնվի (հմմտ. Կող. 3:10): Տես ծանուցում 8:21 և Հատուկ Թեմա: Կանչված 1:6.

▣ **«որ նա անդրանիկ լինի շատ եղբայրների մէջ»** Սաղմոս 89:27 «անդրանիկ» բառը Մեսիայի անունն է : Հին Կտակարանում առաջին որդին ուներ արտոնություններ և առավելություններ: Տերմինը օգտագործված է Կող. 1:15 ցույց տալու համար Հիսուսի գերապատվությունը արարչագործության մեջ և Կող. 1:18 և Հայտ. 1:5 ցույց տալու համար Հիսուսի գերապատվությունը հարության մեջ: Այս տեքստում հավատացյալները Քրիստոսի միջոցով ձեռք են բերում Նրա անդրանիկության առավելությունը:

Այս տերմինը չի վերաբերում Հիսուսի մարմնավորմանը, այլ Նրան որպես նոր սերնդի գլուխ (հմմտ. 5:12-21), առաջինը շարքի մեջ, մեր հավատքի լուսակիր, Հոր օրհնությունների փոխանցման ճանապարհը հավատքի ընտանիքին: Ստորև տես հատուկ թեման:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԱՆԴՐԱՆԻԿՈՒԹՅՈՒՆ**

Աստվածաշնչում «անդրանիկ» բառը (*prōtotokos*) օգտագործված է մի քանի պարզորոշ իմաստներով.

1. այս բառի հինկտակարանյան ծագումը վերաբերվում է ընտանիքում առաջին որդու արտոնություններին և առավելություններին (հմմտ. Սաղ. 89:27; Ղուկ. 2:7; Հռ. 8:29; Եբ. 11:28)
2. Կող. 1:15-ը խոսում է Հիսուսի մասին, որպես ստեղծագործության առաջինը, որը հնարավոր է ակնարկ է հանդիսանում Առ. 8:22-31, կամ Աստծո գործիչ (հմմտ. Հովհ. 1:3; I Կոր. 8:6; Կող. 1:15-16; Եբ. 1:2)
3. Կող. 1:18; I Կոր. 15:20 (և այստեղ) վերաբերվում է Հիսուսին, որպես մեռելներից անդրանիկը
4. հինկտակարանյան անուն է, օգտագործված Մեսիայի համար (հմմտ. Սաղ. 89:27; Եբ. 1:6; 12:23): Այս անունը իր մեջ ներառում էր մի քանի ասպեկտներ, որոնք արտացոլում էին Հիսուսի բացարձակ և կենտրոնական լինելը: Այս կոնտեքստում #3 կամ #4 fits best.

**8:30 «փառաւոր էլ արաւ»** Աստվածաշնչում Աստված հաճախ նկարագրվում է «փառք» տերմինով: Այս բառի արմատը առաջացել է առևտրի բնագավառից «ծանր» բառից, և որը նշանակում էր արժեքավոր ինչպես ոսկին: Տես Հատուկ Թեմա 3:23. Աստվածաբանորեն Աստված ազատագրում

է մեղավոր մարդկությանը մի շարք քայլերի միջոցով, որոնք թվարկված են հհ. 29-30: Վերջին քայլը «փառավորումն» է: Սա կլինի հավատացյալների ամբողջական փրկությունը: Այն կլինի Հարության Օրը, երբ նրանց կտրվեն իրենց նոր հոգևոր մարմինները (հմմտ. I Կոր. 15:50-58) և կմիավորվեն Եռյակ Աստծու և միմյանց հետ (հմմտ. I Թես. 4:13-18; I Հովh. 3:2):

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 8:31-39**
31 Ապա ի՞նչ ասենք այս բաների համար, եթէ Աստուած մեր կողմն է՝ ո՞վ է մեզ հակառակ. 32 Որ իր
Որդին էլ չխնայեց, այլ մեր ամենի համար մատնեց նորան. էլ ի՞նչպես նորան հետ ամեն բան չի
շնորհիլ մեզ: 33 Ո՞վ է որ Աստուծոյ ընտրուածների դէմ մեղադիր լինի. Աստուած էոր արդարացնում
է: 34 Ո՞վ է որ դատապարտէ. Քրիստոսը որ մեռաւ եւ աւելի՝ որ յարութիւն էլ առաւ եւ Աստուծոյ աջ
կողմն է, որ մեզ համար բարեխօս էլ է: 35 Ապա ո՞վ կբաժանէ մեզ Քրիստոսի սէրիցը. կառապա՞նք,
թէ նեղութի՞ւն, թէ հալածա՞նք, թէ սո՞վ, թէ մերկութի՞ւն, թէ վտա՞նգ, թէ սու՞ր: 36 Ինչպէս գրուած է, թէ
Քեզ համար մեռցնվում ենք բոլոր օրը եւ մորթուելու ոչխարի պէս համարուեցանք: 37 Բայց այս
ամեն բաներումն առաւել եւս յաղթում ենք նորա միջոցովը՝ որ մեզ սիրեց, 38 Որովհետեւ հաստատ
գիտեմ, որ ոչ մահ, ոչ կեանք, ոչ հրեշտակներ, ոչ իշխանութիւններ, ոչ զօրութիւններ, ոչ ներկայ
բաներ, ոչ գալու բաներ, 39 Եւ ոչ բարձրութիւն, ոչ խորութիւն, եւ ոչ մէկ ուրիշ ստեղծուած բան
կարող է մեզ բաժանել Աստուծոյ սէրիցը՝ որ մեր Տէր Յիսուս Քրիստոսումն է:

**NASB (UPDATED) TEXT: 8:31-39**
**31 What then shall we say to these things? If God *is* for us, who *is* against us? 32 He who did not spare
His own Son, but delivered Him over for us all, how will He not also with Him freely give us all things?
33 Who will bring a charge against God's elect? God is the one who justifies; 34 who is the one who
condemns? Christ Jesus is He who died, yes, rather who was raised, who is at the right hand of God, who
also intercedes for us. 35 Who will separate us from the love of Christ? Will tribulation, or distress, or
persecution, or famine, or nakedness, or peril, or sword? 36 Just as it is written, "FOR YOUR SAKE WE ARE
BEING PUT TO DEATH ALL DAY LONG; WE WERE CONSIDERED AS SHEEP TO BE SLAUGHTERED." 37 But in all
these things we overwhelmingly conquer through Him who loved us. 38 For I am convinced that neither
death, nor life, nor angels, nor principalities, nor things present, nor things to come, nor powers, 39 nor
height, nor depth, nor any other created thing, will be able to separate us from the love of God, which is
in Christ Jesus our Lord.**

**8:31 «Ապա ի՞նչ ասենք այս բաների համար»** Սա Պողոսի սիրելի արտահայտությունն է, որը ցույց է տալիս նրա սուր քննադատության ոճի ներկայացումը (հմմտ. 3:5; 4:1; 6:1; 7:7; 9:14,30): Այս հարցը վերաբերվում է նախկինում ասված մտքերին: Դժվար է միայն որոշել, թե ինչքան հեռուն է ուզում Պողոսը տանել ընթերցողի ուշադրությունը 3:21-31-ին, թե 8:1, թե՞ 8:18: Հաշվի առնելով կոնտեքստը, և որ 8:1 սկսվում է «ուրեմն» բառով, կարելի է ենթադրել, որ ամենալավը համապատասխանում է 8:18 համարը:

▣ **«եթէ»** Այստեղ ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է, որը ենթադրվում է ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակների համար: Պարզապես զարմանալի է, որ այս ամբողջ մեղքի պայքարների մեջ Աստված մեզ հետ է:

▣ **«ո՞վ է մեզ հակառակ»** «Ով» դերանունը կրկնվում է հհ. 33,34 և 35: Այն վերաբերվում է սատանային: 31-39 հատվածը օգտագործվում է Հին Կտակարանում, որպես գրական տեխնիկական միջոց, մարգարեների կողմից, դատական ատյանում կատավող գործողություն (հմմտ. Միքիա 1 և 6): ԵՀՈՎԱ-ն Իր ժողովրդին դատի է տալիս հոգևոր շնության մեղքի համար: Այստեղ նաև ակնարկ կա Ես. 50:8-9:

Ուշադրություն դարձրեք իրավական տերմիններին: «դեմ» հ. 31; «մեղադրանք ներկայացնել» հ. 33; «արդարացնում է» հ. 33; «դատապարտում է» հ. 34; և «բարեխոսում է» հ. 34: Աստված Դատավորն է: Քրիստոսը դատապաշտպան-իրավաբանը: Սատանան մեղադրողն է (բայց նա լուռ է մնում): Հրեշտակները, որպես ականատեսներ, լցնում են դատարանի դահլիճը (հմմտ. I Կոր. 4:9; Եփ. 2:7; 3:10):

**8:32 «Որ իր Որդին էլ չխնայեց»** Հայր Աստվածը մեղավոր մարդկությանը տվել է Իր լավագույնը: Նա հիմա չի թողնի հավատացյալներին և ոչ էլ քիչ կտա նրանց (հմմտ. Հովհ. 3:16; Հռ. 5:8): Որքան հինկտակարանյան վրիժառու Աստծո գաղափարը հեռու է սիրող Քրիստոսից: Այս վերջին և կատարյալ պարգևը արտացոլված է Աբրահամին տրված Աստծո խոսքի մեջ Ծննդ. 22:12, 16: Ռաբիներն օգտագործում են Հին Կտակարանի այս տեքստը փախանորդ քավությունը Աբրահամի սերնդի համար վարդապետությունը հաստատելու համար:

▣ **«այլ մեր ամենի համար մատնեց նորան»** «Ամենի, բոլորի» բառը այս տեքստում շատ կարևոր է: Հիսուս մեռավ ամբողջ աշխարհի մեղքերի համար (հմմտ. Ղուկ. 2:10-11; Հովհ. 3:16; 4:42; 11:51; I Տիմ. 4:10; I Հովհ. 2:2; 4:14): Սա վերաբերվում է Ադամ – Քրիստոս նմանություն 5:12-21: Հիսուսի մահը լուծեց մեղքի խնդիրը: Հիմա մարդու համար մնում է «հավատալ և ընդունել» խնդիրը:

▣ **«ամեն բան չի՞ շնորհիլ մեզ»** Այս բայը կազմված է հունարեն «շնորհք» տերմինի արմատից: «Ամեն բան» վերաբերվում է հ. 17: Տես ծանուցում 3:24.

**8:33-34 «մեղադիր լինի. . .արդարացնում է. . .դատապարտէ. . .բարեխօս է»** Այս բոլոր բառերը հանդիսանում են իրավաբանական տերմիններ: 31-39հ-ը դատական ատյանի տեսարան է երկնքում: Հնարավոր է սա ակնարկ է Ես. 50:8-9:

**8:33 «Աստուծոյ ընտրուածների»** Հիսուսն Աստծո ընտրյալ մարդն է ամբողջ մարդկության համար (Բարտ): Նոր Կտակարանում ամենաhստակ և ամբողջական տեքստն այս ճշմարտության մասին գտնվում է Եփ. 1:3-4 և Հռ. 9:14-26: Հայրն ընտրեց Հիսուսին ընտրելու բոլոր մարդկությանը: Հիսուս Քրիստոսը Աստծո «այո»-ն է մեղավոր մարդկանց «ոչ»-ին:

## ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆ/ՆԱԽԱՍԱՀՄԱՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԱՍՏՎԱԾԱԲԱՆԱԿԱՆ ՀԱՎԱՍԱՐԱԿՇՌՈՒԹՅԱՆ ԿԱՐԻՔԸ

Ընտրությունը հիանալի վրադապետություն է: Բայց ընտրությունը դա ֆավորիտ/սիրելի լինելը չէ, այլ որ հավատացյալը լինի ճանապարհ, գործիք կամ միջոց, որը կնպաստի ուրիշների փրկությանը: Հին Կտակարանում տերմինը հիմնականում օգտագործվում էր ծառայության համար; Նոր Կտակարնում այն հիմնականում օգտագործվում է փրկության համար, որին հաջորդում է ծառայությունը: Աստվածաշունչը երբեք չի հաշտեցնում թվացյալ կոնֆլիկտը Աստծո գերիշխանության և մարդու ազատ կամքի միջև, բայց հաստատում է երկուսն էլ: Աստվածաշնչյան լարվածության լավ օրինակ կարող է լինել Հռ. 9-ը Աստծո գերիշխան ընտրության վերաբերյալ և Հռ. 10-ը մարդու անհրաժեշտ արձագանքի մասին (հմմտ. 10:11,13):

Այս աստվածաբանական լարվածության բանալին կարելի է գտնել Եփ. 1:4: Հիսուսը Աստծո ընտրյալ Մարդն է և բոլոր մարդիկ ըստ հնարավորին ընտրված են Նրանում (Կարլ Բարտ): Հիսուսն Աստծո «այո»-ն է՝ ուղղված մեղավոր մարդու կարիքին (Կարլ Բարտ): Եփեսացիս 1:4 օգնում է հստակեցնել այս վիճելի հարցը, պնդելով, որ նախասահմանության նպատակը երկինքը չէ, այլ սրբությունը (քրիստոսանմանություն): Ավետարանում մեզ հաճախ գրավում է հավատացյալի շահն ու արտոնությունը, բայց մենք հակված ենք անտեսելու մեր պատասխանատվությունները: Աստծու կանչը (ընտրություն) թե երկրային կյանքի համար է, և թե հավիտենականության:

Աստվածաշնչյան վարդապետությունները ունեն սերտ համագործակցություն միմյանց հետ, և նրանցից ոչ մեկը անհատապես և անկախ հանդես չի գալիս: Ինչպես օրինակ համաստեղությունը և մեկ առանձին աստղը: Աստված ներկայացնում է Իր ճշմարտությունները արևելյան ժանրով և ոչ թե արևմտյան: Եվ մենք չպետք է հեռացնենք լարվածությունը, որ կան որոշ վարդապետական ճշմարտությունների մեջ, որ ակնհայտ գոյություն ունեն երկու դիալեկտիկական (պարադոքսալ) կողմերում.

1. Նախասահմանությունը և մարդու ազատ կամքը
2. Հավատացյալների ապահովությունը և համբերատարության կարիքը
3. Ադամական մեղքը և անձնական մեղքը

4. Անմեղություն (կատարելություն) և քիչ մեղանչելը
5. Նախասկզբնական ակնթարթային արդարացումն ու սրբացումը և աստիճանաբար սրբացումը
6. Քրիստոնեական ազատություն և քրիստոնեական պատասխանատվություն

7. Աստծո գերազանցությունը և Աստծո ներունակությունը
8. Աստված որպես անճանաչելի վերջնականապես և ամբողջությամբ և Աստված որպես ճանաչված Սուրբ Գրքի միջոցով
9. Աստծո Թագավորությունը ներկայում և վերջնական իրականացումը ապագայում
10. Ապաշխարությունը որպես Աստծո պարգև և ապաշխարությունը որպես ուխտի մարդու անհրաժեշտ արձագանք
11. Հիսուսը որպես Աստված և Հիսուսը որպես մարդ
12. Հիսուսը հավասար է Հորը և Հիսուսը ենթարկվում է Հորը

«Ուխտ»-ի աստվածաբանական հասկացողությունը միավորում է Աստծո գերիշխանությունը (Ով միշտ նախաձեռնում և կանոններ է հաստատում) պարտադիր նախասկզբնական և շարունակական ապաշխարությունը և հավատքի արձագանքը մարդկանց կողմից: Զգուշացեք փնտրելուց հաստատող տեքստ պարադոքսի միայն մեկ կողմը և նվազեցնել մյուսի իմաստը: Զգուշացեք հաստատելու միայն ձեր սիրելի վարդապետությունը կամ աստվածաբանական համակարգը:

**8:34** Այս համարում թվարկված են Հիսուսի ծառայության մի քանի ասպեկտները (1) Նա մահացավ, (2) Նա հարություն առավ, (3) Նա Աստծո աջ կողմում է և (4) Նա բարեխոսում է հավատացյալների համար:

Հիսուսի մահը վճարեց մեր մեղքի վարձքը (հմմտ. Ես. 53; Մարկ. 10:45; II Կոր. 5:21): Հիսուսի հարությունը ցույց է տալիս Որդու ծառայության Հոր ընդունելությունը և հույս է տալիս հալածանքի և մահվան ժամանակ: Հիսուսի փառավորումը Հոր աջ կողմում և բարեխոսությունը հավատացյալների համար տալիս է նրանց համարձակություն պատերազմելու հավատքի բարի պատերազմը:

▣ **«Աստուծոյ աջ կողմն է»** Սա մարդաբանական փոխաբերություն է: Աստված չունի ֆիզիկական մարմին: Նա «հոգի» է: Այս փոխաբերությունը խոսում է մի վայրի մասին, որտեղ կա զորություն, իշխանություն և գերապատվություն: Պողոսը հազվադեպ է օգտագործում այս

արտահայտությունը (հմմտ. Եփ. 1:20; Կող. 3:1): Շատ հնարավոր է, որ 34 հ-ում Պողոսը մեջբերում է կատարում վաղ քրիստոնյաների հավատքի դավանությունը (հմմտ. Փիլ. 2:6; I Տիմ. 3:16):

▣ **«բարեխոս էլ է»** Հիսուսի ծառայությունը շարունակվում է: Հիսուսը բարեխոսում է մեզ համար (հմմտ. Եբ. 4:4-16; 7:25) ինչպես դա անում է Սուրբ Հոգին (հհ. 26-27): Այս բառը առաջացել է «*paraclete*» տերմինից, որը օգտագործված է Հովհ. 16:14 Հոգու համար և I Հովհ 2:1-ում Որդու համար: Սա ևս մեկ ակնարկ է տառապող ծառայի հիմնի մասին (հմմտ. Ես. 53:12):

**8:35 «Քրիստոսի սէրիցը»** Սա կամ ՈՒՂՂԱԿԱՆ կամ ՕԲՅԵԿՏԱՅԻՆ ՀՈԼՈՎ Է: Այս խոսքերի տակ կարող ենք հասկանալ (1) Քրիստոսի սերը հավատացյալների հանդեպ կամ (2) հավատացյալների սերը Քրիստոսի հանդեպ: Առաջինը ավելի լավ է համապատասխանում այս կոնտեքստին (և II Կոր. 5:14), որովհետև հավատացյալների սերը Քրիստոսի հանդեպ գալիս ու գնում է, իսկ Քրիստոսի սերը մեր հանդեպ հաստատ է և կայուն:

Հունարեն ձեռագրերում այս արտահայտության մի քանի տարբերակներ կան: Հին հունարեն տեքստերից մեկում գրված է «Աստծո սերը» արտահայտությունը (հմմտ. MS ℵ): Մեկ ուրիշ հին ձեռագիր միացնում է երկու արտահայտությունները ասելով «Աստծո սերը Քրիստոսում» (հմմտ. MS B): UBS[4] թարգմանության կազմողները «Քրիստոսի սերը» արտահայտությունները որակավորում են որպես «A» կատեգորիա (հուսալի տարբերակ): Այն հայտնվում է MSS C, D, F, G, ձեռագրերում, շատ հին լատիներեն թարգմանություններում, Վուլգաթի մեջ և Պեշիտայում (Peshitta):

▣ **«տառապա՞նք, թէ նեղութի՞ւն, թէ հալածա՞նք»** Քրիստոնյաները աշխարհում խնդիրներ կունենան, բայց ոչ այս խնդիրները, և ոչ էլ չար ուժերը չեն կարող նրանց բաժանել Աստծուց: Տես հատուկ թեմա: Նեղություններ 5:3.

**8:36** Սա մեջբերում է Սաղ. 44:22-ից: Այս Սաղմոսում Աստծուն դիմում են տառապող ժողովրդին փրկելու համար:

**Արևելահայերեն «Բայց այս ամեն բաներումն առաւել եւս յաղթում ենք»**
**Արևմտահայերեն «Հապա այս ամէն բաներուն մէջ ալ աւելի յաղթող կըլլանք»**

**8:37**
**NASB** **"But in all these things we overwhelmingly conquer"**
**NKJV** **"Yet in all these things we are more than conquerors"**

**NRSV** **"No, in all these things we are more than conquerors"**
**TEV** **"No, in all these things we have complete victory through him"**
**JB** **"these are the trials through which we triumph"**

Այստեղ օգտագործված է ձև, որը ամրացնում է տերմինի իմաստը «գրավել, նվաճել, հաղթել»: Պողոսն է միավորել այս տերմինը (*hyper* + *nikaō*): Սա հիանալի փոխաբերություն է հավատացյալի մասին «հաղթող ոչխար»: Հավատացյալները հաղթող են Հիսուս Քրիստոսի միջոցով (հմմտ. Հովհ. 16:33; I Հովհ. 2:13-14; 4:4; 5:4): Տես հատուկ թեմա: Պողոսը օգտագործում է *Huper* նախդիրը, բարդ բառեր կազմելու համար 1:30.

▣ **«նրա միջոցով՝ որ մեզ սիրեց»** Այս ԴԵՐԱՆՈՒՆԸ կարող է վերաբերվել թե Հորը թե Որդուն:

**8:38 «հաստատ գիտեմ»** Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է, որը նշանակում է «ես եղել և շարունակում եմ լինել վստահ»:

▣ **«հրեշտակներ»** Ռաբիները մտածում էին, որ հրեշտակները նախանձել են մարդկանց Աստծո սիրո և ուշադրության համար, և դրա համար թշնամությամբ են լցվել նրանց հանդեպ: Գնոստիկ կեղծ վարդապետները պնդում էին, որ մարդու փրկությունը հնարավոր է միայն այն դեպքում, երբ նրան հայտնի է ինչ որ գաղտնագիր, որի միջոցով նա կարող է հաղթահարել թշնամությունը հրեշտակային ոլորտում (Հմմտ. Կող. և Եփ):

Ջորջ Էլդոն Լեդը իր «Նոր Կտակարանի աստվածաբանություն» (George Eldon Ladd *A Theology of the New Testament*)գրքում տերմինների լավ ամփոփում է բերում, որոնք Պողոսն օգտագործում է հրեշտակներին նկարագրելու համար

> «Պողոսը առընչվում է ոչ միայն լավ ու վատ հրեշտակներին, սատանային և դևերին, բայց նաև օգտագործում է մի շարք ուրիշ բառեր հրեշտակային հոգիների դասակարգին պատկանող: Ահա նրա տերմինաբանությունը.
>
> «Իշխանություն» [*arche*], I Կոր. 15:24; Եփ. 1:21; Կող. 2:10
>
> «Իշխանություններ» [*archai;* RSV, «իշխանություններ»], Եփ. 3:10; 6:12; Կող. 1:16; 2:15; Հռ. 8:38
>
> « Պետութիւն», [*exousia*], I Կոր. 15:24; Եփ. 1:21; Կող. 2:10
>
> «Պետութիւններ» [*exousiai*; RSV, «իշխանություններ»], Եփ. 3:10; 6:12; Կող. 1:16; 2:15
>
> « Իշխանութիւն» [*dynamis*], I Կոր. 15:24; Եփ. 1:21
>
> «Իշխանութիւններ» [*dynameis*], Հռ. 8:38
>
> «Աթոռները» [*thronoi*], Կող. 1:16
>
> « Տէրութիւն [*kyriotes*; RSV, «տիրապետություն»], Եփ. 1:21

«Տէրութիւններ [*kyriotetes*], Կող. 1:16

«Այս աշխարհի խաւարի աշխարհակալների հետ» Եփ. 6:12

«Չար հոգիների հետ որ երկնաւորների մէջ են» Եփ. 6:12

«Խավարի իշխանությունը» Կող. 1:13

«Ամեն անունից վեր՝ որ անուանվում է» Եփ.1:21

«Երկնաւորների եւ երկրաւորների եւ երկրի տակ լինողների» Փիլ. 2:10» (էջ 401):

Գոյություն չունի հստակ աստվածաշնչյան տեղեկություն այն բանի մասին, թե ինչպես են Հին Կտակարանի ընկած հրեշտակներն առընչվում Նոր Կտակարանի դիվային ուժերի հետ: Շատերը ենթադրում են, որ դրանք նույն հրեշտակներն են: Ինչևէ, համաձայն հրեական վախճանաբանական գրականության, դևերը հսկաների հոգիներն էին Ծննդ. 6, որոնք կես հրեշտակ կես մարդ էին: Նրանց մարմինները կործանվեցին ջրհեղեղի ժամանակ, ուստի նրանք ամեն հնարավորություն փնտրում են նորից մարմնավորվելու: Սա միայն ենթադրություն է: Աստվածաշունչը չի պատասխանում մեր բոլոր հարցերին ծագումնաբանության մասին, այն միայն մարդու փրկության համար է, և ոչ թե նրանց հետաքրքրասիրությունը բավարարելու համար:

▣ **«իշխանութիւններ. . .զօրութիւններ»** Այս խոսքերը վերաբերում են կամ (1) այս ժամանակաշրջանի չար ընկած հրեշտակներին կամ դիվային ուժերին (հմմտ. Եփ. 2:2; 6:12; I Կոր. 15:24; Կող. 1:16), կամ (2) էլ անդեմ կառուցվածքներին ու ինստիտուտներին մեղավոր աշխարհի (կրոն, կառավարություն, կրթություն, բժշկություն և այլն), որոնք թույլ են տալիս ընկած մարդկությանը Աստծուց անկախ լինել (հմմտ. Հենդրիկ Բերկհոֆի «Իշխանություններ և զորություններ» գիրքը (Hendrickus Berkhoff, *Principalities and Powers*): Տես ծանուցում 13:1.

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՍԿԻԶԲԸ (*ARCH*)**

Անգլերեն լեզվում կա «domain» բառը, որը համապատասխանում է հունարեն *archē* տերմինին, որը և նշանակում է «սկիզբ, աղբյուր» կամ «ծագումը» ինչ որ մի բանի.

1. ստեղծագործության կարգ ու կանոնի կամ հերթականության սկիզբը (հմմտ. Հովհ. 1:1; I Հովհ. 1:1)
2. ավետարանի սկիզբը (հմմտ. Մարկ. 1:1; Փիլ. 4:15)
3. առաջին վկաները կամ ականատեսները (հմմտ. Ղուկ. 1:2)
4. նշանների սկիզբը (հրաշքներ, հմմտ. Հովհ. 2:11)
5. առաջին սկզբունքները (հմմտ. Եբ. 5:12)
6. վստահության/ապահովության սկիզբը (հմմտ. Եբ. 3:14)

Այս տերմինը նաև օգտագործվում է հետևյալ իմաստով «իշխանություն» կամ «կառավարություն, հեղինակություն, տերություն»:

1. մարդկային իշխանություններ
   ա. Ղուկ. 12:11
   բ. Ղուկ. 20:20
   գ. Հռ.13:3; Տիտոս 3:1
2. հրեշտակային իշխանություններ
   ա. Հռ. 8:38
   բ. I Կոր. 15:24
   գ. Եփ. 1:21; 3:10; 6:10
   դ. Կող. 1:16; 2:10,15

Այս կեղծ վարդապետները արհամարհանքով էին վերաբերվում իշխանությունների հետ, թե երկրային և թե երկնային: Նրանք հակաօրինականության կողմնակիցներ էին: Նրանք իրենց ցանկություններն ու ձգտումները վեր դասեցին Աստծուց, հրեշտակներից, քաղաքացիական իշխանություններից, և եկեղեցու առաջնորդներից:

**8:39 «ոչ բարձրութիւն, ոչ խորութիւն»** Այս տերմինները օգտագործվել են գագաթնակետ (*apogee*) և երկրամերձ կետ (*perigee*) հանդիսացող աստղերի համար, որոնք հին հավատքի մեջ համարվում էին չաստվածներ, որոնք կառավարում էին մարդու կյանք (աստղագուշակություն): Ավելի ուշ դրանք դարձան տեխնիկական տերմիններ գնոստիցիզմ կոչվող հերետիկոսության մեջ, *eons* կամ հրեշտակային մակարդակներ սուրբ չաստծո և ավելի ցածր չաստծո միջև, որը և ստեղծեց մեղավոր նյութը:

▣ **«ոչ մէկ ուրիշ ստեղծուած բան»** Բառացիորեն նշանակում է «մի ուրիշ տեսակի ստեղծված բան» (*heteros*): Կոնտեքստը պահանջում է, որ դա հասկացվի որպես հետագա ակնարկ հրեշտակային զորությունների մասին: Կա տարբերություն հունարեն նախդիրի *heteros,* նս մի ուրիշ տեսակի, և *allos*, նս նույն տեսակի, որոնք դուրս են եկել հունարեն Կոյնե լեզվի գերծածությունից, բայց այս կոնտեքստը դեռ ցույց է տալիս որոշ տարբերություն:

▣ **«ոչ. . .ոչ. . .կարող է մեզ բաժանել Աստուծոյ սէրիցը»** Ինչպիսի հիանալի միտք մեր վստահության համար: Այս գլուխը սկսվում է այն բանով, որ Քրիստոսում լինողների համար չկա դատապարտություն, և ավարտվում նրանով, որ ոչ ոք և ոչինչ չի կարող բաժանել մեզ Աստծուց: Ոչ ոք չի կարող վերցնել հավատացյալի փրկությունը: Ինչևէ, հավատացյալն ինքը պետք է

արձագանքի Աստծո կանչին սկզբում (հմմտ. 3:21-31) և հետո շարունակաբար կյանքի ընթացքում (հմմտ. գլուխներ 4-8): Որոշիչ դեր է խաղում Սուրբ Հոգու գործունեությունը, սակայն անհրաժեշտ է նաև հավատացյալի արձագանքը պայմանական ուխտի հանդեպ: Պահանջվում է ապաշխարություն և հավատք (հմմտ. Մարկ. 1:15; Գործք 3:16,19; 20:21), ինչպես նաև հնազանդություն և համբերատարություն:

## ՔՆՆԱՐԿՎՈՂ ՀԱՐՑԵՐ

Սա սերտողության համար ուղեցույց հանդիսացող մեկնաբանություն է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ:

1. Ինչպե՞ս է գլուխ 8 կապվում գլուխ 7 հետ:
2. Եթէ դատապարտություն չկա, ապա ինչ է լինելու մեղքի հետ հավատացյալի կյանքում:
3. Հոգին թե՞ Հիսուսն է ապրում հավատացյալի մեջ (հ. 9):
4. Ինչպե՞ս ազդեց մարդու մեղքը բնության վրա (հհ. 19-22): Արդյո՞ք բնությունը մաս կունենա երկնքում (հմմտ. Ես. 11:6-10):
5. Ինչպե՞ս է Հոգին աղոթում մեզ համար (հհ. 26-27): Արդյո՞ք սա վերաբերում է «լեզուներով խոսելուն»:
6. Ինչպե՞ս կարող է Աստվածաշունչն ասել , որ ամեն բան բարի գործակից է լինում այսպիսի չար աշխարհում (հ. 28): Տվեք «բարի» բառի սահմանումը:
7. Ինչու՞ է սրբացումը դուրս մնացել աստվածաբանական իրադարձությունների շղթայից հ. 30-ում:
8. Ինչի՞ հիման վրա կարող ենք ասել, որ հհ. 31-39 պատկերված է դատական ատյանի տեսարան:
9. Թվարկեք 4 բաներ հ. 34-ում, որ վերաբերում են Հիսուսին:

# ԹՈՒՂԹ ՈՒՂՂՎԱԾ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

## ԳԼՈՒԽ 9

| ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ | | | | |
|---|---|---|---|---|
| UBS[4] | NKJV | NRSV | TEV | JB |
| Աստծո ընտրությունը | Իսրայելի Քրիստոսին չընդունելը | Իսրայելի անհավատության խնդիրը | Աստված և Իր ժողովուրդը | Իսրայելի արտոնությունները |
| 9:1-5 | 9:1-5 | 9:1-5 | 9:1-5 | 9:1-5 |
| | Իսրայելի մերժումը և Աստծո խոստումը | Աստծո խոստումը Իսրայելին չի ձախողել | | Աստված պահել է Իր խոստումը |
| 9:6-13 | 9:6-13 | 9:6-13 | 9:6-9 | 9:6-13 |
| | | | 9:10-13 | |
| | Իսրայելի մերժումը և Աստծո արդարությունը | Աստծո ընտրելու իրավունքը | | Աստված անարդար չէ |
| 9:14-18 | 9:14-29 | 9:14-18 | 9:14-18 | 9:14-18 |
| Աստծո բարկությունը և ողորմությունը | | | Աստծո բարկությունը և ողորմությունը | |
| 9:19-29 | | 9:19-26 | 9:19-21 | 9:19-21 |
| | | | 9:22-29 | 9:22-24 |
| | | | | Ամենը կանխատեսված էր Հին Կտ-ում |
| | | | | 9:25-29 |
| | | 9:27-29 | | |
| Իսրայելը և Ավետարանը | Իսրայելի ներկա վիճակը | Ճշմարիտ արդարությունը հավատքով է | Իսրայելը և Ավետարանը | |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 9:30-10:4 | 9:30-33 | 9:30-10:4 | 9:30-10:4 | 9:30-33 |

## ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ (տես էջ vii)

*Հետևել բուն հեղինակի մտադրությանը պարբերությունների մակարդակով*

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Ճանաչիր թեմաները: Համեմատիր քո թեմայի բաժանումները վերը նշված 5 թարգմանությունների հետ: Բաժանումները ներշնչված չեն, բայց դա բանալի է հետևելու բուն հեղինակի մտադրությանը, որը մեկնաբանության սիրտն է: Յուրաքանչյուր պարագրաֆ ունի մեկ և միայն մեկ թեմա:

Մեկ շնչով կարդացեք այս գլուխը: Ուրվագծեք հիմնական թեմաներն ու թեման արտահայտեք մեկ նախադասությամբ:

1. Առաջին պարագրաֆ
2. Երկրորդ պարագրաֆ
3. Երրորդ պարագրաֆ
4. և այլն

### 9-11 ԳԼՈՒԽՆԵՐԻ ԿԱՊԸ 1-8 ԳԼՈՒԽՆԵՐԻ ՀԵՏ

Ա. Գոյություն ունի հասկացողության երկու մոտեցում կապված այս գրական բաժնի մեջ 1-8 գլուխներում

1. Սա ամբողջությամբ առանձին թեմա է, աստվածաբանական փակագծեր/միջանկյալ բառ
   ա. Այստեղ հստակ գոյություն ունի կտրուկ հակադրություն և տրամաբանական կապի բացակայություն 8:39 և 9:1 համարների միջև:
   բ. Սա ուղղակիորեն կապված է Հռոմի եկեղեցում տիրող պատմական լարվածության հետ, որը հավատացյալ հրեաների և հավատացյալ հեթանոսների միջև էր: Հնարավոր է, որ կոնֆլիկտի իմաստը կապված էր հեթանոս առաջնորդների աճը եկեղեցում:

գ. Իսրայելի (և Օրենքի) հետ կապված Պողոսի քարոզչության մասին կար սխալ ըմբռնում և նրա հեթանոսներին առաքյալ լինելու ծառայության մասին (ճրի շնորհքի պարգևը), ուստի, նա խոսում է այս թեմայի մասին այս բաժնում:

2. Սա գագաթնակետ և տրամաբանական ամփոփումն է Պողոսի ավետարանի ներկայացման:

ա. Պողոսն ամփոփում է գլուխ 8-ը խոստման խոսքերով «չկա բաժանում Աստծո սիրուց»: Ուրեմն ի՞նչ կլինի ուխտի անհավատ ժողովրդի հետ:

բ. Հռոմեացիս 9-11 պատասխանում է ավետարանի պարադոքս կապված Իսրայելի անհավատության հետ:

գ. Պողոսն այս թեմային անդրադառնում է ամբողջ նամակի ընթացքում (հմմտ. 1:3,16; 3:21,31 և 4:1):

դ. Պողոսը պնդում է, որ Աստված հավատարիմ է Իր Խոսքին: Իսկ հիմա ինչպե՞ս հասկանանք Հին Կտակարանում Իսրայելի մասին ասվածը: Արդյոք բոլոր խոստումները կորցրին իրենց ուժը:

Բ. Կան մի քանի հնարավոր տարբերակներ այս գրական բաժինը ուրվագծելու համար

1. Պողոսի հարցադրումների օգտագործումը ելնելով ենթադրյալ հակառակորդից (սուր քննադատություն)

ա. 9:6

բ. 9:14

գ. 9:19

դ. 9:30

ե. 11:1

զ. 11:11

2. Հռոմեացիս 9-11 գլուխները ձևավորում է գրական բաժին: Այն պետք է թարգմանվի միասին որպես մեկ ամբողջ: Ինչևէ, կան ամենաքիչը երեք գլխավոր թեմաների բաժանումներ:

ա. 9:1-29 (կենտրոնացած է Աստծո սուվերենության վրա)

բ. 9:30-10:21 (կենտրոնացած է մարդու պատասխանատվության վրա)

գ. 11:1-32 (Աստծո ներփակող, հավիտենական, քավչարար նպատակը)

3. գլխավոր թեմաներով: Հռոմեացիսի այս բաժնի լավ պլանը գտնվում է NKJV թարգմանության Thomas Nelson հրատարակչության մեջ, համապատասխան պարբերության բաժանումների:

ա. Իսրայելի Քրիստոսին մերժելը, 9:1-5

բ. Իսրայելի մերժումը Աստծո խոստման, 9:6-13

գ. Իսրայելի մերժումը Աստծո արդարության, 9:14-29

դ. Իսրայելի ներկա վիճակը, 9:30-33

ե. Իսրայելը և ավետարանը, 10:1-13

զ. Իսրայելի ավետարանի մերժումը, 10:14-21

է. Իսրայելի մերժումը ամբողջը չէ, 11:1-10

ը. Իսրայելի մերժումը վերջնական չէ, 11:11-36

Գ. Այս բաժինը հանդիսանում է թե հոգու ճիչ և թե հստակ արտահայտված միտք (տրամաբանական ուրվագիծ): Փափագով լի շարադրանքը հիշեցնում է ընթերցողին Ովսիա 11:1-4,8-9, որտեղ խոսվում է այն մասին, թե ինչպես է կոտրվում Աստծո սիրտը՝ տեսնելով Իսրայելի ապստամբությունը:

Շատ հարցերում գլուխ 7-ում Օրենքի ցավն ու բարությունը զուգահեռ է գտնում գլուխներ 9-10ում: Երկու դեպքերում էլ Պողոսի սիրտը խորը ցավ էր ապրում Աստծուց ստացած օրենքի հեգնանքի համար, որը կյանքի փոխարեն մահ բերեց:

Դ. Այն որ 9-11 գլուխներում Պողոսը ավելի քան 25 անգամ օգտագործում է հինկտակարանային մեջբերումներ, ցույց է տալիս իր փափագը պատկերելու Իսրայելի պարադոքսը Հին Կտակարանի օրնակների հիման վրա, ինչպես նա արեց գլուխ 4-ում, և ոչ միայն ներկա իրավիճակի հիման վրա: Աբրահամի ֆիզիկական սերունդների մեծամասնությունը մերժել էր Աստծուն, նույնիսկ անցյալում:

Ե. Այս տեքստը, ինչպես Եփ. 1:3-14, խոսում է Աստծո հավիտենական նպատակների մասին կապված մարդու փրկության հետ: Սկզբում կարող է թվալ, որ նրանում նկարագրված է, թե ինչպես Աստված ընտրում որոշ անհատների և մերժում մյուսներին (նախազանցական կալվինիզմ; supralapsarian Calvinism), ինչնէ, ես կարծում եմ շեշտը անհատների վրա չէ դրված, այլ Աստծո հավիտենական փրկության ծրագրի վրա (հմմտ. Ծննդ. 3:15; Գործք 2:23; 3:18; 4:28; և 13:29):

«Ջերոմի աստվածաշնչյան մեկնաբանությունը» խմբ. Ջոզեֆ Ա. Ֆիթսմայեռ ր Ռայմոնդ Ե. Բրաուն, (*The Jerome Biblical Commentary*, “The New Testament,” edited by Joseph A. Fitzmyer and Raymond E. Brown), հատ. 2 «Նոր Կտակարան» բաժնում ասվում է.

> «Կարևոր է գիտակցել հենց սկզբից, որ Պողոսի հայացքը ունի ընդհանուր բնութագիր, առանձնահատկություն; նա չի քննարկում անհատների պատասխանատվությունները: Եվ եթե տպավորություն է ստեղծվում, որ նա հարց է բարձրացնում աստվածային նախասահմանության մասին, ապա սա ոչ մի կապ չունի անհատների փառքին գնալու նախասահմանության հետ » (էջ 318)

## ԳԼՈՒԽ 9-ի ԿՈՆՏԵՔՍՏԱՅԻՆ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ

Ա. Ուրչափ դիրքի արմատական փոփոխություն է տեղի ունենում գլուխ 8-ի և գլուխ 9-ի միջև:

Բ. Այս գրական բաժինը (9-11) անդրադառնում է (1) փրկության հիմքին (2) Աստծո ընտրողական կամ ընտրության նպատակին, և (3) անհավատ Իսրայելի անհավատությունը ի տարբերություն ԵՀՈՎԱ-յի հավատարմության:

Գ. Գլուխ 9-ը Նոր Կտակարանի ամենաուժեղ հատվածներից մեկն է Աստծո սուվերենության մասին (այն է, ուրիշ էակ, Եփ. 1:3-14) մինչ գլուխ 10-ը հստակ և շարունակաբար ընդգծում է մարդու ազատ կամքը (հմմտ. «յուրաքանչյուրը» հ. 4; «ով որ» հհ. 11,13; «բոլորը» հ. 12 {երկու անգամ}): Պողոսը երբեք չի փորձում հաշտեցնել այս աստվածաբանական լարվածությունը: Նրանք երկուսն էլ ճշմարտություն են: Աստվածաշնչյան վարդապետություններից շատերը ներկայացված են պարադոքսալ կամ դիալեկտիկական զույգերով: Աստվածաբանության համակարգերից շատերը տրամաբանական են, բայց ունեն հակում ապացուցելու տեքստը աստվածաշնչի ճշմարտության միայն մեկ տարրը: Ինչպես Օգոստինոսիանիզմը և կալվինիզմը, նմանապես կիսա-պեղագյանիզմն ու արմինիանիզմը ունեն ճշմարտության տարրեր և սխալներ: Վարդապետությունների միջև գոյություն ունեցող աստվածաշնչյան լարվածությունը գերադասելի է նայել հիմնավորված տեքստին դոգմատիկ, ռացիոնալ, աստվածաբանական համակարգը, որը Աստվածաշունչը դնում է որոշակի մեկնաբանական սահմանների մեջ:

Դ. 9:30-33-ը գլուխ 9-ի ամփոփումն է և գլուխ 10-ի թեման:

## ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 9:1-5**
1Ճշմարիտն եմ ասում Քրիստոսումը՝ եվ սուտ չեմ ասում, իմ խղճմտանքն էլ վկայում է ինձ
Սուրբ Հոգով: 2 Որ մեծ տրտմութիւն է ինձ եւ անպակաս ցաւ իմ սրտին. 3 Որ կխնդրէի՝ ես ինքս
նզովուած լինիլ Քրիստոսիցն իմ եղբայրների եւ մարմնաւոր ազգականների համար. 4 Որոնք
Իսրայէլացի են. որոնցն է որդեգրութիւնը, եւ փառքը եւ ուխտերը, եւ օրինադրութիւնը եւ
պաշտօնը եւ խոստումները. 5 Որոնց են հայրերը՝ եւ որոնցից է Քրիստոսը մարմնի կողմանէ,
որ է ամենի վերայ Աստուած, օրհնեալ յաւիտեանս. ամէն:

NASB (UPDATED) TEXT: 9:1-5

[1]I am telling the truth in Christ, I am not lying, my conscience testifies with me in the Holy Spirit, [2]that I have great sorrow and unceasing grief in my heart. [3]For I could wish that I myself were accursed, *separated* from Christ for the sake of my brethren, my kinsmen according to the flesh, [4]who are Israelites, to whom belongs the adoption as sons, and the glory and the covenants and the giving of the Law and the *temple* service and the promises, [5]whose are the fathers, and from whom is the Christ according to the flesh, who is over all, God blessed forever. Amen.

**9:1-2** Հունարենում 1 և 2 համարները մեկ նախադասություն է: Պողոսը տալիս է մի քանի պատճառներ, թե ինչպես նրանք (Հռոմի եկեղեցին) կարող էին համոզվել, որ նա ճիշտն է ասում; (1) նրա խիղճը, Սուրբ Հոգով առաջնորդված, h.1; (2) նրա միությունը Քրիստոսի հետ, h. 1; և (3) նրա խորը զգացմունքները Իսրայելի հանդեպ, h.2 :

**9:1 «Ճշմարիտն եմ ասում Քրիստոսումը՝ եվ սուտ չեմ ասում»** Պողոսը հաճախ անում է այսպիսի (հմմտ. II Կոր. 11:10; Գաղ. 1:20; I Տիմ. 2:7) կամ նմանատիպ հայտարարություն այն մասին, որ իր վկան հենց Ինքն Աստված է (հմմտ. Հռ. 1:9; II Կոր. 1:23; 11:31; Փիլ. 1:8; I Թես. 2:5,10): Սա իր ուսմունքների և քարոզչության ճշմարիտությունը պնդելու կերպն էր:

▣ **«իմ խղճմտանքն էլ»** Սա վերաբերում է հավատացյալի Աստծուց տրված, Հոգով առաջնորդված բարոյական զգացմունքին: Որոշակի իմաստով սա հեղինակության բանալի աղբյուրն է հավատացյալների համար: Դա Աստծո խոսքն է, հասկացված և կիրառված մեր մտքերին Աստծո Հոգու կողմից (հմմտ. I Տիմ. 1:5,19): Խնդիրը ծագում է, երբ հավատացյալները և նաև անհավատները շարունակում են մերժել Խոսքը և Հոգուն; այդ ժամ այն դառնում է ավելի հեշտ բացատրություն գտնել իր մեղքի համար (հմմտ. I Տիմ. 2:14-16; 4:2): Մեր խիղճը ունակ է ենթարկվելու մշակույթային առանձնահատկություններին և կյանքի գործնական փորձառության ազդեցությանը:

**Արևելահայերեն «վկայում է ինձ Սուրբ Հոգով»**
**Արևմտահայերեն « կվկայէ ինձ Սուրբ Հոգիով»**

▣ **NASB, NKJV "bearing me witness in the Holy Spirit"**
**NRSV "confirms it by the Holy Spirit"**
**TEV "ruled by the Holy Spirit"**
**JB "in union with the Holy Spirit assumes me"**

Պողոսը հավատում էր, որ ինքն ուներ հատուկ կանչ և հանձնարարություն Քրիստոսից (հմմտ. Գործք 9:1-22; Գաղ. 1:1): Նա Առաքյալ էր և խոսեց աստվածային իշխանությամբ (հմմտ. I Կոր. 7:25,40): Նա կիսեց Աստծո տխրությունը կապված Իսրայել ազգի անհավատության և անհնազանդության հետ (հմմտ. հ. 2): Նրանք ունեին այնքան շատ առանձնաշնորհներ (հմմտ. հհ. 4-5):

Պողոսը հաստատում է երեք պատճառ, թե ինչու ինքը հավատաց, որ ինքը խոսեց ճշմարտությունը

1. նրա միությունը Քրիստոսի հետ
2. նրա խիղճը
3. նրա Հոգով առաջնորդված հասկացողությունը (հմմտ. 8:14,16)

**Արևելահայերեն «Որ կխնդրէի՝ ես ինքս»**

**Արևմտահայերեն «Քանզի ես ինքս կփափաքէի»**

**9:3**
**NASB, NKJV,**
**NRSV "For I could wish . . . "**
**TEV "For their sake I could wish"**
**JB "I would be willing . . . "**

Պողոսն այնքան խորը և սրտանց ցավում էր իր Իսրայել ժողովրդի համար, որ եթե նրա բաժանումը Քրիստոսից կնպաստեր Իսրայելի փրկությանը, ապա նա պատրաստ էր գնալ այդ քայլին, հ. 3: Այս համարն ունի ուժեղ, ընդգծված, շեշտադրված քերականական կառուցվածք (ԱՆԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ՉԵԶՈՔ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ օգտագործված թե *autos* և *egō*, և ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ԻՆՖԻՆԻՏԻՎ): Այս աղոթքի լարվածությունն ու բեռը շատ նման է Մովսեսի բարեխոսական աղոթքին՝ մեղավոր Իսրայելի համար, Ելից 32:30-35: Սա լավագույն ձևն է հասկանալ որպես փափագ, ցանկություն, և ոչ թե որպես փաստ: Նմանապես Գաղ. 4:20 օգտագործված է ԱՆԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿԻ քերականական ձևը: Ստորև տես հատուկ թեմա

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԲԱՐԵԽՈՍԱԿԱՆ ԱՂՈԹՔ**

I. Ներածություն

Ա. Հիսուս Քրիստոսը ցույց տվեց հսկայական աղոթքի կարևորություն Իր իսկ օրինակով

1. անձնական աղոթք, Մարկ. 1:35; Ղուկ. 3:21; 6:12; 9:29; 22:29-46
2. տաճարի մաքրումը, Մաթ. 21:13; Մարկ. 11:17; Ղուկ.19:46
3. աղոթքի օրինակ, Մաթ. 6:5-13; Ղուկ. 11:2-4

Բ. Աղոթքը դա հնարավորություն է մեզ համար արտահայտել հստակ գործողությամբ մեր հավատքը, հոգատար Աստծո անձի հանդեպ, որը ներկա է, պատրաստ է և կարող է գործել ի օգուտ մեզ և ուրիշ հավատացյալների:

Գ. Աստված Ինքը որոշակի ձևով սահմանափակել է Իրեն, որպեսզի գործի շատ հարցերում և դեպքերում հատկապես Իր զավակների աղոթքներում (հմմտ. Հակոբոս 4:2):

Դ. Աղոթքի գլխավոր նպատակը դա Եռյակ Աստծո հետ հաղորդակցվել և ժամանակ անցկացնել է:

Ե. Աղոթքի առարկան ինչ որ բան կամ ինչ որ մեկն է, որը վերբերում և մտահոգում է հավատացյալներին: Մենք կարող ենք հավատքով մեկ անգամ աղոթել, կամ էլ կարող ենք աղոթել կրկին անգամներ երբ մտքերը և մտահոգությունները վերադառնում են:

Զ. Աղոթքը կարող է ներգրավել մի քանի տարրեր

1. փառաբանություն և երկրպագություն Եռյակ Աստծուն
2. Գոհություն Աստծուն Իր ներկայության, հաղորդակցության և մեր կարիքները հոգալու համար
3. մեր մեղքերի խոստովանություն, թե անցյալի և թե ներկայի
4. խնդրանք մեր կարիքների կամ փափագների համար
5. բարեխոսություն ուրիշի կարիքների համար Հոր Աստծո մոտ

Է. Բարեխոսական աղոթքը զաղտնիք է: Աստված ավելի շատ է սիրում նրանց, ում համար մենք աղոթում ենք քան մենք, բայց և այնպես մեր աղոթքները հաճախ ենթարկվում են փոփոխության, արձագանքի, կամ կարիքի, ոչ միայն մեր այլ նաև նրանցն էլ:

II. Աստվածաշնչյան նյութ

Ա. Հին Կտակարան

1. Բարեխոսական աղոթքի օրինակներ

ա. Աբրահամը բարեխոսում է Սոդոմի համար, Ծնն. 18:22-ից

բ. Մովսեսի աղոթքները Իսրայելի համար

(1) Ելից 5:22-23

(2) Ելից 32:31-ից

(3) 2 Օրինաց 5:5

(4) 2 Օրինաց 9:18,25-ից

գ. Սամուելի աղոթքները Իսրայելի համար

(1) I Թագ. 7:5-6,8-9

(2) I Թագ. 12:16-23

(3) I Թագ. 15:11

դ. Դավիթը աղոթեց իր որդու համար, II Թագ. 12:16-18

2. Աստված փնտրում է բարեխոսողների, Եսայի 59:16

3. Հայտնի, չխոստովանված մեղքը կամ չապաշխարած վիճակը ազդում է մեր աղոթքների վրա

ա. Սաղմոս 66:1

բ. Առակաց28:9

գ. Եսայի 59:1-2; 64:7

Բ. Նոր Կտակարան

1. Որդու և Սուրբ Հոգու բարեխոսական ծառայությունը

ա. Հիսուս

(1) Հռոմեացիս 8:34

(2) Եբրայեցիս 7:25

(3) I Հովհ. 2:1

բ. Սուրբ Հոգի, Հռոմեացիս 8:26-27

2. Պողոսի բարեխոսական ծառայությունը

ա. Աղոթում է հրեաների համար

(1) Հռոմեացիս 9:1-ից

(2) Հռոմեացիս 10:1

բ. Աղոթք եկեղեցիների համար

(1) Հռոմեացիս 1:9

(2) Եփեսացիս 1:16

(3) Փիլիպեցիս 1:3-4,9

(4) Կողոսացիս 1:3,9

(5) I Թեսաղ. 1:2-3

(6) II Թեսաղ.  1:11

(7) II Տիմոթեոս 1:3

(8) Փիլեմոն, h. 4

գ. Պողոսը խնդրում է եկեղեցիներին աղոթել իր համար

(1) Հռոմեացիս 15:30

(2) II Կորնթացիս 1:11

(3) Եփեսացիս 6:19

(4) Կողոսացիս 4:3

(5) I Թեսաղ.  5:25

(6) II Թեսաղ. 3:1

3. Եկեղեցու բարեխոսական ծառայությունը

ա. Աղոթք միմյանց համար

(1) Եփեսացիս 6:18

(2) I Տիմոթեոս 2:1

(3) Հակոբոս 5:16

բ. Աղոթքի խնդրանքներ հատուկ խմբերի համար

(1) մեր թշնամիների, Մաթ. 5:44

(2) քրիստոնյա ծառայողների, Եբր. 13:18

(3) իշխանավորների, I Տիմ. 2:2

(4) հիվանդների, Հակ. 5:13-16

(5) հավատքից ընկածների, I Հովհ. 5:16

գ. Աղոթք բոլոր մարդկանց համար, I Տիմ. 2:1

III. Պայմաններ պատասխանված աղոթքի

Ա. Մեր հարաբերությունը Քրիստոսի և Սուրբ Հոգու հետ

1. Նրա մեջ մնալով, Հովհ. 15:7

2. Նրա անունով, Հովհ. 14:13,14; 15:16; 16:23-24

3. Հոգով, Եփ. 6:18; Հուդա 20

4. Համաձայն Աստծո կամքի, Մաթ. 6:10; I Հովհ. 3:22; 5:14-15

Բ. Ճիշտ շարժառիթները

1. չտատանվելով, Մաթ. 21:22; Հակ. 1:6-7

2. Խոնարհություն և ապաշխարություն, Ղուկ. 18:9-14

3. Չար կերպով խնդրել, Հակ. 4:3

4. Եսասիրություն, Հակ. 4:2-3

Գ. Ուրիշ առանձնահատկություններ

1. Համառություն, համբերատարություն

ա. Ղուկաս 18:1-8

բ. Կողոսացիս 4:2

գ. Հակոբոս 5:16

2. Շարունակել աղոթել

ա. Մաթեոս 7:7-8

բ. Ղուկաս 11:5-13

գ. Հակոբոս 1:5

3. Անհամբերաշխություն ընտանիքում, I Պետրոս 3:7
4. Հայտնի մեղքի բացակայություն
ա. Սաղմոս 66:18
բ. Առակաց 28:9
գ. Եսայի 59:1-2
դ. Եսայի 64:7

IV. Աստվածաբանական եզրակացություն

Ա. Ինչպիսի առանձնաշնորհում: Ինչպիսի հնարավորություն: Ինչպիսի պարտավորություն և պատասխանատվություն:

Բ. Հիսուսը մեր օրինակն է: Սուրբ Հոգին մեր ուղեկցորդն է: Հայրը մեզ անհամբեր սպասում է:

Գ. Այն կարող է փոխել քեզ, քո ընտանիքը, քո ընկերներին և աշխարհը:

**Արևելահայերեն «նզովուած լինիլ Քրիստոսից»**

**Արևմտահայերեն «նզովուիլ Քրիստոսէն»**

▣

| | |
|---|---|
| NASB | "were accursed, *separated* from Christ" |
| NKJV | "were accursed from Christ" |
| NRSV | "were accursed and cut off from Christ" |
| TEV | "were under God's curse and separated from Christ" |
| JB | "willingly be condemned and cut off from Christ" |

«Սուրբ» բառի ստուգաբանությունը հիմնականում նշանակում է «առանձնացված Աստծո համար, Իր կողմից օգտագործվելու համար»: Այդ նույն գաղափարը գտնվում է այս տերմինների մեջ էլ «անեծք, նզովք, հայհոյանք, վիրավորանք»: Ինչ որ բան կամ ինչ որ մեկը առանձնանալ Աստծո համար: Այդ բաժանումը կարող է լինել թե դրական իմաստով (հմմտ. Ղև. 27:28; Ղուկ. 21:5) և թե բացասական (հմմտ. Հեսու 6-7; Հռ. 9:3), կախված կոնտեքստից:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԱՆԵԾՔ (*ANATHEMA*)**

Հին եբրայերենում «անեծք» բառի համար կան մի քանի բառեր: *Herem* բառը օգտագործվում էր ինչ որ բան տրված Աստծուն (հմմտ. LXX ինչպես anathema, Ղև. 27:28), սովորաբար կործանման համար (հմմտ. 2 Օրին. 7:26; Հեսու 6:17-18; 17:12): Այն օգտագործվում էր «սուրբ պատերազմ» գաղափարի մեջ: Աստված պատվիրեց կործանել և վերացնել քանանացիներին, և Երիքովը սկիզբն էր «առաջին պտուղները»՝ իսրայելացիների առաջին հնարավորությունը:

Նոր Կտակարանում *anathema* և այս բառից առաջացած ձևերը օգտագործվում էին մի քանի տարբեր իմաստներով.

1. որպես ընծա կամ պատարագ Աստծուն (հմմտ. Ղուկ. 21:5)
2. որպես նզովք, երդում (հմմտ. Գործք 23:14)
3. անիծել և երդվել (հմմտ. Մարկ. 14:71)
4. անեծք Հիսուսի հասցեին (հմմտ. I Կոր. 12:3)
5. ինչ որ բան կամ ինչ որ մեկին հանձնել Աստծո դատաստանին կամ կործանմանը (հմմտ. Հռ. 9:3; I Կոր. 16:22; Գաղ. 1:8-9):

**9:4-5** Այս համարներում գոյություն ունեցող ԳՈՅԱԿԱՆ ԲԱՌԵՐԻ շարքը ակնհայտ է և մանրակրկիտ շարադրում է այն արտոնությունները, որոնք ուներ Իսրայելը: Այս առավելությունների լույսի ներքո իսրայել ազգի անհավատությունը ավելի շատ քննադատության է արժանի: Ում շատ է տրվում, նրանից շատ է պահանջվում (հմմտ. Ղուկ. 12:48):

**9:4 «Իսրայելացի»** Սա Հին Կտակարանի անունն էր Աբրահամի սերնդի համար:Հակոբի անունը Աստծո հետ գլխավոր հանդիպումն ունենալուց հետո փոխվեց Իսրայել (հմմտ. Ծննդ. 32:28): Այն դարձավ հրեա ազգի հավաքական անունը: Այս բառի ստուգաբանությունը, հնարավոր է,տալիս է հետևյալ իմաստը «թող *El* (Աստված) համառությամբ պայքարի» և չի ենթադրվում ոչ մի խաբեբայություն Հակոբի կողմից:

▣ **«որոնցն է որդեգրութիւնը որպես որդիներ»** Հին Կտակարանում «որդիներ» բառի ՀՈԳՆԱԿԻՆ սովորաբար վերաբերում էր հրեշտակներին (հմմտ. Հոբ 1:6; 2:1; 38:7; Դան. 3:25; Սաղ. 29:1; 89:6-7), իսկ ԵԶԱԿԻՆ վերաբերում էր:

1. Իսրայելի թագավոր (հմմտ. II Թագ. 7:14)
2. իսրայել ազգը (հմմտ. Ել. 4:22,23; 2 Օրին. 14:1; Ովսիա 11:1)
3. Մեսիան (հմմտ. Սաղ. 2:7)
4. այն կարող է վերաբերվել մարդկանց (հմմտ. 2 Օրին. 32:5; Սաղ. 73:15; Եզ. 2:1; Ովս. 1:10. Ծննդ. 6:2 անորոշ է, այն կարող է ունենալ երկու մեկնություն): Նոր Կտարականում այն վերաբերում է մեկին, ով պատկանում է Աստծո ընտանիքին:

Փրկությունը նկարագրելու համար Պողոսն օգտագործում էր «որդեգրություն» տերմին փոխաբերությունը, իսկ Պետրոսն ու Հովհաննեսը՝ «վերստին ծնունդ» արտահայտությունը: Սրանք երկուսն էլ ընտանեկան փոխաբերություններ են: Այն հրեական չէ, այլ հռոմեական փոխաբերություն է: Որդեգրությունը շատ թանկարժեք և ժամանակատար իրավական գործընթաց է: Մեկ անգամ որդեգրված մարդը համարվում էր նոր անձ, և նրան որդեգրած հայրը չէր կարող օրինականորեն հրաժարվել կամ սպանել նրան:

▣ **«փառքը»** Այս բառի հին եբրայերեն արմատը նշանակում էր «լինել ծանր», որը դարձավ փոխաբերություն այն ամենի համար ինչը թանկ էր գնահատվում: Այստեղ այն վերաբերում է (1) Աստված հայտնում է Իրեն Սինա լեռան վրա (հմմտ. Ելից 19:18-19); կամ (2) փառքը ամպի տեսքով (*Shekinah*) առաջնորդեց իսրայելացիներին անապատում թափառելու ժամանակ (հմմտ. Ելից 40:34-38): ՅԵՀՈՎԱՆ Իրեն հայտնեց եզակի կերպով Իսրայելին: ՅԵՀՈՎԱ-յի ներկայությունը նաև նշանակում էր Նրա փառքը (հմմտ. I Kgs. 8:10-11; Եզ. 1:28): Տես հատուկ թեմա 3:23.

▣ **«ուխտերը»** Հին հունարեն ձեռագրերում P[46], B, և D «ուխտ» բառը օգտագործված է ԵԶԱԿԻ ԹՎՈՎ: Ինչևէ, ՀՈԳՆԱԿԻ ԹՎՈՎ այն հանդես է գալիս MSS ℵ, C, և մի քանի հին լատինական ձեռագրերում, Վուլգատում և Ղպտի տարբերակներում: UBS[4] կազմողները ՀՈԳՆԱԿԻ ԹՎԻ տարբերակը գնահատում են որպես «B» կատեգորիա (գրեթե հուսալի): Հին Կտակարանում այս բառը ոչ մի տեղ չի հանդիպում ՀՈԳՆԱԿԻ ԹՎՈՎ: Հին Կտակարանում կան մի քանի յուրահատուկ ուխտեր՝ Ադամ, Նոյ, Աբրահամ, Մովսես, և Դավիթ: Քանի որ Օրենքի տալը նշվում է հաջորդում, հավանական է սա վերաբերում է Աբրահամին տրված ուխտին, որը Պողոսի համար հիմնական էր և հիմք հանդիսացող (հմմտ. 4:1-25; Գաղ. 3:16-17) և մի քանի անգամ կրկնվեց (հմմտ. Ծննդ. 12, 15, 17) և նախահայրերից յուրաքանչյուրի հետ կապեց:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՈՒԽՏ**

Հին Կտակարանյան *berith «ուխտ»* տերմինը հեշտ չէ սահմանում տալ: Իրեն համապատասխան ԲԱՅ եբրայերենում չկա: Բոլոր ջանքերը ստուգաբանական սահմանում տալու ոչ համոզիչ եղան: Ինչևէ, ակնհայտ գաղափարի բացառիկ կարևորությունը պարտադրեց գիտնականներին հետազոտել, ուսումնասիրել բառի կիրառությունը՝ դրա ֆունկցիոնալ իմաստը սահմանելու նպատակով:

Ուխտը դա միջոց է , որի օգնությամբ միակ ճշմարիտ Աստվածը փոխհարաբերություն է ստեղծում Իր ստեղծած մարդկության հետ: Ուխտի գաղափարը, պայմանագիրը կամ համաձանությունը կարևոր է աստվածաշնչյան հայտնությունը հասկանալու մեջ: Կոնֆլիկտը, լարվածությունը Աստծո սուվերենության և մարդու ազատ կամքի միջև հստակ երևում է ուխտի գաղափարի մեջ: Որոշ ուխտեր հիմնված են Աստծո կերպարի, գործողությունների և նպատակների վրա:

1. ինքնին արարչագործությունը (հմմտ. Ծննդ. 1-2)
2. Աբրահամի կանչը (հմմտ. Ծննդ. 12)
3. ուխտը Աբրահամի հետ (հմմտ. Ծննդ. 15)

4. կենդանի պահելը և խոստումը Նոյին (հմմտ. Ծննդ. 6-9)

Ինչևէ, ուխտի բնությունը պահանջում է արձագանք

1. հավատքով Ադամը պետք է հնազանդվեր Աստծուն և չուտեր Եդեմի պարտեզի մեջտեղի ծառից (հմմտ. Ծննդ. 2)
2. հավատքով Աբրահամը պետք է լքեր իր ընտանիքը, հետևեր Աստծուն և հավատար գալիք սերունդներին (հմմտ. Ծննդ. 12,15)
3. հավատքով Նոյը պետք է կառուցեր հսկայական նավը ջրից հեռու և հավաքեր կենդանիներին (հմմտ. Ծննդ. 6-9)
4. հավատքով Մովսեսը իսրայելացիներին հանեց Եգիպտոսից և ստացավ հատուկ առաջնորդության սկզբունքներ կրոնական և սոցիալական կյանքի համար՝ օրհնությունների և անեծքների խոստումներով (հմմտ. 2 Օրին. 27-28)

Այս նույն լարվածությունը, ներքին կոնֆլիկտը կապված Աստծո և մարդկության փոխհարաբերությունների հետ հանդիպում է նաև «նոր ուխտի» մեջ: Լարվածությունը հստակ կարելի է տեսնել համեմատելով Եզեկ. 18-ը Եզեկ. 36:27-37-ի հետ: Ուրեմն ինչի՞ վրա է հիմնված ուխտը՝ Աստծո շնորհքի գործողությունների թե՞ մարդու արձագանքի պատասխանատվության վրա: Սա էական հարց էր թե Հին և թե Նոր Կտակարաններում: Երկուսի նպատակներն էլ նույնն են: (1) Ծննդ. 3-ում կորցրած հարաբերության վերականգնում և (2) արդար մարդկանց հիմնում, ովքեր արտացոլում են Աստծո կերպարը:

Եր. 31:31-34-ի նոր ուխտը լուծում է այս խնդիրը հեռացնելով մարդու գործերը, որպես Աստծո կողմից ընդունվելու միջոց: Աստծո օրենքը դառնում է ճշմարիտ և ուժեղ ներքին ցանկություն արտաքին կատարման փոխարեն: Բարեպաշտ, արդար մարդկանց նպատակը մնում է նույնը, բայց մեթոդաբանությունը փոխվում է: Մեղավոր մարդկությունը համոզվեց Աստծո պատկերը անդրադարձնելու իր անկարողության մեջ (հմմտ. Հռ. 3:9-18): Խնդիրը ուխտը չէր, այլ մարդու մեղավորությունն ու տկարությունը (հմմտ. Հռ. 7; Գաղ. 3):

Նույն լարվածությունը հինկտակարանյան պայմանական և ոչ պայմանական ուխտերի միջև մնում է նաև Նոր Կտակարանում: Փրկությունը բացարձակ ձրի է Հիսուս Քրիստոսի ավարտած գործի շնորհիվ, բայց այն պահանջում է ապաշխարություն և հավատք (թե սկզբնական քայլի դեպքում և թե շարունակաբար, ամբողջ կյանքի ընթացքում): Սա թե օրինականորեն ձեռք բերած կարգավիճակ է, և թե քրիստոսանման լինելու կանչ, թե Աստծո կողմից ընդունված լինելու հաստատ պնդում, և թե սրբության կյանք վարելու հրաման: Հավատացյալները չեն փրկվում իրենց գործերով, այլ կանչված են հնազանդ կյանք ապրելու (հմմտ. Եփ. 2:8-10): Աստվածահաճո կյանքը փրկության ապացույցն է, և ոչ թե փրկության միջոցը:

◾ **«օրինադրութիւնը եւ պաշտօնը»** Սա կարող է վերաբերել (1) երբ Մովսեսը Օրենքը ստացավ Սինա լեռան վրա (հմմտ. Ելից 19-20) և երբ Դավիթը կատարեց Տաճարի ծառայությունը, պաշտոնը, կամ (2) հնարավոր է խորանը՝ անապատում թափառելու ժամանակ (հմմտ. Ելից 25-40 և Ղևտացոց):

◾ **«եւ խոստումները»** Հին Կտակարանի միջոցով Աստված հայտնել է Իր ապագայի պլանները (հմմտ. 1:2; Գործք 13:32; Տիտոս 1:2; Եբր. 1:1):

Քանի որ «ուխտերը» տեքստում նշվում են և ավելի շուտ, ապա «խոստումները» հավանական է վերաբերում է Մեսիային (այն է, Ծննդ. 3:15; 49:10; 2 Օրին. 18:15,18-19; II Թագ. 7; Սաղ. 16:10,22; 118:22; Ես. 7:14; 9:6; 11:1-5; Դան. 7:13,27; Միքիա 5:2-5ա; Զաք. 2:6-13; 6:12-13; 9:9; 11:12):

Այս խոստումները (ուխտերը) թե անպայմանական են և թե պայմանական: Նրանք անպայմանական էին միայն այն առումով, ինչ Աստված արեց (հմմտ. Ծննդ. 15:12-21), բայց պայմանական մարդու հավատքի և հնազանդության պայմանով (հմմտ. Ծննդ. 15:6 և Հռ. 4): Միայն Իսրայելն ուներ Աստծո հայտնությունը մինչև Քրիստոսի գալը:

**9:5 «հայրերը»** Սա վերաբերում էր Աբրահամին, Իսահակին և Հակոբին, Ծննդ. 12-50 նախահայրերը (հմմտ. Հռ. 11:28; 2 Օրին. 7:8; 10:15):

◾ **«որոնցից է Քրիստոսը մարմնի կողմանէ»** Սա վերաբերվում էր ֆիզիկական ծագումնաբանությանը, սերնդաբանությանը Մեսիայի, Օծյալի, Աստծո հատուկ ընտրյալ ծառային, որը կարողացավ իրականացնել Աստծո խոստումներն ու ծրագրերը (հմմտ. 10:6):

«Քրիստոս» տերմինը հունարեն թարգմանությունն է եբրայերեն «Օծյալ» բառի: Հին Կտակարանում երեք խմբի առաջնորդներն էին օծվում հատուկ սուրբ յուղով (1) Իսրայելի թագավորները, (2) Իսրայելի քահանայապետերը և (3) Իսրայելի մարգարեները: Այն Աստծո նրանց ընտրելու և սպառազինելու խորհրդանիշն էր՝ Իր ծառայության համար: Հիսուսը կատարեց այս բոլոր երեք օծյալ պաշտոնները (հմմտ. Եբր. 1:2-3): Նա Աստծո ամբողջական հայտնությունն է, որովհետև Նա Աստված էր մարմնացած (հմմտ. Ես. 7:14; 9:6; Միքիա 5:2-5ա; Կող. 1:13-20):

**Արևելահայերեն « Քրիստոսը մարմնի կողմանէ, որ է ամենի վերայ Աստուած, օրհնեալ յաւիտեանս»**
**Արևմտահայերեն «Քրիստոս ալ իրենցմէ եկաւ մարմնի կողմանէ, որ ինքը օրհնեալ Աստուած է ամենուն վերայ յաւիտեանս»**

▣

| | |
|---|---|
| NASB | "the Christ according to the flesh, who is over all, God blessed forever" |
| NKJV | "Christ came, who is over all, the eternally blessed God" |
| NRSV | "comes the Messiah, who is over all, God blessed forever" |
| TEV | "and Christ as a human being, belongs to their race. May God, who rules over all, be praised forever" |
| JB | "came Christ who is above all, God for ever blessed" |

Քերականորեն սա կարող էր լինել փառաբանություն Հորը (TEV), բայց տեքստն ասում է ի օգուտ այն բանի, որ Պողոսն այս խոսքերով պնդում է Քրիստոսի աստվածությունը: Պողոսը ոչ հաճախ, բայց և այնպես օգտագործում է «Աստված» բառը (*Theos*) Հիսուսի համար (հմմտ. Գործք 20:28; Տիտոս 2:13; Փիլ. 2:6): Վաղ եկեղեցու բոլոր հայրերը այս տեքստը մեկնաբանել են հենց Հիսուսի վերաբերյալ:

▣ **«որ է ամենի վերայ»** Այս արտահայտությունը նաև կարող էր նկարագրել ինչպես Հոր Աստծուն, այնպես էլ Որդի Աստծուն: Այն արտացոլում է Հիսուսի պնդումը Մաթ. 28:19 և Պողոսի խոսքը Կող. 1:15-20: Այս վեհասքանչ արտահայտությունը ցույց էր տալիս, թե որքան մեծ էր Իսրայելի անմտությունը Հիսուս Նազովրեցուն մերժելու մեջ:

▣ **«յաւիտեանս»** Բառացի նշանակությունը այս բառի համապատասխանում է հունարեն իդիոմատիկ արտահայտությանը « դեպի դարեր» (հմմտ. Ղուկ. 1:33; Հռ. 1:25; 11:36; Գաղ. 1:5; I Տիմ. 1:17): Սա մի քանի կապակցված արտահայտություններից մեկն է (1) «ի դար» (հմմտ. Մաթ. 21:19 {Մարկ. 11:14}; Ղուկ. 1:55; Հովh. 6:5,58; 8:35; 12:34; 12:8; 14:16; II Կոր. 9:9) կամ «դարերից դար» (հմմտ. Եփ. 3:21): Թվում է, թե տարբերություն չկա այս իդիոմաների միջև, որ նշանակում են «հավիտյան»: «Դարեր» տերմինը կարող է լինել ՀՈԳՆԱԿԻ ԹՎՈՎ պատկերավոր իմաստով ռաբինական քերականական կառուցվածքի համաձայն, որը կոչվում է «մեծափառության հոգնակիությունը» կամ այն կարող է վերաբերել մի քանի «դար, ժամանակ, դարաշրջան» գաղափարների, հրեական իմաստով «մաքրման կամ անմեղության շրջան», «անօրենության դար», «գալիք դարաշրջան» կամ « արդարության դար»:

▣ **«ամէն»** Տես Հատուկ Թեմա 1:25.

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 9: 6-13**

[6]Բայց ոչ իբր թէ Աստուծոյ խօսքը գետինն է ընկել. որովհետեւ ոչ թէ ամենքը որ Իսրայէլիցն են՝
նորանք են Իսրայէլը: [7] Եւ ոչ թէ նորանք որովհետեւ Աբրահամի սերունդ են, ամենքը որդիք են. այլ
Իսահակով քեզ համար սերունդ պիտի կոչուի: [8] Այսինքն՝ ոչ թէ մարմնի որդիք են Աստուծոյ որդիք.
այլ խոստման որդիք են սերունդ համարվում: [9] Որովհետեւ խոստման խօսքը սա է. թէ Այս
ժամանակումը կգամ եւ Սառային որդի կլինի: [10] Եւ ոչ միայն այսքան. բայց Ռեբեկան էլ որ մէկից
յղացաւ՝ մեր հայր Իսահակիցը. [11] Քանզի նորանք տակաւին չծնուած, եւ մի բարի կամ չար բան էլ

չգործած, որպէս զի ընտրութեան պէս Աստուծոյ նախասահմանութիւնը հաստատ մնայ, [12] Ոչ թէ գործերիցն՝ այլ կանչողիցը, ասուեցաւ նորան. [13] Թէ մեծը պիտի ծառայէ փոքրին. ինչպէս գրուած է, Յակոբին սիրեցի, եւ Եսաւին ատեցի:

NASB (UPDATED) TEXT: 9:6-13

[6]But it is not as though the word of God has failed. For they are not all Israel who are *descended* from Israel; [7]nor are they all children because they are Abraham's descendants, but: "THROUGH ISAAC YOUR DESCENDANTS WILL BE NAMED." [8]That is, it is not the children of the flesh who are children of God, but the children of the promise are regarded as descendants. [9]For this is the word of promise: "AT THIS TIME I WILL COME, AND SARAH SHALL HAVE A SON." [10]And not only this, but there was Rebekah also, when she had conceived *twins* by one man, our father Isaac; [11]for though *the twins* were not yet born and had not done anything good or bad, so that God's purpose according to *His* choice would stand, not because of works but because of Him who calls, [12]it was said to her, "THE OLDER WILL SERVE THE YOUNGER." [13]Just as it is written, "JACOB I LOVED, BUT ESAU I HATED."

**9:6 «Աստուծոյ խօսքը»** Այս կոնտեքստում այս արտահայտությունը վերաբերում է Հին Կտակարանի խոստումներին: Աստծո խոստումները վստահելի են և հաստատ (հմմտ. Թվ. 23:19; Ես. 40:8; 55:11; 59:21):

**Արևելահայերեն «գետինն է ընկել»**

**Արևմտահայերեն «երբեք գետին ինկած չէ»**

▣

NASB, NRSV,
TEV, JB "has failed"
NKJV "has taken no effect"

Այս տերմինը (*ekpiptō*) օգտագործված է Սեպտուագինտի մեջ մի քանի անգամ ինչ որ մի բանի (հմմտ. Ես. 6:13) կամ ինչ որ մեկի (հմմտ. Ես. 14:12) անկում կամ ընկնելը: Այստեղ ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է, որը նշանակում է ընթացիկ վիճակ երկարատև արդյունքներով (բայց այն ժխտվում է): Աստծո խոսքի հաստատ և վստահելի լինելու համար, նայեք ծանուցումը վերևում:

**Արևելահայերեն «որովհետեւ ոչ թէ ամենքը որ Իսրայէլիցն են՝ նորանք են Իսրայէլը»**

**Արևմտահայերեն « քանզի ոչ թէ ամէն անոնք որ Իսրայէլէն են՝ Իսրայէլացի են»**

▣

| | |
|---|---|
| NASB | "For they are not all Israel who are descended from Israel" |
| NKJV | "For they are not all Israel who are of Israel" |
| NRSV | "For not all Israelites truly belong to Israel" |
| TEV | "For not all the people of Israel are the people of God" |
| JB | "Not all those who descend from Israel are Israel" |

Այս պարադոքսալ պնդման իմաստն այն է, որ դրա հիմքում ընկած են մի քանի տարբեր աստվածաշնչյան իմաստներ «Իսրայել» բառի (1) Իսրայել, որպես Հակոբի սերունդներ (հմմտ. Ծննդ. 32:22-32); (2) Իսրայել, որպես Աստծո ընտրյալ ժողովուրդ (հմմտ. TEV); կամ (3) հոգևոր Իսրայել, որպես եկեղեցի (հմմտ. Գաղ. 6:16; I Պետ. 2:8,9; Հայտ. 1:6) ի տարբերություն իսկական բուն Իսրայելի (հմմտ. հհ. 3-6): Նույնիսկ հրեաները երբեք ուղիղ չէին Աստծո հետ իրենց ծագումնաբանության պատճառով (հմմտ. հ. 7), բայց շնորհիվ իրենց հավատքի (հմմտ. 2:28-29; 4:1; Հովհ. 8:31-59; Գաղ. 3:7-9; 4:23): Դա հավատացյալ մնացորդն էր, որ ստացավ Աստծո խոստումներն ու քայլեց համաձայն դրանց՝ հավատքով (հմմտ. 9:27; 11:5):

Համար 6-ը սկսում է մի շարք ենթադրյալ մերժումներ (հմմտ. 9:14,19,30; 11:1): Սա շարունակում է Պողոսի քննադատական ձևը: Ճշմարտությունը փոխանցում է ենթադրյալ հակառակորդին դիմելով (հմմտ. Մաղ. 1:2,6,7 [երկու անգամ],12,13; 2:14,17 [երկու անգամ]; 3:7,13,14):

**9:7** Այս համարի երկրորդ կեսը մեջբերում է Ծննդոց 21:12-ից: Աբրահամի ոչ բոլոր զավակներն էին Աստծո ուխտի խոստման զավակները (հմմտ. Ծննդ. 12:1-3; 15:1-11; 17:1-21; 18:1-15; Գաղ. 4:23): Սա ցույց է տալիս տարբերությունը Իսմայելի և Իսահակի միջև հհ. 8-9, և Հակոբի և Եսավի հհ. 10-11:

**9:8** Այստեղ Պողոսը օգտագործում է «մարմին» տերմինը վերաբերում է ազգային ծագմանը (հմմտ. 1:3; 4:1; 9:3,5): Նա հակադրում է Աբրահամի բիոլոգիական զավակներին (հրեաները 9:3) հոգևոր զավակների հետ (խոստման զավակները) Աբրահամի (նրանք ովքեր կվստահեն Աստծո խոստացյալ Մեսիային հավատքով): Սա նույն հակադրությունը չէ ինչ 8:4-11-ում, որտեղ համեմատվում է մարդկությունը ընկած և փրկված:

**9:9** Այս մեջբերումը Ծննդոց 18:10,14-ից է: Խոստացյալ երեխան («սերունդը») կծնվի Սառայից Աստծո նախաձեռնությամբ: Սա իվերջո գագաթնակետին կհասնի Մեսիան ծնվելու ժամանակ: Իսահակը հատուկ իրականացումն էր Աստծո խոստման Ծննդ. 12:1-3, որը Աբրահամին տրվեց տասներեք տարի առաջ:

**9:10** Աբրահամի, Իսահակի և Հակոբի կանայք ամուլ էին, նրանք չէին կարողանում հղիանալ: Նրանց երեխա ունենալու անկարողությունը Աստծո կերպերից մեկն էր, ցույց տալու համար, որ Նա էր հսկում ուխտի խոստումները, Մեսիական սերնդաբանությունը:

Մյուս կերպն այն էր, որ ճշմարիտ մեսիական շառավիղը երբեք չի փոխանցվում նախահայրերի ավագ որդու միջոցով (որը մշակույթորեն ընդունված էր)։ Բանալին Աստծո ընտրությունն է (հմմտ. հհ. 11-12)։

**9:11-12** Համարներ 11-12-ը հունարենում մեկ նախադասություն են։ Այս միտքը վերցված է Ծննդ. 25:19-34-ից։ Այս օրինակը օգտագործվում է ապացուցելու համար, որ Աստծո ընտրությունը (հմմտ. հ. 16), ոչ (1) մարդկային ծագումով է և ոչ էլ (2) մարդկային վաստակով կամ նվաճումներով է (հմմտ. հ. 16)։ Սա ավետարանի սիրտն է, նոր ուխտը (հմմտ. Եր. 31:31-34; Եզեկ. 36:22-36)։ Ինչևէ, պետք է հիշել, որ Աստծո ընտրությունը նշանակում էր ոչ թե հեռացնել այլ ընդհակառակը՝ միավորել։ Մեսիան կգա ընտրված սերնդից, բայց Նա կգա բոլորի համար (ով կհավատա, հմմտ. գլուխ 10)։

**9:11 «նպատակ»** Սա բարդ բառ է, կազմված *pro* և *tithēmi*, և ունի մի քանի իմաստային նշանակություններ;

1. Հռ. 3:25
   ա. բացահայտ, հրապարակավ բացատրել
   բ. ողորմության, կարեկցանքի ընծա
2. նախօրոք պլանավորել
   ա. Պողոս, Հռ. 1:13
   բ. Աստված, Եփ. 1:9

Տվյալ տեքստում օգտագործված ԳՈՅԱԿԱՆ (*prothesis*) ձևը նշանակում է « առաջ դնել

1. մուտեցում տաճարում առաջարկած հացի նկատմամբ, Մաթ. 12:4; Մարկ. 2:26; Ղուկ. 6:4
2. մոտեցում Աստծո նախասահմանած, փրկարար նպատակի հանդեպ, Հռ. 8:28; 9:11; Եփ. 1:5,11; 3:10; II Տիմ. 1:9; 3:10

Պողոսն օգտագործում է մի քանի բարդ տերմիններ *pro* (նախքան, շատ առաջ, վաղուց) ՆԱԽԴԻՐԻ հետ գլուխ 8 և 9 Հռ. և Եփ. 1-ում։

1. *proginōskō* (բայց գիտենք,նախապես իմանալ), Հռ. 8:29
2. *proorizō* (առաջուց դրեց, որոշեց), Հռ. 8:29 (Եփ. 1:5,11), 30 (Եփ. 1:9)
3. *prothesis* (նախասահմանության նպատակը), Հռ. 9:11
4. *proetoimazō* (առաջուց պատրաստեց), Հռ. 9:23
5. *prolegō* (առաջուց ասաց), Հռ. 9:29
6. *proelpizō* (առաջուց հուսացել ենք), Եփ. 1:12)

**9:12** Այս մեջբերումը Ծննդ. 25:23-ի մարգարեությունից է կապված Եսավի և Հակոբի հետ: Սա ցույց է տալիս, որ Ռեբեկան և Հակոբը մարգարեությունից դուրս գործեցին, ոչ անձնական շահից ելնելով խաբեցին Իսահակին՝ օրհնությունը ստանալու համար:

**9:13 «եւ Եսաւին ատեցի»** Սա մեջբերում է Մաղ. 1:2-3: «Ատել» բառը հին եբրայերեն արտահայտություն է, որը նշանակում է համեմատություն: Անգլերենում այն ունի շատ խիստ իմաստ, բայց համեմատեք Ծննդ. 29:31-33; 2 Օրին. 21:15; Մաք. 10:37-38; Ղուկաս 14:26; և Հովհ.12:25: «Սիրել» և «ատել» մարդակերպային տերմինները կապված չեն Աստծո զգացմունքների հետ դեպի այս անհատները, այլ Նրա վճռականությունը իրականացնելու մեսիական սերնդաբանությունը և կատարելու Իր խոստումները: Հակոբը խոստացված որդին էր հիմնված Ծննդ. 25:23-ի մարգարեության վրա: Եսավ, Մաղ. 1:2-3-ում, վերաբերվում է Եդովմի ցեղին (Եսավի սերունդը):

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 9: 14-18**
[14] Հիմա ի՞նչ ասենք. մի՞թէ Աստուծոյ մօտ անիրաւութիւն կայ. քաւ լիցի: [15] Որովհետեւ Մովսէսին
ասում է. Կողորմիմ ում որ կողորմիմ, եւ կը գթամ ում որ կգթամ: [16] Ապա ուրեմն ոչ կամեցողից է, եւ
ոչ էլ վազողիցը, այլ Աստուածանից որ ողորմում է: [17] Որովհետեւ գիրքն ասում է Փարաւօնին, թէ հէնց
նորա համար զրզռեցի քեզ որ քեզանում ցոյց տամ իմ զօրութիւնը եւ իմ անունն ամեն երկրի մէջ
պատմուի: [18] Ապա ուրեմն ում որ կամենում է ողորմում է. եւ ում կամենում է խստացնում է:

**NASB (UPDATED) TEXT: 9:14-18**

[14]**What shall we say then? There is no injustice with God, is there? May it never be!** [15]**For He says to Moses, "I WILL HAVE MERCY ON WHOM I HAVE MERCY, AND I WILL HAVE COMPASSION ON WHOM I HAVE COMPASSION."** [16]**So then it *does* not *depend* on the man who wills or the man who runs, but on God who has mercy.** [17]**For the Scripture says to Pharaoh, "FOR THIS VERY PURPOSE I RAISED YOU UP, TO DEMONSTRATE MY POWER IN YOU, AND THAT MY NAME MIGHT BE PROCLAIMED THROUGHOUT THE WHOLE EARTH."** [18]**So then He has mercy on whom He desires, and He hardens whom He desires.**

**9:14 «Հիմա ի՞նչ ասենք»** Պողոսը հաճախ օգտագործում էր քննադատության այս ձևը (հմմտ. 3:5; 4:1; 6:1; 7:7; 8:31; 9:14,19,30):

▣ **«մի՞թէ Աստուծոյ մօտ անիրաւութիւն կայ»** Ինչպես կարող է Աստված մարդկանց պատասխանատու պահել, եթե Աստծո գերիշխանությունը վճռորոշ գործոն է (հմմտ. h. 19): Սա ընտրության առեղծվածն է: Այս կոնտեքստում բանալի պահը հանդիսանում է այն, որ Աստված ազատ է մարդկության հետ անելու այն, ինչ կամենում է (ապստամբ մարդ), ինչևէ, Աստծո գերիշխանությունը արտահայտվում է ողորմության մեջ (տես ծանուցում h. 15), և ոչ թե բռնի ուժի մեջ:

Նաև հարկ է նշել, որ Աստծո գերիշխան ընտրությունը չի հիմնված մարդու ապագա ընտրությունների և գործողությունների վրա: Եթե դա այդպես լիներ, ապա Աստծո ընտրությունը կհիմնվեր այն բանի վրա, թե ինչպես կվարվեին մարդիկ և ինչ կընտրեին, նրանց արժանիքների և բարեգործության վրա (հմմտ. հ. 16; I Պետ. 1:2): Հենց սրանում էլ հանդիսանում է ազգային հրեական հայացքը արդարության հասնելու ձգտումը (հմմտ. 2 Օրին. 27-28; Հոբ և Սաղ. 73): Սակայն Աստված ընտրում է օրհնել անարժանին հավատքի միջոցով (և ոչ թե գործերի): Աստված ամեն բան գիտի բայց Նա ընտրել է սահմանափակել Իր ընտրությունները (1) ողորմության և (2) խոստումի մեջ: Այո մարդու արձագանքը Աստծո կանչին անհրաժեշտ պայման է, բայց դրան հետևում է և հաստատում Աստծո ընտրությունն իր կյանքում:

▣ **«քաւ լիցի»** Այս ձևը հազվադեպ է օգտագործվում ԸՂՁԱԿԱՆ ԵՂԱՆԱԿՈՎ, որն հաճախ օգտագործվում էր Պողոսի կողմից որպես սուր քննադատություն ի պատասխան իր ենթադրյալ հակառակորդի հարցերին (հմմտ. 3:4,6,31; 6:2,15; 7:7,13; 11:1,11 նաև I Կոր. 6:15; Գաղ. 2:17; 3:21; 6:14):

**9:15** Սա մեջբերում է Ելից 33:19: Աստված ազատ է գործելու համաձայն Իր սեփական փրկարար նպատակների: Նույնիսկ Մովսեսը չժառանգեց Աստծո օրհնությունը (հմմտ. Ել. 33:20): Բանալին այն է, որ Իր ընտրությունները ողորմության մեջ է (հմմտ. հհ. 16,18-23; 11:30,31,32):

**9:15-16 «ողորմութւն»** Այս հունարեն բառը (*eleos*) օգտագործվում է Սեպտուագինտի մեջ (LXX) թարգմանելու եբրայերեն *hesed* տերմինը, որը նշանակում է «կայուն, անսասան, ուխտի հավատարմություն, օրհնապահություն» (հմմտ. հհ. 15,16,18,23; 11:30,31,32): Աստծո ողորմությունն ու ընտրությունը հանդես է գալիս հոգնակի, համագործակցող, (հրեաներ [Իսահակ], և ոչ թե արաբներ [Իսմայիլ]; Իսրայել [Հակոբ], ոչ թե Եդովմ [Եսավ], այլ հավատացյալ հրեաներ և հավատացյալ հեթանոսներ, հմմտ. հ. 24) ինչպես նաև անհատներ: Այս ճշմարտությունը բանալիներից մեկն է՝ նախասահմանության վարդապետության գաղտնիքը բացելու համար (տիեզերական փրկագնում/փրկություն): Մյուս բանալին 9-11-րդ գլուխների կոնտեքստում է գտնվում, այն է Աստծո անփոփոխ առանձնահատկությունը՝ ողորմությունը (հմմտ. 9:15,16,18,23; 11:30,31,32), և ոչ թե մարդու գործերն ու վարքագիծը: վերջին հաշվով ողորմությունը ընտրության միջոցով կհասնի բոլոր նրանց, ովքեր հավատում են Քրիստոսին: մեկն է, որ բաց է անում հավատքի դուռը բոլորի համար (հմմտ. 5:18-19):

**9:17-18** Համար 17-ը մեջբերում է Ելից 9:16; համար 18-ը եզրահանգումն է, դուրս բերված մեջբերումից: Ելից. 8:15,32; 9:34 ասվում է, որ փարավոնը խստացրեց իր սիրտը: Ելից. 4:21; 7:3;

9:12; 10:20,27; 11:10 ասվում է, որ Աստված խստացրեց նրա սիրտը: Այս օրինակը ցույց է տալիս Աստծո գերիշխանությունը (հմմտ. հ. 18): Փարավոնը պատասխանատու է իր ընտրությունների համար: Աստված օգտագործում է փարավոնի ամբարտավան, համառ բնավորությունը իրականացնելու Իր կամքը Իսրայելի համար (հմմտ. հ. 18):

Նաև ուշադրություն դարձրեք այն բանիհն, որ Աստծո գործողությունները փարավոնի հետ փրկարար էին և հանդիսանում էին ընդհանուր ծրագրի մասը: Նրանց նպատակն էր.

1. ցույց տալ Աստծո զորությունը (ի տարբերություն եգիպտական չաստվածների)
2. բացահայտել Աստծուն Եգիպտոսին, և ըստ իմաստի ամբողջ աշխարհին (հմմտ. հ. 17).

Արևմտյան (ամերիկյան) մտածելակերպը մեծացնում է անհատի դերը, բայց արևելյան մտածելակերպը կենտրոնանում է մարդկանց համայնքի կարիքի վրա, որպես մեկ ամբողջ: Աստված օգտագործեց փարավոնին հայտնելու Իրեն կարիքավոր աշխարհին: Նա նույնը կանի անհավատ Իսրայելի հետ (հմմտ. գլուխ 11): Այս կոնտեքստում մի մարդու իրավունքները նվազում են ամբողջի կարիքների լույսի ներքո: Հիշեք հինկտակարանյան օրինակները:

1. Հոբի առաջին երեխաները մահանում են սատանայի հետ ունեցած Աստծո քննարկման պատճառով (հմմտ. Հոբ 1-2)
2. իսրայելական զինվորները մեռնում են Աքարի մեղքի պատճառով (հմմտ. Հեսու 7)
3. Դավիթի առաջին երեխան Բերսաբեից ծնված մահանում է Դավիթի մեղքի պատճառով (հմմտ. II Թագ. 12:15):

Մեզ բոլորիս վրա որոշակի կերպով ազդում են ուրիշների կատարած ընտրությունները: Այսպիսի փոխկապակցում կարելի է տեսնել Նոր Կտակարանում Հռ. 5:12-21:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 9: 19-26**

[19] Ապա ինձ կասես, Էլ ի՞նչու է մեղադրում. նորա կամքին ո՞վ հակառակ կկենայ: [20] Բայց դու ո՞վ ես,
մարդ, որ Աստուծուն դէմ պատասխան ես տալիս. մի՞թէ ստեղծուածը կասէ իր Ստեղծողին՝ թէ
Ի՞նչու այդպէս արիր ինձ: [21] Մի՞թե բրուտը իշխանութիւն չունի հողի վերայ, որ միեւնոյն
զանգուածիցը շինէ մէկը պատիւի անօթ, եւ միւսը անարգութեան: [22] Եւ ի՞նչ եթէ Աստուած՝ կամենում
էր ցոյց տալ բարկութիւնը եւ յայտնել իր զօրութիւնը, շատ երկայնմտութեամբ համբերեց
բարկութեան անօթներին՝ որ կորուստի համար պատրաստուած էին. [23] Եւ որ յայտնի ցոյց տայ իր
փառքի մեծութիւնը՝ ողորմութեան անօթների վերայ, որոնց առաջուց պատրաստեց փառքի համար.
[24] Որ մեզ էլ կանչեց, ոչ թէ միայն Հրէաներից, այլ հեթանոսներից էլ. [25] Ինչպէս որ Ովսէէի գրքումն էլ
ասում է. Այն որ իմ ժողովուրդը չէ, ինձ ժողովուրդ կկանչեմ. եւ չսիրուածը սիրուած. [26] Եւ կլինի որ
այնտեղ որ ասուեցաւ նորանց՝ թէ դուք իմ ժողովուրդ չէք, այնտեղ նորանք կենդանի Աստուծոյ որդիք
կկոչուին:

**NASB (UPDATED) TEXT: 9:19-26**

[19]You will say to me then, "Why does He still find fault? For who resists His will?" [20]On the contrary, who are you, O man, who answers back to God? The thing molded will not say to the molder, "Why did you make me like this," will it? [21]Or does not the potter have a right over the clay, to make from the same

lump one vessel for honorable use and another for common use? [22]What if God, although willing to demonstrate His wrath and to make His power known, endured with much patience vessels of wrath prepared for destruction? [23]And *He did so* to make known the riches of His glory upon vessels of mercy, which He prepared beforehand for glory, [24]*even* us, whom He also called, not from among Jews only, but also from among Gentiles. [25]As He says also in Hosea, "I WILL CALL THOSE WHO WERE NOT MY PEOPLE, 'MY PEOPLE,' AND HER WHO WAS NOT BELOVED, 'BELOVED.'" "[26]AND IT SHALL BE THAT IN THE PLACE WHERE IT WAS SAID TO THEM, 'YOU ARE NOT MY PEOPLE,' THERE THEY SHALL BE CALLED SONS OF THE LIVING GOD."

**9:19 «նրա կամքին ո՞վ հակառակ կկենայ »** Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է, որն ընդգծում էր կատարված փաստ, շարունակվող հետևանքներով (հմմտ. II Մնաց. 20:6; Հոբ 9:12; Սաղ. 135:6; Դան. 4:35): Սուր քննադատությունը շարունակվում է: Տրամաբանական տեսանկյունից, Պողոսի հարցերին հետևելու լավագույն միջոցը՝ ուրվագծել և հասկանալ Պողոսի մտքերը: Աստծո կամքը պետք է նայել երկու մակարդակներով: Առաջին, Նրա քավչարար ծրագրերը բոլոր մեղավոր մարդկանց համար (հմմտ. Ծնն. 3:15): Այս ծրագրի մեջ մարդու ընտրությունը ոչ մի ազդեցություն չի գործում: Բայց երկրորդ մակարդակում, Աստված մարդուն ընտրում է և գործածում որպես գործիք (հմմտ. Ել. 3:7-9 և 10): Մարդիկ ընտրված են իրականացնելու Իր ծրագրերը (թե դրական՝ Մովսես և թե բացասական՝ փարավոն):

**9:20-21** Այս կերպարը վերցված է Ես. 29:16; 45:9-13; 64:8 և Եր. 18:1-12: ԵՀՈՎԱ-ի համար օգտագործված փոխաբերությունը որպես բրուտ հաճախ օգտագործվում էր Աստծո համար որպես արարիչ, իսկ մարդուն որպես կավ (հմմտ. Ծնն. 2:7): Պողոսն առաջ է քաշում արարչի գերիշխան լինելու փաստը, օգտագործելով ևս երեք հարց—առաջին երկուսը հ. 20-ում, իսկ երրորդը հ. 21: Վերջին հարցը մեզ բերում է Աստծո դրական ընտրությանը՝ Մովսես իսկ բացասականը փարավոն: Այս նույն հակադրությունը երևում է (1) Իսահակ – Իսմայել, հհ. 8-9; (2) Հակոբ - Եսավ, հհ. 10-12; և (3) Իսրայել ցեղը և Եդովմի ցեղը հ. 13: Այս նույն նմանությունը զարգացված է ցույց տալու Պողոսի ժամանակակից իրավիճակը հավատացյալ և անհավատ հրեաների: Աստծո դրական ընտրությունը վերջիվերջո արտահայտվում է հավատացյալ հեթանոսների ներգրավվման մեջ (հհ. 24-29 և 30-33):

**9:22 «եթէ»** Սա ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է, որը ենթադրվում է որպես ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակների համար, բայց ոչ քերականական եզրակացությամբ: Հունարենում 22-24հհ. մեկ նախադասություն են: Համար 22-ը արտահայտում է Աստծո փրկարար կերպարը: Աստված արդարության Աստված է: Նա հաշվետու է պահում մարդկությանը իրենց կատարած գործերի համար: Բայց Նա նաև ողորմության Աստված է: Բոլոր մարդիկ արժանի են մահվան: Արդարությունը բարի լուր չէ: Աստծո կերպարում հիմնականում ողորմությունն է, և ոչ թե բարկությունը (հմմտ. 2 Օրին.5:9-10; 7:9; Ովս. 11:8-9): Նրա ընտրությունները փրկության համար են (հմմտ. Եզ. 36:22-33): Նա երկայնամիտ է և համբերատար

մեղավոր մարդկության հանդեպ (հմմտ. Եզ. 18): Նա նույնիսկ չարին է օգտագործում Իր փրկարար նպատակների համար (օր. սատանա, փարավոն, Ենդորի կախարդը, Ասորեստան, Նաբուգոդոնոսոր, Կյուրոս, իսկ գլուխ 11, անհավատ Իսրայել):

**Արևելահայերեն «կամենում էր ցույց տալ իր բարկութիւնը»**
**Արևմտահայերեն «իր բարկութիւնը ցուցնելէ առաջ»**

▣
**NASB "willing to demonstrate His wrath"**
**NKJV "wanting to show His wrath"**
**NRSV "desiring to show his wrath"**
**TEV "wanted to show his anger"**
**JB "is ready to show his anger"**

Աստված ցույց է տալիս Իր բարկությունը, որ բոլորին հայտնի անի Իր զորությունը (հմմտ. հ. 22) և Իր փառքի ճոխությունը (հմմտ. հ. 23): Աստծո գործողությունները միշտ ունեն փրկարար նպատակներ (բացի *Gehenna*, որը վերջնական մեկուսացման վայրն է՝ համառ անհավատության և մեղքի):

▣ **«բարկութեան անօթներ»** Այս տերմինը շարունակում է Պողոսի փոխաբերությունը հողի/կավի մասին հh. 20 և 21: Ակնհայտ է, որ դրանք վերաբերում են անհավատ մարդկանց, որոնց Աստված օգտագործում է հետագա գործողությունների համար փրկության Իր ծրագիրն իրականացնելու համար:

**Արևելահայերեն «պատրաստուած էին»**
**Արևմտահայերեն «եղած են»**

▣
**NASB, NKJV "prepared"**
**NRSV "are made"**
**TEV "doomed"**
**NJB "designed"**

Այս ձևը ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿԻ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է: Պապիրուսի տեքստերում այս բառն օգտագործում էին նկարագրելու համար ինչ-որ բանի պատրաստում իր նպատակի վերջնական և ամբողջական կատարման համար: Այստամբ անհավատությունը կունենա իր դատաստանի օրը և հետևանքները: Ինչևէ, Աստված ընտրում է օգտագործել անհավատներին իրականացնելու Իր ավելի լայն, ներգարվվող փրկարար նպատակները:

Մ. Ռ. Վինսենթը «Բառային սերտողություններ» հատ.2, գրքում ասում է. M. R. Vincent, *Word Studies*, «Աստծո կողմից չի եղել սահմանված կործանման համար, բայց ածականային իմաստով,

*պատրաստ*, *հասունացած* կործանման համար, և նշանակում է փաստացի իրավիճակ ներկայում, ձևավորված նախապես, բայց ոչ մի ակնարկ չի տալիս, թե ինչպես է այդ վիճակը ձևավորվել» (էջ 716):

▣ **«կորուստ»** Տես հատուկ թեմա 3:3.

**9:23 «Եւ որ յայտնի ցոյց տայ իր փառքի մեծութիւնը»** Այս նույն ճշմարտությունը հաստատված է Հռ. 8:29-30 և Եփ.1:4,11: Այս գլուխը Նոր Կտակարանում Աստծո գերիշխանության ամենաուժեղ արտահայտություննն է: Այն որ Աստված պատասխանատու է Իր ամբողջ արարչագործության և դրա փրկագնման համար չի կարող վեճի առարկա լինել: Այս մեծ ճշմարտությունը երբեք չպետք է փոքրացնել և ոչ էլ կողքով անցնել: Ինչևէ, պետք է հավասարակշռությունը պահվի ուխտի Աստծո ընտրության որպես միջոց մարդ արարածի հետ հաղորդակցության, Իր պատկերով ստեղծված. Անշուշտ ճիշտ է, որ որոշ հինկտակարանային ուխտեր, ինչպես Ծննդ. 9:8-17 և 15:12-21, անպայմանական են և ընդհանրապես կախված չեն մարդու արձագանքից, բայց մյուս ուխտերը պայմանական են՝ կախված մարդու արձագանքից (օր. Եդեմ, Նոյ, Մովսես, Դավիթ): Աստված Իր ստեղծագործության համար ունի փրկության ծրագիր և ոչ մի մարդ չի կարող ազդել այս ծրագրի վրա: Աստծո կամքով որոշ անհատներ մասնակցում են Իր ծրագրերի իրականացմանը: Մասնակցության այս հնարավորության մեջ կա աստվածաբանական ճնշում գերիշխանության (Հռ. 9) և մարդու ազատ կամքի միջև (Հռ. 10):

Ճիշտ չէ վերցնել աստվածաշնչյան մեկ համար և անտեսել մյուսները: Վարդապետությունների միջև կա լարվածություն, որովհետև արևելյան մտածելակերպ ունեցող մարդիկ ճշմարտությունը ներկայացնում են դիալեկտիկական կամ լարվածությամբ լցված զույգեր: Ցանկացած վարդապետություն պետք է փոխկապակցված լինի մյուս վարդապետությունների հետ: Ճշմարտությունը դա ճշմարտությունների մոզայկա է:

Անշուշտ այստեղ խորհուրդ կա: Պողոսը ոչ մի տրամաբանական եզրակացության չի հանգում, ոչ անհավատների հետ կապված (*kataptizō*) բարկության համար (հ. 22), և ոչ էլ հավատացյալների՝ պատրաստված (*proetoimazō*) փառքի համար (հ. 23): Արդյոք Աստծո ընտրությունը միակ գործոնն է, թե Աստծո ընտրությունը հիմնված է բոլորին ողորմելու վրա, սակայն որոշները մերժում են Նրա առաջարկը: Արդյոք մարդկությունը որևէ մաս ունի իրենց ապագայի հետ կապված (հմմտ. 9:30-10:21): Երկու կողմերում էլ կան չափազանցություններ (Օգոստինոս – Փելագիոս): Ինձ համար, ուխտի գաղափարը միավորում է նրանց՝ շեշտը դնելով Աստծո վրա: Մարդը կարող է միայն արձագանքել Աստծո նախապատվություններին: Բայց ինձ համար, Աստված քմահաճ և փոփոխամիտ չէ, այլ ողորմած: Նա հասնում է Իր պատկերով ստեղծված բոլոր մարդկանց: Ես չեմ համակերպվում այս կոնտեքստի հետ: Այն այնքան զորավոր է, սակայն ամեն ինչ սև ու սպիտակով

է հանդես գալիս: Կենտրոնում հրեաների անհավատարմությունն է, որի արդյունքում փրկություն ստացան նաև հեթանոսները: Բայց սա էր միակ տեքստը, որ բացահայտում է Աստծո կերպարը:

- **«փառք»** Տես ծանուցում 3:23.

**9:24** Այս համարը ցույց է տալիս, որ Աստծո խոստման նպատակը ավելի լայն է, քան միայն Իսրայելը որպես ազգ: Աստված Իր ողորմությունն է ցույց տվել մարդկության վրա հիմնված Իր ընտրության վրա: Ծննդ. 3:15-ի խոստումը վերաբերվում է ամբողջ մարդկությանը: Աբրահամի կանչը վերաբերվում է ամբողջ մարդկությանը, Ծննդ. 12:3: Իսրայելի կանչը որպես քահանաների թագավորություն վերաբերվում է ամբողջ մարդկությանը (հմմտ. Ել. 19:5-6): Սա Աստծո խորհուրդն է, որը թաքնված էր, բայց հիմա ամբողջությամբ հայտնված (հմմտ. Եփ. 2:11-3:13):

Պողոսի պնդումը հ. 24-ում կպատկերավորվի մի շարք հինկտակարանյան մեջբերումներով (հհ. 25-29):

1. համար 25, Ովսիա 2:23
2. համար 26, Ովսիա 1:10
3. համար 27, Եսայա 10:22 և/կամ Ովսիա 1:10
4. համար 28, Եսայա 10:23
5. համար 29, Եսայա 1:9

**9:25-26** Կոնտեքստում այս հատվածը վերցված է Սեպտուագինդից (LXX) Ովսե. 2:23 (մի քանի փոփոխություններով) և 1:10, որոնք հասցեագրված էին Իսրայելի հյուսիսային տաս ցեղերին, բայց այստեղ Պողոսը խոսում է հեթանոսների մասին: Սա տիպիկ Նոր Կտակարանի հեղինակների Հին Կտակարանից օգտվելու ձևն է: Նրանք եկեղեցին տեսնում էին որպես Իսրայելին տրված խոստումների իրականացում (հմմտ. II Կոր. 6:16; Տիտոս 2:14; I Պետ. 2:5-9): Այս դեպքում այն վերաբերում է անհավատ Իսրայելին: Եթե Աստված կարողանար վերականգնել կռապաշտ հյուսիսային տաս ցեղերին, Պողոսը սրանում տեսավ Աստծո սիրո և ներման ապացույցը, որ մեկ օր նույնիսկ կռապաշտ հեթանոսները կներգրավվեն փրկվածների մեջ (հեթանոսներ):

## Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 9:27-29

[27] Եսայիան աղաղակում է Իսրայէլի համար. Թէեւ Իսրայէլի որդկանց համարը ծովի աւազին պէս շատ լինի, միայն մնացորդը կփրկուի: [28]Որովհետեւ մի կարճ եւ համառօտ բան կանէ Տէրը արդարութեամբ. Տէրը մի կարճ բան կանէ երկրի վերայ: [29] Եւ ինչպէս որ Եսայիան առաջուց ասեց. Եթէ Սաբաւովթ Տէրը մեզ համար սերունդ չէր թողել, մենք Սոդոմի պէս կլինէինք եւ Գոմորին կնմանէինք:

| NASB (UPDATED) TEXT: 9:27-29 |
| --- |

[27]Isaiah cries out concerning Israel, "THOUGH THE NUMBER OF THE SONS OF ISRAEL BE LIKE THE SAND OF THE SEA, IT IS THE REMNANT THAT WILL BE SAVED; [28]FOR THE LORD WILL EXECUTE HIS WORD ON THE EARTH, THOROUGHLY AND QUICKLY." [29]And just as Isaiah foretold, "UNLESS THE LORD OF SABAOTH HAD LEFT TO US A POSTERITY, WE WOULD HAVE BECOME LIKE SODOM, AND WOULD HAVE RESEMBLED GOMORRAH."

**9:27**
**Արևելահայերեն «Թէեւ»**

**Արևմտահայերեն «Եթէ»**

| | |
|---|---|
| NASB, NKJV, NRSV, NJB | "though" |
| TEV | "even if" |

Այստեղ ԵՐՐՈՐԴ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է (*ean* գումարած ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ), որը նշանակում է հնարավոր գործողություն:

**9:27-28** Սա ոչ ճիշտ մեջբերումն է Սեպտուագինտից (LXX) Ես. 10:22-23: *Textus Receptus* տարբերակը ավելացրեց եզրափակող արտահայտությունը Սեպտուագինտից Ես. 10:23: Բայց այն բացակայում է հին հունարեն ձեռագրերից P[46], ℵ, A, և B, որը ցույց է տալիս, որ այն ավելի ուշ է ավելացվել արտագրողի կողմից: UBS[4] կազմողները այս տարբերակը գնահատում են որպես «հուսալի/վստահելի»:

▣ **«ծովի աւազի պէս»** Սա փոխաբերական լեզվի մաս է, օգտագործված նկարագրելու համար մի շարք արդյունքները Աբրահամին տրված Աստծո խոստման (հմմտ. Ծննդ.15:5; 22:17; 26:4):

▣ **«միայն մնացորդը կփրկուի»** «Մնացորդ» տերմինը հաճախ օգտագործվում է Հին Կտակարանի մարգարեությունների մեջ կապված այն իսրայելացիների հետ, ովքեր տարվեցին գերության, բայց հետ կբերվեն Աստծո կողմից խոստացյալ երկիր: Պողոսն օգտագործում է այս տերմինը, ինկատի ունենալով այն հրեաներին, ովքեր հավատքի հիման վրա ունեին ճիշտ հարաբերություն Աստծո հետ և/կամ նրանք, ովքեր լսել էին ավետարանը և հավատքով արձագանքել Քրիստոսին:

Նույնիսկ Ուխտի Իսրայելի մեջ միշտ գոյություն է ունեցել հոգևոր բաժանում, և միայն քչերն էին, որ ուղիղ էին Աստծո հետ եղած հարաբերություններում: Իսրայելի ընտրությունը երբեք չներգրավեց անձնական հավատքի արձագանք ունենալու կարևորությունը և անհրաժեշտությունը (հմմտ. Ես. 1:16-20):

Պողոսն օգտագործում է արտահայտություն Հին Կտակարանից, որը սկզբնականում վերաբերում էր հրեա գերիներին, որոնցից քչերը վերադարձան Պաղեստին, բայց կապված նրանց հետ, ովքեր լսեցին Ավետարանը, բայց նրանցից շատերը չհավատացին ու չընդունեցին Քրիստոսին:

Միայն  քիչ տոկոսը լսողների առաջին դարի (հրեաներ և հեթանոսներ) արձագանքեցին ավետարանի բարի լուրին: Պողոսը այս անողներին  կոչում է մնացորդ:

**9:29** Այս մեջբերումը LXX-ից է Ես. 1:9, որը դատապարտում է Իսրայել ազգի մեղավոր վիճակը:

▣ **«Սաբաւովք Տէրը»** Սա Հին Կտակարանի ԵՀՈՎԱ-յի անունն էր, որը սովորաբար թարգմանվում էր «Զորքերի Տեր» (հմմտ. Հակ. 5:4):  Ելնելով կոնտեքստից, սա ռազմականորեն բնութագրում է Աստծուն որպես «երկնքի զորքերի հրամանատար» (հմմտ. Հեսու 5:13-15), կամ ադմինիստրատիվ/կառավարման իմաստով, սովորաբար, բաբելոնյան աստղային բազմաստվածության կոնտեքստում, կապված է երկնային մարմիններին «երկնային մարմինների Տեր»:  Աստղերը ստեղված են, և ոչ թե աստվածներ, նրանք չեն կառավարում կամ ստեղծում իրադարձություններ (հմմտ. Ծննդ. 1:16; Սաղ. 8:3; 147:4; Ես. 40:26):

**Արևելահայերեն  «Եթէ…. մեզ համար սերունդ չէր թողել»**
**Արևմտահայերեն «Եթէ… մեզի սերունդ թողուցած չըլլար»**

▣

| | |
|---|---|
| **NASB** | **"unless. . .had left to us a posterity"** |
| **NKJV** | **"unless. . .had left us a seed"** |
| **NRSV** | **"had not left survivors"** |
| **TEV** | **"had not left us some descendants"** |
| **NJB** | **"not left us a few survivors"** |

Հին եբրայերեն տեքստում Ես. 1:9 ունի «մնացորդ» բառը, բայց Սեպտուագինտը թարգմանեց այն որպես «սերմ» (NKJV): Աստծո դատաստանը Իսրայելի վրա միշտ  խնայեց և պահպանեց (1) հավատացյալ մնացորդին  կամ (2) Մեսիայի սերունդը: Աստված պահպանեց քչերին, որպեսզի հասնի շատերին:

▣ **«Սոդոմ. . .Գոմոր»** Համար 28-ը Աստծո դատաստանի մասին է: Այստեղ հստակ հիշատակվում է երկու հեթանոս քաղաքների մասին, որ կործանվեցին Աստծո կողմից  Ծննդ. 19:24-26, բայց այն դարձավ իդիոմա/հատկաբանություն Աստծո դատաստանի վերաբերյալ (հմմտ. 2 Օրին. 29:34; Ես. 13:19; Եր. 20:16; 49:18; 50:40; Ամովս 4:11):

## Արևելահայերեն  Աստվածաշունչ Գլուխ 9:30-33

30 Արդ ի՞նչ ասենք. թէ հեթանոսները, որ արդարութեան ետեւից չէին գնում, արդարութեան հասան՝
այն արդարութեանն որ հաւատքիցն է: 31 Բայց Իսրայէլը որ գնում էր արդարութեան օրէնքի ետեւից,
արդարութեան օրէնքին չհասաւ: 32 Ի՞նչու համար. որովհետեւ ոչ թէ հաւատքիցը, այլ իբր օրէնքի
գործերիցը ուզում էին արդարանալ. որովհետեւ գայթակղութեան քարի վերայ գլորուեցան: 33 Ինչպէս

գրուած է. Ահա ես Սիոնի մէջ գայթակղութեան քար եւ գլորուելու վէմ եմ դնում. եւ ամեն նորան հաւատացողը չի ամաչիլ:

**NASB (UPDATED) TEXT: 9:30-33**
[30]What shall we say then? That Gentiles, who did not pursue righteousness, attained righteousness, even the righteousness which is by faith; [31]but Israel, pursuing a law of righteousness, did not arrive at *that* law. [32]Why? Because *they did* not *pursue* it by faith, but as though *it were* by works. They stumbled over the stumbling stone, [33]just as it is written, "BEHOLD, I LAY IN ZION A STONE OF STUMBLING AND A ROCK OF OFFENSE, AND HE WHO BELIEVES IN HIM WILL NOT BE DISAPPOINTED."

**9:30-31** Սա ապշեցնող եզրահանգումն է Աստծո ընտրության նպատակի: 30-33 համարները ամփոփումն են գլուխ 9-ի և գլուխ 10-ի ներածությունը: Հավատացող հեթանոսները արդար դարձան Աստծո առաջ, բայց ոչ բոլոր հրեաները:

Աստված մարդու հետ հարաբերություն է հաստատում ուխտի պայմանով: Աստված միշտ նախաձեռնությունը Ինքն է վերցնում և դնում է պայմաններ: Յուրաքանչյուր մարդ պետք է ապաշխարի և հավատա, հնազանդվի և համբերի: Մարդիկ փրկվում են (1) Աստծո սուվերենությամբ (2) Աստծո ողորմությամբ, Մեսիայի կատարած գործի վրա ունեցած հավատքի միջոցով; թե՞ (3) անձնական հավատքի գործողության միջոցով: Այո!

«Զգտել, գնալ» բառի համար տես ծանուցում 14:19.

▣ **«արդարութեան»** Տես հատուկ թեմա 1:17.

**9:32 «գործերիցը»** *Textus Receptus* տարբերակում ավելացրած է «օրենքի»: Այս լրացումը արվել է ավելի ուշ արտագրողի կողմից: Պողոսը հաճախ օգտագործում էր այս արտահայտությունը «օրենքի գործեր» (հմմտ. 3:20,28; Գաղ. 2:16; 3:2,5,10): Ինչևէ, հին հունական ձեռագրերում P[46], ℵ*, A, B, G, և G այս համարում տվյալ լրացումը չկա: UBS[4] կազմողները գնահատում են ավելի կարճ տարբերակը որպես «B» կատեգորիա (գրեթե հավաստի):

Աստծո արդարության բանալին մարդու գործերը չեն այլ Աստծո կերպարն ու պարգևը Քրիստոսի միջոցով: Արդարություն անհնարին է ձեռք բերել մեղավոր, ընկած մարդու կողմից, այլ այն ձրի տրվում է որպես պարգև Քրիստոսի վրա ունեցած հավատքի միջոցով: Ինչևէ, այն պետք է ընդունել (հմմտ. h. 33; Հովh. 1:12; 3:16; Հռ. 4:1; 20:9-13; Եփ. 2:8-9): Սա այն ճշմարտությունն է, որ անկեղծ, կրոնասեր, բարոյական հրեաները (և բոլոր օրինապաշտները) բաց են թողել:

Ջորջ Էլդոն Լադն իր գրքում այդ առիթով գեղեցիկ է գրում. *«Նոր Կտակարանի Աստվածաբանություն»* [George Eldon Ladd in his book *A Theology of the New Testament]*,

«Պողոսի ուսմունքը Օրենքի մասին հաճախ մատուցվում է պատմական փորձառության տեսանկյունից կամ հենց Պողոսի, որպես հրեա րաբբի, կամ էլ տիպիկ առաջին դարի Օրենքի

տակ լինող հրեայի: Ինչևէ, Պողոսի միտքը պետք է դիտվի ոչ որպես իր հոգևոր ինքնակենսագրության խոստովանություն, ոչ էլ որպես առաջին դարի փարիսեականության օրինապաշտ բնութագրի նկարագրությունը, այլ որպես աստվածաբանական մեկնաբանություն քրիստոնյա մտածողի արդարության երկու ճանապարհները՝ օրենքի կատարում և հավատք» (էջ 495):

**9:33** Սա վերցված է Ես. 28:16 կապակցված 8:14-ի հետ.

«Ահա ես եմ որ Սիօնը դրել եմ վէմը,» 28:16

«գայթակղութեան քար եւ գլորման վէմ,» 8:14

«ով որ նորան հաւատայ, չի փախչիլ,» 28:16

Այս համարներն այս կերպ միացնելով (ռաբբիական մեթոդ) նա փոխում է Ես. 28:16-ի իմաստը դրականից բացասական: Պողոսը հմտորեն օգտվում է Հին Կտակարանից իր իսկ սեփական նպատակների համար.

1. Նա ընտրում է, թե որ թարգմանությունը (LXX, MT, կամ իր սեփականը)
2. Նա փոխում է համարները (գերությունից դեպի հեթանոսները)
3. Նա միացնում է տեքստերը
4. Նա փոխում է տիտղոսները և ԴԵՐԱՆՈՒՆՆԵՐԸ, որ ԵՀՈՎԱ-յինն էին, դրանք կիրառելով Հիսուսի վրա

▣ **«եւ ամեն նորան հաւատացողը չի ամաչիլ»** Սա Ես. 28:16-ից է: Այն նաև մեջբերված է Հռ. 10:11 և նման է Հովել 2:32, մեջբերված Հռ. 10:13: Փրկության բանալին թե (1) օբյեկտն է (անկյունաքարը) և թե (2) Նրան ընդունելը անձնապես (հավատք առ Նա): Տես հատուկ թեմա: Հավատալ/հավատք 4:5:

▣ **«ՔԱՐ/ՎԵՄ»** Սկզբում սա Աստծո տիտղոսն էր (հմմտ. Սաղ. 18:1-2,31,46; 2 Օրին. 32:18; I Թագ. 2:2; Սաղ. 28:1; 31:3; 42:4; 21:3; 78:15), բայց դարձավ Մեսիական տիտղոս (հմմտ. Ծննդ. 49:24; Սաղ. 118:22; Ես. 8:14; 28:16; Դան. 2:34-35, 44-45; Մաթ. 21:42-44): Աստծո ուխտի խոստման բանալի տարրը (Մեսիան) սխալ հասկացվեց և մերժվեց (հմմտ. I Կոր. 1:23): Հրեաները սխալ հասկացան ոչ միայն Մեսիայի նպատակը, այլ Աստծո ուխտի հիմնական պահանջները: Քրիստոսը հրեաների համար դարձավ ընկնելու պատճառ, գլորման վեմ (հմմտ. Ես. 8:14; Ղուկ. 2:34), բայց հավատացյալների համար, թե հրեա և թե հեթանոս, Նա դարձավ հիմքի քարը (հմմտ. Ես. 28:16; I Պետ. 2:6-10):

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԱՆԿՅՈՒՆԱՔԱՐ**

I. Կիրառությունը Հին Կտակարանում

Ա. Քարի գաղափարը, որպես դժվար, ամուր և հուսալի նյութ, որն օգտագործվում է, որպես լավ հիմք, օգտագործվում էր ԵՀՈՎԱ-յին նկարագրելու համար (հմմտ. Սաղ. 18:1):

Բ. Հետագայում այդ հասկացողությունը դարձավ մեսիական տիտղոս (հմմտ. Ծննդ. 49:24; Սաղ. 118:22; Ես. 28:16):

Գ. Դրանով պատկերվում էր դատաստանը, որը ԵՀՈՎԱՆ կիրականացնի Մեսիայի միջոցով (հմմտ. Ես. 8:14; Դան. 2:34-35,44-45):

Դ. Սա զարգացավ՝ դառնալով շինարարական փոխաբերություն

1. հիմքի քար, որը դրվում էր առաջինը և որով դրվում էր ամբողջ շինության անկյունները և ապահով էր, կոչվում էր «անկյունաքար»:
2. այն կարող էր վերաբերել գլխավոր քարին, դրված այն տեղում, որը պատերը պահում է միասին (հմմտ. Զաք. 4:7; Եփ. 2:20,21), կոչվում է «գլխի քար» եբրայերեն *rush* (այն է, գլուխ):
3. այն կարող էր վերաբերել «բանալի քար», որը դռան կամար կենտրոնն է և պահում է ամբողջ պատի ծանրությունը:

II. Կիրառությունը Նոր Կտակարանում

Ա. Հիսուսը մեջբերում արեց Սաղ. 118 մի քանի անգամ Իր մասին (հմմտ. Մաթ. 21:41-46; Մարկ. 12:10-11; Ղուկ. 20:17):

Բ. Պողոսն օգտագործում է Սաղ. 118 կապված անհավատ, ապստամբ Իսրայելի ԵՀՈՎԱՅ-ին մերժելու հետ (հմմտ. Հռ. 9:33):

Գ. Պողոսն օգտագործում է «անկյունի գլուխ/քար» Եփ. 2:20-22 կապված Քրիստոսի հետ

Դ. Պետրոսն օգտագործում է Հիսուսի այս գաղափարը I Պետ. 2:1-10: Հիսուսն անկյունաքարն է իսկ հավատացյալները կենդանի քարերը (այն է, հավատացյալները որպես տաճար, հմմտ. I Կոր. 6:19), շինված Նրա վրա (Հիսուսը նոր Տաճարն է, հմմտ. Մարկ. 14:58; Մաթ. 12:6; Հովh. 2:19-20):

Երբ հրեաները մերժեցին Հիսուսին որպես Մեսիա, դրանով իսկ մերժեցին իրենց հույսի հենց հիմքը:

III. Աստվածաբանական պնդումներ

Ա. ԵՀՈՎԱՆ թույլատրեց Դավիթին/Սողոմոնին կառուցել տաճար: Նա ասաց նրանց, որ եթե նրանք պահեն ուխտը Նա կօրհնի նրանց և նրանց հետ կլինի, բայց եթե չպահեն տաճարը ավերակների մեջ կլինի (հմմտ. 3 Թագ. 9:1-9):

Բ. Ռաբբիական հուդայականությունը կենտրոնացած էր ծեսերի և ավանդական ձևերի վրա՝ մերժելով հավատքի անձնական ասպեկտը (անշուշտ ոչ բոլոր ռաբբիներն են եղել այդպիսին): Աստված փափագում է ամենօրյա, անձնական, աստվածահաճո

հարաբերություն նրանց հետ, ում ստեղծել է Իր պատկերով և նմանությամբ  (հմմտ. Ծննդ. 1:26-27).  Ղուկ. 20:17-18 պարունակում է սարսափեցնող բառեր դատաստանի մասին:

Գ. Հիսուսն օգտագործեց տաճարի գաղափարը Իր ֆիզիկական մարմինը ներկայացնելու համար: Սա շարունակում և ընդարձակում է անձի գաղափարը; Հիսուսի վրա ունեցած հավատքը որպես Մեսիա  գլխավոր պայմանն է հանդիսանում ԵՀՈՎԱ-յի հետ ունեցած հարաբերության մեջ:

Դ. Փրկություն նշանակում է վերականգնել Աստծո պատկերը մարդ արարածի մեջ, այնպես որ կարելի լինի հաղորդակցվել Աստծո հետ: Քրիստոնեության նպատակը քրիստոսանման լինել հիմա: Հավատացյալները պետք է կենդանի քարեր լինեն`դրված Քրիստոսի վրա և Քրիստոսի օրինակին հետևելով (նոր տաճարը):

Ե. Հիսուսը մեր հավատքի հիմքն է և մեր հավատքի անկյունաքարը (այն է, Ալֆան և Օմեգան): Բայց նաև գլորման վեմ և գայթակղության քար: Նրա կողքով անցնել նշանակում է կորցնել ամեն ինչ: Այստեղ երրորդ տարբերակ չկա:

## ՔՆՆԱՐԿՎՈՂ ՀԱՐՑԵՐ

Սա սերտողության համար ուղեցույց հանդիսացող մեկնաբանություն է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ:

1. Ինչպե՞ս է գլուխ 9-ը (նախասահմանություն) կապվում գլուխ 10-ի հետ (մարդու ազատ կամքը)
2. Ո՞րն է գլուխ 9:1-29-ի հիմնական թեման:
3. Աստված քանդե՞լ է Իսրայելին տված խոստումը:
4. Թվարկեք արտոնություններն ու առանձնաշնորհները, որ ուներ Իսրայել ազգը (9:4-5).
5. Բոլո՞ր հրեաներն էին ուղիղ Աստծո առաջ: Ի՞նչու կամ ի՞նչու ոչ (9:6)
6. Եթե մարդուն ուժով ստիպեն անելու Աստծո կամքը, կլինի բարոյապես պատասխանատու
7. Ինչպե՞ս է «ողորմությունը» բանալի համարվում նախասահմանության համար (հմմտ.  15, 16, 18, 23; 11:30-32)

# ԹՈՒՂԹ ՈՒՂՂՎԱԾ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

## ԳԼՈՒԽ 10

### ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ

| UBS[4] | NKJV | NRSV | TEV | JB |
|---|---|---|---|---|
| Իսրայելը և Ավետարանը | Իսրայելը կարիք ունի Ավետարանի | Ճշմարիտ արդարությունը հավատքով է | Իսրայելը և Ավետարանը | Իսրայելը թեացավ տեսնել, որ Աստված է որ Սուրբ է |
| 9:30-10:4 | | 9:30-10:4 | 9:30-10:4 | |
| | 10:1-13 | | | 10:1-4 |
| Փրկություն բոլորի համար | | | Փրկությունը բոլորի համար է | |
| 10:5-13 | | 10:5-13 | 10:5-13 | 10:5-13 |
| | Իսրայելը մերժում է Ավետարանը | Իսրայելի պատասխանատվությունը իր թերացումների համար | | Մովսեսի վկայությունը |
| 10:14-21 | 10:14-21 | 10:14-17 | 10:14-17 | 10:14-17 |
| | | 10:18-21 | 10:18-21 | 10:18-21 |

**ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ** (տես էջ vii)

*Հետևել բուն հեղինակի մտադրությանը պարբերությունների մակարդակով*

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Մեկ շնչով կարդացեք այս գլուխը: Ճանաչիր թեմաները: Համեմատիր քո թեմայի բաժանումները վերը նշված 5 թարգմանությունների հետ: Բաժանումները ներշնչված չեն, բայց դա բանալի է հետևելու բուն հեղինակի մտադրությանը, որը մեկնաբանության սիրտն է: Յուրաքանչյուր պարագրաֆ ունի մեկ և միայն մեկ թեմա:

1. Առաջին պարագրաֆ

2. Երկրորդ պարագրաֆ

3. Երրորդ պարագրաֆ

4. և այլն

**ԿՈՐՏԵՔՍՏԱՅԻՆ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ**

Ա. 10-րդ գլուխը կենտրոնանում է Իսրայելի լավ հնարավորությունների վրա, պատշաճ ձևով արձագանքելու ՅԱՀՎԵՅԻ առաջարկած փրկությանը: 9-րդ գլխում քննարկվում է Աստծո հրեաներին ընտրելու մասին, ում միջոցով աշխարհը պիտի ներգրավեր Աստծո ընտրության ծրագրի մեջ, սակայն հրեաները մերժեցին ընդունել Աստծո ընտրությունը:

Բ. Պողոսը շարունակում է օգտագործել Հին Կտակարանը որպես փաստարկ Ավետարանի պաշտպանության համար: Այս առանձնահատուկ է Գործք Առաքելոցում առաքելական քարոզներին, որոնք հայտնի են որպես *կերիգմա kerygma* (այն ինչ հռչակվեց): Տես հատուկ թեմա: *Kerygma «վաղ եկեղեցու քարոզը»* 1:2.

Գ. 9:30-10:4 կենտրոնական ճշմարտություններն են:
1. Հեթանոսները ձեռք բերեցին Աստծո արդարությունը՝ Քրիստոսի վրա ունեցած հավատքի միջոցով,
2. Հրեաները չունեն Աստծո արդարությունը, Քրիստոսի վրա ունեցած հավատքի պակասության պատճառով,
3. Օրենքը չէր կարող մարդկանց արդարություն տալ: Քանի որ արդարությունը Աստծո պարգևն էր Քրիստոսի վրա ունեցած հավատքով և մարդկային ջանքերով անհնարին էր դա ձեռք բերել:

Դ. Բրյուս Կորլեյ և Կարտիս Վաուգան «*Հռոմեացիս թղթի Սերտողության Մեկնաբանության Ուղեցույց*» (Bruce Corley, Curtis Vaughan, *A Study Guide Commentary, Romans*, հրատ. **Zondervan,** էջ 115-116), գիրքն ունի օգտակար ուրվագիծ հրեաների մեղքերը հետ կապված

1. կրոնական հպարտություն, 10:2ա
2. հոգևոր կուրություն, 10:2բ, 3ա
3. ինքնա-արդարություն, 10:3բ
4. անկոտրում համառություն, անհնազանդություն, 10:4ա

Ինձ նաև դուր է գալիս նրանց ամփոփիչ նշումները 9 գլխի վերջում 10 գլխի մասին, «Ընտրությունը տեղի է ունենում խաչի քարոզչության միջոցով (հմմտ. I Թես. 1:4-10), որը բացատրում է, թե ինչպես աստվածային սուվերենության դասական պաշտպանությանը (9:6-29) կարող է հետևել Պողոսի թղթերի միջի ամենաշքեղ միսիոներական հատվածը (10:1-21): Ավետարանը քարոզելու իրավունքի ամենաբարձր գիտելիքն այն է, որ այդ պատգամի միջոցով Աստված ցուցաբերում է հավատարմություն ՝ իրականացնելու համար ընտրության Իր ծրագիրը Քրիսոսում» (էջ. 114):

**ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ**

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 10:1-4**
[1]Եղբարք, իմ սրտի փափաքը եւ դէպի Աստուած աղօթքը Իսրայէլի համար փրկութեան մասին է: [2] Որովհետեւ վկայում եմ նորանց՝ որ Աստուծոյ նախանձն ունին, բայց գիտութեամբ չէ: [3] Որովհետեւ Աստուծոյ արդարութիւնը չգիտենալով, եւ իրանց արդարութիւնը կանգնեցնել կամենալով՝ Աստուծոյ արդարութեանը չհնազանդեցին: [4]Վասնզի օրէնքի վախճանը Քրիստոսն է ամեն հաւատացողի համար դէպի արդարութիւն:

**NASB (UPDATED) TEXT: 10:1-4**
**[1]Brethren, my heart's desire and my prayer to God for them is for *their* salvation. [2]For I testify about them that they have a zeal for God, but not in accordance with knowledge. [3]For not knowing about God's righteousness and seeking to establish their own, they did not subject themselves to the righteousness of God. [4]For Christ is the end of the law for righteousness to everyone who believes.**

**10:1 «Եղբարք»** Այս բառը Պողոսը հաճախ օգտագործում է, երբ նոր թեմա է ներկայացնում (հմմտ. 1:13; 7:1,4; 8:12):

▣ **«իմ սրտի փափաքը եւ դէպի Աստուած աղօթքը Իսրայէլի համար փրկութեան մասին է»** Պողոսը հավատում էր, որ հրեաները կարող էին փրկվել, և որ իր աղոթքը նրանց համար ազդեցություն կունենար: Այս անսպասելի հայտարարությունը հակասում էր նախասահմանության գաղափարին: Տես հատուկ թեմա: Բարեխոսական աղոթք 9:3.

Հունարեն ձեռագրերում «նրանց համար» (անգլերեն թարգմանության մեջ) արտահայտության ուրիշ տարբերակ կա: Textus Receptus տարբերակում գրված է «Իսրայելի համար»: Ինչևէ, շատ

ձեռագրեր (ձեռագիր P46, ℵ*, B, C, D*, F, G ) ունեն «նրանց համար» տարբերակը: UBS4 կազմողները այս տարբերակը գնահատում են որպես «A» կատեգորիա (հուսալի):

**10:2 «Աստուծոյ նախանձն ունին»** Անկեղծությունն ու խանդավառությունը բավական չեն (հմմտ. 3-4հհ). Պողոսը սա լավ գիտեր (հմմտ. Գործք 9:1; Գաղ. 1:14; Փիլ. 3:6):

**10:2-3 «բայց գիտութեամբ չէ: Որովհետեւ Աստուծոյ արդարութիւնը չգիտենալով»** «Իմանալ» տերմինը (հ. 2, *epiginōskō*) կարող է ունենալ երկու իմաստ: (1) հրեաները չէին հասկանում ծրի Ավետարանի պարզևի մասին (հունարեն «իմանալ» բառի իմաստը); կամ (2) հրեաները չունեին հավատքի ճիշտ հարաբերություն Աստծո հետ (եբրայերեն «իմանալ» բառի իմաստը, հմմտ. Ծննդ. 4:1; Եր. 1:5): Հրեաները չէին գտնվում անտեղյակության մեջ այն իմաստով, թե ինչպիսի պատշաճ պատասխան պետք է տային Աստծուն (հհ. 16,18,19), բայց նրանք հավատքը փոխեցին մարդկային գործերի, որն էլ նրանց տարավ հպարտության, ամբարտավանության և բացառիկ լինելու զգացողությանը (հ. 3ա):

**10:3 «Աստուծոյ արդարութիւնը»** 9-11 գլուխների կոնտեքստում այս արտահայտությունը վերաբերվում է Աստծո վերագրած մարդու ճիշտ դիրքին (Հռ. 4) Իր հետ հիմնված սոսկ Իր ողորմության վրա, Քրիստոսի ավարտած գործի վրա, Սուրբ Հոգու մղումով և մեղավոր մարդու ապաշխարության վրա, Աստծո կանչին մարդու արձագանքի վրա և հետագայում համբերության և հնազանդության վրա:

Հիմա յուրաքանչյուրին պարզ է, թե ինչպես հրեաները չհասկացան Աստծո արդարությունը: Հին Կտակարանը շեշտը դնում էր Օրենքի հնազանդության վրա (հմմտ. 2 Օրին. 4:28-6:3,17,24-25): Ինչ նրանք իրականում չճանաչեցին, դա հավատքի և ապաշխարության միջև եղած հավասարակշռությունն էր (հմմտ. 2 Օրին. 5:29-30; 6:5). 2 Օրինաց գրքում հստակ հաստատում է, որ Աստված գործեց ի օգուտ Իսրայելի ոչ թե նրանց արդարության համար, այլ Իր էության առանձնահատկությունից ելնելով (հմմտ. 9:6,7,13,24,27; 10:12-22; Եզեկ. 36:22-38): Նույնիսկ քանանացիներն իրենց հողերից զրկված են եղել, ոչ թե Իսրայելի արդարության պատճառով, այլ իրենց մեղքի պատճառով (հմմտ. 9:4-6; Ծննդ. 15:16): Տես հատուկ թեմա 1:17.

▣ **«Աստուծոյ արդարութեանը չհնազանդեցին »** Այստեղ ԲԱՅԸ ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿԱՁԵՎ Է ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, բայց այն թարգմանված է որպես ՉԵԶՈՔ ՍԵՌ (հմմտ. TEV): Հունարեն քոյնեում ՉԵԶՈՔ ՍԵՌԻ ֆունկցիանիր վրա է վերցնում ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ Կոնտեքստը վճռորոշ գործոն է:

Այս բառի բառացի իմաստն է «հնազանդվել, ենթարկվել», որը ռազմական/զինվորական տերմին է, որը նշանակում է ենթակայություն իշխանություններին: Հրեաները փորձում էին <u>վաստակել</u> Աստծո արդարությունը, բայց դա <u>պարգև էր</u> (հմմտ. 3:24; 5:15; 6:23; Եփ. 2:8-9): Պողոսն այս ճշմարտությունը հստակ տեսավ Դամասկոսի ճանապարհին:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՀՆԱԶԱՆԴՈՒԹՅՈՒՆ (*HUPOTASSŌ*)**

Սեպտուագինդում այս տերմինը օգտագործվում է տասը տարբեր եբրայերեն բառեր թարգմանելու համար: Դրա հիմնական Հին կտակարանային իմաստը « կարգադրել» կամ «հրամայել» էր: Այս ամենը գտնվում է LXX;

1. Աստված պատվիրում է/հրամայում է (հմմտ. Ղև. 10:1; Հովնան 2:1; 4:6-8)
2. Մովսեսը պատվիրում է/հրամայում է (հմմտ. Ել. 36:6; 2 Օրին. 27:1)
3. թագավորները պատվիրում են/հրամայում են (հմմտ. II Մնաց. 31:13)

Նոր Կտակարանում այս իմաստը շարունակվում է օգտագործվել, ինչպես օրինակ Գործք 10:48, որտեղ առաքյալն է պատվիրում: Ինչևէ, Նոր Կտակարանում լրացուցիչ իմաստներ են զարգացվում.

1. կամավորականության տեսակետ (հաճախ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌՈՎ)
2. նմանատիպ ինքնասահմանափակում կարող ենք տեսնել Հիսուսի հնազանդությունը Հորը (հմմտ. Ղուկ. 2:51)
3. հավատացյալները ենթարկվում են/հնազանդվում են մշակութային տեսանկյուններին և հանգամանքներին, որպեսզի Ավետարանին վնաս չհասցվի

ա. բոլոր հավատացյալները (հմմտ. Եփ. 5:21)

բ. հավատացյալ կանայք (հմմտ. Կող. 3:18; Եփ. 5:22-24; Տիտոս 2:5; I Pet. 3:1)

գ. հավատացյալները հեթանոս իշխանավորներին (հմմտ. Հռ. 13:1-7; I Պետ. 2:13):

Հավատացյալները գործում են սիրուց դրդված առ Աստված, Քրիստոս, Աստծո թագավորության և ուրիշների բարօրության համար:

Ինչպես *agapaō,* եկեղեցին այս տերմինը լցրեց նոր իմաստով Աստծո թագավորության պահանջների և ուրիշների կարիքների վրա հիմնված: Այս տերմինը ձեռք է բերում ինքնամերժման և անշահախնդրության նոր իմաստ, ոչ թե պատվերի վրա հիմնված, այլ հավատացյալի նոր հարաբերության վրա՝ Իրեն զոհաբերող Աստծո և Մեսիայի վրա: Հավատացյալները հնազանդվում և ենթարկվում են ի օգուտ ուրիշների բարօրության և Աստծո ընտանիքի օրհնության համար:

**10:4**
**NASB, NKJV,**
**NRSV "for Christ is the end of the law"**
**TEV "for Christ has brought the law to an end"**
**JB "but now the law has come to an end with Christ"**

**Արևելահայերեն «Վասնզի օրէնքի վախճանը Քրիստոսն է»**

**Արևմտահայերեն «Քանզի օրէնքին վախճանը Քրիստոս է»**

Այս միտքը համապատասխանում է Մաթ. 5:17-48: Օրենքի ծրագիրը, նպատակը կամ վերջը (*telos*) փրկությունը չէր, այլ դատապարտությունը և այդ նպատակը շարունակում է (հմմտ. Գաղ. 3:24-25): Նոր կտակարանային դասական տեքստը այս թեմայի մասին գտնվում է Գաղ. 3:1-29.

Այս հարցը քննարկելու ժամանակ, կոնտեքստը վճռական դեր է խաղում: Պողոսը մի քանի տարբեր ձևերով է օգտագործում Հին Կտակարանը: Երբ խոսքը գնում է քրիստոնեական կյանքի մասին, ապա Հին Կտակարանը Աստծո հայտնությունն է (հմմտ. Հռ. 15:4; I Կոր. 10:6,11), բայց երբ քննարկվում է փրկության մասին, ապա այն ուժերը վատնեց և դադարեցրեց իր գործողությունը (հմմտ. Եբ. 8:13): Որովհետև սա փոխաբերություն է անցյալ դարաշրջանի համար: Հիսուսի վրա ունեցած հավատքի Ավետարանը Սուրբ Հոգու նոր դարաշրջանն է: Օրենքը կորցրել է իր զորությունը և գործածությունից դուրս եկել: Տես հատուկ թեմա: Պողոսի հայացքները Մովսեսական Օրենքի հանդեպ 13:9:

▣

| | |
|---|---|
| **NASB, NKJV** | **"for righteousness to everyone who believes"** |
| **NRSV** | **"so that there may be righteousness for everyone who believes"** |
| **TEV** | **"so that everyone who believes is put right with God"** |
| **NJB** | **"so that all who have faith will be justified"** |

**Արևելահայերեն «ամեն հաւատացողի համար դէպի արդարութիւն»**

**Արևմտահայերեն «ամէն հաւատացեալի արդարութեան համար»**

9-11 գլուխները պետք է մեկնաբանվեն միասին: Աստծո սուվերենության շեշտը, որն այնքան ցայտուն ներկայացված է 9 գլխում, պետք է ընդունել Աստծո կանչը հավատալու, ինչպես նկարագրվում է 10 գլխում (հմմտ. հհ. 4,9,11,13; 3:22; 4:11,16):

Աստծո սիրո և փրկագործության ծրագրի համընդհանրությունը հռչակվել է դեռևս Ծննդ. 3:15 և ակնհայտ հաստատվել Ծննդ. 12:3 և Ելից 19:5-6: Մարգարեները հաճախ խոսել են ամբողջ մարդկությանը ուղղված Աստծո տիեզերական սիրո և ծրագրի մասին: Փաստն այն է, որ կա մեկ ճշմարիտ Աստված և Նա է ստեղծել բոլոր մարդկանց Իր պատկերով և նմանությամբ, և Նա բոլորին է կանչում փրկության : Ինչևէ, խորհուրդն այն է, որ ոչ ոք չի կարող Աստծուն դառնալ առանց Սուրբ Հոգու համագործակցության (հմմտ. Հովհ. 6:44,65): Այդ ժամ հարց է ծագում, «Աստված բոլո՞ր մարդկանց է քաշում փրկության»: Պատասխանը պետք է լինի «Այո» (հմմտ. Հովհ. 3:16; 4:42; I Հովհ.

2:2; 4:14; I Տիմ. 2:4; II Պետ. 3:9)։ Հանգիստ չտվող մեղքի, մեղանչելու և Սատանայի պարադոքսն այն է, որ ոմանք ասում են «Ոչ»։ Երբ Պողոսը առաքյալը քարոզում էր, որոշ հերաներ դարձի էին գալիս և որոշներն էլ ոչ, նույնը նաև հեթանոսների մոտ էր։

«*pisteu»* բառը անգլերենում թարգմանվում է երեք տերմիններով «believe» (հավատալ, վստահել), «faith» (հավատք, վստահություն, համոզվածություն, հավատարմություն), և «trust» (հավատք, վստահություն, հույս, ապավինություն)։ Այստեղ օգտագործված է ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԱՁԵՎ, որը խոսում է շարունակական հավատքի մասին։ Հավատքը դա որոշակի փաստերի իմացությունը չէ (աստվածաբանություն, պատմական մանրամասնություններ, Ավետարանի բովանդակությունը), որի միջոցով կարելի կլիներ ստանալ Աստծո շնորհքի պարգևը Քրիստոսի միջոցով։ Նոր Կտակարանը ուխտ է; Աստված հաստատում է Իր պայմանները և նախաձեռնությունները, որը մարդկանց մղում է ապաշխարության, բայց մարդն ինքը պետք է արձագանքի Աստծո կանչին հավատքով և ապաշխարությամբ, և կյանքի ընթացքում շարունակվող հավատքի և խոստովանության կյանքն ապրելով։ Վճռական նշանակություն ունեն հնազանդությունն ու համբերությունը, հավատքի մեջ հաստատ մնալը։ Իսկ նպատակը քրիստոսանման լինելն է և Աստծուն ծառայելը։

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՀՈՒՆԱՐԵՆ ԲԱՅԵՐԻ ՔԵՐԱԿԱՆԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՁԵՎԵՐԸ՝ ՓՐԿՈՒԹՅՈՒՆԸ ՆԿԱՐԱԳՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ**

Փրկությունը դա արդյունք չէ, այլ հարաբերություն։ Այն չի ավարտվում այն պահին երբ մարդն ընդունում է Հիսուսին, այլ հենց այդ պահին է սկսվում այն։ Սա կրակից ապավոհագրություն չէ, ոչ էլ երկինք գնալու տոմս, այլ մի կյանք, որը պահանջում է աճել Քրիստոսի մեջ Նրան նմանվելու պայմանով։

ՓՐԿՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՊԵՍ ԱՎԱՐՏՎԱԾ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ (ԱՕՐԻՍՏ)

- Գործք 15:11
- Հռոմեացիս 8:24
- II Տիմոթեոս 1:9

Տիտոս 3:5

- Հռոմեացիս 13:11 (ԱՕՐԻՍՏԻ միացությունը և կողմնորոշումը ԱՊԱՌՆԻԻ վրա)

ՓՐԿՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՊԵՍ ԸՆԹԱՑԻԿ ԻՐԱՎԻՃԱԿ (ՎԱՂԱԿԱՏԱՐ/ԿԱՏԱՐՅԱԼ)

- Եփեսացիս 2:5,8

ՓՐԿՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՊԵՍ ՇԱՐՈՒՆԱԿԱԿԱՆ ԳՈՐԾԸՆԹԱՑ (ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ)

S I Կորնթացիս 1:18; 15:2

S II Կորնթացիս 2:15

ՓՐԿՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՊԵՍ ԱՊԱԳԱՅՈՒՄ ԿԱՏԱՐՎԵԼԻՔ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ (ԱՊԱՌՆԻ ԺԱՄԱՆԱԿԱՁԵՎԻ ԲԱՅ ըստ կոնտեքստի)

S Հռոմեացիս 5:9,10; 10:9,13

S I Կորնթացիս 3:15; 5:5

S Փիլիպեցիս1:28; I Թեսաղոնիկեցիս 5:8-9

S Եբրայեցիս 1:14; 9:28

S (Ենթադրվում է Մաթ. 10:22, 24:13; Մարկ. 13:13)

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 10:5-13**
5Որովհետեւ Մովսէսը գրում է այն արդարութեան համար որ օրէնքիցն է, Թէ այս
բաները անող մարդը կապրի նորանցով: 6Բայց հաւատքից լինող արդարութիւնը
այսպէս է ասում. Չասես քո սրտումը, Ո՞վ վեր կելնէ երկինքն, այսինքն Քրիստոսին
վայր բերելու համար: 7Կամ՝ ո՞վ կիջնէ անդունդն այսինքն Քրիստոսին մեռելների
միջից հանելու համար: 8 Բայց գիրքն ի՞նչ է ասում. Մօտիկ է քեզ խօսքը, քո բերանումն
ու քո սրտումն է, այսինքն հաւատքի խօսքն որ մենք քարոզում ենք: 9Որովհետեւ եթէ
բերանովդ Յիսուսին Տէր դաւանես, եւ սրտումդ հաւատաս թէ Աստուած յարութիւն
տուաւ նորան մեռելներից, կապրես: 10Քանզի սրտով հաւատում ենք արդարանալու
համար, եւ բերանով դաւանում ենք փրկուելու համար:11 Որովհետեւ գիրքն ասում է.
Ամեն ով որ հաւատայ նորան՝ չի ամաչիլ: 12 Որովհետեւ խտրութիւն չկայ Հրէայի եւ
Յոյնի մէջ. որովհետեւ նոյն Տէրը ամենի Տէրն է, առատ ամենի համար՝ որ կանչում են
նորան: 13Վասնզի ամեն ով որ Տիրոջ անունը կանչէ կապրի:

**NASB (UPDATED) TEXT: 10:5-13**
**5For Moses writes that the man who practices the righteousness which is based on
law shall live by that righteousness. 6But the righteousness based on faith speaks as
follows: "DO NOT SAY IN YOUR HEART, 'WHO WILL ASCEND INTO HEAVEN?' (that is, to
bring Christ down), 7or 'WHO WILL DESCEND INTO THE ABYSS?' (that is, to bring Christ
up from the dead)." 8But what does it say? "THE WORD IS NEAR YOU, in your mouth
and in your heart"— that is, the word of faith which we are preaching, 9if you confess
with your mouth Jesus *as* Lord, and believe in your heart that God raised Him from the
dead, you will be saved; 10for with the heart a person believes, resulting in
righteousness, and with the mouth he confesses, resulting in salvation. 11For the
Scripture says, "WHOEVER BELIEVES IN HIM WILL NOT BE DISAPPOINTED." 12For there is
no distinction between Jew and Greek; for the same Lord is Lord of all, abounding in
riches for all who call on Him; 13for "WHOEVER WILL CALL ON THE NAME OF THE LORD
WILL BE SAVED."**

**10:5** Այս համարը ակնարկ է Ղև. 18:5: Այդ խոստումը ճշմարիտ է: Եթե մեկը կարողանար Օրենքը պահել, նա Աստծո կողմից կընդունվեր (հմմտ. Ղուկ. 10:28; Գաղ. 3:12): Խնդիրն այն է, որ Հռ. 3:9,10-18,19,23; 5:18; 11:32 հաստատում է իրականությունը: Բոլորը մեղանչել են: Եվ մեղանչող հոգին պետք է մահանա (հմմտ. Ծննդ. 2:17; 2 Օրին. 30:18; Եզ. 18:4,20): Այս հին ուխտի ճանապարհը փակված է: Այն դարձավ մահվան դատավճիռ, անեծք (հմմտ. 7:10; Գաղ. 3:13; Կող. 2:14):

**10:6-8** Այս համարները ակնարկ են 2 Օրին. 30:11-14 Սեպտուագինդում (LXX), որը Պողոսը ձևափոխել է իր նպատակների համար: Սկզբում Օրենքի հետ կապված այս խոսքերն ասվել են Մովսեսի կողմից, բայց այստեղ այն վերաբերվում է Հիսուսի մարմնացմանը, մահվանն ու հարությանը (հմմտ. հ. 9; Եփ. 4:9-10): Պողոսի միտքն այն է, որ փրկությունը հեշտ հասանելի է Քրիստոսում հավատքի միջոցով (հմմտ. 2 Օրին. 30:15-20): Այն հեշտ է, այն հասանելի է, այն բոլորի համար է, որն այնքան տարբեր Մովսեսական Օրենքից:

▣ **«Բայց հաւատքից լինող արդարութիւնը այսպէս է ասում»** Առաջուց Պողոսը անձնավորել է «մեղք» և «շնորհք» հասկացողությունները, հիմա նա անձնավորում է «հավատքով արդարանալ» հասկացողությունը : Այդ մասին խոսվում է Հին Կտակարանի մեջբերումների մեջ հհ. 6,7, և 8:

▣ **«վեր կելնէ. . . վայր բերելու»** Մարդը պետք չունի ինչ որ տեղ գնալու՝ Քրիստոսին գտնելու համար: Աստված ուղարկել է Նրան բոլորի համար և տեսանելի կերպով: Կարիք չկա, որ մարդն ընկնի փնտրտուքի մեջ:

▣ **«սրտում»** Սիրտը դա մարդու բանականությունն է, խելքը և խոհերը: Տես հատուկ թեմա 1:24.

**10:9 «եթէ»** Սա ԵՐՐՈՐԴ ՏԵՍԱԿԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է, որը նշանակում է հնարավոր գործողություն ապագայում: Հ. 9 հավատքի պատգամի բովանդակությունն է (*hoti*):

▣ **«դաւանես»** Այս բարդ բառի *homologeō* բառացի իմաստն է «ասել» և «նույնը», և նաև նշանակում է « համաձայնվել հրապարակավ» (այնքան բարձր ասել, որ ուրիշները լսեն): Քրիստոսի վրա ունեցած հավատքի հրապարակային խոստովանությունը շատ կարևոր է (հմմտ. Մաթ. 10:32; Ղուկ. 12:8; Հովհ. 9:22; 12:42; I Տիմ. 6:12; I Հովհ 2:23; 4:15): Վաղ եկեղեցու հրապարակային խոստովանությունը մկրտությունն էր: Մկրտվողը պետք է դավաներ Քրիստոսի վրա ունեցած իր հավատքը այս արտահայտությամբ «Ես հավատում եմ, որ Հիսուս Քրիստոսը Տեր է» Տես հատուկ թեմա ներքևում.

## ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹՅՈՒ, ԴԱՎԱՆԱՆՔ

Ա. Խոստովանություն կամ դավանանք բառի համար կան նույն հունարեն արմատը ունեցող երկու ձևեր, *homologeō* և *exomologeō*: Բարդ տերմինը, որ Հակոբոսն օգտագործում է *homo* (նույն) բառի հիմքից, *legō* (խոսել), և *ex* (-ից): Դրա հիմնական իմաստն է «ասել նույն բանը, համաձայնվել ինչ որ մի բանի հետ»: *ex* նախածանցը ավելացված է, որպեսզի ընդգծի հրապարակային հռչակման գաղափարը

Բ. Այս խմբի մեջ մտնող բառերի անգլերեն թարգմանությունը

1. «praise» - փառաբանել, գովերգել, ներբողել
2. «agree» - համաձայնվել
3. «declare» - հայտարարել, հռչակել, հրապարակել
4. «profess» - բացահայտ կերպով հայտարարել, դավանել
5. «confess» - խոստովանել, դավանել

Գ. Այս բառերի խումբն ունի երկու արտաքին հակադիր տեսանկյուններ

1. փառաբանել (Աստծուն)
2. խոստովանել մեղքը

Այսպիսի կապակցություն կարող էր լինել, երբ մարդը գիտակցեց Աստծո սրբությունը և միաժամանակ զգաց իր մեղավոր վիճակը: Այս ճշմարտություններից մեկը գիտակցելու համար պետք է երկուսն էլ ընդունել: Սա նաև կարող է կացատրել երեք հարցերը: առաջինն ու երրորդը առընչվում են տառապանքին և հիվանդությանը (հնարավոր է մեղքի պատճառով) իսկ երկրորդը՝ սրտանց փառաբանությանը:

Դ. Նոր Կտակարանում այս բառախմբի գործածությունը

1. խոստանալ (հմմտ. Մաթ. 14:7; Գործք 7:17)
2. համաձայնվել կամ ինչ որ մի բանի թույլատրություն (հմմտ. Հովh 1:20; Ղուկ. 22:6; Գործք 24:14; Եբր. 11:13)
3. փառաբանել (հմմտ. Մաթ. 11:25; Ղուկ. 10:21; Հռ. 14:11; 15:9)
4. հաստատել, համաձայնվել
   ա. մարդու հետ (հմմտ. Մաթ. 10:32; Ղուկ. 12:8; Հովh. 9:22; 12:42; Հռ. 10:9; Փիլ. 2:11; I Հովh. 2:23; Հայտ. 3:5)
   բ. ճշմարտության հետ (հմմտ. Գործք 23:8; II Կոր. 11:13; I Հովh. 4:2)
5. հայտարարել հրապարակավ (իրավաբանական իմաստը ձևափոխվում է կրոնական հաստատման, հմմտ. Գործք 24:14; I Տիմ. 6:13)

ա. առանց հանցանքի խոստովանության (հմմտ. I Տիմ. 6:12; Եբր. 10:23)

բ. հանցանքի խոստովանություն (հմմտ. Մաթ. 3:6; Գործք 19:18; Եբր. 4:14; Հակոբոս 5:16; I Հովh. 1:9)



**NASB** "Jesus as Lord"
**NKJV** "the Lord Jesus"
**NRSV, TEV, JB** "Jesus is Lord"

**Արևելահայերեն « Յիսուսին Տէր »**

**Արևմտահայերեն « Յիսուսը Տէր »**

Սա վաղ եկեղեցու հավատքի դավանաքի և մկրտության արարողության աստվածաբանական բովանդակության իմաստն էր: Հիսուս Քրիստոսին «Տեր» կոչելը հաստատում էր Նրա աստվածությունը (հմմտ. Հովել 2:32; Գործք 2:32-33,36; Փիլ. 2:6-11) մինչ «Հիսուս» անունը հաստատում էր Նրա պատմական մարդեղությունը (հմմտ. I Հովh 4:1-6):

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՏԻՐՈՋ ԱՆՈՒՆԸ**

Սա համընդհանուր ընդունված Նոր կտակարանային արտահայտություն էր, որն ընդգծում էր Երրորդության անմիջական ներկայությունն ու ակտիվ գործողությունը եկեղեցում: Այն կախարդական բանաձև չէր, այլ Աստծուն ապավինելու և վստահելու ձև:

Հաճախ այս արտահայտությունը վերաբերում էր Հիսուսին որպես Տեր (հմմտ. Փիլ. 2:11)

1. մկրտության ժամանակ Հիսուսի վրա ունեցած հավատքի դավանանք (հմմտ. Հռ. 10:9-13; Գործք 2:38; 8:12,16; 10:48; 19:5; 22:16; I Կոր. 1:13,15; Հակոբոս 2:7)
2. չար ոգիներին հալածելու ժամանակ (հմմտ. Մաթ. 7:22; Մարկ. 9:38; Ղուկ. 9:49; 10:17; Գործք19:13)
3. բժշկության ժամանակ (հմմտ. Գործք 3:6,16; 4:10; 9:34; Հակոբոս 5:14)
4. ծառայության գործողություն կատարելու ժամանակ (հմմտ. Մաթ. 10:42; 18:5; Ղուկ. 9:48)
5. եկեղեցու դիսցիպլինայի ժամանակ (հմմտ. Մաթ. 18:15-20)
6. հեթանոսներին քարոզելու ժամանակ (հմմտ. Ղուկ. 24:47; Գործք 9:15; 15:17; Հռ. 1:5)
7. աղոթքի մեջ (հմմտ. Հովh. 14:13-14; 15:2,16; 16:23; I Կոր. 1:2)
8. քրիստոնեության հետ կապ ունեցող կերպ (հմմտ. Գործք 26:9; I Կոր. 1:10; II Տիմ. 2:19; Հակոբոս 2:7; I Պետ. 4:14)

Ինչ էլ որ մենք անենք որպես հռչակողներ, ծառայողներ, օգնականներ, բժշկողներ, չար ոգիներ հանողներ և այլն, մենք կատարում ենք Իր կամքով և էությամբ, Իր իշխանությամբ և Իր օգնությամբ - Իր Անվան համար:

▣ **« սրտումդ հաւատաս »** Այս արտահայտությունը զուգահեռ է «խոստովանել» հասկացողությանը, որն ընդգծում է հավատքի ևս մեկ իրար նման առանձնահատկություն «Հավատալ» (*pistis*) աստվածաշնչյան տերմինն իր մեջ ընդգրկում է (1) անձնական հավատք, վստահություն (եբրայերեն իմաստը), (2) ինտելեկտուալ, ռացիոնալ բովանդակություն (հունարեն), և (3) շարունակական ընթացող ինքնակամ նվիրում (հմմտ. 2 Օրին. 30:20):

«Սիրտ» տերմինի հինկտակարանային իմաստը հասկացվում էր մարդու էությունը: Տվյալ կոնտեքստում Պողոսն օգտագործում է «բերան» և «սիրտ» բառերը միայն այն պատճառով, որ նա հ. 8 մեջբերում էր արել 2 Օրին. 30:14: Դա չի նշանակում, որ նա հաստատում էր մի խիստ օրենք, որ փրկվելու համար պետք է որ մարդն անպայման բարձրաձայն աղոթի:

**10:10 «արդարանալու համար »** Աստծո նպատակը յուրաքանչյուր հավատացյալի համար այն չէ, որ մի օր երկնքում կլինի նա, այլ հիմա քրիստոսանման լինելն է: Մեկ ուրիշ կարևոր հատված նախասահմանության հետ կապված Եփ. 1:3-14 է, այս ճշմարտությունը հաստատող զորավոր շեշտը դրված է հ. 4: Հավատացյալները պետք է սուրբ և կատարյալ լինեն: Ընտրությունը ոչ միայն վարդապետություն է, այլ նաև ապրելակերպ (հմմտ. 2 Օրին. 30:15-20):

Համար 10 ընդգծվում են Մեծ Պատվիրանի երկու գլխավոր առանձնահատկություններ (հմմտ. Մաթ. 28:19-29), փրկություն (աշակերտներ պատրաստել) և արդարություն (սովորեցնելով նրանց պահել իմ բոլոր պատվիրանները): Այս նույն համակցությունը գտնվում է Եփ. 2:8-9 (ձրի փրկություն Աստծո շնորհիքով Քրիստոսի միջոցով) և «բարի գործեր» անելու կոչ Եփ. 2:10: Աստծո փափագն է միշտ եղել տեսնել մարդուն Իր պատկերով և նմանությամբ:

**10:11** Սա մեջբերում է Ես. 28:16, Պողոսի ավելացրած «ով որ» բառով: Եսայիի գրքում այս խոսքը վերաբերում է Մեսիայի հավատքին, Աստծո անկյունաքարին (հմմտ. 9:32-33): Ինչպես Հռ. 9 մեծարվում է Աստծո սուվերենությունը, գլուխ 10 ընդգծվում է անհրաժեշտությունը բոլորի համար արձագանքել Քրիստոսի կանչին: Այն որ Աստծուն դառնալու առաջարկությունը բոլորին է ուղղված հստակ հաստատում է հ. 4 «բոլորը» բառը, հհ. 11, 13 «ով որ» և հ. 12 «բոլորին» (երկու անգամ): Սա տալիս է աստվածաբանական հավասարակշռություն հատուկ շեշտով ընտրության վրա (նախասահմանություն) գլուխ 9:

▣ **« հաւատայ նորան »** Սա ԱՆԿԱՆ ԴԵՐԲԱՅ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ *epi* ՆԱԽԴԻՐՈՎ (հմմտ. 4:24; 9:33; I Տիմ. 1:16): Հավատքը ոչ միայն սկզբանական արձագանքն է Աստծո կանչին, այլ հետագա ամենօրյա ապրելակերպ, որը պահանջվում է փրկության համար:

Փրկության համար կարևոր է ոչ միայն ճիշտ աստվածաբանությունը (ավետարանական ճշմարտություններ), այլ անձնական հարաբերությունը Աստծո հետ (բարեպաշտ անձ), որը տանում է աստվածահաճո կյանքի (կյանք ըստ Ավետարանի): Զգուշացեք հեշտ հավատքից, որը ճշմարտությունը բաժանում է կյանքից: Փրկարար հավատքն է, որ տարբերվում է և կյանքեր է փոխում: Տես հատուկ թեմա: Հավատում է, հավատք 4:5:

▣

**NASB, TEV "not be disappointed"**
**NKJV, NRSV "will not to put to shame"**
**JB "will have no cause for shame"**

**Արևելահայերեն « չի ամաչիլ »**

**Արևմտահայերեն « պիտի չամչնայ »**

Նրանք ովքեր հավատում են Հիսուս Քրիստոսին մերժված, անտեսված չեն լինի: Սա մեջբերում է Ես. 28:16, որը Պողոսի համար դարձավ բանալի համար 9:33:

**10:12 « Որովհետեւ խտրութիւն չկայ Հրէայի եւ Յոյնի մէջ »** Սա Նոր Ուխտի մեծագույն էություն է (համտ. Հռ. 3:22,29; Գաղ. 3:28; Եփ. 2:11-3:13; Կող. 3:11): Միակ ճշմարիտ Աստվածը գնեց Իր ընկած, կորսված արարչագործությունը Իր իսկ սեփական գործերով: Նա փափագում է, որ Իր նմանությամբ և պատկերով ստեղծված բոլոր մարդիկ Իրեն դառնան և Իրեն նմանվեն: Իր մոտ կարող են գալ բոլորը:

Ավետարանի համընդհանուր սկզբունքը (h. 12 երկու անգամ օգտագործված է « բոլորը») երկու կարևոր մասերի է բաժանվում; (1) հրեաների և հեթանոսների միջև տարբերություն չկա; բոլորն էլ մեղանչել են (համտ. 3:9,19,22-23; 11:32) և (2) հրեաների և հեթանոսների միջև տարբերություն չկա; բոլորն էլ կարող են փրկվել: Ավետարանը հեռացնում է բոլոր մարդկային արգելքները (համտ. Հովել 2:28-29; I Կոր. 12:13; Գաղ. 3:28; Կող. 3:11), համենայն դեպս փրկության գործում:

▣ **«առատ ամենի համար»** Երբ Պողոսը մտածում է Քրիստոսում Աստծո շնորհքի մասին, նա հաճախ օգտագործում է «հարստություն» բառը (համտ. 2:4; 9:23; 11:12[երկու անգամ],33; I Կոր. 1:5; II Կոր. 8:9; Եփ. 1:7,18; 2:7; 3:8,16; Փիլ. 4:19; Կող. 1:27; 2:2):

**10:13** Սա շատ հայտնի մեջբերում է Հովել 2:32, Պողոսի կողմից օգտագործված, այստեղ ստանում է երկու բացարձակ նոր շեշտադրություն (1) Հովել մարգարեության մեջ օգտագործված էր ՅԱՀՎԵ անունը, իսկ Պողոսը Հռոմեացիս թղթում ինչպես և Պետրոսը Գործք 2:21 այն փոխարինել են Հիսուսի անունով (նաև ուշադրություն դարձրեք Հովh. 12:41 և Ես. 6:9-10; Փիլ. 2:9 և Ես. 45:22-25; Հռ. 9:33 և Ես. 8:13-14); և (2) Հովել մարգարեության մեջ «կփրկվի» արտահայտությունը ֆիզիկական փրկության իմաստով էր հասկացվում, իսկ Հռոմեացիներին ուղղված թղթում այն վերաբերվում է հոգևոր ներմանը և հավիտենական փրկությանը:

«Անունը կանչել» գաղափարի հինկտակարանային իմաստն էր՝ պաշտամունքի ժամանակ հավատքի հրապարակավ խոստովանությու: Այս նույն գաղափարը երևում է Գործք 7:59; 9:14,21; 22:16; I Կոր. 1:2; II Տիմ. 2:22. Տես հատուկ թեմա: Կանչված 1:6.

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՀԻՍՈՒՍ ՆԱԶՈՎՐԵՑԻ կամ ՀԻՍՈՒՍԸ ՆԱԶԱՐԵԹԻՑ**

Կան մի քանի տարբեր հունարեն տերմիններ, որ օգտագործվում է Նոր Կտակարանում, որը հստակ մատնացույց է անում Հիսուս Քրիստոսին:

Ա. Նորկտակարանային տերմիններ

1. Նազարեթ – քաղաք Գալիլիայում (հմմտ. Ղուկ. 1:26; 2:4,39,51; 4:16; Գործք 10:38): Այս քաղաքը մասին չի հիշատակվում ժամանակակից աղբյուրներում, բայց այն հայտնաբերվել է ավելի ուշ արձանագրություններում:

Հիսուսի համար Նազարեթից լինելը շնորհ, հաճոյախոսություն (հմմտ. Հովh. 1:46).: Հիսուսի խաչի վրայի նշանն ուներ այս քաղաքի անունը, որը ցույց էր տալիս Իր հանդեպ ունեցած հրեաների արհամարհանքը:

2. *Nazarēnos* - ամենայն հավանականությամբ այս բառը աշխարհագրական տեղանքի անուն է (հմմտ. Ղուկ 4:34; 24:19):
3. *Nazōraios* – կարող է նշանակել քաղաքի անուն, բայց նաև կարող է օգտագործվել է հին եբրայերեն «ճյուղ» Մեսիական տերմինի համար (*netzer*, հմմտ. Ես. 4:2; 11:1; 53:2; Եր. 23:5; 33:15; Զաք. 3:8; 6:12): Ղուկասն այս բառն օգտագործում է 18:37 և Գործք 2:22; 3:6; 4:10; 6:14; 22:8; 24:5; 26:9:

Բ. Այս տերմիների կիրառության պատմական օրինակները Նոր Կտակարանում չկան: Նրանց նշանակությունը պատմականորեն այլ է.

1. Այդպես կոչում էին հրեական համայնքներում գտնվող հերետիկոսների խմբին, որոնք գոյություն ունեին մինչև քրիստոնեությունը:

2. Հրեական միջավայրերում Հիսուս Քրիստոսին հավատացողներին այդպես էին նկարագրում (հմմտ. Գործք 24:5,14; 28:22):
3. Սիրիական (Արամեական) եկեղեցիներում հավատացյալներին դիմելու ընդունված տերմին էր : Հավատացյալները «քրիստոնեա» անվանվում էին հունական եկեղեցիներում
4. Որոշ ժամանակ անց, Երուսաղեմի անկումից հետո փարիսեցիները Յամնիայում վերակազմավորեցին և ուժեղ թափով հրահրում էին բաժանումներ ժողովարանի և եկեղեցու միջև: «Տասնութ օրհնությունները» (the Eighteen Benedictions) աշխատությունում, Բերակոտի (*Berakoth*) 28բ-29ա տեքստում գտնվում է քրիստոնեաներին անիծելու տիպիկ բանաձևը, որտեղ հավատացյալներին անվանում են «նազովրեցիներ»:

«Թող որ բոլոր նազովրեցիներն ու հերետիկոսները անհետանան մեկ ակնթարթում; ջնջվեն կյանքի գրքից և հավատարիմների կողքին չպիտի դասվեն»:

Գ. Հեղինակի կարծիքը

Ես զարմացած եմ այսքան շատ քանակությամբ տարբերակների համար, որ այս բառն ունի, չնայած Ես գիտեմ որ նման բան մեկ անգամ չի հանդիպում Հին Կտակարանում: Օրինակ «Հիսուս» բառը հին եբրայերենում ունի մի քանի տարբեր արտասանություններ: Բայց և այնպես, (1) սերտ կապը մեսիական տերմինի «Ճյուղ» հետ; (2) միացված բացասական իմաստի հետ; (3) բացակայող կամ շատ քիչ հաստատումը Գալիլիա քաղաքի մասին, այս ամենը մղում է ինձ մնալ որոշ անորոշության մեջ դրա իրական իմաստը պնդելու համար; և (4) այն հնչում է չար ոգու բերանից վախճանաբանական իմաստով («Դու եկել ես՞ մեզ կործանելու»):

Ամբողջական բիբլիոգրաֆիական/ մատենագրություն բառային սերտողության համար կարող եք օգտվել հետևյալ գրքից, Կոլին Բրաուն « Նոր Կտակարանի աստվածաբանության նոր միջազգային բառարան» (Colin Brown (հրատ.), *New International Dictionary of New Testament Theology*), հատ. 2, էջ. 346:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 10:14-15**
14 Արդ ի՞նչպէս կանչեն, որին չհաւատացին. եւ ի՞նչպէս հաւատան, որից չլսեցին. եւ ի՞նչպէս լսեն առանց քարոզողի. 15Եւ ի՞նչպէս քարոզեն, եթէ չուղարկուին. ինչպես գրուած է, Որպէս գեղեցիկ են նորանց ոտները՝ որ խաղաղութիւն են քարոզում եւ բարի բաներ են աւետիք տալիս:

**NASB (UPDATED) TEXT: 10:14-15**
**14How then will they call on Him in whom they have not believed? How will they believe in Him whom they have not heard? And how will they hear without a preacher? 15How will they preach unless they are sent? Just as it is written, "HOW BEAUTIFUL ARE THE FEET OF THOSE WHO BRING GOOD NEWS OF GOOD THINGS!"**

**10:14-15** Մի շարք հարցեր և դրանց հետևող հինկտակարանային մեջբերումները ընդգծում են , որ Իսրայելը երբեք պատշաճ կերպով չարձագանքեց ՅԱՀՎԵԻ պատգամին կամ էլ Նրա պատգամաբերներին: Աստված ուղարկում է Իր պատգամաբերներին (մարգարեներ, առաքյալներ, քարոզիչներ, ուսուցիչներ, ավետարանիչներ): Այս պատգամաբերները օրհնություն են աշխարհի համար, որը փրկության կարիք ունի: Քանի որ Աստված մեծահոգաբար ուղարկում է Իր բարի լուրը տարածողներին, լսողները պետք է արձագանքեն այդ լուրին համապատասխան կերպով: Պողոսն ամրապնդում է այս միտքը մեջբերելով Ես. 52:7: Պողոսն ընդարձակում է այս համարի իմաստը Ավետարանի քարոզիչների մասին:

Փրկարար հավատքն ունի մի քանի տարրեր (1) բարի լուր, որին պետք է հավատալ; (2) մարդ, որին պետք է ձեռք բերել; (3) ապաշխարություն և շարունակվող խոստովանություն և հավատք; (4) հնազանդության կյանք; և (5) համբերություն (տես ծանուցումը 1:5):

**10:15** Սա Հռոմեացիներին ուղղված Թղթի մեծ պատվիրանն է: Փրկությունը գալիս է Ավետարանը լսելուց և ընդունելուց: Քարոզիչներն ուղարկվում են նրա համար, որ «բոլորը» փրկվեն:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 10:16-17**
[16]Բայց ոչ թէ ամենքը հնազանդ եղան աւետարանին: Որովհետեւ Եսայիան ասում է. Տէր, ո՞վ հաւատաց մեր լուրին:[17]Ուրեմն հաւատքը լսելուցն է, եւ լսելը՝ Աստուծոյ խօսքից:

**NASB (UPDATED) TEXT: 10:16-17**
[16]**However, they did not all heed the good news; for Isaiah says, "LORD, WHO HAS BELIEVED OUR REPORT?"** [17]**So faith *comes* from hearing, and hearing by the word of Christ.**

**10:16** Եվ նորից Պողոսն օգտագործում է Հին Կտակարանի մարգարեական հաստատումները, որոնք սկզբում եղել են ՅԱՀՎԵԻ խոսքերը, ուղղված Իսրայելին Հիսուս –Մեսիայի մասին բարի լուրին: Եվ ինչպես որ Հին Կտակարանի հրեաները մերժեցին Աստծո պատգամը, այնպես էլ Պողոսի ժամանակների հրեաները մերժեցին: Սա մեջբերում է Ես. 53:1 բայց նաև աստվածաբանորեն կապված է Իսրայելի Աստծո պատգամը մերժելու հետ Ես. 6:9-13:

**10:17** Ավետարանը նախ և առաջ պատգամ է (հմմտ. Գաղ. 3:2): Բայց այդ պատգամը դառնում է խոսք «Քրիստոսի խոսքը» (հմմտ. Կող. 3:15-16):

▣ **«Աստուծոյ խօսքիցը»** Ըստ կոնտեքստի այս արտահայտությունը պետք է նշանակի լուր Քրիստոսի մասին, որը տարածում էին քարոզիչները: Ավետարանի պատգամը դա Քրիստոսի միջոցով պատգամը ընկած, մեղավոր աշխարհին փոխանցելու Աստծո գործելու ձևն է:

Հին հունարեն ձեռագրերում այս առիթով կա մի քանի տարբերակ; (1) P[46], ℵ[*], B, C, D[*] ձեռագրերում գրված է «Քրիստոսի խոսքը», այնինչ (2) ℵ[c], A, D[c], K, P ձեռագրերում « Աստծո խոսքը»: Առաջին տարբերակը ամենաանսովորն է (հմմտ. Կող. 3:16) և, ուստի, շատ հավանական է ավելի մոտ է բնագրին (Սա տեքստային քննադատության հիմնական կանոններից մեկն է): UBS[4] կազմողները այս տարբերակը գնահատում են «A» կատեգորիայի (հուսալի): Այն Նոր Կտակարանում հանդիպում է միայն մեկ անգամ: Երկրորդ տարբերակը «Աստծո խոսքը» հատնվում է մի քանի անգամ (հմմտ. Ղուկ. 3:2; Հովh. 3:34; Եփ. 6:17; Եբր. 6:5 և 11:3):

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 10:18-21**
[18]Բայց ես ասում եմ. Մի՞թէ չլսեցին. մանաւանդ որ նորանց ձայնը դուրս գնաց բոլոր երկիրը. եւ նորանց խօսքը՝ մինչեւ աշխարհքի ծայրերը:[19]Բայց ասում եմ. Մի՞թէ Իսրայէլը չգիտաց. առաջ Մովսէսն է ասում. Ես ձեզ նախանձաւոր կշինեմ մի ոչինչ ժողովրդով, եւ մի անմիտ ազգով կը կսկծացնեմ ձեզ:[20]Բայց Եսայիան աւելի համարձակում է եւ ասում. Ես գտնուեցայ նորանցից որ ինձ չէին որոնում. յայտնի եղայ նորանց որ ինձ համար չէին հարցնում:[21]Բայց Իսրայելին ասում է. Բոլոր օրն իմ ձեռքերը մեկնեցի դէպի մի անհնազանդ եւ հակառակող ժողովուրդ:

**NASB (UPDATED) TEXT: 10:18-21**
[18]**But I say, surely they have never heard, have they? Indeed they have; "THEIR VOICE HAS GONE OUT INTO ALL THE EARTH, AND THEIR WORDS TO THE ENDS OF THE WORLD."** [19]**But I say, surely Israel did not know, did they? First Moses says, "I WILL MAKE YOU JEALOUS BY THAT WHICH IS NOT A NATION, BY A NATION WITHOUT UNDERSTANDING WILL I ANGER YOU."** [20]**And Isaiah is very bold and says, "I WAS FOUND BY THOSE WHO DID NOT SEEK ME, I BECAME MANIFEST TO THOSE WHO DID NOT ASK FOR ME."** [21]**But as for Israel He says, "ALL THE DAY LONG I HAVE STRETCHED OUT MY HANDS TO A DISOBEDIENT AND OBSTINATE PEOPLE."**

**10:18** Այս համարը պնդում է, որ հրեաների մեծամասնությունը լսել էր Աստծո պատգամը, և որ նրանք պատասխանատու էին այն մերժելու համար (ԿՐԿՆԱԿԻ ԺԽՏԱԿԱՆ հունարեն արտահայտություն՝ ընդգծելու համար): Նրանց հիմնական խնդիրը ոչ թե անտեղյակությունն էր, այլ անհավատությունը:

Պողոսը մեջբերում է Սաղ. 19:4. Այս Սաղմոսի մեջ 1-6 համարները վերաբերվում են բնական կամ ընդհանուր հայտնությանը, որն Աստված հայտնում է ստեղծագործության միջոցով (հմմտ. Հռ. 1-2): Պողոսը փոխում է (1) տիեզերական վկայությունը («բոլոր երկիրը») և (2) Աստծո

արարչագործության պատգամի լռածայն փոխանցումը Ավետարանի քարոզիչների միջոցով (առաքյալներ, մարգարեներ, ավետարանիչներ, հովիվներ և ուսուցիչներ, հմմտ. Եփ. 4:11), որը վերաբերում է հատուկ հայտնությանը (հմմտ. Սաղ. 19:8-14): Հիմնական միտքն այն է, որ ավետարանի պատգամը մտել էր Պողոսի օրերում ծանոթ աշխարհի մեջ (հունա-հռոմեական աշխարհ): Պողոսն օգտագործում է ռաբբիական հերմենևտիկա; նա ձևափոխում է սկզբնական հինկտակարանային կոնտեքստը համապատասխանեցնելով իր աստվածաբանությանը և բանավեճի նպատակներին: Պետք է հստակ որոշված լինի, որ Հին Կտակարանի օգտագործումը Պողոսի կողմից ինչպես նաև մյուս առաքյալների, անկասկած եղել է Սուրբ Հոգու առաջնորդությամբ (հմմտ. II Պետ. 1:20-21): Այսօր հավատացյալները Հոգու լուսավորվածության ներքո չեն կարող մեկնաբանության մեթոդներ վերարտադրել, որոնցից օգտվել են Նոր Կտակարանի հեղինակները:

**10:19-20** Հրեաները լսել էին Աստծո պատգամը, թեկուզ նույնիսկ Մովսեսից: Հրեաները լսել էին և ի վիճակի էին հասկանալու այն, որ հաշտությունը Աստծո հետ, բայց միայն հավատքի միջոցով, բոլոր մարդիկ կարող են ձեռք բերել:

Այս համարներում, Աստված ասաց Իր ընտրյալ ազգին, որ հեթանոսներն էլ են ներգրավված փրկության ծրագրի մեջ: Սա ասվում է մեջբերելով 2 Օրին. 32:21 հ. 19-ում և Ես. 65:1-2 հհ. 20-21ում: Հրեաներին ցնցող այս լուրը հեթանոսների հետ կապված նրա համար էր, որ հրեաների մոտ արթնանար հավատքի հանդեպ նախանձավորություն (հմմտ. 11:11,14).

**10:21** Այս հաստատուն միտքը մեջբերում է Ես. 65:2 Սեպտուագինտից և խոսում է թե ինչպես ՅԱՀՎԵՆ մերժվում է ուխտի ժողովրդի կողմից(հմմտ. Ես. 65:1-7): Աստված միշտ հավատարիմ է եղել, իսկ Իսրայելն անհավատարիմ: Նրանց անհավատարմությունը անցյալում բերեց ժամանակավոր դատապարտություն ինչպես ազգի, այնպես էլ անհատների վրա, սակայն նրանց մերժումը Աստծո արդարության Քրիստոսի վրա ունեցած հավատքի միջոցով կբերի հավիտենական դատաստան:

## ՔՆՆԱՐԿՎՈՂ ՀԱՐՑԵՐ

Սա սերտողության համար ուղեցույց հանդիսացող մեկնաբանություն է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ:

1. Եթե Աստծո ընտրությունն ունի վճռական նշանակություն, ապա ինչու՞ է Պողոսն աղոթում Իսրայելի համար 10:1? Եվ ինչու՞ 10:9-13 հատվածում շեշտվում է այն փաստը, որ մարդն ինքը պետք է արձագանքի Աստծո կանչին:
2. Ի՞նչ է նշանակում 4-րդ համարը: «Քրիստոսը վերջ դրե՞ց Օրենքին»:
3. Թվարկեք հավատքի բոլոր տարրերը 10:9-10 հատվածում:
4. Ինչու՞ է Պողոսը հաճախ մեջբերում անում Հին Կտակարանից: Ինչպե՞ս է սա համապատասխանում այն փաստին, որ Հռոմի եկեղեցին հիմնականում կազմված էր նախկին հեթանոսներից:
5. Ինչպե՞ս են hh. 11-13 կապվում գլուխ 9 հետ:
6. Ինչպե՞ս են hh. 14-15 իմաստով կապվում աշխարհի միսիոներության հետ:
7. Ինչպե՞ս է 10 գլխում երևում, որ մարդու ազատ կամքը մասնակցություն ունի իր փրկության մեջ:

# ԹՈՒՂԹ ՈՒՂՂՎԱԾ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

## ԳԼՈՒԽ 11

| ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ | | | | |
|---|---|---|---|---|
| UBS[4] | NKJV | NRSV | TEV | JB |
| Իսրայելի մնացորդը | Իսրայելը մերժված է ոչ ամբողջությամբ | Իսրայելը մերժված է ոչ վերջնականապես | Աստծո Ողորմությունը Իսրայելին | Իսրայելի մնացորդը |
| 11:1-10 | 11:1-10 | 11:1-10 | 11:1-6 | 11:1-10 |
| | | | 11:7-10 | |
| Հեթանոսների փրկությունը | Իսրայելը մերժված է ոչ վերջնականապես | | | Հրեաները կվերականգնվեն ապագայում |
| 11:11-12 | 11:11-36 | 11:11-12 | 11:11-12 | 11:11-15 |
| | | | Հեթանոսների փրկությունը | |
| 11:13-16 | | 11:13-16 | 11:13-15 | Հրեաները դեռևս ընտրված ժողովուրդ են |
| | | Ձիթենու փոխաբերությունը | 11:16-18 | 11:16-24 |
| 11:17-24 | | 11:17-24 | | |
| | | | 11:19-24 | |
| Իսրայելի վերականգնումը | | Ամբողջ Իսրայելը կփրկվի | Աստծո Ողորմությունը բոլորին | Հրեաների դարձի գալը |
| 11:25-32 | | 11:25-32 | 11:25-32 | 11:25-27 |
| | | | | 11:28-29 |
| | | | | 11:30-32 |
| | | | Փառաբանություն Աստծուն | Աստծո ողորմության և իմաստության հիմնը |
| 11:33-36 | | 11:33-36 | 11:33-36 | 11:33-36 |

## ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ (տես էջ vii)

*Հետևել բուն հեղինակի մտադրությանը պարբերությունների մակարդակով*

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Ճանաչիր թեմաները: Համեմատիր քո թեմայի բաժանումները վերը նշված 5 թարգմանությունների հետ: Բաժանումները ներշնչված չեն, բայց դա բանալի է հետևելու բուն հեղինակի մտադրությանը, որը մեկնաբանության սիրտն է: Յուրաքանչյուր պարագրաֆ ունի մեկ և միայն մեկ թեմա:

Մեկ շնչով կարդացեք այս գլուխը: Ուրվագծեք հիմնական թեմաներն ու թեման արտահայտեք մեկ նախադասությամբ:

1. Առաջին պարագրաֆ
2. Երկրորդ պարագրաֆ
3. Երրորդ պարագրաֆ
4. և այլն

## ԿՈՆՏԵՔՍՏԻ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ

Ա. Գլուխ 11 շարունակում է պարադոքսալ հարաբերությունը ընտրության և ավետարանի միջև: Հին Կտակարանի ընտրությունը ծառայության համար էր, իսկ Նոր Կտակարանի ընտրությունը փրկության համար էր: Որոշ իմաստով հավատացյալները կանչված են լինելու թե Աստծո ընտանիքի անդամ (NT) և թե ծառաներ (OT): Ընտրությունը թե համընդհանուր է և թե անհատական, դրական և բացասական (Հակոբ/Իսրայել -Եսավ/Եդովմ; Մովսես/Փարավոն): Վերջին հաշվով ներքին լարվածություն գոյություն ունի ոչ միայն Աստծո սուվերենության և մարդու ազատ կամքի միջև, այլ հենց Աստծո էության մեջ: 9-11 գլուխները կրկին ու կրկին ընդգծում են Աստծո ողորմությունը և մեղավոր մարդկության ըմբոստությունը: Աստված հավատարիմ է, մարդիկ անհավատ:

Ընտրությունը վարդապետություն չէ, հիմնավորված որոշ բաների մերժման վրա, այլ հույսի, ապահովության և վստահության հիմք նրանց համար ովքեր ընդունել են խոստումներն ու ուխտը- հաստատող Աստծո Որդուն:

Բ. 9 գլխում Պողոսը հաստատեց Աստծո սուվերենությունն ու ազատությունը: Նույնիսկ ուխտի առկայության դեպքում Աստված ազատ է վարվելու այնպես ինչպես հարմար է գտնում: 10 գլխում Պողոսը հաստատում է, որ հրեաներն ազատ էին ընդունելու կամ մերժելու Աստծո խոստումներն ու ուխտերը: Քանի որ նրանք ընտրեցին անհավատարմությունն ու մերժեցին Աստծո խոստումներն ու ուխտերը, որոշ իմաստով նրանք էլ մերժվեցին Աստծո կողմից: Ինչևէ, 11 գլխում Պողոսը կհաստատի Աստծո հավատարմությունը, նույնիսկ չնայելով Իսրայելի անհավատարմությանը (հմմտ. 2 Օրին 8):

Գ. Անցյալում, ինչպես նաև հիմա, հրեական մնացորդը հավատաց և ապրեց Աստծո Մեսիայի հավատքով: Պողոսը սրա օրինակն էր: Անհավատ հրեաների մերժումը թույլ տվեց փրկված հեթանոս հավատացյալների ներգրավվումը: Հեթանոսների փրկվելը կբերի (1) Աստծո ժողովրդի համալրմանը, կամ (2) հրեաներից և հեթանոսներից կազմված Աստծո ընտրյալների ամբողջական թվին: Հեթանոսների այս արտոնությունը կմղի Իսրայելին հավատալ Աստծո Մեսիային՝ Հիսուսին:

**ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՄԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ**

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 11:1-6**
[1]Արդ ասում եմ, Մի՞թէ Աստուած դէն գցեց իր ժողովուրդը. քաւ լիցի. որովհետեւ ես էլ
Իսրայէլացի եմ՝ Աբրահամի սերունդից: Բենիամինի ցեղից: [2]Աստուած դէն չգցեց իր
ժողովուրդը որին առաջուց ճանաչեց. կամ թէ չգիտէ՞ք թէ գիրքն ինչ է ասում Եղիայի
համար գրուածքումը. ի՞նչպէս նա Իսրայէլի դէմ գանգատում է Աստուծոյ առաջին.
[3]Տէր, քո մարգարէներին կոտորեցին եւ քո սեղանները կործանեցին. եւ միայն ես
մնացի, եւ իմ անձն որոնում են: [4]Բայց աստուածային պատգամն ի՞նչ է ասում նորան.
Եօթը հազար մարդ թողի ինձ համար, որ Բահաղին ծունր չդրին:[5]Հէնց այսպէս էլ այս
ժամանակումը շնորհքի ընտրութեան պէս մի մնացորդ եղաւ:[6]Բայց եթէ շնորհքով է՝ էլ
գործերից չէ. ապա թէ ոչ՝ շնորհքն էլ շնորհք չի լինիլ. բայց եթէ գործերից է, էլ շնորհք չէ:

NASB (UPDATED) TEXT: 11:1-6
[1]I say then, God has not rejected His people, has He? May it never be! For I too am an Israelite, a
descendant of Abraham, of the tribe of Benjamin. [2]God has not rejected His people whom He foreknew.
Or do you not know what the Scripture says in *the passage about* Elijah, how he pleads with God against
Israel? [3]"Lord, THEY HAVE KILLED YOUR PROPHETS, THEY HAVE TORN DOWN YOUR ALTARS, AND I ALONE

AM LEFT, AND THEY ARE SEEKING MY LIFE." [4]But what is the divine response to him? "I HAVE KEPT for Myself SEVEN THOUSAND MEN WHO HAVE NOT BOWED THE KNEE TO BAAL." [5]In the same way then, there has also come to be at the present time a remnant according to *God's* gracious choice. [6]But if it is by grace, it is no longer on the basis of works, otherwise grace is no longer grace.

**11:1 « Մի՞թէ Աստուած դէն զցեց իր ժողովուրդը»** Այս հարցի ակնկալվող պատասխանը «ոչ» է: Պողոսն այս հարցին պատասխանում է hh. 1բ-10: Այս բաժինը պետք է կապել Պողոսի նախորդ փաստարկի հետ: 9-11 գլուխները կազմում են գրական բաժին, մեկ երկարատև, շարունակական փաստարկ:

Հետաքրքիր է նշել, որ վաղ հունարեն պապիրուսե ձեռագրերը P[46] և երկաթագիր ձեռագրերում F և G «ժողովուրդ» բառի փոխարեն օգտագործված է «ժառանգություն» բառը, որը հնարավոր է վերցված է Սաղ. 94:14 Սեպտուագինտի:

▣ **« քաւ լիցի»** Այս արտահայտությունը հատուկ է Պողոսին վարկածային/ենթադրական ընդդիմության հնարավոր հարցերը մերժելիս (սուր քննադատություն, հմմտ. 3:4,6,31; 6:2,15; 7:7,13; 9:14; 11:1,11):

▣ **«ես էլ Իսրայէլացի եմ»** Պողոսն իր օրինակն է բերում, ապացուցելու համար հավատացյալ հրեա մնացորդի գոյությունը: Ավելի ուժեղ տեղեկություն իր հրեական ծագման մասին Պողոսը շարադրում է Փիլ. 3:5:

▣ **11:2 «Աստուած դէն չզցեց իր ժողովուրդը»** Հնարավոր է սա ակնարկ է Սաղ. 94:14 (հմմտ. 2 Օրին. 31:6; I Թագ. 12:22; III Թագ. 6:13; Ողբ 3:31-32): Եվ սա h. 1 հարցի հստակ պատասխանն է:

▣ **«որին առաջուց ճանաչեց»** Սա ակնհայտ հաստատում է Աստծո ընտրությունը Իսրայել ազգին: Տես ծանուցում 8:29: Այս փաստարկը միաժամանակ վերաբերվում է և 9 գլխին, և նաև hh. 4-6: Բանալի իմաստը ոչ թե Իսրայելի արարքներն էին, այլ Աստծո ընտրությունը: Աստված հավատարիմ է Իր խոստումներին Իր էությունից ելնելով, և ոչ թե Իսրայելի ճիշտ արարքի համար (հմմտ. Եզ. 36:22-32):

▣ **«գիրքն ինչ է ասում»** Սա ակնարկ է այն նկարագրության, երբ Եղիայն խափավ Հեզաբելից III Թագ. 19:10, մեջբերված h. 3:

**11:4 «Եօթը հազար մարդ թողի ինձ համար, որ Բահաղին ծունր չդրին»** « Ինձ համար» արտահայտությունը բացակայում է հին եբրայերեն Մազորեթիկ/Մազորական I Թագ. 19:18 տեքստում (Պողոսը չի մեջբերում MT կամ LXX), այլ այն ավելացված է Պողոսի կողմից ընդգծելու համար Աստծո ընտրությունը: I Թագ. 19:18 հավատարիմ մնացորդը Աստծո ընտրությամբ էր, և ոչ թե այն բանի համար, որ նրանք չերկրպագեցին Բահաղին:

Պողոսն այն միտքն է արտահայտում, որ Եղիայի օրերում նույնիսկ անհավատ, կռապաշտ Իսրայելի մեջ կար հավատացյալների փոքր խումբ: Եվ նաև Պողոսի օրերում կար հրեա հավատացյալ մնացորդ: Բոլոր ժամանակներում եղել են այն հրեաները, որոնք հավատքով են արձագանքել և ոչ թե իրենց գործերով: Պողոսը հաստատում է, որ այս հավատացյալ հրեաներին ոգեշնչում էր Աստծո ողորմությունն ու շնորհքը (hh . 5-6):

▣ **«Բահաղին»** Այստեղ ԻԳԱԿԱՆ ՍԵՌԻ ՀՈԴԸ միացած է ԳՈՅԱԿԱՆԻ ԱՐԱԿԱՆ ՍԵՌԻՆ: Հրեաները սիստեմատիկ կերպով հին եբրայերեն բառի ԻԳԱԿԱՆ ՍԵՌԻ (*bosheth*) ձայնավորները, որը նշանակում է «ամոթ, անպատվություն» տեղադրում էին հեթանոս աստվածների անունների բաղաձայների մեջ, նրանց ծաղրելու համար:

**11:5-6** Սրանք բանալի համարներ են: Նրանք Հին Կտակարանում Աստծո գործողությունները կապում են ներկա իրավիճակի հետ: Եվ այդ կապը ընտրությունն է Աստծո շնորհքով (հմմտ. 9:15,16,18; 11:30,31,32): Աստծո շնորհքը առաջնային է, բայց և նաև անհրաժեշտ է մարդու հավատքը (հմմտ. Մարկ. 1:15; Գործ 3:16,19; 20:21), միաժամանակ չհիմնվելով մարդու գործերի և արժանիքների վրա (հմմտ. Եփ. 2:8-9; II Տիմ. 1:9; Տիտոս 3:5): Այս ճշմարտությունները վճռորոշ նշանակություն ունեն Պողոսի փաստարկի մեջ ամբողջ 9-11 գլուխներում:

**11:6 «եթէ»** Այստեղ ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է, որը հաստատվում է որպես ճշմարտություն ելնելով հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակներից: Փրկությունը Աստծո շնորհքով է (տես ծանուցում 3:24, հմմտ. 6:23; Եփ. 2:8-9):

▣ KJV տարբերակում h. 6 հանդիպում է «Բայց եթե այն գործերից է, ուրեմն նա այլևս շնորհք չէ; հակառակ դեպքում գործը այլևս գործ չէ» արտահայտությունը: Այս նախադասությունը ընդգրկված չէ շատ հին հունարեն ձեռագրերում $P^{46}$, $\aleph^{*}$, A, C, D, G, կամ P, և հին լատիներեն տարբերակներում, բայց այս արտահայտության երկու տարբեր ձևեր են հանդիպում $\aleph^{c}$ և B ձեռագրերում: $UBS^{4}$ կազմողները տարբերակը գնահատում են առանց այս արտահայտության որպես «A» կատեգորիա (հուսալի/վստահելի):

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 11:7-10**
[7]Ուրեմն ի՞նչ. այն որ Իսրայէլը որոնում էր՝ նորան չհասաւ, բայց ընտրուածները հասան, եւ միւսները կուրացան:[8] Ինչպէս գրուած է. Աստուած տուաւ նորանց թմրութեան հոգի. աչքեր՝ որ չտեսնեն, եւ ականջներ՝ որ չլսեն, մինչեւ այս օրուայ օրը: [9]Եւ Դաւիթն ասում է. Նորանց սեղանը թող որոգայթ լինի նորանց՝ եւ որս եւ գայթակղութիւն՝ եւ հատուցումն նորանց համար: [10]Թող նորանց աչքերը խաւարուին՝ որ չտեսնեն. եւ նորանց թիկունքները միշտ ծռեցրու:

NASB (UPDATED) TEXT: 11:7-10
[7]**What then? What Israel is seeking, it has not obtained, but those who were chosen obtained it, and the rest were hardened; [8]just as it is written, "GOD GAVE THEM A SPIRIT OF STUPOR, EYES TO SEE NOT AND EARS TO HEAR NOT, DOWN TO THIS VERY DAY." [9]And David says, "LET THEIR TABLE BECOME A SNARE AND A TRAP, AND A STUMBLING BLOCK AND A RETRIBUTION TO THEM. [10]"LET THEIR EYES BE DARKENED TO SEE NOT, AND BEND THEIR BACKS FOREVER."**

**11:7 «այն որ Իսրայէլը որոնում էր՝ նորան չհասաւ»** Հունարեն նախադասության մեջ այս բառերը տեղադրված են սկզբում, որպեսզի ընդգծվի Պողոսի միտքը: Շատ հրեաներ ուզում էին Աստծո հաճո ապրել, բայց նրանք ձգտում էին հասնել դրան կրոնական ծեսերը պահելով, շնորհիվ իր ռասայական ծագումից և ջանքերի: Նրանք չհասան իրենց նպատակին: Ոչ մի մարմին չի կարող արժանի կերպով կանգնել Աստծո առջև (հմմտ. I Կոր. 1:29; Եփ. 2:9):

**Արևելահայերեն « բայց ընտրուածները հասան»**

**Արևմտահայերեն « Ընտրուածները հասան»**

▣

| | |
|---|---|
| **NASB** | **"but those who were chosen obtained it"** |
| **NKJV** | **"but the elect have obtained it"** |
| **NRSV** | **"The elect obtained it"** |
| **TEV** | **"It was only the small group that God chose who found it"** |
| **JB** | **"but only the chosen few"** |

Այս հինկտակարանային գաղափարը «մնացորդի» վերաբերում է III Թագ. 19:18-ի 7,000-ին: Բանալի իմաստը մարդկային ջանքերը, ազգային պատկանելիությունը կամ կրոնական լինելը չէ (հ. 6), այլ ընտրության մեջ Աստծո շնորհքն է (հմմտ. Եփ. 1:3-14):

▣ **«միւսները կուրացան»** Սա ԱՈՐԻՍՏ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է (հմմտ. II Կոր. 3:14): Ենթադրվում է, որ Աստված էր խստացրել նրանց (հմմտ. հհ. 8-10): Խստացման միջոցը չարն էր (հմմտ. II Կոր. 4:4): «Կարծրացած» (*pōroō*) սա բժշկական տերմին է, որը նշանակում է կոպտություն, քարսրտություն կամ կուրություն (հմմտ. Հռ. 11:25; II Կոր. 3:14; Եփ. 4:18): Այս նույն տերմինը օգտագործված է առաքյալների հետ կապված Մարկ. 6:52: Այս բառը տարբերվում է մեկ

ուրիշ հունարեն տերմինից 9:18 (*sklērunō*), որը իմաստը ողորմության հակառակն է (հմմտ. Եբր. 3:8,15; 4:7):

Այս համարը շատ պարզ է և 11:1-6-ի ամփոփումն է: Նրանք ովքեր ընտրված են եղել հավատացել են, իսկ նրանք ովքեր ընտրված չեն եղել կարծրացվել են: Ինչևէ, այս համարը չի գրվել մյուսներից առանձին, որպես աստվածաբանական լոզունգ: Այն կապակցված և շարունակական աստվածաբանական ապացույցի մասն է կազմում: Բայց գոյություն ունի որոշակի ներքին լարվածություն այս համարում գոյություն ունեցող հաստատման և 10 գլխի տիեզերական/ընդահնրական փրկության հրավերքի միջև: Այստեղ գաղտնիք կա: Բայց լուծումն այն չէ, որպեսզի ժխտելը կամ փոքրացնելը դիլեմա/երկսայրաբանության երկու փաստարկներից մեկը, որոնք հանդիսանում են պարադոքսալ քննարկման տաբեր բևեռները:

**11:8-10** Այս համարները մեջբերումներ են վերցված Ես. 29:10 (հ. 8ա), 2 Օրին. 29:4 (հ. 8բ, բայց ոչ MTմազորեթիկ տեքստից կամ էլ LXX) և Սաղ. 69:22-23 (հհ. 9-10): Դրանք իրականում արտացոլում են Եսայի մարգարեի կանչն ու առաքելությունը ըմբոստ Իսրայելին 6:9-13: Եսայի առաջադրանքն էր ներկայացնել Աստծո խոսքը, բայց Աստծո ժողովուրդը ի վիճակի չէր արձագանքել դրան, և չարեց էլ: Այստեղ Պողոսը, ինչպես նաև 9:13,15,17, օգտագործում է հինկտակարանային վկայություն, տվյալ դեպքում հաստատում է այն, որ Աստված արդեն խստացրել էր որոշ մարդկանց:

**Արևելահայերեն «Աստուած տուաւ նորանց թմրութեան հոգի»**
**Արևմտահայերեն «Աստուած անոնց թմրութեան ոգի տուաւ »**

11:8
**NASB, NKJV "God gave them a spirit of stupor"**
**NRSV, JB "God gave them a sluggish spirit"**
**TEV "God made their minds and hearts dull"**

Հունարեն (*katanuxis*) բառը Նոր Կտակարանում միայն այստեղ է օգտագործված, իսկ կիրառում էին այն որպես միջատի խայթոց իմաստով, որից մարդու մոտ առաջանում էր չափից շատ զգայունություն:

**11:10 «Թող նորանց աչքերը խաւարուին` որ չտեսնեն. եւ նորանց թիկունքները միշտ ծռեցրու»** Այս արտահայտության մեջ ԱՕՐԻՍՏ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿԸ ձևին հետևում է ԱՕՐԻՍՏ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿԸ: Սա Աստծո սուվերենության և Աստծո կանչին արձագանքելու անհրաժեշտության գաղտնիքն է/խորհրդավորությունն է: Աստված ամեն բանի աղբյուրն է, ամեն ինչի նախաձեռնողը, բայց և

միաժամանակ Իր սուվերեն կամքով Նա վճռեց, որ մարդիկ՝ Իր վեհ ստեղծագործությունը, ազատ կամքով արձագանքի Իրեն: Նրանք ովքեր հավատքով չեն արձագանքում խստացված են իրենց անհավատության մեջ:

Այս կոնտեքստում Պողոսը հաստատում է Աստծո հավիտենական ծրագիրը Ադամի բոլոր զավակներին փրկագնելու համար: Հրեաների անհավատությունը հեթանոսների համար հավատքի դուռ կբացի և հրեաների նախանձավորության պատճառով նրանք կվերականգնվեն որպես Իսրայել ազգ: Սա ներառման, միավորման ծրագիր է (հմմտ. Եփ. 2:11-3:13), և ոչ թե արտաքսման և բաժանման: Խստացումը բերում է էլ ավելի մեծ հունձքի:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 11:11-16**
[11]Ուրեմն ասում եմ. Մի՞թէ գլորուեցան՝ որ կործանուին. քաւ լիցի. բայց նորանց գլորուելովը հեթանոսների փրկութիւնն եղաւ որ նախանձի գրգռէ նորանց:[12] Բայց եթէ նորանց յանցանքը աշխարհիքի մեծութիւն է, եւ նորանց նուաստութիւնը հեթանոսների մեծությւն, էլ ո՞րքան աւելի նորանց լիութիւնը:[13] Բայց ձեզ հեթանոսներիդ ասում եմ, Որովհետեւ ես հեթանոսների առաքեալ եմ՝ իմ պաշտօնը փառաւոր կանեմ. [14]Որ գուցէ իմ մարմինը լինողներին նախանձի գրգռեմ, եւ նորանցից մի քանիսն ազրեցնեմ: [15]Քանզի եթէ նորանց մերժումը աշխարհիքի հաշտութիւն է, ապա նորանց ընդունելութի՞ւնն ինչ է, եթէ ոչ՝ կենդանութիւն մեռելներից. [16]Եւ եթէ երախայրին սուրբ է՝ ապա զանգուածն էլ. եւ եթէ արմատը սուրբ է՝ ապա ճիւղերն էլ:

NASB (UPDATED) TEXT: 11:11-16
[11]I say then, they did not stumble so as to fall, did they? May it never be! But by their transgression salvation *has come* to the Gentiles, to make them jealous. [12]Now if their transgression is riches for the world and their failure is riches for the Gentiles, how much more will their fulfillment be! [13]But I am speaking to you who are Gentiles. Inasmuch then as I am an apostle of Gentiles, I magnify my ministry, [14]if somehow I might move to jealousy my fellow countrymen and save some of them. [15]For if their rejection is the reconciliation of the world, what will *their* acceptance be but life from the dead? [16]If the first piece *of dough* is holy, the lump is also; and if the root is holy, the branches are too.

**11:11 «Ուրեմն ասում եմ»** Սա նույն հռետորական արտահայտությունն էր, ինչ որ 11:1: Սա ևս մեկ միջոց է, որից օգտվում է Պողոսը, որպեսզի ընդգծի իր աստվածաբանական ապացույցի շարունակությունը: hh. 1-10 ոչ ամբողջ Իսրայելն էր մերժված Աստծո կողմից; hh. 11-24 Իսրայելի մերժումը մշտատև չէ; այն Աստծո հատուկ նպատակի համար է: Դրա միջոցով հեթանոսները փրկության իրավունք ստացան:

**Արևելահայերեն «Մի՞թէ գլորուեցան՝ որ կործանուին»**

**Արևմտահայերեն « Մի՞թէ անո՞ր համար անոնք յանցանք գործեցին որ կործանին»**

▣

NASB "they did not stumble so as to fall, did they"
NKJV, NRSV "have they stumbled that they should fall"
TEV "When the Jews stumbled, did they fall to their ruin"
JB "Have the Jews fallen for ever, or have they just stumbled"

Այս հարցի պատասխանն ակնկալվում է «Ոչ»: Իսրայելի անհավատությունը մշտական իրավիճակ չէ:

**Արևելահայերեն « բայց նորանց գլորուելովը »**

**Արևմտահայերեն « հապա իրենց յանցանքովը »**

▣

NASB "by their transgression"
NKJV "through their fall"
NRSV "through their stumbling"
TEV "Because they sinned"
JB "their fall"

Կոնտեքստում սա վերաբերում է հրեաների Հիսուսին որպես Մեսիա մերժելուն (հմմտ. h. 12):

▣ **«հեթանոսների փրկութիւնն եղաւ»** Սա առաջին դարի հրեաների համար ցնցող դրույթ/պնդում,հաստատուն միտք էր (հմմտ. h. 12; Գործք 13:46; 18:6; 22:21; 28:28):

▣ **« որ նախանձի գրգռէ նորանց»** Աստծո ծրագիրը հեթանոսներին փրկության ցուցակի մեջ մտցնելու հետապնդում է երկու նպատակ (1) Աստծո քավությունը ամբողջ մարդկության; և (2) Իսրայելի ապաշխարած մնացորդի անձնական հավատքի Աստծո վերականգնումը:

**11:12-14** Այս համարներում կա տասը ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ մի շարք, որը խոսում է Իսրայելի անհավատության մասին ի տարբերություն հեթանոսների հավատքի: 12,14,15,16,17,18,21,24 համարները ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿԻ ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ նախադասություններ են, որոնք հաստատվում են որպես ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ նրա գրական նպատակի համար, իսկ hh. 22 և 23 ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿԻ ԵՐՐՈՐԴ ԿԱՐԳԻ նախադասություններ են, որոնք վերաբերվում են ապագայում կատարվելիք հնարավոր գործողություններին:

**Արևելահայերեն «էլ ո՞րքան ավելի նրանց լիութիւնը»**
**Արևմտահայերեն «ալ որչափ աւելի անոնց լրութիւնը»**

11:12
NASB "how much more will their fulfillment be"
NKJV "how much more their fullness"
NRSV "How much more will their full inclusion mean"
TEV "Then, how much greater the blessings will be, when the complete number of Jews is included"
JB "then think how much more it will benefit from the conversion of them all"

Այս տեքստը մեկնաբանելու գլխավոր դժվարությունը «նրանց լիությունը» արտահայտությունը հասկանալու մեջ է: Սա վերաբերվում է (1) հրեաների փրկվելուն, հh. 14բ, 26ա, թե՞ (2) ընտրված հավատացյալ հրեաների և հեթանոսների վերջնական թվին/քանակին:

**11:13 «Բայց ձեզ հեթանոսներիդ ասում եմ»** 9-11 գլուխները կազմում են գրական բաժին, որտեղ գտնվում է հարցի պատասխանը, «Ի՞նչու է հրեական Մեսիան մեժվել հրեաների կողմից»: Սակայն մնում է անհասկանալի թե, ինչու՞ Պողոսը անհրաժեշտություն համարեց քննարկել այս հարցը հենց այս թղթում:

hh. 13-24, 25գ հնարավոր է արտացոլում են այն խնդիրը, որը կար Հռոմի եկեղեցում հրեաների և հեթանոսների միջև, ազգային պատկանելիության հողի վրա: Արդյոք այս լարվածությունը հավատացյալ հրեաների և հավատացյալ հեթանոսների միջև էր, կամ հավատացյալ հեթանոսների և անհավատ հրեաների (ժողովարանի) միջև պարզ չէ:

▣ **«ես հեթանոսների առաքեալ եմ»** Պողոսը վստահ էր, որ ինքը կանչված է հեթանոսներին առաքյալ լինելու համար (հմմտ. Գործք 9:15; 22:21; 26:17; Հռ. 1:5; 15:16; Գաղ. 1:16; 2:7,9; I Տիմ. 2:7; II Տիմ. 4:17):

**Արևելահայերեն «իմ պաշտոնը փառաւոր կանեմ»**
**Արևմտահայերեն «իմ պաշտօնս կը մեծարեմ»**

▣
NASB, NKJV "I magnify my ministry"
NRSV "I glorify my ministry"
TEV "I will take pride in my work"
JB "and I am proud of being sent"

«Մեծարել» տերմինը կարող էր նշանակել (1) գոհունակություն; (2) հպարտանալ մի բանով; կամ հնարավոր է (3) ինչ որ բան լավագույն ձևով օգտագործել: Սա նաև կարող էր արտացոլել այն խնդիրը, որը կար Հռոմի եկեղեցում: Պողոսն ուրախ էր ծառայելու հեթանոսներին; կամ էլ (2) Պողոսի ծառայության նպատակը հրեաների մեջ նախանձ արթնացնելն էր , որը նրանց փրկության կտաներ (հմմտ. հհ. 11,14 և 9:1-3):

**11:14 « նրանցից մի քանիսն ապրեցնեմ»** Սա Պողոսի միսիոներական կանչն էր: Նա գիտեր, որ ոմանք կարձագանքեն իր Ավետարանի քարոզչությանը (հմմտ. I Կոր. 1:21) իսկ ոմանք էլ ոչ (հմմտ. I Կոր. 9:22): Սա ընտրության գաղտնիքն է/խորհրդավորությունն է (Հին Կտակարան և Նոր Կտակարան):

**11:15** Հին Կտակարանի ընտրված Իսրայելի մերժումը Աստծո ծրագրի մի մասն էր՝ ամբող մարդկությունը փրկելու համար (*kosmos*): Հրեական ինքնա-արդարությունը, ազգային ամբարտավանությունը և օրինականացումը էլ ավելի շատ ընդգծեցին հավատքի կարիքը (հմմտ. 9:30-33): Հավատք ուղղված ՅԱՀՎԵԻՆ և Իր Մեսիային, և ոչ թե մարդու կրոնական ջանքերին, ունեն վճռորոշ նշանակություն Աստծո հետ հաշտվելու համար: Բայց հիշեք, Իսրայելին մերժելը ամբողջ մարդկությանը փրկելու համար էր: Հպարտանալու տեղ չկա, ոչ հրեաների և ոչ էլ հեթանոսների համար: Սա հենց այն էր ինչի կարիքն ուներ լսելու Հռոմի եկեղեցին:

▣ **«աշխարհքի հաշտութիւն է»** Այս արտահայտությունը կազմում է աստվածաբանական զուգահեռականություն «Աստծո արդարությունը» հետ: Տերմինները կազմված են *kata* + *alassō* նախդիրի օգնությամբ (փոխել, վերափոխել կամ ձևափոխել): Այն նշանակում է փոխել թշնամությունը խաղաղության, դրա շնորհիվ բարեհաճության վերականգնում (հմմտ. Հռ. 5:11; 11:15; II Կոր. 5:18,19): Աստված փափագում է վերականգնել Եդեմի պարտեզի հարաբերությունը: Մեղքը խախտեց այդ հարաբերությունը, բայց Քրիստոսը վերականգնեց Աստծո պատկերը ընկած մարդկության մեջ բոլոր նրանց համար, ովքեր ապրում են հավատքով: Նրանք ստացան հաշտություն և ընդունելություն (զուգահեռականություն հ. 15): Մարդկությունն ինքը չէր կարող վերականգնել այս մտերմիկ հարաբերությունները Աստծո հետ, բայց Աստված կարող է դա անել և արեց:

**11:16 «Եւ եթէ երախայրին սուրբ է»** Այստեղ ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ Է, որը ենթարվում է որպես ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակների համար: Սա ակնարկ է Թվոց. 15:17-21: Սա փոխաբերություն է, որը

նման է Առաջին Պտուղներ «Երախայրի» հինկտակարանային գաղափարին, որոնք տրվում էին Աստծուն՝ ցույց տալու համար, որ ամբողջ հունձքը պատկանում է Աստծուն:

Վաղ հավատացյալ հրեա մնացորդը դեռևս շարունակում էր ազդեցություն ունենալ ամբողջ ազգի վրա (հմմտ. Ծնն. 18:27-33; II Մնաց. 7:14): «Առաջին կտոր» փոխաբերությունը զուգահեռ է «արմատը» բառին (հմմտ. Եր. 11:16-17), և երկուսն էլ վերաբերում են Իսրայելի հավատացյալներին, մասնավորապես Հին Կտակարանի նախահայրերին (հմմտ. հ. 28):

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 11:17-24**
[17]Բայց եթէ ճիւղերիցը ոմանք կոտրուեցան, եւ դու որ վայրի ձիթենի էիր՝ նորանցում
պատուաստուեցար, եւ հաղորդ եղար արմատին՝ եւ ձիթենու պարարտութեանը, [18] Մի
պարծենար այն ճիւղերի դեմ. բայց եթէ պարծենաս, դու չես արմատը վեր բռնում, այլ
արմատը՝ քեզ: [19]Արդ կասես, Ճիւղերը կոտրուեցան՝ որ ես պատուաստուիմ: [20]Լաւ.
նորանք անհաւատութիւնով կոտրուեցան, եւ դու հաւատքով հաստատուեցար. մի
ամբարտաւանանար, այլ վախեցիր: [21]Որովհետեւ եթէ Աստուած բնական ճիւղերին
չխնայեց, մի գուցէ քեզ էլ չխնայէ: [22]Արդ տես Աստուծոյ քաղցրութիւնը եւ
սաստկութիւնը. կործանուածների վերայ սաստկութիւնը, եւ քեզ վերայ քաղցրութիւնը,
եթէ այն քաղցրութիւնումը կենաս. ապա թէ ոչ՝ դու էլ կկտրուիս: [23]Եւ նորանք էլ՝ եթէ
անհաւատութիւնումը չկենան՝ կպատուաստուին. որովհետեւ Աստուած կարող է
դարձեալ պատուաստել նորանց: [24] Վասնզի եթէ դու ի բնէ վայրի ձիթենուցը
կտրուեցար եւ բնութեան դէմ բարի ձիթենու վերայ պատուաստուեցար, էլ ո՞րքան
աւելի նորանք որ բնական են կպատուաստուին իրանց ձիթենու վերայ:

**NASB (UPDATED) TEXT: 11:17-24**
[17]But if some of the branches were broken off, and you, being a wild olive, were grafted in among them
and became partaker with them of the rich root of the olive tree, [18]do not be arrogant toward the branches;
but if you are arrogant, *remember that* it is not you who supports the root, but the root *supports* you. [19]You
will say then, "Branches were broken off so that I might be grafted in." [20]Quite right, they were broken off
for their unbelief, but you stand by your faith. Do not be conceited, but fear; [21]for if God did not spare the
natural branches, He will not spare you, either. [22]Behold then the kindness and severity of God; to those
who fell, severity, but to you, God's kindness, if you continue in His kindness; otherwise you also will be
cut off. [23]And they also, if they do not continue in their unbelief, will be grafted in, for God is able to graft
them in again. [24]For if you were cut off from what is by nature a wild olive tree, and were grafted contrary
to nature into a cultivated olive tree, how much more will these who are the natural *branches* be grafted into
their own olive tree?

**11:17 «եթէ»** Տես ծանուցում 11:12-14:

▣ **«ճիւղերիցը ոմանք կոտրուեցան»** Սա վերաբերվում է անհավատ իսրայելացիներին (հմմտ. հհ. 18,19, «բնական ճյուղեր», հ. 21):

▣ **«վայրի ձիթենի էիր»** Սա վերաբերվում է հավատացյալ հեթանոսներին, ովքեր արձագանքում են Ավետարանի քարոզչությանը:

▣ **«պատուաստուեցար»** Պողոսը շարունակում է գյուղատնտեսական փոխաբերությունը/պատկեր սկսած հ. 16: Վայրի ձիթենու ճյուղերի պատվաստումը տնկված ծառին օգնեց դրա պտղտավությանը (հմմտ. հ. 24):

▣ **«ձիթենու»** Սա Իսրայել ազգի խորհրդանիշն է (հմմտ. հ. 24; Սաղ. 52:8; 128:3; Եր. 11:16; Ովս. 14:6): Սա հանդիսանում է երկրորդ հինկտակարանային փոխաբերությունը, որն օգտագործում է Պողոսը նկարագրելու համար հրեաների և հեթանոսների միջև եղած հարաբերությունը:

**11:18 «Մի պարծենար այն ճիւղերի դեմ»** Այստեղ ՆԵՐԱԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ ԺԽՏԱԿԱՆ ՄԱՄՆԻԿՈՎ, որը սովորաբար նշանակում է գործողության դադար, որն արդեն իրականացման գործընթացի մեջ է: Այս համարը, ինչպես նաև հհ. 13, 20, 25, ենթադրվում է, որ Հռոմի եկեղեցում կար խնդիր հրեաների և հեթանոսների միջև:

**11:19-20** Հ. 19 մեկ ուրիշ սուր քննադատությունն է (ենթադրյալ հակառակորդի առկայությամբ): Պողոսը բացատրում է, թե ինչու էին հրեաները մերժված: Դա նրանց անհավատության պատճառով էր, և ոչ թե նրա համար, որ Աստված հեթանոսներին ավելի շատ էր սիրում: Հեթանոսների ներգրավվումը փրկվածների թվի մեջ Աստծո սիրո շնորհիվ էր (հմմտ. Ծնն. 3:15) և իրենց հավատքի: Նրանք նաև կարող էին նախանձից ելնելով արթնացնել հրեաների մոտ Աստծուն վերադառնալու ցանկություն (հմմտ. հհ. 11,14):

**Արևելահայերեն «եւ դու հաւատքով հաստատուեցար»**
**Արևմտահայերեն «ու դուն հաւատքով հաստատուեցար»**

**11:20**
**NASB "and you stand only by your faith"**
**NKJV "and you stand by faith"**
**NRSV "but you stand only through faith"**
**TEV "while you remain in place because you do believe"**
**JB "if you still hold firm, it is only thanks to your faith"**

Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ/ԿԱՏԱՐՅԱԼ ԺԱՄԱՆԱԿԱՁԵՎ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է: Մեր կարգավիճակը Աստծո մեջ և ընթացիկ փաստացի դիրքը Աստծո առաջ որոշվում է հավատքով: Եթե հավատքը պակասում է, մեր դիրքն էլ է պակասում: Փրկությունը դա (1)

սկզբնական արձագանքն է հավատքով; (2) հավատքի մեջ մնալու իրավիճակն է; (3) հավատքի կյանքն ապրելու գործընթացն է; և (4) հավատքի վերջնական գագաթնակետն է: Զգուշացեք ցանկացած աստվածաբանական համակարգից, որը միայն կենտրոնանում է այս աստվածաշնչյան ճշմարտություններից միայն մեկի վար: Տես հատուկ թեմա 10:4:

Աստված է փրկության հեղինակը, նախաձեռնողը, հենարանը և իրականացնողը, սակայն ուխտի պայմանով: Նա նախընտրել է, որ մեղավոր մարդը պետք է արձագանքի Իր կանչին ապաշխարությամբ և հավատքով և շարունակի պահել այդ վիճակը իր կյանքի յուրաքանչյուր քայլում:

**Արևելահայերեն «մի ամբարտաւանանար, այլ վախեցիր»**

**Արևմտահայերեն «մի հպարտանար, հապա վախցիր»**

▣

**NASB "Do not be conceited, but fear"**
**NKJV "Do not be haughty, but fear"**
**NRSV "So do not become proud, but stand in awe"**
**TEV "But do not be proud of it; instead, be afraid"**
**JB "Rather than making you proud, that should make you afraid"**

Այս երկու պնդումները ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԱՁԵՎ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ են: Առաջինն ունի ԺԽՏԱԿԱՆ ՄԱՄՆԻԿ, որը սովորաբար նշանակում է գործողության դադար, որն արդեն իրականացման գործըթացի մեջ է: Այն հայտնում է Հռոմի եկեղեցում գոյություն ունեցող խնդիրը: Վախի պատճառը գտնվում է հ. 21:

**11:21 «մի գուցէ քեզ էլ չխնայէ»** Քանի որ Իսրայելը հետ կանգնեց հավատքից և հպարտ անհավատությամբ հեռացավ ՅԱՀՎԵԻՑ, որի արդյունքում կտրվեց, նույնպես էլ եկեղեցին կկտրվի, եթե հեռանա Քրիստոսի հավատքից և հպարտ ինքնա-արդարության հետևից գնա: Սկզբնական հավատքին պետք է հետևի կյանքն ապրելու հավատքը (հմմտ. Մաթ. 13:1-23; Մարկ. 4:1-12; Ղուկ. 8:4-10): Հպարտության միշտ պետք է դիմադրել/հակառակվել: Այն ինչ կանք Աստծո շնորհիվ ենք և մենք բոլոր նրանց եղբայրներն ենք ովքեր հավատում են Քրիստոսին:

**11:22 «Աստուծոյ քաղցրութիւնը եւ սաստկութիւնը»** Աստծո ճանապարհներն ու մեթոդները միշտ պարադոքս են թվում մեղավոր մարդկանց համար (հմմտ. Ես. 55:8-11): Մեր յուրաքանչյուր ընտրություն ունի հետևանք: Աստծո ընտրությունը չի բացասում/ժխտում մարդու պատասխանատվությունը: Իսրայել ազգի ընտրությունը չէր երաշխավորում իրեա անհատի փրկությունը:

▣ **«եթէ այն քաղցրութիւնումը կենաս»** Սա ԵՐՐՈՐԴ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ Է ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԱՁԵՎԻ ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿՈՎ: Այս կառուցվածքը նշանակում էր, որ հավատացյալ հեթանոսների հավատքի շարունակելիությունը ունի պայման (սա Աստծո սուվերենության հակառակ կողմն է, որի մասին խոսվում է Հռ. 9); մենք պետք է ջանք թափենք մեր հավատքը պահել (հմմտ. Փիլ. 2:12-13): Այս հաստատակամությունը պահանջվում է թե խմբից և թե անհատից (հմմտ. Գաղ. 6:9; Հայտ. 2:7,17; 3:6,13,22): Սա կրկին համայնքային և անհատականության զաղտնիքն է/խորհրդավորությունն է Աստվածաշնչում: Կան թե խոստումները (հիմնված Աստծո էության վրա) և թե պայմանական ուխտերը (հիմնված մարդու արձագանքի վրա): Տես հատուկ թեմա: Հաստատակամ լինելու կարիքը 8:25:

**11:23** Այս համարը քերականական և աստվածաբանական կառուցվածքով նման է հ. 22: Եթե հրեաներն ապաշխարեն և հավատան, նրանք կմտնեն փրկվածների մեջ: Եթե հեթանոսները դադարեն հավատալ, նրանք կմերժվեն (հմմտ. հ. 20): Նրանց և բոլորի համար վճռական նշանակություն ունի թե սկզբնական հավատքը և թե շարունակական հավատքը Քրիստոսում:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 11:25-32**
25Որովհետեւ չեմ կամենում, եղբարք, որ չգիտենաք այս խորհուրդը, որ ձեր անձերումը
իմաստուն չլինիք, որ մի մասով Իսրայէլին կուրութիւն եղաւ, մինչեւ որ հեթանոսների
լրութիւնը մտնէ: 26Եւ այսպէս բոլոր Իսրայէլը կապրի. ինչպէս գրուած է, թէ Սիօնիցը
Փրկիչը կգայ՝ եւ ամբարշտութիւնները դէն կգցէ Յակոբիցը: 27Եւ այս է իմ ուխտը
նորանց հետ, երբոր նորանց մեղքերը վեր կառնեմ: 28Աւետարանի նկատմամբ նորանք
թշնամի են ձեր պատճառովը, ընտրութեան նկատմամբ՝ սիրելի են հայրերի համար:
29Որովհետեւ Աստուծոյ շնորհքը եւ կոչումը զղջալ չունի: 30 Վասնզի ինչպէս դուք էլ մի
ժամանակ չէիք հաւատում Աստուծուն, եւ հիմա ողորմութիւն գտաք նորանք
անհաւատութիւնովը: 31 Այնպէս էլ նորանք հիմա չհաւատացին ձեր ողորմութիւնովը. որ
նորանք էլ ողորմութիւն գտնեն:32Որովհետեւ Աստուած ամենին անհաւատութեան մէջ
արգիլեց որ ամենին ողորմի:

NASB (UPDATED) TEXT: 11:25-32
25For I do not want you, brethren, to be uninformed of this mystery— so that you will not be wise in
your own estimation—that a partial hardening has happened to Israel until the fullness of the Gentiles has
come in; 26and so all Israel will be saved; just as it is written, "THE DELIVERER WILL COME FROM ZION, HE
WILL REMOVE UNGODLINESS FROM JACOB." 27"THIS IS MY COVENANT WITH THEM, WHEN I TAKE AWAY
THEIR SINS." 28From the standpoint of the gospel they are enemies for your sake, but from the standpoint of
*God's* choice they are beloved for the sake of the fathers; 29for the gifts and the calling of God are
irrevocable. 30For just as you once were disobedient to God, but now have been shown mercy because of
their disobedience, 31so these also now have been disobedient, that because of the mercy shown to you they
also may now be shown mercy. 32For God has shut up all in disobedience so that He may show mercy to
all.

**11:25 «Որովհետեւ չեմ կամենում, եղբարք, որ չգիտենաք»** Սա Պողոսին բնորոշ առանձնահատուկ իդիոմա է/արտահայտություն (հմմտ. 1:13; I Կոր. 10:1; 12:1; II Կոր. 1:8; I Թես. 4:13): Սա սովորաբար ներկայացնում է կարևոր քննարկման սկիզբը: Սա նույն գործողությունն է կատարում, ինչ Հիսուսի ասած «Ճշմարիտ, ճշմարիտ» արտահայտությունը: Պողոսը հաճախ օգտագործում է այս արտահայտությունը, ցույց տալու համար նոր թեմայի սկիզբ:

**Արևելահայերեն «խորհուրդը»**

**Արևմտահայերեն «խորհուրդը»**

▣

| | |
|---|---|
| **NASB, NKJV, NRSV** | **"mystery"** |
| **TEV** | **"a secret truth"** |
| **JB** | **"a hidden reason for all of this"** |

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԽՈՐՀՈՒՐԴ/ԳԱՂՏՆԻՔ**

Աստված մարդու փրկագործման համար ունի միասնական նպատակ, որը գոյություն ուներ նույնիսկ մինչև մեղքը (հմմտ. Ծննդ. 3): Այս ծրագրի ակնարկները հայտնված են Հին Կտակարանում (հմմտ. Ծննդ. 3:15; 12:3; Ել. 19:5-6; և ամբողջ աշխարհին վերաբերվող հատվածները՝ մարգարեական գրքերում): Ինչևէ, այս ծրագիրն իր ամբողջությամբ հստակ չէր (հմմտ. I Կոր. 2:6-8): Հիսուսի և Սուրբ Հոգու գալուստով այն դառնում է ավելի ակնհայտ: Պողոսն օգտագործում է «խորհուրդ» տերմինը՝ նկարագրելու համար այս ամբողջական փրկության ծրագիրը (հմմտ. I Կոր. 4:1; Եփ. 6:19; Կող. 4:3; I Տիմ. 1:9): Չնայած նա դա օգտագործում է մի քանի իմաստներով.

1. Իսրայելի մասնակի խստացման պատճառով հեթանոսները ներգրավվերցին: Հեթանոսների այս հոսքը կգործի այնպես, որ հրաների մոտ արքնանա Քրիստոսին ընդունելու ցանկություն, մարգարեների կողմից ասված (հմմտ. Հռ. 11:25-32):
2. Ավետարանը հայտնի դարձավ բոլոր ազգերին, որոնք փրկվելու իրավունք ձեռք բերեցին Քրիստոսին հավատալով և Նրա միջոցով (հմմտ. Հռ. 16:25-27; Կող. 2:2):
3. Հավատացյալների նոր մարմինները Հիսուսի Երկրորդ Գալստյան ժամանակ (հմմտ. I Կոր. 15:5-57; I Թես. 4:13-18):
4. Ամեն բաների ամբողջացումը Քրիստոսում (հմմտ. Եփ. 1:8-11):
5. Հեթանոսներն ու հրեաները համաժառանգներ են (հմմտ. Եփ. 2:11-3:13):
6. Քրիստոսի և եկեղեցու միջև եղած մտերմիկ հարաբերությունը նկարագրվում է ամուսնական տերմիններով (հմմտ. Եփ. 5:22-33):

7. Հեթանոսները ներգրավվեցին ուխտի ժողովրդի կազմի մեջ և հիմա նրանց մեջ բնակվում է Քրիստոսի Հոգին, որը նրանց հոգևոր հասունության է տանում, և նպատակն է մեղավոր մարդու մեջ վերականգնել Աստծո խեղաթյուրված պատկերը (հմմտ. Ծննդ. 6:5,11-13; 8:21) Աստծո մարդու մեջ (հմմտ. Ծննդ. 1:26-27; 5:1; 9:6; Կող. 1:26-28):
8. Վերջին ժամանակվա հակա-քրիստոսը (հմմտ. II Թես. 2:1-11):
9. Վաղ եկեղեցու պատկերացումը խորհուրդի, գաղտնիքի մասին գտնվում է I Տիմ. 1:16.

▣ **«որ ձեր անձերումը իմաստուն չլինիք»** Սա ևս մեկ ակնարկ է այն մասին, որ Հռոմի եկեղեցում(ներում) որոշակի լարվածություն կար (հմմտ. հ. 18):

**Արևելահայերեն «որ մի մասով Իսրայէլին կուրութիւն եղաւ»**
**Արևմտահայերեն «որ Իսրայէլին մասամբ կուրութիւն եղաւ»**

▣
**NASB** **"that a partial hardening has happened to Israel"**
**NKJV** **"that a hardening in part has happened to Israel"**
**NRSV** **"a hardening has come upon part of Israel"**
**TEV** **"that the stubbornness of the people of Israel is not permanent"**
**JB** **"One section of Israel has become blind"**

Այս հաստատումը պետք է որ վերաբերի ամբողջ 11-րդ գլխին: Հրեաների մեջ միշտ եղել և կլինեն ճշմարիտ հավատացողներ: Աստված թույլ տվեց այս մասնակի կուրությունը (հհ. 8-10) որովհետև հրեաները մերժեցին Հիսուսին, և սա մտնում էր ամբողջ մարդկությանը փրկելու Աստծո ծրագրի մեջ: Աստված խոստացավ փրկություն բոլոր մարդկանց (հմմտ. Ծննդ. 3:15): Նա ընտրեց Աբրահամին բոլոր մարդկանց հասնելու համար (հմմտ. Ծննդ. 12:3): Նա ընտրեց Իսրայելին բոլոր մարդկանց հասնելու համար (հմմտ. Ել. 19:5-6): Իսրայելը չկատարեց իր առաքելությունը հպարտության, անհավատարմության և անհավատության պատճառով: Աստված ուզում էր հասնել հեթանոս աշխարհին Իր օրհնած Իսրայելի միջոցով (հմմտ. 2 Օրին. 27-29): Իսրայելը չկարողացավ Ուխտը հավատարմությամբ պահել, ուստի Աստված ժամանակավոր պատժի արժանացրեց նրան: Հիմա Աստված վերցրել է այս պատիժը, որպեսզի իրականացնի հավատքի միջոցով մարդկության փրկության Իր բուն նպատակը (հմմտ. հհ. 30-31):

▣ **«մինչեւ որ հեթանոսների լրութիւնը մտնէ»** Այս նույն տերմինը (*pleroma*) օգտագործված է հ. 12-ում հրեաների համար: Երկու համարներն էլ խոսում են Աստծո կանխագիտության և ընտրության

մասին: «Մինչև» կապը խոսում է այս հեթանոսներին փրկելու ժամանակաշրջանի ժամանակի սահմանափակման մասին (հմմտ. Ղուկ. 21:24):

**11:26 «բոլոր Իսրայէլը կապրի»** Կան երկու հնարավոր մեկնաբանություններ (1) Սա վերաբերվում է Իսրայել ազգին—ոչ յուրաքանչյուր առանձին անհատ հրեայի, այլ մեծամասնությանը, այն էլ որոշակի պատմական ժամանակահատվածում: (2) Ինչ որ իմաստով սա վերաբերվում է հոգևոր Իսրայելին՝ Եկեղեցուն: Այս գաղափարը Պողոսն օգտագործում է Գաղ. 6:16-ում: Համար 12-ում « նրանց(հրեաների) լիութիւնը» և համար 25-ում « հեթանոսների լրութիւնը» իմաստով զուգահեռ են իրար: «Բոլոր» բառը Աստծո ընտրության իմաստով է և ոչ թե յուրաքանչյուր անհատի իմաստով: Կգա այն օրը երբ կիրականանա ծիթենու խոստումը:

Որոշ մեկնաբաններ ասում են, որ սա պետք է որ վերաբերի միայն Իսրայել ազգին, քանի որ (1) 9-11-րդ գլուխների կոնտեքստը; (2) Հին Կտակարանի մեջբերումները հհ. 26-27; և (3) սա հստակ հաստատվում է հ. 28: Աստված դեռևս սիրում է և փափագում է փրկել Աբրահամի բնական ճյուղին: Բայց նրանք պետք է գան Հիսուս Քրիստոսին հավատալով (Զաք. 12:10):

Այս կամ ցանկացած ուրիշ տեքստեր չեն տալիս այս հարցի պատասխանը; արդյոք այն հրեաներին, որոնք «խստացվել էին», վերջին ժամանակներում առիթ կտրվի արձագանքելու Աստծո կանչին: Մենք ամերիկացիներս համապատասխան մեր մշակույթի ավելի հակված ենք անհատական հարցեր տալուն, բայց Աստվածաշունչը կենտրոնանում է ամբողջի վրա: Այս բոլոր հարցերը պետք է հանձնենք Աստծուն: Նա միշտ արդար կլինի Իր արարչագործության հետ, որին Նա շատ է սիրում:

▣ **« ինչպէս գրուած է»** Այստեղ երկու մեջբերումներ կան Սեպտուագինտից Ես. 59:20-21(հ. 26) և 27:9 (հ. 27): Փրկության մեխանիզմը կլինի Հիսուս Մեսիայի վրա ունեցած հավատքով: Գոյություն ունի միայն սա, միակն ու անփոխարինելի ծրագիրը, երկրորդը չկա: Փրկության միայն մեկ ճանապարհ կա (հմմտ. Հովհ 10:7-18; 11:25-29;14:6):

**11:27** Ես. 27:9-ը, որը մեջբերված է հ. 27-ում, Իսրայելի վերականգնումը Խոստացյալ Երկրում միավորում է (հհ. 1-11) իր ավանդական թշնամու հրավերքի հետ (հեթանոս ազգերը) փրկվածների մեջ ներգրավվելու (հմմտ. հհ. 12-13): Եթե այս վերականգնումը հասկանանք բառացիորեն, ուրեմն այն տեղի կունենա հազարամյայի ժամանակ, որ կատարվի մարգարեությունը: Եթե այն պատկերավոր լեզու է, ուրեմն նպատակը կլինի Նոր Ուխտը, Ավետարանի խորհուրդը, որին միացված են հրեաներն ու հեթանոսները Աստծո Մեսիայի հավատքով (հմմտ. Եփ. 2:11-3:13): Սա դժվար է որոշել: Որոշ հինկտակարանային մարգարեություններ վերաբերում են Նոր Ուխտի

եկեղեցուն: Աստված հավատարիմ է Իր խոստումներին, նույնիսկ այն ժամանակ երբ մարդիկ հավատարիմ չեն (հմմտ. Եզ. 36:22-36):

**11:28** Այս համարը արտացոլում է ընտրության երկու առանձնահատկությունները (1) Հին Կտակարանում ընտրությունը ծառայության համար էր: Աստված ընտրում էր մարդկանց, որոնց միջոցով կիրականացներ մարդկության փրկագործման Իր նպատակները; (2) Նոր Կտակարանի ընտրությունը կապված է Ավետարանի և հավիտենական փրկության հետ: Աստծո պատկերով ստեղծված բոլոր մարդկանց փրկությունը միշտ եղել է Աստծո նպատակը (հմմտ. Ծննդ. 3:15):

Աստված հավատարիմ է Իր խոստումներին: Սա ճշմարտություն է թե Հին Կտակարանի հավատացյալների համար, և թե Նոր Կտակարանի սուրբերի: Բանալին Աստծո հավատարմությունն է, և ոչ թե մարդու, Աստծո ողորմությունը և ոչ թե մարդու գործը: Ընտրությունը մարդկանց օրհնություն լինելու համար է , և ոչ թե փրկության մուտքը փակելու միջոց:

▣ **« սիրելի են հայրերի համար »** Սա Ել. 20:5-6 և 2 Օրին. 5:9-10 և 7:9-ի խոստումն է: Ընտանիքները օրհնվում են նախորդ սերունդների հավատքի պատճառով: Իսրայելը օրհնվեց հավատարիմ նախահայրերի պատճառով (հմմտ. 2 Օրին. 4:37; 7:8; 10:15): Այն, որ Մեսիան պետք է գար Հուդայի սերնդից, նույնպես խոստում էր տրված Դավիթին (հմմտ. II Թագ. 7): Ինչևէ, պետք է նշել, որ նույնիսկ «հավատարիմները» չկարողացան ամբողջությամբ պահել Օրենքը (հմմտ. Եզ. 36:22-36): Հավատք—անձնական, ընտանեկան, բայց ոչ կատարյալ հավատք ընդունելի է Աստծո կողմից և պոտենցիալ կերպով պետք է փոխանցվի սերնդե սերունդ (հմմտ. I Կոր. 7:8-16):

**Արևելահայերեն «Որովհետեւ Աստուծոյ շնորհքը եւ կոչումը զղջալ չունի»**
**Արևմտահայերեն «Վասն զի Աստուծոյ պարգեւներն ու կոչումը առանց զղջալու են»**

11:29
NASB, NKJV,
NRSV “for the gifts and the calling of God are irrevocable”
TEV “For God does not change his mind about whom he chooses and blesses”
JB “God never takes back his gifts or revokes his choice”

Սա չի վերաբերվում մարդկանց հոգևոր պարգևներին (հմմտ. I Կոր. 12), այլ Աստծո փրկության Հին և Նոր Կտակարանների խոստումներին: Ընտրությունը իրական է: Աստծո հավատարմությունը Իսրայել ազգի հույսն է (հմմտ. Մաղ. 3:6):

**11:30-32** Այս համարները Աստծո ծրագրերի և նպատակների ամփոփումն են; (1) նրանք միշտ հիմնված են Նրա ողորմության վրա (տես ծանուցում 9:15-16), և ոչ թե քմահաճ,ինքնակամ վճռականության վրա: «Ողորմություն» տերմինը այս մեծ կոնտեքստում օգտագործված է չորս

անգամ (հմմտ. 9:15,16,18,32): (2) Աստված դատապարտեց բոլոր մարդկանց: Թե հրեաները և թե հեթանոսները մեղավոր են (հմմտ. 3:9,19,23; 5:11): (3) Աստված օգտագործել է մարդու կարիքն ու անկարողությունը, որպես հնարավորություն ցույց տալու Իր ողորմությունը բոլոր մարդկանց (հմմտ. հ. 22): Եվ նորից կոնտեքստում «բոլորը» պետք է դիտվի հհ. 12 և 25-26 լույսի ներքո: Ոչ բոլոր մարդիկ կընդունենն Աստծո առաջարկը, բայց բոլորին է ընձեռնված փրկվելու հնարավորությունը (հմմտ. 5:12-21; Հովհ. 3:16): Ով Աստված թող այդպես լինի…

**11:30 և 31 «եւ հիմա»** Սա խստորեն ցույց էր տալիս Իսրայել ազգի հոգևոր դարձի գալը Հիսուսին հավատալով: Ինչպես հեթանոսների «անհավատությունը» հաղթահարվել էր Աստծո ողորմությամբ, այնպես էլ կլինի հրեաների «անհավատությունը»:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 11:33-36**
[33]Ով Աստուծոյ մեծութեան եւ իմաստութեան եւ գիտութեան խորութիւնը. ինչպէս անքննելի են նորա դատաստանները, եւ անհասկանալի են նորա ճանապարհները: [34]Որովհետեւ ո՞վ գիտաց Տիրոջ միտքը, կամ ո՞վ եղաւ նորա խորհրդակից: [35]Կամ ո՞վ նորան առաջուց մի բան տուաւ, որ նորա հատուցումն առնէ նորանից: [36]Որովհետեւ նորանից եւ նորանով եւ դէպի նա է ամեն բան. նորան փառք յաւիտեան. ամէն:

**NASB (UPDATED) TEXT: 11:33-36**
[33]**Oh, the depth of the riches both of the wisdom and knowledge of God! How unsearchable are His judgments and unfathomable His ways!** [34]**FOR WHO HAS KNOWN THE MIND OF THE LORD, OR WHO BECAME HIS COUNSELOR?** [35]**OR WHO HAS FIRST GIVEN TO HIM THAT IT MIGHT BE PAID BACK TO HIM AGAIN?** [36]**For from Him and through Him and to Him are all things. To Him *be* the glory forever. Amen.**

**11:33-36** Սա Պողոսի ամենահիասքանչ հանպատրաստի Աստծո օրհներգություններից օրինակներից մեկն է: Պողոսը հիացած է Աստծո ճանապարհներով; ուխտի հավատարմությունը, ուխտի ավելացումը և իրականացումը:

**11:33 «մեծութեան»** Պողոսի համար սա սիրված իդիոմա է (հմմտ. 2:4; 9:23; 10:12; 11:12,33; Եփ. 1:7,8; 2:7; 3:8,16; Փիլ. 4:19; Կող. 1:27): Ավետարանի էությունը և մարդկության հույսը Աստծո էության և ծրագրի առատ ողորմածությունն է (հմմտ. Ես. 55:1-7):

▣ **«ինչպէս անքննելի են նորա դատաստանները, եւ անհասկանալի են նորա ճանապարհները»** Սա շատ յուրահատուկ օրհներգություն է 9-11գլուխների պարադոքսալ ճշմարտությունների (հմմտ. Ես. 55:8-11):

**11:34** Այստեղ կա մեջբերում Սեպտուագինտից Ես. 40:13-14-ը, որտեղ Աստված ազատագրում է Իր ժողովրդին՝ նրանց գերությունից ետ բերելով: I Կոր. 2:16-ում Պողոսը մեջբերում է այս նույն հատվածը, բայց «Տեր» տիտղոսը տալով ինկատի ունի Հիսուսին:

**11:35** Սա Հոբ 35:7 կամ 41:11-ի ազատ շարադրանքն է:

**11:36 «նորանից եւ նորանով եւ դէպի նա է ամեն բան»** Այս արտահայտությունները վերաբերում են Հայր Աստծուն այս կոնտեքստում (հմմտ. I Կոր. 11:12), բայց կան շատ նմանատիպ ուրիշ Նոր Կտակարանի հատվածներ, որ վերաբերում են Որդի Աստծուն (հմմտ. I Կոր. 8:6; Կող. 1:16; Եբր. 2:10): Պողոսը հաստատում է, որ բոլոր բաները Աստծուց են առաջացել և բոլորը վերադառնում են Նրան:

- **«նորան փառք յաւիտեան»** Սա Նոր Կտակարանի օրհնության աստվածության առանձնահատկությունն է: Սա վերաբերում էր (1) երբեմն Հորը (հմմտ. 16:27; Եփ. 3:21; Փիլ. 4:20; I Պետ. 4:11; 5:11; Հուդա 25; Հայտ. 5:13; 7:12); և (2) երբեմն Որդուն (հմմտ. I Տիմ. 1:17; II Տիմ. 4:18; II Պետ. 3:18; Հայտ. 1:16): Տես լրիվ նշում/ծանուցում 3:23:
- **«Ամեն»** Տես հատուկ թեմա 1:25.

## ՔՆՆԱՐԿՎՈՂ ՀԱՐՑԵՐ

Սա սերտողության համար ուղեցույց հանդիսացող մեկնաբանություն է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաչնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ:

1. Ինչպե՞ս Իսրայելը վրիպեց/ձեռքից բաց թողեց Աստծո փրկության ճանապարհը:
2. Ի՞նչ երկու պատճառներ է Պողոսը տալիս ապացուցելու համար, որ Աստված չի մերժել Իսրայելին:
3. Ինչու՞ Աստված խստացրեց հրեաների սրտերը: Ինչպե՞ս
4. Ի՞նչ է նշանակում «մնացորդ» բառը հրեական գաղափարով (2-5հh.)
5. Սահմանիր «խորհուրդ, գաղտնիք» տերմինը Նոր Կտակարանում:
6. Ի՞նչ է նշանակում 11:26-ը: Ինչու՞: Ինչպե՞ս է դա կապվում 9:6-ին:
7. Ի՞նչ զգուշացում է Պողոսը տալիս հեթանոս հավատացյալներին (17-24hh.)

# ԹՈՒՂԹ ՈՒՂՂՎԱԾ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

## ԳԼՈՒԽ 12

| ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ | | | | |
|---|---|---|---|---|
| UBS[4] | NKJV | NRSV | TEV | JB |
| Նոր կյանք Քրիստոսում | Կենդանի պատարագ Աստծուն | Բարեպաշտ կյանք | Կյանք Աստծուն ծառայելու մեջ | Հոգևոր երկրպագություն |
| 12:1-2 | 12:1-8 | 12:1-2 | 12:1-2 | 12:1-2 |
| | | | | Խոնարհություն և բարեգործություն |
| 12:3-8 | | 12:3-8 | 12:3-8 | 12:3-8 |
| Քրիստոնեական կյանքի կանոնները | Վարվիր քրիստոնեավայել կերպով | Խրատներ,հոր դորներ | | Բարեգործություն բոլորի հանդեպ ներառյալ թշնամիների |
| 12:9-21 | 12:9-21 | 12:9-13 | 12:9-13 | 12:9-13 |
| | | 12:14-21 | 12:14-16 | 12:14-21 |
| | | | 12:17-21 | |

**ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ** (տես էջ **vii**)

*Հետևել բուն հեղինակի մտադրությանը պարբերությունների մակարդակով*

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Ճանաչիր թեմաները: Համեմատիր քո թեմայի բաժանումները վերը նշված 5 թարգմանությունների հետ: Բաժանումները ներշնչված չեն, բայց դա բանալի է հետևելու բուն հեղինակի մտադրությանը, որը մեկնաբանության սիրտն է: Յուրաքանչյուր պարագրաֆ ունի մեկ և միայն մեկ թեմա:

Մեկ շնչով կարդացեք այս գլուխը: Ուրվագծեք հիմնական թեմաներն ու թեման արտահայտեք մեկ նախադասությամբ:

1. Առաջին պարագրաֆ

2. Երկրորդ պարագրաֆ

3. Երրորդ պարագրաֆ

4. և այլն

## ԿՈՆՏԵՔՍՏԻ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ հh.1-8

Ա. Այստեղ սկսվում է Հռոմեացիս թղթի գործնական բաժինը (12:1-15:13): Պողոսի նամակներից շատերը փաստաթղթեր են, ուստի նրանք ունեն թե վարդապետական և թե կիրառական բաժիններ: Պողոսը գրում էր որոշակի խնդիր կամ ճգնաժամային իրավիճակ լուծելու նպատակով: Քանի որ Հռ. 12:1-8 հանդիսանում է այնքան հիանալի վարդապետական հարցերի համառոտ ամփոփումը, ուստի և դրա էթիկական և գործնական բաժինը հավասարաչափ զորավոր է և էական:

Բ. Աստվածաբանությունն առանց կյանքի մեջ կիրառելու Աստծուց չէ (հմմտ. Մաթ. 7:24-27; Հովh. 13:17; Հռ. 2:13; Հակոբ.1:22-23, 25; 2:14-26):

Գ. 1-2 հh. ամբողջ գործնական բաժնի ներածությունն է: Սա Հոգով առաջնորդվելու կյանքի հիմքն է:

Դ. 3-8 հh. քննարկում են հոգևոր պարգևների մասին: Մեր համատեղ պտղաբերությունը և օգտակարությունը Քրիստոսի համար պետք է արտահայտվի ծառայելով Աստծուն (հմմտ. 2 Օրին. 6:4-5; Մաթ. 22:37) և ուրիշներին (հմմտ. Ղև. 19:18; Մաթ. 19:19): Այս պարգևներն ընդգծում են մեր միաբանությունը Քրիստոսում և զանազան պարգևներով օժտված լինելը (հմմտ. Եփ. 4:1-10): Հավատացյալները միշտ պետք է ձգտեն միաբանության և ոչ թե եզակիության: Աստված սպառազինում է մեզ մեկս մյուսին ծառայելու համար (հմմտ. I Կոր. 12:7,11):

## ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ

**NASB (UPDATED) TEXT: 12:1-2**

[1]Therefore I urge you, brethren, by the mercies of God, to present your bodies a living and holy sacrifice, acceptable to God, *which* is your spiritual service of worship. [2]And do not be conformed to this world, but be transformed by the renewing of your mind, so that you may prove what the will of God is, that which is good and acceptable and perfect.

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 12:1-2**
[1]Արդ աղաչում եմ ձեզ, եղբարք, Աստուծոյ ողորմութիւնովը, որ ձեր մարմինները ներկայացնէք կենդանի, սուրբ եւ Աստուծոյ ընդունելի պատարագ, որ է ձեր բանաւոր պաշտօնը: [2]Եւ մի կերպարանուիք այս աշխարհիքի կերպարանքովը. այլ նորոգուեցէք ձեր մտքի նորոգութեամբը, որ դուք քննէք թէ ի՞նչ է Աստուծոյ կամքը՝ բարին, հաճելին եւ կատարեալը:

▣ **«Արդ»** Պողոսն օգտագործեց այս տերմինը Հռոմեացիներին ուղղված թղթում հատուկ կարևոր միջանկյալ հատվածներում Ավետարանի ճշմարտությունները ներկայացնելու ժամանակ: 5:1-ից նա ամփոփեց «հավատքով արդարացումը», 8:1-ից ամփոփեց հավատացյալների կապը մեղքի հետ, նրանց սրբացման մասին; և 12:1-ից խոսում է այն մասին, թե արդարացումն ու սրբացումը ինչպես են գործնականորեն կապված հավատացյալների առօրյա կյանքի հետ:

**Արևելահայերեն «Արդ աղաչում եմ ձեզ»**
**Արևմտահայերեն «Արդ՝ կաղաչեմ ձեզ»**

12:1

| | |
|---|---|
| NASB | "I urge you" |
| NKJV | "I beseech you" |
| NRSV, TEV | "I appeal to you" |
| JB | "I beg you" |

Այս արտահայտությունը մեղմ է, և միաժամանակ կտրուկ: Սա ճիշտ կյանքով ապրելու կոչ է: Պողոսը հաճախ է օգտագործում այս տերմինը (հմմտ. 12:1;15:30; 16:17; I Կոր. 1:10; 4:16; 16:15; II Կոր. 2:8; 5:20; 6:1; 10:1; 12:8; Եփ. 4:1; Փիլ. 4:2; I Թես. 4:10; I Տիմ. 1:3; Փիլիմոն. 9-10 հհ):

▣ **«եղբարք»** Պողոսը հաճախ է օգտագործում այս բառը, երբ նոր թեմայի է անցնում:

▣ **«Աստուծոյ ողորմութիւնովը»** LXX մեջ այսպես նկարագրվում է Աստծո կարեկցող բնությունը (հմմտ. Ել. 34:6): Այստեղ այս արտահայտությունը վերաբերում է 1-11 գլուխների վարդապետական վերլուծության զարգացմանը: Հռոմեացիս թղթում կա ակնհայտ շեշտադրություն Աստծո «ողորմության» վրա (երկու իմաստներով էլ *oikīeirō* և *eleeō*), կապված մեղավոր մարդկության հետ (հմմտ. 9:15,16,18,23; 11:30,31,32; 12:8; 15:9): Քանի որ Աստծո շնորհքն ու ողորմությունը ձրի են

առաջարկվում, հավատացյալները պետք է ապրեն բարեպաշտ կյանքով (հմմտ. Եփ. 1:4; 2:10) Աստծուն երախտապարտ լինելով, և ոչ թե իր արժանիքների վրա հենվելով (հմմտ. Եփ. 2:8-9):

▣ **«ներկայացնէք»** Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿԻ ԱՆՈՐՈՇ ՁԵՎՆ է: Այս բառը «զոհաբերությանը» վերաբերվող մի քանի տերմիններից մեկն է: պատարագ, հ. 1; սուրբ, հ. 1; հաճելի, հ. 1. Այս նույն գաղափարը արտահայտված է 6:13,16,19-ում: Մարդիկ իրենց անձերը կամ Աստծուն են տալիս կամ սատանային: Ինչպես Քրիստոսն Իր անձը անզուգական կերպով տվեց Հոր կամքը կատարելու համար, մեռնելով խաչի վրա, այնպես էլ Իր հետևորդները պետք է նմանվեն Նրա ինքնամերժող կյանքին (հմմտ. II Կոր. 5:14-15; Գաղ. 2:20; I Հովհ. 3:16):

▣ **«** ձեր մարմինները» Քրիստոնեությունն այնքան տարբեր է հունական փիլիսոփայությունից, որը համարում էր, որ ֆիզիկական մարմինը չար է: Այո, այն փորձությունների դաշտ է, բայց մարմինն ինքնին չեզոք է: «Մարմին» բառը իմաստային առումով զուգահեռ է «միտք» բառին հ. 2-ում: Հավատացյալներն իրենց ամբողջ էությունն ու անձը պետք է նվիրեն Աստծուն (հմմտ. 2 Օրին. 6:5; I Կոր. 6:20), ինչպես նախկինում իրենց նվիրել էին մեղքին (հմմտ. Հռ. 6):

▣ **«կենդանի»** Սրանում էր արմատական տարբերությունը մեռած զոհաբերություններից, որոնք կատարվում էին հրեական կամ հեթանոսական տաճարներում (հմմտ. 6:13; Գաղ. 2:20):

Սա ոչ մի կապ չունի ասկետիզմի հետ (կրոնական նկատառումներից ելնելով, դաժանաբար են վարվում մարմնի հետ): Սա մարմնի մեկուսացում, պատիժ կամ ամուրիություն չէ, այլ Աստծուն ծառայելու և քրստոսանման սեր ունենալու ակտիվ կյանք:

▣ **«սուրբ պատարագ»** «Սուրբ» տերմինը նշանակում է «առանձնացված Աստծո ծառայության համար»: Տվյալ կոնտեքստում այս բառի իմաստը կենտրոնացված է հավատացյալի նվիրվածության և պատրաստակամության վրա՝ Աստծո կողմից և Իր նպատակների համար օգտագործվելու նպատակով:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՍՈՒՐԲ**

I. Գործածությունը Հին Կտակարանում

Ա. (*kadosh*) տերմինի ստուգաբանությունը անորոշ է, հնարավոր է քանանական: Շատ հնարավոր է, որ արմատի մասը (այսինքն *kd*) նշանակում է « բաժանել, սահման դնել»:

Այստեղից առաջանում է հայտնի սահմանումը «առանձնացված (քանանական մշակույթից, հմմտ. 2 Օրին. 7:6; 14:2,21; 26:19) Աստծո գործածության համար:

Բ. Տերմինը կապված է պաշտամունքային առարկաների, վայրերի, որոշակի ժամանակների և մարդկանց հետ, որոնք կապ ունեն այս ամենի հետ: Այն չի հանդիպում Ծննդոց գրքում, բայց լայն կիրառություն է ունենում Ելից, Ղևտացոց և Թվոց գրքերում:

Գ. Մարգարեական գրականության մեջ (հատկապես Եսայիա և Ովսիա) արդեն առկա է անձնական տարրը, բայց մղված չէ առաջին պլան: Այն դառնում է Աստծո էության անվանումը, նշանակությունը (հմմտ. Ես. 6:3): Աստված սուրբ է: Նրա անունը հայտնում է Իր առանձնահատկության, էության մասին: Եվ Իր ժողովուրդը, որը նշանակված է հայտնելու Նրա էությունն ու կերպարը Իր կարիքն ունեցող աշխարհում, նույնպես սուրբ է (եթե նրանք հնազանդվեն և հավատքով հետևեն ուխտին):

Դ. Աստծո սերն ու ողորմությունը անբաժանելի են ուխտերի աստվածաբանական գաղափարներից, արդարությունից և Նրա էական կերպարից: Այստեղ կա հակասություն Աստծո և պիղծ, ընկած, ըմբոստ մարդկության միջև: Մի շատ հետաքրքիր հոդված կա կապված Աստված որպես «ողորմած» և Աստված որպես «սուրբ» լինելու միջև եղած կապի մասին Ռոբերտ Բ. Գորդլսթոունի «Հին Կտակարանի հոմանիշները» գրքում [Robert B. Girdlestone, *Synonyms of the Old Testament* ], էջ. 112-113:

II. Գործածությունը Նոր Կտակարանում

Ա. Նոր Կտակարանի հեղինակները հրեական մտածելակերպ ունեին (բացի Ղուկասից), որը քոյնե հունարենի ազդեցության տակ էր գտնվում (այսինքն Սեպտուագինտի): Հին Կտակարանի հունարեն թարգմանությունն էր, որ կառավարում էր նրանց բառարանը, և ոչ թե դասական հունարեն գրականությունը, մտածողները կամ կրոնը:

Բ. Հիսուսը սուրբ է, որովհետև Նա Աստծուց է և Աստծո պես է (հմմտ. Ղուկ. 1:35; 4:34; Գործք 3:14; 4:27,30): Նա է Սուրբը և Արդարը (հմմտ. Գործք 3:14; 22:14): Հիսուսը սուրբ է, որովհետև Նա անմեղ է (հմմտ. Հովհ. 8:46; II Կոր. 5:21; Եբ. 4:15; 7:26; I Պետ. 1:19; 2:22; I Հովհ. 3:5):

Գ. Քանի որ Աստված սուրբ է, Նրա զավակները նույնպես պետք է սուրբ լինեն (հմմտ. Ղև. 11:44-45; 19:2; 20:7,26; Մաթ. 5:48; I Պետ. 1:16): Քանի որ Հիսուսը սուրբ է, Իր հետևորդները նույնպես պետք է սուրբ լինեն (հմմտ. Հռ. 8:28-29; II Կոր. 3:18; Գաղ. 4:19; Եփ. 1:4; I Թես. 3:13; 4:3; I Պետ. 1:15): Քրիստոնեաները փրկվում են ծառայելու և քրիստոսանման լինելու համար:

▣ **«Աստուծոյ ընդունելի»** Հին Կտակարանում սա վերաբերվում է համապատասխան զոհաբերությանը (հմմտ. հ. 2): Սա նման է «անարատ» բառի իմաստին, մարդու հետ կապված (հմմտ. Ծննդ. 6:9; 17:1; 2 Օրին. 18:13; Հոբ 1:1):

**Արևելահայերեն «որ է ձեր բանաւոր պաշտօնը»**
**Արևմտահայերեն «որ է ձեր բանաւոր պաշտօնը»**

▣

**NASB** "which is your spiritual service of worship"
**NKJV** "which is your reasonable service"
**NRSV** "which is your spiritual worship"
**TEV** "This is the true worship that you should offer."
**JB** "in a way that is worthy of thinking beings"

Այս տերմինը [*logikos*] առաձացել է *logizomai* բառից, որը նշանակում է «դատել, մտածել, խորհել» (հմմտ. Մարկ. 11:31; I Կոր. 13:11; Փիլ. 4:8): Այս կոնտեքստում այն կարող է նշանակել խելացի, բանական կամ խոհեմ, ողջամիտ: Բայց տերմինը նաև օգտագործվում էր «հոգևոր» իմաստով, ինչպես I Պետ. 2:2-ում: Էությունն այն է, որ անձը իրապես հասկանալով իր անձը նվիրի, որը տարբերվում է մեռած, զոհաբերած կենդանու մեռած կամ ծիսական արարողությունից: Աստված ուզում է մեր կյանքերը լինեն, լի սիրով և ծառայությամբ, և ոչ թե ձևական ծեսեր, որոնք ոչ մի կերպ չեն ազդում կյանքի ապրելակերպի վրա:

**12:2 «Եւ մի կերպարանուիք»** Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է (կամ ԿԱՏԱՐՅԱԼ ՉԵԶՈՔ ՍԵՌ) ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿ-ով, որը սովորաբար նշանակում է արդեն իսկ գործընթացի մեջ եղող գործողության դադար: Այս համարում հակասություն կա, ինչպես Փիլ. 2:6-8, արտաքին ձևի փոփոխության (*schema*, 2:8) և ներքին անփոփոխ էության միջև (*morphe*, 2:6-7): Հավատացյալներին կոչ է արվում չշարունակել նմանվել փոփոխվող, ընկած աշխարհի համակարգին (անցյալ ըմբոստ ժամանակ), որի մեջ նրանք դեռ ֆիզիկապես մաս են կազմում, բայց կտրուկ փոխվել են դարձել քրիստոսանման (Սուրբ Հոգու նոր դարաշրջանը):

▣ **«այս աշխարհիքի»** Այս տերմինի բառացի իմաստն է՝ «դար»: Հրեաները երկու դար էին տեսնում (հմմտ. Մաթ. 12:32; Մարկ. 10:30; Ղուկ. 20:34-35), ներկա չար դարը (հմմտ. Գաղ. 1:4; II Կոր. 4:4; Եփ. 2:2) և գալիք դարը (հմմտ. Մաթ. 28:20; Եբ. 1:3; I Հովh. 2:15-17): Հավատացյալներն ապրում են

լարվածությամբ լեցուն ժամանակի մեջ, որտեղ այս երկու  դարերը զարմանալիորեն միմյանց մասամբ ծածկում են: Եվ քանի որ կա Քրիստոսի երկու գալուստ, հավատացյալներն ապրում են «արդեն» և «դեռ ոչ» լարվածության մեջ, Աստծո Թագավորությունը  թե նրկայում է և թե դեռ գալիքում:

## ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ:  ԱՅՍ ԴԱՐԸ ԿԱՄ ԳԱԼԻՔ ԴԱՐԸ

Հին Կտակարանի մարգարեները ապագան պատկերացնում էին որպես ներկայի ընդարձակում: Նրանց համար ապագան դա Իսրայելի աշխարհագրական սահմանների վերկանգնումն էր:  Ինչևէ, նույնիսկ նրանք տեսան նոր օր (հմմտ. Ես. 65:17; 66:22):  Քանի որ Աբրահամի սերունդները շարունակում էին մերժել ՅԱՀՎԵ-ին (նույնիսկ գերությունից հետո) հրեական միջկտակարանային վախճանաբանական/ապոկալիպտիկ գրականության մեջ (այն է, I Ենովք, IV Եզրա, II Բարուք)  նոր օրինակ/պարադիգմ զարգացավ: Այս գրվածքները  բաժանություն են դնում երկու դարաշրջանների միջև՝ ներկա չար դարաշրջան, որտեղ տիրում է Սատանան և գալիք արդարության դարաշրջանը, որը տիրում է Սուրբ Հոգին և հաղթանակը, որը կլինի Մեսիայի գալուստով  (հաճախ ուժեղ և գործուն պատերազմող):

Աստվածաբանության (վախճանաբանություն) այս բնագավառում կա համապատասխան զարգացում: Աստվածաբանները սա կոչում են «զարգացող, պրոգրեսիվ հայտնություն»: Նոր Կտակարանը հաստատում է երկու դարաշրջանների  այս նոր տիեզերական իրականությունը (այն է, ժամանակավոր դուալիզմ):

| Հիսուս | Պողոս | Եբրայեցիս |
|---|---|---|
| Մաթ. 12:32 | Հռ. 12:2 | 1:2 |
| Մաթ. 13:22 և 29 | I Կոր. 1:20; 2:6,8; 3:18 | 6:5 |
| Մարկ. 10:30 | II Կոր. 4:4 | 11:3 |
| Ղուկ.  16:8 | Գաղ. 1:4 | |
| Ղուկ. 18:30 | Եփ. 1:21; 2:1,7; 6:12 | |
| Ղուկ.  20:34-35 | I Տիմ. 6:17 | |
| | II Տիմ. 4:10 | |
| | Տիտոս 2:12 | |

Նոր Կտակարանի աստվածաբանության մեջ այս երկու հրեական դարաշրջանները մասամբ իրար ծածկել են, որովհետև Մեսիայի երկրոդ գալստյան մասին կան անհասկանալի և անսպասելի կանխագուշակություններ: Հիսուսի մարմնացումը իրականացրեց Հին Կտակարանի

մարգարեությունները, որը սկիզբ դրեց նոր դարի: Ինչևէ, Հին Կտակարանը Նրա գալուստը դիտում էր որպես Դատավոր և Նվաճող, սակայն Նա եկավ նախ որպես Տառապող Ծառա (հմմտ. Ես. 53), խոնարհ ու հեզ (հմմտ. Զաք. 9:9): Նա կվերադառնա զորությունով ինչպես Հին Կտակարանը մարգարեացավ (հմմտ. Հայտ. 19): Այս մարգարեության իրականացման երկու փուլերը ցույց են տալիս Աստծո Թագավորության ներկա գոյությունը (հռչակված է նրա սկիզբը), բայց նաև գալիք թագավորությունը (դեռ չավարտած): Սա Նոր Կտակարանի հակասությունը «արդեն », բայց «դեռ ոչ»:

▣ **«մի կերպարանուիք»** Այս տերմինի քերականական ձևը կարող է լինել կամ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՉԵԶՈՔ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, «շարունակեք կերպարանափոխել ինքդ ձեզ» կամ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, «շարունակեք կերպարանափոխվել»: Սա նաև ճիշտ է 2b-ի «կերպանուիք»:Նմանատիպ հակասություն կարելի է տեսնել՝ համեմատելով Եզ. 18:31-ը (մարդկային պարտավորությունն ու գործողությունը) Եզ 36:26-27-ի հետ (աստվածային պարգև): Երկուսն էլ անհրաժեշտ են:

Այս նույն բառի ձևը «կերպարանափոխվել» օգտագործվում է Հիսուս Քրիստոսի հետ կապված Այլակերպության ժամանակ (հմմտ. Մաթ. 17:2), որտեղ Նրա ճշմարիտ էությունն է հայտնվում: Այս ճշմարիտ աստվածային էությունը (հմմտ. II Պետ. 1:3-4) չի երևում ամեն հավատացյալի մեջ (հմմտ. II Կոր. 3:18; Եփ. 4:13):

▣ **«նորոգուեցէք ձեր մտքի նորոգութեամբը»** Այս տերմինը առաջացել է հունարեն արմատից, որը նշանակում նոր որակի իմաստով, (*kainos*), ոչ թե նոր ժամանակի իմաստով (*chronos*): Հրեաների համար տեսնելու և լսելու զգայարանները հոգու պատուհաններն էին: Մարդ ինչի մասին մտածում է, դրան էլ նմանվում է: Հավատացյալի դարձի գալու հետ, քանի որ Սուրբ Հոգին է բնակվում նրա մեջ, նրանք ունենում են նոր հայացքներ կյանքի վերաբերյալ (հմմտ. Եփ. 4:13,23; Տիտոս 3:5): Այս նոր աստվածաշնչյան աշխարհայացքը, բնակվող Սուրբ Հոգու հետ միասին, փոխում է նորադարձի միտքն ու ապրելակերպը: Հավատացյալներն իրականությանը նայում են ամբողջությամբ ուրիշ կերպ, որովհետև նրանց միտքը լցված է Սուրբ Հոգով: Վերստին ծնված և Հոգով առաջնորդված միտքը տանում է նոր ապրելակերպի:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՆՈՐՈԳԵԼ(*ANAKAINŌSIS*)**

Այս հունարեն տերմինը իր տարբեր ձևերի մեջ(*anakainoō, anakainizō*) ունի երկու հիմնական իմաստ

1. «այնպես անել, որ ինչ որ մի բան դառնա նոր և ուրիշ (այն է, ավելի լավ)» - Հռ. 12:2; Կող. 3:10
2. «փոփոխություն մտցնել նախկին գերադասելի վիճակի մեջ» - II Կոր. 4:16; Եբր. 6:4-6

(վերցված է Լաուվ և Նիդայի «Հունարեն-Անգլերեն Բառարան»-ից [Louw and Nida's *Greek-English Lexicon*,] հատ. 1, էջ. 157, 594)

Մուլտոն և Միլիգն «Հունարեն Նոր Կտակարանի Բառարան» [Moulton and Milligan, *The Vocabulary of the Greek Testament*,], գրքում ասում են, որ այս տերմինը (այն է, *anakkainōsis*) հունարեն գրականության մեջ չկա մինչև Պողոսը: Հնարավոր է, որ Պողոսն ինքն է դա ստեղծել (էջ 34):

Ֆրենկ Ստեգի «Նոր Կտակարանի աստվածաբանություն» [Frank Stagg, *New Testament Theology*], գրքում կա մի հետաքրքիր մեկնաբանություն.

> «Վերստին ծնունդն ու նորոգումը պատկանում են միայն Աստծուն: *Anakkainōsis*, «նորոգություն» բառը գոյական է և դա ենթադրվող գործողություն է. Այն օգտագործվում է Նոր Կտակարանում բայական ձևերի հետ, նկարագրելու համար շարունակական բնույթ կրող նորոգություն, ինչպես Հռ. 12:2, «այլ նորոգուեցէք ձեր մտքի նորոգութեամբը» և 2 Կոր. 4:16, «մեր ներսի մարդն օրէցօր նորոգվում է»: Կող. 3:10 նկարագրում է «նոր մարդ»-ուն որպես «մարդ, որ նորոգուած է գիտութիւնով իր ստեղծողի պատկերի պէս»: Ուստի «նոր մարդ», «կյանքի նորոգություն», «վերստին ծնունդ» կամ «նորոգություն» ինչպես էլ այն կոչենք, իրենից ներկայացնում է սկզբնական և հետևողական Աստծո գործողությունը, որպես հավիտենական կյանք տվող և պահպանող» (էջ 118):

▣ **«որ դուք քննէք թէ ի՞նչ է Աստուծոյ կամքը»** Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ԱՆՈՐՈՇ ԴԵՐԲԱՅ է: (*dokimazō*) բառը օգտագործված է «փորձել՝ համոզված լինելու համար» իմաստով: Տես հատուկ թեմա 2:18:

Աստծո կամքն է, որ մենք փրկվենք Քրիստոսի միջոցով (հմմտ. Հովհ. 6:39-40), և հետո ապրենք Քրիստոսի նման (հմմտ. Հռ. 8:28-29; Գաղ. 4:19, Եփ. 1:4; 4:13,15; 5:17-18): Քրիստոնեական վստահությունը հիմնված է

1. վստահության արժանի Աստծո խոստումների վրա
2. հավատացյալի մեջ բնակվող Սուրբ Հոգին (հմմտ. Հռ. 8:14-16)

3. հավատացյալի փոխված և փոխվող կյանքը (հմմտ. Հակոբոս և I Հովh.) «չկա պտուղ, ուրեմն չկա արմատ» (հմմտ. Մաթ. 13:1-9, 19-23):

- **«ի՞նչ է Աստուծոյ կամքը»** Տես հատուկ թեմա ներքևում

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԱՍՏԾՈ ԿԱՄՔԸ (*thelēma*)**

**ԱՎԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ**

- Հիսուսը եկավ Հոր կամքը կատարելու համար (հմմտ. 4:34; 5:30; 6:38)
- վերջին օրը հարություն տալու բոլոր նրանց, ում Հայրը տվեց Որդուն (հմմտ. 6:39)
- որ բոլորը հավատան Որդուն (հմմտ. 6:29,40)
- պատասխանված աղոթքը Աստծո կամքին է համապատասխանում (հմմտ. 9:31 և I Հովh. 5:14)

**ՍԻՆՈՊՏԻԿ ԱՎԵՏԱՐԱՆՆԵՐ**

- Աստծո կամքը կատարելը էական է և կարևոր (հմմտ. 7:21)
- Աստծո կամքը կատարելը մարդուն Քրիստոսով եղբայր և քույր է դարձնում (հմմտ. Մաթ. 12:5; Մարկ. 3:35)
- Աստծո կամքը չէ որևէ մեկին կորցնելը (հմմտ. Մաթ. 18:14; I Տիմ. 2:4; II Պետ. 3:9)
- Գողգոթան Հիսուսի համար Հոր Աստծո կամքն էր (հմմտ. Մաթ. 26:42; Ղուկ. 22:42)

**ՊՈՂՈՍԻ ՆԱՄԱԿՆԵՐԸ**

- բոլոր հավատացյալների հոգևոր հասունությունն ու ծառայությունը (հմմտ. Հռ. 12:1-2)
- հավատացյալները ազատված են այս չար ներկա ժամանակաշրջանից (հմմտ. Գաղ. 1:4)
- Աստծո կամքը Իր փրկարար ծրագիրն էր (հմմտ. Եփ. 1:5,9,11)
- հավատացյալները փորձառում և ապրում են Հոգով լեցուն կյանք (հմմտ. Եփ. 5:17)
- որպեսզի հավատացյալները լցվեն Աստծո գիտությամբ (հմմտ. Կող. 1:9)
- որպեսզի հավատացյալները դառնան կատարյալ և ամբողջական (հմմտ. Կող. 4:12)
- որպեսզի հավատացյալները սրբանան (հմմտ. I Թես. 4:3)
- որպեսզի հավատացյալները գոհանան ամեն բանում (հմմտ. I Թես. 5:18)

**ՊԵՏՐՈՍԻ ՆԱՄԱԿՆԵՐԸ**

- որպեսզի հավատացյալները ճիշտ վարվեն (այն է, հնազանդվեն քաղաքացիական իշխանություններին) և այդպիսով լռեցնեն հիմար մարդկանց (հմմտ. I Պետ. 2:15)
- որպեսզի հավատացյալները տառապանք կրեն (հմմտ. I Պետ. 3:17; 4:19)
- որպեսզի հավատացյալները չապրեն եսակենտրոն կյանքով (հմմտ. I Պետ. 4:2)

– որպեսզի հավատացյալները մնան հավիտյան (հմմտ. I Հովհ.  2:17)
– բանալի պայմաններ  հավատացյալների համար, որպեսզի Աստված պատասխանի աղոթքներին (հմմտ. I Հովհ. 5:14)

▣ **«թէ ի՞նչ է բարին, հաճելին եւ կատարեալը»** Սա է Աստված կամենում հավատացյալներից փրկությունից հետո (հմմտ. Փիլ. 4:4-9).: Աստծո նպատակը յուրաքանչյուր հավատացյալի համար՝ քրիստոսանման հասունություն ունենալն է հիմա (հմմտ. Մաթ. 5:48):

▣ **"«կատարեալ»** Այս տերմինը նշանակում է «հասուն, ամբողջությամբ սպառազինված իրականացնելու առաջադրանք, հասած, ամբողջական»: Այն չի նշանակում  «անմեղ, առանց մեղքի»:  Այն օգտագործվում էր  (1) կոտրված ձեռքեր և ոտքեր, որոնց բուժվելուց և վերականգնվելուց հետո դառնում են պիտանի, գործածելի; (2) ձկնորսական ուռկաններ, որոնք պոկված են և պատռված, բայց կարկատելուց հետո նորից պիտանի օգտագործման համար; (3) ճուտիկներ, բայց որ արդեն մեծ են և կարող ես տանել շուկա վաճառելու; և (4) նավեր որոնք լրիվ կազմ պատրաստ են ծով դուրս գալու:

**Արևելահայերեն  Աստվածաշունչ Գլուխ 12:3-8**
3Որովհետեւ Աստուծոյ շնորհիքովն՝ որ ինձ տրուած է՝ ասում եմ ձեր մէջ ամենին, բան չմտածել
նորանից աւելի, քան թէ արժան է մտածել, այլ մտածել պարկեշտ կենալ այնպես՝  ինչպէս որ
Աստուած ամեն մէկին հաւատքի չափովը բաժանեց:4 Որովհետեւ ինչպէս մէկ մարմնի մէջ շատ
անդամներ ունինք, եւ այն ամեն անդամները միեւնոյն գործը չունին, 5 Այնպէս էլ շատերս մէկ
մարմին ենք Քրիստոսումը, բայց ամեն մէկը միմեանց անդամ ենք: 6 Միայն թէ զանազան պարգեւներ
ունինք այն շնորհիքի պէս որ մեզ տրուած է. թէ մարգարէութիւն՝ հաւատքի չափովը մարգարէանանք.
7 Թէ պաշտօն՝ պաշտօնում լինինք. թէ մէկը սովորեցնող է՝ վարդապետութեան մէջ լինի: 8 Թէ
մխիթարող է՝ մխիթարութեան մէջ. բաշխողը՝ զուարթութիւնով. վերակացու դրուածը՝ ջանքով.
ողորմողը՝ յօժարութիւնով:

**NASB (UPDATED) TEXT: 12:3-8**
3For through the grace given to me I say to everyone among you not to think more highly of himself
than he ought to think; but to think so as to have sound judgment, as God has allotted to each a measure of
faith.  4For just as we have many members in one body and all the members do not have the same function,
5so we, who are many, are one body in Christ, and individually members one of another.  6Since we have
gifts that differ according to the grace given to us, *each of us is to exercise them accordingly*: if prophecy,
according to the proportion of his faith;7if service, in his serving; or he who teaches, in his teaching; 8or he
who exhorts, in his exhortation; he who gives, with liberality; he who leads, with diligence; he who shows
mercy, with cheerfulness.

**12:3** 1-2հհ. շեշտը դնում են «նոր միտք» ունենալու անհրաժեշտության վրա: 3հ. չորս անգամ հայտնվում է «մտածել» բառը: Բրյուս Կորլեյի և Կյորտիս Վոխենի «Հռոմեացիս գրքի մեկնաբանության սերտողության ուղեցույցը» գրքում [*The Zondervan Study Guide Commentary, Romans,* Bruce Corley and Curtis Vaughan] այս դիտարկումն են արել. «Չափազանցված մտորում. . .ճիշտ մտորում. . .նպատակային մտորում. . .լուրջ մտորում» (էջ 138): Այս բնութագիրը շատ օգտակար է:

Այս համարը, ինչպես նաև 11:13-24, կարող է արտացոլել (1) Հռոմի եկեղեցում տիրող հրեա հավատացյալների և հեթանոս հավատացյալների միջև լարվածությունը կամ (2) այն փաստը, որ Պողոսը այս նամակը գրել է Կորնթոսից, որտեղ կային ամբարտավան և ցուցամոլ հավատացյալներ:

▣ **«Որովհետեւ Աստուծոյ շնորհքովն՝ որ ինձ տրուած է»** Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿԻ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ է: Շնորհքը Աստծուց է, որպես կոնկրետ, ամբողջական իրադարձություն՝ կատարված անցյալում: Այս կոնտեքստում «շնորհք» բառը կապված է հոգևոր պարգևներով օժտվածությանը (հմմտ. 15:15; I Կոր. 3:10; 15:10; Գաղ. 2:9; Եփ. 3:7-8), և ոչ թե արդարության պարգևին (հմմտ. Հռ. 4): Սա վերաբերվում է Պողոսի դարձի գալուն և հեթանոսներին առաքյալ լինելու կոչմանը (հմմտ. Գործք 9:15; Հռ. 1:1,5; Գաղ. 1:15-16; 2:7-8; Եփ. 3:1-2,8; I Տիմ. 2:7; II Տիմ. 4:17):

▣ **«ասում եմ ձեր մէջ ամենին»** հ. 3-ի զգուշացումը բոլոր քրիստոնյաների համար է, և ոչ միայն եկեղեցու առաջնորդների:

▣ **«բան չմտածել նորանից աւելի»** Տես հատուկ թեմա: Պողոսի «*Huper»* նախդիրի գործածությունը բարդ բառեր կազմելու համար 1:30:

▣ **«ինչպէս որ Աստուած ամեն մէկին բաժանեց»** Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է: Հավատացյալները չեն ընտրում իրենց հոգևոր պարգևները (հմմտ. I Կոր. 12:11; Եփ. 4:7): Դրանք տրվում են Սուրբ Հոգու կողմից փրկության ժամանակ և ի օգուտ բոլորի (հմմտ. I Կոր. 12:7): Հոգևոր պարգևները արժանի լինելու կրծքանշաններ չեն, որոնք մեծարում կամ բարձրացնում է անհատին, այլ ծառայի սրբիչ, որպեսզի յուրաքանչյուր հավատացյալ ծառայի Քրիստոսի մարմնին՝ եկեղեցուն:

▣ **«հաւատքի չափովը»** Սա վերաբերվում է հավատացյալի կարողություններին ծառայության մեջ պտղաբեր լինելու համար նրան անհրաժեշտ են համապատասխան (հմմտ. հ. 6): Որպեսզի հոգևոր

պարգևներով օժտվածությունը առողջ և պտղաբեր լինի լինի, այն պետք է զարգանա Սուրբ Հոգու պտուղի օգնությամբ (հմմտ. հh. 9-12; Գաղ. 5:22-23): Հոգևոր պարգևները Հիսուս Քրիստոսի ծառայություննն է, որը Նա բաժանեց իր հետևորդների միջև, իսկ Հոգու պտուղը դա Քրիստոսի միտքն է: Արդյունավետ ծառայության համար երկուսն էլ անհրաժեշտ են:

**12:4** Սա շատ հաճախ հանդիպող փոխաբերություն է Պողոսի գրվածքներում: Մարդու մարմնի անդամների ներկախվածությունը օգտագործվում է որպես օրինակ՝ եկեղեցու մեջ գոյություն ունեցող պարգևները նկարագրելու համար (հմմտ. I Կոր. 12:12-27; Եփ. 1:23; 4:4,12,16; 5:30; Կող. 1:18,24; 2:19): Քրիստոնեությունը թե համագործակցող է, և թե անհատական:

**12:5 «շատերս մէկ մարմին ենք Քրիստոսումը»** Այս համարն ընդգծում է հավատացյալների միաբանություննն ու զանազանությունը: Եկեղեցում հոգևոր պարգևների հետ կապված կա լարվածություն: Սիրո գլուխը I Կոր. 13 քննարկում է պարգևների զանազանության լարվածության մասին (հմմտ. I Կոր. 12 և 14): Քրիստոնյաները մրցման մեջ չեն այլ համագործակցության:

**12:6-8** Այս համարները հունարենում մեկ նախադասություն են երկու ԴԵՐԲԱՅ_ով, որտեղ բացակայում է հիմնական բայը: Այն սովորաբար թարգմանվում է որպես ԵՐՐՈՐԴ ԴԵՄՔ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ «թող որ մենք էլ»:

**12:6 «պարգևներ. . .շնորհք »** «պարգևներ» (*charisma*) և «շնորհք» (*charis*) տերմինները հունարենում ունեն նույն բառային արմատը, որը նշանակում է « ձրիաբար տրված»: Տես ծանուցում 3:24: Հոգու պարգևները թվարկված են I Կոր. 12; Հռ. 12; Եփ. 4 և I Պետ. 4: Ցանկն ու նրանց հերթականությունը չեն համընկնում իրար հետ, ուստի դրանք պետք է նայվեն որպես օրինակ և ոչ թե սպառիչ ցանկ: Աստվածաշունչը երբեք չի տեղեկացնում հավատացյալներին, թե ինչպես կարող են իմանալ իրենց հոգևոր պարգևը(ները): Ոչ աստվածաշնչյան աղբյուրներում լավագույն քրիստոնեական իմաստության շարադրանքը այս թեմայի շուրջ գտնվում է սկզբունքներում, գտնվում է Փոլ Լիթլի «Հաստատելով Աստծո կամքը» փոքրիկ գրքում [Paul Little, *Affirming the Will of God* ] հրատ. «InterVarsity Press»: Այս նույն ուղեցույցները Աստծո կամքն իմանալու մասին, հավատացյալին օգնում են որոշել այն ծառայությունը, որի մեջ նա ավելի պտղաբեր կլինի: Բայց ամենայն հավանականությամբ, ավելի կարևոր է իմանալ այն, որ բոլոր հավատացյալները օժտված են հոգևոր պարգևներով, քան թե կարողանալ որոշել, թե ինչ չափով են օժտված, կամ կոնկրետ որ պարգևներով են նրանք օժտված:

▣ **«թէ»** Սա կապ է *eite* (հմմտ. հհ. 6,7[երկու անգամ],8), որը թարգմանվում է «եթե. . .եթե» կամ «թե. . .թե» իմաստով: Այս համարում նրան հետևող ԲԱՅ չկա (հմմտ. I Կոր. 3:22; 8:5; II Կոր. 5:10), բայց հաճախ հետևում է ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ (Հմմտ. I Կոր. 12:26; II Կոր. 1:6): Հետևաբար այս նախադասությունը ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է, որը ենթադրում է այս հոգևոր պարգևների գոյությունը:

▣ **«մարգարէութիւն»** Սա ոչ մի կապ չունի Հին Կտակարանի մարգարեության հետ որպես հայտնված (ներշնչված) պատգամ Աստծուց: Հին Կտակարանի շրջանում մարգարեները գրեցին Սուրբ Գիրքը (ներշնչանք): Նոր Կտակարանի շրջանում այդ գործողությունը Աստծո ճշմարտությունը հռչակելն էր համարվում: Մարգարեությունն իր մեջ կարող է նաև ընդգրկել կանխագուշակություն (հմմտ. Գործք 11:27-28; 21:10-11): Շեշտը ոչ թե նոր բովանդակության վրա է, այլ ավետարանի պատգամի բացատրությունը և թե ինչպես այն կիրառել այսօր: Տերմինի իմաստի մեջ կա աստիճանաբար և հարթ զարգացող տարր: Դրա տակ կարելի է հասկանալ հավատացյալների գործնական քայլերը, (հմմտ. I Կոր. 14:1,39) և որպես հատուկ հոգևոր պարգև (հմմտ. I Կոր. 12:28; 13:28; Եփ. 4:11): Այս նույն զարգացումը տեսանելի է Պողոսի Կորնթացիներին ուղղված նամակում, որը գրվել է մոտավորապես նույն ժամանակ (հմմտ. I Կոր. 12:10,12; 13:8; 14:1, 5,29,39):

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԻ ՄԱՐԳԱՐԵՈՒԹՅՈՒՆ**

I. Սա նույնը չէ, ինչ Հին Կտակարանի մարգարեությունը, որն ունի ռաբբիական հասկացողություն հայտնության ներշնչվածության մասին ստացած ՅԱՀՎԵ-ից (հմմտ. Գործք 3:18,21; Հռ. 16:26): Միայն մարգարեները կարող էին Սուրբ Գիրք գրել
   Ա. Մովսեսը կոչվում էր մարգարե (հմմտ. 2 Օրին. 18:15-21)
   Բ. Պատմական գրքերը (Հեսու – Թագավորաց գրքեր [բացի Հռութից]) կոչվում էին «վաղ մարգարեներ» (հմմտ. Գործք 3:24):
   Գ. Մարգարեները փոխարինեցին Քահանայապետին, որպես ինֆորմացիայի աղբյուր Աստծուց (հմմտ. Եսայա -Մաղաքիա):
   Դ. Եբրայական Կանոնի երկրորդ բաժանումը կոչվում է «Մարգարեները» (հմմտ. Մաթ. 5:17; 22:40; Ղուկ. 16:16; 24:25,27; Հռ. 3:21):

II. Նոր Կտակարանում մարգարեության գաղափարը օգտագործվում է մի քանի իմաստով
   Ա. Հին Կտակարանի մարգարեները և նրանց ներշնչված հայտնությունը (հմմտ. Մաթ. 2:23; 5:12; 11:13; 13:14; Հռ. 1:2)

Բ. պատգամ, որն ավելի շատ ուղղված է անհատին, քան թե մարդկանց խմբին (Հին Կտակարնաի մարգարեները հիմնականում խոսեցին Իսրայելին)

Գ. Հովհաննես Մկրտիչը (հմմտ. Մաթ. 11:9; 14:5; 21:26; Ղուկ. 1:76) և Հիսուսը, որպես Աստծո Թագավորության հռչակողներ (հմմտ. Մաթ. 13:57; 21:11,46; Ղուկ. 4:24; 7:16; 13:33; 24:19): Հիսուսը պնդեց, որ Ինքն ավելի մեծ է քան մարգարեները (հմմտ. Մաթ. 11:9; 12:41; Ղուկ. 7:26):

Դ. Նոր Կտակարանի մյուս մարգարեները

1. Հիսուսի երկրավոր կյանքը, ինչպես արձանագրված է Ղուկասի Ավետարանում (այն է, Մարիամի հիշողությունները)

ա. Եղիսաբեթ (հմմտ. Ղուկաս 1:41-42)

բ. Զաքարիա (հմմտ. Ղուկ. 1:67-79)

գ. Սիմեոն (հմմտ. Ղուկ. 2:25-35)

դ. Աննա (հմմտ. Ղուկ. 2:36)

2. ծաղրական կանխագուշակություններ (հմմտ. Կայափա, Հովհ. 11:51)

Ե. անձ, որը հռչակում է ավետարանը (համապատասխան պարգևների ցանկը I Կոր. 12:28-29; Եփ. 4:11)

Զ. դեռևս շարունակվող պարգև եկեղեցում (հմմտ. Մաթ. 23:34; Գործք 13:1; 15:32; Հռ. 12:6; I Կոր. 12:10,28-29; 13:2; Եփ. 4:11): Երբեմն սա կարող է վերաբերվել կանանց (հմմտ. Ղուկ. 2:36; Գործք 2:17; 21:9; I Կոր. 11:4-5):

Է. Վախճանաբանական գիրք՝ Հայտնություն (հմմտ. Հայտ. 1:3; 22:7,10,18,19)

III. Նոր Կտակարանի մարգարեներ

Ա. Նրանք չեն տալիս ներշնչված հայտնություն այն իմաստով, ինչպես Հին Կտակարանի մարգարեներն էին անում (այն է, Սուրբ Գիրքը): Այսպիսի պնդումը հնարավոր է «հավատք» տերմինի շնորհիվ (այն է, ավարտված ավետարան), ինչպես օգտագործվում է Գործք 6:7; 13:8; 14:22; Գաղ. 1:23; 3:23; 6:10; Փիլ. 1:27; Հուդա 3,20:

Այս գաղափարը պարզ է դառնում Հուդա 3 ամբողջ արտահայտությունից «որ մրցիք սրբերին միանգամ աւանդուած հաւատքովը»: «Միանգամ աւանդուած» հավատքը վերաբերվում է քրիստոնեական ճշմարտություններին, վարդապետություններին, գաղափարներին, աշխարհայացքի ուսմունքների: Ընդգծված «մեկ անգամ տրված» արտահայտությունը հանդիսանում է աստվածաշնչյան հիմք՝ աստվածաբանորեն սահմանափակելով Նոր Կտակարանի գրվածքների ներշնչվածությունը և թույլ չտալով ավելի ուշ կամ ուրիշ գրվածքներ համարվեն հայտնություն: Նոր Կտակարանում կան շատ «մոխրագույն զոնա» ներ, որոնք անորոշ են, անհաստատ, սակայն հավատացյալները

հավատքով պնդում են, որ ամեն բան ինչ անհրաժեշտ է «հավատքի» և «գործնական կյանք» ապրելու համար կա Նոր Կտակարնում: Այս գաղափարը   ուրվագծվել է այսպես կոչված «հայտնության եռանկյունի» անունով:

1. 1. Աստված Իրեն հայտնել է ժամանակի -տարածություն պատմության մեջ (ՀԱՅՏՆՈՒԹՅՈՒՆ)
2. Նա ընտրել է որոշակի մարդկանց, որպեսզի արձանագրեին և բացատրեին Իր գործողությունները (ՆԵՐՇՆՉԱՆՔ)
3. Նա տվել է Իր Հոգին մարդկանց սրտերն ու մտքերը բացելու համար, որպեսզի հասկանան այս գրվածքները — ոչ բացարձակ և վերջնական ձևով, այլ բավարար փրկության համար և արդյունավետ Քրիստոնեական կյանքի համար (ԼՈՒՍԱՎՈՐՈՒՄ)

Հիմնական միտքն այն է, որ ներշնչանքը սահմանափակվում է Սուրբ Գրքի հեղինակներով: Ուրիշ հեղինակային գրվածքներ, տեսիլքներ կամ հայտնություններ չկան: Կանոնը փակված է: Մենք ունենք ամբողջ ճշմարտությունը՝ Աստծուն ճիշտ արձագանքելու համար:

Այս ճշմարտությունն ավելի լավ տեսանելի է, երբ համեմատում ենք աստվածաշնչյան հեղինակներին և տեսնում թե որքան համահունչ են, սակայն   տարածայն են անկեղծ և աստվածահաճո հավատացյալները: Ժամանակակից գրողներից կամ քարոզիչներից ոչ մեկը չունի այն աստվածային առաջնորդության աստիճանը, որ ունեին Սուրբ Գրքի հեղինակները:

Բ. Նոր Կտակարանի մարգարեները որոշ ձևերով նման են Հին Կտակարանի մարգարեներին.

1. գալիք իրադարձությունների կանխագուշակում (հմմտ. Պողոս, Գործք 27:22; Ագաբոս, Գործք 11:27-28; 21:10-11; ուիրշ անանուն մարգարեներ, Գործք 20:23)
2. վճռի հռչակում (հմմտ. Պողոս, Գործք 13:11; 28:25-28)
3. սիմվոլիկ/խորհրդավոր գործողություն, որը հստակ պատկերում է որոշակի իրադարձություն (հմմտ. Ագաբոս, Գործք 21:11)

Գ. Նրանք իրոք երբեմն հռչակում են Ավետարանի ճշմարտությունները կանխագուշակության ձևով (հմմտ. Գործք 11:27-28; 20:23; 21:10-11), բայց սա չէ հիմնական իմաստը:  I Կորնթացիս գրքում եղած մարգարեությունը հիմնականում Ավետարանը փոխանցելու համար է(հմմտ. 14:24,39):

Դ. Նրանք հանդիսանում են այն կարևոր , իր ժամանակին համապատասխանող միջոցները, որի միջոցով Սուրբ Հոգին  բացահայտում է Աստծո ճշմարտության գործնական

կիրառությունը յուրաքանչյուր նոր իրավիճակի, մշակույթի կամ ժամանակաշրջանի համար (հմմտ. I Կոր. 14:3):

Ե. Նրանք բավականին ակտիվ գործում էին «Պողոս»-յան եկեղեցիների վաղ ժամանակաշրջանում (հմմտ. I Կոր. 11:4-5; 12:28,29; 13:29; 14:1,3,4,5,6,22,24,29,31, 32,37,39; Եփ. 2:20; 3:5; 4:11; I Թես. 5:20) և հիշատակված են *Didache* մեջ (գրված առաջին կամ երկրորդ դարի վերջին, տարեթիվն անորոշ է) և երկրորդ և երրորդ դարի մոնտանիզմի մեջ հյուսիսային Աֆրիկայում:

IV. Արդյո՞ք Նոր Կտակարանի պարգևները դադարեցրել են իրենց գործելը

Ա. Այս հարցին դժվար է պատասխանել: Ճիշտ եզրահանգման գալու համար, նախ և առաջ պետք է հասկանալ հոգևոր պարգևների նպատակը: Արդյո՞ք դրանք մտադրված են եղել Ավետարանի ճշմարտության վաղ քարոզչությունն իրականացնելու համար , թե՞ այսօր էլ շարունակում են միջոց հանդիսանալ ծառայության մեջ, թե եկեղեցում և թե կորսված աշխարհին հասնելու համար:

Բ. Որտե՞ղ պետք փնտրել այս հարցի պատասխանը: Եկեղեցու պատմության մեջ թե՞ միանշանակ Նոր Կտակարանում: Այն մասին, թե հոգևոր պարգևները ժամանակավոր էին, Նոր Կտակարանում ցուցում չկա: Նրանք, ովքեր փորձում են օգտագործել I Կոր. 13:8-13 հիմնավորելու համար այս հարցը, չարաշահում են հեղինակի մտադրությունը տվյալ հատվածի վերաբերյալ, որը հաստատում է, որ բացի սիրուց ամեն բան պետք է անցնի և վերջանա:

Գ. Ես հակված եմ ասելու, որ քանի որ Նոր Կտակարանը, և ոչ թե եկեղեցու պատմությունն է, գերագույն հեղինակությունը, ապա հավատացյալներին պետք է պնդել, որ հոգևոր պարգևների գործածումը շարունակվում է: Ինչևէ, ես հավատում եմ, որ մշակույթն ազդում է մեկնաբանության վրա: Որոշ պարզ տեքստեր այլևս կիրառելի չեն (այն է, սուրբ համբույր,կանայք գլուխները ծածկելը, տնային պաշտամունքները և այլն): Եթե մշակույթն ազդում է տեքստ վրա, ապա ինչու՞ եկեղեցու պատմությունը չի կարող իր ներգործությունն ունենալ նրա վրա:

Դ. Պարզապես սա այն հարցն է, որին չի կարելի որոշակի, հստակ պատասխանել: Որոշ հավատացյալների պարգևների գործածությունը դարադրելու կողմն են, որոշներն էլ դեմ: Այստեղ, ինչպես նաև շատ ուրիշ դեպքերում, մեկնաբանության հետ կապված վերջնական ենթադրությունները, վճռորոշ դեր են խաղում քրիստոնյայի սրտում: Նոր Կտակարանը անորոշ է, երկիմաստ և մշակութային: Դժվարն այն է, թե ինչպես որոշել, որ տեքստերն են մշակութային/ պատմական և որոնք՝ հավիտենական (հմմտ. Գորդոն Ֆիի և Դուգլաս Ստյուարտի «Ինչպես կարդալ Աստվածաշունչն իր ամբողջ արժողությամբ» գիրքը [Fee and

Stuart's *How to Read the Bible for All Its Worth]*, էջ. 14-19 և 69-77): Սա հենց այն դեպքն է, երբ հանդիպում են ազատության և պատասխանատվության քննարկումները, որոնք գտնվում են Հռ. 14:1-15:13 և I Կոր. 8-10, և շատ կարևոր են: Թե ինչպես ենք մենք պատասխանում այս հարցին ունի կարևոր նշանակություն երկու պատճառներով,

1. Յուրաքանչյուր հավատացյալ պետք է քայլի իր ունեցած հավատքի լույսի ներքո: Աստված նայում է մեր սրտերին ու դրդապատճառներին:
2. Յուրաքանչյուր հավատացյալ պետք է թույլ տա մյուս հավատացյալներին քայլել իրենց ունեցած հավատքի հասկացողության համաձայն: Աստվածաշնչյան սահմանների մեջ պետք է լինի փոխադարձ հանդուրժողականություն: Աստված ուզում է որ մենք սիրենք միմյանց ինչպես Ինքն է սիրում:

Ե. Ամփոփելով ասենք, որ քրիստոնեությունը հավատքի և սիրո կյանք է, և ոչ թե կատարյալ աստվածաբանության: Աստծո հետ ունեցած կապը, որը մեծ ազդեցություն է թողնում ուրիշների հետ ունեցած մեր հարաբերությունների վրա, ավելի կարևոր է քան որոշակի հստակ տեղեկություն ունենալը կամ հավատքի կատարյալ վիճակը:

◙ **«հաւատքի չափովը»** Սա ուղղակիորեն կապվում է հ. 3, «ինչպէս որ Աստուած ամեն մէկին հաւատքի չափը բաժանեց» (հմմտ. Եփ. 4:7): Սա նաև պետք է հասկանալ էլ ավելի մեծ կոնտեքստային իմաստով, թե ինչպես են հավատացյալներն օգտագործում իրենց հոգևոր պարգևները: Սա վերաբերվում է հավատացյալների պարգևների հանդեպ ունեցած կեցվածքին, մղող շարժառիթներին և գործուն կիրառություններին այն ծառայությունների մեջ, որոնք Աստված տվել է յուրաքանչյուրին, որը հիմնականում Սուրբ Հոգու պտուղն է թվարկված Գաղ. 5:22-23:

**Արևելահայերեն «թէ պաշտօն՝ պաշտօնում լինինք»**
**Արևմտահայերեն «եթէ սպասաւորութիւն՝ սպասաւորութեան մէջ»**

**12:7**

| | |
|---|---|
| **NASB** | **"if service"** |
| **NKJV, NRSV** | **"or ministry, let us use it in our ministry"** |
| **TEV** | **"if it is to serve, we should serve."** |
| **JB** | **"if administration, then use it for administration"** |

Ժամանակակից թարգմանությունները միմյանցից տարբերվում են այն պատճառով, որ գոյություն չունի հունարեն (*diakonia*) տերմինի ստույգ համարժեքը: Այն կարող է նշանակել (1) գործնական ծառայություն կամ (2) կառավարում (հմմտ. Գործք 6:1; I Կոր. 12:5,28): Հարոլդ Ք. Մոուլտոնի վերահրատակած «Հունարեն լեզվի վերլուծական բառարանում» [*The Analytical Greek Lexicon Revised* by Harold K Moulton],այս տերմինի իմաստն այսպես է սահմանված «նշանակում,

ֆունկցիա, ծառայություն (հոգևոր), պարտավորություն, պաշտոն» հետևյալ հատվածներում Հռ. 12:7; I Կոր. 12:5; Կող. 4:17; II Տիմ. 4:5» (էջ. 92): Կոնտեքստի իմաստն է՝ օգնել հավատացյալներին:

▣ **«սովորեցնող է՝ վարդապետութեան մէջ»** Այս պարգևի (*didaskō*) մասին խոսվում է I Կոր. 12:28 և 14:26: Այն կապված է մարգարեության պարգևի հետ Գործք 13:1 և քարոզելու պարգևի հետ Եփ. 4:11: Վաղ եկեղեցին տեսնում էր, որ այս պարգևներով օժտված հավատացյալները ծառայություն են իրականացնում իրար մասամբ համընկնող բնագավառներում: Քարոզչություն, մարգարեություն, ավետարանչություն և ուսուցում բոլորն էլ Ավետարանն են բաժնեկցում, սակայն տարբեր շեշտադրություններով և մեթոդաբանությամբ:

**12:8 «մխիթարող է՝ մխիթարութեան մէջ»** Այս տերմինը (*parakaleō*) կապված է սովորեցնելու հետ (հմմտ. I Տիմ. 4:13): Հնարավոր է սա այն հմտությունն է, որով ճշմարտությունը կիրառվում է կյանքում: Այդ դեպքում այն կապ ունի Եփ. 4:15,16 «ճշմարիտ լինելով սէրի մէջ. . .իր անձը սիրով շինելու համար»:

▣ **« բաշխողը՝ զուարթութիւնով»** Տես հատուկ թեմա ներքևում.

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԱՌԱՏԱՁԵՌՆ/ՍՐՏԱԲԱՑ, ԱՆԿԵՂԾ (*HAPLOTOS*)**

Այս տերմինը (*haplotes*) ուներ երկու հիմնական նշանակություն, «առատաձեռն, սրտաբաց» կամ «անկեղծ»: Դա փոխաբերություն էր, որն օգտագործվում էր տեսողության հետ կապված: Հին Կտակարանում աչքն օգտագործվում էր որպես փոխաբերություն այն էլ երկու կերպով (1) չար աչք (ժլատ, հմմտ. 2 Օրին. 15:9 և Սաղ. 23:6), և (2) բարի աչք (առատաձեռն, հմմտ. Առ. 22:9): Հիսուսն օգտագործեց այս փոխաբերությունները (հմմտ. Մաթ. 6:22-23; 20:15): Այս տերմինը Պողոսն օգտագործում է երկու իմաստով (1) «միամտություն, անկեղծություն, անարատություն» (հմմտ. II Կոր. 1:12; 11:3; Եփ. 6:5; Կող. 3:22) և (2) «յոժարություն» (հմմտ. Հռ. 12:8; II Կոր. 8:2; 9:11,13):

▣ **«վերակացու դրուածը՝ ջանքով»** Սա վերաբերվում է քրիստոնյա առաջնորդներին, ղեկավարներին, կամ տեղական կամ լայն մասշտաբի (մի քանի եկեղեցիների վրա):

▣ **«ողորմողը՝ յօժարութիւնով»** Սա վերաբերվում է հիվանդներին և կարիքավորներին օգնելուն: Չպետք է տարբերություն դրվի վարդապետական քարոզչության և սոցիալական հոգատարության միջև հավատացյալ համանքում: Դրանք մանրադրամի եկու երեսն են: Չկա «սոցիալական ավետարան, պարզապես ավետարան:

**Քննարկվող հարցեր հհ.1-8**

Սա սերտողության համար ուղեցույց հանդիսացող մեկնաբանություն է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ:

1. Ի՞նչ է նշանակում քո անձը որպես կենդանի պատարագ մատուցել (հ. 1)
2. Ունի՞ յուրաքանչյուր հավատացյալ հոգևոր պարգև (հհ. 3-8; I Կոր. 12:7): Եթե այո, ապա դա անձի՞ ընտրությամբ է, թե որն է ինքն ուզում:
3. Ո՞րն է հոգևոր պարգևների նպատակը
4. Կա՞ արդյոք Աստվածաշնչում պարգևների սպառիչ ցանկ
5. Ինչպե՞ս կարող է հավատացյալն իմանալ իր պարգևի մասին

**ԿՈՆՏԵՔՍՏԻ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ հհ 9-21**

Ա. Այս բաժինը կարելի է վերնագրել «Քրիստոնեական ուղեցույց միջանձնական փոխհարաբերությունների համար»: Սա սիրո գործնական քննարկումն է (հմմտ. Մաթ. 5-7; I Կոր. 13 և I Հովհ. 3:18; 4:7-21):

Բ. Հռոմեացիս 12 գլուխը իր կառուցվածքով և բովանդակությամբ շատ նման է I Կոր. 12-13: Հոգևոր պարգևների մասին քննարկումից անմիջապես հետո գալիս է զգուշացում հպարտանալուց և շեշտը դնում է սիրո կյանք ապրելու վրա:

Գ. Այս կոնտեքստը քննարկում է

1. մեր կապն ուրիշ քրիստոնյաների հետ (հմմտ.12:9-13): Այս մասին նաև մանրամասն քննարկվում է 14:1-15:13 և I Կոր. 8:11; 10:23-33:
2. մեր կապը անհավատների հետ կամ, որն ավելի հավանական է, ուրիշ քրիստոնյաների, որոնց հետ տարաձայնություն (կոնֆլիկտ) ունենք (հմմտ.12:14-21): Այս բաժինը, թվում է թե, արտացոլում է Հիսուսի Լեռան քարոզը (հմմտ. Մաթ. 5-7):
3. հատվածի այսպիսի բաժանումը որոշ չափով արհեստական է, անբնական, քանի որ այս բնագավառները (փոխհարաբերությունների) մասամբ համընկնում են:

Դ. Այս հատվածը պարունակում է շարունակական ընթացող կյանքի ապրելակերպի պատվերներ (ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, հմմտ. հ. 4[3], 16, 20[2], 21[2] և ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅԵՐ օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով 17 անգամ): Փրկությունը Աստծո շնորհքի ձրի պարգևն է Քրիստոսի ավատրած գործի և Սուրբ Հոգու միջոցով, բայց ընդունելու պահից սկսած անհրաժեշտ է պահել և ապրել այդ կյանքը, որից թանկ բան չկա այս աշխարհում Հիսուսին «Տեր» կոչելը փոխաբերություն չէ (հմմտ. Ղուկ. 6:46):

Ե. Այս հատվածը նաև ունի մի շարք ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ԴԵՐԲԱՅԵՐ, օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿ-ով, որը նշանակում է արդեն իսկ գործընթացի մեջ եղող գործողության դադար, հհ. 14, 16 (երկու անգամ), 17, 19 և 21: Քրիստոնյաներն արդեն ապրում էին՝ անցնելով ամեն թույլատրելի սահմանները: Որոշ իմաստով, մեղքին կարելի է տալ նաև այսպիսի սահմանում, Աստծո պարգևների չարաշահում՝ անցնելով Աստծո կողմից դրված սահմանները:

Զ. Քրիստոնյաները պետք է լինեն «բաց»— բաց-միտք, բաց- ձեռք, բաց-սիրտ և բաց դուռ (հմմտ. Հակոբոս 2):

## ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 12:** 9-13
[9] Սէրն առանց կեղծաւորութեան. չարն ատեցէք, բարիին հետեւեցէք:[10] Եղբայրասիրութիւնում իրար վերայ գթած եղէք. պատիւ տալու մէջ իրար առաջ անցէք:[11] Ջանքի մէջ՝ թոյլ չլինիք. հոգովը ջերմեռանդ եղէք, Տիրոջը ծառայեցէք:[12] Յուսով ուրախացէք, նեղութեան համբերեցէք, աղօթքում յարատեւեցէք:[13] Սրբերի պիտոյքներին հաղորդ եղէք. հիւրասիրութեան հետեւեցէք:

**NASB (UPDATED) TEXT: 12:9-13**
[9]*Let* love *be* without hypocrisy. Abhor what is evil; cling to what is good. [10]*Be* devoted to one another in brotherly love; give preference to one another in honor; [11]not lagging behind in diligence, fervent in spirit, serving the Lord; [12]rejoicing in hope, persevering in tribulation, devoted to prayer, [13]contributing to the needs of the saints, practicing hospitality.

**12:9 «Սէրն առանց կեղծաւորութեան.»** Հունարեն տեքստում բացակայել են կապակցող բառերը (*asyndeton*), որը շատ անսովոր էր հունարեն կոյնայի Koine համար: Դա կարող է անդրադարձնել

հին եբրայերեն քերականական ձևը, ինչպես Մաթ. 5 «Երանելիները» բաժնում: Այս քերականական ձևն ընդգծում էր արտահայտություններից յուրաքանչյուրը որպես մենակ հանդես եկող ճշմարտություն:

«Կեղծավորություն» բառը թատերական տերմին էր և բառացի նշանակում էր «դիմակի տակից խոսել»: Սերը չպետք է խաղ կամ կեղծիք լինի (հմմտ. II Կոր. 6:6): Սերը հավատացյալների <u>առանձնահատկությունն</u> է (հմմտ. Հովհ. 13:34-35; 15:12,17; I Հովհ. 3:11,18; 4:7-21) որովհետև դա նաև Աստծո առանձնահատկությունն է:

▣ **«չարն ատեցէք»** Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է, օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով: Հավատացյալները պետք է զգոն լինեն և դիմադրեն, հակառակվեն չարին (հմմտ. I Թես. 5:21-22): Իսկ մենք հաճախ միայն զարմանում ենք չարի կողմից գործած հետևանքների համար, որոնք ուղղակիորեն ազդում են <u>մեր</u> կյանքերին.

**Արևելահայերեն «բարիին հետեւեցէք»**
**Արևմտահայերեն «բարիին յարելով»**

▣

| | |
|---|---|
| **NASB, NKJV** | **"cling to what is good"** |
| **NRSV** | **"hold fast to what is good"** |
| **TEV** | **"hold on to what is good"** |
| **NJB** | **"stick to what is good"** |

Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌԻ (բայց օգտագործված ՉԵԶՈՔ ՍԵՌ-ի իմաստով) ԴԵՐԲԱՅ է, օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով «կպչել, սոսնձվել» (հմմտ. LXX Ծննդ. 2:24; Գործք 8:29 և նաև Փիլ. 4:8; I Թես. 5:21-22):

**Արևելահայերեն «Եղբայրասիրութիւնում իրար վերայ գթած եղէք.»**
**Արևմտահայերեն «Եղբայրասիրութեան մէջ իրարու գորովալից եղէ՛ք»**

**12:10**

| | |
|---|---|
| **NASB** | **"Be devoted to one another in brotherly love"** |
| **NKJV** | **"Be kindly affectionate to one another with brotherly love"** |
| **NRSV** | **"Love one another with mutual affection"** |
| **TEV** | **"Love one another warmly as Christians"** |
| **JB** | **"Love each other as much as brothers should"** |

Այս բարդ հունարեն բառը (*phileo* + *storge*) միացնում է «եղբայրական սերը» «ընտանեկան սիրո» հետ և օգտագործվում է միայն այստեղ Նոր Կտակարանում: Քրիստոնյաները մեկ ընտանիք են: Եվ մեզ պատվիրված է սիրել միմյանց (հմմտ. I Թես. 4:9):

Այստեղ սկսվում են մի շարք բառեր օգտագործված ՏՐԱԿԱՆ ՀՈԼՈՎՈՎ, որի գործածությունը հունարեն նախադասության մեջ ծառայել է որպես մտքի ընդգծում:

**Արևելահայերեն «պատիւ տալու մէջ իրար առաջ անցէք»**

**Արևմտահայերեն «պատուելու մէջ իրարմէ անցէ՛ք»**

▣

| | |
|---|---|
| **NASB** | **"give preference to one another in honor"** |
| **NKJV** | **"in honor giving preference to one another"** |
| **NRSV** | **"outdo one another in showing honor"** |
| **TEV** | **"and be eager to show respect for one another"** |
| **JB** | **"have a profound respect for each other"** |

Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՉԵԶՈՔ ՍԵՌ (deponent) ԴԵՐԲԱՅ է, օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով: Հավատացյալները պետք է իրենց հավատակից ընկերներին համարեն ավելի կարևոր քան իրենց (հմմտ. Եփ. 4:2; Փիլ. 2:3):

**Արևելահայերեն «Ջանքի մէջ՝ թոյլ չլինիք.»**

**Արևմտահայերեն «Ջանքի մէջ թուլասիրտ մի՛ըլլաք»**

12:11

| | |
|---|---|
| **NASB** | **"not lagging behind in diligence"** |
| **NKJV** | **"not lagging in diligence"** |
| **NRSV** | **"do not lag in zeal"** |
| **TEV** | **"work hard and do not be lazy"** |
| **JB** | **"work for the Lord with untiring effort"** |

Ճշմարիտ սերը տալիս է հսկայական ուժ (հմմտ. Գաղ. 6:9):

**Արևելահայերեն «հոգովը ջերմեռանդ»**

**Արևմտահայերեն «հոգիով բորբոքեցէ՛ք»**

▣

| | |
|---|---|
| **NASB, NKJV** | **"fervent in spirit"** |
| **NRSV** | **"ardent in spirit"** |
| **TEV** | **"with a heart full of devotion"** |
| **JB** | **"with great earnestness of spirit"** |

Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է, օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով: Սրա բառացի իմաստն է «եռալ, բորբոքվել»: Սա կարող էր վերաբերվել կամ վերստին ծնունդ ունեցող մարդու հոգուն կամ էլ մարդու մեջ բնակվող Սուրբ Հոգուն (RSV, հմմտ. Գործք 18:25; Հայտ. 3:15-16):

▣ **«Տիրոջը ծառայեցէք»** Սա նույնպես ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է, օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով: Այս արտահայտությունը տարբեր ձեռագրերում տարբեր ձև է գրված: Արևմտյան ծողովածուի մի քանի հունարեն ձեռագրերում (MSS D[*,3], F, և G) գրված է «ժամանակին» (*kairos*) «Տիրոջը» փոխարեն (*kurios*): Այսպիսի տարբերակը կարող է ընդգծել Տիրոջը և Իր եկեղեցուն ամենա հնարավոր բնագավառներում ծառայելու իմաստը (հմմտ. Հովհ. 9:4; Եփ. 5:16):

Ամենայն հավանականությամբ ենթադրելի է, որ շփոթությունը առաջացել է *kurios* բառը սխալ հասկանալու կամ կարդալու պատճառով: Ամենալավ և ամենահին ձեռագրերում P[46], ℵ, A, և B գրված է «Տիրոջը ծառայելով»: UBS[4] կազմողները «Տիրոջը» տարբերակը գնահատում են որպես «A» կատեգորիա (վստահելի):

**12:12 «Յուսով ուրախացէք»** Եվ սա նույնպես ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է, օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով: «Հույս» տերմինը հաճախ օգտագործվում էր Երկրորդ Գալստյան հետ կապված (հմմտ. 5:2): Բայց ոչ այն հույսը, որ անգլերենում ենք հասկանում «ցանկություն, իղձ», այլ Նոր Կտակարանում, երբ խոսքը գնում է կոնկրետ որևէ իրադարձության մասին, բայց ժամանակի առումով անորոշ մի քանի մասին: Տես ծանուցում 4:18 և 5:2:

▣ **«համբերեցէք»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է, օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով: Տերմինը նշանակում է «եռանդուն, կամավոր, կայուն, անսասան համբերատարություն»:

▣ **«նեղութեան»** 5:3,5 հh. «հույս» կապված էր նեղության հետ (*thlipsis*): Ընկած աշխարհում Քրիստոսի հետևորդների համար սա բնական է (հմմտ. Գործք 14:22; Հռ. 8:17; II Տիմ. 3:12; I Պետ. 4:12): Մենք չպետք է փնտրենք այն և ոչ էլ փախչենք դրանից: Տես հատուկ թեմա: Նեղություն 5:3.

▣ **«աղօթքում յարատեւեցէք»** Սա նույնպես ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է, օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով: Աղոթքը հոգևոր կարգապահություն է և պարգև, որով ընդունում ես, որ Աստծո ձեռքը ներգործում է պատմության մեջ: Հավատացյալները կարող են ազդեցություն ունենալ սիրող Երկնավոր Հոր վրա: Աստված ընտրել է սահմանափակել Իրեն Իր զավակների աղոթքներով (հմմտ. Գործք 1:14; 2:42; 6:4; Եփ. 6:18-19; Կող. 4:2): Սա աղոթքը դարձնում է խիստ անհրաժեշտ և պատասխանատու: Տես Քլինտոն Առնոլդի «Երեք գլխավոր

հարցերը հոգևոր պատերազմի մասին» գրում [*Three Crucial Questions About Spiritual Warfare* by Clinton Arnold], էջ. 43-44, 187-188:

**Արևելահայերեն «Սրբերի պիտույքներին հաղորդ եղէք»**
**Արևմտահայերեն « Սուրբերուն պէտքերուն հաղորդ եղէ՛ք»**

**12:13**

| | |
|---|---|
| **NASB, NRSV** | **"contributing to the needs of the saints"** |
| **NKJV** | **"distributing to the needs of the saints"** |
| **TEV** | **"share your belongings with your needy fellow Christians"** |
| **JB** | **"share with any of God's holy people who are in need"** |

Հունարեն *koinonia* ԲԱՅԸ նշանակում է «հաղորդակցություն, շփում, բաժնեկցել»: Պողոսի համար այս տերմինն ունի լայն իմաստ: Այն ընդգրկում է հաղորդակցություն թե՛ ավետարանի հետ և թե՛ ֆիզիկական կարիքների (հմմտ. Գաղ. 6:6): Այն նույնիսկ օգտագործվում է Հիսուսի չարչարանքները բաժնեկցելու դեպքում (հմմտ. Փիլ. 3:8-10; I Պետ. 4:13) և Պողոսի (հմմտ. Փիլ. 4:14): Քրիստոսի հետ միավորված լինել նշանակում էր միավորվել Իր ժողովրդի հետ ամեն առումներով: Տես Հատուկ Թեմա: Սուրբեր 1:7.

Այստեղ նորից ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է, օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով (հմմտ. Առ. 3:27; Գաղ. 6:10): Հավատացյալները պետք է շատ աշխատեն, որպեսզի ավելին ունենան ուրիշներին տալու համար Հիսուսի անունով (հմմտ. II Կոր. 8:11-12; Եփ. 4:28):

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: *KOINŌNIA***

«հաղորդակցություն» տերմինը (*koinōnia*) նշանակում է

1. մտերմիկ հարաբերություն անձի հետ
   ա. Որդու (հմմտ. I Հովհ. 1:6; I Կոր. 1:9)
   բ. Սուրբ Հոգու (հմմտ. II Կոր. 13:13; Փիլ. 2:1)
   գ. Հոր և Որդու (հմմտ. I Հովհ. 1:3)
   դ. հավատակից եղբայրների/քույրերի հետ (հմմտ. I Հովհ. 1:7; Գործք 2:42; Գաղ. 2:9; Փիլիմոն 17)
2. մտերմիկ հարաբերություն իրերի կամ մարդկային խմբերի հետ
   ա. ավետարանի (հմմտ. Փիլ. 1:5; Փիլիմոն 6)
   բ. Քրիստոսի արյան (հմմտ. I Կոր. 10:16)
   գ. ոչ թե խավարի (հմմտ. II Կոր. 6:14)

դ. տառապանքի (հմմտ. Փիլ. 3:10; 4:14; I Պետ. 4:13)

3. պարգև կամ նվիրատվություն արված առատաձեռնությամբ (հմմտ. Հռ. 12:13; 15:26; II Կոր. 8:4; 9:13; Փիլ. 4:15; Եբր. 13:16)
4. Աստծո շնորհիքի պարգևը Քրիստոսի միջոցով, որը վերականգնում է մարդու հաղորդակցությունն Աստծո և իր եղբայրների ու քույրերի հետ:

Սա հաստատում է հորիզոնական կապը (մարդ - մարդ), որը հետևանք է ուղղահայաց կապի (մարդ -Արարիչ): Այն նաև ընդգծում է քրիստոնեական համայնքի կարիքն ու ուրախությունը: Այս բայի ժամանակաձևը շեշտը դնում է համայնքում այս տեսակ փոխձառության սկսման և շարունակման վրա (հմմտ. 1:3 [երկու անգամ],6,7): Քրիստոնեությունը դա համագործակցություն է:

▣ **«հիւրասիրութեան հետեւեցէք»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է, օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով: Բառացիորեն նշանակում է «անդադար ձգտել հյուրասիրության» (տես ծանուցում 14:19, հմմտ. I Տիմ. 3:2; Տիտոս 1:8; Եբր. 13:2; I Պետ. 4:9): Այս ծառայությունը խիստ կարևոր էր վաղ եկեղեցում, որովհետև այդ ժամանակ գոյություն ուներ «պանդոկների» վատ համբավը: Սա հիմնականում վերաբերվում էր ապաստարան հատկացնել կամ կերակրել շրջիկ քրիստոնյա ծառայողներին:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 12:14-21**
[14]Ձեզ հալածողներին օրհնեցէք, օրհնեցէք եւ մի անիծէք: [15] Ուրախացողների հետ ուրախացէք, եւ լացողների հետ լացէք:[16] Իրար վրայ միեւնոյն խորհուրդը ունեցէք. բարձր բաները մի խորհիք. այլ խոնարհների հետ խոնարհուեցէք. ձեր անձերումը իմաստուն մի լինիք:[17] Մէկին չարի տեղ չար մի հատուցանէք. ամեն մարդկանց առաջին բարի խորհուրդ ունեցէք:[18]Եթէ կարելի է՝ որքան ձեզանից է կախուած՝ ամեն մարդկանց հետ խաղաղութիւն ունեցէք:[19] Ձեր անձերի համար վրէժխնդրութիւն մի անէք, սիրելիներ. այլ բարկութեան տեղ տուէք. որովհետեւ գրուած է՝ Վրէժխնդրութիւնն իմն է. ես հատուցումը կտամ, ասում է Տէրը:[20]Արդ եթէ քո թշնամին սոված է, հաց տուր նորան. եւ եթէ ծարաւ է, ջուր տուր նորան. որովհետեւ այս անելով կրակի կայծեր կժողովես նորա գլխի վրայ:[21] Մի յաղթուիր չարիցը, այլ բարիովը յաղթիր չարին:

NASB (UPDATED) TEXT: 12:14-21
[14]Bless those who persecute you; bless and do not curse. [15]Rejoice with those who rejoice, and weep with those who weep. [16]Be of the same mind toward one another; do not be haughty in mind, but associate with the lowly. Do not be wise in your own estimation. [17]Never pay back evil for evil to anyone. Respect what is right in the sight of all men. [18]If possible, so far as it depends on you, be at peace with all men. [19]Never take your own revenge, beloved, but leave room for the wrath *of God*, for it is written, "VENGEANCE IS MINE, I WILL REPAY," says the Lord. [20]"BUT IF YOUR ENEMY IS HUNGRY, FEED HIM, AND IF

HE IS THIRSTY, GIVE HIM A DRINK; FOR IN SO DOING YOU WILL HEAP BURNING COALS ON HIS HEAD." [21]Do not be overcome by evil, but overcome evil with good.

**12:14 «Ձեզ հալածողներին օրհնեցէք»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌԻ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է այս համարում օգտագործված երկու անգամ: Այս հունարեն տերմինից առաջացել է անգլերեն «eulogy», որը նշանակում է «գովասանական ճառ, ներբող, օրհներգել, փառաբանել» (հմմտ. Մաթ. 5:44; Ղուկ. 6:28; I Կոր. 4:12; Հակոբոս 3:9-12; I Պետ. 3:9): P[46] պապիրուսում (Չեստեր Բիտիի գրադարանում) և B ձեռագիր մատյանում (Վատիկան), «ձեզ» բառը բաց է թողնված, միտքն ավելի ընդարձակելի դարձնելու համար, կամ էլ, այլ կերպ ասած, էլ ավելի ընդհանրական միտք տալու համար: «Հալածել» բառի համար նայեք ծանուցում 14:9:

▣ **«մի անիծէք»** Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՉԵԶՈՔ ՍԵՌԻ (deponent) ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿ-ով, որը նշանակում է արդեն իսկ գործընթացի մեջ եղող գործողության դադար: Սա վերաբերում է աղոթքի մեջ Աստծո անունը վրեժխնդրության համար կանչելուն (նման է I Կոր. 12:3 անեծքներին): Սա չի վերաբերում պղծությանը (հմմտ. Եփ. 4:29; I Պետ. 3:9):

**12:15 «ուրախացողների հետ ուրախացէք, եւ լացողների հետ լացէք»** Այս երկու ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ԱՆՈՐՈՇ ԴԵՐԲԱՅ/ԻՆՖԻՆԻՏԻՎՆԵՐ են օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով: Քրիստոնյաները մեկ ընտանիք են: Հավատացյալները մրցման մեջ չեն, այլ պետք է իրար հետ վարվեն ընտանեկան սիրով: Ելնելով հհ. 14-21 կոնտեքստից սա նույնիսկ կարող է անդրադարձնել հավատացյալի մոտեցումը իրեն շրջապատող անհավատների հետ օգտագործելով մշակույթային հնարավորությունները կամ հանգամանքները ավետարանելու հնարավորությունների դեպքում:

**12:16**

| | |
|---|---|
| **NASB, NKJV** | **"Be of the same mind toward one another"** |
| **NRSV** | **"Live in harmony with one another"** |
| **TEV** | **"Have the same concern for everyone"** |
| **JB** | **"Treat everyone with equal kindness"** |

**Արևելահայերեն «Իրար վրայ միեւնոյն խորհուրդը ունեցէք»**
**Արևմտահայերեն « Իրարու վրայ միեւնոյն խորհուրդը ունեցէ՛ք»**

Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է, օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով (հմմտ. 15:5; II Կոր. 13:11; Փիլ. 2:2): Համար 16 կարող է կապվել

կոնֆլիկտի հետ (1) Հռոմի եկեղեցում հավատացյալ հրեաների և հավատացյալ հեթանոսների միջև (հմմտ. 11:13-24); (2) տնտեսական դասակարգերի հնացած կոնֆլիկտ; կամ (3) հոգևոր պարգևների զանազանության:

▣ **«բարձր բաները մի խորհիք. այլ խոնարհների հետ խոնարհուեցէք»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌԻ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿ-ով, որը նշանակում է արդեն իսկ գործընթացի մեջ եղող գործողության դադար:

«Խոնարհությամբ» տերմինը կարող է լինել ԱՐԱԿԱՆ կամ ՉԵԶՈՔ ՍԵՌ: Եթե ՉԵԶՈՔ ՍԵՌ է ապա ուրեմն թարգմանությունը պետք է կարդացվի «ընդունեք խոնարհ դիրք»; եթե ԱՐԱԿԱՆ «միացեք աղքատ/խեղճ կամ խոնարհ մարդկանց հետ»:

▣ **«ձեր անձերումը իմաստուն մի լինիք»** Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՉԵԶՈՔ ՍԵՌԻ (deponent) ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿ-ով, որը նշանակում է արդեն իսկ գործընթացի մեջ եղող գործողության դադար (հմմտ. Առ. 3:7; Ես. 5:21; I Կոր. 10:12; Գաղ. 6:3): Հավատացյալները չպետք է իրենց գերազանց դասեն ուրիշներից կամ էլ ամբարտավանությամբ են վարվում անհավատների հետ:

**12:17 «Մէկին չարի տեղ չար մի հատուցանէք»** Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է, օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿ-ով, որը նշանակում է արդեն իսկ գործընթացի մեջ եղող գործողության դադար: Աստծո գործն է ամեն բան կարգի բերելը ոչ թե հավատացյալներինը (հմմտ. Առ. 20:22; 24:29; Մաթ. 5:38-48; Ղուկ. 6:27; I Թես. 5:15; I Պետ. 3:9):

▣ **«ամեն մարդկանց առաջին բարի խորհուրդ ունեցէք»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՉԵԶՈՔ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է, օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով (հմմտ. II Կոր. 8:21; I Թես. 5:22; և I Տիմ. 3:7): Արտահայտությունը կարող է ակնարկ է Առ. 3:4 ըստ Սեպտուագինտի (LXX): Հավատացյալներն ապրում են մշտարթուն վիճակում՝ անհավատներին ավետարանելու համար: մենք ոչինչ չպետք է անենք, որ վնասենք կամ հեռացնենք մեզանից անհավատներին (հմմտ. I Կոր. 9:19-23): Նույնիսկ մեր ամենախորը համոզմունքները պետք է արտահայտվեն սիրալիր կերպով:

**12:18 «Եթէ կարելի է՝ որքան ձեզանից է կախուած՝ ամեն մարդկանց հետ խաղաղութիւն ունեցէք»** Այստեղ ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է, որը ենթադրվում է ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակների համար:

Նախադասության երկրորդ մասում ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է, օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով: Սա միշտ չէ, որ կախված է հավատացյալի ընտրությունից, բայց քերականական շարադասությունը ենթադրում է, որ այդպես հաճախ հնարավոր է (հմմտ. Մարկ. 9:50; II Կոր. 13:11; I Թես. 5:13):

**12:19 «Ձեր անձերի համար վրեժխնդրութիւն մի անէք»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿ-ով օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿՈՎ, որը սովորաբար նշանակում է արդեն իսկ գործընթացի մեջ եղող գործողության դադար: Կգա օրը, երբ Աստված ամեն բան կարգի կբերի:

- **«որովհետեւ գրուած է»** Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, որը սեմիթական իդիոմատիկ արտահայտություն է, որն օգտագործել են ներշնչված Սուրբ Գրքի համար: Ներշնչվածության այս իդիոման զուգահեռ է «ասում է Տերը» արտահայտությանը (հմմտ. I Կոր. 14:21 և II Կոր. 6:17): Սա մեջբերում է 2 Օրին. 32:35-ից:

**12:20 «Արդ եթէ քո թշնամին»** Սա ԵՐՐՈՐԴ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է, որը նշանակում է հնարավոր գործողություն ապագայում: Թշնամիներն անպայման կգան:

- **«կրակի կայծեր կժողովես նորա գլխի վրայ»** Սա ակնարկում է Առ. 25:21-22. Այս արտահայտության մեկնության վարկածներից են
    1. սա իդիոմա էր, հավանական է Եգիպտոսի նշակույթից վերցված, որը նշանակում էր, որ թշնամուն ընկեր դարձնելու լավագույն կերպը բարությունն է: Սա նաև քրիստոնյայի արձագանքն է խրամատել/entrenched չարին (հմմտ. Մաթ. 5:44);
    2. «կրակի կայծեր» ակնհայտ է, որ այս ամոթը իր անհարիր արարքների համար, որ այդպես հստակ հայտնվում են ուրիշին սիրելու և ներելու լույսի ներքո (հմմտ. Ամբրոզիաս, Օգոստինոս և Ջերոմ);
    3. Օրիգենը և Քրիսոստոմն ասել են, որ սա վերաբերվում է քրիստոնեական բարությանը, ինչն էլ Աստծուն մղում է ավելի դաժան դատելու անապաշխարին (հմմտ. «Ջերոմի աստվածաշնչյան մեկնաբանությունները»)[cf. the *Jerome Biblical Commentary]*, հատ. 2, էջ. 326:

Վերը նշված բոլոր թեորիաները իրենց օգտին են խոսում: Իմաստը հասկանալու բանալին գտնվում է ամփոփիչ դրույթի մեջ հ.21:

**12:21 «Մի յաղթուիր չարիցը, այլ բարիովը յաղթիր չարին»** Այստեղ օգտագործված են ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ և ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ: Մեր պատասխանը անարդար վերաբերմունքի հանդեպ կորոշի և կարտացոլի մեր ներքին խաղաղության և ուրախության աստիճանը: Դառնությունը հոգևոր քաղցկեղ է: Հավատացյալներն այս ամենը պետք է տան Աստծուն:

▣ **"«չարից»** Այս բառը կամ ԱՐԱԿԱՆ ՍԵՌ է, և այս դեպքում վերաբերվում է կոնկրետ չար մեկը, կամ էլ ՉԵԶՈՔ ՍԵՌ է և նշանակում է չար լայն իմաստով: Սա հատուկ է Նոր Կտակարանին, այսպիսի անորոշություն շատ է հանդիպում ՆԿ-ում (հմմտ. Մաթ. 5:37; 6:13; 13:19,28; Հովh. 17:15; II Թես. 3:3; I Հովh. 2:13-14; 3:12; 5:18-19):

**Քննարկվող հարցեր hh.9-21**

Սա սերտողության համար ուղեցույց հանդիսացող մեկնաբանություն է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ:

1. Ինչու՞ hh. 9-21 այսքան շատ են հանդիպում ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿԻ ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿՈՎ բայեր:
2. Տվյալ հատվածից առանձին սյունակներով դուրս գրեք բոլոր պատվերները: Դրանք բավականին շատ են, թե ինչ է ներգրավված գործնակ քրիստոսանման կյանք ապրելու մեջ:
3. Ինչու՞ է այսքան դժվար որոշել, թե որ համարներն են առնչվում քրիստոնյայի վերաբերմունքը մյուս հավատացյալների հետ, և որն է վերաբերում նրանց վերաբերմունքը անհավատների հետ:

# ԹՈՒՂԹ ՈՒՂՂՎԱԾ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

## ԳԼՈՒԽ 13

| ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ | | | | |
|---|---|---|---|---|
| UBS[4] | NKJV | NRSV | TEV | JB |
| Հնազանդություն իշխանություններին | Ենթարկվել Կառավարությանը | Քրիստոնյան և պետությունը | Պարտավորություններ պետական իշխանությունների հանդեպ | Ենթարկվել իշխանություններին |
| 13:1-7 | 13:1-7 | 13:1-7 | 13:1-5 | 13:1-7 |
| | | | 13:6-7 | |
| Եղբայրական սեր | Մերձավորի սերը | Սերը կատարում է օրենքը | Պարտավորություններ միմյանց հանդեպ | Սեր և օրենք |
| 13:8-10 | 13:8-10 | 13:8-10 | 13:8-10 | 13:8-10 |
| Տիրոջ Օրվա մոտենալը | Հագնել Քրիստոսին | Անխուսափելիություն Քրիստոսի Երկրորդ Գալուստից | | Լույսի որդիներ |
| 13:11-14 | 13:11-14 | 13:11-14 | 13:11-13 | 13:11-14 |
| | | | 13:14 | |

**ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ** (տես էջ vii)

*Հետևել բուն հեղինակի մտադրությանը պարբերությունների մակարդակով*

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած

լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Ճանաչիր թեմաները: Համեմատիր քո թեմայի բաժանումները վերը նշված 5 թարգմանությունների հետ: Բաժանումները ներշնչված չեն, բայց դա բանալի է հետևելու բուն հեղինակի մտադրությանը, որը մեկնաբանության սիրտն է: Յուրաքանչյուր պարագրաֆ ունի մեկ և միայն մեկ թեմա:

Մեկ շնչով կարդացեք այս գլուխը: Ուրվագծեք հիմնական թեմաներն ու թեման արտահայտեք մեկ նախադասությամբ:

1. Առաջին պարագրաֆ
2. Երկրորդ պարագրաֆ
3. Երրորդ պարագրաֆ
4. և այլն

**ԿՈՆՏԵՔՍՏԻ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ հh.1-7**

Ա. Եթե 12-րդ գլուխը հիմնականում խոսում էր քրիստոնյայի և իր հավատակից եղբայրների և քույրերի (hh. 9-13) և շրջապատող հասարակության հետ ունեցած փոխհարաբերությունների մասին (hh. 14-21), ապա գլուխ 13:1-7-ը հիմնականում առընչվում է քրիստոնյայի կապը քաղաքացիական կառավարության հետ փոխհարաբերությանը: Ինչևէ, այս երկու թեմաների միջև կոնտեքստային բաժանում չկա: Պողոսի համար դրանք մեկ են: Այստեղ հոգևոր-աշխարհիկ դիխոտոմյա/dichotomy չկա: Կյանքն ամբողջությամբ պատկանում է Աստծուն: Հավատացյալները տնտեսներ են բոլոր բնագավառներում: Այս երկու գլուխների միջև եղած կապը կարելի է տեսնել 12:18-ում:

Բ. Հավատացյալների հասկացողությունը քաղաքացիական իշխանությունների տեղի և դերի մասին եղել են տարբեր: Հին Կտակարանում կառավարման ձևերը զարգանում են Կայենի սերնդի ներսում (հմմտ. Ծննդ. 4:16-22): Բաբելոնյան աշտարակաշինությունը (հմմտ. Ծննդ. 11) դա մարդկության ինքնակառավարում իրականացնելու փորձն է Աստծուց անկախ: Իսրայելի թագավորական կառավարումը պետք է լիներ Աստծո գահակալությամբ և աստվածային օրենքով և նրա կողմից նշանակված հովվի (թագավորի) միջոցով, սակայն այս ամենը հաջողություն չունեցավ մարդկության մեղքի պատճառով: Հիսուսի քննարկումը Մաթ.

22:21 և Մարկոս 12:17 իշխանության հատուկ տեղի մասին հիմնական/կենտրոնական տեղ է գրավում այս հարցում: Զարմանալի է, որ Պողոսը չի նշում Հիսուսի խոսքերը այս կոնտեքստում (չնայած 1-7հհ. և 11հ. իմաստը զուգահեռ է Մաթ. 22:15-22 և 39): Ընկած աշխարհում իշխանության համար կա հատուկ դեր Աստծո կողմից: Հաճախ առաքյալները հայտնվում էին բարդ իրավիճակներում՝ իշխանությունների հետ ճիշտ վարվելու հարցում, թե քաղաքացիական և թե կրոնական: Պողոսը թե պաշտպանված էր իշխանությունների կողմից և թե հալածվում էր նրանցից: Ինչևէ, Հովհաննեսը Հայտնության գրքում խոսում է իշխանության մասին, որպես Մեծ Պոռնիկ (հմմտ. Հայտ. 17):

Մենք պետք է աջակցենք իշխանություններին այնքան ժամանակ, մինչև որ նրանք չեն ոտնահարի Սուրբ Հոգով կառավարվող մեր խիղճը, կամ չեն պահանջի անսահմանափակ նվիրվածություն և հնազանդություն: Բայց քաղաքացիական կարգ ու կանոնը գերադասելի է, քան քաոսային վիճակը (հմմտ. II Թես. 2:6-7):

Գ. Այս նույն թեման շոշափվում է նաև Տիտոս 3:1 և I Պետ. 2:13-17-ում:

Դ. Հուդայականությունը օրինական կրոն էր առաջին դարում հռոմեական կառավարության ներքո: Շատ տարիներ քրիստոնեությունը համարվում էր աղանդ հուդայականության ներսում ձևավորված (հմմտ. Գործք 18:12-16): Այսպիսի իրավիճակը թույլ էր տալիս ունենալ օրինական պաշտպանություն միսիոներական շարժման այն վաղ տարիներին: Գործք Առաքելոց գրքի նպատակներից մեկն այն էր, ցույց տալ, որ քրիստոնեությունը քաղաքական վտանգ չէր ներկայացնում Հռոմի համար: Չնայած Հռոմը ստեղծեց միջազգային խաղաղություն և կայունություն (*pax Romana*), որի պայմաններում էլ տարածվեց Ավետարանը (հմմտ. I Տիմ. 2:1-2):

Ե. Այս հատվածի իմաստը ուժեղացվում է Պողոսի իշխանությունների հետ ունեցած անձնական փորձառությունների լույսի ներքո: Շատ հնարավոր է, որ այս բաժինը ներգրավվել է երկու պատճառով (1) Հռոմի եկեղեցու ներսում կար լարված իրավիճակ կառավարության կողմից դուրս եկած հրամանների պատճառով (օրինակ, սահմանափակել հրեական ծեսերը): Սա կարող էր ստիպել որոշ հավատացյալ հրեաների հեռանալ մայրաքաղաքից (օրինակ, Ակյուղաս և Պրիսկիղա, հմմտ. Գործք 18:2): Իրենց բացակայության ժամանակ հավատացյալ հեթանոսների առաջնորդությունը զարգացավ: (2) Հռոմի հրեական մեծ համայնքում լարվածությունը ստեղծվել էր ավետարանի քարոզչության արդյունքում: Պատմաբան Սվիտոնիուսը «Կլավդիա կյանքը» գրքում [Suetonius, *Life of Claudius]* 25.2, գրում

է, որ կայսրը հրեաներին աքսորեց մայրաքաղաքից 49 Ք.Հ, հասարակական կարգը խախտելու համար, որը ստեղծում էր «Քրեստուս»: Հնարավոր է, սա Քրիստոս անվան գրելու լատիներեն տարբերակն է (Christos).

## ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 13:1-7**
[1]Ամեն անձը թող հնազանդէ բարձր իշխանութիւններին. որովհետեւ չկայ իշխանութիւն որ չէ
Աստուածանից. եւ ներկայ իշխանութիւններն Աստուածանից են կարգուած: [2]Ուրեմն
իշխանութեանը հակառակողը Աստուծոյ հրամանին է հակառակում. եւ հակառակողները
իրանց անձերին դատաստան կընդունին:[3] Որովհետեւ իշխանները բարի գործերի համար
վախի պատճառ չեն, այլ չար գործերի. կամենու՞մ ես որ իշխանութիւնիցը չվախենաս,
բարին գործիր, եւ նորանից գովասանք կընդունիս: [4] Որովհետեւ սպասաւոր է նա Աստուծոյ
քեզ համար դէպի բարին. ապա եթէ չարը գործես՝ վախեցիր. որովհետեւ զուր տեղը սուրը չէ
կրում. որովհետեւ նա սպասաւոր է Աստուծոյ՝ վրէժխնդիր բարկութիւն բերելու չարը գործողի
համար:[5] Վասնորոյ պէտք է հնազանդ լինել՝ ոչ միայն բարկութեան համար, այլ
խղճմտանքի համար էլ:[6] Սորա համար հարկ էլ էք վճարում. որովհետեւ նորանք
սպասաւորներ են Աստուծոյ որ իսկ այս բանին հոգ են տանում:[7] Ուրեմն ամենին վճարեցէք
եղած պարտքը. ում որ հարկ պարտ էք՝ հարկը, ում որ մաքս՝ մաքսը, ում որ վախ՝ վախը, ում
որ պատիւ՝ պատիւը:

**NASB (UPDATED) TEXT: 13:1-7**
**[1]Every person is to be in subjection to the governing authorities. For there is no authority except from
God, and those which exist are established by God. [2]Therefore whoever resists authority has opposed the
ordinance of God; and they who have opposed will receive condemnation upon themselves. [3]For rulers are
not a cause of fear for good behavior, but for evil. Do you want to have no fear of authority? Do what is
good and you will have praise from the same; [4]for it is a minister of God to you for good. But if you do
what is evil, be afraid; for it does not bear the sword for nothing; for it is a minister of God, an avenger who
brings wrath on the one who practices evil. [5]Therefore it is necessary to be in subjection, not only because
of wrath, but also for conscience' sake. [6]For because of this you also pay taxes, for *rulers* are servants of
God, devoting themselves to this very thing. [7]Render to all what is due them: tax to whom tax *is due*;
custom to whom custom; fear to whom fear; honor to whom honor.**

**13:1 «Ամեն անձը թող հնազանդէ»** Այս ձևը ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ-ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է, որը նշանակում է «շարունակել հնազանդ լինել ինչ որ մեկին» (հմմտ. Տիտոս 3:1; I Պետ. 2:13): «Հնազանդվել» ռազմական տերմին էր, որն օգտագործվում էր նկարագրելու համար մի շարք հրամաններ: Համաձայն կոնտեքստի, Պողոսը այս խոսքերը ուղղում է բոլոր հավատացյալներին (հմմտ. Եփ. 5:21), որտեղ Պողոսը պնդում է, որ հավատացյալները պետք է հնազանդվեն միմյանց:

Մեր օրերում հնազանդությունը կարծես բացասական իմաստ ունի: Բայց այս բառը նկարագրում է թե խոնարհություն և թե խորը հասկացողություն Աստծո ստեղծած աշխարհի և մեր

տեղը նրանում: Հիսուսը հնազանդվեց (1) Իր երկրային ծնողներին (հմմտ. Ղուկ. 2:51) և (2) Իր երկնային Հորը (հմմտ. I Կոր. 15:28): Այս բնագավառում Նա մեր առաջնորդն ու օրինակն է:

▣ **«բարձր իշխանութիւններին»** Չնայած Պողոսն օգտագործեց այս բառը (*exousia*), ուրիշ դեպքերում կապված հրեշտակային ուժերի հետ, հիմնականում դիվային (հմմտ. 8:38; Կող. 1:16; 2:10,15; Եփ. 1:21; 3:10; 6:12), այստեղ կոնտեքստը պահանջում է «քաղաքացիական իշխանություններին» (հմմտ. I Կոր. 2:6,8; Տիտոս 3:1; I Պետ. 2:13): Թվում է, թե Աստվածաշունչը ենթադրում է հրեշտակային իշխանությունների առկայությունը յուրաքանչյուր մարդկային իշխանությունների ետևում կանգնած (Դանիել 10 և ըստ LXX 2 Օրին. 32:8 «Երբ Բարձրյալը բաժանեց ազգերը, երբ Նա առանձնացրեց Ադամի/մարդու որդիներին, Նա ազգերի սահմանները դրեց՝ համաձայն Աստծո հրեշտակների քանակի»): Սակայն գոյություն ունեցող բոլոր կառավարող իշխանությունները անխտիր գործում են Աստծո ներքո (հմմտ. հհ. 1բ,4ա, և 6):
Ստորև տես Հատուկ Թեմա.

## ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՄԱՐԴԿԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ

I. ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

Ա. Սահմանումը – Կառավարությունը դա մարդկային հասարակության մեջ ձևավորված ներքին համակարգ է, որի նպատակն է հայթայթել և պաշտպանել նրա ֆիզիկական կարիքները:

Բ. Նպատակը - Աստծո կամքն էր, որ լիներ կարգ ու կանոն, և ոչ թե անարխիա:

1. Մովսեսական օրենսդրությունը, մասնավորապես Դեկալոգը Աստծո կամքն է մարդու համար հասարակության մեջ: Այն հավասարազոր է անում Աստծուն երկրպագելն ու կյանքը:

1. Սուրբ Գիրքը չի առաջարկում կամ պաշտպանում որևէ իշխանության կառավարման ձև կամ կառուցվածք, չնայած հին իսրայելական թեոկրատիան դա այն նախատեսված ձևն է, որը կլինի երկնքում: Ո՛չ դեմոկրատիան, և ոչ էլ կապիտալիզմը աստվածաշնչյան ճշմարտություն չեն: Քրիստոնյաները պետք է վարվեն համապատասխան կերպով, աստվածահաճո, անկախ այն բանից, թե իշխանության կառավարման ինչ համակարգի մեջ են նրանք գտնվում: Քրիստոնյայի նպատակը ավետարանչությունն ու ծառայություն է, և ոչ թե հեղափոխությունը:

Գ. Մարդկային իշխանության ծագումը

1. Հռոմեական կաթոլիկությունը պնդում է, որ մարդկային իշխանությունը դա մարդում մեջ դրված բնության պահանջ է նույնիսկ մինչև Անկումը: Թվում է, Արիստոտելը

այսպիսի ենթադրության կողմնակից էր: Նա ասում է, «մարդը դա քաղաքական, պետական կենդանի է» և դրանից ելնելով, նա համարում էր, որ կառավարությունը «լավ կյանք զարգացնելու, կարգավորելու համար է»:

2. Բողոքականությունը, հատկապես Մարտին Լյութերը, պնդում է, որ մարդկային իշխանությունը ստեղծվել է Անկման ժամանակ: Նա դա կոչում է «Աստծո Թագավորության ձախ ձեռքը»: Նա ասում է, որ «Վատ մարդկանց կառավարելու Աստծո միջոցը դա վատ մարդկանց որոշակի սահմանների մեջ պահելն է»:
3. Կարլ Մարքսը պնդում էր, որ կառավարությունը դա միջոց է, որի օգնությամբ ոչ այնքան շատ էլիտան կառավարում է մարդկային հոծ զանգվածը: Իր կարծիքով կառավարությունն ու կրոնը նմանատիպ դեր են կատարում:

II. ԱՍՏՎԱԾԱՇՆՉՅԱՆ ՆՅՈՒԹ

Ա. Հին Կտակարան

1. Իսրայելը դա օրինակ է, որը կօգտագործվի երկնքում: Հին Իսրայելում ՅԵՀՈՎԱ-ն էր Թագավորը: Թեոկրատիա տերմինը օգտագործվում է նկարագրելու համար Աստծո ուղղակի կառավարումը (հմմտ. I Թագ. 8:4-9):
2. Աստծո սուվերենությունը/գերիշխանությունը մարդկային իշխանությունների մեջ հստակ երևում է
   ա. Երեմիա 27:6; Եզրաս 1:1
   բ. II Մնացորդաց 36:22
   գ. Եսայա 44:28
   դ. Դանիել 2:21
   ե. Դանիել 2:44
   զ. Դանիել 4:17,25
   է. Դանիել 5:28
3. Աստծո ժողովուրդը պետք է խոնարհ լիներ և հարգալից նույնիսկ նվաճող և զավթիչ իշխանություններին:
   ա. Դանիել 1-4, Նաբուգոդոնոսոր
   բ. Դանիել 5, Բաղդասար
   գ. Դանիել 6, Դարեհ
   դ. Եզրաս և Նեեմիա
4. Աստծո ժողովուրդը պարտավոր է աղոթել քաղաքացիական իշխանությունների համար:
   ա. Երեմիա 28:7

բ. Միշնա, Avot. 3:2

Բ. Նոր Կտակարան

1. Հիսուսը հարգանք ցուցաբերեց մարդկային իշխանություններին
   ա. Մատթեոս 17:24-27; վճարեց Տաճարի հարկը
   բ. Մատթեոս 22:15-22, պաշտպանեց կայսրին հարկ տալը և այդպիսով հարգանք ցուցաբերեց հռոմեական քաղաքացիական իշխանությունների հանդեպ
   գ. Հովհաննես 19:11, Աստված է դնում քաղաքացիական իշխանություն
2. Պողոսի խոսքերը կապված մարդկային իշխանություններին
   ա. Հռոմեացիս 13:1-7, հավատացյալները պետք է հնազանդվեն և աղոթեն քաղաքացիական իշխանությունների համար:
   բ. I Տիմոթեոս 2:1-3, հավատացյալները պետք է աղոթեն քաղաքացիական իշխանությունների համար
   գ. Տիտոս 3:1, հավատացյալները պետք է հնազանդվեն քաղաքացիական իշխանություններին
3. Պետրոսի խոսքերը կապված մարդկային իշխանություններին
   ա. Գործք 4:1-31; 5:29, Պետրոսն ու Հովհաննեսը Սենեդրիոնի առջև (սա ցույց է տալիս քաղաքացիական անհնազանդությունը)
   բ. I Պետրոս 2:13-17, հավատացյալները պետք է հնազանդվեն քաղաքացիական իշխանություններին
4. Հովհաննեսի խոսքերը կապված մարդկային իշխանություններին
   ա. Հայտնություն 17, Բաբելոնի պոռնիկը աջակցում է մարդկային իշխանությանը, որը հակառակվում է Աստծուն:

III. ԱՄՓՈՓՈՒՄ

Ա. Մարդկային իշխանությունները դրված են Աստծո կողմից: Սա նշանակում, թե թագավորներն ունեն «աստվածային իրավունք» այլ Աստծո կողմից տրված հատուկ տեղ և դեր ունեն նրանք: Ոչ մի կառավարման ձև մյուսից առավել չէ:

Բ. Հավատացյալների կրոնական պարտականությունն է հնազանդվել քաղաքացիական իշխանություններին և ցուցաբերել հատուկ հարգանք նրանց հանդեպ:

Գ. Հավատացյալների համար միանգամայն պատշաճ է աջակցել մարդկային իշխանություններին՝ հարկեր վճարելով և նրանց համար աղոթելով:

Դ. Մարդկային իշխանությունները կարգ ու կանոն հաստատելու և պահպանելու համար են: Նրանք Աստծո ծառաներն են հենց այս առաջադրանքը կատարելու համար:

Ե. Մարդկային իշխանությունները վերճնական և գերագույն համակարգը չէ: Այն սահմանափակված է իր իսկ իշխանության մեջ: Հավատացյալները պարտավոր են գործել իրենց խղճի համեմատ և չկատարեն իշխանությունների պահանջները, եթե դրանք անցնում են Աստծո դրած սահմանները: Օգոստինոսը իր «Աստծո քաղաքը» գրքում (*The City of God)* ասում է, որ մենք հաղիսանում ենք երկու պետության քաղաքացի, որից մեկը ժամանակավոր է, իսկ մյուսը հավիտենական: Երկուսում էլ մենք ունենք պատավորություններ և պատասխանատվություններ, բայց Աստծո թագավորությունն է գերագույնը: Աստծո առաջ ունեցած մեր պատասխանատվությունը այս հարցում թե անհատական է և թե համընդհանուր, համատեղ:

Զ. Մենք պետք է քաջալերենք հավատացյալներին դեմոկրատական համակարգի մեջ ակտիվ մասնակցության համար կառավարման գործընթացի մեջ և դրան կիրառության մեջ, որտեղ որ հնարավորն է Սուրբ Գրքի ուսմունքները:

Է. Սոցիալական փոփոխությունը պետք է նախորդի անհատի դարձի գալը: Կառավարության մեջ չկա իրական փախճանաբանական հույս: Բոլոր մարդկային իշխանությունները չնայած գոյություն ունեն Աստծո կամքով և օգտագործվում են Աստծո կողմից, հանդիսանում են մեղավոր համակարգ առանց Աստծո: Այս գաղափարը լավ արտահայտվում, այնպես ինչպես Հովհաննես առաքյալն է օգտագործում «աշխարհ» բառը:

**Արևելահայերեն «եւ ներկայ իշխանութիւններն Աստուածանից են կարգուած»**

**Արևմտահայերեն «եւ անոնք որ կան՝ Աստուածմէ կարգուած են »**

▣

**NASB "those which exist are established by God"**
**NKJV "that exist are appointed by God"**
**NRSV "that have been instituted by God"**
**TEV "have been put there by God"**
**NJB "have been appointed by God"**

Սա այլաբանական կիրառությունն է ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅԻ: Սա պնդում է, որ Աստված գերազանց է բորոր մարդկային իշխանություններից (հմմտ. Հովհ. 19:11): Սա չի վերաբերվում «Աստծո աջի թագավորներին/օծյալներին», այլ Աստծո կամքին՝ կարգ ու կանոն լինելու համար: Սա չի խոսում ինչ որ առանձնահատուկ տեսակի կառավարության մասին, այլ հենց ինքնին իշխանությունը: Քաղաքացիական կարգ ու կանոնը ավելի լավ է քան քաոսը (հմմտ. հ. 6):

**13:2 «իշխանութեանը հակառակողը»** Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՉԵԶՈՔ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է: Խոսքը վերաբերվում է անձնական սովորույթի ըմբոստությանը՝ հաստատված կանոնակարգի դեմ, բառացիորեն «քեզ դնել ընդդիմության մեջ» (հմմտ. Գործք 18:6; Հակոբոս 5:6): Մարկոս 12:17, Հիսուսը հստակ հաստատեց թե կառավարության և թե եկեղեցու թագավորությունը: Գործք 5:25-32 մենք տեսնում ենք, թե ինչ է տեղի ունենում, երբ իշխանություններն անցնում են իրենց սահմանները:

▣ **«է հակառակում . . . հակառակողներն»** Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է և ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ: Սա խոսում է հաստատված և արմատացած ապստամբության մասին, որը տեղ է գտել մարդկանց մեջ: Աստված ստեղծել է կարգ ու կանոն այս ընկած աշխարհում (հմմտ. հh. 4,6): Կանոնակարգին հակառակվել նշանակում է հակառակվել Աստծուն, բացառությամբ այն իրավիճակի, երբ քաղաքացիական իշխանությունները ոտնահարում են իրենց Աստծո կողմից դրված սահմանները: Ճիշտ հոգևոր վիճակը իշխանություններին հնազանդվելն է: Ընկած մարդկությունն ուզում է անկախություն:

▣ **«իրանց անձերին դատաստան կընդունին»** KJV թարգմանության մեջ օգտագործված է «անեծք, նզովք, դատապարտում» բառը: Այս բառն անգլերեն լեզվի մեջ մտել է գործածության 1611Ք.Հ. NKJV Տարբերակում օգտագործված է «դատաստան» բառը: Կոնտեքստում սա կարող էր վերաբերվել (1) Աստծո դատաստանին կամ (2) քաղաքացիական իշխանությունների կողմից արված պատժին (հմմտ. h. 4): Այս մարդիկ իրենց վրա դատապարտություն էին բերում իրենց վերաբերմունքով և արարքներով ուղղված իշխանությունների դեմ (հմմտ. Հովh. 3:17-21):

**13:3** Տես զուգահեռ մեկնաբանություն I Պետ. 2:14.

▣ **«իշխանութիւն»** Տես Հատուկ Թեմա: *Archē* 8:38.

**13:4 «Որովհետեւ սպասաւոր է նա Աստուծոյ քեզ համար դէպի բարին»** Իշխանությունների կառավարման համակարգի գործողությունը չարագործների դեմ է, մինչդեռ հավատացյալը ինքն իրեն սահմանափակում է վրեժխնդիր լինելու մեջ/ պատասխան քայլ անելու մեջ (հմմտ. 12:17-19): Լյութերը պնդում էր, որ « Աստծո կերպը վատ մարդկանց հետ վարվելու՝ նրանց դնել որոշակի սահմանների մեջ»:

▣ **«եթէ»** Այստեղ ԵՐՐՈՐԴ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է, որը նշանակում է հնարավոր գործողություն ապագայում:

**Արևելահայերեն «որովհետեւ զուր տեղը սուրը չէ կրում»**
**Արևմտահայերեն « վասն զի դատարկ տեղ մէջքը թուր չէ կապեր »**

▣

NASB "for it does not bear the sword for nothing"
NKJV "for he does not bear the sword in vain"
NRSV "for the authority does not bear the sword in vain"
TEV "their power to punish is real"
NJB "it is not for nothing that they symbol of authority is the sword"

«Սուր» (*machaira*) բառը փոքր հռոմեական սուր էր, որն օգտագործվում էր մահվան դատավճիռ իրականացնելու համար (հմմտ. Գործք 12:2; Հռ. 8:35): Այս հատվածը և Գործք 25:11 տալիս են Նոր Կտակարանի հիմքը մահվան դատավճռի համար, իսկ Ծննդ. 9:6 հստակ հաստատում է Հին Կտակարանի դիրքն այս հարցում: Վախը ամենաարդյունավետ միջոցներից մեկն է՝ քաոսին հակառակ կենալու համար:

▣ **«որովհետեւ նա սպասաւոր է Աստուծոյ՝ վրէժխնդիր»** «վրեժխնդիր» (*ekdikos*) տերմինը հանդիպում է Հին Կտակարանում մի քանի անգամ: Այն նույնիսկ օգտագործվում է Ղև. 19:18-ի առաջին մասում: Հին Կտակարանում, եթե մեկը մարդ սպաներ, նույնիսկ պատահաբար, այդ մարդու ընտանիքը իրավունք ուներ «աչքի տեղ աչք» վրեժխնդիր լինել (արյան վրեժխնդիր): Պողոսը կողմնակից էր այն բանի, որ հին կտակարանային սովորությունը կիրառվեր քաղաքացիական իշխանությունների կողմից:

**13:5 «պէտք է հնազանդ լինել»** Սա անելու համար երկու պատճառ կար (1) պատժից փախչել, կամ Աստծո կամ էլ կառավարող քաղաքացիական իշխանությունների և (2) հավատացյալների խղճի համար:

▣ **«խղճմտանքի համար էլ»** Հին Կտակարանում հունարեն«խիղճ» բառի նմանը/կրկնորդը չկա, եթե չհաշվենք հին եբրայերեն տերմինը «հոգի, սիրտ, խիղճ», որը նշանակում է մարդու էություն և նրա դրդապատճառները: Հունարեն տերմինի բնագրային իմաստը վերաբերվում էր մարդու գիտակությանը կապված հինգ զգայարանների հետ: Հետո այն սկսեցին օգտագործել ներքին զգացողության համար (հմմտ. Հռ. 2:15): Պողոսն իր փորձությունները նկարագրելիս երկու անգամ

օգտագործում է այս տերմինը Գործք Առաքելոց գրքում (այն է, 23:1 և 24:16): Նա խոսում է սեփական վստահության մասին, որ նա դիտավորյալ չի խախտել որևէ հայտնի կրոնական պարտավորություն Աստծո հետ կապված (հմմտ. I Կոր. 4:4):

Հավատացյալների խիղճը դա զարգացող կարողություն է հասկանալու շարժառիթներն ու գործողությունները հիմնված (1) աստվածաշնչյան աշխարհայացքի; (2) հավատացյալի մեջ բնակվող Սուրբ Հոգու և (3) Աստծո խոսքի վրա հիմնված ապրելակերպի իմացություն: Սա հնարավոր է դառնում միայն ավետարանի անձնապես ընդունման պայմանով:

**13:6 «Սորա համար հարկ էլ էք վճարում»** Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է, չնայած իր կառուցվածքով կարող է լինել ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ (հմմտ. JB): Սա քաղաքացիական իշխանությունների հանդեպ քրիստոնյայի պատասխանատվության օրինակներից մեկն է, քանի որ իշխանությունները Աստծո ծառաներն են:

**Արևելահայերեն «ամենքին վճարեցէք եղած պարտքը; հարկ…մաքս…վախ…պատիվ»**
**Արևմտահայերեն «Ուստի հատուցանեցէք պէտք եղածը անոնց, հարկ…մաքս…վախ…պատիվ »**

**13:7**
**NASB** “Render to all what is due them: tax. . .; custom. . .; fear. . .; honor”
**NKJV** “Render therefore to all their due; taxes. . .; customs. . .; fear. . .; honor”
**NRSV** “pay to all what is due them—taxes. . .; revenue. . .; respect. . .; honor”
**TEV** “Pay, then, what you owe them; pay them your personal and property taxes, and show respect and honor for them all”
**JB** “Pay every government official what he has a right to ask—whether it be direct tax or indirect, fear or honor”

Այս խոսքերը կարող էին վերաբերվել քաղաքացիական իշխանությունների երկու առանձին խմբերի (հմմտ. RSV), բայց հնարավոր է , որ այստեղ ենթադրվում է այն, որ քրիստոնյաները պարտավոր են և վճարել հարկերը, և հարգեն քաղաքացիական իշխանություններին, քանի որ նրանք գործում են որպես Աստծո ծառաներ (հմմտ. հհ. 1,4 [երկու անգամ],6; Մաթ. 22:15-22):

▣ Երկու տերմինները, «մաքս» և «հարկ», այստեղ օգտագործվում են որպես հոմանիշներ (չնայած TEV թարգմանությունը դնում է տարբերություն նրանց մեջ): Եթե վերլուծենք ստուգաբանորեն (բնագրի նշանակությունը), առաջինը վերաբերվում է այն հարկերին, որը պիտի վճարվեր հպատակ պետությանը, ու կողմից, որ նվաճվել էին (հմմտ. Ղուկ. 20:22) իսկ երկրորդը անձնական հարկերն էին (հմմտ. Մաթ.17:25; 22:17,19):

**ԿՈՆՏԵՔՍՏԻ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ 13:8-14**

Ա. 1-7 համարները կարելի է հասկանալ, որպես ինքնաբավարար գրական կոնտեքստ: Ինչևէ, հ. 7-ի «պարտական» թեման կարծես թե շարունակվում է ուրիշ իմաստով հ. 8-ում: Հավատացյալներն ունեն պարտավորություն թե պետության դեմ և թե ուրիշ մարդկանց նկատմամբ:

Բ. 8-10 համարները միավորված են մեկ մտքով, ինչպես հհ. 11-14-ը: Նրանք շարունակում են թեմայի քննարկումը, սկսած գլուխ 12-ից, քրիստոնյայի պատասխանատվությունը ուրիշներին սիրելու մեջ:

Գ. Այն, որ Պողոսն օգտագործում է Հին Կտակարանի Դեկալոգ որպես բարոյական ուղեցույց Նոր Կտակարանի հավատացյալների համար, ցույց է տալիս Հին Կտակարանի շարունակական կարևորությունը աստվածահաճո կյանք ապրելու համար (սրբացում), և ոչ թե փրկության համար (արդարացում): Թվում է, թե Պողոսը միավորել է մի քանի աղբյուրներ՝ իր էթիկայի ուղեցույցը կազմելու համար.

(1) Հիսուսի խոսքերը

(2) Սուրբ Հոգու առաջնորդությունը

(3) Հին Կտակարանը

(4) իր ռաբիական փորձառությունը և պատրաստվածությունը

(5) հույն մտածողների մասին իր գիտելիքները (հատկապես ստոիկները)

Սա բնութագրում է «սիրո օրենքը»— սեր առ Աստված, սեր մարդկանց հանդեպ, ծառայություն առ Աստված և մարդկանց:

Դ. 11-14 համարները ունեն վախճանաբանական (ժամանակի ավարտի) կողմնորոշում: Խավարի և լույսի հակադրությունը բնութագրվում է հրեական գրականության մեջ, ներառյալ Մեռյալ ծովի ձեռագրերը: Սա նաև հատուկ է Հովհաննեսի և Պողոսի գրվածքներին: Քրիստոնեական կյանքում այս հակադրությունը «արդեն» և «դեռ ոչ»-ի միջև մղում է քրիստոնյաներին ապրելու աստվածահաճո կյանք: «Նոր Դար»-ը (Աստծո Թագավորությունը) սկսել է, իր իրավունքների մեջ է մտել և մոտ ապագայում կամբողջանա: Այս հատվածը շատ նման է I Թես. 5:1-11:

Ե. 13-14 համարներն այնպես ազդեցին Օգոստինոսի վրա, որ 386թ. ամռանը փոխվեց նրա ամբողջ կյանքը: Իր «Խոստովանություն» [*Confessions],* գրքում 8:29 նա գրում է, «Ես

չկարողացա կարդալ շաչունակությունը, և ես ուրիշ ոչ մի բանի կարիք էլ չունեի; հենց այստեղ, այս նախադասության վերջում մաքուր լույսը լցրեց իմ սիրտը, և ամբողջ խավարը ցրվեց»:

**ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ**

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 13:8-10**
[8]Ոչ ովի ոչինչ պարտական չմնաք՝ բացի իրար սիրելուց. որովհետեւ ընկերին սիրողը՝ օրէնքը կատարել է: [9]Վասն զի այն Մի շնարը, Մի սպանիրը, Մի գողանարը, Մի սուտ վկայերը, եւ Մի ցանկանարը, եւ ուրիշ ինչ պատուիրանք էլ որ կայ, այս խօսքումն է բովանդակվում, Քո ընկերը սիրիր քո անձի պէս: [10] Սէրն իր ընկերին չար չի անիլ. ուրեմն օրէնքի լրումը սէրն է:

NASB (UPDATED) TEXT: 13:8-10
[8]Owe nothing to anyone except to love one another; for he who loves his neighbor has fulfilled *the* law. [9]For this, "YOU SHALL NOT COMMIT ADULTERY, YOU SHALL NOT MURDER, YOU SHALL NOT STEAL, YOU SHALL NOT COVET," and if there is any other commandment, it is summed up in this saying, "YOU SHALL LOVE YOUR NEIGHBOR AS YOURSELF." [10]Love does no wrong to a neighbor; therefore love is the fulfillment of *the* law.

**13:8 «Ոչ ովի ոչինչ պարտական չմնաք»** Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿ-ով, որը սովորաբար նշանակում է արդեն իսկ գործընթացի մեջ եղող գործողության դադար: Այս շեշտված արտահայտությունն ունի երկու ԺԽՏԱԿԱՆ-ներ: Այս բառերը կարող են վերաբերվել նաև հարկեր վճարելուն (հh. 6-7): Ֆինանսական պարտքերը միշտ էմոցիոնալ և պոտենցիալ հոգևոր անկման: Զգուշացեք աշխարհասիրությունից: Այն զրկում է հավատացյալներին իրենց կարողությունից աջակցել քրիստոնյա բարի գործերին և զբաղվել անձնական բարեգործությունով: Չնայած, այս համարը չի կարող օգտագործվել որպես ապացույց, «ոչ սպառող վարկ»-ի համար: Աստվածաշունչը պետք է մեկնաբանվի այն շամանակի լույսի ներքո, երբ այն գրվել է: Նա ամերիկյան առավոտյան օրաթերթ չէ: 8-10 համարներն ընդգծում են առաջնահերթությունը մեր փոխադարձ սիրո միմյանց հանդեպ (1) որպես ուխտի եղբայրներ (Մաթ. 13:34-35; 22:39-40); և (2) որպես մարդկային համայնքի անդամ (հմմտ. Մաթ. 5:42; Գաղ. 6:10).

▣ **«բացի իրար սիրելուց»** Սա 8-10 համարների բանալի միտքն է (հմմտ. Հովհ. 13:34; 15:12; Հռ. 12:10; I Կոր. 13; Փիլ. 2:3-4; I Թես. 4:9; Եբ. 13:1; II Պետ. 1:7; I Հովհ. 3:11; 4:7, 11-12):

▣ **«ընկերին սիրողը»** Այս ԲԱՅ-ը հանդես է գալիս որպես ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ: Սա չի վերաբերվում մեկուսացված կամ սեզոնային սիրուն, այլ սա քրիստոսանման սիրո արտահայտման և կյանք ապրելու ձև է:

«Հարևան, մոտիկ, այստեղ ընկեր» տերմինը բառացիորեն նշանակում է «ուրիշ տեսակի մեկ ուրիշ» (*heteros*), չնայած *heteros* և *allos* (նույն տեսակի մեկ ուրիշ) միջև եղած տարբերությունը դադարեց գոյություն ունենալ հունարեն կոյնայում: Կոնտեքստում սա կարող է վերաբերվել բոլոր իր կողքը եղողներին, բառի բուն իմաստով, անկախ այն բանից, հավատացյալ է թե ոչ (հմմտ. Ղուկ. 12:14-21; 10:25-37): Չնայած, Ղև. 19:18 մեջբերումը ցույց է տալիս, որ սա վերաբերվում է ուրիշ ուխտի մասնակիցներին (ղևտացին – իսրայելացուն):

Քրիստոնյաները պետք է սիրեն իրենց հավատակիցներին, որպես եղբայրներին իսկ կորսված մարդկանց որպես պոտենցիալ, հնարավոր եղբայրներ: Քրիստոնեությունը ընտանիք է: Յուրաքանչյուր անդամ ապրում և ծառայում է ամբողջի առողջության և աճի համար (հմմտ. I Կոր. 12:7):

**Արևելահայերեն «օրէնքը կատարել է»**
**Արևմտահայերեն «օրէնքը կը կատարէ»**

▣

**NASB, NKJV,**
**NRSV "has fulfilled the Law"**
**TEV "has obeyed the Law"**
**JB "have carried out your obligations"**

Այս տարածված հունարեն բայը (*pleroō*) կարող է թարգմանվել մի քանի տարբեր ձևերով: Այստեղ ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է, որը կարող է թարգմանվել որպես «իրականացել է և շարունակում է իրականանալ»: Ռոբերտ Հաննան «Հունարեն Նոր Կտակարանի քերականական ձեռնարկ»-ում [Robert Hanna, *A Grammatical Aid to The Greek New Testament*], մեջբերում է Ա.Տ. Ռոբերտսոնին և այն կոչում «վաղակատար ժամանակաչևի gnomic (վերաբերվում է սովորական ճշմարտությանը. որը հայտնի էր, ծանոթ էր լուրը ստացողներին)» (էջ 28): Այս բայը կրկնվում է հ. 10-ում(հմմտ. Գաղ. 5:14; 6:2):

**13:9** Պողոսի համար անսովոր բան չէր Մովսեսական Օրենքն օգտագործելը (Ելից 20:13-17 կամ 2 Օրին. 5:17-21 և Ղև. 19:18) Նոր Կտակարանի հավատացյալներին դրդապատճառ տալու համար: Եփ. 6:2-3, Պողոսը նաև օգտագործեց Տաս Պատվիրաններից մեկը՝ որպես դրդապատճառ քրիստոնյաների համար (հմմտ. I Տիմ. 1:9-10): Այս Հին Կտակարանի տեքստը փրկության միջոց չէր, այլ Աստծո կամքն էր հայտնում մարդկանց, թե ինչպես պետք է վարվեիր Աստծո և միմյանց հանդեպ

(հմմտ. Հռ. 15:4; I Կոր. 10:6,11): Հավանական է, Պողոսի համար Հին Կտակարանից մեջբերում անելը միջոց էր՝ դիմելու թե հրեա հավատացյալներին և թե հեթանոս, որոնցից կազմված էր Հռոմի եկեղեցին: «Կատարեց» բառը այս հատվածի նաև վերաբերվում է Հիսուսի ասածին Օրենքի մասին Մաթ. 5:17.

Հնարավոր է, որ սա վերաբերվում է ընդհանուր օրենքին,օրենք որպես սոցիալական նորմեր, և ոչ թե մասնավոր Մովսեսական Օրենքին (հմմտ. JB): Ինչևէ, այն փաստը, որ Պողոսն մեջբերում է Հին Կտակարանից հ. 9-ում վերաբերվում է Մովսեսական Օրենքին: Ուշադրություն դարձրեք, որ միայն սերը, և ոչ թե մարդու օրենքներին հետևելը, կարող է ճշմարտապես կատարել Օրենքը: Ստորև տես հատուկ թեմա:

## ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՊՈՂՈՍԻ ԿԱՐԾԻՔՆԵՐԸ ՄՈՎՍԵՍԱԿԱՆ ՕՐԵՆՔԻ ՄԱՍԻՆ

Ա. այն բարի է և Աստծուց է (հմմտ. Հռ. 7:12,16)

Բ. արդարացման և ոչ էլ Աստծո կողմից ընդունվելու միջոց չէ այն (այն կարող է նաև անեծք լինել, հմմտ. Գաղ. 3)

Գ. Այն նաև Աստծո կամքն է հավատացյալների համար, որովհետև այն Աստծո ինքնա հայտնությունն է (Պողոսը հաճախ մեջբերում է Հին Կտակարանից՝ հանդիմանելու և/կամ քաջալերելու հավատացյալներին)

Դ. Հավատացյալները տեղեկացվում են Հին Կտակարանից (հմմտ. Հռ. 4:23-24; 15:4; I Կոր. 10:6,11), բայց չեն փրկվում Հին Կտակարանով (հմմտ. Գործք 15; Հռ. 4; Գաղ. 3; Եբրայեցիս)

Ե. այն գործում է նոր ուխտի մեջ

1. ցույց տալու համար մարդու մեղավոր վիճակը (հմմտ. Գաղ. 3:15-29)
2. ուղեցույց է հանդիսանում փրկվածների համար հասարակության մեջ ապրելու համար
3. քրիստոնյաներին տալու բարոյական որոշումներ

Այս աստվածաբանական սպեկտրն է անեծքից օրհնության և հարատևության փոխվելն է, որ որոշակի խնդիրներ է ստեղծում երբ փորձում ես հասկանալ Պողոսի կարծիքը Մովսեսական Օրենքի մասին: Ջեյմս Ստյուարտը իր «Մարդը Քրիստոսի մեջ» գրքում [*A Man in Christ*, James Stewart] ցույց է տալիս Պողոսի պարադոքսալ մտածելակերպն ու գրվածքները.

> «Դուք որպես կանոն կցանկանայիք, որ մարդն ինքը, որն ինքն է կառուցում մտքերի և վարդապետության համակարգ, իր օգտագործած տերմինների իմաստը ինչքան հնարավոր է ճշգրիտ ֆիքսելու համար: Դուք կակնկալեիք, որ նա լուրջ մտադրություններ ունենար , որքան հնարավոր է ստույգ արտահայտություն դարձնելու իր հիմնական գաղափարները: Դուք կպահանջեիք, որ ձեր հեղինակի կողմից մեկ անգամ և որոշակի իմաստով օգտագործված բառը, պահպաներ իր իմաստը ամբողջ նյութի շարադրանքի ընթացքում: Բայց եթե այսպես նայենք Պողոսի գործին, կհիասթափվենք: Նրա ոճաբանությունից շատերը

hոսում են, և ոչ թե խիստ և կոնկրետ. . . «Օրենքը սուրբ է» գրում է նա, « Ես հավանում եմ Աստծո օրենքը ներսի մարդով (հմմտ. Հռ . 7:12,22) բայց հստակ է *nomos-ի* մեկ ուրիշ ասպեկտ, որը նրան մղում է ասելու, «Քրիստոսը մեզ ազատեց օրենքի անեծքից (հմմտ. Գաղ. 3:13)» (էջ 26):

## ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՆՇՈՒՄՆԵՐ ԵԼԻՑ 20-րդ գլխից

ԵԼԻՑ 20:13, ՍՊԱՆՈՒԹՅՈՒՆ

I. ԿՈՆՏԵՔՍՏ

Ա. Անհարժեշտ է հիշել, որ նույնիսկ այն պատվիրանները, որ իրենց բնությամբ թվում են սոցիալական, իրականում դրանք կրոնական են: Աստծո սուվերենությունը արարչագործության վրա և փրկությունը արտահայտված են այս պատվիրաններում: Մի սպանիր, պատվիրանը, ճիշտ ուղղությունը, խոսում է Աստծո պատկերի մասին, որն ուն բոլոր մարդիկ և Աստծո հոգատարությունն ու խնամքը մարդկայիւն կյանքի համար:

Բ. Անհարժեշտ է հիշել, որ յուրաքանչյուր պատվիրան արտացոլում է հավատացյալ համայնքի հավատքը: Անօրինական ձևով մարդուն կյանքից զրկելու արգելքը հիմնականում և հենց սկզբից հավատացյալ համանքի համար էր: Դրա կիրառությունը տարածվում է բոլոր մարդկանց վրա:

II. ԲԱՆԱԼԻ ՏԵՐՄԻՆՆԵՐԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ/ԲԱՌԱՅԻՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ

Ա. «Սպանություն»

1. Այս հազվադեպ օգտագործվող տերմինը (*rasah*) հանդիպում է Հին Կտակարանում ընդամենը 46 անգամ: Կա նաև երկու տերմին, որոնք օգտագործվում են ավելի հաճախ:
   ա. *Harag*, օգտագործված է 165 անգամ
   բ. *Hemit*, օգտագործված է 201 անգամ

2. Թվում է թե (*Rasah*) տերմինն ունի երկու հիմնական իմաստ; նեղ, սահմանափակ և լայն:
   ա. Սկզբնականում այն նշանակում էր օրինական ձևով վերցնել ուխտի ընկերջ կյանքը, քավչարար, ազգակցականների կողմից կատարվող վրեժխնդրությունն էր կամ «*go'el*»: Այսպիսի օգտագործման ձևը ներգրավում էր դիտավորություն, բայց միայն օրինական վրեժխնդրության իմաստով (հմմտ. Թվ. 35:30-34; Ղևտ. 24:13-23). Իրականում Lex Talionis (վրեժխնդրության օրենքը), «աչքի տեղ աչք» (հմմտ. Ծննդ. 9:5-6) վրեժխնդրությունը սահմանափակելու մի ձև էր: Ավելի ուշ ապաստարանի քաղաքները (2 Օրին. 4:41; Հեսու 20:3) հիմնվեցին, որպեսզի եթե ուխտի անդամներից մեկը պատահաբար կամ անզուսպ լինելով

սպաներ համայնքից մի ուրիշ ուխտի անդամի, կարողանար փախչել զոհի ընտանիքի բարկությունից:

բ. Ավելի ուշ տերմինի իմաստը փոխվեց ավելի դեպի շարժառիթը և պատճառը՝ կյանքից զրկելու համար: Դիտավորության գաղափարը դառնում է բարձրագույնը (հմմտ. Ելից 21:12-14; Թվոց 35:11,22; 2 Օրին. 28:24):

գ. Այս տարբերությունը, առանձնահատկությունը դառնում է շատ կարևոր այս պատվիրանում: Թվում է, թե կոնտեքստում այն վերաբերվում է միայն ուխտի մասնակիցներին, այսինքն ուխտի մեջ եղողների համար է: Այն վերաբերում է ազգակցական ազատարարին կամ արյան վրեժխնդրությանը: Ինչևէ, տերմինը օգտագործվում է ավելի ուշ հատվածներում, որը ցույց է տալիս Դեկալոգը, Ովս. 4:2 և Երեմ. 8:9, կապված մարդասպանի հետ: Այս բառը կապված է ոչ միայն օրենքին այլև շարժառիթին: Այն տարածվում է ոչ միայն բարեկավի վրա այլ նաև բոլոր մ արդկանց նկատմամբ:

3. Այս տերմինը ոչ մի առընչություն չունի մեր ժամանակակից էթիկայի հարցերի հետ, կապված մահապատժի կամ պատերազմի հետ: Հրեաները երբեք խնդիր չունեին դատական վճիռը կայացնելու մեջ կամ սուրբ պատերազմ վարելու հետ (կամ, ինչպես նաև, ոչ սուրբ պատերազմ):

4. Մեր ժամանակակից մշակույթի համար, լավագույն թարգմանությունը այս տերմինի համար կլիներ «կանխատեսված, դիտավորյալ սպանություն»:

## III. ԿՈՆՏԵՔՍԻ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄ

Ա. 6, 7 և 8-րդ պատվիրանները կազմված են միայն եբրայերեն երկու բառով: Նրանք շատ կարճ են բայց դիպուկ:

Բ. Կյանքը, և ամենը նրանում, պատկանում է Աստծուն: Թե ինչպես ենք վարվում ուրիշների հետ ցույց է տալիս մեր մտքերը Աստծո մասին:

## IV. ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԻ ԶՈՒԳԱՀԵՌՆԵՐ

Ա. Հիսուս Քրիստոս

1. Այս պատվիրանի ընդարձակումը Նրա կողմից (հմմտ. Մաթ. 5:21-26) մեզ տալիս է ճիշտ կողմնորոշում ժամանակակից քննարկման համար, թե ինչպես կիրառել այս տեքստը մեր օրերում:

2. Չնայած, որ Հիսուսը Դեկալոգը գործողությունների և արարքների բաժնից փոխադրեց դրդապատճառների բաժին: Մենք այն ենք, ինչ մտածում ենք: «Ինչի մասին մարդը

մտածում է իր սրտում, այն էլ կա իրականում»: Մտային կյանքը էլ ավելի կարևոր է և երևացող, քան որ մենք սովորաբար տալիս ենք դրան հաշիվ:

Բ. Հովհաննես Առաքյալ

1. I Հովh. 3:5-ում, այս նույն գաղափարը, որ ուրիշին ատելը նույնպես համարվում է սպանություն, հաստատվում է:
2. Մաթ. 5:21 և I Հովh. 3:5 մեջ օգտագործված հունարեն տերմինները տարբեր են, բայց իմաստը հիմնականում նույնն է:
3. Ուշադրություն դարձրեք I Հովh. 4:19-21-ի դրական ասպեկտի վրա:

V. ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԻՐԱՌՈՒԹՅՈՒՆ

Ա. Չնայած, որ ոչ դիտավորյալ գործած սպանությունը կարող է փախչել արյան վրեժխնդրությունից՝ թաքնվելով քաղաք-փախստարանում (հմմտ. Թվ. 35; Հեսու. 20), նա միևնույնն է պետք է վճարի այդ քաղաքում բանտարկության համար, մինչև որ քահանայապետի մահը: Այս արարքի հետևանքները մինչև հիմա մնում են:

Բ. Չնայած այս համարը ուղղակիորեն չի առընչվում ինքնասպանության հետ, քանի որ հնում, հավանական է, այդպիսի մտքեր չեն էլ ծագել, այս տեքստը տալիս է հոգևոր սկզբունք կապված մարդու կյանքի սրբության հետ և Աստծո սուվերենությունը և նպատակը Իր պատկերով ստեղծված մարդու կյանքի համար: Այս տեքստը շատ խիստ ու կոնկրետ խոսում է այս չարագործության թեմայի մասին մեր օրերում:

Գ. Ինչևէ, այս տեքստը չի ասում որոշիչ խոսք ի պատասխան ժամանակակից հարցի կապված (1) մահապատժի կամ (2) պատերազմի հետ: Իսրայելի համար չար բան չկար դրանց մեջ: Իսրայելացիները ներգրավված էին այս երկու գործողություններում էլ: Բայց և այնպես, մարդու կյանքի արժեքի, կարևորության սկզբունքը՝ ստեղծված Աստծո պատկերով և Իր իշխանությամբ, կարևոր ճշմարտություն է այս հարցում:

Դ. Բայց այս տեքստը շատ կարևոր բան է հռչակում՝ մարդկային կյանքի արժանիքը և սրբությունը: Համարվելով տնտեսներ մեր հավատացյալ համայնքում, մենք պետք է ոչ միայն մեր գործողությունները անենք, այլ նաև համայնքի մասին մտածենք: Կյանքի պարգևը թե անհատական է և թե ընդհանուր:

Մենք պատասխանատու ենք մեր սեփական մարմինների ֆիզիկական, սոցիալական և հոգեբանական չարաշահման համար, ինչպես նաև մեր հասարակության մեջ ուրիշների ֆիզիկական, սոցիալական և հոգեբանական չարաշահման համար: Սա հատկապես ճշմարիտ է մեր մշակույթի համար, որտեղ մեզ թույլատրված է խոսել այդ մասին և դա նշանակում է, որ մենք կարող ենք փոխել իրավիճակն ու համակարգը: Մենք մեր եղբայրների պահապաններն ենք:

ԵԼԻՑ 20:14, ՇՆՈՒԹՅՈՒՆ

I. ԿՈՆՏԵՔՍՏ

Ա. Ակնհայտ է, որ պատվիրանը կապված է մարդու հարգանքը Աստծո հանդեպ, որը երևում է մեր ընկերոջ, կյանքի, կնոջ և ունեցվածքի հարգանքի դեպքում (հմմտ. Եր. 5:8): Սա հաստատվում է այս պատվիրանների ուրիշ հերթականությամբ Սեպտուագինդի մեջ:

Բ. 2 Օրինաց. զուգահեռը ցույց է տալիս, որ միանգամայն ընդունելի է այդ հին ճշմարտությունը նաև մեր օրերում:

Գ. Ինչպես ծնողների հանդեպ ունեցած հարգանքը դիտվում էր կայուն հասարակություն ունենալու բանալին, այդպես էլ այս պատվիրանը:

Դ. Այս պատվիրանը նաև նշանակում է Աստծո սեփականությունն ու հսկողությունը մեր սեռական և ընտանեկան կյանքում:

Ե. Այս պատվիրանը կարծես հիմնված է եղել Ծննդ. 2:24 , ինչպես համար 4-ը հիմնված էր Ծննդ. 2:1-3:

II. ԲԱՌԻ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ

Ա. Այս տեքստի գլխավոր տերմինը «շնությունն» է: Շատ կարևոր է հասկանալ դրա իմաստը հին հրեական մշակույթի լույսի ներքո:

1. Հին Կտակարանի կոնտեքստում այս տերմինը տարբերվում է «պոռնկություն» բառից: Շնությունը այն է, երբ սեռական հարաբերության մեջ զույգից մեկը ամուսնացած է: «Պոռնկություն» տերմինը վերաբերվում է երկուսին էլ, որոնք ամուսնացած չեն (հմմտ. Առ. 29:3; 31:3): Նոր Կտակարանի հունարեն տերմիններում այս բառերի տարբերությունը կորել է :
2. Ընտանեկան կարգավիճակի վրա այսքան ուժեղ շեշտադրության պատճառը, հնարավոր է, որ կապ ուներ ժառանգության իրավունքի հետ, որը ներգրավված էր Աստծո խոստման մեջ «երկիրը»: Ամեն 50 տարին (հոբելյանական տարի) ամբողջ երկիրը վերադարձվում էր սկզբնական հողատերերին (ցեղին):
3. Շնությունը մշակույթորեն և հասարակության մեջ դատապարտվում էր մինչև Մովսեսական օրենսդրությունը (հմմտ. Ծննդ. 12:10; 26:7; 39:9):
4. Շնությունը մեղք էր դիտվում, ուղղված՝

ա. բարեկամի, հարևանի-- Ելից 20:14; 2 Օրին. 5:18

բ. ամուսնության—Ղևտ. 18:20

գ. Աստծո դեմ—Ծննդ. 20:1-13; 26:7-11

5. Այն պատժվում էր երկու մասնակիցների մահով.

ա. Ղևտացոց 20:10

բ. 2 Օրինաց 22:22-24

գ. Եզեկիել 16:40 (փոխաբերություն)

դ. Խիստ զգուշացումներ, որ կան Առակաց գրքում 1-9

III. ԿԱՊ ՆՈՐ ԿԱՏԱԿԱՐԱՆԻ ՀԵՏ

Ա. Հիսուսն օգտագործեց Ղևտացոց 19:18-ը, որպես Հին Կտակարանի հայտնության ամփոփում (հմմտ. Ղուկ. 10:27): Սա հաստատում է, որ Տաս Պատվիրանները կապված են մեր հարաբերությունները ուրիշների հետ:

Բ. Հիսուսը ուժեղացնում է պատվիրանները Մատթևոս 5:28-ում: Նա շեշտը դնում է շարժառիթի վրա ավելի քան գործողության: Հրեաները մարդու միտքը համեմատում էին ջերմոցի, մարգի հետ: Որովհետև մարդն ինչ մտածում է, այն էլ իրականում կա (Առ. 23:7): Սա է, որ Տասը Բառերը պահել անհնարին է --դա է նպատակը, դրան պետք է ձգտել (հմմտ. Գաղ. 2:15-3:29):

IV. ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԿԻՐԱՌՈՒԹՅՈՒՆ

Ա. Հավանական է, որ հենց ամուսնությունը իրենից ներկայացնում է լավագույն ժամանակակից օրինակը, նմանությունը կյանքի մշտական հավատքի նվիրման Աստծո անվանը: Սա մեզ համար լավագույն առիթն է հասկանալու Հին Կտակարանի գաղափարների իրականությունը (Մաղ. 2:14): Մեր հարգանքը մեր կողակցի հանդեպ բոլոր բնագավառներում, ներառյալ սեքսը, օգնում է մեզ ըմբռնել այս համարի իմաստը:

Բ. Ամուսնական հարաբերությունների կայունությունն ու փոխադարձ հավատարմությունը , ինչպես նաև ծնողական հարգանքը, դա այն գլխավոր սյունն է, որի վրա հենվում է հասարակության ուժն ու երկարակեցությունը:

Գ. Պետք է հատուկ ընդգծել, որ մարդու սեռական հատկությունը պարգև է Աստծուց: Սա Նրա գաղափարն ու կամքն էր մարդու համար: Պատվիրանները մարդու ազատությունը կամ ուրախությունը սահմանափակելու համար չեն, այլ որպեսզի մեղավոր մարդուն տրվի կոնկրետ աստվածահաճո ուղեցույց: Սահմանները տրված են մեր երկարաժամկետ օգտի և ուրախության համար: Եվ չնայած մարդը չարաշահել է իր սեռական ցանկությունները և ճիշտ չի վարվել դրա հետ, ինչպես Աստծո տված բոլոր պարգևների հանդեպ, նա մնում է ուժեղ ներքին մղվածություն մարդու մեջ, որը պետք է լինի Աստծո կառավարման և առաջնորդության ներքո:

Դ. Սեքսը պետք է պահպանվի, որպեսզի մարդու (կին թե տղամարդ) սրբությունը հարգվի, որովհետև նրանք ստեղծված են Աստծո պատկերով: Մեր ընկած, մեղավոր բնության հակումն այն է, որ նախ հոգ ենք տանում մեր սեփական «ես»-ի համար, որը ակնհայտ է:

ԵԼԻՑ 20:15, ԳՈՂՈՒԹՅՈՒՆ

I. ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՂԵԿՈՒԹՅՈՒՆ

Ա. Ինչպես մնացած բոլոր պահանջները Դեկալոգում, մեր հավատքը, սերը և հարգանքն առ Աստված պետք է երևա մեր առօրյա կյանքի թե աշխարհիկ և թե հոգևոր գործերում: Աստծո համար զզվելին այն է, որ երբ մարդն ասում է, որ ճանաչում է Իրեն բայց սխալ է վարվում իր հավատակից եղբոր հետ (հմմտ. I Հովհ. 4:20-21; 2:7-11):

Բ. Այս պատվիրանը եկեղեցու ներսում միաբանությունը պահելու համար է: Այս հոգևոր հաղորդակցության որակը կգրավի մերժված և փնտրող աշխարհի ուշադրությունը դեպի մեր Աստվածը, որը Սուրբ Գրքի նպատակն է :

Գ. Ինչպես մյուս պատվիրանները, այնպես էլ այս մեկը կենտրոնացել են Աստծո վրա, որպես կյանքի սեփականատեր: Մենք տնտեսներ ենք, և ոչ թե սեփականատերեր: Մեր մեղավոր մղվածությունն է տերանալ այն բանին, որը մերը չէ, այն էլ ձրի, որը անթույլատրելի է (հմմտ. Սաղ. 50:10-12):

II. **ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ**

Ա. Սա երրորդ պատվիրանն է Դեկալոգի երկրորդ բաժնում, որը հին եբրայերեն լեզվում կազմված է ընդամենը երկու բառից

Բ. Արգելքի օբյեկտը բացակայում է: Պատվիրանը ճիշտ հասկանալու համար օգնում են

1. Նախորդ երկու պատվիրանների կոնտեքստը, կապված հանցագործությունների հետ, որի պատիժը մահն էր
2. Կիրառելի համապատասխան Զուգահեռ հատվածներում թե անմիջական (Ել. 21:16) և թե հեռու (2 Օրին. 24:7): Նաև տես Ծննդոց 37.

Գ. Ինչևէ, կարճ ձևը նույնպես բավարար հիմնավոր է:

2. Այն արձանագրված է մեզ համար Սուրբ Հոգու ներշնչանքով
2. Այն ընդարձակում է արգելքի սահմանները
3. Կա նաև զուգահեռ հատված անմիջական կոնտեքստում, որը առընչվում է գողությանը — Ելից 22:1.
4. Հիսուսը, անկասկած մեջբերում է անում այս հատվածը կապված գողության հետ (հմմտ. Մաթ. 19:18):

Դ. Գողությունը, որպես հանցագործություն, գոյություն է ունեցալ նաև ուրիշ Օրենսգրքերում հնադարում: բայց սովորաբար պատիժը եղել է մահապատիժը, անդամահատումը կամ 30 անգամ փոխհատուցում:

Ե. Կան մի քանի կարևոր զուգահեռ հատվածներ, որ սահմանում և բացատրում են այս ճշմարտությունը.

1. Ղևտացոց 19:1-18—«Դուք սուրբ եղեք, որովհետև ես ձեր Եհովա Աստվածը սուրբ եմ»:
   ա. Մեր ապրելակերպը պետք է անդրադարձնի մեր Հոր և մեր Աստծո ընտանեկան գծերը (հմմտ. հ. 18):
   բ. Մեր հավատքը պետք է ազդի մեր առօրյայի վրա, մղելով թե ճիշտ գործողությունների և թե արգելելով սխալ, բացասական վարքը, ի դեպ երկու դեպքում էլ մղված ճիշտ շարժառիթներով (հմմտ. հ. 17):
   գ. Գութ ունենալ արտաքսված և կարիքավորների հանդեպ, հհ. 9-10, 13, այնքան կարևոր է որքան թույլ չտալ քեզ թալանել ընկերներից, մերձավորից, հ. 11:
2. Ամովս 8:4-7-- Աստված ատում է շահագործումները:
3. Միքիա 6:6-8-- Աստված ուզում է ճիշտ շարժառիթներ մեր բոլոր գործերում: Այն որ մենք չենք գողանում, դա արդեն հետևանք է:
4. Ելից 22:1—Թալանի և գողության խնդրի շուրջ, մեր ժամանակակից քննարկման մեջ կա մի ճշմարտություն, որը մենք հաճախ բաց ենք թողնում, դա փոխհատուցումն է: Մեղքը միշտ թանկ արժէ:

III. ՃՇՄԱՐՏՈՒԹՅԱՆ ԿԻՐԱՌՈՒԹՅՈՒՆ

Ա. Ջոյ Դեվիդմենը, Կ. Ս. Լուիսի կինը, գրել է հիասքանչ գիրք Դեկալոգի վերաբերյալ: Նա թարգմանել է այս պատվիրանն այսպես «Մի ձգտիր ստանալ մի բան անվճար»: Սա, անշուշտ, ընդարձակում է ունենալու, տիրելու գաղափարի սահմանները: Նա ասում է, որ «Ունեցվածքը ոչ մեղք է և ոչ էլ inalienable իրավունք, այլ փոխառություն, վստահված Աստծո կողմից»:

Բ. Գողությունը, ինչպես բոլոր մեղքերը մեղավոր մարդու, լուծվում է նոր սրտով, Եփ. 4:28: Զարմանալի է, թե ինչպես հին բնությունը « վերցնելու» հատկությունը փոխվում է նոր բնության՝ «բաժնեկցելու, տալու» հատկության հետ:

Գ. Մեր հարգանքն առ Աստված հստակ երևում է՝ մեր հավատակից եղբայրների հարգելով: Այս ճշմարտությունն իր մեջ ամփոփում է ամբողջ Դեկալոգի իմաստը:

Դ. Ժամանակակից մարդը գողանում է տարբեր կերպերով:

**Քննարկվող հարցեր**

1. Ինչպե՞ս է ժամանակակից մարդը զբաղվում գողությամբ:

2. Ինչպե՞ս է հատուցումը կապվում ապաշխարության հետ:
3. Ինչպե՞ս է այս համարը կապված կապիտալիստակլան հայացքի հետ ունեցվածքի առումով:

ԵԼԻՑ 20:17, ՑԱՆԿԱՆԱԼ, ՓԱՓԱԳԵԼ

I. ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

Ա. Վերջին հինգ պատվիրանների միջև կարելի է տեսնել հետևյալ կապը

2. 6, 7, և 8-րդ պատվիրաններում արգելում են վնաս հասցնել իր ուխտի ընկերոջը բացահայտ գործողությամբ
2. 9-րդը արգելում է վնաս հասցնել իր ուխտի ընկերոջը խոսքով
3. 10-րդը արգելում է վնաս հասցնել իր ուխտի ընկերոջը մտքով

Բ. Ճիշտ է, որ ցանկանալու գործողությունը վնասում է ցանկացողին, և ոչ թե առարկային, օբյեկտին, հարևանին: Ինչևէ, հնարավոր է, որ այս պատվիրանը ակնկալում է, որ մտքերին կհետևեն համապատասխան գործողություններ:

Գ. Շատերն այս պատվիրանը դիտում են որպես եզակի, ունիկալ մի գաղափար, որը գտնվում է միայն Իսրայելի հին օրենսգրքում և որը հին Մերձավոր Արևելքի ուրիշ օրենքսգրքերում բացակայում է: Այս նոր գաղափարը կլիներ մտքի արգելք: Ճիշտ է, որ Իսրայելը հասկանում էր, որ մտային կյանքը չար արարքների աղբյուրն էր (հմմտ. Առակ. 23:7; Հակ. 1:14-15): Սակայն, այս համարը կապված է մտքերի հետ, որոնց հետևում են գործողությունները: Մի քանի հատվածներ օգտագործում են «ցանականալ» տերմինը՝ գործի դնելու իմաստով (հմմտ. 2 Օրին. 7:25; Հեսու 7:21; Միքիա 2:2):

Դ. Եթե ճիշտ է, որ հիմնական շեշտը տվյալ դեպքում դրված է թվարկվածի վրա, ապա այս պատվիրանի իրական իմաստը տեսանելի է: Նախ պետք է Աստծուն երկրպագություն անեն, բայց մեր մոտեցումները և շարժառիթները իրերի հանդեպ այս աշխարհում ազդում են Աստծուն մեր իրական երկրպագության վրա: Այս երկակի շեշտը նաև երևում է Հիսուսի Լեռան Քարոզում, Մաթ. 6:33--«Նախ խնդրեցեք Նրա թագավորությունը և արդարությունը, և ամեն բաները ձեզ կտրվի» (հմմտ. հհ. 19-32)

II. ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ

Ա. Ելից 20:17 և 2 Օրինաց 5:21, չնայած հիմնականում նույնն են, ունեն մի քանի կարևոր տարբերություններ.

1. Ելից 20-ում կինը ներգրավված է «տան» ավելի լայն իմաստով, պատկանում է տղամարդուն կամ տղամարդու սեփականությունն է, իսկ 2 Օրին. 5-ում կինը հանդես է գալիս առանձին, այսինքն սա ցույց է տալիս, որ նա ունի նշանակություն և կարևոր դիրք:

2.Ելից 20-ում հատվածն ունի եբրայերեն «կիրք» տերմինը, որը նշանակում է «ուժեղ փափագ տիրելու», սակայն 2 Օրին. 5-ում կա երկրորդ իմաստը «ցանկություն, փափագ» ինչպես նաև «կիրք»: «Փափագ» խոսում է ցանկության մասին, որը կապված է մի գործողության հետ՝ ցանկացած օբյեկտը ձեռք բերելու համար, բայց «ցանկություն» ավելի կենտրոնանում է միայն կեցվածքի վրա:

3. Նաև, Ելից 20-ը, գրված Իսրայելի զավակների համար, անապատում թափառելու ժամանակաշրջանում, չի հիշատակում «դաշտ» անունը, որպես ունեցվածք, իսկ 2 Օրին. 5-ում նույն պատկերն է տալիս բնակվող, նստակյաց ժողովրդին Խոստացյալ Երկրում:

Բ. «Ցանկանալ» տերմինը չեզոք է: Այն կարող է վերաբերվել լավ բաներ ցանկանալուն (հմմտ. Սաղ. 19:10; I Կոր. 12:31):

Գ. Սխալ, անվայել ցանկությունը արմատական պատճառ է սատանայի, Ադամի ու Եվայի և մեր բոլոր համար: Հռ. 7:7-8-ում Պողոսը խոսում է իր անձնական պայքարը ցանակալու հետ: Ցանականալը հիմնականում անբավարարվածություն և Աստծո հազծության և խնամքի վստահության պակաս է:

Դ. Նոր կտակարնում կան մի շարք հատվածներ, որ վերաբերում են ցանկանալու.

1. Մարդու խնդիրը անբավարարվածություննն ու ագահությունն է (հմմտ. Ղուկ. 12:15; I Տիմ. 6:8-10):

1. Ցանկանալը տեղ էր գտել Հիսուսի թվարկած պիղծ, անբարոյական մեղքերի ցանկում (հմմտ. Մարկ. 7:17-23; I Կոր. 5:10; Եփ. 5:5; Կող. 3:5):

III. ՃՇՄԱՐՏՈՒԹՅԱՆ ԿԻՐԱՌՈՒԹՅՈՒՆ

Ա. Վավաշոտ, կրքոտ ագահության և անբավարարվածության կամ լուծումը դա

1. Սերն է—Հռ. 13:8-10

2. Բավարարվածությունը, գոհությունը—Եբր. 14:5; Փիլ. 4:11-13 (և բաժնեկցելը, Փիլ. 4:14)

Բ. Պատվիրանն ասում է «կանգ առ», բայց միայն Քրիստոսը տվեց մեզ միջոց, որի օգնությամբ կարող ենք կանգ առնել: Նրա մեջ լինելով միայն կարող ենք ինչ որ չափով կառավարել մեր մտքերը:

Գ. Աստված գիտի մեր սրտերն ու մտքերը

1. I Մնացորդաց28:9
2. Առակաց 20:27
3. Սաղմոս 139:1,23
4. Երեմիա 17:10
5. Հռոմեացիս 8:27
6. Հայտնություն 2:23

Դ	Իրերը կամ առարկաները ինքնին չար չեն, բայց երբ նրանք դառնում են նախապատվություն, այդ ժամ դառնում են մեղք: Իրերը առաջնային կամ հավիտենական չեն, իսկ մարդիկ, որ ստեղծված են Աստծո պատկերով՝ հավիտենական են: Կրքոտ ցանկությունը ազդում է Ուխտի հավատացյալ համայնքի վրա գաղտնի և կործանարար կերպով:

**Քննարկվող հարցեր**

1. Ի՞նչ է իրենից ներկայացնում կրքոտ ցանկությունը:
2. Ինչպե՞ս է ժամանակակից մարդը ցուցաբերում կրքոտ ցանկություն:
3. Մեր մտքերը մեղավո՞ր են:
4. Ինչու՞ քրիստոնեական կյանքում մտքերին այդքան մեծ նշանակություն են տալիս:
5. Ինչու՞ է Ելից 20:17-ի պատվիրանը որոշ չափով տարբերվում 2 Օրին. 5:21-ից:

▣ **«Վասն զի այն»** Սա քաղվածք է Տաս Պատվիրաններից կամ Դեկալոգից: Այս ցանկի հերթականությունը Տասը Պատվիրանների երկրորդ կեսը համապատասխանում է հունարեն ձեռագիր B-ին, որը կոչվում է Վատիկանյան: Այն թեթևակի տարբերվում է Մազորեթիկ եբրայերեն տեքստից Ելից 20 և 2 Օրին. 5: Դեկալոգի երկրորդ կեսը առընչվում էր Իսրայելի հարաբերությանը միմյանց հետհիմնված ԵՀՈՎԱ-յի հետ ունեցած իրենց հարաբերության վրա:

▣ **«եւ ուրիշ ինչ պատուիրանք էլ որ կայ»** Այստեղ ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ է, որը ենթադրվում է ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակների համար: Կան ուրիշ պատվիրաններ էլ: Այս արտահայտության իմաստ այսպիսին էր « եթե կան ուրիշ պատվիրաններ Դեկալոգից դուրս»: Այլ կերպ ասած, սա ամփոփում է ամբողջ Մովսեսական Օրենքը կամ, հավանաբար, «օրենքը» լայն իմաստով:

Հունարեն ձեռագրային արվանդության մեջ կա որոշակի տարբերություն, թե Տասը Պատվիրաններից քանիսն են և ինչ հերթականությամբ են թվարկված: Հուդայականությունն ունի միայն մեկ տարբերակ: Կաթոլիկներն ու Բողոքականները նույնպես ունեն տարբեր թվարկումներ: Բայց այս տարբերությունները ոչ մի կերպ չեն ազդում տեքստի բովանդակության իմաստի վրա, որի ճշմարտությունը հաստատվում է տարբեր ձեռագրերի հսկայական քանակության հիման վրա:

▣ **«այս խօսքումն է բովանդակվում»** Սա մեջբերում է Ղև. 19:18-ից: Այն մի քանի անգամ հանդիպում է Ավետարաններում (հմմտ. Մաթ. 5:43; 19:19; 22:39; Մարկ. 12:31 և Ղուկ. 10:27): Հիսուսն այն կոչում է երկրորդ մեծ կամ ամենագլխավոր պատվիրանը: Սա նաև մեջբերված է Գաղ. 5:14 և Հակոբ. 2:8: Երբ մարդը սիրում է Աստծուն, ապա նա կսիրի այն, ինչ Աստված է սիրում- մարդը ստեղծված է Աստծո պատկերով:

▣ **«Քո ընկերը սիրիր քո անձի պէս»** Հավատացյալները պետք է սիրեն միմյանց ինչպես Աստված է սիրում իրենց, մինչև նրանց սիրելն ու ընդունելը ուրիշներին: Համապատասխան ինքնասիրությունը չար չէ: Այս բաժնի գլխավոր ճշմարտությունը հստակ է՝ սիրել ուրիշներին (հմմտ. հ. 10): Նրանք, ովքեր ճաշակել են Աստծո ինքնատվող և զոհաբերող սիրը, իրենք էլ կսիրեն ուրիշներին նույն կերպ: Սրանում է քրիստոնեականմանության իմաստը (Աստծո վերականգնված պատկերը): Այս տեսակ սիրո ներկայության մեջ «օրենքի» կարիք չկա:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 13:11-14**
[11]Եւ այս արէք իմանալով ժամանակը. որ ժամ է արդէն քնիցն զարթնել. որովհետեւ հիմա մեզ աւելի մօտ է փրկութիւնը՝ քան թէ այն ժամանակ՝ որ հաւատացինք:[12] Գիշերն անցաւ գնաց, եւ ցերեկը մօտեցել է. ուրեմն դէն գցենք խաւարի գործերը, եւ հագնենք լոյսի զէնքերը:[13] Ինչպէս ցերեկումը՝ պարկեշտութեամբման գանք. ոչ թէ անառակութիւններով եւ արբեցութիւններով եւ խառն անկողիններով եւ պղծութիւններով, ոչ հակառակութիւնով եւ ոչ նախանձով: [14] Բայց Տէր Յիսուս Քրիստոսին հագէք. եւ մարմնի համար խնամք մի տանիք դէպի ցանկութիւն:

NASB (UPDATED) TEXT: 13:11-14
[11]*Do* this, knowing the time, that it is already the hour for you to awaken from sleep; for now salvation is nearer to us than when we believed. [12]The night is almost gone, and the day is near. Therefore let us lay aside the deeds of darkness and put on the armor of light. [13]Let us behave properly as in the day, not in carousing and drunkenness, not in sexual promiscuity and sensuality, not in strife and jealousy. [14]But put on the Lord Jesus Christ, and make no provision for the flesh in regard to *its* lusts.

**Արևելահայերեն «Եւ այս արէք»**

**Արևմտահայերեն « Եւ այսպէս ըրէք »**

13:11
NASB "*do* this"
NKJV "and *do* this"
NRSV "Besides this"
TEV "You must do this"
NJB "Besides"

Սա մի ձև է հաջորդը (հհ. 11-14) նախորդին կապելու համար (հհ. 9-10): Խոսքը կատարող եղեք, և ոչ միայն լսողներ: Սերը գործի դրեք:

▣ **«իմանալով ժամանակը»** Այստեղ ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌԻ ԴԵՐԲԱՅ է: Ժամանակի այս տերմինը (*kairos*) օգտագործվում էր հատուկ ժամանակի համար, ոչ

թե սովորական ժամանակագրության համար (*chronos*): Հավատացյալները պետք է ապրեն ամեն պահ Քրիստոսի վերադարձի լույսի ներքո:

▣ **«որ ժամ է արդէն»** Այս փոխաբերությունը, «ժամը» (հաճախ օգտագործվում է Հովհաննու Ավետարանում), վերաբերում է Աստծո փրկության ծրագրի մեջ գտնվող հատուկ պահին (նման է *kairos*) (հմմտ. 3:26; I Կոր. 7:29; 10:11; Հակ. 5:8; I Պետ. 4:7; II Պետ. 3:9-13; I Հովh. 2:18; Հայտ. 1:3; 22:10): Այն նաև օգտագործվում է Հիսուսի թե՛ խաչելության և թե՛ վերադարձի համար:

▣ **«քնիցն»** Այստեղ այս տերմինը օգտագործված է փոխաբերական իմաստով բարոյական և հոգևոր թուլության/անորոշության վերաբերյալ (հմմտ. Եփ. 5:8-14; I Թես. 5:6): Բառերն ունեն իմաստ տվյալ կոնտեքստում: Զգուշացեք կոնկրետ սահմանում տալուց: Բոլոր բառերն ունեն մի քանի հնարավոր իմաստներ (իմաստաբանական դաշտ):

▣ **«որովհետեւ հիմա մեզ աւելի մօտ է փրկութիւնը»** Փրկությունը սկզբնական արձագանքն է Աստծո կանչին և հետևողական գործընթաց: Տես հատուկ թեմա 10:13: Փրկությունը ամբողջական չի լինի մինչև որ հավատացյալները չունենան իրենց նոր մարմինները (հմմտ. I Հովh. 3:2; I Թես. 4:13-18; Եբր. 9:28; I Պետ. 1:5): Աստվածաբանորեն սա կոչվում է «փառավորում» (Հռ. 8:30): Սա ամեն մի քրիստոնյայի սերնդի հույսն է ՝ ակնկալելով, որ Տերը կվերադառնա իր կենդանության օրոք (հմմտ. Ղուկ. 21:28): Պողոսը բացառություն չէր (հմմտ. I Թես. 4:15):

▣ **«այն ժամանակ՝ որ հաւատացինք»** Քրիստոնեությունը սկսվում է որոշումով (ակնթարթային արդարացում և սրբացում), բայց արդյունքում պետք է լինի աստվածահաճո կյանք (առաջընթացային սրբացում) և ավարտվում է քրիստոսանմանությամբ (փառավորում): մարդը պետք է ընդունի Աստծո առաջարկածը Քրիստոսում (հմմտ. Հովh. 1:12; 3:16; Հռ. 10:9-13): Այս սկզբնական որոշումը չէ վերջը, այլ սկիզբն է համարվում:

**13:12 «Գիշերն անցաւ գնաց»** Սա վերաբերվում է ներկայիս չար ժամանակներին, որն արդեն կործանման և վերափոխման մեջ է գտնվում (հմմտ. I Կոր. 7:29-31; 10:11; Հակոբ. 5:8; Եփ. 5:8,14; I Հովh. 4:7; II Հովh. 2:17-18; Հայտ. 1:3; 22:10). Տես հատուկ թեմա 12:2.

▣ **«ցերեկը մօտեցել է»** Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է: Սրանք վերջին օրերն են (հմմտ. Փիլ. 4:5; Հակոբ. 5:9): Հիսուսի մարմնացումից սկսած մենք գտնվում ենք վերջին օրերի մեջ: Դրանք կտևեն մինչև Նրա փառավոր վերադարձը: Բոլոր

հավատացյալները, առաջին դարից սկսած, զարմացել են Քրիստոսի գալուստն այսքան երկար ձգձվելու համար: Ինչևէ, նոր դարը ծագեց Քրիստոսում:

▣ **«դէն զցենք. . .հագնենք»** Սրանք ԱՈՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ՉԵԶՈՔ ՍԵՌ ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ են, որը տալիս է պատահականության տարր: Բառացի իմաստն այս է « դուք ինքներդ հրաժարվեք. . .հագեք մեկընդմիշտ կամ վճռական»: Թե Աստված և թե մարդը բաժին ունեն արդարացման (ապաշխարություն և հավատք) և սրբացման մեջ (բարեպաշտ կյանք ապրել): Այս հագուստի փոխաբերությունը հատուկ է Պողոսի գրվածքներին: Հավատացյալները պետք է հանեն իրենց գիշերային հագուստը և հագնեն իրենց պատերազմական զգեստը (հմմտ. Եփ. 4:22-25; Կող. 3:10,12,14): Մենք քրիստոնյա զինվորներ ենք պատրաստված ամենօրյա հոգևոր պատերազմի համար (հմմտ. Եփ. 6:10-18):

▣ **«լույսի զէնքերը»** Հավանական է սա ակնարկ է Ես. 59:17: Հավատացյալները պետք է վճռականորեն հագնեն սպառազինությունը և արդարության զենքերը (հմմտ. II Կոր. 6:7; 10:4; Եփ. 6: 11,13; I Թես. 5:8): Աստծո զրահները հասանելի են հավատացյալին, բայց նրանք պետք է (1) ճանաչեն դրանց կարիքը; (2) իմանան Աստծո հոգածությունը և ապահովվումը և (3) անձնապես և մտադրված կիրառեն դրանք իրենց առօրյայում՝ մտքում և կյանքում: Հոգևոր պատերազմն ամեն օր է:

**13:13 «պարկեշտութեամբ ման գանք»** Սա ԱՈՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է, բառացիորեն նշանակում է «քայլել»: Սա եբրայերեն իդիոմա էր, որն օգտագործվում էր ապրելաոճը նկարագրելու համար: Պողոսն այն օգտագործում է ավելի քան 33 անգամ:

Այս համարում թվարկված մեղքերը բաժանված են երեք խմբի երկուական բառով: Տերմինները ունեն մի քանի իմաստային համընկնումներ: Հնարավոր է, որ դրանք իրար հոմանիշներ են: Տես Հատուկ Թեմա: Անբարոյականություն և առաքինություն 1:28-32:

Այս տերմինները կարող են նաև արտահայտել այն լարվածությունը, որ կար հավատացյալ հրեաների և հեթանոսների միջև Հռոմի եկեղեցում: Նոր հեթանոս հավատացյալները հնարավոր է շարունակում էին (1) իրենց որոշ անբարոյական հեթանոս պաշտամունքի ձևերի գործածությունը կամ (2) գոռոզությամբ վարվել վերադարձախ հավատացյալ հրա առաջնորդների հետ, ովքեր վերջերս էին հեռացել Հռոմից Ներոնի հրովարտակի պատճառով, որը արգելում էր բոլոր հերական ծեսերը Հռոմում:

▣ **«ոչ թէ անառակութիւններով եւ արբեցութիւններով»** Սա վերաբերվում է սեռական անբարոյականությանը, որը կապված էր հարբեցողության հետ հեթանոս կրոնների ծեսերի հետ: Գաղ. 5:21-ում թվարկված մարմնի մեղքերի ցանկում, այս տերմինները նաև կողք կողքի են հանդես գալիս:

▣ **«խառն անկողիններով եւ պղծութիւններով»** Այս մեղքի զույգը համընկնում է նախորդ զույգին: Երկրորդ բառը հաճախ է օգտագործվում Նոր Կտակարանում (հմմտ. Մարկ. 7:22; II Կոր. 12:21; Գաղ. 5:19; Եփ. 4:19; I Պետ. 4:3; II Պետ. 2:7): Եթե առաջին զույգը կենտրոնանում է հարբեցողության վրա, ապա այս մեկը կենտրոնանում է սեռական անբարոյականության վրա, նույնիսկ անկառավարելի անկաշկանդություն ցանկասիրության հանդեպ:

▣ **«ոչ հակառակութիւնով եւ ոչ նախանձով»** Այս խոսքերը վկայում են այն պայքարկ, կռվի մասին, որ կա մարդկանց միջև (հմմտ. Գաղ. 5:20): Հնարավոր է սա առաջին երկու զույգերի անհարիր, ոչ ճիշտ վարվելակերպի արդյունքն է: Եթե սա ուղղված է քրիստոնյաներին, ապա (հմմտ. I Կոր. 3:3; Կող. 3:8), նրանք հեթանոս կրոնների գործածությունը պետք է դադարեցնեն իրենց նոր կյանքում: Ինչևէ, կոնտեքստում այս համարը հակասում է քրիստոնեական ապրելակերպին, և այդ դեպքում, սա կարող է զգուշացնող լինել:

**13:14 «Տէր Յիսուս Քրիստոսին հագէք»** Այս փոխաբերությունը վերաբերվում է Հիսուսի այն թագավորական հագուստներին , որ հիմա դրված են մեր ուսերին (դիրքային սրբացում): Որոշ գիտնականներ այս ակնարկը կապում են մկրտության հագուստի հետ: Հագուստի հետ կապված այս փոխաբերությունը առաջին անգամ հանդիպում է հ. 12-ում: Սա միջոց է, որը ցույց է տալիս հավատացյալների նոր դիրքը Քրիստոսում: Սա նաև ընդգծում է այն փաստը, որ հավատացյալները պետք է գործադրեն իրենց նոր ապրելակերպը (առաջընթաց սրբացում) քանի որ նրանք ունեն նոր դիրք Քրիստոսում (հմմտ. Եփ. 4:22,24; Կող. 3:8): Գաղ. 3:27-ում այս ճշմարտությունը արտահայտվում է որպես կարծիք կատարված փաստի շուրջ, որպես ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ; այստեղ այն արտահայտված է որպես ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ (ԱՕՐԻՍՏ ՉԵԶՈՔ ՍԵՌ), պատվեր:

Այս տարբերությունը ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ-ով դրույթի և ՀՐԱՄԱՅԱԿԱՆ-ի միջև նույնն է ինչ մեր դիրքը Քրիստոսում և մեր ձգտումը այդ դիրքին հասնելու: Մենք «սրբեր» (holy ones) փրկության պահից սկսած, բայց մեզ մորդորված է «սուրբ» լինել: Սա աստվածաշնչյան պարադոքս է ամբողջական, կատարյալ և ձրի փրկության Քրիստոսում և փոխի կանչը քրիստոսանման լինելն է:

▣ **«խնամք մի տանիք»** Այս ձևը ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՉԵԶՈՔ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է ԺԽՏԱԿԱՆ ՄԱՄՆԻԿ-ով: Այս քերականական ձևը սովորաբար նշանակում է արդեն իսկ գործընթացի մեջ եղող գործողության դադար: Այստեղից կարելի է ենթադրել, որ Հռոմում, որոշ քրիստոնյաներ ապրում էին անբարոյական կյանքով: Հնարավոր է, որ դա պահպանվել էր իրենց հեթանոսական պաշտամունքներից:

Դժվար է բացատրել Նոր Կտակարանի ուսմունքները մարմնավոր քրիստոնայաների մասին: Նոր Կտակարանի հեղինակները մարդու վիճակը ներկայացնում են սև ու սպիտակով: Մարմնավոր քրիստոնյան հակադիր վիճակում է ներկայանում: Սա մեր իրական կյանքն է «արդեն», բայց «դեռ ոչ»: Պողոսը մարդկանց բաժանում է երեք խմբի (I Կոր. 2:14-3:1):

1. մարդիկ (կորսված), 2:14
2. հոգևոր մարդիկ (փրկված), 3:1
3. մարմնավոր մարդիկ (մարմնավոր քրիստոնյաներ կամ մանուկ քրիստոնյաներ), 3:1.

▣ **«մարմնի համար …դէպի ցանկութիւն»** Պողոսը բավականին լավ գիտեր մեր ընկած, Ադամական բնության շարունակական վտանգը (հմմտ. Հռ. 7; Եփ. 2:3), սակայն Հիսուսը մեզ տալիս է զորություն և փափագ՝ ապրելու Աստծո համար (հմմտ. Հռ. 6): Եվ սա անավարտ պայքար է (հմմտ. 8:5-7; I Հովհ. 3:6-9):

**Քննարկվող հարցեր**

Սա սերտողության համար ուղեցույց հանդիսացող մեկնաբանություն է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ:

1. Ինչու՞ Պողոսի հայտարարությունը իշխանության մասին այդքան վճռորոշ/արմատական էր վաղ քրիստոնյաների համար:ians?
2. Արդյո՞ք քրիստոնյաները պետք է հնազանդվեն ամեն տեսակ իշխանությանը:
3. Արդյո՞ք քրիստոնյաները պետք է հնազանդվեն իշխանության ամեն օրինական պահանջներին:
4. Համար 1-ը սովորեցնու՞մ է, որ թագավորները «Աստծո օծյալ» կոչվելու իրավունք ունեն:
5. Արդյոք Պողոսը նոր աստվածաբանական հիմք է դնում, թե սա Հիսուսի խոսքերի նախադեպն է Մաթ. 22:21:

6. Թույլատրելի՞ է քրիստոնյայի համար երբևէ ցուցաբերել քաղաքացիական անհանզանդություն (հմմտ. Գործք 5:25-32):
7. Ինչպե՞ս է համար 4-ը առընչվում մահապատժի հետ:
8. Արդյո՞ք քրիստոնյայի խիղճը միշտ ճիշտ է (հմմտ. հ. 5):
9. Հիմնվելով 8-րդ համարի վրա, կարող ենք ասել, որ հավատացյալները չպետք է credit cards ունենան:
10. Համար 8-ը խոսում է քրիստոնյաների հանդեպ ունեցած մեր սիրո մասին թե՞ բոլոր մարդկանց:
11. Ինչու՞ է Պողոսն օգտագործում Դեկալոգ որպես դրդապատճառ Նոր Կտակարանի հավատացյալների համար:
12. Ինչու՞ է Պողոսը թվարկում այսպիսի սարսափելի մեղքեր կապված հավատացյալների հետ:
13. Ինչպե՞ս կարող է մարդը «հագնել Տեր Հիսուս Քրիստոսին»:

# ԹՈՒՂԹ ՈՒՂՂՎԱԾ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

## ԳԼՈՒԽ 14

| ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ | | | | |
|---|---|---|---|---|
| UBS[4] | NKJV | NRSV | TEV | JB |
| Մի դատիր եղբորդ | Ազատության օրենքը | Սերը հարգում է ուրիշների վարանումները | Մի դատիր ուրիշներին | Բծախնդրության փոխարեն ողորմածություն |
| 14:1-12 | 14:1-13 | 14:1-4 | 14:1-4 | 14:1-12 |
| | | 14:5-6 | 14:5-12 | |
| | | 14:7-9 | | |
| | | 14:10-12 | | |
| Եղբորդ համար գայթակղություն մի եղիր | Սիրո օրենքը | | Ուրիշների ընկնելու պատճառ մի հանդիսացիր | |
| 14:13-23 | | 14:13-23 | 14:13-18 | 14:13-15 |
| | 14:14-23 | | | |
| | | | | 14:16-21 |
| | | | 14:19-23 | |
| | | | | (14:22-15:6) |
| | | | | 14:22-23 |

**ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ** (տես էջ vii)

*Հետևել բուն հեղինակի մտադրությանը պարբերությունների մակարդակով*

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Ճանաչիր թեմաները: Համեմատիր քո թեմայի բաժանումները վերը նշված 5 թարգմանությունների հետ: Բաժանումները ներշնչված չեն, բայց դա բանալի է հետևելու բուն հեղինակի մտադրությանը, որը մեկնաբանության սիրտն է: Յուրաքանչյուր պարագրաֆ ունի մեկ և միայն մեկ թեմա:
Մեկ շնչով կարդացեք այս գլուխը: Ուրվագծեք հիմնական թեմաներն ու թեման արտահայտեք մեկ նախադասությամբ:

1. Առաջին պարագրաֆ
2. Երկրորդ պարագրաֆ
3. Երրորդ պարագրաֆ
4. և այլն

**ԿՈՆՏԵՔՍՏԻ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ 1-12հհ.**

Ա. Այս գլուխը փորձում է պահել հավասարակշռությունը քրիստոնեական ազատության և պատասխանատվության հակասությունը: Գրական բաժինը հասնում է մինչև 15:13:

Բ. Հավանական է, խնդիրը, որը արագացրեց այս գլխի գրվելուն, դա Հռոմի եկեղեցում տիրող հեթանոս և հրեա հավատացյալների միջև առաջացած լարվածություննն էր (կամ էլ այն իրավիճակն էր, որը Պողոսը հանդիպեց Կորնթոսում): Մինչև դարձի գալը հրեաները հակված էին օրինապաշտությանը, իսկ հեթանոսները՝ անբարոյականությանը: Հիշեք, որ այս գլուխը ուղղված է Հիսուս Քրիստոսի ճշմարիտ հետևորդներին: Այս գլուխը ուղղված չէ մարմնավոր հավատացյալներին (հմմտ. I Կոր. 3:1): Ամենաբարձր շարժառիթը երկու խմբերին էլ վերագրված է: Վտանգավոր է, երբ երկու կողմերը գնում են ծայրահեղության: Այս քննարկումը չի հանդիսանում ոչ արտոնություն մանրախնդիր օրինականության ոչ էլ ցուցամոլական ծայրահեղ հայացքների:

Գ. Հավատացյալները պետք է զգույշ լինեն, որ իրենց աստվածաբանությունը կամ էթիկան ուրիշ հավատացյալների համար չափանիշ չդարձնեն (հմմտ. II Կոր. 10:12): Հավատացյալները պետք է քայլեն իրենց ունեցած լույսի ներքո, բայց հասկանան, որ իրենց աստվածաբանությունը ինքնաբերաբար Աստծո աստվածաբանությունը չէ: Հավատացյալները դեռևս մեղքի ազդեցության տակ են: Մենք պետք է քաջալերենք, հորդորենք, առիթի դեպքում և փորձառության հիման վրա մեկս մյուսին սովորեցնենք Սուրբ

Գրքից, սակայն միշտ սիրով: Մարդն ինչքան շատ է սովորում, այնքան ավելի շատ է հասկանում, որ ոչինչ չգիտի (հմմտ. I Կոր. 13:12):

Դ. Աստծո առաջ ունեցած մեր կեցվածքով և դրդապատճառներով է գնահատվում մեր իրական վիճակ: Քրիստոնեաները կանգնելու են Քրիստոսի առաջ, դատվելու այն բանի համար, թե ինչպես ենք վարվել մեկս մյուսի հետ (հմմտ. հհ. 10,12 և II Կոր. 5:10):

Ե. Մարտին Լյութերն ասել է, «Քրիստոնեան ամենաազատ մարդն է ամենի տերը, ոչ մեկից կախում չունեցող; և այդ նույն Քրիստոնեան ամենահնազանդ ծառան է բոլորի համար, բոլորին պարտական»: Աստվածաշնչյան ճշմարտությունը հաճախ ներկայացվում է ակնհայտ պարադոքս տեսքով:

Զ. Այս դժվար, բայց շատ կարևոր թեմային է նվիրված ամբողջ գրական բաժինը Հռ. 14:1-15:13 և նաև I Կոր. 8-10 և Կող. 2:8-23:

Է. Ինչևէ, պետք է նշել, որ ճշմարիտ հավատացյալների միջև եղած պլուրալիզմը այնքան էլ վատ չէ: Յուրաքանչյուր հավատացյալ ունի թե ուժեղ և թե թույլ կողմերը: Յուրաքանչյուր մարդ պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո, միշտ բաց լինի Հոգու և Աստվածաշնչի համար էլ ավելի շատ լուսավորվելու համար: Հիմա, երբ մենք ամեն բան տեսնում ենք խավար հայելու միջով (I Կոր. 13:8-13) ամեն մեկս պարտավոր է մնանք սիրո (հ. 15) և խաղաղության մեջ (հհ. 17,19) որպեսզի մեկս մյուսով շինություն լինենք:

Ը. «Տկարներ» և «ուժեղներ» տերմինները, որը Պողոսն օգտագործում է մեզ մոտ ստեղծում են կանխակարծ այս խմբերի մարդկանց մասին: Իհարկե սա Պողոսի մտադրությունը չէր: Երկու խմբերն էլ ճշմարիտ հավատացյալներ էին: Մենք չպետք է փորձենք ուրիշ քրիստոնեաներին մեզ նմանեցնենք: Մենք ընդունում ենք մեկս մյուսին Քրիստոսով:

Թ. Ընդհանուր եզրակացությունը կարող է ուրվագծվել այսպես

1. ընդունեք մեկդ մյուսին, որովհետև Աստված ընդունում է մեզ Քրիստոսով (հմմտ. 14:1,3; 15:7);
2. մի դատեք իրար, որովհետև Քրիստոսն է մեր միակ Տերն ու Դատավորը (հմմտ. 14:3-12);
3. սերն ավելի կարևոր է քան անձնական ազատությունը (հմմտ. 14:13-23);

4. հետևեք Քրիստոսի օրինակին և հրաժարվեք ձեր իրավունքներից ուրիշների խրատի և լավի համար (հմմտ. 15:1-13):

**ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ**

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 14:1-4**
[1]Բայց հաւատքի մէջ տկար լինողին ընդունեցէք առանց կարծիքների վերայ վիճելու: [2]Մէկը հաւատում է՝ թէ ամեն բան կարող է ուտել. բայց տկարը բանջար է ուտում: [3]Ուտողը չանարգէ չուտողին. եւ չուտողը չդատէ ուտողին. որովհետեւ Աստուած ընդունեց նորան. [4]Դու ո՞վ ես՝ որ ուրիշի ծառային դատում ես. իր Տիրոջ համար է կանգնում կամ ընկնում. բայց կկանգնի, որովհետեւ Աստուած կարող է կանգնեցնել նորան:

**NASB (UPDATED) TEXT: 14:1-4**
**[1]Now accept the one who is weak in faith, *but* not for *the purpose of* passing judgment on his opinions. [2]One person has faith that he may eat all things, but he who is weak eats vegetables *only*. [3]The one who eats is not to regard with contempt the one who does not eat, and the one who does not eat is not to judge the one who eats, for God has accepted him. [4]Who are you to judge the servant of another? To his own master he stands or falls; and he will stand, for the Lord is able to make him stand.**

**14:1**

| | |
|---|---|
| **NASB** | **"Now accept"** |
| **NKJV** | **"Receive"** |
| **NRSV, TEV** | **"Welcome"** |
| **NJB** | **"Give a welcome"** |

**Արևելահայերեն «ընդունեցէք»**

**Արևմտահայերեն «ընդունեցէք»**

Այստեղ օգտագործված է ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ MIDDLE ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ (հմմտ. 15:1): Սա շարունակական հրաման է շեշտը ենթակայի վրա դրված: «Դու» ԴԵՐԱՆՈՒՆԸ հունարենում գտնվում է ԲԱՅԻ մեջ, բայց այն հասկացվում է անգլերեն տարբերակով և վերաբերում է «ուժեղ» քրիստոնեաներին (հմմտ. 15:1): Սա նույնպես խոսում է Հռոմի եկեղեցում գոյություն ունեցող երկու խմբերի մասին: Սա վերաբերվել է կամ (1) տարաձայնությունը հրեա և հեթանոս հավատացյալների միջև (հմմտ. 15:7-21) կամ էլ (2) տարբեր բնավորությունների տեր մարդկանց միջև: Այս ամբողջ կոնտեքստը խոսում է ճշմարիտ, անկեղծ հավատացյալների մասին, ոմանք ուժեղ, ոմանք էլ տկար իրենց հավատքի մեջ: Հավատքն այստեղ օգտագործված է ավետարանը հասկանալու իմաստով և նրա բացարձակ նոր և կյանքի կտրուկ փոփոխության գործողություններով:

▣

**NASB, NKJV "the one who is weak in faith"**
**NRSV, TEV "those who are weak in faith"**
**JB "If a person's faith is not strong enough"**

**Արևելահայերեն « հաւատքի մէջ տկար լինողին »**

**Արևմտահայերեն « Հաւատքի մէջ տկար եղողը »**

Այս արտահայտության իմաստն ամրապնդվում է նրանով, որ այն գտնվում է հունարեն նախադասության սկզբում: Բառացիորեն հետևյալն է «հավատքի մեջ տկար»: ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԱՁԵՎԸ կենտրոնանում է այն փաստի վրա, որ խոսքը գնում է կյանքի ապրելակերպի բնութագրի մասին: Սա վերաբերվում է իրավաբանական մտածելակերպ/մտքի կերտվածքին: Չափից շատ բծախնդիր քրիստոնեա եղբոր մասին է նկարագրված այս գլխում երեք կերպերով (1) ուտելիքի արգելք (հմմտ. 14:2,6,21); (2) հատուկ մոտեցում որոշ օրերի նկատմանբ (հմմտ. 14:5-6); և (3) գինի օգտագործելու արգելք (հմմտ. 14:17,21): Նմանատիպ մարդու մասին նշված է Հռ. 15:1 և I Կոր. 8:9-13; 9:22: Զշտապենք ինքներս մեզ դասել ուժեղ կամ տկար քրիստոնեայի կարգին: Հաճախ հավատացյալները մի բնագավառում տկար են հանդես գալիս իսկ մեկ ուրիշում ուժեղ:

Պողոսի վերաբերմունքը այս բոլոր հարցերի նկատմաբ շատ է տարբերվում Գաղ. 4:9-10 և Կող. 2:16-23: Բայց այս հատվածները արտացոլում են կեղծ վարդապետների կեցվածքն և ուսմունքները: Հռոմեացիներին ուղղված թղթում խոսվում է ճշմարիտ հավատացյալների մասին, ովքեր ունեն շատ նրբանկատ խիղճ:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՏԿԱՐՈՒԹՅՈՒՆ**

Այստեղ կա հակասություն: Կեղծ վարդապետները միշտ պարծենում էին իրենց հատուկ արժանիքներով և ուժով, դա անելով իրենց հատուկ ոճով, բայց Պողոսը գիտեր «տկարության» (*astheneō*): Ուշադրություն դարձրեք, թե որքան հաճախ են օգտագործված այս տերմինները (կամ դրանց տարբեր ձևերը) I և II Կորնթացիներին ուղղված թղթում;

| Պարծենկոտություն | Տկարություն |
|---|---|
| I Կորնթացիս 1:29,31 | I Կորնթացիս 1:25,27 |
| 3:21 | 2:3 |
| 4:7 | 4:10 |
| 5:6 | 8:7,9,10,11,12 |
| 9:15,16 | 9:22 |
| II Կորնթացիս 1:12,14 | 11:30 |
| 5:12 (2 անգամ) | 12:22 |
| 7:4,14 (2 անգամ) | 15:43 |
| 8:24 | II Կորնթացիս 10:10 |
| 9:2,3 | 11:21,29,30 |
| 10:8,13,15,16,17 | 12:5,9,10 (2 անգամ) |
| 11:12,16,17,18,30 | 13:3,4(2 անգամ), 9 |
| 12:1,5,6,9 | |

Տկարության գաղափարը Պողոսն օգտագործում է մի քանի տարբեր կերպերով;

1. Աստծո տկարը, I Կոր. 1:25
2. աշխարհի հիմար, I Կոր. 1:27
3. Պողոսի տկարությունն ու վախը, I Կոր. 2:3; 9:22; II Կոր. 11:29,30; 12:5
4. Պողոսն ու իր միսիոներական թիմը, I Կոր. 4:10; II Կոր. 11:21
5. տկար հավատացյալ (հմմտ. Հռ. 14:1-15:13), I Կոր. 8:7,9,10,11,12; 9:22
6. ֆիզիկական հիվանդություն, I Կոր. 11:30
7. մարդու մարմնի անդամներ, I Կոր. 12:22
8. ֆիզիկական մարմին, I Կոր. 15:43
9. Պողոսի ֆիզիկական ներկայությունը կամ նրա հռետորական հմտությունը, II Կոր. 10:10
10. Պողոսի տկարությունը ամրապնդվեց Աստծո զորությունով, II Կոր. 12:9,10; 13:4,9
11. Քրիստոսի պատգամը Պողոսի միջոցով, II Կոր. 13:3
12. Քրիստոսի ֆիզիկական մարմինը, II Կոր. 13:4

▣

NASB "*but* not for *the purpose of* passing judgment on his opinions"
NKJV "but not to dispute over doubtful things"
NRSV "but not for the purpose of quarreling over opinions"
TEV "but do not argue with them about their personal opinions"
JB "without starting an argument"

**Արևելահայերեն « առանց կարծիքների վերայ վիճելու »**

**Արևմտահայերեն « ոչ թէ տարակուսական որոշումներով »**

Հավատացյալները պետք է ամբողջությամբ ընդունեն ուրիշ/մյուս հավատացյալներին , որոնց հետ տարաձայնություն ունեն, չփորձելով փոխել նրանց: Խղճի ազատությունը հենց սա է պահանջում որպես հաղորդակցության հիմք, և ոչ թե հարկադրված միօրինակություն/նիանմանություն: Բոլոր հավատացյալները աճման գործընթացի մեջ են: Նրանք պետք է ժամանակ տան Սուրբ Հոգուն որ գործի և ձևավորի յուրաքանչյուրի մեջ հասունության աստիճանի հասցնելու համար, բայց նույնիսկ հոգևոր հասունության մեջ էլ ոչ ամեն ինչի մեջ բացարձակ համաձայն կլինեն իրար հետ:

**14:2** Ուտելիքը, որի մասին խոսվում է այս համարի մեջ կրոնական նպատակ է հետապնդում և ոչ թե ֆիզիկական առողջությունը պահպանելու համար է հոգ անում: Ուտելիքի այս խնդիրը ծագում է

երկու հնարավոր աղբյուրներից (1) հրեական ուտելիքի օրենքները (հմմտ. Ղև. 11) կամ (2) կուռքերին զոհաբերած միսը (հմմտ. I Կոր. 8-10): Հիսուսը հստակ սովորեցնում էր, որ ուտելիքը չէ պղծում մարդուն (հմմտ. Մաթ. 15:10-20; Մարկ. 7:14-23): Այս ճշմարտությունը պարզաբանվում է Պետրոսի տեսիլքում Կոռնելիոսի այցելության հետ կապված Գործք10:

**14:3 «Ուտողը չանարգէ չուտողին»** «չանարգե» արտահայտությունը հանդես է գալիս ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ *ezoutheneō* բայի ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿՈՎ, որը սովորաբար նշանակում է գործողության դադար, ընթացքի մեջ արդեն գտնվող գործողության դադար: «Անարգել/արհամարհել» բառացի նշանակում է «կարևորություն չտալ, ոչ լուրջ վերաբերվել», «բանի տեղ չդնել» կամ «համարել ոչինչ չարժեցող» (հմմտ. 14:10; Ղուկ. 18:9; I Կոր. 6:4; 16:11; II Կոր. 10:10; Գաղ. 4:14; I Թես. 5:20): Հավատացյալները պետք է զգուշանան ինքնաարդարացումից: Հավատքի մեջ զորավորը չպետք է դատապարտի հավատքով տկարին:

▣ **«չդատէ»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿՈՎ, որը սովորաբար նշանակում է գործողության դադար, ընթացքի մեջ արդեն գտնվող գործողության դադար: Հավատքի մեջ տկարը պետք է կանգնեցնի իր եղբայրների/քույրերի դատապարտությունը, ովքեր անձնական հավատարմության հետ կապված համաձայն չեն իր հետ:

▣ **«որովհետեւ Աստուած ընդունեց նորան»** Այստեղ ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿԱՁԵՎ ՉԵԶՈՔ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է: Սա նույն տերմինն ինչ հ. 1-ում: Հավատացյալների համար մեկը մյուսին ընդունելու հիմքն այն է, որ Աստված Հիսուս Քրիստոսի միջոցով (15:7) ընդունել է նրանց: Կոնտեքստում հ.3 ուղակիորեն խոսում է չափից շատ բարեխիղճների մասին՝հավատքի մեջ տկար քրիստոնեայի մասին:

**14:4 «Դու ո՞վ ես»** Հունարենում սա շատ արտահայտիչ/շեշտակի արտահայտություն է՝ ուղղված տկար եղբորը և քրոջը:

▣ **«ծառա»** *oiketēs* տերմինը կազմված է *oikos* բառից, որը նշանակում է «տուն», ուստի խոսքը կամ տնային ծառայի կամ աղախնի, սպասավորի մասին է (հմմտ. Ղուկ. 16:13; Գործք 10:7; Հռ. 14:4; I Պետ. 2:18): Այդ իմաստով այն օգտագործված է Սեպտուագինտի մեջ (հմմտ. Ծննդ. 9:25; 27:37; 44:16,33; 50:18): Նոր Կտակարանում այն հաճախ չի օգտագործվում, ինչպես *doulos* (գերի, ծառա, աղախին) տերմինը, որով նաև կոչում էին տնային սպասավորներին կամ ծառաներին: Պողոսը փաստում է այն, որ յուրաքանչյուր հավատացյալ Քրիստոսի ծառան/սպասավորն է: Քրիստոսը

հավատացյալների «տերն» է և միմիայն Նա կղեկավարի նրանց և հաշիվ կպահանջի իրենց գործերի և շարժառիթների համար (հմմտ. II Կոր. 5:10):

▣ **«իր Տիրոջ համար է կանգնում կամ ընկնում»** Կոնտեքստում Պողոսն այս միտքը ուղղում է չափից շատ բարեխիղճ հավտացյալներին, բայց այս միտքը ակնհայտորեն վերաբերում է երկու խմբերին էլ: Լավ կլինի, որ հավատացյալները նախ և առաջ իրենց աչքի գերանը հանեն (հմմտ. Մաթ. 7:1-15):

▣ **«բայց կկանգնի, որովհետեւ Աստուած կարող է կանգնեցնել նորան»** Սա հիանալի խոստում էր (հմմտ. 5:1-2; Հուդա24-25): Այն նաև խոսում է հավատացյալների համատեղ գործողությունների մասին (հմմտ. I Կոր. 15:1-2): Տես Հատուկ Թեմա: Կանգնել 5:2.

Հունարեն տարբեր ձեռագրերում հանդիպում են այս հատվածի զանազան տեսակները: NKJV թարգմանության մեջ, հիմնված D, F, G, 048 և D150 երկաթագիր ձեռագրերի վրա, ինչպես նաև Վուլգատում, նշված է «Աստված» բառը (*Theos*), սակայն MSS P[46], ℵ, A, B, C, P ձեռագրերում գրված է «Տեր» բառը (*kurios*): UBS[4] կազմողները ընդունում են « Տեր» տարբերակը, որպես հավաստի աղբյուր (A):

**ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ**

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 14:5-9**
5Մէկը օրն օրից աւելի է համարում, իսկ միւսն ամեն օր մէկ է համարում. ամեն մէկը թող իր միտքը հաճեցնէ: 6Օրին մտիկ անողը Տիրոջ համար է մտիկ անում. եւ օրին մտիկ չանողը, Տիրոջ համար չէ մտիկ անում. եւ ուտողը Տիրոջ համար է ուտում, որովհետեւ Աստուածանից գոհանում է. եւ չուտողը Տիրոջ համար չէ ուտում, եւ Աստուածանից գոհանում է: 7Որովհետեւ մեզանից ոչ ով ինքն իրան համար չէ ապրում, եւ ոչ ով ինքն իրան համար չէ մեռնում: 8Որովհետեւ եթէ ապրենք՝ Տիրոջ ենք ապրում, եւ եթե մեռնենք՝ Տիրոջ ենք մեռնում. ուրեմն թէ ապրենք եւ թէ մեռնենք՝ Տիրոջն ենք: 9Վասնզի նոյն իսկ նորա համար էլ Քրիստոսը մեռաւ եւ կենդանացաւ՝ որ մեռելների եւ կենդանիների վերայ տիրէ:

NASB (UPDATED) TEXT: 14:5-9
5One person regards one day above another, another regards every day *alike*. Each person must be fully convinced in his own mind. 6He who observes the day, observes it for the Lord, and he who eats, does so for the Lord, for he gives thanks to God; and he who eats not, for the Lord he does not eat, and gives thanks to God. 7For not one of us lives for himself, and not one dies for himself; 8for if we live, we live for the Lord, or if we die, we die for the Lord; therefore whether we live or die, we are the Lord’s. 9For to this end Christ died and lived again, that He might be Lord both of the dead and of the living.

**14:5 «Մէկը օրն օրից աւելի է համարում»** Որոշ մարդիկ հատուկ նշանակություն են տալիս օրացույցի օրերին և տարեթվերին՝ ելնելով իրենց կրոնական ըմբռնումներից(հմմտ. Գաղ. 4:10; Կող. 2:16-17): Բոլոր օրերը հավասարապես պատկանում են Աստծուն: Հատուկ օրեր չկան: Եվ չկան «աշխարհիկ» և «հոգևոր» օրեր: Նրանք բոլորն էլ սուրբ են:

▣ **«ամեն մէկը թող իր միտքը հաճեցնէ»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ-ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է: Այստեղ է գտնվում այս հարցերի խաղաղության բանալին: Նախ և առաջ հավատացյալները պետք է քննեն իրենց գործերը (հմմտ. հ. 23), և ոչ թե ուրիշների: Աստված չի ապրում իմ աստվածաբանական պատկերացման շրջանակներում: Իմ աստվածաբանությունը անպայման չէ, որ Աստծունը լինի:

**14:6 «Տիրոջ համար է»** Այս արտահայտությունը, որը ՏՐԱԿԱՆ ՀՈԼՈՎ-ով է, երեք անգամ օգտագործված է հ. 6 և երկու անգամ հ. 8: Յուրաքանչյուր որոշում, յուրաքանչյուր կյանքի ընտրություն ճշմարիտ հավատացյալների կողմից պետք է իրականացվի ինչպես «Տիրոջը, Տիրոջ համար» (հմմտ. Եփ. 6:7 և Կող. 3:23), և ոչ թե անձնական հետաքրքրություններից ելնելով:

**14:7 «Որովհետեւ մեզանից ոչ ով ինքն իրան համար չէ ապրում»** Ոչ մեկ քրիստոնեա անջատ կղզի չէ: Քրիստոնեաներն ապրում են, նախ և առաջ, Քրիստոսի համար (հմմտ. հ. 8): Հավատացյալների յուրաքանչյուր արարք, անպայման, ինչ որ ազդեցություն է ունենում մյուսների վրա: Չէ, որ նրանք մեծ հոգևոր ընտանիքի մասն են կազմում: Ուստի, նրանք պետք է սահմանափակեն իրենց անձնական ազատությունը մյուսների հանդեպ սեր ունենալով հանդերձ (հմմտ. I Կոր. 10:24,27-33): Նրանք պետք է թույլ տան, որ մյուսներն աճեն անձնական ազատության մեջ: Օրինապաշտությունը տանում է ինքնաարդարացման միանմանության, որը Աստծուց չէ: Հիսուսի ամենախիստ խոսքերն ու դատապարտություններն ուղղված էին փարիսեցիների ինքնաարդարացմանը:

**14:8 «եթէ...եթէ»** Սրանք երկու ԵՐՐՈՐԴ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ են, որը նշանակում է հնարավոր գործողություն ապագայում: Հավատացյալները ծառայում են Տիրոջը ամեն ինչում և ամեն հնարավոր անկանխատեսելի համգամանքներում (հմմտ. Եփ. 6:7; Կող. 3:23):

**14:9 « Քրիստոսը մեռաւ եւ կենդանացաւ՝ որ մեռելների եւ կենդանիների վերայ տիրէ»** Այս տերմինները դասակարգված են անսովոր հերթականությամբ: Այսպիսի դասավորվածությունը կարող է արտացոլոր Քրիստոսի մահն ու հարությունը: Հիմա Նա է երկու թագավորությունների Գերիշխան Տերը:

Սա ի հայտ է բերում աստվածաբանական պատճառը, թե ինչու քրիստոնեաները չպետք է ապրեն միայն իրենց համար, այլ նաև ուրիշ հավատացյալների համար: Իրենք իրենց սեփականությունը չեն, նրանք մեծ գնով են գնվել: Նրանք հիմա Հիսուսի ծառաներն են, Որը մեռավ նրանց մեղքերի համար , որ նրանք այլևս մեղքի ծառա չլինեն այլ Աստծո (հմմտ. Հռ. 6): Հավատացյալները պետք ընդօրինակեն Հիսուսի կյանքը, որը լի էր ուրիշներին ծառայելու սիրով, մեռնելով իրենց եսակենտրոն ցանկություններից (հմմտ. II Կոր. 5:14-15; Գաղ. 2:20; I Հովհ. 3:16):

**ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ**

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 14:10-12**
[10]Բայց դու ի՞նչու համար ես դատում քո եղբօրը, կամ ի՞նչու ես քո եղբօրն անարգում. որովհետեւ ամենս Քրիստոսի ատեանի առաջին պիտի կանգնենք: [11] Որովհետեւ գրուած է՝ Ես կենդանի եմ, ասում է Տէրը. որ ամեն ծունկ ինձ պիտի կրկնուի եւ ամեն լեզու խոստովան լինի Աստուծուն: [12] Ուրեմն մեզանից ամեն մէկն իր անձի համար պիտի հաշիւ տայ Աստուծուն:

NASB (UPDATED) TEXT: 14:10-12
[10]**But you, why do you judge your brother? Or you again, why do you regard your brother with contempt? For we will all stand before the judgment seat of God.** [11]**For it is written, "AS I LIVE, SAYS THE LORD, EVERY KNEE SHALL BOW TO ME, AND EVERY TONGUE SHALL GIVE PRAISE TO GOD."** [12]**So then each one of us will give an account of himself to God.**

**14:10 « Բայց դու »** Այս բառը միտքը շեշտելու համար է:

▣ h. 10-ի երկու հարցերը hh. 1-12-ի հատվածի կենտրոնն են: Երկու խմբերը referred to in h. 3 are կրկին հակասում են: Մի խումբը «դատում է», իսկ մյուս խումբը «վարվում է արհամարհանքով»: Բայց այս երկու վերաբերմունքներն էլ անհամապատասխան են « ծառաներին»: Նրանց տերը՝ Հիսուս Քրիստոսը միակն է, որ ունի իրավունք «քննադատելու» կամ «վերևից նայելու/արհամարհել»: Եթե հավատացյալները վարվում են դատավորի պես, դա նշանակում է, որ (1) նրանք

անօրինականորեն գրավում են Աստծո տեղը և (2) նրանց գործողությունները նախապատրաստական և թերի բնույթ են կրում:

▣ **«որովհետեւ ամենս Քրիստոսի ատեանի առաջին պիտի կանգնենք»** Այս նույն ճշմարտությունը արտահայտված է II Կոր. 5:10: Հավատացյալները պետք է բացատրեն Տիրոջը, թե ինչպես են վարվել միմյանց հետ: Հիսուսը կվարվի ինչպես աստվածային Դատավոր (հմմտ. Մաթ. 25:31-46):

NKJV թարգմանության մեջ ասվում է «Քրիստոսի ատյան»: Հունարեն ձեռագրերում, որի վրա հենվում է KJV թարգմանություն , դրանք վաղ հունարեն երկաթագիր ձեռագրերի ուղղված տարբերակներն են ℵ[2], և C[2]: «Աստված» *Theos* բառը գտնվում է MSS ℵ, B, C, D, F և G ձեռագրերում: Շատ հավանական է, որ արտագրողները փոխել են հունարեն տեքստը, որպեսզի համաձայնեցնեն II Կոր. 5:10: Նաև հնարավոր է, որ արտագրողները փոխել են այս համարը, որպեսզի հակադրեն Քրիստոսի այսպես կոչված «որդեգրության» գաղափարի վաղ սխալ տեսակետը: Սակայն բացառված չէ և այն, որ տեքստի մի քանի տարբերակներ արվել են նրա համար, որպեսզի հենց տեքստն ինքը դառնար ավելի ուղղափառ (հմմտ. Բարտ Դ. Երման *«Ուղղափառ դավանանքի Սուրբ Գրքի աղավաղումը»*, (Bart D. Ehrman's *The Orthodox Corruption of Scripture*), հրատ. Oxford University Press, 1993, էջ. 90-91:

**14:11 «Որովհետեւ գրուած է»** Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ/ԿԱՏԱՐՅԱԼ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է: Այս արտահայտությունը մասնագիտացված իդիոմա էր, որը օգտագործվում էր նկարագրելու համար Հին Կտակարանի ներշնչված մեջբերումները: Սա ակնարկ է Ես. 45:23, որը նույնպես մեջբերված է Փիլ. 2:10-11:

▣ **« Ես կենդանի եմ »** Սա երդման բանաձև է, որը բառախաղ է Աստծո Ուխտի անվան համար, ՅԱՀՎԵ: ՅԱՀՎԵ անունը կազմված է եբրայերեն «լինել, գոյություն ունենալ» բայի ՊԱՏՃԱՌԱԿԱՆ ՁԵՎ-ով (հմմտ. Ել. 3:14): Նա միակ հավիտենական կենդանի Աստվածն է: Ուստի, Նա երդվում է Իր իսկ գոյությամբ:

**14:12 «Ուրեմն մեզանից ամեն մէկն իր անձի համար պիտի հաշիւ տայ Աստուծուն»** Քրիստոնեաները պիտի կանգնեն Քրիստոսի ատյանի առջև (հմմտ. II Կոր. 5:10), և հաշիվ պիտի տան եղբայրներին քննադատելու համար: Որոշ վաղ հունարեն ձեռագրերում «Աստծուն» բառը բաց է թողնված: Բայց կոնտեքստում դա ակնհայտ է: Շատ հնարավոր է, որ այս տարբերակը գրված է հատվածի հ. 10 ազդեցության տակ:

**ԿՈՆՏԵՔՍՏԻ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ 13-23հհ.**

Ա. Քննարկումը, թե քրիստոնեաներն ինչպես պետք է վարվեն միմյանց հետ սկսվեց հհ. 1-12: Սա հիմնված է այն ճշմարտության վրա, որ նրանք պարտավոր են ամբողջությամբ ընդունել ամեն տեսակի քրիստոնեաներին, որովհետև Քրիստոսը, որը նրանց տերն ու դատավորն է, այս երկու խմբերին էլ ամբողջությամբ ընդունում է: Շատ հաճախ պատահում է, որ ինչ որ հոգևոր բաներ կարևոր են մի խմբի համար, ինչպիսիք են իրենց անցյալը, իրենց անձնական առանձնահատկությունները, իրենց ծնողները, իրենց անձնական նախապատվությունները, նրանց փորձառությունները և այլն բացարձակ էական չեն Աստծո համար:

Բ. Քննարկման այս երկրորդ բաժինը կապված քրիստոնեայի ազատության և պատասխանատվության հետ, թեման շարունակում է զարգացնել ուրիշ տեսանկյունից: Այս համարներում խոսվում է Քրիստոսով Աստծո հանդեպ ունեցած հավատացյալի սիրո մասին, որը մղում է նրան սիրել իրենից տարբերվող քրիստոնեա եղբայրներին: Ինչպես Հիսուսն Իր կյանքը դրեց հավատացյալների համար, այդպես էլ նրանք պետք է դնեն իրենց ազատությունը հանուն նրանց, ում համար որ Նա մեռավ: Սիրո վրա դրված այս շեշտը քրիստոնեայի կյանքի հիմնական շարժառիթն է, որը նաև երևում է 13:8-10, որտեղ խոսքը գնում է հավատացյալի և անհավատի միջև եղած հարաբերությունների մասին:

Գ. Ճշմարտությունն այն մասին, որ այս ֆիզիկական աշխարհում ամեն բան մաքուր է, մեծ դժվարությամբ է ընդունվում որոշ քրիստոնեաների կողմից: Հաճախ նույնիսկ հավատացյալները մեղքի սխալը գցում են «իրերի կամ հանգամանքների» վրա, իրենք իրենց մեղադրելու փոխարեն: Պողոսը շարունակաբար հաստատում է, որ ամեն բան մաքուր է (հմմտ. 14:14,20; I Կոր. 6:12; 10:25-26; I Տիմ. 4:4; Տիտոս 1:15): Նրա հիմնավորմանը հետևում է Հիսուսի ուսմունքները ուտելիքի մասին Մարկ. 7:18-23: Գործք 10:15 օգտագործված է մաքուր և անմաքուր ուտելիքի պատկերը, որի միջոցով Աստված ցույց տվեց Պետրոս առաքյալին, որ Նա ընդունում է Կոռնելիոսին:

Դ. Այս բաժինը հիմնականում ուղղված է «հավատքի մեջ ուժեղ եղբորը»: Պողոսը համամիտ է, որ «բոլոր բաները մաքուր են» միտքը, դա միայն ճշմարտության կեսն է, և ավելացնում է, որ ոչ ամեն ինչ է շինում կամ խրատում Աստծո ընտանիքը (հմմտ. I Կոր. 6:12; 10:23): Ուժեղ եղբոր ազատությունը կարող է ուրիշ քրիստոնեա եղբայրներին հասցնել դատարկության և

ուժասպառության: Հավատացյալներն իրենց եղբայրների պահապաններն են Քրիստոսի միջոցով և Քրիստոսի համար:

Ե. Շատ հետաքրքիր է, որ Պողոսը չի հաստատում կամ ենթադրություն անում այն մասին, որ «տկար եղբայրը» հոգևոր զարգացման գործընթացի մեջ է, որը նրան կհասցնի նրան այն վիճակին , երբ նա կդառնա «ուժեղ եղբայր»: Այս ամբողջ քննարկումը չի վերաբերվում շնորհքի մեջ աճելուն, այլ խոսվում է քրիստոնեաների միջև սիրո առաջնահերթության մասին, որոնք ունեն տարբեր հասկացողություններ այս կամ այն հարցի շուրջ: Հավատացյալների ներգրավվումը այս կամ այն խմբին պայմանավորված է անձնական առանձնահատկությունների, կրոնական գիտելիքների և անձնական փորձառությունների վրա ավելի, քան «ճիշտ» կամ «սխալի» վրա: Հավատացյալի առաջադրանքը չէ ուրիշներին փոխելը, այլ սիրել և հարգել նրանց: Բայց սա արդեն սրտի և ոչ թե մտքի: Աստված Իր Որդուն տվեց բոլոր մարդկանց համար, Նա սիրում և ընդունում է բոլորին հավասարապես:

**ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ**

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 14:13-23**
[13]Այսուհետեւ այլեւս իրար չդատենք. այլ աւելի այս դրէք ձեր մտքումը, որ եղբօր
գլորում կամ գայթակղութիւն չդնէք: [14]Գիտեմ եւ հաստատ իմանում եմ Տէր Յիսուսումը,
որ ոչ մի բան պիղծ չէ ինքն իրանով. բացի ով որ մի բան պիղծ է համարում, նորա
համար պիղծ է: [15]Բայց եթէ կերակուրի պատճառով քո եղբայրը տրտմում է, դու այլ
եւս նորա հետ սիրով չես վարվում, քո կերակուրովը մի կորցնիր նորան, որի համար
Քրիստոսը մեռաւ: [16] Արդ ձեր բարի բանը չչարախօսուի: [17] Որովհետեւ Աստուծոյ
արքայութիւնն ուտելիք եւ խմելիք չէ. այլ արդարութիւն եւ խաղաղութիւն եւ
ուրախութիւն Սուրբ Հոգովը: [18] Վասնզի նա որ սորանցում Քրիստոսին ծառայում է,
Աստուծուն հաճելի է, եւ մարդկանց գովելի: [19] Ապա ուրեմն խաղաղութեան եւ միմեանց
շինութեան բաների ետեւից գնանք: [20] Կերակուրի պատճառով մի քանդիր Աստուծոյ
գործը. ամեն բան մաքուր է. բայց չար է այն մարդի համար՝ որ գայթակղութիւն տալով
է ուտում: [21] Լաւ է միս չուտել եւ գինի չխմել, եւ այն բանը չանել՝ որ նորանով քո
եղբայրը գլորվում է կամ գայթակղում է կամ տկարանում է: [22] Դու հաւա՞տք ունիս. մեզ
համար ունեցիր Աստուծոյ առաջին. երանի նորան՝ որ իր անձը չը դատապարտէ
նորանով, որ ընդունում է: [23] Իսկ նա որ խղճմտանք է անում, եթէ ուտէ
դատապարտուած է, որովհետեւ հաւատքից չէ. եւ ամեն ինչ որ հաւատքից չէ, մեղք է:

NASB (UPDATED) TEXT: 14:13-23
[13]Therefore let us not judge one another anymore, but rather determine this—not to put an obstacle or a
stumbling block in a brother's way. [14]I know and am convinced in the Lord Jesus that nothing is unclean in
itself; but to him who thinks anything to be unclean, to him it is unclean. [15]For if because of food your
brother is hurt, you are no longer walking according to love. Do not destroy with your food him for whom
Christ died. [16]Therefore do not let what is for you a good thing be spoken of as evil; [17]for the kingdom of
God is not eating and drinking, but righteousness and peace and joy in the Holy Spirit. [18]For he who in this
*way* serves Christ is acceptable to God and approved by men. [19]So then let us pursue the things which
make for peace and the building up of one another. [20]Do not tear down the work of God for the sake of

food. All things indeed are clean, but they are evil for the man who eats and gives offense. [21]It is good not to eat meat or to drink wine, or *to do anything* by which your brother stumbles. [22]The faith which you have, have as your own conviction before God. Happy is he who does not condemn himself in what he approves. [23]But he who doubts is condemned if he eats, because *his eating is* not from faith; and whatever is not from faith is sin.

**14:13 «Այսուհետեւ այլեւս իրար չդատենք»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿՈՎ, որը սովորաբար նշանակում է արդեն գործընթացի մեջ գտնվող գործողության դադար, Սա զգուշացում չէ, այլ արգելք: Այն շատ նման է հ. 16-ին: «Դատել» տերմինը Պողոսն արդեն հինգ անգամ օգտագործել է հհ. 1-12 և հիմա ևս չորս անգամ հհ. 13-23:

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԱՐԴՅՈ՞Ք ՔՐԻՍՏՈՆՅԱՆԵՐԸ ՊԵՏՔ Է ԴԱՏԵՆ ՄԻՄՅԱՆՑ**

Այս խնդրին պետք է նայել երկու կողմ ից: Նախ, հավատացյալներին կոչ է ուղղված չդատել միմյանց (հմմտ. Մաթ. 7:1-5; Ղուկ. 6:37,42; Հռ. 2:1-11; Հակոբոս 4:11-12): Բայց նույն ժամանակ հավատացյալները պետք է գնահատեն իրենց առաջնորդներին (հմմտ. Մաթ. 7:6,15-16; I Կոր. 14:29; I Թես. 5:21; I Տիմ. 3:1-13; և I Հովh. 4:1-6):

**Ճիշտ գնահատման համար որոշ չափանիշներ կարող են օգտակար լինել**

1. գնահատելու նպատակը հաստատելն է (հմմտ. I Հովh. 4:1 - «փորձել» համոզվելու համար)
2. գնահատել պետք է խոնարհությամբ և հեզությամբ (հմմտ. Գաղ. 6:1)
3. գնահատումը չպետք է լինի անձնական նախապատվության հիմքի վրա (հմմտ. Հռ. 14:1-23; I Կոր. 8:1-13; 10:23-33)
4. գնահատման ժամանակ պետք է ի հայտ բերել այն առաջնորդներին, ովքեր քննադատելու առիթ չեն տալիս եկեղեցու ներսում կամ համայնքում (հմմտ. I Տիմ. 3):

▣ **«որ եղբօր գլորում կամ գայթակղութիւն չդնէք»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ԱՆՈՐՈՇ ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿՈՎ, որը սովորաբար նշանակում է գործողության դադար, ընթացքի մեջ արդեն գտնվող գործողության դադար: Նույն ճշմարտությունը հաստատվում է հ. 21 և I Կոր. 8:9:

«Խոչընդոտ» տերմինը նշանակում էր ճանապարհի վրա ընկած մի բան, որը մարդկանց գլորվելու պատճառ էր: «Գլորման քար» տերմինի բառացիի իմաստն է դա թակարդի գործածման մեխանիզմն է, որը դրվում էր շների կողմից հետապնդված կենդանու ճանապարհի վրա:

Քրիստոնեությունն ունի շատ կարևոր առանձնահատկություն, որն է համագործակցությունը: Մենք պետք է մեր եղբոր պահապանը, քաջալերողը և ընկերը լինենք: Հավատքը դա ընտանեկան գործ է:

14:14
NASB "I know and am convinced in the Lord Jesus"
NKJV "I know and am convinced by the Lord Jesus"
NRSV "I know and am persuaded in the Lord Jesus"
TEV "My union with the Lord Jesus makes me certain"
JB "Now I am perfectly well aware, of course, and I speak for the Lord Jesus,"

**Արևելահայերեն «Գիտեմ եւ հաստատ իմանում եմ Տէր Յիսուսումը »**

**Արևմտահայերեն «Ասիկա գիտեմ ու համոզուած եմ Տէր Յիսուսով»**

Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ/ԿԱՏԱՐՅԱԼ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ է *oida* բայի, որը օգտագործվել է ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ իմաստով ՎԱՂԱԿԱՏԱՐ/ԿԱՏԱՐՅԱԼ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ: Բառացի նշանակությունն է, «Ես շարունակում եմ իմանալ, և ես եղել եմ և շարունակում եմ լինել համոզված»: Ճշմարտության այս հաստատումը գտնվում է հh. 5բ և 22-23: Հավատացյալների հոգևոր հարցերի իմացությունը գալիս է նրանց Հիսուսի հետ ունեցած հարաբերությունից Սուրբ Հոգու միջոցով: Նրանք պետք է քայլեն իրենց ունեցած լույսի ներքո:

▣ **« ոչ մի բան պիղծ չէ ինքն իրանով»** Այս նույն ճշմարտությունը պատկերված է Գործք 10:9-16: Ոչ մի իր/ առարկա չար չէ, այլ մարդիկ են չար: Արարչագործության մեջ ոչինչ չար չէ և իր մեջ չար բան չէ պարունակում (հմմտ. h. 20; Մարկ. 7:18-23; I Կոր. 10:25-26; I Տիմ. 4:4 և Տիտոս 1:15 ):

▣ **« բացի ով որ մի բան պիղծ է համարում, նորա համար պիղծ է»** Խոսքը գնում է կրոնական մտքի անմաքրության մասին: Հավատացյալները պետք է գնահատեն իրենց արարքները իրենց խղճով (հմմտ. hh. 5,22-23): Եթե նույնիսկ նրանց հետ սխալ են վարվել այս կամ այն առիթով, նրանք պետք է քայլեն Աստծո առաջ իրենց ունեցած լույսի ներքո: Նրանք նաև չպետք է դատեն ուրիշ հավատացյալներին իրենց պատկերացումներով, հատկապես եթե մտքերն այնքան էլ հստակ չեն (հմմտ. 14:1,3,4,10,13):

**14:15 «Բայց եթէ կերակուրի պատճառով քո եղբայրը տրտմում է»** Այստեղ ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ Է, որը ենթադրվում է որպես ճշմարտություն հեղինակի տեսանկյունից կամ էլ իր գրական նպատակների համար: Սերը, և ոչ թե իրավունքները, պատասխանատվությունը, և ոչ թե ազատությունը - որոշում է մեր ապրելակերպը:

Սա կամ վերաբերվում է (1) հրեական ուտելիքի օրենքներին (հմմտ. Ղև. 11); կամ էլ (2) կուռքերին զոհաբերած մսին (հմմտ. I Կոր. 8-10): հ. 20 այնքան հստակ արտահայտում է այս ճշմարտությունը:

▣ **«դու այլ եւս նորա հետ սիրով չես վարվում»** Հաճախ սա կոչում են «ազատության օրենք» (հմմտ. Հակոբ. 1:25; 3:12), կամ «թագավորական օրենք» (հմմտ. Հակոբ. 2:8) կամ «Քրիստոսի օրենք» (հմմտ. Գաղ. 6:2): Նոր Կտակարանում կան թե պատասխանատվություններ և թե ուղեցույցներ:

▣

| | |
|---|---|
| NASB, NKJV | "Do not destroy with your food him for whom Christ died" |
| NRSV | "Do not let what you eat cause the ruin of one for whom Christ died" |
| TEV | "Do not let the food that you eat ruin the person for whom Christ died!" |
| JB | "You are certainly not free to eat what you like if that means the downfall of someone for whom Christ died." |

**Արևելահայերեն « քո կերակուրովը մի կորցնիր նորան, որի համար Քրիստոսը մեռաւ »**

**Արևմտահայերեն « քու կերակուրովդ մի կորսընցներ զանիկա՝ որուն համար Քրիստոս մեռաւ»**

Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿՈՎ, որը հաճախ տալիս է գործողության դադար տալու իմաստ, որն արդեն գտնվում էր գործընթացի մեջ: Սա շատ խիստ արտահայտություն է: Որոշ քրիստոնեաների ազատությունը չպետք է ուրիշ քրիստոնեաների կործանման պատճառը դառնա: Սա չի վերաբերվում փրկությունը կորցնելուն, այլ խաղաղության, վստահության և արդյունավետ ծառայության կորստի մասին է:

«Կործանել» տերմինը հունարենում *lupeō* բառն է, որը նշանակում է «տխրություն, սուգ կամ ցավ պատճառել» (նույնը նաև LXX-ում): Պողոսն օգտագործում է այս բառը հիմնականում II Կորնթացիների թղթում (հմմտ. 2:2,4,5; 6:10; 7:8,9,11): Թարգմանությունը որպես «կործանել» չափից շատ խիստ է: Սա չի վերաբերում փրկությունը կորցնելուն, այլ երբ անարգվում են ինչ որ մեկի անձնական համոզմունքները Սուրբ Հոգին հանդիմանում է: Եթե հավատացյալը չի վարվում իր հավատքին համապատասխան, ապա մեղք է գործում (հմմտ. հ. 23):

14:16

| | |
|---|---|
| NASB | "do not let what is for you a good thing be spoken of as evil" |
| NKJV, NRSV | "do not let your good be spoken of as evil" |
| TEV | "do not let what you regard as good get a bad name" |
| JB | "you must not compromise your privilege" |

**Արևելահայերեն « ձեր բարի բանը չչարախօսուի »**

**Արևմտահայերեն « ձեր բարին չար խօսքերու նշաւակ չըլլայ»**

Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ ԺԽՏԱԿԱՆ ՄԱՄՆԻԿՈՎ, որը սովորաբար նշանակում է գործողության դադար, ընթացքի մեջ արդեն գտնվող գործողության դադար: Ազատությունը շատ հեշտությամբ կարող է վերածվել այն բանի, որ ամեն ինչ թույլատրելի է:

Այս համարում «բարին» վերաբերում է ուժեղ եղբոր արարքներին: Եթե ուժեղ քրիստոնեան իր ազատության հիման վրա վարվում է այնպես, որ բացասաբար է ազդում տկար հավատացյալների վրա և հոգևորապես վնասում նրանց, ապա « բարին» նրանց համար փոխվում է չարի:

Թվում է, որ այս համարով շեշտը փոխվում է քրիստոնեաների վարվելակերպը միմյանց հետ հարաբերություններից, այն բանի վրա, թե ինչպես դա կարող է ազդել անհավատների վրա (հմմտ. հ. 18բ): Այստեղ օգտագործված ԲԱՅԸ կազմված է «հայհոյություն» բառից (խոսակցական լեզվում), որը սովորաբար օգտագործվում է անհավատների հետ կապված:

**14:17 «Աստուծոյ արքայութիւնն»** Սա միակ դեպքն է, որ օգտագործվում է այս արտահայտությունը Հռոմեացիների թղթում: Հիսուսը շատ հաճախ խոսեց այս թեմայի մասին: Աստծո թագավորությունը իրականություն է այստեղ և հիմա, և միաժամանակ դրա վերջնական իրականացումն ապագայում է լինելու (հմմտ. Մաթ. 6:10):

Քրիստոնեայի համատեղ կյանքը Քրիստոսի մարմնում ավելի թանկ է, քան անձնական ազատությունը: Տես Հատուկ Թեմա ներքևում.

## ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԱՍՏԾՈ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ

Հին Կտակարանում ՅԱՀՎԵԻ մասին մտածում էին, որպես Իսրայելի Թագավոր (հմմտ. I Թագ. 8:7; Սաղ. 10:16; 24:7-9; 29:10; 44:4; 89:18; 95:3; Ես. 43:15; 4:4,6) և Մեսիային, որպես իդեալական թագավոր (հմմտ. Սաղ. 2:6): Բեթլեհեմում Հիսուսի ծնունդը (6-4 Ք.Ա.) Աստծո թագավորությունը մտավ մարդկության պատմության մեջ նոր զորությունով և փրկությունով (նոր ուխտ, հմմտ. Եր. 31:31-34; Եզ. 36:27-36): Հովհաննես Մկրտիչը հռչակեց թագավորության մոտ լինելը (հմմտ. Մաթ. 3:2; Մարկ. 1:15): Հիսուսը հստակ սովորեցրեց, որ թագավորություն գտնվում է Իր մեջ և Իր ուսմունքների մեջ (հմմտ. Մաթ. 4:17,23; 9:35; 10:7; 11:11-12; 12:28;16:19; Մարկ. 12:34; Ղուկ. 10:9,11; 11:20; 12:31-32; 16:16; 17:21): Բայց և նաև Աստծո թագավորությունը ապագայում է (հմմտ. Մաթ. 16:28; 24:14; 26:29; Մարկ. 9:1; Ղուկ. 21:31; 22:16,18):

Մարկոս և Ղուկաս սինոպտիկ/նույնանման Ավետարաններում, զուգահեռ հատվածներում մենք հանդիպում ենք «Աստծո թագավորություն» արտահայտությունը: Հիսուսը հաճախ սովորեցրեց ներկա պահին մարդկանց սրտերում Աստծո թագավորության մասին, որը մի օր պետք է

հաստատվի ամբողջ երկրում: Սա արտացոլված է Հիսուսի աղոթքում Մաթ. 6:10: Մաթևոսի Ավետարանը, որը գրվել է հրեաների համար, այս արտահայտության մեջ չկա Աստծո անունը (Երկնքի Արքայություն), իսկ քանի որ Մարկոս և Ղուկաս Ավետարանները գրվել են հեթանոսների համար, օգտագործել են Աստծո անունը, որն ավելի ընդունված է եղել:

Այս բանալի արտահայտությունը շատ հաճախ հանդիպում է սինոպտիկ Ավետարաններում: Հիսուսի առաջին և վերջին քարոզները, և Իր առակներից շատերը առընչվում են այս թեմային : Սա խոսում է Աստծո այն թագավորության մասին , որը հիմա մարդկանց սրտերում է: Զարմանալի է, որ Հովհաննեսն այս արտահայտությունն օգտագործումը ընդամենը երկու անգամ (և ոչ մի անգամ Հիսուսի առակներում): Հովհաննեսի Ավետարանում բանալի տեմինը և փոխաբերությունը «հավիտենական կյանքն» է:

Այս լարվածության պատճառը Քրիստոսի երկու գալուստներն են: Հին Կտակարանը կենտրոնանում էր Աստծո Մեսիայի միայն մեկ գալստյան վրա որպես ռազմավար, դատավոր, փառավոր գալուստ, բայց Նոր Կտակարանը ցույց է տալիս, որ Նա առաջին անգամ եկավ որպես Տառապող Ծառա Ես. 53 և հեզ թագավոր Զաք. 9:9: Հրեական երկու ժամանակաշրջանները, անօրենության շրջանը և արդարության նոր շրջանը մասամբ իրար ծածկում են, մասնակի կերպով համընկնում են: Հիմա Հիսուսը թագավորում է հավատացյալների սրտերում, բայց կգա օրը երբ Նա կթագավորի ամբողջ արարչագործության վրա: Նա կգա այնպես, ինչպես կանխագուշակված է Հին Կտակարանում: Հավատացյալներն ապրում են «արդեն» բայց «դեռ ոչ» վիճակում, կապված Աստծո թագավորության հետ (հմմտ. Գորդոն Ֆի և Դուգլաս Ստյուարտ, «Ինչպես կարդալ Աստվածաշունչը իր ամբողջ ճոխությամբ» Gordon D. Fee and Douglas Stuart’s *How to Read The Bible For All Its Worth*, էջ. 131-134):

▣ **«այլ արդարութիւն եւ խաղաղութիւն եւ ուրախութիւն Սուրբ Հոգովը»** Սուրբ Հոգին է, որ այս հատկությունները տալիս է քրիստոնեաներին անհատապես և ամբողջ համայնքին: Սա Աստծո ընտանիքի առանձնահատկություններն են թե արտաքին և թե ներքին:

«Արդարություն» տերմինը այստեղ Պողոսն օգտագործում է հատուկ իմաստով: Տես հատուկ թեմա 5:1: Սովորաբար նա դա օգտագործում էր նկարագրելու համար վերագրված արդարությունը, իրավականորեն (դատական) Աստծո հռչակումը հավատացյալի ներումը և Քրիստոսի մեջ բնակվելը (հմմտ. 3:21-31; 4): Մեղավոր մարդիկ ոչ միայն սկսեցին արդար համարվել, այլ նրանք պետք է արդար դառնան: Դա միաժամանակ թե պարգև է և թե նպատակ, ՀԱՏԿԱՆԻՇ և ՀՐԱՄԱՆ, դիրք և նպատակին հասնելու միջոց, հավատքի գործ և հավատքի կյանք: Տես Հատուկ Թեմա 6:4.

**14:18** Երբ հավատացյալները սահմանափակում են իրենց ազատությունը ի օգուտ տկար եղբայրների դա նշանակում է ծառայել Քրիստոսին: Չկա ավելի ուժեղ միջոց ապացուցելու մեր սերը Հիսուսի հանդեպ, քան սիրել, հոգալ և պաշտպանել նրան, ում համար Նա մեռավ:

▣ **«մարդկանց գովելի»** Հնարավոր է այս խոսքերը հաստատում են այն, որ քրիստոնեական սեր ցուցաբերելով ուրիշների հանդեպ ծառայության և անհավատներին վկայելու դռներ են բացվում (հմմտ. h. 16; II Կոր. 8:21; I Պետ. 2:12): Թե ինչպես ենք մենք վարվում միմյանց հետ հավատացյալ համայնքի ներսում հանդիսանում է շատ զորավոր վկայություն , կամ դրական, կամ բացասական:

**14:19 «Ապա ուրեմն ետեւից գնանք»** *diōkō* տերմինը Հին Կտակարանային իդիոմ է, որը հաճախ հանդիպում է Սեպտուագինտի մեջ և նաև Պողոսի գրվածքներում, նշանակում է «հետևել մեծ եռանդով» կամ «հատուկ ջանքեր գործադրել, ինչ որ մի բանի հասնելու համար»: Պողոսն օգտագործում է այս բառը Հռ. 9:30,31; 12:13; և այստեղ «հետապնդել, ձգտել հասնելու» իմաստով, բայց 12:14 նրանց համար է, ովքեր հալածում են հավատացյալներին (հմմտ. I Կոր. 4:12; նույնիսկ իր մասին խոսելով, 15:9; II Կոր. 4:9; Գաղ. 1:13,23; Փիլ. 3:6):

Քերականական կառուցվածքը այստեղ կամ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ (MSS ℵ, A, B, F, G, L & P ձեռագրեր) կամ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ (MSS C, D ձեռագրեր) օգտագործված ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿՈՎ: UBS[4] կազմողները տեքստում թողնում են երկրորդ տարբերակը, բայց գնահատում են այն «D» կատեգորիայով (մեծ դժվարությամբ):

Ուշադրություն դարձրեք այն բաների վրա, թե ինչին պետք է ձգտեն և ինչին պետք է հասնեն քրիստոնեաները

1. հյուրասիրություն, 12:13
2. ինչը բերում է խաղաղություն և միմյանց շինություն, 14:19
3. սեր, I Կոր. 14:1
4. քրստոսանմանություն, Փիլ. 3:12,14
5. ինչը բարի է մյուսների և միմյանց համար, I Թես. 5:15
6. արդարություն, բարեպաշտություն, հավատք, սեր, համբերություն և հեզություն, I Տիմ. 6:11
7. արդարություն, հավատք, սեր և խաղաղություն նրանց հետ, ովքեր Տիրոջ անունն են կանչում մաքուր սրտով, II Տիմ. 2:22

▣ **«խաղաղութեան եւ միմեանց շինութեան բաների ետեւից գնանք»** Ամեն բանում սա պետք է լինի հավատացյալի նպատակը (հմմտ. Սաղ. 34:14; Եբր. 12:14): Անձնական ազատությունն ու

աստվածաբանական հասկացողությունը պետք է տանեն Քրիստոսի մարմնի կայունությանն ու աճմանը (հմմտ. 15:2; I Կոր. 6:12; 14:26; Եփ. 4:12). Տես հատուկ թեմա: Խրատել 15:2:

**14:20 « մի քանդիր Աստուծոյ գործը»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿՈՎ, որը սովորաբար նշանակում է գործողության դադար, ընթացքի մեջ արդեն գտնվող գործողության դադար: Սա բարդ ԲԱՅ է (*kata* + *luō*): Պողոսի գրվածքներում այն հանդիպում է ընդամենը երեք անգամ (հմմտ. II Կոր. 5:1 մահվան հետ կապված և Գաղ. 2:18 նույն իմաստն է ինչ այստեղ «կործանել, քանդել»: Այստեղ բառախաղ կա « շինություն լինել» հ. 19 և այս բառի, որը բառացիորեն նշանակում է «քանդել, տապալել»: Երկուսն էլ շինարարական փոխաբերություններ են:

Այս կոնտեքստում ինչպես հասկանալ «Աստծո գործը» բառը: Այն չի կարող վերաբերել հոգևոր հասունությանը, այլ Սուրբ Հոգու գործունեությանը «տկար» հավատացյալների կյանքում: Ոչ այս կոնտեքստում և ոչ էլ I Կոր. 8-10 Պողոսը չի խոսում այն մասին, որ հավատացյալների մի խումբը պետք է փոխի մյուս խմբին կամ իր փոխել նրանս իր պես դաձնել:

▣ **«ամեն բան մաքուր է»** Տես ծանուցում հ. 14

▣

| | |
|---|---|
| **NASB** | **"but they are evil for the man who eats and gives offense"** |
| **NKJV** | **"but it is evil for the man who eats with offense"** |
| **NRSV** | **"but it is wrong for you to make others fall by what you eat"** |
| **TEV** | **"but it is wrong to eat anything that will cause someone else to fall into sin"** |
| **JB** | **"but it becomes evil if by eating it you make somebody else fall away"** |

**Արևելահայերեն « բայց չար է այն մարդի համար՝ որ գայթակղութիւն տալով է ուտում »**

**Արևմտահայերեն « միայն այն մարդուն գէշ է, որ ուրիշը կը գայթակղեցնէ»**

Այս համարը այս գլխի կենտրոնական ճշմարտությունն է (հմմտ. I Կոր. 10:25-26; Տիտոս 1:15):

Այստեղ խոսքը գնում է կուռքերին զոհաբերած մսի մասին (հմմտ. I Կոր. 8-10): Միսը բարի կամ չար չէ, բայց եթե մի տկար եղբայր, որը մտածում է որ դա անպիտան է գործածման համար և տեսնում է, որ մի ուրիշ քրիստոնեա ուտում է այն և ինքը նույնպես ուտում է, ապա այդ ժամանակ ինչը բարոյապես չեզոք է դառնում է չար, որովհետև այն ոտնահարում է/պղծում է Աստծո կամքի իր անձնական գիտակցությունը:

Շատ անգլերեն լեզվոր թարգմանություններ այս արտահայտությունը կապում են «ուժեղ եղբոր» հետ այն իմաստով, որ երբ նա ուտում է նրա տկար եղբայրը գայթակղվում է: Նոր ամերիկյան Աստվածաշունչ (New American Bible) Կաթոլիկ թարգմանությունը առաջարկում է ուրիշ ընտրություն և այս խոսքերը կապում է «տկար եղբոր» հետ, թարգմանելով այն այսպես «բայց սա

ճիշտ չէ, եթե մարդն ուտում է, երբ այդ ուտելիքը փորձություն/մեղք է  իր խղճի համար»: Կոնտեքստում առաջին տարբերակն ավելի ընդունելի է, բայց  երկիմաստությունը կարող է օգտակար լինել թե մեկին և թե մյուսին, որը հաստատում է  hh. 22-23:

**14:21** Այս խոսքերը ուղղված են «ուժեղ եղբորը»: Ինքնին այս տեքստը Աստվածաշնչում հանդիսանում է միակ հիմքը աստվածաբանական գաղափարի համար «ամբողջական ժուժկալություն» որոշակի ուտելիքներից կամ խմիչքներից: Ուժեղ քրիստոնեաները պետք է իրենք իրենց սահմանափակեն հանուն սիրո իրենց հոգևոր եղբայրների և քույրերի և անկեղծ փնտրողների (կորսված մարդկանց): Այս սահմանափակումների մեծ մասը կապված են մշակութային, ռեգիոնալ և/կամ հարանվանային առանձնահատկությունների հետ:

Տվյալ տեքստում երկու անգամ օգտագործված է ԱՆՈՐՈՇ ՁԵՎ ԱՕՐԻՍՏ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ԺԽՏԱԿԱՆ ՄԱՍՆԻԿՈՎ, որը նշանակում է « երբեք մի սկսիր այդ անել»: Ոմանք մեկնաբանել են այս ԱՕՐԻՍՏՆԵՐԸ որպես կիրառություն որոշակի առիթների (հմմտ. I Կոր. 8-10): Պարզ է, որ չի կարելի մարդուն արգելել ուտել և խմել:

14:22

| | |
|---|---|
| NASB | "The faith which you have, have as your own conviction before God. Happy is he who does not condemn himself in what he approves." |
| NKJV | "Do you have faith? Have it to yourself before God. Happy is he who does not condemn himself in what he approves." |
| NRSV | "The faith that you have, have as your own conviction before God. Blessed are those who have no reason to condemn themselves because of what they approve." |
| TEV | "Keep what you believe about this matter, then, between yourself and God. Happy are those who do not feel guilty when they do something they judge is right!" |
| JB | "Hold on to your own belief, as between yourself and God—and consider the man fortunate who can make his decision without going against his conscience." |

**Արևելահայերեն  «Դու հաւա՞տք ունիս. մեզ համար ունեցիր  Աստուծոյ առաջին. երանի նորան՝ որ իր անձը չը դատապարտէ նորանով, որ ընդունում է:»**

**Արևմտահայերեն «Դուն  հաւատք ունի՞ս. զանիկա քեզի պահէ   Աստուծոյ առջեւ. երանի անոր որ իր անձը չի դատապարտեր անով, որ ինք  կընդունի:»**

Այս խոսքերը ևս մեկ անգամ հաստատում են, որ հավատացյալը պետք է ապրի Սուրբ Հոգու առաջնորդությամբ և  Աստվածաշնչի լույսի ներքո (հմմտ. h. 5): Նա պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո, բայց ոչ այնպես, որ  վիրավորի իր հավատակից ընկերոջը: h. 22 «ուժեղ եղբոր» մասին է, իսկ h. 23 «տկար եղբոր»:

հ. 22 սկիզբը որոշ չափով տարբերվում է տարբեր ձեռագրերում: Ոմանց մեջ հարցականի տեսքով է (NKJV) իսկ ոմանց մեջ հաստատական իմաստով է (NASB, NRSV, TEV և JB):

▣ **«որ ընդունում է»** Տես հատուկ թեմա 2:18.

**14:23 « Իսկ նա որ խղճմտանք է անում»** Սա ԴԵՐԲԱՅԱԿԱՆ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՉԵԶՈՔ ՍԵՌ: Խոսքը չափից շատ բծախնդիր քրիստոնեայի մասին է հ. 3:

▣ **«դատապարտուած է»** Այստեղ ՎԱՂԱԿԱՏԱՐ/ԿԱՏԱՐՅԱԼ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է, կազմված *kata* + *krinō*, և նշանակում է (1) « ցուցաբերել արժանի կշտաբանք համեմատած ինչ որ մի բանի հետ» (հմմտ. Հարոլդ Կ. Մոուլտոն, *«Հունարեն լեզվի վերլուծական բառարան»,* Harold K. Moulton, *The analytical Greek Lexicon Revised*, էջ. 216) կամ (2) «ոչ թե դատապարտություն, այլ արժանի պատիժ» (հմմտ. Հռ. 5:16,18; 8:1 [հմմտ. Մոուլտոն և Միլլիգան, *«Հունարեն Նոր Կտակարանի բառարան»*, Moulton and Milligan, *The Vocabulary of the Greek Testament*, էջ. 328]): Խոսքը մարդկային արարքի մասին է, գործած հակառակ իր խղճի և արդյունքում կրելով ցավ և տառապանք և նաև Սուրբ Հոգու հանդիմանությունը:

▣ **«եթէ ուտէ»** ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ ԵՐՐՈՐԴ ԿԱՐԳԻ

▣ **«եւ ամեն ինչ որ հաւատքից չէ, մեղք է»** Աստվածաշնչյան երկիմաստ հատվածներում մեղքը խախտում/պղծում է մեր խիղճը և ոչ թե օրենքը: Մենք պետք է քայլենք մեր ունեցած լույսի ներքո և միշտ բաց լինենք, որ Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին էլ ավելի շատ մեզ լուսավորեն:

Աստծո կամքը հասկացած հավատացյալները պետք է գործերով ցույց տան: Հնարավոր է, որ հոգևորապես հասուն հավատացյալներն ունենան տարբեր կարծիքներ աստվածաշնչյան երկիմաստ մտքերի շուրջ և միաժամանակ համաձայնվել Աստծո կամքի հետ:

▣ Որոշ հունարեն ձեռագրերում 16:25-26 օրհներգություն տեղադրված է 14-րդ գլխի վերջում: Իսկ որոշներում երկու տեղում էլ կան: Մի պապրիուսե ձեռագրում P[46], այս տեքստը ավարտում է գլուխ 15-ը: Հռոմեացիս թղթի հունարեն ձեռագրի ավանդույթի մեջ այս օրհներգությունն ունի վեց տարբեր տեղադրումներ: Այս հարցի բազմակողմանի քննարկումը գտնվում է Բրյուս Մ. Մեցգերի *«Հունարեն Նոր Կտակարանի տեքստային մեկնաբանություն»* գրքում , *A Textual Commentary of the Greek New Testament* by Bruce M. Metzger, հրատ. «United Bible Societies», էջ. 533-536: Ահա տվյալ տեսությունների համառոտ ամփոփումը; (1) Օրիգենը հաստատում էր, որ Հռոմում գտնվող

հերետիկոս Մարիկոնը Հռոմեացիներին ուղղված թղթի վերջին երկու գլուխները հանել է: Սրանով բացատրվում է գլուխ  14 տեղադրված օրհներգությունը; (2) ուրիշ գիտնականներ ենթադրում են, որ Պողոսը սկզբում գրել է Հռոմեացիներին ուղղված թուղթը կազմված  1-14 գլուխներից Հռոմ ուղարկելու համար, իսկ ավելի ուշ տեսել է կարիքը այդ նույնը Եփեսոս ուղարկելու  բայց այս անգամ 1-16 գլուխներով: Անձնական ողջույնների երկար ցանկը (գլուխ 16)   ցույց է տալիս Եփեսոսը և ոչ թե Հռոմը; (3) գլուխ 16 ողջույնները հավատացյալների համար էին Հռոմի ճանապարհին, որովհետև  Ակյուղասն ու Պրիսկիղան Եփեսոսում էին, և երբեք չի նշվում նրանց Հռոմ վերադառնալու մասին; և (4) օրհներգությունը չէր հանդիսանում բնագրի մաս և ավելի ուշ ավելացվել է արտագրողների կողմից ծիսական նպատակներով հրապարակային պաշտամունքների մեջ:

Մ. Ռ. Վինսենթի  «Բառային Սերտողություն» գիրքը հետաքրքիր է, (M. R. Vincent, *Word Studies*, հատ. 2):

> «Այս բոլոր տեսությունների դեմ համառորեն հանդես է գալիս այն փաստը, որ բոլոր հայտնի և մինչև մեր օրերը հասած Պողոսի ձեռագրերը (մոտ 300 հատ) ներկա պահին քննադատորեն ուսումնասիրված են, այդ թվում նաև բոլոր ամենակարևորները, և դրանք ներկայացնում են բոլոր գլուխները ընդունված կապվածությամբ և հերթականությամբ, բացառությամբ օրհներգությունը (էջ. 750):

## ՔՆՆԱՐԿՎՈՂ ՀԱՐՑԵՐ

Սա սերտողության  համար  ուղեցույց հանդիսացող  մեկնաբանություն  է, որը նշանակում է, որ  դու  պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ:

1. Նկարագրեք «տկար» եղբոր: Արդյոք Պողոսն ի նկատի ունի հոգևորապես ոչ հասուն քրիստոնեայի:
2. Ի՞նչ կապ կա քրիստոնեական ազատության և քրիստոնեական պատասխանատվության միջև:
3. Արդյո՞ք բնության մեջ ամեն բան «մաքուր» է կամ բարոյապես չեզոք  (հհ. 14, 20)

4. Ինչու՞ ուտելիքի հետ կապված խնդիրն այդքան կարևոր էր Կորնթոսում (հմմտ. I Կոր. 8, 10), հիշեք, որ Պողոսը Հռոմեացիներին ուղղված թուղթը գրել է Կորնթոսից:
5. Բացատրեք գիտության, ազատության և սիրո մեջ եղող կապը այս գլխում:
6. Ինչի՞ հիման վրա մենք պետք է կառուցենք փոխհարաբերություններ եկեղեցում:
7. Ինչի՞ հիման վրա ենք մենք իրականացնում մեր անձնական ընտրություններն ու գործողությունները:
8. Ինչպե՞ս են մեր արարքնեն ազդում ուրիշների վրա: Ի՞նչ է դա մեզանից պահանջում:
9. Ինչպե՞ս ենք մենք որոշում, թե որն է ճիշտ քրիստոնեական էթիկան:
10. Հնարավոր է արդյոք, որ հասուն քրիստոնեաները իրար հետ տարաձայնություններ ունենան, և միևնույն ժամանակ ընդունված լինել Աստծո կողմից:

# ԹՈՒՂԹ ՈՒՂՂՎԱԾ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

## ԳԼՈՒԽ 15

| ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ | | | | |
|---|---|---|---|---|
| UBS[4] | NKJV | NRSV | TEV | JB |
| Հաճեցրեք ձեր եղբայրակիցներին, և ոչ թե ձեզ, | Ուրիշների լուծը կրեք | Ուժեղները պետք է աջակցեն տկարներին | Հաճեցրեք ուրիշներին, և ոչ թե ինքներդ ձեզ | (14:22-15:6) |
| 15:1-6 | 15:1-6 | 15:1-6 | 15:1-6 | |
| Ավետարանը հեթանոսներին և հրեաներին նույնն է | Միասին փառավորեք Աստծուն | | Ավետարանը հեթանոսներին | Միաբան լինելու կոչ |
| 15:7-13 | 15:7-13 | 15:7-13 | 15:7-12 | 15:7-12 |
| | | | 15:13 | 15:13 |
| Պողոսի միսիոներական առաջադրանքը | Երուսաղեմից Լյուրիկիա | Անձնական նոթեր | Պողոսի հիմքը այսպիսի համարձակությամբ գրելու համար | Վերջաբան |
| 15:14-21 | 15:14-21 | 15:14-21 | 15:14-21 | 15:14-16 |
| | | | | 15:17-21 |
| Պողոսի Հռոմ այցելելու ծրագիրը | Հռոմ այցելելու ծրագիր | | Պողոսի Հռոմ այցելելու ծրագիրը | Պողոսի ծրագրերը |
| 15:22-29 | 15:22-33 | 15:22-29 | 15:22-29 | 15:22-29 |
| 15:30-33 | | 15:30-33 | 15:30-33 | 15:30-33 |

**ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ** (տես էջ **vii**)

*Հետևել բուն հեղինակի մտադրությանը պարբերությունների մակարդակով*

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Ճանաչիր թեմաները: Համեմատիր քո թեմայի բաժանումները վերը նշված 5 թարգմանությունների հետ: Բաժանումները ներշնչված չեն, բայց դա բանալի է հետևելու բուն հեղինակի մտադրությանը, որը մեկնաբանության սիրտն է: Յուրաքանչյուր պարագրաֆ ունի մեկ և միայն մեկ թեմա:
Մեկ շնչով կարդացեք այս գլուխը: Ուրվագծեք հիմնական թեմաներն ու թեման արտահայտեք մեկ նախադասությամբ:

1. Առաջին պարագրաֆ

2. Երկրորդ պարագրաֆ

3. Երրորդ պարագրաֆ

4. և այլն

**ԿՈՐՏԵՔՍՏԻ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ 1-13հh.**

Ա. Քրիստոնեական ազատության և պատասխանատվության մասին քննարկումը շարունակվում է 15:1-13-ում սկսած 14-րդ գլխից:

Բ. 14:1-15:13 ամբողջ փաստարկը կարող է արտահայտվել հետևյալ կերպ
1. ընդունեք մեկդ մյուսին, որովհետև Աստված էլ Քրիստոսով մեզ է ընդունում (հմմտ. 14:1,3; 15:7)
2. մի դատեք մեկդ մյուսին, որովհետև Քրիստոսն է մեր միակ Տերն ու Դատավորը (հմմտ. 14:3-12)
3. սերը ավելի կարևոր է քան անձնական ազատությունը (հմմտ. 14:13-23)
4. հետևեք Քրիստոսի օրինակին և ձեր իրավունքները դրեք ուրիշների շինության և բարիի համար (հմմտ. 15:1-13)

Գ. 15:5-6 հh. արտացոլված է 14:1-15:13 ամբողջ կոնտեքստի եռակի նպատակը

1. մեկդ մյուսի հետ ներդաշնակության մեջ ապրեք
2. ապրեք Քրիստոսի օրինակին հետևելով
3. միաբան սրտերով և շուրթերով փառաբանեք Աստծուն

Դ. Այս նույն լարվածությունը անձնական ազատության և ընդհանրական պատասխանատվության միջև քննարկվում է նաև I Կոր. 8-10:

**ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ**

| |
|---|
| **Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 15:1-6**<br>[1]Մենք որ զօրաւոր ենք՝ պէտք է տկարների տկարութիւնը վեր առնենք, եւ միայն մեր անձերին հաճոյ չլինինք: [2]Ապա մեզանից ամեն մէկը թող հաճոյ լինի ընկերին դէպի բարին՝ շինութեան համար: [3]Որովհետեւ Քրիստոսն էլ ոչ թէ իր անձին հաճոյ եղաւ, այլ ինչպէս գրուած է, թէ Քեզ նախատողների նախատինքները ինձ վերայ ընկան: [4]Նորա համար ինչ որ գրուեցաւ՝ մեր սովրելու համար գրուեցաւ, որ համբերութեամբ եւ գրքերի մխիթարութեամբը յոյսն ունենանք: [5]Եւ համբերութեան եւ մխիթարութեան Աստուածը տայ ձեզ միեւնոյն բանը խորհել իրար հետ Քրիստոսի Յիսուսի կամքի համեմատ: [6]Որ միաբան մէկ բերանով փառաւորէք Աստուծուն, եւ մեր Տէր Յիսուս Քրիստոսի Հօրը: |

| |
|---|
| NASB (UPDATED) TEXT: 15:1-6<br>[1]Now we who are strong ought to bear the weaknesses of those without strength and not *just* please ourselves. [2]Each of us is to please his neighbor for his good, to his edification. [3]For even Christ did not please Himself; but as it is written, " THE REPROACHES OF THOSE WHO REPROACHED YOU FELL ON ME." [4]For whatever was written in earlier times was written for our instruction, so that through perseverance and the encouragement of the Scriptures we might have hope. [5]Now may the God who gives perseverance and encouragement grant you to be of the same mind with one another according to Christ Jesus, [6]so that with one accord you may with one voice glorify the God and Father of our Lord Jesus Christ. |

15:1

**Արևելահայերեն «Մենք որ զօրաւոր ենք՝ պէտք է տկարների տկարութիւնը վեր առնենք»**

**Արևմտահայերեն «Մենք որ զօրաւոր ենք, պէտք է տկարներուն տկարութիւնը վերցնենք»**

| | |
|---|---|
| NASB | "Now we who are strong ought to bear the weakness of those without strength" |
| NKJV | "We then who are strong ought to bear with the scruples of the weak," |
| NRSV | "We who are strong ought to put up with the failing of the weak" |
| TEV | "We who are strong in the faith ought to help the weak to carry their burdens" |
| JB | "We who are strong have a duty to put up with the qualms of the weak" |

Այս արտահայտության մեջ երկու անգամ օգտագործված է ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ԱՆՈՐՈՇ ԴԵՐԲԱՅ, ՀՐԱՄԱՅԱԿԱՆ իմաստով: Ուժեղի և տկարի մասին հիշեցումը ցույց է տալիս, որ 15

գլուխում շարունակվում է թեմայի քննարկումը, որը սկսվել էր 14:1-ից: Ակնհայտ է, որ այստեղ արտացոլված է այն լարվածությունը, որը կար Հռոմի եկեղեցու հավատացյալների, և բոլոր եկեղեցիների միջև, այն առումով, թե ինչպես են քրիստոնեաներն ապրում կյանքի այն բնագավառները, որոնց մասին Աստվածաշունչը լուռ է մնում կամ անորոշ պատասխան է տալիս: Պողոսը կրկին ինքն իրեն նույնացնում է «ուժեղ» խմբի հետ:

Ժամանակակից անգլիախոս ընթերցողների համար, պիտակավորել «ուժեղ» կամ «թույլ», նշանակում է կանխակարծիք ունենալ տվյալ մարդու մասին: Պողոսն այդպիսի մտադրություն չուներ: Ուժեղները նրանք էին, ովքեր ազատագրվել էին կրոնական կյանքի ծիսակարգերից և կանոններից: Նրանց հարաբերությունն Աստծո հետ կախված չէր որոշակի առաջադրանքներ և ծեսեր կատարելուց կամ որոշակի կրոնական արգելքներին հետևում: Մյուս խմբի մեջ նույնպես մտնում են լիարժեք քրիստոնեաները և ընդունված Աստծո կողմից և ամբողջությամբ Նրան նվիրված: Սակայն, նրանք իրենց հավատքը դիտում էին իրենց անցյալի կրոնական գաղափարների փորձառություններից ելնելով: Հրեա հավատացյալները հակված էին պահելու Հին Ուխտի հուդայականությունը: Դարձի եկած հեթանոսները հակված էին պահել իրենց հին կրոնական (հեթանոս) գաղափարներից ու գործածություններից ոմանք: Բայց ուշադրություն դարձրեք, որ Պողոսը հավատացյալների մեջ մտած այս մտածելակերպը «մեղք» չի կոչում: Մեղք է դառնում սա այն ժամանակ, երբ նրանք իրենց խղճին հակառակ են կենում (հմմտ. հ. 23):

«Տկար» տերմինը (*adunates*, առանց ուժի, հմմտ. Հռ. 8:3) տարբերվում է *astheneō* տերմինից 14:1,21 (հմմտ. I Կոր. 8:7,10,11,12; 9:22), որը նույնպես նշանակում է առանց ուժի:

Այս տեքստն ակնարկում է, որ քրիստոնեաները ոչ մի դեպքում չպետք է մի կերպ, չուզենալով հանդուրժեն ուրիշ քրիստոնեաների, այլ պետք է սիրով հոգ տանեն նրանց մասին և միասին գործեն: «Կրել, տանել» տերմինը նաև օգտագործված էր Հիսուսի «խաչը կրելու» իմաստով Հովհ. 19:17 և Ղուկ. 14:27:

▣ **«եւ միայն մեր անձերին հաճոյ չլինինք»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ-ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ ԺԽՏԱԿԱՆ ՄԱՄՆԻԿՈՎ, որը սովորաբար նշանակում է գործողության դադար, ընթացքի մեջ արդեն գտնվող գործողության դադար: Եսասիրությունը հոգևոր անհասունության նշան է; հետևել Քրիստոսի օրինակին (հմմտ. հ. 3; Փիլ. 2:1-11) հասունության նշան է: Դարձյալ, այս խոսքերը հասցեագրված էին ուժեղներին (հմմտ. 14:1,14,16,21,27): Բայց սա չի նշանակում է, որ նրանք բոլորը կրում էին պատասխանատվություն եղբայրական հարաբերությունները պահելու համար: Տկարների մասին խոսում են 14:3, 20, 23; 15:5-6,7-ը:

**15:2 «Ապա մեզանից ամեն մէկը թող հաճոյ լինի ընկերին»** «Ընկեր» բառն այստեղ նշանակում է քրիստոնյա-եղբայր: Սա չի նշանակում, որ պետք է ինչ որ փոխզիջման գնալ սեփական համոզմունքների, այլ որ անորոշ կամ երկիմաստ հարցերի առումով չպնդես քո անձնական կարծիքներն ու ենթադրությունները: Քրիստոսի մարմնի միաբանությունն ու աճն է առաջնահերթ և կարևոր, և ոչ թե անձնական ազատությունը (հմմտ. I Կոր. 9:19-23; 10:24-33; Եփ. 4:1-16):

**Արևելահայերեն «շինութեան համար»**
**Արևմտահայերեն «շինութեան համար»**

▣

| | |
|---|---|
| **NASB** | **"for his edification"** |
| **NKJV** | **"leading to edification"** |
| **NRSV** | **"for the good purpose of building up the neighbor"** |
| **TEV** | **"in order to build them up in the faith"** |
| **JB** | **"help them to become stronger Christians"** |

Սա 14-րդ գլխի գլխավոր թեման է (հմմտ. 14:16,19): Սա նաև հոգևոր պարգևները ստուգելու միջոցներից մեկն է, որի մասին խոսվում է I Կոր. 10:23; 11:7; 14:26; Եփ. 4:29:

Այս կոնտեքստում այս բառերն ուղղված են ուժեղ հավատացյալին, որը սահմանափակում է իր ազատությունն այն բանի համար, որպեսզի սիրով օգնի իր եղբայրներին և քույրերին հավատքի մեջ աճելու համար: «Ջերոմի աստվածաշնչյան մեկնությունը» գրքում, հեղ. Ջոզեֆ Ա. Ֆիցմայեռ և Ռայմոնդ Ե. Բրաուն [Joseph A. Fitzmyer and Raymond E. Brown, ed., *The Jerome Biblical Commentary]*, հատ. 2, այս համարի վերաբերյալ կա հետաքրքիր մեկնաբանություն;

> «Այս արտահայտությունը հաճախ վերցվում է «խրատել/շինություն նրան (ընկերոջը), վերաբերվելով ինչ- որ մեկի քրիստոնյա ընկերոջ անձնական զարգացմանը: Բայց հաշվի առնելով, որ Պողոսն իր նամակներում հաճախ օգտագործում է շինարարությանը վերաբերող փոխաբերություններ ընդհանուր իմաստով, այս արտահայտությունն էլ անկասկած ունի սոցիալական, ընդհանուր իմաստ (հմմտ. I Կոր. 14:12; Եփ. 4:12; Հռ. 14:19)» (էջ. 328):

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՇԻՆՈՒԹՅՈՒՆ**

Պողոսը հաճախ օգտագործում է այս տերմինը *oikodomeō* և դրա տարբեր ձևերը: Բառացիորեն նշանակում է «տուն շինել» (հմմտ. Մաթ. 7:24), բայց այն լայնորեն օգտագործվում է որպես փոխաբերություն for:

1. Քրիստոսի մարմինը, եկեղեցի, I Կոր. 3:9; Եփ. 2:21; 4:16;
2. շինություն

ա. տկար եղբայրներին, Հռ. 15:1

բ. մտերիմների, Հռ. 15:2

գ. մեկը մյուսին, Եփ. 4:29; I Թես. 5:11

դ. սուրբերին ծառայության համար, Եփ. 4:11

3. մենք զորացնում և շինություն ենք տալիս

ա. սիրով, I Կոր. 8:1; Եփ. 4:16

բ. սահմանափակելով անձնական ազատությունը, I Կոր. 10:23-24

գ. խուսափելով ասեկոսներից և ենթադրություններից, I Տիմ. 1:4

դ. սահմանափակելով պաշտամունքին մասնակցողների ելույթները (երգիչներ, ուսուցիչներ, մարգարեներ, լեզուներով խոսացողներ և մեկնաբաններ), I Կոր. 14:3-4,12

4. ամեն բան պետք է շինության համար լինի

ա. Պողոսի իշխանությունն ու հեղինակությունը, II Կոր. 10:8; 12:19; 13:10

բ. ամփոփիչ պնդումները Հռ. 14:19 և I Կոր. 14:26

**15:3 «Քրիստոսն էլ»** Քրիստոսը մեզ համար օրինակ է: Այս ճշմարտությունը նաև ընդգծված է հ. 5; Փիլ. 2:1-11; I Պետ. 2:21; I Հովh 3:16:

▣ **«ինչպէս գրուած է»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է, որը Հին Կտակարանի իդիոմա է հանդիսանում: Սա մեջբերում է Սաղմոս 68:9 և 7: Վկայակոչելով Քրիստոսի օրինակին (Ինքն իրեն չհաճեցրեց, հմմտ. Փիլ. 2:5-8) իլրումն Հին Կտակարանի մեջբերման, Պողոսն օգտագործում է երկու կարևոր հեղինակության աղբյուրները վաղ եկեղեցում (հմմտ. Նյումեն և Նիդա *«Մեկնաբանի տեղեկագիրք Պողոսի Հռոմեացիներին ուղղված նամակի վերաբերյալ»* Newman and Nida, *A Translator's Handbook on Paul's Letter to the Romans*, էջ. 271): Քրիստոսի ինքնամերժումը, երբ Նա Իր վրա կրեց ամբողջ աշխարհի մեղքը- սա օրինակ է մեզ համար (հմմտ. I Հովh 3:16):

**15:4 «Նորա համար ինչ որ գրուեցաւ՝ մեր սովորելու համար գրուեցաւ»** Հին Կտակարանը նաև գրվել է Նոր Կտակարանի հավատացյալների համար (հմմտ. Հռ. 4:23-24; 15:4; I Կոր. 9:10; 10:6,11): Այն վերաբերվում/պատշաճ է նոր ուխտի հավատացյալներին (հմմտ. II Տիմ. 2:15; 3:16-17): Հին և Նոր Կտակարանների միջև կա հաջորդականություն բայց նաև անհաջորդականություն/ընդհատումներ:

▣ **«որ համբերութեամբ եւ գրքերի մխիթարութեամբը»** Ուշադրություն դարձրեք այն բանին, թե ինչպես Աստծո Խոսքն ու հավատացյալների ապրելակերպը կապակցված են իրար հետ: Հավատքն ու գործնական կիրառությունը իրար հետ սերտ կապված են (հմմտ. հ. 5): Նրանք հանգեցնում են կյանքի, մահվան և Քրիստոսի վերադարձի խոստացյալ հույսի վստահությանը:

▣ **«յոյսն ունենանք»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԱՁԵՎ ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ, որը նշանակում է, որ մեր հույսը կախված է գործողություններից, որոնք նշված են 4-րդ համարում: Նոր Կտակարանում «հույս»-ը հաճախ վերաբերվում էր Երկրորդ Գալստյանը, երբ մեր փրկությունը կամբողջանա (հմմտ. 8:30; I Հովh. 3:2): Այս հունարեն տերմինը, ի տարբերություն իրեն համապատասխան անգլերեն տերմինի, չունի անորոշության ոչ մի նշույլ: Երկրորդ Գալուստը հաստատ իրադարձություն է անորոշ ժամանակի տարրով:

Պողոսն օգտագործում է այս տերմինը հաճախ մի քանի տարբեր բայց իրար հետ կապված իմաստներով: Հաճախ այն համագործակցվում է հավատացյալի հավատքի իրականացումով/վախճանով: Սա կարող է արտահայտվել որպես փառք, հավիտենական կյանք, վերջնական փրկություն, Երկրորդ Գալուստ և այլն: Վախճանը հաստատ է, բայց ժամանակի տարրը ապագայում է և անհայտ: Հաճախ այն համագործակցվում է «հավատք» և «սեր» (հմմտ. I Կոր. 13:13; I Թես. 1:3; II Թես. 2:16): Ահա Պողոսի կողմից օգտագործված մի քանի նմուշներ

1. Երկրորդ Գալուստը, Գաղ. 5:5; Եփ. 1:18; 4:4; Տիտոս 2:13
2. Հիսուս մեր հույսը, I Տիմ. 1:1
3. հավատք Ավետարանի, Կող. 1:23; I Թես. 2:15
4. վերջնական փրկություն, Կող. 1:5; I Թես. 4:13; 5:8
5. Աստծո փառքը, Հռ. 5:2, II Կոր. 3:12; Կող. 1:27
6. փրկության վստահություն, I Թես. 5:8
7. հավիտենական կյանք, Տիտոս 1:2; 3:7
8. Արարչագործության ազատագրումը, Հռ. 8:20
9. Հավատք, Հռ. 8:23-25, 15:4
10. Աստծո անունը, Հռ. 15:13
11. Պողոսի փափագը հավատացյալների համար, II Կոր. 1:7

**15:5 «Աստուածը տայ»** Սա բացառիկ ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿԱՁԵՎ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ԸՂՁԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է, որն արտահայտում է ցանկություն կամ աղոթք: Պողոսի աղոթքը հh. 5-6, ուներ երկու խնդրանք (1) նույն միտքն ունենալ (հմմտ. 12:16; II Կոր. 13:11; Փիլ. 2:2) և (2) միաբան մեկ բերանով փառավորել (հմմտ. հh. 6, 7,9):

▣ **«Եւ համբերութեան եւ մխիթարութեան Աստուածը»** Սա փաստորեն Աստծո բնութագրող անունն է (հմմտ. 15:13; I Կոր. 1:3): Աստծո այս առանձնահատկությունները եկան հավատացյալներին Սուրբ Գրքերի միջոցով (հմմտ. հ. 4):

**15:6 «Աստուծուն, եւ մեր Տէր Յիսուս Քրիստոսի Հօրը»** Սա Աստծո Նոր Կտակարանային ամբողջական անունն է (հմմտ. II Կոր. 1:3; Եփ. 1:3; I Պետ. 1:3): Նա փիլիսոփայական անհրաժեշտության Աստված չէ, այլ հայտնության: Ուշադրություն դարձրեք Աստծո այս երկու անուններին Պողոսի աղոթքում հհ. 5-6 (1) համբերության և քաջալերանքի/մխիթարության Աստվածը; և (2) Աստված և մեր Տեր Հիսուս Քրիստոսի Հայրը: Տես հատուկ թեմա: Հայր 1:7.

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 15:7-13**
[7]Վասնորոյ իրար ընդունեցէք, ինչպէս Քրիստոս էլ մեզ ընդունեց Աստուծոյ փառքի համար:
[8]Բայց ասում եմ թէ Յիսուս Քրիստոսը թլփատութեան սպասաւոր եղաւ Աստուծոյ ճշմարտութեան համար, որ հայրերի խոստումները հաստատէ: [9]Բայց հեթանոսները ողորմութեան համար փառաւորում են Աստուծուն, ինչպէս գրուած է թէ Սորա համար կգոհանամ քեզանից հեթանոսների մէջ, եւ քո անունին սաղմոս կասեմ: [10] Եւ դարձեալ ասում է. Ուրախացէք, ով հեթանոսներ, նորա ժողովրդի հետ: [11]Եւ դարձեալ՝ Օրհնեցէք Տիրոջը, ամեն հեթանոսներ, եւ գովեցէք նորան, ամեն ժողովուրդներ: [12]Եւ դարձեալ Եսայիան ասում է. Յեսսէի արմատը կլինի, եւ նա որ հեթանոսների համար իշխան կկանգնի, նորան յոյս կը դնեն հեթանոսները: [13]Եւ յոյսի Աստուածը լցնէ ձեզ ամեն ուրախութիւնով եւ խաղաղութիւնով, հաւատալու մէջ, որ յուսով աւելանաք Սուրբ Հոգու զորութիւնովը:

**NASB (UPDATED) TEXT: 15:7-13**
[7]Therefore, accept one another, just as Christ also accepted us to the glory of God. [8]For I say that Christ has become a servant to the circumcision on behalf of the truth of God to confirm the promises *given* to the fathers, [9]and for the Gentiles to glorify God for His mercy; as it is written, "THEREFORE I WILL GIVE PRAISE TO YOU AMONG THE GENTILES, AND I WILL SING TO YOUR NAME." [10]Again he says, "REJOICE, O GENTILES, WITH HIS PEOPLE." [11]And again, "PRAISE THE LORD ALL YOU GENTILES, AND LET ALL THE PEOPLES PRAISE HIM." [12]Again Isaiah says, "THERE SHALL COME THE ROOT OF JESSE, AND HE WHO ARISES TO RULE OVER THE GENTILES, IN HIM SHALL THE GENTILES HOPE." [13]Now may the God of hope fill you with all joy and peace in believing, so that you will abound in hope by the power of the Holy Spirit.

**Արևելահայերեն** «իրար ընդունեցէք»
**Արևմտահայերեն « մէկզմէկ ընդունեցէք »**

15:7

| | |
|---|---|
| NASB, TEV | "accept one another" |
| NKJV | "receive one another" |
| NRSV | "welcome one another" |
| JB | "treat each other in the same friendly way" |

Այստեղ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿԻ ՉԵԶՈՔ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ Է: Հավատացյալները պետք է շարունակեն ընդունել միմյանց, որովհետև Քրիստոսն ընդունեց նրանց: Այս նույն ճշմարտությունը գտնվում է 14:1: Ինչևէ, այստեղ ներկայացնում է մի շարք հատվածներ Հին Կտակարանից, թե ինչպես է Աստված ընդունում հեթանոսներին (հմմտ. հհ. 9-12): Հնարավոր է, որ նրանք արտացոլել են լարվածությունը Հռոմի եկեղեցում գոյություն ունեցող: Քրիստոնեությունը

բնութագրվում է հավատացյալների զոհաբերությամբ, ինքնատվող միմյանց հանդեպ հոգ տանելով (հմմտ. 1:12; 12:5,10,16; 13:8; 14:13,19; 15:5,7,14; 16:16):

▣ **«ինչպէս Քրիստոս էլ մեզ ընդունեց»** Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿԻ ՉԵԶՈՔ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ Է: Այս բառերում հավատացյալի գործողությունները ուրիշների հանդեպ շարժառիթը և մղիչ ուժը (հմմտ. 14:3): Գլուխ 14-ը կենտրոնանում էր (1) Քրիստոս որպես Տեր և Դատավոր, հհ. 1-12, և (2) Քրիստոս որպես մեր օրինակը ինքնազոհաբերող սեր, հհ. 13-23: Քրիստոսն ընդունեց մեզ, մենք էլ պետք է ընդունենք ուրիշներին:

▣ **«Աստուծոյ փառքի համար»** Տես ծանուցում 3:23

**15:8 «Յիսուս Քրիստոսը թլփատութեան սպասաւոր եղաւ»** Հիսուսը Հին Կտակարանի մարգարեության Աստծո իրականացումն է (հմմտ. Մաթ. 15:24): Սա կարող էր լարվածություն առաջացնել Հռոմի եկեղեցում հավատացյալ հրեաների և հեթանոսների միջև:

**Արևելահայերեն «Աստուծոյ ճշմարտութեան համար, որ հայրերի խոստումները հաստատէ»**
**Արևմտահայերեն «Աստուծոյ ճշմարտութիւնը, որպէս զի նախահայրերուն տրուած խոստումները հաստատէ»**

▣

| | |
|---|---|
| **NASB** | **“on behalf of the truth of God to confirm the promises given to the fathers”** |
| **NKJV** | **“for the truth of God, to confirm the promises made to the fathers”** |
| **NRSV** | **“on behalf of the truth of God in order that he might confirm the promises given to the patriarchs”** |
| **TEV** | **“on behalf of the Jews, to show that God is faithful, to make his promises to their ancestors come true”** |
| **JB** | **“so that God could faithfully carry out the promises made to the patriarchs”** |

Հավանական է, սա վերաբերում է Աստծո Հին Կտակարանի ուխտի խոստումներին ուղղված Իսրայելին (հմմտ. 4:16): Ինչևէ, այն կարող էր վերաբերվել Աստծո խոստումներին բոլոր մարդկանց փրկելու համար (հմմտ. Ծննդ. 3:15, 12:3, Ելից 19:5-6; Ես. 2:2-4; 56:7; 66:18-24): Ավետարանի խորհուրդն այն է, որ Աստծո ծրագիրը միշտ եղել է հրեաների և հեթանոսների միավորումը Հիսուս Քրիստոսի միջոցով (հմմտ. Եփ. 2:11-3:13):

Նոր Կտակարնի պատգամը Հին Կտակարնի հույսերի իրականացումն է, ոչ թե ամբողջապես նոր բան: Քրիստոսի ամենամեծ առաքելությունն էր (1) կատարել Իսրայելի խոստացված հույսը և (2) դուռ բացել հեթանոսների համար (հմմտ. Հռ. 3:29-30; 9:30; 10:11-12,16-20; 11:25,32; 16:25; Եփ.

2:11-3:21): Քանի որ Իսրայելը թերացավ իր ավետարանչական առաքելության մեջ` հայտնելու Աստծուն և գրավելու հեթանոսներին առ հավատք, Հիսուսը զորացնում է նոր հոգևոր Իսրայելին (հմմտ. Գաղ. 6:16) իրականացնելու համար այս տիեզերական առաջադրանքը (հմմտ. Մաթ. 28:19-20; Հովh. 3:16):

▣ **« հաստատէ»** Տես Հատուկ Թեմա 4:16.

**15:9-12** Սա մի շարք մեջբերումներ է Հին Կտակարանից, ցույց տալու համար, որ հեթանոսները միշտ եղել են Աստծո ծրագրի մի մասը (հմմտ. 10:16-20): Սա մի շարք մեջբերումներ է Հին Կտակարանից Սաղ. 18:49 կամ II Թագ. 22:50; 2 Օրին. 32:43; Սաղ. 117:1; Ես. 11:1,10: Նկատեք, որ այս մեջբերումները ներկայացնում են հին եբրայերեն կանոնի բոլոր մասերը` Օրենք, Մարգարեներ և Գրվածքներ:

**15:9 «ողորմութեան համար փառաւորում են Աստուծուն»** Աստծո ողորմությունը աստվածաբանական բանալին է Հռոմեացիս թղթի նախասահմանության թեման հասկանալու (հմմտ. 9:15,16,18,23) և հեթանոսների ներգրավվումը փրկության ծրագրի մեջ (հմմտ. 11:30,31,32; 15:9): Աստծո ողորմությունն է, որ փրկեց Իսրայելին: Աստծո ողորմությունն է, որ փրկում է հավատացյալ հեթանոսներին: Փրկության մեխանիզմը մարդու գործը չէ (հմմտ. Հռ. 9), այլ Աստծո ողորմած, անփոփոխ կերպարը (հմմտ. Ելից 34:6; Նեեմ. 9:17; Սաղ. 103:8,4; Հովել 2:13) և Մեսիայի խոստումը (հմմտ. Ես. 11:1,10):

**15:13 «Եւ յոյսի Աստուածը»** Սա գրական բաժնի փակման օրհներգություն էր, որը սկսվեց 14:1: Սա մեկ ուրիշ հիանալի տիտղոսներից մեկն է Աստվածության համար —հույսի Աստվածը:

**15:13 «լեցնէ ձեզ ամեն ուրախութիւնով եւ խաղաղութիւնով»** Սա ԱՕՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ԸՂՁԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է, ցույց է տալիս Պողոսի աղոթքը Հռոմի հավատացյալների համար: Ուշադրություն դարձրեք «ամեն» բառի վրա (հմմտ. 5:1-2; 14:17):

**Արևելահայերեն «հաւատալու մէջ»**
**Արևմտահայերեն «հաւատքին համաձայն»**

▣

| | |
|---|---|
| **NASB, NKJV, NRSV** | **"in believing,"** |
| **TEV** | **"by means of your faith in Him"** |

**JB** **"in your faith"**

Այս ձևը ԻՆՖԻՆԻՏԻՎ ԱՆՈՐՈՇ ԴԵՐԲԱՅ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ է: Սա արտահայտում է համբերության վստահություն Քրիստոսի վրա ունեցած շարունակական հավատքի միջոցով, Սուրբ Հոգու զորությունով՝ տալով յուրաքանչյուրին ուրախություն և խաղաղություն: Քրիստոսին հավատալը ոչ միայն սկզբնական արձագանքն է այլ համապատասխան ապրելակերպ:

▣ **«որ յուսով աւելանաք»** Այստեղ ԻՆՖԻՆԻՏԻՎ ԱՆՈՐՈՇ ԴԵՐԲԱՅ ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ է *perisseuō* բայի, որը հիմնականում նշանակում է «ավելի և ավելի քան»:

## ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԱՌԱՏ (*PERISSEVŌ*)

Պողոսը հաճախ է օգտագործում այս տերմինը,

1. Աստծո ճշմարտությունը ավելացավ Նրա փառքի համար, Հռ. 3:7
2. Զրի շնորհքն ու պարգևը մեկ մարդու՝ Հիսուս Քրիստոսի միջոցով ավելացավ, Հռ. 5:15
3. Հավատացյալները ավելանան հույսի մեջ, Հռ. 15:13
4. Հավատացյալները չեն դատապարտվում ուտելով կամ չուտելով որոշակի ուտելիքներ, I Կոր. 8:8
5. Հավատացյալները առավելանում են եկեղեցու շինության համար, I Կոր. 14:12
6. Հավատացյալները ավելանում են Տիրոջ գործի մեջ, I Կոր. 15:58
7. Հավատացյալները առատապես բաժնեկցում են Քրիստոսի տառապանքների և Քրիստոսի մխիթարության մեջ, II Կոր. 1:5
8. Արդարության պաշտոնը ավելանում է փառքով, II Կոր. 3:9
9. Հավատացյալների գոհությունը ավելանում է Աստծո փառքի համար, II Կոր. 4:15
10. Հավատացյալների ուրախության առավելությունը, II Կոր. 8:2
11. Հավատացյալները ավելանում են ամեն ինչում (հավատք, արտահայտվել, գիտություն, լրջություն, և սեր), նաև ընծայի մեջ Երուսաղեմի եկեղեցու համար, II Կոր. 8:7
12. Բոլոր շնորհքը ավելանում է հավատացյալների մեջ, II Կոր. 9:8
13. Հավատացյալների առատ գոհությունը առ Աստված, II Կոր. 9:12
14. Աստծո շնորհքի ճախությունը ավելիով հորդում է հավատացյալների վրա, Եփ. 1:8
15. Հավատացյալների սերը էլ ավելի և ավելի հարստանա, ավելանա, Փիլ. 1:9
16. Հավատացյալների վստահությունը Պողոսի հանդեպ ավելանում է Քրիստոսում, Փիլ. 1:26
17. Ունենալով ավելություն, առատություն Փիլ. 4:12,18
18. Հավատացյալները աճելով գոհությունով, Կող. 2:7
19. Հավատացյալները աճում և ավելանում են սիրով միմյանց հանդեպ, I Թես. 3:12

20. Էլ ավելի առաջանաք, ավելանաք աստվածահաճո ապրելակերպի մեջ, I Թես. 4:1

21. Ավելանաք եղբայրասիրության մեջ, I Թես. 4:10

Պողոսի հասկացողությունը Քրիստոսում Աստծո շնորհքի «էլ ավելի» էր, նույնպես հավատացյալները իրենց առօրյայում պետք է քայլեն այս « էլ ավելի» շնորհքի և սիրո մեջ:

▣ **«Սուրբ Հոգու զորութիւնովը»** Սուրբ Հոգին Երրորդության մեկ անձն է, որ գործում է այս նոր դարում: Գոյություն ունեցող ոչ մի բան այս աշխարհում առանց Իրեն չի կատարվում (հմմտ. 15:19; I Կոր. 2:4; I Թես. 1:5):

**ՀԱՐՑԵՐ ՔՆՆԱՐԿՄԱՆ ՀԱՄԱՐ**

Սա սերտողության համար ուղեցույց հանդիսացող մեկնաբանություն է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաչնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են, որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ:

1. Ո՞րն է Հռոմեացիս 14:1-15:13-ի կենտրոնական ճշմարտությունը:
2. Ի՞նչու է Պողոսը մեջբերում Հին Կտակարանի հատվածները 9-12 համարներում: Ի՞նչ մեծ ճշմարտություն են նրանք սովորեցնում:

**ԿՈՐՏԵՔՍՏԻ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ 14-33հհ.**

Ա. Այս նամակի վերջաբանը շատ ձևերով նման է բացմանը, 1:8-15
   1. գովաբանում է նրանց հավատքը (հմմտ. 1:8)
   2. պաշտպանում է հեթանոսներին ավետարանելու Պողոսի առաքյալ լինելու իրավունքները (հմմտ. 1:13,14)
   3. պնդում է նրանց այցելելու Պողոսի փափագը (հմմտ. 1:10,13)
   4. արտահայտում է Պողոսի ցանկությունը, որ նրանք օգնեն իրեն ուրիշ շրջաններ այցելելու ժամանակ, որոնք դեռ ավետարանված չեն (Իսպանիա, հմմտ. 1:13)

Բ. Եվ նորից, այստեղ կա ակնարկ այն լարվածության մասին, որ կար Հռոմի եկեղեցում հավատացյալ հրեաների և հավատացյալ հեթանոսների միջև, որը գոյություն ունի ամբողջ նամակի ընթացքում, բայց հատկապես 9-11, 14:1-15:13 գլուխներում:

Գ. Նաև կա լարվածության ակնարկ վաղ եկեղեցում կապված Պողոսի առաքյալ լինելու հետ: Թվում է, թե նա պաշտպանում է ինքն իրեն hh. 15-19; 1:2,5:

Դ. Այս գրական բաժինը պարունակում է երկու թեմա
1. Պողոսի ծառայությունը որպես առաքյալ և ավետարանիչ (hմմտ. hh. 14-21)
2. Պողոսի ճամփորդական ծրագրերը, այս նպատակը իրականանալու համար նրան բերում են Հռոմ (hմմտ. hh. 22-33):

## ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 15:14-21**
[14] Եւ ես ինքս էլ, եղբարքս, ձեզ համար հաստատ եմ, որ դուք էլ լիքն էք բարութիւնով, լեցուած
ամեն գիտութիւնով, որ կարող էք իրար էլ խրատել: [15]Բայց համարձակեցի, եղբարք, փոքր ի
շատէ գրել ձեզ. իբր թէ ձեզ յիշեցնեմ Աստուածանից ինձ տրուած այն շնորհքի
պատճառովը.[16]Որ ես Յիսուս Քրիստոսի սպասաւորն եմ հեթանոսների մէջ. Աստուծոյ
աւետարանը մատակարարող, որ հեթանոսների պատարագն ընդունելի լինի՝ Սուրբ Հոգովը
սրբուած:[17] Արդ պարծանք ունիմ Քրիստոս Յիսուսին Աստուծոյ առաջին:[18]Որովհետեւ ես չեմ
համարձակիլ մի բան խօսել՝ որը Քրիստոս չգործեց ինձանով՝ հեթանոսները հնազանդեցնելու
համար՝ խօսքով եւ գործքով:[19]Նշանների եւ հրաշքների զօրութիւնով, Աստուծոյ Հոգիի
զօրութիւնով. այնպէս որ ես Երուսաղէմից սկսած պտոյտ տալով մինչեւ Լիւրիկացիների
կողմերը Քրիստոսի աւետարանովը լցրել եմ: [20]Այնպէս ջանք արի աւետարանը քարոզելու, ոչ
թէ որտեղ որ Քրիստոսի անունն անուանուած էր, որ մի գուցէ ուրիշի հիման վերայ շինեմ. այլ
ինչպէս որ գրուած է. [21]Թէ որոնց չէ պատմուած նորա համար՝ կտեսնեն, եւ որոնք որ չեն լսել՝
միտք կանեն:

**NASB (UPDATED) TEXT: 15:14-21**
[14]And concerning you, my brethren, I myself also am convinced that you yourselves are full of goodness, filled with all knowledge and able also to admonish one another. [15]But I have written very boldly to you on some points so as to remind you again, because of the grace that was given me from God,
[16]to be a minister of Christ Jesus to the Gentiles, ministering as a priest of the gospel of God, so that *my* offering of the Gentiles may become acceptable, sanctified by the Holy Spirit. [17]Therefore in Christ Jesus I have found reason for boasting in things pertaining to God. [18]For I will not presume to speak of anything except what Christ has accomplished through me, resulting in the obedience of the Gentiles by word and deed, [19]in the power of signs and wonders, in the power of the Spirit; so that from Jerusalem and round about as far as Illyricum I have fully preached the gospel of Christ. [20]And thus I aspired to preach the gospel, not where Christ was *already* named, so that I would not build on another man’s foundation; [21]but

as it is written, "THEY WHO HAD NO NEWS OF HIM SHALL SEE, AND THEY WHO HAVE NOT HEARD SHALL UNDERSTAND."

**Արևելահայերեն « Եւ ես ինքս էլ, եղբարքս, ձեզ համար հաստատ եմ »**

**Արևմտահայերեն « Ես ինքս ալ հաստատ համոզուած եմ ձեզի համար, իմ եղբայրներս,»**

15:14

NASB "And concerning you, my brethren, I myself also am convinced"
NKJV "Now I myself am confident concerning you, my brethren"
NRSV "I myself feel confident about you, my brothers and sisters"
TEV "My friends: I myself feel sure that you"
JB "It is not because I have any doubts about you, my brothers, on the contrary I am quite certain that you"

Հունարեն լեզվում «ես ինքս»-ը (*auto egō*) շատ ընդգծված է: Պողոսը ճշմարտապես գովում է այս եկեղեցին (համոզված, ՎԱՂԱԿԱՏԱՐ կամ ԿԱՏԱՐՅԱԼ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ):

Պողոսը պնդում է երեք բան այս Հռոմի քրիստոնյաների մասին հ. 14-ում (1) նրանք լի են բարեպաշտությամբ [ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ]; (2) նրանք լի են գիտությամբ [ՎԱՂԱԿԱՏԱՐ կամ ԿԱՏԱՐՅԱԼ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ]; և (3) նրանք ընդունակ են հորդորելու միմյանց [ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ]: Այս համարը նշանակում է, որ Պողոսը նոր պատգամ չի բերել իրենց, այլ բացատրում և հստակեցնում է այն բարի լուրը, որն իրենք արդեն լսել և ընդունել էին (հմմտ. հ. 15):

▣ **«դուք լիքն էք բարութիւնով, լեցուած ամեն. . .»** Ինչպես «Ես ինքս» առաջին արտահայտության մեջ, այնպես էլ «դուք ինքներդ» այստեղ ունի ընդգծված նշանակություն: «Լիքը» տերմինը (*mestos*) նշանակում է «լիքը ինչ որ բանով» կամ «լեցուն, լցված»: Այս տերմինը Պողոսը օգտագործում է ընդամենը երկու անգամ, երկու անգամն էլ Հռոմեացիս թղթում (1:29; 15:14):

«Լցված» (*plēroō*) տերմինը ՎԱՂԱԿԱՏԱՐ կամ ԿԱՏԱՐՅԱԼ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ է: Այս տերմինը Պողոսը հաճախ է օգտագործում Հռոմեացիս թղթում (հմմտ. 1:29; 8:4; 13:8; 15:13,14,19): Նա նաև հաճախ է օգտագործում ԴԵՐԱՆՈՒՆ *plērōma* Հռոմեացիս թղթում (հմմտ. 11:12,25; 13:10; 15:29), բայց երբեք որպես ԱԾԱԿԱՆ չի գործածվում նրա գրվածքներից որևէ մեկում:

Պողոսի փափագն էր, որ ամբողջ Ավետարանը ամբողջությամբ լցնի հավատացյալներին և հորդի նրանցից սեր և ծառայություն: Հիսուս Քրիստոսում հավատացյալներն ունեն այն ամենը, ինչ իրենց պետք է: Նրանց միայն պետք է ընդունել այս ամենը և ունենալ վստահություն:

▣ **«լիքն էք բարութիւնով, լեցուած ամեն գիտութիւնով»** Այս տերմինները հասկանալու համար կա երկու տարբերակ, (1) որ նրանք ըստ կոնտեքստի պատկանում են անմիջականորեն նախորդ գրական բաժնին 14:1-15:13—հավատացյալի սերը միմյանց հանդեպ ցուցաբերում է տարբերությունները քրիստոնյաների միջև անորոշ կամ երկիմաստ աստվածաշնչյան հատվածներում: Սա հաստատում է և «լավ, բարի» բառի գործածությունը ընդհանուր իմաստով 14:16; 15:2 և այստեղ; կամ (2) սա վերաբերում է ամբողջ Ավետարանին, կապված հավատքի և գործնական քրիստոնեական կյանքին, ուղղափառությանը և orthopraxy.

**15:15 «Համարձակեցի, գրել ձեզ»** Պողոսը Հռոմեացիս թուղթը գրել է Կորնթոսից: Այդ եկեղեցում նա ստիպված էր հաղթահարել խմբավորումներից մեկի հարձակումները, որոնք նրան մեղադրում էին այն բանում, որ նա իր գրվածքներում քաջ էր հանդես գալիս, բայց որպես մարդ, անձնական շփման ժամանակ տկար էր: «Քաջաբար» բառի ԲԱՅ-ական ձևը հանդիպում է II Կոր. 10:2,12; 11:21: Պողոսի քաջությունը գալիս էր իր դարձի գալուց, ծառայության կանչից և Ավետարանի իմացությունից:

▣ **«Աստուածանից ինձ տրուած այն շնորհքի պատճառովը»** Պողոսը խոսում է Աստծո շնորհքի մասին (հմմտ. 1:5; 12:3; I Կոր. 3:10; 15:10; Գաղ. 2:9; և Եփ. 3:7-8) որը կանչեց իրեն, փրկեց, պարգևներով օժտեց և իրեն ուղարկեց հեթանոսների մեջ (հմմտ. 11:13; 15:16): Սա միջոց էր իր առաքյալ լինելն ու իշխանությունը հաստատելու համար (հմմտ. 1:1,5):

**15:16 «սպասաւոր. . .մատակարարող. . .պատարագ. . .ընդունելի»** 16 և 17 համարները պարունակում են մի քանի քահանայությանը վերաբերող տերմիններ և արտահայտություններ: «Ծառայություն» բառը այստեղ օգտագործված է որպես քահանայի ծառայություն հ. 27: Այն նաև օգտագործվում է Եբր. 8:2-ում, որտեղ խոսքը գնում է Քրիստոսի ծառայության մասին: Պողոսը իրեն ներկայացնում է որպես քահանա (հմմտ. Փիլ. 2:17) հեթանոսներին բերելով Աստծուն, որը Իսրայելի գործն էր, առաջադրանքը (հմմտ. Ելից. 19:5-6; Ես. 66:20): Եկեղեցուն է տրված եղել այս ավետարանչական առաջադրանքը (հմմտ. Մաթ. 28:18-20; Ղուկ. 24:47): Եկեղեցին կոչվում է հին կտակարանյան քահանայական տերմիններով I Պետ. 2:5,9 և Հայտ. 1:6:

▣ **«Սուրբ Հոգովը սրբուած»** Սա ՎԱՂԱԿԱՏԱՐ կամ ԿԱՏԱՐՅԱԼ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ է, որը նշանակում է «եղել և շարունակում է սրբվել Սուրբ Հոգով»: Եվ նորից սա կարող է արտացոլել այն լարվածությունը, որ կար հրեա և հեթանոս հավատացյալների միջև Հռոմի

եկեղեցում: Պողոսը հստակորեն պնդեց, որ ազգերը (հեթանոսները) ընդունված են եղել և շարունակում են ամբողջությամբ ընդունվել և սրբվել Սուրբ Հոգու կողմից (հմմտ. I Կոր. 6:11):

**15:17-19** Ուշադրություն դարձրեք Եռյակ Աստծո միացյալ գործողությանը; Աստծուն (հմմտ. հ.17); Քրիստոսին (հմմտ. հ. 17) և Սուրբ Հոգու զորությունով (հմմտ. հ. 19): Նկատեք, որ հ. 30-ում երևում են աստվածության երեք Անձերը: Չնայած «Երրորդություն» տերմինը աստվածաշնչյան չէ, բայց գաղափարը աստվածաշնչյան է (հմմտ. Մաթ. 3:16-17; 28:19; Գործք 2:33-34; Հռ. 8:9-10; I Կոր. 12:4-6; II Կոր. 1:21; 13:14; Եփ. 1:3-14; 4:4-6; Տիտոս 3:4-6; I Պետ. 1:2): Տես Հատուկ Թեմա: Երրորդություն 8:11:

**15:18-19** Պողոսը թվարկեց տարբեր կերպեր, թե ինչի շնորհիվ է իր հեթանոսների ծառայությունը եղել արդյունավետ (1) խոսքի; (2) գործի; (3) նշանների; (4) հրաշքների; և (5) ամենը Սուրբ Հոգու զորությունով:

Մի փոքր ծանուցում ձեռագրերի տարբերությունների մասին կապված #5, «Հոգին»; մի քանի հունարեն տեքստերում ավելացված է «Սուրբ Հոգին», իսկ որոշներում «Աստծո Հոգին»: Ելնելով այսպիսի տարաբնույթ տարբերակներից, այս լրացումը գնահատվում է որպես չներշնչված պարզաբանում, որը ոչ մի կերպ չի ազդում տեքստի իմաստի ճշմարտության վրա: Այս ձգտումը բացատրվում է ավելի ուշ դպիրների կողմից, որոնք կրկնօրինակում էին, արտագրում Նոր Կտակարանի տեքստերը, բերելու համար նրանց միակ չափանիշի մտքերի ձևավորման համար:

**15:18 «հեթանոսները հնազանդեցնելու համար»** Աստծո նպատակը միշտ եղել է մարդը, որն արտացոլում է Իր կերպարը: Հիսուս Քրիստոսի Ավետարանը վերականգնում է Աստծո պատկերը, որը կորել էր մեղքի անկման ժամանակ Ծննդ. 3-ում: Խորը և անկեղծ փոխհարաբերությունն Աստծո հետ փաստում է մարդու բարեպաշտ կյանքը: Քրիստոնեության նպատակը՝ Աստծո հետ հաղորդակցությունն է և քրիստոսանմանությունը հիմա:

▣ **«խօսքով եւ գործքով»** Սա վերաբերում է Պողոսի ծառայությանը, և ոչ թե Հռոմի քրիստոնյաների հնազանդությանը: Սա ակնհայտորեն կապված է Հոգու զորության հետ հ. 19-ում:

**15:19 «Նշանների եւ հրաշքների զորութիւնով»** Այս երկու տերմինները շատ անգամ միասին են հանդիպում Գործք Առաքելոց գրքում (հմմտ. 14:8-10; 16:16-18, 25-26; 20:9-12; 28:89), նկարագրելով Աստծո զորությունը, որը գործում է Ավետարանի միջոցով (հմմտ. II Կոր. 12:12): Այդպես է երևում, որ նրանք հոմանիշներ են: Դժվար է ստույգ ասել, թե ինչին են վերաբերում այս խոսքերը՝ հրաշքներին

թե՞ հոգևոր վերստին ծննդյանը: Այստեղ նորից, ակնարկ է Պողոսի առաքյալ լինելու հետ կապված լարվածության մասին: Քանի որ Աստված հաստատեց Տասներկու Առաքյալների ծառայությունը Երուսաղեմում, Նա նաև, տեսանելի նշաններով, հաստատեց Պողոսի ծառայությունը հեթանոսների մեջ:

▣ **«Քրիստոսի աւետարանովը լցրել եմ»** Այստեղ ՎԱՂԱԿԱՏԱՐ կամ ԿԱՏԱՐՅԱԼ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ԻՆՖԻՆԻՏԻՎ *plēroō* (հմմտ. հ. 14): Սա նշանակում է, որ Պողոսը վստահ էր, որ նա կատարեց Ավետարանի քարոզչության իր առաջադրանքը արևելյան Միջերկրականում (հմմտ. հ. 23):

▣ **«մինչեւ Լիւրիկացիների կողմերը»** Հռոմեական այս նահանգը, նաև հայտնի որպես Դալմատիա, տեղակայված էր Ադրիատիկ ծովի արևելյան ափին, հունական թերակղզուց հյուսիս արևմուտք (Մակեդոնիա): Գործք Առաքելոց գրքում չի գրված, որ Պողոսը քարոզեց իրենց, բայց նա հաստատ եղել է մոտակայքում (հմմտ. 20:1-2): «Մինչև» բառը կարող էր նշանակել «սահմանին» կամ «շրջանում»:

**15:20 «Այնպէս ջանք արի աւետարանը քարոզելու, ոչ թէ որտեղ որ Քրիստոսի անունն անուանուած էր»** Սա Պողոսի կայուն միսիոներության ռազմավարությունն էր (հմմտ. I Կոր. 3:10; II Կոր. 10:15-16). Նա ուզում էր հասնել հեթանոսներին, ովքեր երբեք առիթ չեն ունեցել լսելու և ընդունելու Ավետարանը: Նա սովորաբար ընտրում էր մեծ քաղաքներ՝ տեղակայված ռազմավարորեն կարևոր տեղերում հռոմեական կայսրության մեջ, որպեսզի հիմնված եկեղեցիները կարողանային ավետարանել և աշակերտել իրենց շրջաններում:

**15:21** Սա մեջբերում է Ես. 52:15 Սեպտուագինտից (LXX), որտեղ ասվում է, որ հեթանոսները կլսեն Աստծո մասին: Պողոսն ընտրեց այս մարգարեությունը, որպես ռազմավարություն իր միսիոներության համար:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 15:22-29**
[22] Սորա համար էլ շատ անգամ արգիլուեցայ ձեզ մօտ գալուց: [23]Բայց հիմա որ այս կողմերումն այլ եւս տեղ չունիմ, եւ շատ տարուց հետէ խիստ փափաք ունիմ ձեզ մօտ գալու, [24] Երբ որ անցկենամ Սպանիա, կգամ ձեզ մօտ. յոյս ունիմ որ անցկենալու ժամանակս տեսնեմ ձեզ. եւ ձեզանից ճանապարհ գցուիմ այնտեղ, եթէ առաջ մի քիչ ձեզանով լիանամ: [25]Բայց հիմա Երուսաղէմ եմ գնում սուրբերին ծառայութիւն անելու: [26]Որովհետեւ Մակեդոնացիք եւ Աքայեցիք հաճեցան մի հաղորդութիւն անել աղքատ սրբերին որ Երուսաղէմումն են: [27]Հաճեցան, նոյն իսկ պարտական էլ են նորանց. որովհետեւ եթէ հեթանոսները նորանց հոգեւոր բարիքներին մասնակից եղան, պէտք է՝ որ մարմնական բաներում էլ ծառայեն նորանց: [28] Արդ այս որ կատարեմ եւ նորանց պտուղն իր տեղը հասցնեմ, կանցնեմ Սպանիա ձեր միջովը: [29]Եւ գիտեմ որ երբոր ձեզ մօտ գամ, Քրիստոսի աւետարանի առատ օրհնութիւնովը կգամ:

NASB (UPDATED) TEXT: 15:22-29

[22]For this reason I have often been prevented from coming to you; [23]but now, with no further place for me in these regions, and since I have had for many years a longing to come to you [24]whenever I go to Spain— for I hope to see you in passing, and to be helped on my way there by you, when I have first enjoyed your company for a while—[25]but now, I am going to Jerusalem serving the saints. [26]For Macedonia and Achaia have been pleased to make a contribution for the poor among the saints in Jerusalem. [27]Yes, they were pleased *to do so*, and they are indebted to them. For if the Gentiles have shared in their spiritual things, they are indebted to minister to them also in material things. [28]Therefore, when I have finished this, and have put my seal on this fruit of theirs, I will go on by way of you to Spain. [29]I know that when I come to you, I will come in the fullness of the blessing of Christ.

**15:22 «Սորա համար էլ»** Այս պատճառը բացատրվում է հ. 20-ում:

▣ **«շատ անգամ արգիլուեցայ»** Այստեղ ԱՆԿԱՏԱՐ ԺԱՄԱՆԱԿ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ-ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ է: Ամեն անգամ նա արգելք ուներ (հմմտ. 1:13): Այդ արգելքների աղբյուրների մասին չի խոսվում ոչ մի տեղ: Բայց դա կարող էր լինել Աստված, սատանան, չար մարդիկ կամ նոր հնարավորություններ ավետարանելու համար:

Հիշեք, որ Պողոսը գրել է Հռոմեացիս թուղթը Կորնթոսից: Այնտեղ Պողոսը հանդիպեց հակառակորդների այնպիսի հարձակման, որ նույնիսկ չկարողացավ իրականացնել իր ճամփորդության ծրագրերը: Առանց որևէ կասկածանքի, այդ հարձակումները, որոնք շատ լուրջ ազդեցին Պողոսի վրա հենց Կորնթոսի եկեղեցուց էին: Հնարավոր է, որ նշել է այն մասին, որ իր ճամփորդության ծրագիրը ամեն անգամ խափանվում էր:

**15:23 «Բայց հիմա որ այս կողմերումն այլ եւս տեղ չունիմ»** Այս համարի իմաստն անհրաժեշտ է հասկանալ տարածքի շրջանակներում, աշխարհագրականորեն սամանափակ շրջաններում Փոքր Ասիայում կամ Արրեւյան Միջերկրականի տարածքում: Սա չի նշանակում է, որ Պողոսը քարոզեց Ավետարանը ամենուր և ամենքին այս վայրերում, բայց միայն ոմանց:

▣ **«եւ շատ տարուց հետէ խիստ փափաք ունիմ ձեզ մօտ գալու»** Պողոսը հաճախ արտահայտել էր Հռոմ այցելելու իր փափագը (հմմտ. 1:10-15; Գործք 19:21; 23:11):

Կա հունարեն ձեռագրի տարբերակ այս տեքստի վերաբերյալ, որը նշված չի UBS[4] թարգմանության տողատակի ծանոթագրության մեջ: Հին հունարեն ձեռագրերում MSS P[46], ℵ, A, D,

F, G և L կա «շատ» (*polus*) բառը, որն օգտագործված է  հ. 22-ում, իսկ MSS B, C և P ձեռագրերում «մի քանի» բառը (*ikanos*): Շատ հնարավոր է, որ ավելի ուշ դպիրները, արտագրողները մտահոգված էին Պողոսի  չափազանցնելուց:

**15:24 «Երբ որ անցկենամ Սպանիա»** Պողոսն ուզում էր գնալ Հռոմեական կայսրության արևմտյան շրջանը (հմմտ. II Կոր. 10:16): Նա ազատվել էր Հռոմի բանտարկությունից Գործք Առաքելոց գրքի վերջում և գնաց իր չորրորդ միսիոներական ճամփորդությանը: Հովվական թղթերը  (I Տիմ., II Տիմ., և Տիտոս) գրվել են այս չորրորդ ճամփորդության ժամանակ: Հավանական է II Տիմ. 4:10-ում կա ակնարկ սրա վերաբերյալ, որտեղ մի շարք հունարեն երկաթագիր ձեռագրերում  א, C և լատիներեն Վուլգատում և Ղպտի թարգմանություններում կա «Գալեր» բառը: Կլեմենտ հռոմեացին, որը գրեց առաջին դարի վերջում, իր «Կորնթացիներին ուղղված նամակում» 5:7-ում նաև պնդում է, որ Պողոսը ճամփորդեց «Արևմուտքի սահմանները»:

▣ **«եւ ձեզանից ճանապարհ գցուիմ այնտեղ,»** Այս արտահայտությունը վաղ եկեղեցում իրենից ներկայացնում էր իդիոմատիկ արտահայտություն, որի իմաստն էր օգնել ճամփորդող միսիոներին հասնել հաջորդ վայրին իր ավետարանչական գործունեության ընթացքում (հմմտ. Գործք 15:3; I Կոր. 16:6, 11; II Կոր. 1:16; Տիտոս 3:13;  III Հովհ. 6):  Հռոմի եկեղեցին չէր կարող Երուսաղեմի եկեղեցում ֆոնդին ներդրում ունենալ, բայց նա կարող էր ֆինանսական օգնություն ցույց տալ Պողոսի միսիոներական ճամփորդությանը դեպի արևմուտք:

**15:25 «սուրբերին ծառայութիւն անելու»** Այս արտահայտությունը հաճախ օգտագործվում էր գումար հավաքելու համար (հմմտ. հ. 31; I Կոր. 16:15; II Կոր. 8:4; 9:1): Տես Հատուկ Թեմա: Սուրբեր 1:7

**15:26 «մի հաղորդութիւ անել աղքատ սրբերին որ Երուսաղէմումն են»** Պողոսը ստանում էր այս հանգանակությունը, դրամական օգնությունը (տես Հատուկ Թեմա: *Koinōnia* 12:13) մի քանի տարի շարունակ (1) Գաղատիայից և Փոքր Ասիայից (հմմտ. I Կոր. 16:1-4), և (2) Մակեդոնիայից ու Աքայիայից (հմմտ. II Կոր. 8-9): Նրա մոտ արդ գաղափարը  ծագեց Անտիոքի եկեղեցուց  (հմմտ. Գործք 11:30; 12:25):  Ենթադրվում էր, որ դա կօգնի միավորել վաղ եկեղեցու երկու թևերը՝ նախկին հրեաներին և հեթանոսներին: Նախկին հեթանոսներից բաղկացած եկեղեցիները «ուրախ էին» դա անելու  (հմմտ. հհ. 26 և 27):  Ստորև տես հատուկ թեմա.

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՔՐԻՍՏՈՆՅԱՆ և ՍՈՎԱԾԸ**

I. Ներածություն

Ա.  Սովը մարդկության և արարչագործության մեղավոր վիճակի հիշեցումն է:

Բ. Սովը չարի և տառապանքի խնդրի ասպեկտներից մեկն է: Սա մարդուն բնորոշ հատկանիշ է, և ոչ թե Աստծո: Չնայած Աստված օգտագործեց գյուղատնտեսական օրհնությունները կամ անեծքները՝ որպես Իր ուխտի ժողովրդին վարձատրելու և պատժելու մի ձև (2 Օրին. 27-28), սա հիմնականում չէր տարածվում անհավատների վրա (Մաթ. 5:45): Սովը ևս մեկ օրինակ է ագահության, եսասիրության և նյութապաշտության: սովի խնդիրը միայն ուտելիքի պակասը չէ, այլ մարդու դրդապատճառը և նախապատվությունները:

Գ. Սովը նաև միջոց է փրկված մարդու համար ցուցաբերելու Աստծո սերը ուրիշների հանդեպ: Հավատացյալների արձագանքները ֆիզիկական կարիքի դեմ, եկեղեցում և շրջապատող միջավայրում, ցույց է տալիս մեր իրական էությունը, թե ով ենք մենք:

II. Աստվածաշնչյան նյութ

Ա. Հին Կտակարան

1. Մովսես

ա. Հին Իսրայելում երեք տասանորդներից մեկը աղքատի համար էր նշանակված (2 Օրին. 14:28-29)

բ. Օրենքը նախատեսում էր հատուկ ապահովվում սննդի տեսքով աղքատների համար (Ելից 23:11; Ղև. 19:10; 23:22; 2 Օրին. 24:19-22)

գ. Օրենքը նախատեսում էր հատուկ, ոչ թանկարժեք զոհաբերություն աղքատների համար (Ղև. 14:21)

դ. Իսրայելը պետք է կարեկից լիներ և առատաձեռնություն ցուցաբերեր աղքատի և կարիքավորի հանդեպ (2 Օրին. 15:7-11, հմմտ. Հոբ 29:16; 30:25; 31:16-23)

2. Իմաստուն Գրականություն

ա. Կային հատուկ օրհնություններն նրանց համար, ովքեր օգնում էին աղքատներին (Սաղ. 41:1)

բ. Օգնել աղքատին նշանակում էր օգնել Աստծուն (Առ. 14:31; 17:5; 19:17)

3. Մարգարեություններ

ա. Աստված պահանջում էր երկրպագություն Իրեն սոցիալական արդարության և կարիքավորների հանդեպ ունեցած գթածության ձևով (Ես. 58:6-7; Միք. 6:8)

բ. Աստծո պատգամներից մեկն այն էր, որ հռչակում էր աղքատների և կարիքավորների պետքերը (Ես. 61:1-2)

գ. Աստծո մարգարեները խոսեցին ամեն տեսակ սոցիալական շահագործման դեմ (Ամովս 2:6-8; 5:10-13; Միքիա)

Բ. Նոր Կտակարան

1. Ավետարաններ

ա. Նոր Կտակարանը պնդում է աղքատներին օգնելը (Մարկ. 10:21; Ղուկ. 3:11)

բ. Դատաստանը հիմնված է մեր Հիսուսի անունով ուրիշների հանդեպ ունեցած մեր սիրո վրա: Փաստորեն օգնել ուրիշներին նշանակում է օգնել Հիսուսին (Մաթ. 25:31-46):

գ. Մարկոս 14:7 սխալ է հասկացվել, եթե ասում են որ իբր Հիսուսը քիչ է մտահոգվել աղքատների համար: Այս համարի իմաստը Նրա եզակիությունը ընդգծելն է և ոչ թե աղքատներին նվաստացնելը:

դ. Եսայա 61:1-2 ասում է այն մասին, որ Աստծո պատգամը ուղղված է այն մարդկանց, որոնք հասարակության կողմից մերժված և նվաստացած էին (Ղուկ. 4:18; 7:22; 14:21):

2. Պողոս

ա. Սիրիայի Անտիոքի եկեղեցու օրինակով Պողոսի մոտ ձևավորվեց մի գաղափար սիրո արտահայտում միմյանց հանդեպ աղքատների համար արված հատուկ հանգանակության շնորհիվ, ինչպես արվեց Երուսաղեմի եկեղեցու համար (Հռ. 15:26; I Կոր. 16:1; II Կոր. 8:4,6,19; Գաղ. 2):

բ. Պողոսը շեշտը դնում է շնորհքի, հավատքի և գործերի վրա (Եփ. 2:8-10):

3. Հակոբոս (Նոր Կտակարանի Իմաստուն Գրականություն)

ա. Հավատք առ Աստված, Քրիստոսի միջոցով առանց հոգատարություն ցուցաբերելու սոցիալապես կարիքավորների հանդեպ, դա հիվանդ է (Հակոբոս 2:14-17):

բ. Նա նույնիսկ ասում է, որ հավատքն առանց գործերի մեռած է:

4. Հովհաննես

ա. I Հովհաննու գիրքը պնդում է, որ քրիստոնյայի փրկության վստահությունը հիմնված է փոխված կյանքով՝ հավատքի և ծառայության (I Հովհ. 3:17-18):

III. Ամփոփում

Ա. Մարդկային տառապանքն ու կարիքը մարդու մեղքի պատճառով է: Սովն ունի մի քանի պատճառներ.

1. հիմար արարք (Առ. 19:15)
2. Աստծո պատիժը (2 Օրին. 27-28)
3. կապված հոգևոր ծառայության հետ (II Կոր. 11:27)
4. մշակույթային հանգամանքներ (ագահություն, հասկացողություն և ըմբռնում, մոտեցում, և այլն)
5. նյութական հանգամանքներ (սով, ջրհեղեղներ, կարկուտ, և այլն)

Բ. Իրականում Աստված հոգ է տանում մարդու մասին: Նա հատկապես սիրում է նրանց, ովքեր կարիքի մեջ են:

Գ. Գործուն եկեղեցին դա Աստծո պատասխանն է մարդու կարիքի դեմ (նյութական և հոգևոր)

1. ուղիղ, անձնական գործողությունը յուրաքանչյուր քրիստոնյայի
2. համագործակցող, միասնական եկեղեցու գործողությունը
3. քաղաքական տեսանկյունից, եկեղեցին դա կազմակերպություն է՝ փոփոխություններ իրականացնելու համար

Դ. Մենք պետք է քննադատորեն գնահատենք մեր մշակույթն ու անձնական նախապատվությունները Սուրբ Գրքի լույսի ներքո (II Կոր. 8-9):

Ե. Մենք պետք է բացենք մեր աչքերը, սրտերն ու ձեռքերը մարդկանց կարիքների առաջ հայրենիքում և մեր սահմաններից դուրս, եկեղեցում և աշխարհում:

Զ. Մեր օգնությունը պետք է հիմնված լինի այն հասկացողության վրա, թե ով ենք մենք Քրիստոսով, Իր Մեծ Պատվիրանի լույսի ներքո (Մաթ. 28:18-20): Օգնությունը պետք է լինի նյութական և հոգևոր:

**15:27 «եթէ»** Սա ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳ ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆ, որը ճշմարտություն է ձևացնում հեղինակի տեսանկյունից կամ իր գրական նպատակի համար: Եթե հեթանոսները կիսում են հրեաների հոգևոր օրհնությունները (հմմտ. Հռ. 10-11), ապա նրանք պետք է Երուսաղեմի մայր եկեղեցուն ցուցաբերեն նյութական աջակցություն:

15:28

**Արևելահայերեն «Արդ այս որ կատարեմ եւ նորանց պտուղն իր տեղը հասցնեմ,»**

**Արևմտահայերեն «Ուրեմն ասիկա կատարելով ու կնքելով անոնց այս պտուղը՝ ձեզմէ»**

| | |
|---|---|
| **NASB** | **"when I have furnished this, and have put my seal on this fruit of theirs"** |
| **NKJV** | **"when I have performed this and have sealed to them this fruit"** |
| **NRSV** | **"when I have completed this, and have delivered to them what has been collected"** |
| **TEV** | **"when I have finished this task and have turned over to them all the money that has been raised for them"** |
| **JB** | **"So when I have done this and officially handed over what has been raised"** |

Սա ԱՈՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ և ԱՈՐԻՍՏ ԺԱՄԱՆԱԿ ՉԵԶՈՔ ՍԵՌ ԴԵՐԲԱՅ է: Սա գրականորեն ընդունված ձև էր կնքելու տոպրակը, դրա պարունակության ապահովվության համար: Պողոսի համար, հավանական է, հաստատելու, պնդելու միջոց էր, որ իրեն տրված միջոցները կհասնեն և կտրվեն հասցեատերերին: Անկասկած երաշխիքի համար նա իր հետ վերցրեց մի քանի ներկայացուցիչներ՝ հանգանակություն արարծ եկեղեցիներից (հմմտ. Գործք 20:4):

«Կնիք» բառի հետ կապված տես հատուկ թեմա 4:11.

**15:29** Ուշադրություն դարձրեք, որ այստեղ կրկին օգտագործված է *plērōō* / *plērōma* բառը: Տես բացատրությունը հ. 14-ում:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 15:30-33**
[30] Եւ աղաչում եմ ձեզ, եղբարք, մեր Տէր Յիսուս Քրիստոսի ձեռովը եւ Հոգու սիրովը, որ ինձ պատերազմակից լինիք՝ ինձ համար աղօթքներ անելով դէպի Աստուած. [31] Որ ազատուիմ այն անհնազանդներիցը որ Հրէաստանումն են. եւ իմ ծառայութիւնը որ Երուսաղէմումն անելու եմ՝ սուրբերին ընդունելի լինի. [32]Որ ուրախութիւնով ձեզ մօտ գամ Աստուծոյ կամքովը, եւ ձեզ հետ հանգիստ առնեմ: [33]Եւ խաղաղութեան Աստուածը ձեր ամենի հետ լինի. ամէն:

**NASB (UPDATED) TEXT: 15:30-33**
**[30]Now I urge you, brethren, by our Lord Jesus Christ and by the love of the Spirit, to strive together with me in your prayers to God for me, [31]that I may be rescued from those who are disobedient in Judea, and *that* my service for Jerusalem may prove acceptable to the saints; [32]so that I may come to you in joy by the will of God and find *refreshing* rest in your company. [33]Now the God of peace be with you all. Amen.**

**15:30 «Եւ աղաչում եմ ձեզ. . . ինձ պատերազմակից լինիք»** Սրանք ուժեղ հունարեն տերմիններ են: Առաջինը նաև օգտագործված է 12:1-ում: Երկրորդը օգտագործված է, երբ Հիսուս պայքարում էր Գեթսեմանի այգում: Պողոսը զգում էր աղոթքի խիստ կարիք իր և իր ավետարանի ծառայության համար (հմմտ. II Կոր. 1:11; Եփ. 6:18-20; Կող. 4:3; I Թես. 5:25; II Թես. 3:1): Երուսաղեմի իր փորձառությունը շատ ծանր էր (հմմտ. հ. 31): Նա ժամանեց Հռոմ, բայց ոչ իր ծրագրած ձևով: Տես Հատուկ Թեմա: Բարեխոսական աղոթք 9:3:

**15:30-33** Պողոսի աղոթքը արտահայտում է 3 ցանկություն; (1) որ նա կարողանար ազատվել իր թշնամիներից Հուդայում (հմմտ. Գործք 20:22-23); (2) որ հեթանոս եկեղեցիների կողմիցարված հանգանակությունը լավ ընդունվեր Երուսաղեմի եկեղեցու կողմից (հմմտ. Գործք 15:1; 21:17); և (3) որ նա կարողանար այցելել Հռոմ իսպանիա գնալու ճանապարհին:

**15:30 « ինձ պատերազմակից լինիք»** Նոր Կտակարանում այս տերմինը օգտագործվում է միայն այստեղ: Այս բարդ բառը կազմված է *sun* (դրա հետ միասին) և *agōnizomai* (կռվել, պայքարել, ջանք գործադրել, հակառակ կենալ, հմմտ. I Կոր. 9:25; Կող. 1:29; 4:12; I Տիմ. 4:10; 6:12): Այս ուժեղ բայ ԻՆՖԻՆԻՏԻՎԸ կոչ է անում հռոմեական եկեղեցուն ակտիվ աղոթքի Պողոսի հետ միասին Երուսաղեմի մայր եկեղեցուն ընդունելու համար նախկին հեթանոսների կողմից արված հանգանակության համար:

**15:31 «այն անհնազանդներից»** Սա վերաբերում է կամ հրեա ընդդիմությանը կամ էլ հավանական է հուդայականներին, բայց ոչ եկեղեցուն ընդհանրապես (հմմտ. 11:30,31):

**15:32** Պողոսի աղոթքն ավարտվում է ևս երկու խնդրանքով; (1) որ նա կարողանար իրենց մոտ գալ ուրախությունով և (2) նրանց հետ հանգիստ վայելել (ԱՕՐԻՍՏ ՉԵԶՈՔ ՍԵՌ [deponent[ ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ *sunanapauomai* բայի, միայն այստեղ Նոր Կտակարանում, բայց հանդիպում է Ես. 11:6: Պողոսը մեջբերում է Ես.11:1,10 հ. 12-ում): Պողոսը կարիք ուներ հանգստի և ուժերի վերականգնման՝ հասուն հավատացյալների մեջ լինելով (հմմտ. II Կոր. 4:7-12; 6:3-10; 11:23-33)! Ինչևէ, նրա մոտ դա չհաջողվեց: Պաղեստինում նրան սպասվում էր բանտարկություն, փորձություններ և տարիներով կալանք:

**15:33 «խաղաղութեան Աստուածը»** Սա հիասքանչ տիտղոս է Աստծո համար (հմմտ. 6:20; II Կոր. 13:11; Փիլ. 4:9; I Թես. 5:23; II Թես. 3:16; Եբ. 13:20):

- **«Ամեն»** Տես հատուկ թեմա 1:25-ում:

## ՀԱՐՑԵՐ ՔՆՆԱՐԿՄԱՆ ՀԱՄԱՐ

Սա սերտողության համար ուղեցույց հանդիսացող մեկնաբանություն է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են, որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ:

1. Ինչու՞ է Հին Կտակարնը արժեքավոր Նոր Կտակարանի հավատացյալների համար (հհ. 4-5; I Կոր. 10:6,11)
2. Ինչու՞ է Պողոսը մեջբերում Հին Կտակարնը հհ. 9-12: Ի՞նչ մեծ ճշմարտություն է այն մեզ սովորեցնում:
3. Հռոմեացիս թղթի այս բաժնում որտե՞ղ է հավանաբար երևում լարվածությունը հրեաների և հեթանոսների միջև:
4. Հռոմեացիս թղթի այս բաժնում որտե՞ղ է երևում լարվածությունը կապված Պողոսի Առաքյալ լինելու հետ:
5. Ինչպիսի՞ն էին Պողոսի սեփական դրդապատճառները, կապված հեթանոս եկեղեցիների զոհաբերությունների հետ Երուսաղեմի եկեղեցու համար (հհ. 15-28):
6. Ո՞րն էր Պողոսի միսիոներական ռազմավարությունը: Ինչու՞ նա ցանկացավ գնալ Իսպանիա:
7. Ինչպե՞ս և ինչու՞ է Պողոսը նկարագրում իր գործը որպես քահանա (հ.16) կապված Իսրայելի հետ, որպես քահանաների թագավորություն (Ելից 19:5-6) կամ եկեղեցու (I. Պետ. 2: 5,9; Հայտ. 1:6)
8. Աստված պատասխանե՞ց Պողոսի աղոթքին 30-33հ-ում:

# ԹՈՒՂԹ ՈՒՂՂՎԱԾ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

## ԳԼՈՒԽ 16

| ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ | | | | |
|---|---|---|---|---|
| UBS[4] | NKJV | NRSV | TEV | JB |
| Անձնական ողջույններ | Փիբէ քրոջ հանձնարարականը | Ողջույններ | Անձնական ողջույններ | Ողջույններ և բարի ցանկություններ |
| 16:1-2 | 16:1-2 | 16:1-2 | 16:1-2 | 16:1-2 |
| | Ողջույն Հռոմի Սուրբերին | | | |
| 16:3-16 | 16:3-16 | 16:3-16 | 16:3-5ա | 16:3-5ա |
| | | | 16:5բ-7 | 16:5բ-16 |
| | | | 16:8-11 | |
| | | | 16:12-15 | |
| | | | 16:16 | |
| | Զգուշացեք խռովություն գցողներից | | Վերջին հրահանգներ | Զգուշացում և առաջին ետգրությունը |
| 16:17-20 | 16:17-20 | 16:17-20 | 16:17-20ա | 16:17-20 |
| | | | 16:20բ-21 | |
| | Ողջույններ Պողոսի ընկերներց | | | Վերջին ողջյունները և երկրորդ ետգրությունը |
| 16:21-23 | 16:21-24 | 16:21 | | 16:21-23 |
| | | 16:22 | 16:22 | |
| | | 16:23 | 16:23 | |
| Օրհներգություն | Օրհնություն | | Ամփոփիչ փառաբանության աղոթք | Օրհներգություն |
| 16:25-27 | 16:25-27 | 16:25-27 | 16:25-26 | 16:25-27 |
| | | | 16:27 | |

**ԸԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ** (տես էջ **vii**)

*Հետևել բուն հեղինակի մտադրությանը պարբերությունների մակարդակով*

Սա սերտողության մեկնաբանության ուղեցույց է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո իսկ մեկնաբանության համար: Մեզանից ամեն մեկը պետք է քայլի իր ունեցած լույսի ներքո: Մեկնաբանության մեջ դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը համարվում: Դու չպետք է սա թողնես մեկնաբանի վրա:

Ճանաչիր թեմաները: Համեմատիր քո թեմայի բաժանումները վերը նշված 5 թարգմանությունների հետ: Բաժանումները ներշնչված չեն, բայց դա բանալի է հետևելու բուն հեղինակի մտադրությանը, որը մեկնաբանության սիրտն է: Յուրաքանչյուր պարագրաֆ ունի մեկ և միայն մեկ թեմա:

Մեկ շնչով կարդացեք այս գլուխը: Ուրվագծեք հիմնական թեմաներն ու թեման արտահայտեք մեկ նախադասությամբ:

1. Առաջին պարբերություն
2. Երկրորդ պարբերություն
3. Երրորդ պարբերություն
4. և այլն

**ԿՈՐՏԵՔՍՏԱՅԻՆ ՆԵՐԸՄԲՌՆՈՒՄՆԵՐ 1-27հհ.**

Ա. Ուշադրություն դարձրեք, որ այս վերջին գլխում հիշատակված այս բոլոր կանայք Ավետարանի տարածման գործում Պողոսի գործընկերներն են եղել (հմմտ. Փիլ. 4:3): Փիբեն 1հ-ում; Պրիսկիղան 3հ-ում; Մարիամը 6հ-ում; Յունիան (եթե Յունիոս է- ուրեմն տղամարդ է) 7հ-ում; Տրիփանոսը և Տրիփոսը 12հ-ում; Պերսիդեն 12հ-ում; «նրա մայրը» 13հ-ում; Յուլիան 15հ-ում; և «նրա քույրը» 15հ-ում: Զգուշացեք այս տեքստերի հիման վրա դոգմատիկ ենթադրություններ անել կապված կանանց ծառայության հետ: Բոլոր հավատացյալներն օժտված են պարգևներով (հմմտ. I Կոր. 12:7,11), ակտիվ ծառայողներ են (հմմտ. Եփ. 4:12): Աստվածաշունչը հաստատում է տղամարդու գլխավորությունը որպես Աստծո կամք: Այս ցուցակում մենք ունենք կին սարկավագ, Փիբե, և հավանական կին առաքյալ, Յունիան (հմմտ. Հովել 2:28; Գործք 2:16-21): Դժվար է իմանալ, թե ինչպես մեկնաբանել այս հարցը աստվածաշնչորեն, ըստ երևույթին Պողոսի տարօրինակ մտքերի պատճառով, ինչպիսին է I Կոր. 11:4-5 համեմատած 14:34:

Բ. Ուշադրություն դարձրեք այս անունների հնարավոր ռասայական առանձնահատկություններին
   1. հավատացյալ հրեաներ: Ակիւղաս, Պրիսկիղա, Անդրոնիկոս, Յունիա, Մարիամ
   2. Հռոմեական ազնվական ընտանիքի անուններ: Պրիսկիղա, Ամպղիաս, Ապեղես, Նարկիսէ, Յուլիա, Փիղողոգ;
   3. Հրեական ազնվական ընտանիքի անուններ: Արիստոբուղոս, Հերովդիոն.

Գ. 1-16 համարները Պողոսի անձնական ողջույններն են, իսկ 17-20 համարները վերջին զգուշացումներն են կեղծ վարդապետների դեմ: 21-23 համարներում միսիոներական թիմը ողջույններ է ուղարկում Կորնթոսից:

Դ. 16-րդ գլխի քննարկումը Ֆ. Ֆ. Բրյուսի *«Նոր Կտակարանի Թայնդելի Մեկնաբանության»* (*Tyndale New Testament Commentary* by F. F. Bruce) գրքի մեջ շատ օգտակար է: Եթե հետաքրքրված եք անունները մանրամասն սերտելով, որոնք գտնվում են այս գլխում, կարդացեք 266-284էջ:

Ե. Որոշ կասկած կա այն մասին, թե որտեղ է նամակն ավարտվում: Ավարտուն միտք է հանդիպում 14, 15 գլուխների վերջում (ձեռագիր $P^{46}$) և 16, հին հունական ձեռագրերում: Ինչևէ, ավանդական ավարտուն միտքը 16:25-27 հայտնվում է $P^{61}$, ℵ, B, C և D ձեռագրերում, ինչպես նաև հունական տեքստում գործածված Կլեմետ Հռոմեացու կողմից (A.D. 95):

Վաղ հունական ձեռագրերում $P^{46}$, $P^{61}$, ℵ , A, B, C, 24 համարը բացակայում է, ոչ էլ լատինական Վուլգատում կամ էլ հունարեն տեքստում, որի հետ աշխատում էր Օրիգեն Ալեքսանդրիացին: Տարբերակների ամբողջական քննարկումը կգտնեք Բրյուս Մ. Մեցգեր, *«Հուներեն Նոր Կտակարանի Տեքստային Մեկնաբանություն»* (*A Textual Commentary on the Greek New Testament*, էջ 533-536):

**ԲԱՌԻ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅԱՆ ՍԵՐՏՈՂՈՒԹՅՈՒՆ**

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 16:1-2**
1 Յանձնում եմ ձեզ մեր Փիբէ քոյրը, որ սպասաւոր է Կենքրայի եկեղեցու: 2 Որ նորան ընդունէք Տէրով. ինչպէս սուրբերին արժան է. եւ հոգ տանիք նորան ինչ բան որ ձեզանից պէտք ունենայ, որովհետեւ ինքն էլ շատերին խնամք է տարել, եւ իսկ ինձ էլ:

**NASB (UPDATED) TEXT: 16:1-2**
**1 I commend to you our sister Phoebe, who is a servant of the church which is at Cenchrea; 2 that you receive her in the Lord in a manner worthy of the saints, and that you help her in whatever matter she may have need of you; for she herself has also been a helper of many, and of myself as well.**

**16:1 «Յանձնում եմ ձեզ»** Սա հանձնարարական նամակ է Փիբե սարկավագուհու համար: Հավանական է, որ հենց նա է տարել Պողոսի նամակը Հռոմ: Նոր Կտակարանում կան հանձնարարական նամակների մի քանի ուրիշ օրինակներ (հմմտ. Գործք 18:27; I Կոր. 16:3; II Կոր. 3:1; 8:18-24; և Փիլ. 2:19-30):

▣ **«Փիբէ»** Նրա անունը նշանակում է «պայծառ» կամ «փայլուն»:

**Արևելահայերեն «որ սպասաւոր է եկեղեցու»**
**Արևմտահայերեն «որ եկեղեցիին սպասաւորն է»**

▣

| | |
|---|---|
| **NASB, NKJV** | **“who is a servant of the church”** |
| **NRSV** | **“a deacon of the church”** |
| **TEV** | **“who serves the church”** |
| **JB** | **“a deaconess of the church”** |

Սա *diakonos* տերմինն է: Սա ՀԱՅՑԱԿԱՆ ՀՈԼՈՎ ԵԶԱԿԻ ԹԻՎ ԻԳԱԿԱՆ ՍԵՌ ձև է: Հունարեն լեզվում նշանակում է ծառայող, Այս բառն օգտագործվում է Քրիստոսի հետ կապված 15:8 և Պողոսի Եփ. 3:7; Կող. 1:23,25:

Կա ապացույց թե Նոր Կտակարանում և թե վաղ հետ-աստվածաշնչյան եկեղեցական գրվածքներում սարկավագուհիների ծառայության մասին: Մեկ ուրիշ օրինակ կանանց ծառայությունը տեղական եկեղեցում Նոր Կտակարանում հովիվների «որբևայրիների դերը» (հմմտ. I Տիմ. 3:11; 5:3-16): RSV, Ընդլայնված և Ֆիլլիպս թարգմանություններում 16:1 կա «սարկավագուհի» բառը: NASB և NIV այսպիսի թարգմանություն ունեն տողատակի ծանուցման մեջ: NEB ունի «նա ով պաշտոն է զբաղեցնում»: Բոլոր հավատացյալները կանչված են, պարգևներով օժտված, զբաղված ծառայողներ են (հմմտ. Եփ. 4:12): Ոմանք կանչված են առաջնորդության ծառայության համար: Մեր ավանդույթները պետք է զիջեն Սուրբ Գրքին! Այս վաղ շրջանի սարկավագներն ու սարկավագուհիները ծառաներ էին և ոչ թե գործադիր/ղեկավար խորհրդի անդամներ:

Մ. Ռ. Վինսենթ, *Բառային Ուսումնասիրություններ,* հատոր 2, 752 և 1196 էջեր, ասում է, որ *Առաքելական Սահմանադրությունները,* տարեգրված 2-րդ դարի վերջերից կամ 3-րդ դարի սկզբերում, տալիս է տարբերությունը կին եկեղեցական ծառայողների պարտականությունների կամ ձեռնադրության միջև:

1. սարկավագուհիներ
2. որբևայրիներ (հմմտ. I Տիմ. 3:11; 5:9-10)

3. կույսեր (հմմտ. Գործք 21:9 և հավանականորեն I Կոր. 7:34)

Այս պարտականությունները ներգրավում էին:

1. խնամել հիվանդներին
2. խնամել նրանց, ովքեր հալածվում են ֆիզիկապես
3. այցելել նրանց, ովքեր հավատքի պատճառով բանտում են գտնվում
4. ուսուցանել նորադարձներին
5. մասնակցել կանանց մկրտությանը
6. որոշ եկեղեցու անդամ կին վերակացուներ

▣ **«եկեղեցի»**

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԵԿԵՂԵՑԻ (*EKKLESIA*)**

Այս հունարեն տերմինը, *ekklesia*, երկու բառերից է կազմված, «դուրս» և «կանչված» ուստի, տերմինը նշանակում է աստվածային կերպով կանչված մարդիկ: Վաղ եկեղեցին վերցրեց այս բառը աշխարհիկ իմաստով (հմմտ. Գործք 19:32,39,41) և որովհետև Սեպտուագինդումը օգտագործում է սա Իսրայելի «համայնք/ժողովուրդ» համար (հմմտ. Թվոց. 16:3; 20:4): Նրանք օգտագործեցին դա իրենց համար, որպես Հին Կտակարանի Աստծո ժողովուրդ: Նրանք նոր Իսրայելն էին (հմմտ. Հռ. 2:28-29; Գաղ. 6:16; I Պետ. 2:5,9; Հայտ. 1:6), Աստծո համաշխարհային միսիայի/առաքելության իրականացումը (հմմտ. Ծննդ. 3:15; 12:3; Ելից. 19:5-6; Մաթ. 28:18-20; Ղուկ. 24:47; Գործք 1:8):

Այս տերմինը օգտագործվում է մի քանի իմաստներով Ավետարաններում և Գործք Առաքելոցում:

1. աշխարհիկ քաղաքային ժողով, Գործք 19:32,39,41
2. Աստծո տիեզերական/ամբողջական ժողովուրդը Քրիստոսում, Մաթ.16:18 և Եփեսացիս
3. Քրիստոսում հավատացյալների տեղական համայնք, Մաթ. 18:17; Գործք 5:11 (այս համարներում Երուսաղեմի եկեղեցին)
4. Իսրայելի հավաքական ժողովուրդը, Գործք 7:38, Ստեփանոսի քարոզի մեջ
5. Աստծո ժողովուրդը մարզում, Գործք 8:3 (Հուդա կամ Պաղեստին)

▣ **«Կենքրայի»** Սա Կորնթոսի երկու նավահանգիստներից մեկն էր: Այս մեկն արևելյան կողմն էր (հմմտ. Գործք 18:18):

**16:2 «Որ նորան ընդունէք Տէրով. ինչպէս արժան է.»** Սա ԱՕՐԻՍՏ ՉԵԶՈՔ ՍԵՌ ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ [մի կողմ դրած] *prosdechomai* բառի, որը նշանակում է «որպես հյուր բարյացակամորեն ընդունել» (հմմտ. Փիլ. 2:29): Պողոսը վստահեց այս կնոջը և ցանկացավ, որ եկեղեցին ընդունի և օգնի նրան հանուն իր սիրո/իր անունից:

▣ **«սուրբերին»** Այս տերմինը նշանակում է «սուրբ մարդիկ»: Այն նկարագրում է ոչ միայն հավատացյալների դիրքը Հիսուսում, այլ նաև, հույս ունենալով, նրանց աստվածահաճո

կյանքերը, աստիճանաբար կատարվող բնութագրող նրանց նոր դիրքը Քրիստոսում: «Սուրբ» տերմինը միշտ ՀՈԳՆԱԿԻ է բացի մի տեղից Փիլ. (4:21) և նույնիսկ այնտեղ դա ընդհանուր իմաստով է: Քրիստոնեա լինել նշանակում է հավատացյալ համայքի, ընտանիքի, մարմնի մի մասը կազմել: Արևմուտքում ժամանակակից եկեղեցին արժեքազրկել/թերագնահատել է աստվածաշնչյան հավատքի այս ընդհանուր ասպեկտը: Տես Հատուկ Թեմա: Սուրբեր 1:7.

▣ **«եւ հոգ տանիք նորան ինչ բան որ ձեզանից պէտք ունենայ»** Կան երկու բայեր ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿՈՎ; Առաջինը, *paristēmi* (ԱՕՐԻՍՏ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ), նշանակում է «պաշտպանել այնպես ինչպես օգնել»: Երկրորդը, *chrēzō* (ՆԵՐԿԱ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ), նշանակում է «օգնել այն ամենով ինչ պահանջվում է» (հմմտ. II Կոր. 3:1):

Սա առնչվում էր նյութական պաշարներին/մթերքին շրջիկ ծառայողների համար: Սա էր հանձնարարական նամակների նպատակը:

**Արևելահայերեն «շատերին խնամք է տարել»**

**Արևմտահայերեն «շատերու խնամք տարավ»**

▣

| | |
|---|---|
| **NASB, NKJV** | **"has been a helper of many"** |
| **NRSV** | **"has been a benefactor of many"** |
| **TEV** | **"for she herself has been a good friend to many people"** |
| **JB** | **"has looked after a great many people"** |

Այս տերմինը, *proistatis*, գտնվում է միայն այստեղ Նոր Կտակարանում: Սա կարող էր վերաբերել ֆիզիկական կամ ֆինանսական աջակցությանը: Այս բառը սկզբնապես վերաբերում էր հարուստ խնամակալուհուն/պաշտպանուհուն: Քանի որ Փիբեն ճամփորդում էր Հռոմ (հմմտ. 1 հ.) և օգնել էր շատերին (հմմտ. 2 հ.), սա կարող է նաև

պատմականորեն ճիշմարտություն լինել նրա համար:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 16:3-16**
3Բարեւ տուէք Պրիսկիղային եւ Ակիւղասին՝ իմ գործընկերներին Քրիստոս
Յիսուսումը.4Որ իմ անձի տեղ իրանց վիզն առաջարկեցին, որոնցից ոչ միայն ես եմ
շնորհակալ՝ այլ եւ հեթանոսների բոլոր եկեղեցիները. 5Եւ նորանց տանը լինող
եկեղեցուն. բարեւ տուէք Եպենետին՝ իմ սիրելուն որ Աքայեայի անդրանիկն է ի
Քրիստոս: 6Բարեւ տուէք Մարիամին՝ որ շատ աշխատեց մեր վերայ:7Բարեւ տուէք
Անդրոնիկոսին եւ Յունիային՝ իմ ազգականներին, եւ գերութեանս ընկերներին. որ
առաքեալների մէջ երեւելի են՝ որ ինձանից առաջ են եղել Քրիստոսումը: 8Բարեւ
տուէք Ամպղիասին իմ սիրելուն Տէրումը: 9Բարեւ տուէք Ուրբանոսին՝ մեր
գործակցին Քրիստոսումը, եւ Ստաքէսին իմ սիրելուն: 10Բարեւ տուէք Ապելեսին՝
որ ընտիր է Քրիստոսումը:11Բարեւ տուէք նորանց՝ որ Արիստոբուղոսի տանիցն են.
բարեւ տուէք Հերովդիոնին՝ իմ ազգականին. բարեւ տուէք նորանց, որ Նարկիսէի
տանիցն են Տէրումը:12Բարեւ տուէք Տրիփանոսին եւ Տրիփոսին՝ որ
աշխատաւորներ են Տէրումը. բարեւ տուէք Պերսիդէ սիրելուն՝ որ շատ աշխատեց
Տէրումը: 13Բարեւ տուէք Ռուփոսին՝ որ ընտիր է Տէրումը. եւ նորա եւ իմ մօրը:
14Բարեւ տուէք Ասիւնկրիտոսին, Փղեգոնտին, Երմասին, Պատրոբային, Երմեսին,
եւ եղբայրներին՝ որ նորանց հետ են: 15Բարեւ տուէք Փիղողոգին եւ Յուլիային եւ
Ներէոսին եւ նորա քրոջը եւ Ողիմպիային եւ բոլոր սուրբերին՝ որ նորանց հետ են:
16Բարեւ տուէք իրար սուրբ համբոյրով. բարեւ են տալիս ձեզ Քրիստոսի բոլոր
եկեղեցիները:

**NASB (UPDATED) TEXT: 16:3-16**

**[3]Greet Prisca and Aquila, my fellow workers in Christ Jesus, [4]who for my life risked their own necks, to whom not only do I give thanks, but also all the churches of the Gentiles; [5]also *greet* the church that is in their house. Greet Epaenetus, my beloved, who is the first convert to Christ from Asia. [6]Greet Mary, who has worked hard for you. [7]Greet Andronicus and Junias, my kinsmen and my fellow prisoners, who are outstanding among the apostles, who also were in Christ before me. [8]Greet Ampliatus, my beloved in the Lord. [9]Greet Urbanus, our fellow worker in Christ, and Stachys my beloved. [10]Greet Apelles, the approved in Christ. Greet those who are of the *household* of Aristobulus. [11]Greet Herodion, my kinsman. Greet those of the *household* of Narcissus, who are in the Lord. [12]Greet Tryphaena and Tryphosa, workers in the Lord. Greet Persis the beloved, who has worked hard in the Lord. [13]Greet Rufus, a choice man in the Lord, also his mother and mine. [14]Greet Asyncritus, Phlegon, Hermes, Patrobas, Hermas and the brethren with them. [15]Greet Philologus and Julia, Nereus and his sister, and Olympas, and all the saints who are with them. [16]Greet one another with a holy kiss. All the churches of Christ greet you.**

**16:3 «Պրիսկիղային եւ Ակիւղասին»** Ղուկասը նրան կոչում է Պրիսկիղա: Նա հաճախ իր ամուսնու անվամբ է կոչվում, որը որ շատ անսովոր էր (հմմտ. Գործք 18:18, 26; I Կոր. 16:19; II Տիմ. 4:19): Հնարավոր է, որ նա հռոմեական ազնվականություն էր կամ իշխող անհատ այս զույգի: Թե Պողոսը և թե այս զույգը վրանագործներ կամ կաշեգործներ էին: Պողոսը նրանց կոչում է «Հիսուս Քրիստոսով գործընկերներ»: Հավանական է նա լսել էր Հռոմի եկեղեցու ուժեղ և տկար կողմերի մասին հենց այս զույգից:

**16:4 «իրանց վիզն առաջարկեցին»** Սա իդիոմա/խոսակցական ոճ է վերցրած «դահճի կացին» տերմինից: Աստվածաշունչը լուռ է մնում այն մասին, թե Պողոսն ինչ ինկատի ունի այս արտահայտությունով:

▣ **«որոնցից ոչ միայն ես եմ շնորհակալ՝ այլ եւ հեթանոսների բոլոր եկեղեցիները»** Պողոսը շատ երախտապարտ էր այս զույգի ընկերության և ակտիվ օգնության համար: Նա նույնիսկ զարգացնում է նրանց ծառայությունը «հեթանոսների բոլոր եկեղեցիներ»-ին: Ինչպիսի վճռական/պատասխանատու հաստատում/հայտարարություն և գոհություն: Դա կարող է վերաբերել նրանց քաջալերանքին և Ապողոսից տեղեկացված(հմմտ. Գործք 18:24-28):

**16:5 «եկեղեցուն»** Սա վերաբերում է մարդկանց և ոչ թե շենքին: Տերմինը նշանակում էր «կանչվածներ»: Հունարեն Հին Կտակարանում, Սեպտուագինտում (LXX), այս տերմինը օգտագործվում էր թարգմանելու համար եբրայերեն *qahal* տերմինը, թարգմանված «համայնք»: Վաղ եկեղեցին իրենց համարում էին, որպես իրական ժառանգորդներ/փոխարինողներ և Հին

Կտակարանի «Իսրայելի համայնք/խորհուրդ»-ի իրականացում և ոչ թե աղանդավորական բաժանված խումբ: Տես Հատուկ Թեմա 16:1.

▣ **«Եւ նորանց տանը լինող»** Վաղ քրիստոնեաները հավաքվում/հանդիպում էին տներում (հմմտ. 16:23; Գործք 12:12; I Կոր. 16:19; Կող. 4:15 և Փիլիմոն 2): Եկեղեցաշենքերը հայտնվեցին Ք. Հ. 3-րդ դարում:

▣ **«Եպենետին»** Այս մարդու անունը նշանակում է «գովաբանված/փառաբանված»

▣ **«որ անդրանիկն է ի Քրիստոս»** Սա նույնպես ասվում է Ստեփանի սան մասին I Կոր. 16:15:

▣ **«Աքայեայի»** Սա վերաբերում էր հռոմեական նահանգին, որը կազմված էր ներկայիս արևմտյան Թուրքիայի մեկ երրորդ մասը:

**16:6 «Մարիամին՝ որ շատ աշխատեց մեր վերայ»** Այս անձի մասին ոչինչ հայտնի չէ: Հնարավոր է, որ նա միսիոներ է եղել Հռոմի եկեղեցուց: Այնքան շատ հիասքանչ, աստվածապաշտ հավատացյալներ կան, որ անհայտ/անծանոթ են մեզ, սակայն լավ հայտնի Աստծուն:

**16:7 «գերութեանս ընկերներին»** Ժամանակակից գիտնականները համոզված չեն, թե որ բանտարկությանն է սա վերաբերում: Պողոսն իր հավատքի համար շատ տառապեց (հմմտ. II Կոր. 4:8-11; 6:4-10; 11:25-28): Նա եղել է Փիլիպեի, Կեսարիայի, Հռոմի բանտերում և հավանական է նաև ուրիշ տեղերի էլ (հմմտ. Եփեսոս, I Կոր. 15:32; II Կոր. 1:8):

▣ **«Յունիային»** Այս անունը կարող էր լինել թե արական թե իգական, որը պետք է որոշվի շեշտի նշանով: Կան հունարեն տարբերակների ձեռագիր մասրյաններ, «Յունիային» գտնվում է MSS א, A, B, C, D, F, G & P ձեռագրերում, սակայն առանց շեշտի նշանի: Շեշտված/ընդգծված իգական ձևը գտնվում է MSS $B^2$, $D^2$, և 0150 ձեռագրերում: Վաղ պապիրուսե ձեռագիր մասրյանը $P^{46}$ և որոշ Վուլգատ և Ղպտի թարգմանություններում, ինչպես նաև հունարեն տեքստերը օգտագործվել է Ջերոմի կողմից «Յուլիան» որը իգական է: Որոշ գիտնականներ մտածում են, որ սա գրչի կատարած սխալ էր: Այս իգական ձևը հանդիպում է 16:15: Հնարավոր է, որ այն երկու անձիք, ովքեր թվարկված են 7h. (1) երկու հրեա հավատացյալներն էին, ովքեր բանտարկված էին Պողոսի հետ; (2) եղբայր և քույր; կամ (3) ամուսին և կին: Եթե սա իգական է և եթե «առաքյալներ» արտահայտությունը վերաբերում է ավելի լայն կիրառմանը այդ տերմինի քան «Տասներկուսը», ուրեմն սա կին առաքյալ էր:

Հետաքրքիր է նաև այն, որ «Յունիայինի» արտասանությունը չի գտնվել ոչ մի տեղ հռոմեական գրականության մեջ կամ արձանագրություններում սակայն «Յունիա» անունը շատ ընդունված անուն էր: Դա հռոմեական ընտանիքի անուն էր: Լրացուցիչ ինֆորմացիայի համար կանայք ծառայության մեջ տես *Կին Առաջնորդները և Եկեղեցին,* Լինդա Լ. Բելեվիլ, էջ. 188 տողատակի ծանոթագրություն 42:

**Արևելահայերեն «որ առաքյալների մէջ երևելի են»**

**Արևմտահայերեն «որոնք առաքեալներուն մէջ երեւելիներ են»**

▣

| | |
|---|---|
| NASB | "who are outstanding among the apostles" |
| NKJV | "who are of note among the apostles" |
| NRSV | "they are prominent among the apostles" |
| TEV | "they are well known among the apostles" |
| NJB | "to those outstanding apostles" |

Սա կարող է վերաբերել Տասներկուսին, եթե այդպես է այս երկուսը շատ հայտնի էին նրանց, կամ ծառայողների ավելի լայն խումբ հայտնի որպես «առաքյալներ» (հմմտ. Գործք 14:4, 14; 18:5; I Կոր. 4:9; Գաղ. 1:19; Փիլ. 2:25; I Թես. 2:6): Կոնտեքստը բովանդակում է այս ավելի լայն կիրառությունը, ինչպես Եփ. 4:11, բայց ՈՐՈՇԻՉ ՀՈԴԸ վերաբերում է Տասներկուսին: Տես Հատուկ Թեմա: Send (*Apostellō*) 1:1:

▣ **«որ ինձանից առաջ են եղել Քրիստոսումը»** Սա պարզ նշանակում է, որ նրանք փրկված էին և ակտիվ կերպով Քրիստոսի շառայության մեջ էին մինչև Դամասկոսի ճանապարհին Պողոսի դարձի գալը:

**16:8-16** Այս բաժնի անունները անհայտ են գիտնականներին: Նրանք Աստծո և Պողոսի սիրելիներն են, բայց նրանց անուններն ու ծառայությունները արձանագրված չեն Նոր Կտակարանում կամ վաղ քրիստոնեական գրականության մեջ: Որն/Ինչն է ուշագրավ, որ կա խառնուրդ հասարակ ստրուկի անունների և հռոմեական և հրեական ազնվական ընտանեկան անունների մեջ: Կան տղամարդիկ և կանայք: Կան հարուստ ազատ արձակված ստրուկ և շրջիկ քարոզիչներ: Կան օտարականներ Պարսկաստանից: Բոլոր անջրպետները հաղթահարված են Հիսուս Քրիստոսի եկեղեցում (հմմտ. 3:22; 10:12; Հովել 2:28-32 [Գործք 2:14-21]; I Կոր. 12:11; Գաղ. 3:28; Կող. 3:11):

**16:8 «Ամպղիաս»** Այս անունը, ինչպես Պրիսկիղա և Յունիա անունները, շատ հայտնի հռոմեական ընտանեկան անուն է:

▣ **«իմ սիրելուն Տէրումը»** «Սիրելին» տերմինը օգտագործվում է Հոր Աստծո կողմից Որդի Հիսուսի համար Մաթ. 3:17 և 17:5, որը կարող է տիտղոս լինել Եսայի մարգարեության մեջ Ծառայի Երգեր-ի հատվածից (հմմտ. Մաթ. 12:18, մեջբերում Եսա. 42:1): Ինչևէ, Պողոսն օգտագործում է դա հավատացյալներին ուղղելու համար (հմմտ. 1:7; 16:8,9; I Կոր. 4:14,17; 15:58; Եփ. 6:21; Փիլ. 2:12; Կող. 4:7,9,14; I Տիմ. 6:2; Փիլեմոն v. 16).

**16:9 «Ուրբանոս»** Անունը նշանակում է «քաղաքաբնակ» կամ «քաղաքային ծագում»:

▣ **«Քրիստոսումը»** Սա կրկնվող արտահայտություն է, «Տերումը» արտահայտության հետ միասին, ամբողջ այս գլխում: Այս քրիստոնեա ծառայողները մեկ ընտանիքի, մեկ փրկչի մասն էին կազմում:

▣ **«Ստաքէսին»** Սա հազվագյուտ անուն է, որը նշանակում է «հասկ» (ցորենի): Հնագիտությունը գտել է, որ այս անունը կապված է Կեսարի/կայսրի ընտանիքի հետ:

**16:10 «որ ընտիր է Քրիստոսումը»** Այս իդիոմատիկ/խոսակցական արտահայտությունը վերաբերվում է մեկին, որը անցել էր փորձությունների միջով և մնացել էր հավատարիմ: Տես Հատուկ Թեմա 2:18.

▣ **«որ տանիցն են»** Որոշ գիտնականներ ենթադրում են, որ այս արտահայտությունը վերաբերում է Արիստոբուղոսի տան ծառային և ոչ թե ընտանիքի անդամներին, և նույնը վերաբերում է 11հ. արտահայտությանը, «որ Նարկիսէի տանիցն են»:

▣ **«Արիստոբուղոսի»** Որոշ գիտնականներ ենթադրում են, որ սա Հերովդես Ագրիպաս I եղբայրն էր (որը Գործք 12 սպանել էր Հակոբոս Առաքյալին): Եթե այդպես է , այն ցույց է տալիս, թե ինչպես է ավետարանը սկսել թափանցել այս թագավորական Իդումական ընտանիք:

**16:11** «Հերովդիոնին» Հնարավոր է նա եղել է Հերովդեսի ընտանիքի ծառա:

▣ **«որ Նարկիսէի տանիցն են»** Սա կարող է վերաբերվել Կայսր Կլավդիուսի հայտնի ծառային: Եթե այդպես է , այն ցույց է տալիս թե ինչպես է ավետարանը սկսել թափանցել հռոմեական թագավորության մեջ:

**16:12 «Տրիփանոսին»** Այս անունը նշանակում է «նուրբ/համեղ»

▣ **«Տրիփոսին»** Այս անունը նշանակում է «նուրբ/քնքուշ»: հավանական է նրանք քույրեր էին, նույնիսկ երկվորյակներ:

▣ **«Պերսիդէ»** Սա նշանակում է «Պարսիկ կին»:

**16:13 «Ռուփոս»** Այս անունը նշանակում է «կարմիր» կամ «կարմրա-գլուխ»: Ռուփոս անունը շատ ճանաչված անուն է Հռոմում (հմմտ. Մարկ. 15:21): Արդյոք նա կարող է ճանաչվել այս անձի հետ անհայտ է, բայց նաև հնարավոր:

**Արևելահայերեն «որ ընտիր է Տէրումը»**
**Արևմտահայերեն «Տէրոջմով ընտրուածին»**

▣

| | |
|---|---|
| NASB | "a choice man in the Lord" |
| NKJV, NRSV | "chosen in the Lord" |
| TEV | "that outstanding worker in the Lord's service" |
| JB | "a chosen servant of the Lord" |

Սա բառացի նշանակում է «ընտրվածը»: Այստեղ տերմինը վերաբերում է ոչ միայն Աստծո կանչին, այլ նաև իր ճիշտ կյանք ապրելով: Նրա մայրը Պողոսին վերաբերվում էր մեծ կապվածությամբ/սիրով նույնպես:

**16:14 "Hermes"** Սա հաջողության չաստծո անունն է: Սա հասարակ ծառայի անուն էր համարվում առաջին դարում հունա-հռոմեական աշխարհում:

**16:15 «բոլոր սուրբերին»** Տես Հատուկ Թեմա: Սուրբեր 1:7.

**16:16 «սուրբ համբույրով»** Ոչ մի վկայություն/փաստ չկա, թե ով ում համբուրեց, կամ երբ կամ որտեղ: Ժողովարանում, որի ողջույնի ձևը շարունակվում էր եկեղեցում, տղամարդը համբուրում էր տղամարդու այտը, իսկ կինը՝ կնոջ (հմմտ. I Կոր. 16:20; II Կոր. 13:12; I Թես. 5:26; I Պետ. 5:14): Ողջույնի այս գործողությունը դարձավ խնդիր եկեղեցու ներսում և սխալ ըմբռնելի էր անհավատների կողմից և ուստի այն դադարեցվեց:

> **Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 16:17-20**
> [17]Աղաչում եմ ձեզ, եղբարք, որ մտիկ տաք նորանց՝ որ հերձուածներ եւ գայթակղութիւններ են շինում այն վարդապետութիւնիցը դուրս՝ որ դուք սովորեցիք՝ եւ հեռու քաշուեցէք նորանցից: [18]Որովհետեւ այդպիսիները մեր էր Քրիստոսին չեն ծառայում, այլ իրանց որովայնին. եւ քաղցր խօսքերով եւ եւ գովութիւնով խաբում են անմեղների սրտերը: [19]Որովհետեւ ձեր հնազանդութիւնն ամենի ականջը հասաւ. եւ սորա համար ուրախ եմ ձեզ համար. միայն ուզում եմ՝ որ դուք իմաստուն լինիք դէպի բարին՝ եւ միամիտ դէպի չարը:
> [20]Եւ խաղաղութեան Աստուածը խորտակէ սատանային ձեր ոտների տակ շուտով. մեր Տէր Յիսուս Քրիստոսի շնորհքը լինի ձեզ հետ. ամէն:

**NASB (UPDATED) TEXT: 16:17-20**
**[17]Now I urge you, brethren, keep your eye on those who cause dissensions and hindrances contrary to the teaching which you learned, and turn away from them. [18]For such men are slaves, not of our Lord Christ but of their own appetites; and by their smooth and flattering speech they deceive the hearts of the unsuspecting. [19]For the report of your obedience has reached to all; therefore I am rejoicing over you, but I want you to be wise in what is good and innocent in what is evil. [20]The God of peace will soon crush Satan under your feet. The grace of our Lord Jesus be with you.**

16:17 Այս զգուշացումը թվում է թե անսպասելի է մտնում կոնտեքստի մեջ: 17-18հh. կա մի ցանկ/ցուցակ, որտեղ թվարկվում է, թե ինչեր էին անում այս կեղծ վարդապետները:

1. նրանք առաջացրեցին բաժանումներ
2. նրանք արգելքներ դրեցին հավատացյալի ճանապարհին
3. նրանք սովորեցրեցին հակառակը եկեղեցու տված ուսմունքի
4. նրանք ծառայում էին իրենց որովայնին
5. նրանք խաբում էին անմեղների սրտերը իրենց քաղցր խօսքերով եւ գովութիւնով

▣ **«հեռու քաշուեցէք նորանցից»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ: Սա կրկնվող/հակադարձ թեմա է (հմմտ. Գաղ. 1:8-9; II Թես. 3:6,14; II Հովh. 10):

16:18

**Արևելահայերեն «իրանց որովայնին»**

**Արևմտահայերեն «իրանց որովայնին»**

NASB, NRSV
TEV "their own appetites"
NKJV "their own belly"
NJB "their own greed"

Սա բառացի «որովայն,ստամոքս» է (հմմտ. Փիլ. 3:19; Տիտոս 1:12): Կեղծ վարդապետները ամեն բան շրջեցին/փոխեցին՝ հարմարեցնելով իրենց հիմնական հետաքրքրություններին:

▣ **«քաղցր խօսքերով եւ գովութիւնով»** Կեղծ վարդապետները հաճախ ֆիզիկապես գրավիչ են և ունեն դինամիկ/շարժուն անհատականություն (հմմտ. Կող. 2:4): Նրանք հաճախ շատ տրամաբանական են իրենց մատուցման/պրեզենտացիայի մեջ: Զգուշացեք! Ահա մի քանի հնարավոր աստվածաշնչյան ստուգարքներ/տեստեր՝ կեղծ վարդապետներին ճանաչելու համար, որոնք գտնվում են 2 Օրին. 13:1-5; 18:22; Մաթ. 7; Փիլ. 3:2-3, 18-19; I Հովh. 4:1-6:

▣ **«խաբում են անմեղների սրտերը»** Սա ՆԵՐԿԱ ԺԱՄԱՆԱԿ ՆԵՐԳՈՐԾԱԿԱՆ ՍԵՌ ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ, որը նշանակում/ցույց է տալիս շարունակական խաբեություն: Այս ըստ երևույթին նոր կամ պարզամիտ/միամիտ հավատացյալները խոցելի էին («չարի դեմ անփորձ»):

**16:19 «ձեր հնազանդութիւնն ամենի ականջը հասաւ»** Սա վերաբերվում է 1:8: Սա Պողոսի հիպերբոլաներից/չափազանցություններից մեկն է:

▣ **«իմաստուն լինիք դէպի բարին՝ եւ միամիտ դէպի չարը»** Սա անդրադարձնում է Հիսուսի ուսմունքը (հմմտ. Մաք. 10:16; Ղուկ. 10:3):

**16:20 «խաղաղութեան Աստուածը»** Սա հիանալի տիտղոս է Աստծո համար (հմմտ. 15:33; II Կոր. 13:16; Փիլ. 4:9; I Թես. 5:23 և Եբր. 13:20):

▣ **«խորտակէ սատանային ձեր ոտների տակ շուտով»** Սա ակնարկում է Ծննդ. 3:15: Հավատացյալի հարաբերությունը Մեսիայի հետ տալիս է հաղթանակ նաև նրանց (հմմտ. I Հովհ. 5:18-20): Սա աիարկու խոստում և պատասխանատվություն է: Այս կոնտեքստում սատանան համառոտում/կարճեցնում է կեղծ վարդապետների կողմից առաջացած խառնաշփոթությունն ու բաժանումը, որոնք պատճառ դարձան, որ եկեղեցին կորցնի իր մեծ պատվիրանի կենտրոնը/ֆոկուսը: Կեղծ վարդապետների ետևում դիվայինն է: Ավետարանը, ինչևէ, ցրում է խավարը և չարը նրանց համար, ովքեր ընդունում/հարում են այդ և ապրում են դա: Որպես լավ գիրք այս թեմայի վերաբերյալ կարող ես վերցնել *Երեք Վճռական/կրիտիկական Հարցեր Հոգևոր Պատերազմի Մասին,* Կլինտոն Ե. Առնոլդ, *Three Crucial Questions About Spiritual Warfare*, by Clinton E. Arnold.

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ԱՆՁՆԱԿԱՆ ՉԱՐԸ**

Այս թեման շատ բարդ մի քանի պատճառներով:

1. Հին Կտակարանը չի բացահայտնում սատանային, որպես ամեն բարիքի անիծված թշնամին, այլ որպես ՅԱՀՎԵ-ի ծառա, որը մարդկությանն առաջարկում է այլընտրանք և մարդուն մեղադրում անարդարության մեջ:
2. Աստծո այս հակառակորդի անձի գաղափարը զարգացավ ներ-աստվածաշնչյան (ոչ-կանոնական) գրականության մեջ պարսկական կրոնի (զահադաշտական) ազդեցության

ներքո: Իսկ սա իր հերթին շատ ուժեղ ազդեցություն գործեց ռաբբիական հուդայականության վրա:

3. Նոր Կտակարանը զարգացնում է Հին Կտակարանի թեմաները զարմանալիորեն կատարյալ, սակայն ընտրողական կատեգորիաներում:

Եթե մոտենանք չարի ուսումնասիրմանը աստվածաշնչյան աստվածաբանության տեսանկյունից (յուրաքանչյուր գիրք կամ հեղինակ կամ ժանր ուսումնասիրված և հետազոտված է առանձին-առանձին), ապա շատ տարբեր տեսակետեր չարի վերաբերյալ հայտնվում են:

Եթե, այնուամենայնիվ, չարի ուսումնասիրման մոտեցումը ոչ-աստվածաշնչյան կամ աստվածաշնչից դուրս աշխարհիկ կրոնների կամ արևելյան կրոնների մոտեցում է, ուրեմն Նոր Կտակարանի զարգացումներից շատերը նախանշան հանդիսացավ պարսկական դուալիզմի և հունա-հռոմեական սպիրիտիզմի:

Եթե մեկը սկզբից բացարձակ վստահ է Սուրբ Գրքի աստվածային հեղինակությանը, ապա Նոր Կտակարանում այս թեմայի զարգացումը պետք է դիտվի որպես պրոգրեսիվ հայտնություն: Քրիստոնյաները չպետք է թույլատրեն հուդայական ժողովրդական բանահյուսության կամ արևմտյան գրականության (օրինակ Դանթե, Միլտոն) սահմանել աստվածաշնչյան գաղափարը: Հայտնության այս բաժնում անշուշտ գոյություն ունի և գաղտնիք և անորոշություն: Աստված ընտրել է չհայտնել չարի բոլոր տեսակետերը, նրա ծագումը, նրա նպատակը, այլ Նա հայտնեց նրա պարտությունը:

Հին Կտակարանում սատանա կամ ամբարիշտ/մեղադրող/հակառակորդ տերմինը կարծես վերաբերում է երեք առանձին խմբերի

1. մարդ հակառակորդներ (I Թագ. 29:4; II Թագ. 19:22; III Թագ. 11:14,23,25; Սաղ. 109:6)
2. հրեշտակային հակառակորդներ (Թվոց. 22:22-23; Զաք. 3:1)
3. սատանայական/դիվային հակառակորդներ (I Մնաց. 21:1; III Թագ. 22:21; Զաք. 13:2)

Միայն ավելի ուշ միջկտակարանային շրջանում է Ծննդոց 3-ի օձը ճանաչվում է որպես սատանա (հմմտ. Գիրք Իմաստության 2:23-24; II Ենոք 31:3), և նույնիսկ ավելի ուշ սա դառնում է ռաբբիական ուսմունքի մաս (հմմտ. *Sot* 9բ և *Sanh.* 29ա): Ծննդոց 6-ի «Աստծո որդիները» դառնում են հրեշտակներ I Ենոք 54:6: Ես այս ամենը նշում եմ ոչ թե նրա համար, որ պնդեմ կոնկրետ աստվածաբանական հիմնավորում, այլ ցույց տալու համար դրա զարգացման գործընթացը: Նոր Կտակարանում այս հինկտակարանային գործունեությունները վերաբերվում են հրեշտակային ծագում ունեցող չարին, (այն է սատանա) II Կոր. 11:3; Հայտ. 12:9:

Հենվելով Հին Կտակարանում չարի անձեղության ծագումը դժվար է կամ անհնարին (սա կախված է ձեր տեսանկյունից): Այս բարդությունների ամենագլխավոր պատճառներից մեկը Իսրայելի բացարձակ մոնոթեիզմը՝ միաստվածությունը (հմմտ. III Թագ. 22:20-22; Ժող. 7:14; Ես.

45:7; Ամովս 3:6): Իսրայելացիները բոլոր կապված պատճառները վերագրում են ՅԱՀՎԵ-ին՝ ցույց տալու համար Նրա եզակիությունը/անզուգական լինելը և առաջնությունը (հմմտ. Ես. 43:11; 44:6,8,24; 45:5-6,14,18,21,22).

Հնարավոր ինֆորմացիայի աղբյուրները կենտրոնանում են (1) Հոբ 1-2 որտեղ Սատանան «Աստծո որդիներից» մեկն է (այն է, հրեշտակներ) կամ (2) Եսայի 14; Եզեկ. 28 որտեղ հպարտ մերձավոր արևելքի թագավորները (Բաբելոն և Տյուրոս) օգտագործվում են նկարագրելու համար սատանայի հպարտությունը (հմմտ. I Տիմ. 3:6): Այս տեսակ մոտեցման առիթով ես ունեցել եմ խառը զգացմունքներ: Եզեկիելն օգտագործում է Եդեմի Պարտեզ փոխաբերությունը ոչ միայն Տյուրոսի թագավորի համար որպես սատանա (հմմտ. Եզեկ. 28:12-16), այլ նաև Եգիպտոսի թագավորի համար որպես Բարու և Չարի Գիտության Ծառը (Եզեկ. 31): Ինչևէ, Ես. 14, մասնավորապես 12-14հհ., թվում է նկարագրվում է հրեշտակային ըմբոստությունը հպարտության միջոցով: Եթե Աստված ուզում է հայտնել մեզ սատանայի առանձնահատուկ բնությունը և ծագումը ապա սա ամենաուղղակի ձևն է և տեղը դա անելու համար: Մենք պետք է զգուշանանք գոյություն ունեցող սիստեմատիկ աստվածաբանության վերցնելով փոքր, երկիմաստ/անորոշ մասերը տարբեր կտակարանների, հեղինակների, գրքերի, և ժանրերի և միացնելով դրանք կարծես մեկ աստվածային գլուխկոտրուկի/փազլ մասեր:

Ալֆրեդ Էդերշեյմ (*Հիսուս Մեսիայի Կյանքն ու Ժամանակները, The Life and Times of Jesus the Messiah*, հատ. 2, հավելված XIII [էջ 748-763] և XVI [էջ 770-776]) ասում է, որ Ռաբբիական Հուդայականությունը չափից ավելի ներգործված է եղել պարսկական դուալիզմի և դիվային տեսությունով: Ռաբբինները լավ աղբյուր չեն ճշմարտության համար այս բնագավառում: Հիսուսի ուսմունքը արմատականորեն տարբերում է ժողովարանի ուսմունքներից: Ես կարծում եմ, որ ռաբբիական գաղափարը հրեշտակային միջամտության և ընդդիմության Մովսեսական Օրենքում Սինա լեռան վրա դուռ բացեց հետևյալ գաղափարին՝ ՅԱՀՎԵ-ի և ամբողջ մարդկության չար հրեշտակապետը: Երկու բարձր աստվածները իրանական (զրահադաշտական) դուալիզմի, *Ահկիման* և *Օրմազա,* բարի և չար, և այս դուալիզմը զարգացավ հուդայական սահմանափակ դուալիզմի ՅԱՀՎԵ և սատանա:

Անշուշտ Նոր Կտակարանում կա պրոգրեսիվ/առաջադիմական հայտնություն չարի զարգացման հետ կապված, բայց ոչ այնպես մանրամաս զարգացած/մշակված ինչպես րաբբիներն են հռչակում: Այս տարբերության լավ օրինակներից է «պատերազմ երկնքում»: Սատանայի անկումը տրամաբանական անհրաժեշտություն է, սակայն յուրահատուկները տրված չեն: Նույնիսկ այն ինչ տրված է ծածկված է ապոկալիպտիկ ժանրում (հմմտ. Հայտ. 12:4,7,12-13): Չնայած սատանան պարտված է և գերության մեջ է երկրի վրա, նա դեռ գործում է որպես ՅԱՀՎԵ-ի ծառա (հմմտ. Մաթ. 4:1; Ղուկ. 22:31-32; I Կոր. 5:5; I Տիմ. 1:20):

Մենք պետք է սանձենք մեր հետաքրքրասիրությունը այս բնագավառում: Կա անձնական մղում փորձության և չարի հանդեպ, բայց կա միայն մեկ Աստված և մարդը դեռևս պատասխանատու է իր ընտրությունների համար: Կա հոգևոր պատերազմ թե փրկությունից առաջ թե հետո: Հաղթանակը միայն կարող է գալ և մնալ Եռյակ Աստծո մեջ և միջոցով: Չարը պարտվել է և կհեռացվի/կվերցվի:

▣ **«մեր Տէր Յիսուս Քրիստոսի շնորհքը լինի ձեզ հետ»** Սա սովորական փակման/վերջին խոսք է Պողոսի համար (հմմտ. I Կոր. 16:23; II Կոր. 13:14; Գաղ. 6:18; Փիլ. 4:23; Կող. 4:18; I Թես. 5:28; II Թես. 3:18 և նաև Հայտ. 22:21): Հավանական է գրվել է իր իսկ ձեռքով: Սա իր նամակները վավերացնող ձև էր (հմմտ. II Թես. 3:17; I Կոր. 16:21; Կող. 4:18):

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 16:21**
[21]Բարեւ են տալիս ձեզ Տիմոթէոսը իմ գործընկերը, եւ Ղուկիոսը եւ Յասոնը եւ Սոսիպատրոսը իմ ազգականները:

**NASB (UPDATED) TEXT: 16:21**
**[21]Timothy my fellow worker greets you, and *so do* Lucius and Jason and Sosipater, my kinsmen.**

**16:21-23** Այս համարները ետգրություն են: Պողոսի Կորնթոսի գործընկերները ուղարկեցին իրենց ողջույնները:

**16:21 «Ղուկիոս»** Սա կարող էր լինել (1) բժիշկ Ղուկասը (հմմտ. Կող. 4:14), կամ հնարավոր է իդիոմա էր «բարձրագույն կրթությամբ մեկի»մասին (2) Ղուկիոս Կիւրենացին (հմմտ. Գործք 13:1); կամ (3) անհայտ/անծանոթ քրիստոնեա:

▣ **«Յասոնը»** Հավանական է սա այն Յասոնն է, որի տանը մնաց Թեսաղոնիկեին (հմմտ. Գործք 17:5-9).

▣ **«Սոսիպատրոս»** Հավանական է սա Սոպատրոս Բերիացին է Գործք 20:4:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 16:22**
[22]Բարեւ եմ տալիս ձեզ ես՝ Տերտիոս, որ այս թուղթը գրեցի Տէրումը:

**NASB (UPDATED) TEXT: 16:22**
**[22]I, Tertius, who write this letter, greet you in the Lord.**

**16:22 «ես՝ Տերտիոս, որ այս թուղթը գրեցի»** Պողոսն օգտագործում էր դպիր (*amanuensis*) իր նամակները գրելու համար (հմմտ. I Կոր. 16:21; Գաղ. 6:11; Կող. 4:18; II Թես. 3:17): Ես կարծում եմ, որ Պողոսն ուներ տեսողության խնդիր և չէր կարող փոքր գրել, փոքր, դժվար ձեռագիրը պետք է տարածություն պահպաներ պապիրուսի կամ կաշվե մագաղաթի վրա (հմմտ. Գաղ. 6:18):

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 16:23-24**
[23]Բարեւ է տալիս ձեզ Գայիոսը՝ իմ եւ բոլոր եկեղեցու հիւրընկալը. բարեւ է տալիս ձեզ Երաստոսը՝ քաղաքիս հոգատարը, եւ Կուարտոս եղբայրը: [24]Մեր Տէր Յիսուս Քրիստոսի շնորհքը լինի ձեր ամենի հետ. ամէն:

**NASB (UPDATED) TEXT: 16:23-24**
**[23]Gaius, host to me and to the whole church, greets you. Erastus, the city treasurer greets you, and Quartus, the brother. [24][The grace of our Lord Jesus Christ be with you all. Amen.]**

**6:23**
**«Գայիոսը»** Սա կարող էր լինել (1) Յուստոսը Գործք Առ. 18:7; (2) Գայիոս Դերբացին (հմմտ. Գործք 19:29; 20:4; I Կոր. 1:14); կամ (3) Գայիոսը III Հովհ. 1հ.

▣ **«իմ եւ բոլոր եկեղեցու հիւրընկալը»** Սա հյուրասիրություն էր, որի կարիքը կար եկեղեցում: Որոշ հավատացյալներ, որոնք ունեին ռեսուրսներ/միջոցներ ճամփորդող քրիստոնեա ծառայողների համար վճարում էին սենյակի և ուտելիքի համար: Ոմանք, ինչպես այս մարդը, նաև բացեց իր տունը ժողովատեղի լինելու համար: Տնային եկեղեցիները ավելի քան 100 տարի նորմա/ընդունված են եղել: Տես Հատուկ Թեմա: Եկեղեցի (*Ekklesia*) 16:1:

▣ **«Երաստոսը՝ քաղաքիս հոգատարը»** Նա մասին նաև նշվում է Գործք 19:22; II Տիմ. 4:20: Նա ուներ ճամփորդական/թափառող ծառայություն կապված Պողոսի հետ:

▣ **«Կուարտոս»** Լատիներենում այս անունը նշանակում է «չորրորդ»: Հավանական է նա Տերտիոսի եղբայրն էր, որը լատիներենում նշանակում է «երրորդ» (հմմտ. 22հ.):

**16:24** Այս համարը վաղ հունարեն ձեռագիր մատյաններում P[46,61], ℵ, A, B, C, և 0150 բացակայում է: Այն հանդիպում է որոշ հունարեն ձեռագիր մատյաններում 16:23-ից հետո, իսկ մյուսները 16:27-ից հետո: Ակնհայտ է, որ դա Պողոսի մոտ դա այդպես չէ: Այն չկա NASB, NRSV, TEV և NJB թարգմանություններում: UBS[4] կազմողները այս համարը բացակայող տարբերակը գնահատում են «A» (հուսալի): Սա փորձարկված ավարտ է նամակի համար և վերաբերում է վերջաբան-փառաբանության խնդրին, որը հանդիպում է 14, 15, և 16 գլուխների վերջում հին հունական տեքստերի մի քանի տարբերակներում:

**Արևելահայերեն Աստվածաշունչ Գլուխ 16:25-27**
[25]Բայց նորան, որ կարող է ձեզ հաստատ պահել իմ աւետարանի եւ Յիսուս Քրիստոսի քարոզութեան համեմատ, այն խորհրդի յայտնութեանը համեմատ որ յաւիտենական ժամանակներից լուռ պահուած էր, [26]Բայց հիմա մարգարէական գրքերով յայտնուեցաւ՝ յաւիտենական Աստուծոյ հրամանին պէս, եւ հաւատքին հնազանդելու համար բոլոր հեթանոսների մէջ ճանաչուեցաւ. [27]Մի միայն իմաստուն Աստուծուն, Յիսուս Քրիստոսի ձեռովը, նորան փառք յաւիտեանս: Ամէն:

**NASB (UPDATED) TEXT: 16:25-27**
**[25]Now to Him who is able to establish you according to my gospel and the preaching of Jesus Christ, according to the revelation of the mystery which has been kept secret for long ages past, [26]but now is manifested, and by the Scriptures of the prophets, according to the commandment of the eternal God, has been made known to all the nations, *leading* to obedience of faith; [27]to the only wise God, through Jesus Christ, be the glory forever. Amen.**

**16:25-27** Հունարենում սա մեկ նախադասություն է: Այս օրհնությունը կարող է գտնվել թե 14-րդ գլխի վերջում և թե 15-ի վերջում: Այս կոնտեքստը գրքի գլխավոր թեմաների ամփոփումը հավանական է գրվել է հենց իսկ Պողոսի ձեռքով: Ոմանք հավատում են, որ այս փառաբանությունը եղել է;

1. պաշտպանող/ծածկող նամակը եփեսացիներին ուղղված պարբերական նամակի համար
2. նրանց համար, որոնց Հռոմի ճանապարհին է հանդիպել, որովհետև
   ա. Պողոսը երբեք չէր այցելել Հռոմ, սակայն նա ողջունում է 26 հոգու/մարդու
   բ. 16-ում առաջին անգամն է նշվում կեղծ վարդապետների մասին

գ. այս փառաբանությունը հայտնվում է հունարեն մատյաններում մի քանի տարբեր տեղերում:

Նաև հնարավոր է, որ Պողոսը երկու օրինակ/պատճեն է արել, 1-14 գլուխները Հռոմին, 1-16-ը Եփեսոսին: Սովորաբար այս հայտարարությունները/հաստատումները պատասխանվում են (1) այն փաստով, որ այս վաղ քրիստոնյա աշխատողները ճամփորդեցին; (2) փաստը, որ Հռոմեացիս թղթի ոչ մի հունարեն ձեռագիր մատյան առանց 16-րդ գլխի չէ; և (3) հավանականություն, որ կեղծ վարդապետները ակնարկվում են/նշվում են 14:1-15:13:

**16:25 «նորան, որ կարող է»** Սա մի ուրիշ հիանալի տիտղոս/անուն է Աստծո համար, որը օգտագործվում է 3 անգամ Նոր Կտակարանում (հմմտ. Եփ. 3:20; Հուդա 24):

Ծանուցում, ինչպես է Աստված հնարավորություն/իրավունք է տալիս հավատացյալներին.

1. Պողոսի ավետարանը
2. քարոզչությունը Հիսուս Քրիստոսի մասին
3. փրկության Աստծո հավիտենական ծրագրի հայտնվելը, որը գաղտնի է պահված եղել (խորհուրդ/խորհրդավորություն)

Հավատացյալները իրավասու են ավետարանի գիտությունովը: Այս ավետարանը պիտանի/մատչելի չի եղել բոլորին:

▣ **«այն խորհրդի»** Աստված ունի միասնական նպատակ մարդկության փրկության համար, որը նույնիսկ նախորդեց անկմանը (հմմտ. Ծննդ. 3): Այս ծրագրի/պլանի ակնարկները հայտնվում է Հին Կտակարանում (հմմտ. Ծննդ. 3:15; 12:3; Ել. 19:5-6; և ընդհանուր/ամբողջական հատվածները մարգարեական գրքերում): Ինչևէ, այս ամբողջ տեսարանը պարզ չէր (հմմտ. I Կոր. 2:6-8): Հիսուսի և Հոգու գալուստով այն սկսում է դառնալ ավելի ակնհայտ: Պողոսն օգտագործում է «խորհուրդ» տերմինը նկարագրելու համար այս ամբողջական փրկության ծրագիրը (հմմտ. I Կոր. 4:1; Եփ. 2:11-3:13; 6:19; Կող. 4:3; I Տիմ. 1:9): Ինչևէ, նա սա օգտագործում է մի քանի տարբեր իմաստներով:

1. Իսրայելի մասնակի/կողմնապահ կարծրանալը թույլ տալ հեթանոսներին ներգրավվել: Հեթանոսների այս ներհոսքը կգործի որպես մեխանիզմ հրեաների համար՝ ընդունելու Հիսուսին որպես մարգարեության Քրիստոսը (հմմտ. Հռ. 11:25-32):
2. Ավետարանը հայտնի եղավ բոլոր ազգերին, որոնք ներգրավված են Քրիստոսում և Քրիստոսով (հմմտ. Հռ. 16:25-27; Կող. 2:2):
3. Հավատացյալների նոր մարմինները Երկրորդ Գալստյան ժամանակ (հմմտ. I Կոր. 15:5-57; I Թես. 4:13-18):
4. Ամեն բան ամփոփվում է Քրիստոսում (հմմտ. Եփ. 1:8-11):
5. Հեթանոսներն ու հրեաները ժառանգակիցներ են (հմմտ. Եփ. 2:11-3:13):

6. Քրիստոսի և Եկեղեցու միջև եղած մտերմիկ հարաբերությունը նկարագրվում է ամուսնական տերմիններով (հմմտ. Եփ. 5:22-33):
7. Հեթանոսները ներգրավվեցին ուխտի ժողովրդի մեջ և բնակվեցին Քրիստոսի Հոգով, որպեսզի քրիստոսանման հասունություն ունենան, որն է վերականգնել աղավաղված պատկերը ընկած/մեղավոր մարդկության մեջ (հմմտ. Ծննդ. 6:5, 11-13; 8:21) Աստծուն մարդու մեջ (հմմտ. Ծննդ. 1:26-27; 5:1; 9:6; Կող. 1:26-28):
8. Վերջին ժամանակը՝ հակա-քրիստոս (հմմտ. II Թես. 2:1-11):
9. Վաղ եկեղեցու ամփոփումը/եզրակցությունը խորհուրդի մասին գտնվում է I Տիմ. 1:16:

**16:26 «հիմա յայտնուեցաւ»** Աստծո այս խորհուրդը կամ ծրագիրը հստակորեն հայտնի է եղել ամբողջ մարդկությանը:
Սա Հիսուս Քրիստոսի ավետարանն է (հմմտ. Եփ. 2:11-3:13):

- **«մարգարէական գրքերով»** Աստված ակնահայտ է դարձրել այս խորհուրդը Հիսուսի անձի և գործի մեջ: Սա կանխագուշակվել է Հին Կտակարանի մարգարեների կողմից: Նոր Կտակարանի եկեղեցու հիմնումը հավատացյալ հրեաների և հեթանոսների միասնությամբ միշտ եղել է Աստծո ծրագիրը (հմմտ. Ծննդ. 3:15; 12:3; Ելից 19:5-6; Եր. 31:31-34):

- **«յաւիտենական Աստուծոյ»** Տես Հատուկ Թեման ներքևում.

**ՀԱՏՈՒԿ ԹԵՄԱ: ՀԱՎԻՏԵՆԱԿԱՆ**

Ռոբերտ Բ. Գըրդլիստոնը, իր *Հին Կտակարանի Հոմանիշները* գրքում, ունի հետաքրքիր մեկնաբանություն «հավիտենական» բառի վերաբերյալ:

« *aiōnios* ածականը օգտագործվում է ավելի քան 40 անգամ Նոր Կակարանում, կապված *հավիտենական կյանքին*, որը վերաբերվում է մասամբ որպես ներկա պարգև, մասամբ էլ որպես ապագայի խոստում: Սա նաև վերաբերվում է Աստծո անվերջանալի գոյությանը Հռ. 16.26-ում; Քրիստոսի քավության անվերջանալի ներգործությանը/զորությանը Եբր. 9.12, 13.20-ում; և անցյալ դարերին/ժամանակներին Հռ. 16.25, 2 Տիմ. 1,9, Տիտոս 1.2.

Այս բառը օգտագործվում է վկայակոչելով *հավիտենական կրակը*, Մաթ. 18.8,25. 41, Հուդա 7; *հավիտենական պատիժը,* Մաթ. 25.46; *հավիտենական դատաստանը* կամ *դատապարտությունը,* Մարկ. 3.29, Եբր. 6.2; *հավիտենական կործանումը,* 2 Թես. 1.9. Այս հատվածներում բառը նշանակում է *ավարտվածություն/վերջնականություն*, և ըստ երևույթին նշանակում է, որ երբ այս դատաստանները կիրագործվեն, փորձման ժամկետը, փոփոխությունը, կամ ինչ որ մեկի փոխվելու շանսը, կընթանա/կտևի անպայման/բացարձակապես և հավիտյան: Մենք շատ քիչ բան ենք հասկանում ապագայի մասին, մարդկային կյանքի փոխհարաբերությունը մնացած գոյության մասին, և անհավատության բարոյական ծանրության/բեռի մասին, նայելով հավիտենականության լույսի ներքո: Եթե, մի կողմից, Աստծո խոսքին ավելացնելը սխալ է, ապա մյուս կողմից մենք չպետք է այն հեռացնենք իմաստից, և եթե մենք երերում ենք հավիտենական պատժի վարդապետության տակ, ինչպես այն շարադրվում է Սուրբ Գրքում, մենք պետք է գոհանանք՝ սպասելով, հավատարիմ մնալով Քրիստոսում ամփոփված Աստծո սիրո Ավետարանին, ընդունելով, որ կա մութ/խավար ֆոն, որը մենք չենք կարող հասկանալ/ըմբռնել» (էջ 318-319):

▣ **«բոլոր հեթանոսների մեջ ճանաչուեցաւ»** Սա ԱՕՐԻՍՏ ԿՐԱՎՈՐԱԿԱՆ ՍԵՌ ԱԾԱԿԱՆ ԴԵՐԲԱՅ է: Այն տեղադրվում էր վերջում հունարեն նախադասության մեջ ընդգծելու/շեշտելու համար: Աստված ներկայացրել է Ավետարանը, առաջարկելով ամբողջ աշխարհին, որը միշտ Նրա նպատակն է եղել (հմմտ. Ծննդ. 3:15):

**Արևելահայերեն «հաւատքին հնազանդելու համար»**

**Արևմտահայերեն «հաւատքի հնազանդելու համար»**

▣

NASB "*leading* to obedience of faith"
NKJV "for obedience to the faith"
NRSV "to bring about the obedience of faith"
TEV "leading to obedience of faith"
JB "to bring them to the obedience of faith"

Այս արտահայտությունը հասկանալու երեք տարբեր կերպեր կան; այն կարող է վերաբերել (1) Քրիստոսի մասին վարդապետությանը; (2) Քրիստոսին վստահելուն; կամ (3) հնազանդվել ավետարանին թե սկզբնականում և շարունակաբար: Հնազանդությունը պետք է կապակցված լինի ապաշխարության և հավատքի գաղափարի հետ (հմմտ. Մարկ. 1:15; Գործք 3:16,19; 20:21):

**16:27 «Մի միայն իմաստուն Աստուծուն»** Սա մոնոթեիզմի/միաստվածության ակնարկ է (հմմտ. 2 Օրին. 6:4-5): Քրիստոնեությունն ունի միայն մեկ Աստված, ինչպես հուդայականությունը, ինչևէ, Հիսուսի ամբողջական աստվածությունը և Հոգու ամբողջական մարդեղությունը մեզ մղում են դեպի «եռյակ-միություն», Երրորդություն:

▣ **«փառք յաւիտեանս»** Տես ծանուցում 3:23.

▣ **«Ամեն»** Տես հատուկ թեմա 1:25.

## ՔՆՆԱՐԿՎՈՂ ՀԱՐՑԵՐ

Սա սերտողության համար ուղեցույց հանդիսացող մեկնաբանություն է, որը նշանակում է, որ դու պատասխանատու ես Աստվածաշնչի քո սեփական մեկնաբանության համար: Դու, Աստվածաշունչն ու Սուրբ Հոգին եք առաջնությունը մեկնաբանության մեջ: Դու չպետք է դա թողնես մեկնաբանի վրա:

Այս քննարկվող հարցերը քեզ օգնելու համար են , որ դու մտածես գրքի այս բաժնի գլխավոր խնդիրների շուրջ:

1. Ինչպե՞ս գիտեր Պողոսը Հռոմի եկեղեցու այս բոլոր մարդկանց, երբ նա երբեք չէր եղել այնտեղ:

2. Կա՞ արդյոք որևէ աստվածաշնչյան ապացույց/փաստ կին սարկավագների համար (հմմտ. 16:1; I Տիմ. 3:11; 5:3-16)
3. Ո՞րն է իմաստը, որ այսքան շատ կանանց անուններ են թվարկված այս գլխում:
4. Նկարագրեք կեղծ վարդապետների մեթոդներն ու պատգամը (17-18 հհ.)